# ՐԱՖՖԻ

(Հակոբ Մելիք-Հակոբյան)

# ԵՐԿԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒ

## ՏԱՍԸ ՀԱՏՈՐՈՎ



Հայպետհրատ

Երևան

1964

# Ր Ա Ֆ Ֆ Ի

(Հակոբ Մելիք-Հակոբյան)

# ԵՐԿԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒ

## ՀԱՏՈՐ ՏԱՍՆԵՐՈՐԴ



Հայպետհրատ

Երևան

1964

Տեքստը պատրաստեցին՝

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ, Խ. ՍԱՄՎԵԼՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԹՈՓՉՅԱՆ Է., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ա., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս.,
ՀՈՎՍԵՓՅԱՆ Գ., ՆԱՀԱՊԵՏՅԱՆ Մ., ՔՈՉԱՐ Հ.

Հրատարակչության խմբագիրներ՝

Ս. ՊԱՅԱՋԱՏ, Ս. ՍԱՐԳՍՅԱՆ

Նկարիչ՝

Ռ. ԲԵԴՐՈՍՅԱՆ

РАФФИ

(АКОП МЕЛИК-АКОПЯН)

СОБРАНИЕ СОЧИНЕНИЙ

в десяти томах

ТОМ X

(На армянском языке)
Армянское государственное издательство
(Айпетрат)
Ереван — 1964

## ԹԱՐԳՄԱՆՉԻՑ

*Թարգմանելով ռուսաց լեզվից Պլատոն Զուբովի «Ղարաբաղի Աստղագետը»* (Карабагский Астрологъ) *անունով վեպը, մեր նպատակն է եղել ծանոթացնել հայ հասարակությանը այդ գեղեցիկ աշխատության հետ, որի նյութը առնված լինելով Ղարաբաղի մելիքների կյանքից, հարկավ, մեզ հայերիս համար պետք է շատ հետաքրքիր լինի։*

*«Ղարաբաղի Աստղագետը» տպվեցավ Մոսկվայում 1834 թվականում, կնշանակե, մեզանից 48 տարի առաջ։ Բայց չնայելով, որ այդ գրքի լույս տեսնելուց անցել է մի ամբողջ կես դար, այսուամենայնիվ, մենք հայերս, մինչև այսօր ոչ միայն նրա բովանդակության հետ ծանոթ չէինք, այլ նրա գոյության մասին անգամ տեղեկություն չունեինք։ Մենք չգիտենք, որ ռուսաց գրականության մեջ կա մի գիրք, որը ամբողջապես նվիրված է Ղարաբաղում կատարված տխուր անցքերին...*

*Այժմ ներկայացնելով «Ղարաբաղի Աստղագետը» մեր ընթերցող հասարակությանը, մեր ցանկությունն է՝ ոչ միայն ծանոթացնել նրան մի գեղեցիկ վիպական ստեղծագործության հետ, որի մեջ արևելյան կյանքը նկարված է իր պարզ, նահապետական գույներով, այլ առավել թանկագին է մեզ համար այդ գիրքը այն կողմից, որ իբրև մի* պատմական արձանագրություն, *բավական ճիշտ կերպով պատկերացնում է մեզ այն աղետալի հանգամանքները, որոնք Ղարաբաղի հայկական իշխանություննե-*

րի քայքայման և անկման պատճառը դարձան։ Եվ ինքը, հարգելի հեղինակը, այդ նպատակով է գրել իր վեպը, և դրա համար էլ կոչում է նրան «Անդրկովկասյան պատմական վեպ» (Исторический закавказский роман)։

Երեսուն թվականների ռուս գրողներից միայն Զուբովի նման մեկը կարող էր տալ մեզ մի այնպիսի աշխատություն, որ պահանջում է բավական ծանոթ լինել երկրի հետ, ուր կատարվել են վեպի մեջ նկարագրված անցքերը,— պահանջում է խորին ուսումնասիրություն տեղային ժողովուրդների կենցաղավարության, բնավորությունների և նրանց միմյանց հետ ունեցած պատմական հարաբերությունների։ Զուբովը իր տեղում բավական ուսումնասիրած էր այդ բոլորը։ Դեռ Պողոս կայսրի թագավորության վերջերում նա եկավ Անդրկովկաս և մնաց այստեղ մինչև Նիկոլայի ժամանակները, և նրա ավելի քան երեսուն տարի կեցությունը Անդրկովկասում առիթ տվեց այդ հարցասեր գրողին ոչ միայն ծանոթանալ երկրի և տեղային ազգաբանությունների հետ, այլ գրեց իր օրերում կատարված ռուսաց արշավանքների և նշանավոր անցքերի պատմությունը թե պարսիկների, թե Վրաստանի և թե կովկասյան լեռնաբնակների վերաբերությամբ։ Նա թողեց բազմաթիվ աշխատություններ, իբրև հարուստ նյութ Անդրկովկասի պատմության համար[1]։ Իր աշխատությունների մեջ, որտեղ հայերի և հայոց երկրի վրա խոսք է լինում, նա միշտ համակրությամբ է խոսում։

Կարդալով «Ղարաբաղի Աստղագետը», ընթերցողը կնկատե այն ջերմ համակրությունը, որ արտահայտվում է հեղինակի յուրաքանչյուր տողից հայոց ժողովրդի և մելիքների վերաբերությամբ։ Իր վեպի մեջ Զուբովը շոշափում է այն զգալի վերքերը, որոնք մեր ազգի պատմական կյանքում շատ անգամ եղել են հայկական իշխանությունների անկման և մահացության պատճառները։ Այդ վերքերն են՝ անմիաբանությունը և ներքին երկպառակությունը։ Ցույց տալ դրանց վնասակար հետևանքները,— կացուցանում է «Ղարաբաղի Աստղագետի» գլխավոր նպատակը։

---

[1] Պլատոն Զուբովի աշխատությունների ցուցակը կարելի է գտնել Մ. Միանսարյանցի բիբլիոգրաֆիայի հետևյալ երեսներում՝ 362, 678, 736, 745, 756. Bibliographia «Caucasica et Transcaucasica». Опыт справочного систематического каталога печатным сочинениям о Кавказе, Закавказье и племенах, эти края населяющих. Составил М. Миансаров. Том I. С. Петербург, 1874—1876.

Ահա ինչ է ասում հեղինակը Վարանդայի իշխան Մելիք-Շահնազարյանի բերանով. «Երկպառակությունը և ներքին կռիվները ոչնչացրին հայոց թագավորությունը, որ մի ժամանակ ծաղկած էր և կանգնած էր խիստ նշանավոր աստիճանի վրա հին թագավորությունների շարքում։ Մենք, միայն Ղարաբաղի լեռնական մելիքներս, պահպանեցինք մեր անկախությունը։ Մեր նախնյաց քաջագործությունները հարգված էին մինչև անգամ Շահ-Աբաս մեծից... Բայց ինչո՞վ մեր նախնիքը կարողացան այնպես հաջողությամբ պատերազմել այդ մեծ թագավորի դեմ։ Միայն նրանով, որ Խամսայի բոլոր հինգ մելիքները միացած էին բարեկամության և արյան ամուր դաշնակցությամբ։ Նրանց հաջորդները հետևեցին նախորդների օրինակին, և մեր հայրենիքի անկախությունը պահպանվեցավ»։ (Երես 13)։

Նույն դառն բողոքը հայտնում է հեղինակը և Թալիշի մելիքի բերանով, երբ Փանահ-խանը արդեն բավականաչափ բռնացել էր Ղարաբաղի վրա. «Այդ բոլորի պատճառը մեր ներքին երկպառակություններն են։ Եթե մենք միշտ միմյանց հետ կապված լինեինք, ինչպես մեր նախնիքը հին ժամանակներում կամ Շահ-Աբասի օրերում, այն ժամանակ այդ ջուանշիրցին (Փանահ-խանը) մտածել անգամ չէր համարձակվի լինել Ղարաբաղի իշխողը։ Բայց մենք բոլորս, Խամսայի հինգ փոքրիկ իշխանություններս, որոնք հայոց հռչակավոր թագավորության վերջին մնացորդն ենք, սկսեցինք անդադար միմյանց հետ վիճել, միմյանց հետ կռվել, և ամեն մի հիմար բանի վրա, ամեն մի չնչին հարցի պատճառով սկսեցինք միմյանց հետ պատերազմել։ Եվ ի՞նչ եղավ մեր ներքին կռիվների արդյունքը,— այն, որ շահեցինք մեզ վրա մի օտար հրամայող...»։ (Երես 206)։

Թե ո՛րքան կորստաբեր հետևանքներ է ունենում մի ազգի համար անմիաբանությունը և ներքին երկպառակությունը,— այդ մահացու ախտը,— շոշափելի կերպով երևան է հանում հարգելի հեղինակը, ոչ թե հիմնվելով բանաստեղծական շինծու ապացույցների վրա, այլ ցույց տալով մի պատմական փաստ, մի կատարված աղետալի իրողություն հայոց կյանքում։ Այդ հիմնական միտքը կազմում է Զուբովի վեպի ամբողջ հյուսվածքը։

Իբրև նյութ իր հետաքրքիր վիպասանության, հեղինակը վեր է առել 1750 թվականներում Ղարաբաղի մեջ կատարված անցքերը։ Այդ ժամանակ Ղարաբաղի նահանգներում կային հինգ

հայկական իշխանություններ, որոնք զետեղված էին հինգ առանձին գավառներում և բոլորը միասին կոչվում էին **Խամսայի մելիքություններ:** Պատսպարված իրենց անմատչելի լեռների մեջ, այդ հինգ գավառների մելիքները (իշխանները) պահպանում էին կատարյալ անկախություն։ Քանի որ նրանք հաշտ էին, միաբան էին և վտանգի ժամանակ օգնում էին միմյանց, այնքան ժամանակ կազմում էին մի ամբողջ միացյալ զորություն, որ սարսափի մեջ էր պահում թշնամիներին, և Ղարաբաղը պահպանվում էր որպես մի բախտավոր, հզոր իշխանություն։ Իսկ երբ սկսվում է ներքին երկպառակությունը մելիքների մեջ, երբ անմիաբանությունը ջլատում է նրանց ուժերը, այդ ժամանակ նրանց զորությունը այն աստիճան թուլանում է, որ Փանահ-խանի նման մի հասարակ խաշնարած, մի թափառական չուանշիրցի, որը մի ժամանակ Նադիր-Շահի մոտ մունետիկի պաշտոն էր կատարում, իսկ հետո մի հանցանքի համար փախավ և Ջրաբերդի մելիքի մոտ ծառայության մեջ մտավ,— մի այնպիսի բախտախնդիր, օգուտ քաղելով հայոց մելիքների անմիաբանությունից, այնքան բարձրացավ, որ մտածեց նրանց վրա իշխել։ Բայց Փանահ-խանը բանաստեղծական մարդ չէ, նա պատմական անձնավորություն է։

Զուբովը ներկայացնում է մեզ մեր պատմության տխուր ավերագիրը։ Թույց նա մեր պատմությունը ամբողջապես չէր ուսումնասիրած, գուցե նա չգիտեր, թե ինչեր են կատարվել Հայաստանի մեջ ավելի հին դարերում, բայց այդ միևնույն է, բավական է, որ նա ուսումնասիրել էր իրան խիստ մոտ ժամանակների անցքերը։

Պատմական անցքերը նույնպես կրկնվում են մի ազգի կյանքում, որպես կրկնվում են նրանք մի անհատի կյանքում։ Զուբովը վեր է առել միայն 1750 թվականների Ղարաբաղում կատարված անցքերը։ Բայց այդ մի փոքրիկ կտորի մեջ նա ցույց է տալիս այն բոլոր դժբախտությունները, որ կրել է Հայաստանը ավելի հին դարերում։ Ո՞վ չգիտե, որ ամեն անգամ, երբ հայրենիքը վտանգի մեջ է գտնվել, երբ թշնամին կամեցել է բռնանալ մեր երկրի վրա, երբ օտարը մտածել է ոչնչացնել հայկական գահն ու գայիսոնը,— այդ միջոցներում միշտ գտնվել է մի հայ, մի վատ դավաճան, որը թշնամու ձեռքում գործիք է դարձել, որը առաջնորդել է նրան և իր հայրենիքը մատնել է օտարի ձեռքը։

Մելիք-Շահնազարյանի տիպի մեջ հեղինակը ցույց է տալիս մեզ մի այսպիսի մարդ։

Մելիք-Շահնազարյանը Վասակի, Մեհրուժանի կամ Վեստ-Սարգսի նման տիպ չէ։ Նա բարի մարդ է, նա սիրում է իր հայրենիքը, բայց այնքան կամքի զորություն և բնավորության ուժ չունի, որ հայրենիքի ընդհանուր շահերը գերադասե իր անձնական նեղ կրքերից։ Նա միանում է Փանահ-խանի հետ, օգնում է նրան, զորացնում է, բարձրացնում է, միայն թե կարողանա նրա ձեռքով ոչնչացնել Ղարաբաղի մնացած հայ մելիքներին։

Քանի՜-քանի՜ անգամ այդ տխուր երևույթը կրկնվել է հայոց պատմական կյանքում, քանի՜ անգամ հայոց իշխանները միացել են օտարների հետ և սկսել են իրանց հայրենիքի շահերին հակառակ գործել, սկսել են ոչնչացնել իրանց նման հայ իշխաններին։ Բայց պատմությունը միշտ պատժում է այսպիսիներին։ Նրանք ոչնչացնելով ուրիշներին, ոչնչանում են և իրանք։ Նրանք իրանց նմաններին օտարի լծի տակ դնելով, իրանք նույնպես օտարի ստրուկ են դառնում։ Նույնը պատահեց և Մելիք-Շահնազարյանի հետ։ Նա սկզբում նպաստեց Փանահ-խանին իշխել Ղարաբաղի անկախ մելիքների վրա, վերջը ինքն ևս նույն խանի հպատակը դարձավ, կորցրեց իր անկախությունը։ (Երես 228)։

Իր գրքի վիպական մասում հեղինակը նկարում է հայ ընտանիքի այն գլխավոր գծերը, որ արտահայտում են նրա թե առտնին և թե հասարակական բնավորությունը։ Ընտանիքի պետը, մեծ հայրը, իշխում է ոչ միայն ընտանիքը կազմող անդամների անձնավորության վրա, այլև նրանց սրտերի և հոգու վրա։ Նա կամենում է իրան հպատակեցնել և սերը, որ յուրաքանչյուր անհատի անբռնաբարելի զգացմունքն է։ Դեռ Ջումշուդը երեխա էր, երբ հորեղբայրը (որը երեխայի վրա հոգաբարձության պաշտոն ուներ) նշանադրում է նրա համար իբրև ապագա հարսնացու Թալիշի մելիքի աղջկան, որը դեռ օրորոցի մեջ կերակրվում էր մոր ստինքով։ Ջումշուդը չափահաս դառնալով, բողոք է հայտնում այդ ընտանեկան բռնության դեմ, և սիրելով գեղեցիկ Սալիհային, մերժում է Թալիշի մելիքի դստեր ձեռքը։ Այստեղից ծագում է բոլոր ինտրիգան, որ մելիքների երկպառակության պատճառն է դառնում։ Հույները կռվում են տրոյացիների հետ հափշտակված Հեղինեի համար, իսկ Ղարաբաղի մելիքները կռ-

վում են միմյանց հետ այն անպատվության համար, որ նշանադրված արջիկը մերժվեցավ։

Զումշուդի և Սալիհայի սիրո մեջ հեղինակը կամենում է արտահայտել այն միտքը, թե ամուսնական երջանկությունը կայանում է ոչ թե նրա մեջ, որ մի իշխանազն երիտասարդ ընտրում է իր կենակից մի օրիորդ, նույնպես իշխանական ծագումից, այլ ամուսնությունը կարող է բախտավոր լինել և այն ժամանակ, երբ օրիորդը ընտրվում է ստոր ծագումից, միայն թե ամուսնացու զույգը կապված լիներ ճշմարիտ սիրով։ Սալիհան հասարակ հովիվի աղջիկ է, բայց հազիվ թե կարելի է երևակայել մի այնպիսի անկեղծ, բոցավառ սեր, որ անապատների այդ անմեղ դուստրը ուներ դեպի Զումշուդը։

Ընտրելով իր հերոսի, Զումշուդի, համար ամուսին Սալիհային, որը ծագումով թուրք էր և կրոնով մահմեդական, հեղինակը, կարծես, այդ օրինակով ցանկանում է խրատ տալ հայերին, թե ոչ միայն պետք չէ խորշել այլադավաններից կամ այլազգիներից,— այլ ընդհակառակն, աննպատակ չէր լինի ամուսնանալ այլասեռ և այլակրոն հարևան ցեղերի աղջիկների հետ, և նրանց քրիստոնեություն ընդունել տալով, հայացնել։ Սալիհան նույնպես քրիստոնեություն ընդունեց և հայացավ։

Ավելի խորին խորհուրդ թաքնված է Զումշուդի դաստիարակության մեջ։

Զուբովի հերոսի, Զումշուդի, հայրենիքը շրջապատված է մի կիսավայրենի ցեղով, որպես էին ջուանշիրցիները։ Այդ ժողովուրդը հովվական պարզ կյանք է վարում, ապրում է իր անասուններով և ավազակությամբ։ Նա քաջ է, պատերազմասեր է, գիտե կռվելու արհեստը և վտանգ է սպառնում Զումշուդի հայրենիքին։ Նրանց հետ մրցելու, նրանց հարձակումներից, ասպատակություններից անվտանգ պահպանվելու համար պետք է ունենալ նույն լավ հատկությունները, որ նրանց առավելություններն են կազմում. այսինքն՝ լինել նրանց նման քաջ, ճարպիկ և վարժ կռվի գործի մեջ։ Հենց այդ դիտավորությամբ Վարանդայի իշխան Մելիք-Շահնազարյանը իր եղբորորդի Զումշուդին չորս տարվա ժամանակով ուղարկում է ջուանշիրցիների մոտ, ուսումնասիրելու նրանց կենցաղավարության պայմանները, սովորելու նրանց ճարպկություններր ձիավարության և զինաշարժության մեջ։

Ղարաբաղի հայոց մելիքները ներկայանում են Զուբովի վեպի մեջ իբրև քաջ, խստաբարո և չափազանց վեհանձն մարդիկ,

բայց միևնույն ժամանակ, սաստիկ անքաղաքագետ և դյուրախաբ մարդիկ։ Որոնց ընդհակառակն, նրանց թշնամին, ջուանշիրցի Փանահ-խանը, ներկայանում է որպես մեղմ, փափուկ, բայց չափազանց նենգավոր մարդ։ Դա քաջության հետ միացրել է և խորամանկությունը, այդ պատճառով էլ հաղթող է հանդիսանում։ Քաջությունը առանց դիպլոմատիայի կորցնում է իր զորության նշանավոր մասը։

Փանահ-խանի գործիքը, աստղագետ Հասանը, որ պատեցնում է իր փորձված ձեռքում Ղարաբաղի ճակատագրական աստղը, այդ մեծ խաբեբան ներկայացնում է պարսկական մարմնացած խորամանկության կատարելատիպը։

Մի կողմում քաջություն և պարզամտություն, մյուս կողմում՝ քաջություն նենգավորության հետ միացած,— այդ երկու հակառակ բնավորությունների ընդհարումների մեջ «Ղարաբաղի Աստղագետի» հարգելի հեղինակը, կարծես, կամեցել է նկարել այն տխուր պատկերը, որ մեր ազգի պատմական կյանքում միշտ նրա դժբախտության պատճառն է եղել։

Ամեն մի հայ, առանձին վեր առած, խելացի է, գուցե բավական խորամանկ է իր մանր հաշիվների մեջ, բայց ազգովին վեր առած, չէ կարելի ասել, թե խելացի է, այլ ընդհակառակն, չափազանց դյուրախաբ և միամիտ ժողովուրդ է։

Հայկական բնավորության այդ թույլ կողմերը ավելի որոշ գծերով երևում են «Ղարաբաղի Աստղագետի» մեջ, իսկ մանրամասները կարելի է տեսնել մեր «Խամսայի մելիքությունները» կոչված գրքում, որ բովանդակում է իր մեջ Ղարաբաղի վերջին տարիների պատմությունը։ Այդ երկու աշխատությունները անմիջական կապ ունեն միմյանց հետ և լրացնում են մինը մյուսի թերությունները, մեկը, որպես վեպ, մյուսը, որպես պատմություն։ Եվ այդ մտքով էլ մենք թարգմանեցինք «Ղարաբաղի Աստղագետը», համարելով նրան իբրև մի օժանդակ կամ լրացուցիչ աղբյուր «Խամսայի մելիքությունները» կոչված պատմության համար։

Մեր թարգմանության մեջ ոչինչ փոփոխություններ չենք արել, ամենայն հարազատությամբ հետևել ենք բնագրին։ Հեղինակի ծանոթությունների հետ ավելացրինք և մեր ծանոթությունները, գրքի մթությունները լուսաբանելու համար։ Մի քանի տեղերում ուղղեցինք այն սխալները, որ հեղինակը անում է թե գրքի և թե իր ծանոթությունների մեջ։

# ԶԱԽԵՐ-ՄԱԶՈԽԻ ԳՐԱԿԱՆԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ

Լեոպոլդ Զախեր-Մազոխի անունը համարյա անծանոթ է մեր ընթերցող հասարակությանը։ Նա ծնվեցավ հունվարի 27-ին 1836 ամի Լվով (Լիմբերգ) քաղաքում, որը գալիցիական հին թագավորության մայրաքաղաքն էր։

Նրա բազմաթիվ բեմական և վիպական աշխատությունների մեջ նշանավոր տեղ են բռնում մի շարք գեղեցիկ վեպիկներ, որոնք բոլորը միասին ընդհանուր անունով կոչվում են «Կայենի կտակը»: Այդ վեպիկները պատկերացնում են գալիցիական կյանքի այն սարսափելի ժամանակները, երբ 1846 թվականի լեհական ապստամբությունը իր սոսկալի բորբոքման մեջն էր, երբ ավստրիական զորքերը պաշարման վիճակի մեջ էին պահում երկիրը, և երբ գյուղացիները, դարերով տանջված լինելով ազնվականների կեղեքումներից, փոխանակ այդ վերջինների հետ միանալու, անցնում էին կայսերական զորքերի կողմը և իրանց մանգաղներով կոտորում էին կալվածատերերին։ Ամեն տեղ կատարվում էին արյունահեղություններ և գազանային անգթություն։

Ես թարգմանեցի[1] «Կայենի կտակից» երեք վեպիկներ միայն «Կալոմեայի Դոն-Ժուանը», «Ֆրինկո Բալաբան» և «Լուսընկա գիշեր»։ Հիմնական գաղափարը այդ վեպիկների և առհասարակ «Կայենի կտակի» մեծ աղմուկ բարձրացրեց կրիտիկայի կողմից, և մանավանդ գերմանական կրիտիկոսները սաստիկ զայրացան հեղինակի դեմ։

Գալիցիական ժողովրդի սկզբնական համոզմունքները, նրա բոլոր կրավորական իմաստությունը, որը արտահայտվում է այն մշտական անձնուրացության և անսահման համբերության մեջ, որոնցով դրոշմված է այդ ժողովրդի և բարոյական կերպարանքը, վերջապես նրա բոլոր նախնական ավանդությունները, կազմում են «Կայենի կտակի» հյուսվածքը, որի մեջ, իբրև հիմնական գաղափար անց են կացրած և Շոպենհաուերի փիլիսոփայության սկզբունքները։ Բնագիտության այժմյան ուղղությունը և Դարվինի գիտական վարդապետությունը ավելի ևս օգնեցին հեղինակին հաստատել իր աշխատությունների հիմնական գաղափարը այն

[1] Իմ թարգմանությունը արել եմ Ս. Ա. Կատելինկովայի ռուսական թարգմանությունից և նրա առաջաբանից եմ քաղում հեղինակի մասին տեղեկություններ։

ճակատագրական գործողության վրա, որը աշխարհի սկզբից կառավարում է մարդկությանը և որը անցնում է սերունդից սերունդ, որպես մի դժբախտ ժառանգություն։ Մարդկային սեռի վրա ծանրացած այդ ժառանգությունը, հեղինակի կարծիքով, կայանում է սիրո մեջ, այդ «հավիտենական և մահացու մաքառման մեջ, որ կատարվում է երկու սեռերի կողմից»,— կայանում է անհագ շահասիրության մեջ, որին դատապարտված է մարդը, և որը իբրև մի անհրաժեշտություն, ստիպում է մարդուն հարստահարություն ու խաբեություն կատարել,— և վերջապես, կայանում է պատերազմի մեջ, այդ անհրաժեշտ, բայց սարսափելի սպանության մեջ, թեև արդարացնում են նրան ազգասիրական կամ պետական նկատումներով։

Ահա հիմնական գաղափարները «Կայենի կտակի»։ Այդ գաղափարները հեղինակը կատարելապես զարգացնում է մի փոքրիկ վեպիկի մեջ, որ կոչում է «Պանդուխտ», և որը, իբրև առաջաբան, միացրել է այն վեպիկների շարքի հետ, որոնք բոլորը միասին կազմում են «Կայենի կտակը»։ Միայն «Պանդուխտի» հրատարակությունից հասկանալի եղավ «Կայենի կտակի» անունը, այդ պատճառով մենք հարկավոր ենք համարում ծանոթացնել ընթերցողին նրա համառոտ բովանդակության հետ։

Հրացանը ուսի վրա դրած,— պատմում է հեղինակը,— թափառում էր ինքը կուսական անտառի խորին թավուտներում, և նրան առաջնորդում էր մի ծերունի որսորդ։ Հանկարծ նրա ուղեկիցը կանգ առեց, ցույց տալով մի արծիվ, որ բարձրում սավառնում էր նրանց գլխի վրա. որսորդը նշան դրեց, և սպանված թռչունը ընկավ նրանց ոտների առջև.—«Կայե՜ն, Կայե՜ն»,—հանկարծ լսելի եղավ մեկի զորեղ ձայնը, և թփերի միջից հայտնըվեցավ մի ծերունու օտարոտի կերպարանքը, երկայն ալեխառն մորուքով և նույնպիսի երկայն ալևոր մազերով, որոնք ծածանվում էին քամուց։ Հնամաշ հագուստը և դդմասրվակը, որ քարշ էր ընկած նրա կշտից, ցույց էին տալիս որ այդ անծանոթը այն տեսակ մարդիկներից մեկը պետք է լինի, որոնք հեռանում են մարդկային հասարակությունից, որոնք փախչում են կյանքի բոլոր հարմարություններից ու զվարճություններից։—«Ի՞նչ օգուտ ունեիք այդ անմեղ արարածի սպանության մեջ, Կայենի զավակներ»,— ասաց ծերունին, և նրա ու հեղինակի մեջ սկսվեցավ ջերմ խոսակցություն։ Ծերունին անապատական էր, այսինքն՝ պատկանում էր անապատականների աղանդին, որոնք բավական տա-

րածված են Գալիցիայի ուղղափառ բնակիչների մեջ։ Անապատականների հիմնական սկզբունքները դրանք են. աշխարհը սատանայի թագավորությունն է, այդ պատճառով անապատականները փախչում են աշխարհից, փախչում են մարդկությունից, և այն ամենից, ինչ որ կայացնում է մարդկային կյանքի և գործունեության շահերը, որովհետև այդ բոլորի վրա ծանրանում է անեծք։ Սերը, ձգտումը դեպի հարստություն և դեպի իշխանություն, և այն բոլորը, ինչ որ ուրախացնում է ու առաջ է մղում մարդուն նրա հասարակական և անհատական կյանքի մեջ,— այդ բոլորը Կայենի կտակն է, որ թողել է իր ժառանգներին, այդ բոլորը այնպիսի բաներ են, որոնցից ծագում են բոլոր չարիքները, բոլոր դժբախտությունների և բոլոր կորուստը մարդկության։ Միայն մահը կարող է խլել մարդու ձեռքից այդ անիծյալ ժառանգությունը, որը թունավորում է նրան. միայն մահը կարող է կատարելապես վերականգնել մարդու մեջ այն խաղաղությունը, որը մի ժամանակ վայելում էր նա բնության գրկում, և միայն մահը կրկին կվերադարձնե նրան այդ գրկի մեջ։ Ուրեմն, մահը է այն ցանկալի սահմանը, դեպի որը մեծ հուսով ձգտում է անապատականը և նրան սպասելով, նա պետք է այնպիսի կենցաղավարություն ունենա, որը ավելի նմանեցնե կենդանի մարդուն մեռյալի. այստեղից առաջ է գալիս ինքնուրացությունը, ճգնությունը և համբերությունը։

Այդ պատմությունը, որը իբրև առաջաբան, դրած է «Կայենի կտակի» սկզբում, բացատրում է միևնույն ժամանակ այդ անվան տակ զետեղված վեպիկների ամբողջ ծրագիրը, որոնց յուրաքանչյուրը առանձին վեր առնելով, ամեն մեկը ներկայացնում է բոլորովին լրացրած և ամբողջացրած պատկեր, իսկ բոլորը միասին զարգացնում են հեղինակի հիմնական գաղափարը, որի մասին հիշեցինք վերևում։

Մեր թարգմանած երեք վեպիկների մեջ Զախեր-Մազոխը առաջ է բերում Կայենի ժառանգություններից մեկը, որ կտակել է նա ապագա սերունդին, դա է՝ կնոջ և տղամարդի սերը։ Այդ սկզբունքը պատկերացնում է նա հիշյալ վեպիկների մեջ, բայց պատկերացնում է իբրև չարության տարր, իբրև պատճառ մարդկային բոլոր դժբախտությունների, և իբրև մի չարիք, որ սարսափելի կերպով ոչնչացնում է այն բոլորը, ինչ որ մարդիկ սովոր են համարել բարիք, մի խոսքով՝ իբրև Կայենի կտակը իր թշվառ ժառանգներին։

Եվ այդ էր պատճառը, որ «Կայենի կտակը» սաստիկ հարձակմունքներ կրեց կրիտիկայի կողմից, և առավելապես գերմանական կրիտիկոսները զինվեցան նրա դեմ։ «Պանդուխտը», որը իբրև առաջաբան զետեղված էր «Կայենի կտակը» կազմող վեպիկների սկզբում, համարեցին իբրև profession cleroi-աթեիզմի։ Հեղինակին մեղադրում էին, որ նա հերքում է աստծո գոյությունը, որ նա ամեն երևույթների մեջ աստծո փոխարեն գտնում է բնության բնական զորությունը, և այսպիսով, ոչնչացնում է ամբողջ բարոյական աշխարհը։ Հեղինակի բոլոր աշխատությունները համարում էին պեսիմիզմի վերջին խոսքը, և Դարվինի ու Շոպենհաուերի վարդապետությունների ծայրահեղ արդյունք, միայն արևելյան սնահավատության հատկանիշներով դրոշմված։ Այդ կարծիքները առիթ տվին սաստիկ բանակռվի՝ հեղինակի և գերմանական կրիտիկոսների մեջ։ Իզուր Զախեր-Մազոխը աշխատում էր պաշտպանել իրան։ Գերմանական զայրացած կրիտիկան իր հարձակմունքների մեջ այն ծայրահեղության հասավ, որ սկսեց մինչև անգամ ուրանալ «Կայենի կտակի» գրական արժանավորությունը։ Հեղինակին առավելապես չէին ներում այն անխնա արդարության համար և այն անաչառ ռեալիզմի համար, որով նա երևան էր հանում մարդկային կյանքի մթին կողմերը, նկարելով միշտ մռայլ պատկերներ, որոնց մեջ խիստ աչքի էր զարկում իդեալների բացակայությունը։ «Ես ավելի կսիրեմ անախորժ ճշմարտությունը, քան թե շողոքորթող ստությունը», պատասխանում էր հեղինակը։ Ռոմանի նպատակը, որպես ասում է Գյոթեն, է — ծառայել իբրև մի հայելի, որը միակերպ ցոլացնում է իր մեջ բոլոր երևույթները շրջապատող կյանքի։ Այդ կետից նայելով, ինչ որ վերաբերում է այն մռայլոտ գույներին, որոնցով ներկված է Զախեր-Մազոխի յուրաքանչյուր պատկերը,—դա նրա մեղը չէ, եթե ժամանակակից կյանքը իսկապես այնպես է, որ չէ կարող ավելի պայծառ գույներով նկարվել ռոմանի մեջ։ Եվ այսպես, Զախեր-Մազոխը շուտով հաշտվեցավ վիպասանի աննախանձելի վիճակի հետ, որը համարձակվում է բարձրացնել կյանքի մթին կողմերը ծածկող վարագույրը ինքնախաբեության մեջ ապրող հասարակության առջև։ Գերմանական կրիտիկոսների վիճաբանության կոպիտ ձևը շուտով հարկադրեց Զախեր-Մազոխին հրաժարվել բանակռվից և պատասխանել իր հակառակորդներին միայն խորին արհամարհանքով։

Հրաժարվելով բանակռվից, և կրկնելով Գյոթեի հայտնի

խոսքերը. «Ստեղծի՛ր, արհեստագետ, բայց մի խոսիր»։— Հեղինակը սկսեց պատասխանել իր հակառակորդներին «Կայենի կտակի» շարունակությամբ, և մինը մյուսի ետևից ի լույս ածեց ավելի և ավելի հետաքրքիր պատկերներ։ Այդ պատկերների մեջ խիստ կենդանի կերպով նկարված է այն անխոնջ ու մշտական մաքառումը, որ կատարվում է մարդկության աղքատ և հարուստ դասակարգերի մեջ, և ամեն քայլում հանդիպում են ամենասոսկալի կոտորածների և վրեժխնդրության տեսարաններ։ Կարծեմ, ոչ ոք չէ կարողացել այնպես կենդանի և այնպես ազդու կերպով նկարագրել մարդկային բնավորության վայրենի բնազդումները, որպես այդ հաջողվել է Զախեր-Մազոխին։ Այդ դեպքում նա շատ նման է ամերիկացի մատենագիր Բրետ-Գարտին, որին նա ինքը շատ բարձրացնում է, բայց որից նա շատ գերազանցում է իր տաղանդով։

Կրիտիկան թեև անարդար գտնվեցավ դեպի հարգելի հեղինակը, բայց անցյալ տարի, երբ տոնվեցավ նրա հոբելյանը, համարյա ամբողջ լուսավոր աշխարհը ցույց տվեց նրան իր խորին համակրությունը նրա արդար և անաչառ գրական գործունեության համար։

## ՀԱՅԵՐԸ ՔԱԲՈՒԼԻ ՄԵՋ[1]

Անգլիայում հրատարակվող մի օրագրի մեջ տպվեցավ մի հոդված վերոհիշյալ վերնագրով, որի հեղինակն է Հնդկաստանի Փեշավոր քաղաքում բնակվող մստեր Հյուզը։ Այդ պարոնը մի քանի բարեկամների հետ Փեշավոր քաղաքում ավղանների համար հիմնած ուներ մի դպրոց և ինքը մի քանի ամիս առաջ անձամբ գնացած էր Քաբուլ։ Քաբուլի մեջ նրա գտած հայերը մեր ամենիս համար հետաքրքրական լինելով, հարկավոր ենք համարում մի քանի քաղվածքներ անել նրա հոդվածից։

Պատվելի ճանապարհորդի հաղորդած տեղեկությունների համեմատ, սկսյալ Նադիր շահի օրերից (1738 ամ.), Քաբուլում կա հայոց մի եկեղեցի, որ գտնվում է Բալահիսար կոչված ամ-

[1] Այդ հոդվածը տպվեցավ Կ. Պոլսի հայերեն տառերով և թուրքերեն լեզվով հրատարակվող «Մանզումեի էֆքյար» լրագրի մեջ։

բոցի մեջ, ուր սպանվեցավ Անգլիայի դեսպանը։ Ժոզեֆ Վուլֆ անունով անգլիացի քարոզիչը 1832 թվին հիշյալ եկեղեցում քարոզ կարդաց, իսկ 1879 թվին Փեշավուր քաղաքի ազգով ավղան հովիվը՝ պատվելի Իմամ-շահ, նույն եկեղեցում քարոզ կարդաց։

Քաբուլ տարվեցան հայերը Նադիր-շահի ձեռքով. ո՞րտեղից,— պարոն հոդվածագիրը չէ հիշում, միայն ասում է, որ սկզբում նրանց թիվը հասնում էր 200 ընտանիքի, իսկ այժմ մնացել են 4 այր, 8 կին և 2 երեխաներ, ընդամենը՝ 14 հոգի։ Դրանք երկար տարիներ քահանա չեն ունեցել և մկրտվում էին անգլիական եկեղեցու ներկայացուցիչների ձեռքով, որոնք ժամանակ առ ժամանակ այնտեղ այցելություն էին գործում։ Երկու հոգի մկրտվեցան 1839 թվին, 3 հոգի՝ 1842-ին, իսկ շատերը դիմում էին Հնդկաստանի Փեշավուր քաղաքի միսիոնարներից մըկըրտություն ընդունելու համար։

1842 թվին Քաբուլի մեջ հայոց եկեղեցուն այցելող մստեր Ալլեն անունով անգլիացի քարոզիչը նույնպես մկրտեց մի քանի հայերի, որոնցից մեկը՝ Սարգիս խըդր-խան, դեռ կենդանի է։ Այդ այցելության մասին քարոզիչը հետևյալն է գրում.

«1842 ամ. օգոստոսի 1-ին Շահրե գնացի։ Իմ բարեկամ մստեր Ֆիկորից լսած էի, որ նա Քաբուլի մեջ հայ ազգի քրիստոնյաներ է գտել և 1832 թվին նրանցից երկուսին մկրտել է,— ես էլ սկսեցի նրանց որոնել։ Շատերից հարցնելով, հայերին գտա Բալահիսար ամրոցում, դեպի Ջելալաբադի դուռը տանող մի նեղ փողոցի մեջ։ Նրանց տները գտնվում էին փողոցի հարավային կողմում։ Այս փողոցից դուրս գալով, անցա մի բազախանայի մեջ, որի շուրջը խանութներ և մեջը հայերի արհեստի և պարագմունքների վերաբերյալ գործիքներ ու պարագայք կային։ Այստեղից մի նեղ դռնով մտա եկեղեցու բակը։ Եկեղեցին փոքրինչ մութն էր, բայց հատակը խալիներով պատած և խիստ մաքուր պահված տեսա։ Եկեղեցու սեղանը գտնվում էր արևելյան կողմում, որ նայում էր դեպի արևմուտք, սեղանի վրա դրած էր մի հին պատկեր, որ Հիսուսի, Մարիամի և Հովսեփի նկարագիրն էր ներկայացնում։ Սեղանի վրա 6 աշտանակ, երկու խաչ և 2 Ավետարան կային։ Իսկ նրա հանդեպ կար մի գրքակալ, որի վրա դրած էր ժամագիրքը։ Մեզ եկեղեցին տանող հայերը պատմում էին, թե իրանց նախնիքը Քաբուլ բերված են եղել Նադիր-շահի ձեռքով, որոնց թիվը հասնում էր 200 ընտանիքի, իսկ այժմ մնացել է 14 ընտանիք միայն, որոնք հաշվում են 35 հոգի թե արա-

կան և թե իգական սեռից։ Այստեղի հայերի արհեստը Շիրազի գինի պատրաստել և արաղ քաշելն է։ Մեզ մոտ գտնվող հայերը հայտնում էին, թե ավղաններից խիստ հարստահարություններ և բռնաբարություններ են կրում։

«Այդ հայերի հարստության տեր լինելը կամ չլինելը ինձ հայտնի չէ։ Նրանց թաղը մեկ աղքատ թաղի էր նմանում, բայց ինձ մանածող կինը և տղամարդը բավական լավ էին հագնված։ Եթե դրանք հարստություն ունեն, բայց իրանց հարստությունը թաքցնելու շատ պատճառներ կային։ Այսպիսի խորին և խավար մի երկրում քրիստոնյաների մի փոքրիկ խումբ գտնելս մեծ ուրախություն ազդեց իմ մեջ։ Սրտումս աղոթեցի, որ ուրախության համեմատ, սուրբ հոգու շնորհիվ, այդ խումբը իր շրջապատի խավարը լուսավորելու համար մի պայծառ ճառագայթ դառնա։ Ինձ մոտ գտնվողները հասկանալով, որ ես քրիստոնյա մի եկեղեցու ներկայացուցիչ եմ,— նրանցից մի կին ոտներս ընկնելով, կամենում էր համբուրել։ Բայց ես թույլ չտվեցի, և եթե նրա լեզուն գիտենայի, Պետրոսի Կոռնելիոսին ասածին պես, կասեի նրան. «Վերկա՛ց, ես ինքս էլ մարդ եմ»։ Նրա հետ եղող Թիմուր անունով տղամարդը, որ խոսում էր ավղաներեն, աջ ձեռքս բռնեց, նախ դեպի շրթունքները տարավ, համբուրեց, հետո ճակատի վրա դրեց։ Այդ պարոնը պատմում էր, 13 տարի է, որ իրանք քահանա չունեն, և ինքը անձամբ գնացած է եղել մի քահանա Հնդկաստանից հրավիրելու և Քաբուլ բերելու, և քահանային մինչև Փեշավոր բերած, բայց նա վախեցավ և ճանապարհից ետ դարձավ։

«Հոկտեմբերի 3-ին, հայերի մի քանի երեխաներ մկրտելու համար, անգլիացոց բանակից, մի հազարապետի և երեք հարյուրապետի հետ, ուղիղ քաղաքը (Քաբուլ) գնացի։ Եկեղեցու մեջ բավական ժողովուրդ էր հավաքված, և սեղանի մոտ մի մեծ ամանով տաք ջուր էր դրած։ Հոգևոր խորհուրդը կատարելուց հետո, իմ ընկերները ցանկացան տեսնել եկեղեցու պատկերները, խաչերը և այլ անոթները, և հարցրին, արդյոք կարո՞ղ են տաճարը մտնել։ Նրանց պատասխանեցին, թե կարող են, եթե իրանց սրերը կարձակեն և ցած կդնեն։ Օֆիցերները իրանց սրերը արձակելով, հանձնեցին Թիմուրին պահելու, և իրանք տաճարի մեջ մտնելով, սկսեցին եկեղեցու սպասներին նայել։ Տեսնելով, թե ո՛ր աստիճան հարգանք և սեր ունեին այդ մարդիկը դեպի աստուծո տունը, ես շատ ուրախ եղա։ Եվ երբ հարցրի, թե Քաբուլի

մեջ այնքան բռնություն և հարստահարություններ կրելով, այլևս ինչո՞ւ եք մնում այդ քաղաքում,— նրանք ինձ պատասխանեցին. «Ա՜խ, մեր եկեղեցին ինչպե՞ս կարող ենք թողնել և գնալ»։ Մկրտության խորհուրդը կատարելուց հետո մեզ հրավիրեցին մի տուն, ուր հյուրասիրեցին մեզ թեյով և քաղցրավենիքով։ Այնտեղ ես տեսա Մարիամ և Սեկունդոս անունով երկու մանուկներին, որոնց 1839 թվին մկրտել էր մստեր Ֆիկոթը։ Թե այս մանուկները և թե նրանցից չափահասները գեղեցիկ դեմ և վայելուչ կազմվածք ունեին։ Դրանցից բաժանվելու րոպեում ես իմ մտքում ասում էի. «Մնացե՛ք բարյավ, Քրիստոսով սիրված բարեկամներ, մնացե՛ք բարյավ։ Եթե գտնվում են ձեր մեջ տգիտության և մոլոր հավատքի նշույլներ անգամ,— բայց ձեր սերը և պատիվը, որ քրիստոնեաբար ցույց եք տալիս օտարներին, և ձեր մտերմությունը, որ ունեք դեպի քրիստոնյաների ներկայացուցիչները, և ձեր համակրությունը ու հարգանքը, որ ունեք դեպի աստուծո տունը և դեպի նրա առաքյալները,— այդ բոլորը ձեր սիրո ապացույցն է, որ ունեք դեպի Հիսուս Քրիստոս։ Գուցե այս աշխարհում մյուս անգամ չհանդիպենք միմյանց, բայց հույս ունեմ, որ տիրոջ առջև պիտի տեսնվենք։ Աղաչում եմ, որ հավատքով և մկրտությունով մեզ իր հետ միացնող Հիսուս Քրիստոսը ձեզ ամրացնե և իր խաչի թշնամիների մեջ ձեզ օգնե և ազատություն շնորհե»։

Անցյալ աշնանը, երբ պատվելի Իմամ Շահը Քաբուլ քաղաքը այցելեց, հայերից մեկը, քոլերայից բռնվելով մեռավ։ Հանգուցյալը 14 տարեկան մի առողջ պատանի էր Աբդուլ-Մեսիհ անունով։ Պատվելի հովիվը հիշյալ պատանու մասին գրում է. «Քաբուլ հասած ժամանակս, այս պատանին մկրտվելու մեծ ցանկություն հայտնելով, նրան մի քանի ուրիշների հետ մկրտեցի։ Մկրտության շնորհը նրա վրա մեծ ազդեցություն գործեց։ Մկրտվելուց երկու շաբաթ հետո տիրոջ մարմնի հետ հաղորդվելու ցանկություն հայտնեց. թեև ինքը դեռ բավական մանուկ էր, այսուամենայնիվ, հաղորդության խորհուրդը համառոտ կերպով բացատրելուց հետո, նրան մի քանի ուրիշների հետ հաղորդեցի։ Եկեղեցուց դուրս գալու ժամանակ նա ասաց. «Այժմ իմ փափագը կատարվեցավ, որովհետև համ մկրտվեցա, համ տիրոջ ընթրիքին մասնակից եղա»։ Պատանին իր սրտում այն աստիճան հույս և հավատ էր զգում, որ հանդերձյալ կյանքի խոստումները ավելի երանություն էին պատճառում նրան։ Հանկարծ, նույն գիշերը իր

տունը հասնելուց հետո, քոլերայից բռնվելով, մյուս օրը վախճանվեցավ»։

«Բալահիսարի հայոց եկեղեցին 36 ոտք երկարություն ունի, 15 ոտք լայնություն. պատերի մեջ լուսամուտներ չունի, միայն առաստաղից բացված մի երդիկից լույս է ստանում։ Բեմը ութ ոտք բարձրություն և 5 ոտք լայնություն ունի։ Բեմի վրա դրած են երեք հատոր Նոր Կտակարան գեղեցիկ կազմով, մետաքսյա թաշկինակների մեջ փաթաթած, որոնց ժողովուրդը մեծ հարգանքով է վերաբերվում։ Դասերի մեջտեղ կա մի գրքակալ, որի վրա դրած է ժամագիրքը, և ամեն օր նրանից կարդում են։ Երբեմն կարդացվում է անգլիական եկեղեցու պարսկերեն թարգմանված ժամագիրքը։ Քաբուլի քրիստոնյա հայերը այս քաղաքը գալուց հետո, մինչև անցյալ օգոստոս ամիսը, ոչ մի անգամ իրանց եկեղեցում հաղորդության խորհուրդը կատարած չեն եղել։ Բայց յուրաքանչյուր տարի երկու անգամ, այսինքն՝ Քրիստոսի ծննդի և հայտնության զատիկներին, ուտում էին մի տեսակ սուրբ հաց (նշխարք, որ ուղարկվում էր Երուսաղեմից)։ Հաղորդության համար պատրաստված անոթը (սկիհը), արծաթից շինված լինելով, ավազակների ձեռքը չընկնելու համար, զգուշությամբ պահվում է եկեղեցու պատի մեջ։ Անցյալ աշնանը, հաղորդության խորհուրդը կատարելու ժամանակ, հայերը թույլ չտվեցին պատվելի Իմամշահին հիշյալ անոթը գործ ածել, բայց եթե պատվելին այնտեղ մնալու և նրանց հովվելու խոսք տալու լիներ, պատրաստ էին սկիհը նրան հանձնել։

Հայերի գերեզմանատունը Բալահիսարից մոտավորապես մեկ մղոն հեռու է։ Այդ գերեզմանատունը սկզբում մի պարտեզ է եղած, և հայերի պատմածին համեմատ, այնտեղ առաջուց մի քրիստոնյա նահատակ թաղված լինելու պատճառով, հետո պարտեզը գերեզմանատուն դարձավ։ Գերեզմանատան տապանաքարերի ոմանց վրա տեսնվում է 1769 թվականը։ 1839—41-ին, երբ անգլիացիք տիրեցին Քաբուլ քաղաքը, այդ գերեզմանատան մեջ մի քանի անգլիացի օֆիցերներ թաղվեցան, բայց անգլիացիների այնտեղից հեռանալուց հետո ավազակները հարստություն գտնելու հույսով նրանց գերեզմանները բաց արին։

Քաբուլի մեջ գտնվող հայերը մի ժամանակ Ավղանիստանի կառավարության բարձր պաշտոնների գլուխը անցան, և շատերը պատերազմական բանակների զորապետներ եղած են։ Էմիր-Աշիմ-խանը պսակվեցավ մի հայ աղջկա հետ, և այժմ Սամար-

կանտի մեջ ռուսաց բանակում հյուր եղող Սերդար-Իշայի-խանը ծնված է նույն հայ տիկնոջից։ Իսկ այժմ Քաբուլի մեջ մեծ նշանակություն է ստացել տեղային հայերից մի բժիշկ, մի հայ ևս էմիրի տան անգլիական լեզվի վարժապետ է, որը ուսում և կրթություն է ստացել Փեշավուրի միսիոնարների դպրոցում»։

* *
*

Կարդալով վերոհիշյալ տեղեկությունները Արևելքի խորքում կորած և սպառված հայոց մի գաղթականության մասին, ես ակամայից հիշում եմ մի խոսակցություն, որ շատ տարի առաջ ունեցա էջմիածնում մի բարձրաստիճան եկեղեցականի հետ։

— Սրբազան հայր, դուք ունե՞ք էջմիածնում աշխարհագրական որևիցե քարտեզ, որի վրա նշանակված լիներ, թե ո՞րտեղ են բնակվում հայերը։

— Մի այսպիսի քարտեզ,— պատասխանեց սրբազանը,— մինչև այսօր չէ հրատարակված, եթե ոչ, մենք ուրախությամբ կգնեինք։

— Այդ իրավ է, չէ հրատարակված, բայց բավական է գնել ամենահասարակ քարտեզներ և նրանց վրա կարմիր ասեղանիշներով նշանակել, որտեղ որ հայեր կան։

— Այդ շատ դժվար է, որովհետև մեզ հայտնի չէ, թե Հայաստանից դուրս այլևս ո՞ր երկրներում հայեր են գտնվում։

— Ընդհանուր հայոց հովվապետը պետք է գիտենա, թե իր հոտը որտեղ է գտնվում, որ նրա վրա խնամք տանելու դյուրություն ունենա։

— Մենք ըստ մեր կամաց հովվում ենք մեր հոտը, որ մեզ ավելի մոտ է, իսկ հեռավորների համար ինքը տերը հոգ կտանե։

— Բայց Հիսուս Քրիստոսը հովիվներին այսպես պատվիրեց. նա հրամայեց թողնել իննսունինը ոչխարները և գնալ մի հատ կորած ոչխարին որոնելու։ Զանազան խուլ և անծանոթ երկրներում գտնվում են հայեր, դրանք ազգային ամբողջությունից բաժանված, հայրենի երկրից հեռացած, այլ խոսքով, հոտի ընդհանրությունից անջատված ոչխարներ են, պետք է այդ կորածներին որոնել, պետք է դրանց համար մտածել։

— Մարդիկ չունենք,— եղավ սրբազանի պատասխանը,—հովիվներ չունենք, որ Հիսուս Քրիստոսի ասածի համեմատ՝ իրանց

անձը դներին ոչխարների վրա։ Առաջարկեցեք մեր միաբանությունից, ումը որ կամենում եք, գնալ Հնդկաստան, գնալ Աֆրիկա, վերջապես մի հեռու երկիր, ուր որ հայեր կան,— և կտեսնեք, ոչ ոք հանձն չի առնի։ Բայց տվեցեք նրանց Բեսարաբիայի, Շուշու կամ որևիցե մի ուրիշ վիճակ, իսկույն վազ կտան։ Այստեղ վայելչություններ, զվարճություններ և շահեր կան, իսկ հեռավոր երկրներում՝ դժվարություններ և վտանգ միայն։

— Այդ նրանից է ծագում, սրբազան հայր, որ մեր եկեղեցականներին չէ առաջնորդում որևիցե բարձր վսեմ միտք, որևիցե իդեալական ձգտում,— մեր եկեղեցականները միսիոնարի ոգի չունեն։ Նրանք զուրկ են քրիստոնեության գաղափարի տարածելու ներշնչությունից։ Նրանք ընդունակ չեն ոչ միայն հեթանոսներին դարձնելու դեպի մեր եկեղեցին, այլ պահպանելու նույնիսկ լուսավորչի զավակներին հայրենի դավանության մեջ։ Այս տեսակ հովիվների ձեռքի տակ հոտը հետզհետե նվազելով, վերջապես կսպառվի։

Կարդալով «Հայերը Քաբուլի մեջ» հոդվածը, ես ակամա հիշեցի այդ խոսակցությունը։ Մեկուկես դար առաջ Նադիր-շահը հայերից 200 ընտանիք տարել է Ավղանիստանի մայրաքաղաքի մեջ. այդ մեկուկես դարվա ընթացքում մեր եկեղեցականները նրանց մասին ոչինչ տեղեկություն չեն ունեցել. Նրանք մոռացված են եղել որպես ազգի ընդհանրությունից, նույնպես և ժողովրդի հովիվներից։ Բայց հավատարիմ իր հայրենի կրոնին, հայը շինել է այնտեղ իր համար եկեղեցի, և պատերազմելով բոլոր հալածանքների դեմ, սկսել է պաշտել իր կրոնը։ Անցել են հարյուրավոր տարիներ, տարանջատյալ ժողովրդի հետ եղած քահանաները վախճանվել են, և նա մնացել է զուրկ բոլոր հոգևոր մխիթարություններից։— Ծնվածները մնացել են առանց մկրտության, եկեղեցին մնացել է առանց ժամի և պատարագի, ննջեցյալները թաղվել են առանց քահանայի։ Այնուհետև հայոց եկեղեցականներից ոչ ոք ոտք չէ կոխել այդ երկրի վրա։

Անգլիացի միսոնարը լսում է, որ Ավղանիստանի խավարի մեջ հայազգի քրիստոնյաներ են գտնվում։ Նա հայ եկեղեցականի նման անփույթ, անհոգ և երկչոտ չէ. նա որոնում է և գտնում է հայերին։ 200 ընտանիքից մնացել են մի քանի հոգի միայն. մկրտում է նրանց անկնունք մնացած որդիներին, հաղորդում է և հոգևորապես մխիթարում է նրանց։

Այժմ ի՞նչ ասենք այդ միսիոնարին։— Ասե՞նք, թե դու գնա

հեթանոսներին քարոզիր, դու իրավունք չունես հայերի մեջ մըտնելու, հայերը առանց քեզ էլ քրիստոնյա են, նրանք քրիստոնեությունը ընդունեցին այն ժամանակ, երբ ձեր հայրերը Անգլիայում վայրենիներ և կռապաշտներ էին։— Մենք այդ պատասխանը կըտանք միսիոնարին, բայց անտեր և անհովիվ մնացած հայ ժողովուրդը դարձյալ նրան կընդունե իր մեջ և մեր խոսքը կմնա «ձայն բարբառոյ յանապատի...»։

Հայ ժողովուրդը սիրում է իր եկեղեցին, նա հավատարիմ էր մնացել հայրենի ավանդություններին, նա երկար սպասեց իր հովիվներին, երբ տեսավ, որ նրանք իր վրա ուշադրություն չեն դարձնում, որ նրանք իր հոգևոր պահանջներին բավականություն չեն տալիս,— ստիպված եղավ ընդունել օտարներին։ Իսկ մենք, հայ ինտելիգենցիայի ներկայացուցիչներս, վրդովվում ենք այդ երևույթները տեսնելով։ Եվ եթե գտնվում է մեզանից մեկը, որ ավելի հեռատես է, որ ավելի սուր հայացքով քննում է կատարվող իրողությունները,— որ աշխատում է կրոնապես բաժանված հայերին միացնել ազգային ամբողջության հետ, ասելով, թե հայ կաթոլիկն էլ, հայ բողոքականն էլ, հայ մահմեդականն էլ մեր եղբայրներն են,— մենք աշխատում ենք մի հրեական մոլեռանդությամբ նրա ճակատը դրոշմել ուրացության կնիքով, ասելով. դու մեղանչում ես եկեղեցու անմատչելության դեմ, մենք ազգություն չունենք, մեր ազգությունը եկեղեցին է։

Ո՞վ է ասում լուսավորչականին. գնա՛ կաթոլիկ դարձիր, գնա՛ բողոքական դարձիր, գնա՛ մահմեդական դարձիր։ Ո՞վ է քանդում լուսավորչական եկեղեցին։— Նա ինքն իրան մաշվում է, ժամանակն է մաշում նրան։—Ոչ մի հին շենք չէ կարող դիմանալ ժամանակների խստություններին, մանավանդ, երբ պահպանողներ և վերանորոգողներ չունի։

Մեր եկեղեցին քանդվում է եկեղեցականների անհոգությունից։ Դերսիմի բազմաթիվ հայերը երկար ժամանակ անհովիվ մնալով, հետզհետե քուրդ դարձան։ Ո՞վ էր մեղավոր։ Իսկ Դերսիմը ոչ Հնդկաստանումն է գտնվում, ոչ Աֆրիկայում և ոչ էլ Ավղանիստանում։ Դերսիմը շատ հեռու չէ Ախթամարա և Սսի կաթողիկոսարաններից, Երուսաղեմի և Կ. Պոլսի պատրիարքարաններից։ Այժմ Դերսիմի մեջ բողոքականները մտնելով, սկսել են բըրդացած հայերին Մեսրոպի տառերով Ավետարան կարդացնել, սկսել են մոռացված մայրենի լեզուն սովորացնել նրանց։ Ի՞նչ

ասենք այդ քարոզիչներին. ասե՛նք, թե դուք գնացեք հեթանոսներին քարոզեցեք, դուք հայերի հետ գործ չունեք։

Մենք սովորություն ունենք հարկավորած ժամանակ (երբ կամենում ենք մեր իմաստակությունների մի խաբուսիկ ձև տալ), հիմնվել Եվրոպայի օրինակների վրա։ Եվրոպան շատ սխալներ է գործել իր քաղաքակրթության պատմության մեջ, և մենք խելացի կլինենք այն ժամանակ միայն, երբ Եվրոպայի սխալներից օգուտ կքաղենք, և ոչ թե կուրորեն կհետևենք նրանց։

Եթե ընդունենք (որպես ոմանք պնդում են), թե Ավետարանը պետք է քարոզել հեթանոսներին միայն և ոչ թե այն ժողովուրդներին, որոնք վաղուց արդեն ընդունել են քրիստոնեությունը,— այդ դեպքում այլևս Լութերի ռեֆորմացիան հարկավոր չէր լինի, որ հայտնվեցավ կաթոլիկ ժողովրդի մեջ, որի եկեղեցին հիմնված էր առաքյալների օրերից։ Բայց պետք է վերջին աստիճանի տգետ լինել և չհասկանալ, թե Լութերի ռեֆորմացիան որքան առաջ տարավ Եվրոպայի քաղաքակրթությունը, թեև բազմաթիվ զոհերի արյունով գնվեցավ։

Ամեն մի ազգի միության գործը անհնար կլինի, եթե նույն ազգության գոյությունը պայմանավորվում է միմիայն եկեղեցու մեջ,— և եթե այդ եկեղեցուց դուրս գտնված ցեղակիցները համարվում են ազգային մարմնի ամբողջությունից կտրված անդամներ։ Հեռու պետք չէ գնալ. մենք ունենք մեր աչքի առջև մի պարզ և ժամանակակից օրինակ. պանսլավիզմը ցանկացած հաջողությանը չհասավ, երբ Կատկովի շկոլան և Մոսկվայի ռուսֆիլները սկսեցին պահանջել, թե զանազան սլավոնական ցեղերին ռուսների հետ միացնելու նպատակին պետք է ծառայե օրթոդոկս եկեղեցին։ Այդ պահանջը վիրավորեց մյուս սլավոնների կրոնական զգացմունքը և պանսլավիզմը մնաց, որպես մի երևակայական իդեա։

Դժբախտաբար մենք էլ ունենք մեր ողորմելի կատկովները, որոնք լուսավորչական եկեղեցու մասին նույն ցնորքների մեջ են գտնվում։

Մենք մեզ թույլ չենք տա մեր կաթոլիկ, մեր բողոքական և մինչև անգամ մեր մահմեդական եղբայրների կրոնական համոզմունքներին դիպչել, միայն կաշխատենք զարգացնել նրանց մեջ ազգայնության գաղափարը։ Մենք կցանկանք, որ նրանք ունենան իրանց ինքնուրույն և ազատ եկեղեցիները, անկախ Հռոմի պրոպագանդայից և անկախ օտարազգի միսիոնարների և պաստոր-

ների ազդեցությունից։ Մենք կցանկանք, որ նրանք հայոց լեզվով խոսեին, հայոց լեզվով կրթեին իրանց զավակներին և հայոց լեզվով աղոթեին։ Իսկ հալածե՞լ նրանց, հերետիկո՞ս համարել և այսպիսով, ավելի զզվեցնել և բաժանել մեզանից,— այդ հիմարությունները մենք չենք անի։ Մենք խորհուրդ կտանք մեր լրագրությանը և մանավանդ Կ. Պոլսի մամուլին հետևել այդ տակտիկային։ Անցյալ սխալները պետք է ուղղել։ Այժմ մեզ **հայ** է պետք և մեր իդեալը պետք է լինի **հայություն**: Կրոնական համոզմունքները պետք է խոնարհվեն այդ գաղափարի առջև...

Բայց զարմանալին այն է, որ դեռևս գտնվում են մեր մեջ բանուգործ չունեցող մարդիկ, որ աշխատում են հարուցանել կրոնական վիճաբանություններ, մի այնպիսի ժամանակ, երբ մեզ պետք են ավելի լուրջ և ավելի նպատակահարմար աշխատություններ։

## ՄԻ ԱՌԱՋԱՐԿՈՒԹՅՈՒՆ

«Մշակի» խմբագրատան մեջ ստացվեցան Կ. Պոլսից և մեր գավառական քաղաքներից բազմաթիվ նամակներ, որոնց մեջ ցանկություն են հայտնում, որ «**Խենթը**» առանձին գրքով հրատարակվի։ Որքան էլ թանկագին լիներ կատարել մեր ընթերցող հասարակության հարգելի բաղձանքը, այսուամենայնիվ, ցավելով պիտի ասեմ, ինձ անհնար է այդ պահանջին լրում տալ, որովհետև պակասում են՝ թե ժամանակ և թե նյութական միջոցներ տպագրության համար։

Ըստ մեծի մասին վեպերը սկզբում մաս-մաս տպվում են որևիցե ամսագրի կամ լրագրի մեջ, հետո լույս են ընծայվում առանձին գրքերով։ Բայց այս աշխատությունը հանձն են առնում ոչ թե հեղինակները, այլ մասնավոր անձեր, որպես են՝ հրատարակիչներ, գրավաճառներ կամ տպագրական ընկերություններ։ Իսկ մեզանում, որպես երևում է, ամեն ինչ պետք է հեղինակը անե,— համ գրե, համ տպագրե, համ աշխատե վաճառել, որ իր ծախսը ետ ստանա։ Մեր աղքատ հեղինակներին որքա՞ն հնարավոր կլինի այդ,— ինքնըստինքյան հասկանալի է։

Մինչև այսօր միայն մեկ Միանսարյանց հայտնվեցավ, որ աշխատեց ամփոփել մեր պարբերական հրատարակություններում

ցրված բանաստեղծությունները մի գրքի մեջ։ Արդարև, գովելի աշխատություն։ Բայց նրանից հետո ոչ ոք չհայտնվեցավ, որ հավաքեր և առանձին գրքերով տպագրել տար մեր բելլետրիստիկային վերաբերյալ աշխատությունները։ Դեռևս գանգատվում ենք, որ ընթերցանության գրքեր չունենք։

Ինը տարվա ընթացքում «Մշակի» մեջ տպվեցան զանազան մեծ և փոքր վեպեր, պատկերներ, մեմուարներ, ճանապարհորդություններ, և այլ, և այլ բանասիրական աշխատություններ,— եթե այդ բոլորը դասավորվեր և առանձին գրքերով հրատարակվեր, անտարակույս, բազմաթիվ հատորներ լույս կտեսնեին։ Բայց ի՞նչ եղան.— ստացան լրագրական համարները, կարդացին, առժամանակ հետաքրքրվեցան, հետո մի կողմ ձգեցին,— և բոլորը մոռացվեցավ, բոլորը կորավ...

Ես թողնում եմ բարեգործական կամ ժողովրդի մեջ ընթերցանություն, միտք և նոր դաղափարներ տարածելու նպատակը, բայց նույնիսկ վաճառականական կետից նայելով գործի վրա, դարձյալ շատ օգտավետ կլիներ մի այսպիսի ձեռնարկություն։ Սխալ է այն կարծիքը, թե մեզ մոտ գրքեր չեն վաճառվում, թե տպագրությունը մեզ մոտ վաստակ չունի,— գրքեր վաճառվում են, մանավանդ ընտիր բանաստեղծական աշխատությունները։

Իսկ ինչ որ վերաբերում է «Խենթին», եթե գնահատում են նրա ժամանակակից նշանակությունը, եթե ցանկանում են, որ այդ աշխատությունը առանձին գրքի մեջ ամփոփվելով, ավելի տարածվեր և ավելի մատչելի լիներ մեր ընթերցող հասարակությանը,— ես պատրաստ եմ տալ իմ համաձայնությունը և ընդունել ամենանպաստավոր պայմաններ առաջին տպագրության իրավունքի մասին, եթե որևիցե պարոն կցանկանար առնել տպագրությունը։

Իսկ ես այս տարի պիտի զբաղվեմ «Կայծերի» հրատարակությունով, որի համար արդեն ստորագրություն եմ բացել և սպասում եմ բաժանորդների թվի լրանալուն։

## ՄԻՆՉԵՎ Ե՞ՐԲ

Ժամանակը և ժամանակակից պահանջները հարուցանում են ժողովրդի գործիչների մեջ նոր մտածություններ, նոր գաղափարներ, որոնք առաջ են գալիս իրերի անհրաժեշտությունից, և, ավե-

լի ճիշտ ասած, ներկայի ծնունդն են։ Նոր մտածությունները, նոր գաղափարները կարող են խորթ, օտարոտի և մինչև անգամ վնասակար երևնալ այն անձանց, որոնք ժամանակի պահանջներին չեն հետևում, որոնք անշարժ մնում են հին նախապաշարմունքների վրա։

Ազգայնության գաղափարը վաղուց անծանոթ էր մեզ՝ հայերիս, դեռ ներկա դարուս երկրորդ կիսաբաժնի մեջ նա սկսեց արծարծվիլ մեր մտածողների գլխում, բայց այնքան աղոտ և այնքան խառնափնթոր կերպով, որ մի որոշ կերպարանք ստանալ չկարողացավ։ Ամենաջերմ և ամենաանկեղծ ազգասերները շփոթում էին ազգը կրոնի հետ և կրոնը՝ եկեղեցու հետ։ Եվ եկեղեցուց բաժանված անդամների վրա նայում էին, որպես հեթանոսների վրա և նրանց այլևս հայ չէին համարում։ Հայեր համարվում էին նրանք միայն, որ պատկանում էին լուսավորչական եկեղեցուն։ Եվ այսպես, ազգությունը և եկեղեցին կազմում էին մի անբաժանելի միություն, որի անջատումը, նրանց կարծիքով, կարող էր պատճառել երկուսի էլ մահացությունը։

Բայց այդ դրությունը երկար չէր կարող պահպանվել. Նա ոչ միայն անբնական էր, այլ հակառակում էր ազգերի առաջադիմության օրենքներին։ Անկարելի էր, որ հայ ազգը պատկաներ միայն մեկ եկեղեցուն։ Երկրագնդի վրա թե քաղաքակիրթ և թե վայրենի ազգերի մեջ չկա և երբեք չի եղել մի ազգություն, որ մեկ եկեղեցու պատկաներ։ Օտար բազմաթիվ օրինակների վրա ցույց տալու հարկ չկա, այսքանը միայն կասենք, որ հայ ազգը իր հեթանոսական դարերում ուներ զանազան կրոնական աղանդներ բուն հայկական, զրադաշտական, ասորական, հունական, հրեական և մինչև անգամ չինեական,— և այդ բոլոր աղանդների խառնափնթորության մեջ ազգությունը դարձյալ չէր կորցնում իր ամբողջությունը, ավելի ուժ և զորություն ուներ։

Քրիստոնեությունը Հայաստանում մտնելուց հետո պետք է բնականաբար միևնույն երևույթները կրկնվեին։ Մեր սուրբ Լուսավորիչ հոր հիմնած եկեղեցին չկարողացավ մնալ իր սկզբնական պարզության մեջ։ Դեռ երկար ժամանակ հեթանոսական կրոնի հետքերը մնացին Հայաստանում։ Այդ բավական չէ, նույնիսկ լուսավորչական եկեղեցին, կաթոլիկ և հունական եկեղեցիների ազդեցության ներքո, սկսեց փոքր առ փոքր կերպարանափոխվել, եթե ոչ ներքին դավանաբանական հիմունքների կողմից, գոնե արտաքին ծիսապաշտությունների կողմից։

Մինչև վերջին դարերում հայտնվեցան մեր մեջ կազմակերպված կաթոլիկ, բողոքական և հունադավան եկեղեցիներ։

Ի՞նչ պետք էր անել այդ վերջինների հետ։— Երկուսից մեկը, կամ պետք էր պարզ ասել (որպես շատերը ասում են), թե մենք հայոց ազգությունը հիմնված ենք համարում միմիայն լուսավորչական եկեղեցու վրա, որովհետև դուք բաժանվեցաք այդ եկեղեցուց և մտաք կաթոլիկ, բողոքական և հունադավան եկեղեցիների գիրկը,— ուրեմն դուք այլևս մեզանից չեք (այսինքն՝ հայ չեք), ըստ որում, մենք լուսավորչական եկեղեցուց դուրս հայություն չենք ճանաչում։— Եվ կամ պետք էր ասել, թեև դուք ընդունեցիք այս և այն եկեղեցիները, բայց մենք ձեր կրոնական համոզմունքներին չենք դիպչում, դուք դարձյալ մեր անբաժան եղբայրներն եք և մեր ազգի սիրելի անդամները։

«Մշակը» իր հրատարակության հենց առաջին տարիներից, մեր այլադավան եղբայրների վերաբերությամբ, ընդունեց վերջին եղանակը։ Այդ, իհարկե, կվրդովեցներ շատերին, որոնք ավելի բարվոք էին համարում, որ հազարավորները և բյուրավորները մեր ազգից կորչեին, քան թե լուսավորչական եկեղեցու մի աղյուսը իր տեղից խախտվեր։

Բայց հարցը շատ պարզ էր, թեև ոմանք չհասկանալով, և ոմանք չարամտությամբ աշխատում էին և աշխատում են այլապես բացատրել։ Քարոզել այն միտքը, թե մեր կաթոլիկ, բողոքական, հունադավան և մինչև անգամ մահմեդական եղբայրները մեզ նման հայեր են, մեր մսից և մեր արյունից են, և մեր ազգությանն են պատկանում — այդ չէ նշանակում ի վնաս լուսավորչական եկեղեցու գործել։ Լուսավորչական եկեղեցին մեզ համար նույնքան սուրբ է, որքան սուրբ են և մյուս եկեղեցիները իրանց պատկանող անդամների համար։ Մենք չենք կարող, և մինչև անգամ իրավունք չունենք ասելու նրանց, թե փոխեցեք ձեր կրոնը, կրկին մտեք մեր եկեղեցին, այն ժամանակ միայն մենք եղբայրական ձեռք կմեկնենք ձեզ և կհամբուրվենք ձեզ հետ։ Դրանով մենք իրավունք կտանք նրանց նույնը պահանջել մեզանից։ Եվ այսպես ազգային միությունը երբեք չի կայանա։

Ո՞վ է հերքում այն փաստը, թե լուսավորչական եկեղեցին պատմական կապ ունի մեր ազգայնության հետ։ Ո՞վ է հերքում, որ այդ եկեղեցին շատ դեպքերում ազատել է մեր ազգությունը կորստից և շատ դեպքերում ևս վնասել է նրան։ Այսուամենայնիվ, մենք կպաշտենք այդ եկեղեցին, և եթե նա դարերի ընթաց-

քում ստացել է այս և այն խորթ ներմուծությունը, կաշխատենք ինքներս ուղղել, առանց թույլ տալու մի օտարի միջամտությունը։ Մենք մեր տունը մեր ձեռքով կնորոգենք, եթե հարկավոր կհամարվի։ Բայց միևնույն ժամանակ կպահպանենք կատարյալ ներողամտություն դեպի մեր այլադավան ազգայինները, և առանց վիրավորելու նրանց կրոնական զգացմունքը, կաշխատենք հասկացնել նրանց, որ մենք միևնույն ազգի զավակներ ենք, որ մեր ընդհանուր շահերը պահանջում են ազգային սերտ միություն, և ամեն ինչ որ հակառակ է այդ միությանը, պիղծ, վնասակար և աններելի է։

«Մշակը» խոսելով կրոնի մասին, միշտ ազգային կետից է նայել նրա վրա։ «Մշակը» կրոնափոխություն չէ քարոզում. ով որ այսպես է մտածում, նա կամ կույր է, կամ խարդախությամբ լի չարամիտ։ Եվ եթե «Մշակը» իր էջերը բաց է արել Ամիրխանյանցի, Կիրակոսյանցի և Մարկոսյանցի առջև, այդ չէ նշանակում, թե նա դառնում է գործիք զանազան «որսորդների» ձեռքում, ինչպես պնդում են ոմանք։ Մի լրագիր, որ իրան նպատակ է դրել հաշտարար լինել ազգի անջատված, թշնամացած և խորթացած անդամների մեջ, նրա պարտքն է լսել և հրատարակել յուրաքանչյուրի խոսքը։ «Մշակի» մեջ կարող են գրել, որպես լուսավորչական, այնպես էլ կաթոլիկ, բողոքական, մահմեդական և հունադավան հայերը,— նա ազգային օրգան է և ոչ եկեղեցական։

Մենք Ամիրխանյանցներին և դրանց նմաններին ազգի թշնամի չենք համարում, մենք ազգի թշնամի ենք համարում այն զզվելի հայերին, որ հայերեն չեն խոսում, որ հայերեն չեն կարդում, որ Հայաստանի վրա չեն մտածում, և միայն տարին մի քանի անգամ հայոց եկեղեցին մտնելով, հայ քահանայի ձեռքից հաղորդություն են ընդունում և դրանով իրանց բոլոր պարտքը կատարած են համարում։ Մենք ազգի թշնամի ենք համարում այն կարճամիտ ազգասերներին, որ լուսավորչական եկեղեցուց դուրս հայ չեն ճանաչում։ Ի՞նչ կլիներ այդ վերջինների կարծիքով, եթե հայերի մեծ մասը մի ժամանակ բողոքական կդառնային, կամ մի ուրիշ կրոն կընդունեին, իսկ ազգի փոքրամասնությունը միայն կմնար հավատարիմ լուսավորչական եկեղեցուն,— ուրեմն այդ փոքրամասնությո՞ւնը միայն պիտի կազմեր մեր ազգությունը։

Մեզ ասում են, թե հայը լեզու չունի, թե հայը հայրենիք չունի, թե նրա լեզուն, հայրենիքը և ազգային բոլոր առանձնու-

*թյունները բովանդակվում են միմիայն եկեղեցու մեջ,— խլեցիր նրանից եկեղեցին, փոխեցիր նրա կրոնը,— ազգությունը այն ժամանակ կքայքայվի։ Մի այսպիսի կարծիք կարող են ունենալ հայ ազգի մասին տգետները միայն, որոնք խիստ նեղ և սահմանափակ հայացքով են նայում ազգային խնդրի վրա։*

*Եթե իսկապես հայը զրկված է իր ազգային լեզվից, զրկված է իր հայրենիքից, կորցրել է իր ցեղական առանձնությունները և պահպանվում է միմիայն եկեղեցու գրկում, այն ժամանակ նրան ազգ պետք չէ համարել, այլ պետք է համարել մի կրոնական աղանդ, որ մեռած է նույնիսկ եկեղեցու մեջ, որի մեջ ապաստան է գտել։ Մի այսպիսի ազգի համար չարժե աշխատել, չարժե մտածել անգամ, որովհետև նա կքայքայվի, կլուծվի և կանհետանա զանազան ազգությունների մեջ, երբ իր պաշտպանության համար ուրիշ հիմք չունի, բացի կրոնը։*

*Բայց մեր հավատը մեծ է հայ ազգության վրա, մենք հավատում ենք, որ նա ունի հարուստ կլասիկական և կենդանի, նոր գրականական լեզու. մենք հավատում ենք, որ նա ունի իր պատմական հայրենիքը և տակավին բնակվում է իր հայրերի հողի վրա. մենք հավատում ենք, որ նա ունի իր որոշ ցեղական հատկությունները, որ դարերի ընթացքում չեն փոխվել, և վերջապես, մենք հավատում ենք, որ նա ունի իր հատուկ ազգային եկեղեցին։* **Լեզու, հայրենիք, եկեղեցի, ցեղական առանձնություններ,**— *ահա այն գլխավոր հիմունքները, որոնցով, հավատացած ենք, կպահպանվի մեր ազգությունը։ Հարկավոր են և ուրիշ մի քանի պայմաններ, այդ, իհարկե, մեզանից ամեն մեկը հասկանում է,— դրանց մասին ոչ կարող ենք և ոչ պետք ենք համարում խոսել։*

*«Մշակը»* **«Տարրական մտքեր»** *վերնագրով առաջնորդող հոդվածների մեջ արդեն բացատրեց այն հարցերը, թե մի ազգի պահպանության համար ինչ դեր են խաղում կրոնը, լեզուն և հայրենիքը,— և թե դրանցից յուրաքանչյուրը որքան և ինչ չափով են նպաստում ազգի գոյության պահպանվելուն, երբ զանազան հանգամանքների պատճառով մինը կամ մյուսը փոփոխության են ենթարկվում։ Մենք այսքանը բավական համարելով, հարկավոր ենք տեսնում կրկին վերադառնալ այն հարցին, թե ի՞նչ շահ ունենք անդադար կրկնելով միևնույն հին երգը, թե լուսավորչական եկեղեցին մեր ազգի միակ հիմքն է, թե այդ եկեղեցուց դուրս ոչ փրկություն կա և ոչ հայություն, թե բողոքական, կաթոլիկ, հունադավան և մահմեդական հայերը, եթե կամենում են մեզ հետ միա-*

նալ, պետք է կրկին վերադառնան դեպի իրենց մայրենի եկեղեցին, և այլ այսպիսի ցնդաբանություններ։

Այսպես կարող են մտածել այն մարդիկը միայն, որոնք չգիտեն մեր ազգի այժմյան վիճակը և տեղյակ չեն նրա ժամանակակից պահանջներին։ Եվ ցավալին այն է, որ այսպես երկար ժամանակ մտածում էին մեր ազգի առաջնորդները։ Պետք էր մի զորեղ դեպք, մի պատմական շոշափելի անհրաժեշտություն, որ դուրս բերեր մեր ժողովրդի առաջնորդներին հիշյալ մոլորություններից, ցույց տալ, թե որքան անհիմն են նրանք։ Բարեբախտաբար այդ դեպքը տեղի ունեցավ։ Քրիստոնյաների ազատության անունով ծագեց ռուս-թուրքական պատերազմը, և հայերը կարմիր արյան փոխարեն սև մելանը գործածելով, ստացան Սան-Ստեֆանոյի 16 և Բեռլինի ավագաժողովի 61-րդ հոդվածները։ Վերջին հոդվածի տրամադրության համեմատ, Թուրքիան պարտավորվում էր վերանորոգություններ մտցնել իր պետության «հայերով» բնակեցրած գավառների մեջ։ Այստեղից ինքնըստինքյան ծագեց մի հարց.— ովքե՞ր են հայերը։

Մեր հին ազգասերների կարծիքով հայեր միայն լուսավորչականներն էին, և Թուրքիան բարվոք համարեց այսպես ընդունել, հաշվեց լուսավորչականների թիվը, այն ևս փոքրացնելով և պատասխանեց Եվրոպային, թե իմ պետության մեջ հայերը այնքան չնչին փոքրամասնություն են կազմում, որ չարժե մինչև անգամ նրանց համար առանձին վերանորոգություններ անել։ Պատասխանը, կրոնական կետից, մասամբ ճիշտ էր, և մեզանից ոչ ոք իրավունք չունի մեղադրել Թուրքիային, երբ նա օգուտ է քաղում մեր տգիտությունից, երբ նա կրկնում է միևնույնը, ինչ որ մենք ենք ասում, թե բացի լուսավորչականներից ուրիշ հայ չկա։

«Մշակը» նախատեսում էր այդ բոլորը, նա գիտեր, թե որպիսի կորստաբեր հետևանքներ կարող է ունենալ Հայաստանի վերանորոգության մասին, երբ մենք կշարունակենք անդադար կրկնել, թե լուսավորչական եկեղեցուց դուրս հայություն չկա։ Եվ այդ իսկ պատճառով «Մշակը» բարձրացրեց կրոնի և ազգության խնդիրը։

Բեռլինի ավագաժողովի 61-րդ հոդվածը տվեց հայերին երկու արտոնություն՝ առաջինը, որ Հայաստանում պետք է վերանորոգություններ մտցվեին, երկրորդ, որ հայերը կրոնական համայնքից Եվրոպայի առջև ճանաչվեցան որպես ազգ:

Ի՞նչ է նշանակում՝ կրոնական համայնքից ճանաչվեցան որպես ազգ։— Այդ նշանակում է՝ մի ցեղական ամբողջություն, որի մեջ կան և կարող են լինել զանազան կրոններ և եկեղեցիներ։

Այդ կոչմանը արժանի լինելու համար պետք էր ցույց տալ, որ դա իսկապես այդպես է, որ մենք ազգ ենք, և այդ ազգի մեջ կան զանազան եկեղեցիներ՝ լուսավորչական, բողոքական, կաթոլիկ, հունադավան և մահմեդական։— Եվ այդ կազմակերպությունից ինքնըստինքյան պետք է առաջ գար **կրոնական ներողամտությունը և համոզմունքի ազատությունը**, որպեսզի ազգային միության գործը կատարյալ լիներ։

«Մշակը», որ շատ առաջ քարոզում էր այդ ցանկալի միությունը, Բեռլինի դաշնագրից հետո ավելի եռանդոտ սկսեց արծարծել նրան, որովհետև այդ միության մեջն էր տեսնում ազգի փրկությունը և Հայաստանի բախտն ու ապագան։ Բայց գտնվեցան մարդիկ, որ սկսեցին հակառակը քարոզել կամ մեր բռնած ընթացքը ծուռ ու սխալ կերպով բացատրել։ Մենք այսպիսիների հետ գործ չունենք, մեր գործը մեր ազգի բարեմիտների հետ է։ Մենք անդադար պիտի մտրակենք այն չարագործներին թե կաթոլիկ լինեին, թե լուսավորչական, թե բողոքական և թե մահմեդական, որոնք կրոնի պատճառով մեր ազգի միության գործի մեջ երկպառակություն են ձգում։ Եվ մենք սիրով կհամբուրենք մեր այն եղբայրներին, առանց դիպչելու նրանց կրոնին, որոնք միայն հայության և Հայաստանի անունով կգործեն, և հայ ազգի շահերը կպաշտպանեն։

Մենք մեկ ազգի որդիներ ենք, մենք միևնույն ընտանիքի զավակներն ենք։ Կրոնը, որ մի ժամանակ բաժանել էր մեզ, այժմ ազգի և հայրենիքի սերը պետք է միացնե։ Կաթոլիկությունը, բողոքականությունը և մինչև անգամ մահմեդականությունը չեն վըրկում հային հայ լինելուց, և ոչ էլ լուսավորչականությունը մեզ իրավունք է տալիս հայ կոչվել։ Մենք հայ էինք, երբ հեթանոս էինք, և հայ կմնանք, երբ հազար անգամ կփոխենք մեր կրոնը։ Մեր ազգությունը չի կորչի,— երբ պահպանված կլինեն այդ բոլոր պայմանները, ինչ որ պետք են, ինչ որ անհրաժեշտ են մի ազգի գոյության համար։

## ՆՊԱՍՏԵՆՔ

Երբ Կ. Պոլսում կազմվեցան զանազան ընկերություններ՝ «Արարատյան», «Կիլիկյան», «Դպրոցասիրաց արևելյան» — Հայաստանում ուսում տարածելու նպատակով, մեզանից շատերը սկսեցին մտածել՝ ինչ հարկավոր են այսքան ընկերություններ, մի՞թե նպատակը միևնույնը չէ, ավելի լավ չէր լինի, եթե բոլորը միանային, կազմեին մի ամբողջ և ավելի հիմնավոր ընկերություն։

Մտածությունները իրավացի էին։ Ընկերությունները կազմըված էին բարեգործական հիմունքների վրա և պիտի պահպանվեին նվիրատվություններով։ Բայց մեր հասարակությունը չգիտեր, ո՞ր մեկին նվիրել յուր հանգանակությունները։ Բոլորը միևնույն ասպարեզում, բոլորը միևնույն նպատակի համար էին գործում։ «Մըշակը» որպես արձագանք մեր ժողովրդի պահանջների, բարձրացրեց ընկերությունների միացման հարցը։

Կ. Պոլսի հայերը, որոնք ավելի մեծ հույսեր, ավելի մեծ ակնկալություններ ունեին մեզանից, ռուսահայերիցս, իհարկե նյութական օժանդակությունների կողմից, ընկերությունների միացնելու հարցի մեջ ոչ միայն մեզ հետ համաձայն գտնվեցան, այլ լիապես կատարեցին մեր փափագը. «Մշակի» վերջին համարներում հրատարակվեցավ, որ ընկերությունները արդեն միացել են ընդունելով «Միացյալ ընկերություն» անունը։

Այժմ ի՞նչ է մնում մեզ անել։

Այժմ մնում է մեզ կրկնապատկել մեր բարեգործական եռանդը, և մեր նյութական զոհաբերություններով միացյալ ընկերություններին ուժ և խրախույս տալ։

Մեզանից ամեն մեկը համոզված է, որ ուսումը, կրթությունը ամենագլխավոր միջոցներն են, որոնք, թեև փոքր-ինչ ուշ, թեև դանդաղ կերպով, բայց վերջապես կհարթեն ավելի հիմնավոր ճանապարհ տաճկահայերի առջև մի ապագա բարօրության հասնելու համար։ Մենք համոզված ենք, որ Թուրքիայի հայը դպրոցի մեջ պիտի գտնե յուր վերածնությունը, յուր բախտը։ Եվ այն բարիքները, որոնցից մինչև այսօր զրկել էր հային բարբարոս Թուրքիան, այն բարիքները, որ եվրոպական դիպլոմատիան այնքան ժլատությամբ է բաժանում հայերին, հայի որդիները պիտի ստանան դպրոցական վարժապետների ձեռքից։

Բայց Թուրքիայի հայը աղքատ է։ Թուրքաց հարստահարու-թյունը այն աստիճան քամել է նրա նյութական զորությունը, որ նա հազիվ թե կարող է յուր դպրոցները կանոնավոր, նպատակա-հարմար կերպով առաջ տանել, եթե դրսից օգնություն չլինի։

Ռուսաստանի հայերը այժմ պետք է կատարեն տաճկահայերի վերաբերությամբ նույնը, ինչ որ մի ժամանակ իրանց ոսկիներով անում էին Հնդկաստանի հայերը ամբողջ ազգի համար։ Ռուսաս-տանի հայերը, բնակվելով մի բարեկարգ պետության հովանավո-րության ներքո, նյութապես ավելի բարեբախտ վիճակի մեջ են գտնվում, քան իրանց տաճկահպատակ եղբայրները։

Հնդկաստանի հայերը թողեցին ազգի համար խոշոր կտակ-ներ, նրանց փողերով զանազան երկրներում հիմնվեցան բազմա-թիվ դպրոցներ։ Ցանկալի կլիներ, որ մենք հետևեինք նրանց օրի-նակին։ Բայց մեր պահանջը համեստ է, մենք խոշոր կտակներ չենք պահանջում։

Մեզանից ոչ մեկի տնտեսության մեջ մի զգալի փոփոխու-թյուն չէր լինի, եթե մեզ վրա բարոյական պարտք կդնենք յուրա-քանչյուր տարի շարունակ կերպով, մեր կարողության համեմատ, մի քանի ռուբլի նվիրել Կ. Պոլսի միացյալ ընկերություններին։ Այդ ռուբլիներից կկազմվեին նշանավոր գումարներ։

Ռուսաստանի հայերը «Արարատյան» ընկերության վերաբե-րությամբ ցույց տվեցին իրանց բարեգործական եռանդը, թե որ-քան համակրում են կրթության գործին տաճկական Հայաստա-նում։ Հույս ունինք, որ այժմ ավելի ևս պիտի բազմապատկեն իրանց զոհաբերությունները, երբ մասնավոր ընկերություններից կազմվել է մի հոյակապ, հիմնավոր ընկերություն։

## ՓԱԽՈՒՍՏԻ ՃԱՆԱՊԱՐՀԸ

Հեռագիրը մեզ լուր բերեց, թե Բ. Դուռը իր պատասխանի մեջ, որ հաղորդած է Կ. Պոլսի եվրոպական դեսպաններին, խոս-տացավ համոզել ալբանացիներին զիջանել Դուլցինիոն Չեռնոգո-րիային, և պարտավորվում է վճռել հունաց հարցը երեք ամսվա մեջ, իսկ հայոց հարցը՝ չորս ամսվա մեջ։

Այդ դարձյալ նույն մթին, երկդիմի և նենգավոր պատասխան-ներից մեկն է, որով Բ. Դուռը սովորություն ունի միշտ խույս տալ

Եվրոպայի պահանջումների ուղղակի կատարելուց, փախուստի ճանապարհ գտնել, և նոր դժվարություններ, նոր արգելքներ սարքելու համար ժամանակ վաստակել։

Բ. Դուռը պարտավորվում է հայոց խնդիրը չորս ամսվա մեջ վճռել, բայց ի՞նչ կերպով, ի՞նչ ռեֆորմներ պիտի մտցնե Հայաստանում, այդ մասին լռում է։

Ի նկատի ունենալով Թուրքաց Հայաստանում կատարվող այժմյան անցքերը, շատ հեշտ է նախագուշակել, թե Բ. Դուռը այս չորս ամսվա ընթացքում ինչ կերպով կվճռե հայկական խնդիրը։

Նա կուղարկե Հայաստան, ինչպես առաջ, կամիսերներ, կուղարկե Հոբարդ փաշայի նման բարեկարգիչներ, ցույց կտա, թե աշխատում է վերանորոգություններ մտցնել, բայց միևնույն ժամանակ քրդերին, Թուրքերին և ամբողջ մահմեդական ամբոխը գաղտնի կերպով կգրգռե հայերի դեմ, և փոխանակ բարեկարգությունների, արյուն, կոտորած, ավերմունք կտարածե Հայաստանում։ Չորս ամիսը բավական ժամանակ է այդ բոլորը կատարելու համար։

Եվ երբ Հայաստանը կծխի՛ արյան և կրակի մեջ, նա կպատասխանե Եվրոպային. իմ ժողովուրդը դեռ պատրաստ չէ. ես ամեն միջոցներ գործ դրեցի. Հայաստանում վերանորոգություններ մտցնելը առայժմ անհնարին է, որովհետև մահմեդական ամբոխի կրոնական զգացմունքը, Թուրքերի ազգային հպարտությունը վիրավորում է հայերին առանձնաշնորհումներ տալու պատճառով։

Խոստանալ և չկատարել— այդ Թուրքիայի վաղեմի սովորությունն է։ Իսկ բարիք խոստանալ և չարը գործադրել— այդ պահանջում է նրա այժմյան ամենախարդախ քաղաքականությունը։

Հասկանալի է, որ Բ. Դուռը ամեն տեսակ հնարներ գործի պիտի դնե, որ Բեռլինի դաշնագրի 61-րդ հոդվածը գործադրություն չգտնե Հայաստանում։ Նա շատ լավ հասկանում է, թե այդ հոդվածը ինչ ապագա է պատրաստում հայերի համար։

Հայաստան բառը խիստ անախորժ տպավորություն է գործում Թուրքիայի ջղերի վրա։ Բ. Դուռը բացարձակ կերպով հայտնեց հայոց պատրիարքին, թե յուր պետության մեջ Հայաստան անունով երկիր չէ ճանաչում. նա հայտնեց Կ. Պոլսի եվրոպական դեսպաններին, թե Հայաստանում բացառապես վերանորոգություններ մտցնելու դիտավորություն չունի, այլ պիտի մտցնե ընդհա-

նուր վերանորոգություններ ամբողջ Փոքր Ասիայի մեջ։ Ի՞նչ են նշանակում այդ խոսքերը։ Շատ պարզ է, որ Բ. Դուռը չէ ցանկանում Հայաստանը դարձնել մի արտոնական երկիր, որպեսզի այդ երկիրը, իբրև մի որոշ մարմին չառանձնանա և չանջատվի իր պետությունից։ Բալկանյան թերակղզու իշխանությունների կազմվելու պատմությունը, իհարկե, Թուրքիան շուտով մոռանալ չէր կարող։

Չնայելով, որ հայերի նպատակը խիստ համեստ է, չնայելով, որ հայերը ցանկանում են ունենալ մի բարվոք կառավարություն միայն և ազատվել մահմեդականների մինչև այսօր գործ դրած դարավոր բարբարոսություններից, այսուամենայնիվ, Բ. Դուռը չէ կամենում կատարել նրանց իրավացի պահանջումները, որ ամեն մի փոքրիշատե բարեկարգ պետության քաղաքացին իրավունք ունի վայելելու։

Այդ բավական չէ, այժմ Թուրքիան աշխատում է հայկական խնդիրը խեղդելու նպատակով ոչնչացնել հայ տարրը։ Աշխատում է լցնել Հայաստանը քրդերով, չերքեզներով, լազերով, աջարացիներով և այդ բոլոր վայրենի ցեղերի բարբարոսությունը գրգռել հայերի դեմ։ Ռուսաց նոր նվաճած երկրներից գաղթող բազմաթիվ մահմեդականներին նա զետեղեց Հայաստանի մեջ։ Իսկ եվրոպական Թուրքիայից դուրս եկող գաղթականների խմբերը նույնպես ուղարկում է դեպի Հայաստան։

Նպատակը հայտնի է և չորս ամիսը բավական ձիգ ժամանակ է նրան իրագործելու համար...

Նշանները արդեն երևում են Վասպուրականի մեջ, որ Հայաստանի սիրտն է, նկատվում է քրդերի կատաղի հուզմունք, այրվում են գյուղեր, սպանվում են մարդիկ, և ապստամբությունը օրըստօրե ավելի ընդարձակվում է, ավելի սպառնական ձև է ստանում։ Տարոնի նահանգում նույնպես արյուն է հոսում։ Սովուկ-Բուլախի գավառում Շեյխ Իբադուլլահը, իր գլխին հավաքած ավելի քան տասն հազար ավազակներ, վտանգ է սպառնում Ատրպատականի հայերին։ Հեքարիի կողմերում Բահրի բեկը, իր ցեղի գլուխն անցած, ավերմունքներ է գործում։ Հին-Բայազետի կողմերում Հեյդարանլի քրդերը կողոպտում են հայերին։ Ամեն տեղ նկատվում են միևնույն չարագործությունները, որոնց կեղևի տակ թաքնված է թուրք կառավարության պաշտոնատարների ննդավոր ձեռքը։ Իսկ Կ. Պոլսի մահմեդական մամուլը այդ բոլոր

*բարեփոխումները* բացատրում է froակաս միության *անու-նով...*

*Ինչպե՞ս պիտի վարվեն Թուրքիայի հայերը վերոհիշյալ բոլոր չարագործությունների դեմ։*

*Թուրքիայի հայերը մինչև այսօր իրենց բոլոր հույսը դրել էին դիվանագիտական բանակցությունների վրա, ամեն ինչ սպասում էին Եվրոպայից և իրենց փրկությունը միայն Բեռլինի դաշնագրի 61-րդ հոդվածի մեջ էին որոնում։ Բայց Անգլիայի պետական մարդիկներից մեկը, միստր Բրայսը, այս օրերում խիստ ճիշտ կերպով նկատեց Կ. Պոլսի հայերին. «Աշխատեցեք չձանձրացնել Եվրոպային»։*

*Մենք կավելացնենք հայասեր անգլիացու խոսքերին, ոչ թե Եվրոպան, այլ աստված ինքը չի օգնի Թուրքիայի հայերին, եթե նրանք իրենք իրենց օգնելու մեջ ծույլ կլինին...*

*Թուրքիան խոստանում է վճռել հայոց հարցը չորս ամսվա մեջ։ Գուցե վճիռը նրանով կվերջանա, որ չորս ամսից հետո էլ Հայաստանում հայ չի մնա...»*

## ՊԱՏԱՍԽԱՆ

*Շատերը հարցնում են, թե ինչո՞ւ* «Կայծեր» *այս տարի չտպվեցան կամ ես ե՞րբ դիտավորություն ունեմ ի լույս ածելու այդ աշխատությունը։*

*Իմ հայտարարության մեջ ես սկզբից հայտնած էի, որ* «Կայծերի» *տպագրությունը կսկսվի այն ժամանակ միայն, երբ այդ գրքի բաժանորդներից ստացված գումարը կծածկե տպագրության ծախքը։ Ցավելով պետք է հայտնեմ, որ մինչև այսօր ստացված փողերը հազիվ թե բավական կլինին բոլոր ծախքերը լրացնելու։*

*Այսուամենայնիվ, չկամենալով իմ հարգելի բաժանորդների համբերությունը ձանձրացնել և նրանց երկար սպասել տալ, ես, որքան կարելի էր, աշխատեցի փութացնել տպագրությունը։ Եվ որովհետև, բացի նյութական պակասությունից, ինչ-ինչ պատճառներով Թիֆլիսում այդ գրքի տպագրությունը անհարմար համարվեցավ, իմ բարեկամները խորհուրդ տվեցին Մոսկվայում տպագրել տալ, ուր մամուլի պայմանները ավելի նպաստավոր դրության մեջ են։ Այդ մասին ես արդեն բանակցություն եմ սկը-*

*սել Մոսկվայի համալսարանի ուսանող պ. Գաբրիել Միրզոյանցի հետ, խնդրելով, որ հանձն առնե տպագրության հոգսերը, և հուսով եմ, որ առաջիկա տարվա սկզբի ամիսներում գիրքը պատրաստ կլինի։*

*Հարկ եմ համարում խնդրել պատվելի պարոններին, որոնք զանազան քաղաքներում հանձն են առել* «Կայծերի» *համար բաժանորդներ գտնել, չուշացնեն ուղարկել իրանց մոտ ունեցած փողերը, որով ավելի ևս նպաստած կլինեն գրքի շուտ հրատարակությանը։*

## ԻՄ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ

*Բարեկամներիցս շատերը առաջարկում էին գրել մի պատմական վեպ։ Գրել պատմական վեպ, ինչպես Ալեքսանդր Դյուման էր գրում, շատ հեշտ գործ է։ Բայց գրել պատմական վեպ, ինչպես Էբերսը գրեց իր* «Եգիպտական թագավորի աղջիկը»—*բավական դժվար է։*

*Պատմական վեպի մեջ հեղինակի երևակայության համար ընդարձակ ասպարեզ կա։ Ստախոսիր, որքան կարող ես, ո՞վ պիտի ստուգե, որ քո նկարագրները կեղծ են։ Բավական է անցքը տեղափոխել մի քանի հարյուր, մի քանի հազար տարի առաջ, վեր առնել մի քանի պատմական անձնավորություններ և նրանցից ուզածիդ պես տիպեր ստեղծել։ Ընթերցողների հարյուրից մեկը միայն կարող է հասկանալ, որ այս տեսակ մարդիկ այն ժամանակ չէին ապրում, որ այս տեսակ կյանք այն ժամանակ չկար։— Այդ եղանակին էր հետևում Դյուման իր պատմական ռոմանների մեջ, թեև նրա գրքերը հետաքրքրությամբ կարդացվում էին։*

*Այսպես չէ Էբերսի գիրքը։ Նա ժամանակի խորին հնությունից*[1] *երևան է հանում մեր առջև մի անծանոթ աշխարհ իր կենցաղավարության բոլոր ճշտություններով։ Ընթերցողը տեսնում է այդ գրքի մեջ կլասիկական Եգիպտոսը իր հրեշավոր պիրամիդներով և սֆինքսներով, իր վեհափառ ամազիսներով և պսամմետիխներով, տեսնում է վշտալի ստրկությունը, քուրմի և թա-*

[1] *Քրիստոսից մոտ 500 տարի առաջ։*

դավորի լծի տակ ճնշված ժողովուրդը։ Էբերսը ռոմանի միջոցով ծանոթացնում է մեզ մի վաղուց անցած, գնացած աշխարհի կյանքի և քաղաքակրթության հետ։ Մենք, ինչպես պարզ հայելու մեջ, տեսնում ենք այդ երկրի կենդանի պատկերը, նկարված բանաստեղծական ամենաճիշտ գույներով, տեսնում ենք նրա քաղաքական, հասարակական, ընտանեկան, կրոնական կյանքը իր ընդարձակ և բազմատեսակ գործունեության մեջ, իր բոլոր մանրամասն և հատկանիշ առանձնություններով։

Մի բարեխիղճ հեղինակ, որպես էր Էբերսը, կարող էր այսպիսի ռոման գրել։ Նա եգիպտական հնախոսության, եգիպտական պատմության պրոֆեսոր է. իր ամբողջ կյանքը նվիրել է այդ երկրի անցյալի ուսումնասիրությանը։ Էբերսի մեջ միացած էին բանաստեղծական տաղանդը և խորին, լուրջ գիտությունը։ Նրա գիրքը բացատրված է ավելի քան 500 ուսումնական ծանոթություններով, որոնցից երևում է, ինչ որ գրել է նա, հիմնվում է պատմական հնագիտական ճիշտ փաստերի վրա։

Որքան ինքը Էբերսը խղճմտավոր աշխատող էր, այնքան ընդարձակ դյուրություններ կային իր աշխատությունը կատարելագործելու համար։ Նա կարող էր ձեռքի տակ ունենալ հարյուրավոր հեղինակների պատրաստի գրվածքները Եգիպտոսի հնությունների, պատմության, էտնոգրաֆիայի մասին։ Բայց դրանցով ևս չբավականանալով, Էբերսը անձամբ գնաց Եգիպտոս, իր վեպը իր տեղում մշակելու համար։

Ի՞նչ աղբյուրներից կարող է օգուտ քաղել մի հայ վիպասան, երբ կամենում է Հին Հայաստանի կյանքից մի ռոման գրել։ Դեռևս ոչինչ ուսումնասիրված չէ, որ կարողանար լույս ձգել խավարի մեջ թաքնված անցյալի վրա, թե ինչպես էին ապրում մեր նախնիքը։ Մեր պատմությունը մի չոր ու ցամաք ժամանակագրական ցանկ է և ավելի ոչինչ։ Չամչյանի, Ինճիճյանի գրքերը չեն կարող լիակատար բավականություն տալ վիպասանի պահանջներին։ Մենք կուլտուրայի պատմություն չունենք։ Մենք չգիտենք՝ ինչ էր ուտում, ինչպես էլ հագնվում, ինչ տեսակ տան մեջ էր ապրում հայ մարդը մեզանից, եթե ավել չասեմ, մի հազար տարի առաջ։ Մենք չգիտենք հայոց հին ժողովրդի ընկերական, հասարակական, ընտանեկան, քաղաքական կյանքի առանձնահատկությունները,— ժողովրդի զանազան դասակարգերի հարաբերության պայմանները միմյանց հետ։ Մեզ հայտնի չէ մեր նախնիների բարքը, վարքը, սովորությունները, կրոնական պաշ-

տամունքները, ժողովրդական հանդեսները և այլն։ Մենք շատ փոքր տեղեկություններ ունենք մեր անցյալի մասին։ Մեր հնա-դիտությունը իր մութ և միանգամայն անմշակ վիճակի մեջն է։

Մինչ մի եվրոպացի հեղինակ կամենալով մի պատմական վեպ գրել, կարող է օգուտ քաղել հարյուրավոր պատրաստի աշ-խատություններից, դրա ընդհակառակն, մեզ մոտ ոչինչ չկա, որ վիպասանին նյութ մատակարարեր, նրա հայացքը անցյալի վե-րաբերությամբ լուսավորեր, նրա առջև բաց աներ հին աշխարհը իր կյանքի բոլոր երևույթներով։ Այդ պատճառով հայոց պատմա-կան վիպասանի համար, եթե նա բարեխիղճ է, մեծ աշխատու-թյուններ, անհադին դժվարություններ կան, մի օրինավոր բան գրելու համար։ Նա ինքը պետք է ուսումնասիրե հայոց ամբողջ հնությունը, որ իր վեպը կատարյալ լինի։ Իսկ դրա համար մի մարդու ոչ թե հանճարը և աշխատությունը, այլև ամբողջ կյան-քը բավական չէ։

Հիշյալ հանգամանքները ի նկատի առնելով, շատ հեշտ է բա-ցատրել այն տխուր երևույթը մեր գրականության մեջ, որ առանց բացառության մեր բոլոր գրողների փորձը անհաջող անցավ, երբ կամեցան հեղինակել մի պատմական վեպ կամ դրամա։ Դրանց աշխատությունների մեջ մենք հանդիպում ենք պատմական անունների, պատմական անցքերի, բայց հայ մարդու վաղեմի կյանքը, հայ աշխարհի հին նկարագիրը չենք տեսնում։

Այս էր պատճառը, երբ ինձ առաջարկեցին գրել մի պատմա-կան վեպ, ես ընտրեցի շատ հին ժամանակները, որոնք դեռևս մեզ համար մթության մեջ են թաքնված։ Ես վեր առի մեզանից մեկուկես դար առաջ պատահած մի անցք, այն է՝ Սյունյաց աշխարհի հայերի ապստամբությունը պարսից լուծը թոթափելու համար։ Այդ ժամանակից մինչև այժմ հայոց կյանքի մեջ մեծ փոփոխություններ չեն եղել։

Ցավալին այն է, հիշյալ անցքի պատմությունը, որ մեր նոր տարեգրության մեջ մի նշանավոր տեղ պիտի բռնե, դեռևս խիստ աղքատ է, թերի և անկատար։ Մենք ունենք այդ մասին մի փոք-րիկ գրքույկ միայն, որ տպվեցավ 1871 թվին Էջմիածնում պ. Ա. Գուլամիրյանցի հրատարակությամբ, այս վերնագրով՝ «Ընտիր պատմություն Դավիթ Բեկին և պատերազմաց հայոցն Խափանու, որք եղեն ընդդեմ Թուրքաց ի մերում ժամանակի, այն է՝ յամի տեառն 1722 և հայոց 1171»։ Բացի դրանից, Չամչյանի պատ-մության երրորդ հատորի 784 երեսից մինչև 800 երեսը նվիր-

ված է Դավիթ Բեկին։ Ինչպես երևում է, Ջամչյանը իր տեղեկությունները քաղել է մի այնպիսի գրքից, որպիսին է պ. Գուլամիրյանցի հրատարակությունը, որովհետև երկուսի բովանդակության մեջ մի նշանավոր տարբերություն չենք գտնում։

Թե առաջին և թե երկրորդ պատմությունը, կրկնում եմ, թերի ու անկատար են։ Նրանց մեջ կան ահագին բաց մնացած տեղեր, որ անցքերի ամենագլխավորն են։ Օրինակի համար, այդ պատմությունների մեջ ամենևին հիշատակություն չկա, թե Սյունյաց աշխարհի հայոց ապստամբությունը ի՛նչ կապ ուներ Պետրոս Մեծի Պարսկաստանի արշավանքների հետ կամ ի՛նչ դեր էին խաղում այդ ապստամբության մեջ ռուսները, և կամ ո՛ր աստիճան հայերը իրանց զենքով ու խելքով նպաստեցին ռուսաց հաջողության գործին կասպիական ծովեզրյա երկրները տիրապետելու ժամանակ։

Այդ ժամանակի անցքերի ամենամեծ մասը մնացել է բաց մեր ազգային պատմության մեջ։ Հայտնի է, որ Ղարաբաղի հինգ ժառանգական մելիքությունները՝ Գյուլիստանը, Ջրաբերդը, Խաչենը, Դյուզախը և Վարանդա — այդ ժամանակ կազմում էին մի դաշնակցական միություն, որ ռուսաց ակտերի մեջ[1] հայտնի է անունով «Армянское собрание»։ Այդ միությունը ուներ մոտ 60 հազար զինված մարդիկ, որոնք մի հոգով աշխատում էին վերականգնել Սյունյաց աշխարհում հայոց անկախ իշխանություն։ Միության առաջնորդներն էին՝ Գանձասարի Եսայի և Ներսես կաթողիկոսները, Մելիք-Ավան խանը, Մելիք-Եգանը, Ավան-Յուզբաշին, Մելիք-Բագին, տեր Անտոնը և ուրիշ շատեր։ Դրանք անդադար բանակցություններ ունեին թե Պետրոս Մեծի, թե նրանից հետո Եկատերինա 1-ինի հետ, դեսպաններ էին ուղարկում Ս. Պետերբուրգ, Մոսկվա և դրանց անունով մենք գտնում ենք մի շարք հրովարտակներ, որ գրված են Պետրոս Մեծից ու նրա հաջորդներից, որ վերաբերում են հայոց շարժման գործին։ Բայց այդ բոլորի մասին լուռ է մեր պատմությունը։ Նա մինչև անգամ չէ հիշում անունները այն երևելի դիպլոմատների, որպես էին Իսրայել Օրին և նրա ընկեր Մինաս վարդապետը, որոնք, բացի Ռուսաստանից, եվրոպական այլ պետությունների դռներն ևս անդադար բախում էին հայոց անկախության գործը աջողացնելու համար։ Մելիք-Ավան-խանը (Հովհաննես իշխանը), որ հիշյալ միության

---

[1] «Собрание актов, относящихся к обозрению истории армянского народа», տպված Մոսկվայում 1833 թ.։

պարագլուխն էր, որի անունով կայսրները հրովարտակներ և շահերը ֆիրմաններ էին ուղարկում, այդ երևելի հերոսը, և միևնույն ժամանակ քաղաքագետ անձը, մեր պատմության մի քանի տողերի մեջ հայտնվում է ինչպես մի ստվեր և իսկույն անհետանում է։ Մեր պատմությունը համառոտ տեղեկություններ է տալիս միայն Ղափանի մեջ կատարված անցքերի մասին, որոնց պարագլուխն է Դավիթ Բեկը։

Ինձ նպատակ դնելով ռոմանի ձևի մեջ ամփոփել և ժամանակի պատմությունը, շատ պարզ է, որ մեծ աշխատությունների և ահագին դժվարությունների պիտի հանդիպեի բոլոր հարկավոր նյութերը ձեռք բերելու համար։ Ես այս աշխատությունը, եթե ոչ բոլորովին, գոնե մասամբ լրացրի օտար աղբյուրներից օգուտ քաղելով։ Բայց ինձ դեռ բավական տեղեկություններ մնում են պակաս։ Այս պատճառով ես ընդհատեցի «Դավիթ Բեկի» հրատարակության շարունակությունը «Մշակի» մեջ, դիտավորություն ունենալով անձամբ ճանապարհորդել Սյունյաց աշխարհում և այդ վեպի մնացած մասները իր տեղում մշակել։

Իմ ճանապարհորդության նպատակը ոչ միայն «Դավիթ Բեկը» կատարելագործելն է, այլ, որքան հնար է, նյութեր հավաքել Դավիթ Բեկից հետո հայտնված մելիքների կյանքից և գործունեությունից, որոնք կարող էին ծառայել ինձ առանձին վեպեր կամ պատկերներ ստեղծելու։ Որքան թանկագին է մեզ համար այդ ժամանակների հերոսների հիշատակը անմահացնելը, այնքան ցավալի կորուստ է, երբ նրանք կմոռացվին, կանհետանան մեր անհոգությունից։

Իմ ճանապարհորդությունը կտևե մի քանի ամիս։ Եթե կհաջողվի ինձ հավաքել իմ ցանկացած բոլոր տեղեկությունները, ես կկազմեմ Ղարաբաղի մելիքների ամբողջ պատմությունը, սկսյալ Դավիթ Բեկից մինչև վերջին ժամանակները։ Որովհետև այդ գործը ձեռնահաս անձինքների օգնությանը կարոտ է, այս պատճառով, ես հրապարակավ դիմում եմ այն բոլոր պարոններին, որոնց մոտ կան թե գրավոր և թե բերանացի տեղեկություններ, խնդրելով, որ բարեհաճեն հաղորդել ինձ։ Ես այլապես անկարող եմ վարձատրել ինձ օգնողներին, միայն իմ գրքի առաջաբանի մեջ կհայտնեմ անունները այն բոլոր անձինքների, ումից ինչ տեսակ նյութեր որ ստացած լինեմ։

Առայժմ իմ հրապարակական շնորհակալությունը հայտնում եմ պոլկովնիկ Հ. Դ. Լազրովին, որ ոչ սակավ օգնեց ինձ Դավիթ

Բեկի և նրա գործակիցների մասին նյութեր հաղորդելով։ Այդ համեստ, միևնույն ժամանակ անդուլ աշխատասերը ամբողջ 20 տարի ուսումնասիրում է կովկասյան ցեղերի հին և նոր պատմությունը։ Շատ ցանկալի էր, որ մեծ պարոնը մի օր տպագրությամբ ի լույս ածեր իր ուսումնասիրած պատմական հարուստ նյութերը, որով մեծ ծառայություն արած կլիներ մեր ազգատ գրականությանը։ Ինձ մի քանի տեղեկություններ հաղորդեց մագիստրոս հայր Գաբրիել Պատկանյանը Ս. Պետերբուրգից, որոնց մասին հայտնում եմ իմ խորին շնորհակալությունը։

Խոստացել են նյութեր տալ պպ. պոլկովնիկ Ա. Թ. Մելիք-Հայկազյանը, փաստաբան Հ. Աթաբեկյանը և գրավաճառ Ա. էն-ֆիաջյանցը։

Իմ անունով նամակներ կամ թղթեր կարող են ուղարկվել «Մշակի» խմբագրատանը, որը իր կողմից կհասցնե ինձ։

Ես երկար սպասել չեմ տա «Դավիթ Բեկի» ընթերցողներին. նշանավոր տեղերում իմ ճանապարհորդությունը կատարելուց հետո, պիտի առանձնանամ Տաթևի վանքում, այնտեղից կսկսեմ շարունակությունը ուղարկել «Մշակին»։

## ՆԱՄԱԿ ՎԵՐԻՆ ԱԳՈՒԼԻՍԻՑ

**Սեպտեմբերի 28-ին**

Այս նամակով ուղարկում եմ ձեզ մի թերթիկ հին գրչագրի, որի երկրորդ երեսի վրա կգտնեք երկու տող հայոց նշանագրերի օրինակներ։ Այդ թերթիկը ես վեր առա մի հին գրչագիր Ավետարանից, այժմ ուղարկում եմ ձեզ մեր հայ հնագետներին ցույց տալու, գուցե դա մի փոքրիկ գաղափար կտար մեր հին նշանագրերի մասին։

Նշանագրերի ներքև հայկական նոր տառերով գրված է՝ «Զաfարայ ծառայ սուրբ Գրիգոր Լուսավորչին, սուրբ Յովհաննէս Մկրտչին»: Իսկ այդ տողերի յուրաքանչյուր բառի վրա գրված են նրա համապատասխան նշանագրերը։ Պետք է նկատել, որ ամեն մի բառը ներկայացնում է մի առանձին տեսակ նշանագրեր։ «Զաfարայ» բառը սեպաձև տառերով է գրված. «ծառայ» բառը մի առանձին տեսակ սեպաձև է. իսկ «սուրբ» և «Գրիգոր»

բառերը սեպաձևներ չեն, այլ մի այլ տեսակ նշանագրեր. «լուսաւորչին» բառը նույնպես մի այլ տեսակ սեպաձև է։ Մնացյալ «սուրբ Յովհաննէս Մկրտչին» բառերը հայոց ծածկագրության օրինակներ են։ Մի խոսքով, այդ երկու տողը բավական պարզ գաղափար է տալիս, թե քանի տեսակ նշանագրեր էին գործածում մեր նախնիքը։

Թերթիկի առաջին երեսի վրա գրված հիշատակարանից երևում է, որ հիշյալ Ավետարանը գրված է եղել Վանա երկրի Ավանց[1] գյուղում (այսինքն՝ հայոց բևեռագրերի հայրենիքում) հայոց ՌԽԸ (1048) թվականին, սուրբ Հովհաննես Մկրտչի և սուրբ Գրիգոր լուսավորչի վանքում։ Ուրեմն 283 տարի հնություն ունի։ Երևում է, որ 283 տարի առաջ հայոց հին բևեռագրերը ոչ միայն ընթերցանելի էին մեր գրագետներին, այլ մինչև անգամ գործածության մեջ էին։ Ինչո՞ւ չմտածել, Խորենացին, որ միևնույն երկրիցն էր, ծանոթ չէր բևեռագրների ընթերցմանը իր պատմությունը գրելու ժամանակ օգուտ չքաղեց նրանցից։

Թե հայոց հին բևեռագրների ընթերցումը ծանոթ է եղել մեր նախնիքներին, մինչև անգամ երկու-երեք դար առաջ, դրա համար ուրիշ ապացույցներ ևս կան։ Մի պարոն ինձ խոստացել է տալ մի մագաղաթյա թերթ, որ դուրս է բերել մի հին բառարանից, որի վրա գրված են բևեռագրների այբուբենարանի բացատրությունները։ Երբ ձեռք բերեմ, կուղարկեմ ձեզ։

Եղանակի վատության պատճառով երկու օր ավելի մնացի Ագուլիսում. այսօր դուրս եմ գնում դեպի Պարսկաստան։

## ՀԱՅՈՑ ՄԱՆԿԱԿԱՆ ՊԱՐՏԵԶ ԹԻՖԼԻՍՈՒՄ

Ահա արդեն երկու տարի է Թիֆլիսում տիկին Բաբայանի աջակցությամբ կազմվել է կանանց խումբը, որ կրում է «Ֆրեոբելյան» անունը։

Այդ խմբի գլխավոր նպատակը եղել է պատրաստել հմուտ վարժուհիներ և ուսուցչուհիներ մեր հայոց ուսումնարանների համար. բայց թե որքան է հասել այդ խումբը իր նպատակին, այդ ցույց կտա ամենամոտիկ ապագան։ Ինչ կվերաբերի տիկին Բա-

[1] Ավանց գյուղը գտնվում է Վանա լճակի ափին, Վան քաղաքից 20 վերստ հեռավորության վրա և լճակի նավահանգիստն է։

բայանին, նա արդեն փորձով ապացուցեց իր հմտությունը մանկավարժության մեջ։ Թեև մենք մինչև այժմ առիթ չենք ունեցել մոտիկ ծանոթանալու նրա սեփական մանկական պարտեզի հետ, բայց ով գոնե մի անգամ այցելել է նրա այդ պարտեզը, էլ չէ իմանում, ինչպես գովի։ Այդ մանկական պարտիզում վարժվում էին և վարժվում են Ֆրեոբելյան խմբի անդամները, որոնց մեծ մասը վճռել է իրան նվիրել մանկավարժական գործին, ուրեմն այդ հիմնարկությունը կատարում է մի տեսակ կանանց ուսուցչական սեմինարիայի դերը։

Այդ Ֆրեոբելյան խումբը, որի անդամների թիվը այժմ մինչև երեսունի է հասնում, իր նպատակն է դրել, ասում ենք, որքան կարելի է նպաստել մանկավարժական գործի զարգացման՝ մի կողմից, ինչպես վերև հիշեցինք, հմուտ վարժուհիներ և ուսուցչուհիներ պատրաստելով, իսկ մյուս կողմից՝ հայոց մանկական պարտեզներ բանալով։

Կիրակի օրը, ամսույս 14-ին, մենք ներկա գտնվեցանք այդ խմբի առաջին մանկական պարտիզի բացման հանդիսին։ Սուրբ պատարագից հետո Զրկինյանց եկեղեցու գավթում, այլ խոսքերով քաղաքի մի այնպիսի մասում, ուր հայության նշույլ անգամ չէ երևում, բացի հայոց եկեղեցիներից և հայոց գերեզմանատնից, եկեղեցու գավթում, ասում ենք մենք, կառուցված շինության մեջ, երկու գեղեցիկ, առողջապահական պայմաններին լիովին համապատասխանող, բոլորովին նորոգած սենյակի մեջ հավաքված էր բավականին մեծ բազմություն, որի մեջ գլխավոր տեղը բռնում էին այն երեսուն ծաղիկ–մանուկներ, որոնք ուսումնարանի շատ հասարակ, բայց գրավիչ ֆորմը հագած, շարած կանգնած էին ամբիոնի ձախ կողմը։ Այդ փոքրիկ երեխաների կողքին կանգնած էին Ֆրեոբելյան խմբի բոլոր անդամները։

Այստեղ ավելորդ չեմ համարում նկատել, որ պաշտոնապես հանդիսավոր բացվելուց մի շաբաթ առաջ է բացվել այդ պարտեզը և արդեն մի շաբաթ է, ինչ կանոնավոր ուսում սկսվել է նրա մեջ։ Արդեն պատրաստ են երեխաների համար գեղեցիկ նստարանները, և պատերի վրա կախ արած են մանուկների գրքաղմունքների ու խաղալիքների համար պահելու արկղները, այնպես որ ամեն մի երեխա, ինչպես այդ ընդունված է ամեն մի բարեկարգված մանկական պարտիզի մեջ, ունի իր առանձին արկղը իր զանազան պարագայքը պահելու. այդ արկղների վերե-

վից դարսած էին երեխաների ձեռքով պատրաստած աթոռները սիսեռից ու փայտերից։

Կրոնական ծեսը կատարելուց և ուսումնարանը օրհնելուց հետ Հայր Մամբրե վարդապետը բարձրացավ ամբիոնի վրա։ Գերապատիվ հայր սուրբը, հայտնելով իր սրտի խորին ուրախությունը հայ կանանց գործունեության մասին, աշխատեց բացատրել մանուկների կրթության նշանակությունը իր ատենաբանության հիմնական միտքը ընդունելով այն թե՝ մարդը կորցնում է իր մարդկային նշանակությունը, եթե նա կրթված, դաստիարակված չէ։ Հայր սուրբը հիշեց պատմական այն դեպքը, թե երբ ծնվեց երևելի Ալեքսանդր Մակեդոնացին, նրա հայր Փիլիպոսը իսկույն ևեթ նամակ գրեց երևելի փիլիսոփա Արիստոտելին, հրավիրելով նրան դաստիարակել իր որդուն։ Ահա թե ինչպես էր նայում թագավորը կրթության վրա։ Երկինքը ինձ զավակ պարգևեց, գրում էր նա Արիստոտելին, բայց ես այնչափ ուրախ չեմ զավակին, որչափ նրա համար, որ աստվածները ինձ զավակս շնորհեցին այն ժամանակ, երբ ապրում է այնպիսի փիլիսոփա, որպիսին դուն ես, և որին կարող եմ հանձնել որդուս կրթությունը։ Ես շնորհակալ եմ աստվածներից, որ ինձ միջոց տվեցին որդուս քո ձեռքով դաստիարակելու։

Իր խոսքը հայր վարդապետը վերջացրեց, հրավիրելով հասարակությանը հետևել հարգելի տիկիններին և օրիորդներին, որոնք չեն խնայում իրանց թե բարոյական, թե մտավոր և թե նյութական ուժերը ազգային գործը՝ հայոց երեխաների, փոքրիկ, նյութապես բոլորովին խեղճ երեխաների դաստիարակության համար։

Հայր սուրբից հետո խոսեց թեմական վերատեսուչ պ. Գ. Բարխուդարյանը։ Նրա խոսքերը կարճ, պարզ և ազդու էին։ Նա հիշեց այն, որ մի ժամանակ, երբ հայերի կրոնին՝ քրիստոնեությանը, վտանգ էր սպառնում, հայը ոչինչ չխնայեց իր այդ սրբությունը պաշտպանելու. Նա իր արյունով պաշտպանեց իր կրոնը, իր եկեղեցին։ Հայը աշխատեց ամեն տեղ հաստատ պահել իր կրոնը. Նա այդ նպատակով սկսեց ամեն տեղ կառուցանել վանքեր, եկեղեցիներ, ապացույց խոսքերիս, ասեց պատվելի ատենաբանը, այն ավերակներն են, որոնցով ծածկված է Հայաստանը։ Իսկ այժմ, շարունակեց նա, ժամանակները փոխվել են, փոխվել են նույնիսկ պահանջները. այժմ հայտնվել է պահանջ՝ մանկավարժության զարգացման, այժմ մենք տեսնում ենք, որ

ամեն տեղ բացվում են ուսումնարաններ, ուր պետք է դաստիարակվեն հայ մանուկները։ Ահա ձեր առաջը կանգնած են այդ փոքրիկ երեխաները, այդ երեխաներին նանիկ են ասել օտար լեզվով, գգվել, փայփայել են օտար լեզվով, այդ երեխաներից համարյա ոչ մինը չէ իմանում մի խոսք անգամ իր մայրենի լեզվով և դրանք այստեղ, այս հիմնարկության մեջ, պետք է ստանան այն, ինչ չէ տվել կամ չէ կարողացել տալ ընտանիքը, գերդաստանը. այստեղ այդ մանուկները պետք է դաստիարակվեն, այստեղ պետք է սովորեն իրանց մայրենի լեզուն:

Պ. Թեմական վերատեսուչը իր խոսքը վերջացրեց նույնպես դիմելով հասարակությանը — նյութապես օժանդակել նորաբաց ուսումնարանին, որը պետք է հոգա մանուկների ոչ միայն դասական պարագաների համար, այլև հագուստի ու նախաճաշիկի։

Դրա համար առաջարկվեց հասարակությանը մի մատյան, որի մեջ գրվելու են թե ուսումնարանի բարերարները, որոնք վճարելու են տարեկան 10 ռուբլի և թե միանվագ նվիրատվություններ։

Պ. Թեմական վերատեսուչի ատենաբանությունից հետո աշակերտները և աշակերտուհիները բավականին հաջող երգեցին՝ «Ո՜վ երկնքի և երկրի արարիչ և այլն» երգը և դուրս եկան դահլիճից։

Այժմ մի փոքր պետք է կանգ առնենք հարգելի տիկին Բաբայանի ճառի վրա, որ կես ժամից ավելի տևեց։

Մանուկների երգից հետո ամբիոնի վրա բարձրացավ հարգելի տիկինը և խոսեց իբրև Ֆրեոբելյան խմբի ներկայացուցիչ։ Տիկին Բաբայանը սկսեց իր ճառը կանխապես ներողություն խնդրելով հասարակությունից, որ իրան շփոթված է զգում ամբիոնի սովոր չլինելու պատճառով։ Թեև պատվելի տիկինը համեստաբար հայտնեց իր ամբիոնին անսովոր լինելը, բայց նա այնքան գեղեցիկ, պարզ, առանց շփոթվելու, հավասար ու հաստատ ձայնով խոսեց, որ կարող էր պատիվ բերել ամեն մի եվրոպական ատենաբանի։ Մենք այդ օր առաջին անգամ տեսանք հայ տիկնոջը ամբիոնի վրա խուռն բազմության առաջ խոսելիս... Հայ կինը և հասարակական ամբիոնը։ Ո՞ր հայ մարդու սիրտը չէր բաբախի այդ տեսարանից։ Հայ կինը անվախ, համարձակ բարձրանում է ամբիոնի վրա և խոսում է այնպիսի մի նյութի վրա, որպիսին մանուկների դաստիարակությունն է։ Մենք ակամա հիշեցինք օր. Գլեբովային, որ մի քանի տարի առաջ Կրուժոկի դահլիճում հրապարակական դասախոսություններ կարդաց ռուսաց լեզվի դասատվության եղանակի մասին։ Այն ժամանակ մենք ամենքս

զարմանում էինք մի ռուս օրիորդի վրա, հափշտակված էինք նրա համարձակ և պարզ դասախոսությունով, իսկ այժմ մենք մի ճայ կին ենք տեսնում նույն իսկ դրության մեջ... Հարկավոր էր, այո՛, հարկավոր էր ամեն մի հայի տեսնել, թե որչափ ոգևորված, որչա՜փ համակրելի կարող է լինել հայ կինը ամբիոնի վրա...

Այժմ մենք մի փոքր կկանգնենք հարգելի տիկնոջ խոսքերի վրա։ Ատենախոսը հիշելով կանանց խմբի երկամյա պարապմունքները, ասեց, որ այդ խումբը չէ խնայել իր նյութական միջոցները և այժմ մոտավորապես 800 ռուբլի փող ունի մանկական պարտեզը սկզբում պահպանելու համար։

Հետո պատվելի տիկինը սկսեց բացատրել մանկական կամ մանկանց պարտէզի նշանակությունը ու կարևորությունը, մանավանդ մեզ՝ հայերիս համար, որոնց մեջ բոլորովին զարգացած չէ ոչ հասարակական և ոչ ընտանեկան կյանքը. մանկական պարտեզների նշանակությունը ցույց տալու համար, տիկնոջը հարկավորվեց դիմել մանկական պարտեզի պատմությանը, ուրեմն և՛ Ֆրեոբելին և՛ Դիստերվեգին։ Մենք այստեղ բոլորովին անտեղի ենք համարում կրկնել այն բոլորը, ինչ խոսեց դրա մասին ատենախոսը, միայն չենք կարող չնկատել, որ թեև տիկնոջ դիտավորությունը՝ բացատրել երեխաների ներկա գտնվող անկիրթ ծնողներին, թե ինչ բան է այն մանկական պարտեզը, որի մեջ պետք է դաստիարակվեն նրանց որդիքը, որի մեջ չեն սկսի «այբուբենը» և այլն, թեև տիկնոջ այդ դիտավորությունը, ասում ենք, վերին աստիճանի համակրելի էր, բայց դժբախտաբար պետք է խոստովանենք, որ հարգելի տիկինը հազիվ թե կարողացավ հասնել իր գեղեցիկ նպատակին, որով այն անկիրթ ծնողների համար մեծ մասամբ անօգուտ անցան նրա բացատրությունները Ֆրեոբելի մեթոդի վերաբերությամբ, իսկ հասարակության մյուս մասի համար մի նոր բան չէր կարող լինել այդ հարցի վրա խոսածը։ Մենք չենք կարող մեր զարմանքը չհայտնել այն բանի մասին, որ տիկինը ուզում էր հավատացնել, իբր թե Հայաստանի խորքերում (?!) մենք հանդիպում ենք մի տեսակ հաստատությունների, որոնք հիշեցնում են Ֆրեոբելյան մանկական պարտեզները և գիտեք, ընթերցող, այդ ի՞նչ հաստատություններ են. հարգելի տիկնոջ խոսքը «վարպետների» ընտանեկան ուսումնարանների մասին էր, «վարպետների», որոնք, ինչպես ժողովուրդը ասում է «գիր գիտեն» և որոնք պարապում էին ու մինչև այժմ էլ շատ տեղեր պարապում են երեխաների հետ ասեղնագործությամբ և այլն, և

այլն։ Որչափ զարմացանք և ուրախացանք սկզբում, երբ իմացանք Հայաստանի խորքերում մանկական պարտեզների գոյության մասին, նույնչափ տխրեցանք հետո, երբ իմացանք, որ այդ «մանկական պարտեզները» ոչ այլ ինչ են, եթե ոչ այն տեսակ «ուսումնարան», այն կրթարանը, որտեղ կրթվել է ի միջի այլոց և մայրս։ Մինչև այսօր նա սարսափով հիշում է այն «մանկական պարտիզում» անցկացրած օրերը, հիշում է, ինչպես, երբ երեխան որևիցե կերպիվ տեղից կշարժվեր, նրան «վարպետը», հայկական Ֆրեոբելը, քուրսի մոտ կնստեցներ (իհարկե, պատժվելու նպատակով) և այդ «քուրսի» մոտ կպահեր խեղճ երեխային մինչև տաքությունից ոտները սաստիկ չէին այրվի... Այդ տեսակ պատիժների ցուցակը շատ մեծ է եղել մեր «հայկական մանկական պարտեզներում»... և ես զարմանում եմ թե ինչ նմանություն կարող էր գտնել հարգելի տիկինը այդ բարբարոսական հիմնարկությունների և մանկական պարտեզների մեջ. մի՞թե այն, որ տեղ-տեղ վարպետները երեխաներին բացի իրանց տան մեջ ծառայեցնելուց, սովրեցնում են ձեռագործի մի քանի տեսակները, այլ խոսքերով՝ զարգացնում են մատների ճարպիկությունը... Գուցե մենք որևիցե կերպիվ հարգելի տիկնոջ ասածը այլ կերպ ենք հասկացել. այդ դեպքում մենք երախտապարտ կլինեինք, եթե մեզ մեր սխալը ուղղեին։

Եթե վերև հիշածը բավական է «վարպետների» ուսումնարանների ու մանկական պարտեզների մեջ նմանություն գտնելու համար, ուրեմն մենք նույնպես, կամ առավել ևս կարող ենք նմանություն գտնել մեր «ուստաների» նահապետական գործարանների և արհեստագործական ուսումնարանների մեջ, մեր բազազխանայի ու առևտրական ուսումնարանների մեջ և այլն, և այլն. այդ տեսակ նմանությունը կարելի է գտնել ամեն բանի մեջ, ամեն տեսակ հիմնարկությունների մեջ։

Այնուամենայնիվ, որքան էլ համարձակ լինեին տիկնոջ ենթադրությունները Հայաստանում գտնված մանկական պարտեզների մասին, մեր ամենքիս համակրությունը գրավեց ատենախոսությունը դեպի նորաբաց մանկական պարտեզը, որ հարգելի տիկինը իր խմբի կողմից հանձնեց հայոց հասարակությանը, հանձնեց հոգևոր իշխանության խնամատարությանը։ Չէր կարող հարգո տիկինը շնորհակալություն չհայտնել արժ. հայր Տեր-Ներսես քահանային, որ տարվա ամենաանհարմար եղանակին, համաձայնվեց իր բնակարանի երկու սենյակը տալ մանկական պարտեզի

համար. ատենախոս տիկինը շնորհակալություն հայտնեց նույնպես իր ընկերակիցներից մինին՝ օր. Գայանե Հովհաննիսյանին, որ հանձն է առել վարել տեսչուհու պաշտոնը։

Մոռացանք իր տեղ հիշել, որ տիկինը ակնարկեց և նրա վրա, որ թեև Թիֆլիսում հիմնվեցավ Կանանց բարեգործական ընկերությունը, որի նպատակն է հիմնել նոր ուսումնարաններ և բարեկարգել հիները, այսինքն՝ որի նպատակը մի կողմից մասամբ նմանվում է Ֆրեոբելյան խմբի նպատակին, բայց այնուամենայնիվ Ֆրեոբելյան խումբը և Կանանց բարեգործական ընկերությունը ոչ թե կարող են խանգարել իրար, այլ միմյանց օգնելով, միմյանց ձեռք մեկնելով, միմյանց կլրացնեն և կանանց ընկերության առաջին քայլը գուցե լինի նորաբաց մանկական պարտեզին օգնություն հասցնելը, որի վրա հրավիրեց հիշյալ ընկերության վարչության նախագահի և անդամների ուշադրությունը։

Տիկինը ի միջի այլոց հիշեց և այն հանգամանքը, որ հիշյալ մանկական պարտեզը, իբրև փոքրիշատե կանոնավորված հիմնարկություն, կարող է օգուտ բերել և այն գավառական ուսուցիչներին, որոնք ապագա ուսուցչական ժողովի պատճառով կհավաքվին այս ամառը Թիֆլիսում և որոնք կցանկանան գաղափար ստանալ մանկական պարտեզների վրա։

Մի իրավացի նկատողություն, որի վրա չենք կարող չհրավիրել մեր բոլոր ուսուցիչների ուշադրությունը։ Հասարակությունը բուռն ծափահարությամբ վարձատրեց պատվելի ատենաբանի խոսքերը։

Այնուհետև բացվեց ստորագրություն հօգուտ մանկական պարտիզի։

Այսպես վերջացավ այդ մանկավարժական հանդեսը — հայկական առաջին մանկական պարտիզի բացումն, եթե չհաշվենք տիկ. Բաբայանի մասնավոր պարտեզը, որ միայն հարուստների որդկերանց համար կարող է լինել։

Հայոց եկեղեցուն կից բացվեց առաջին կրթարանը, որի նպատակն է փոքրիկ 4—5 տարեկան հայոց մանուկներին խոսեցնել իրանց մոռացած մայրենի լեզվով, կրթել ազգային հոգվով։

Այդ օրը մի տոնախմբություն էր հայերիս համար, մի տոնախմբություն էր Ֆրեոբելյան խմբի համար.... Այդ օրը Ֆրեոբելի ուրվականը շրջում էր հայոց մանուկների մեջ և իր ձեռքը քսելով նրանց փոքրիկ գլխներին, քաջալերելով ասում էր. «Ձեր կրթության ճանապարհը գտած է. միք վախենա այսուհետև...»։

*Որքա՜ն «ապրի՜ք, վուրթիք. զորանա՜ք» էր լսվում հանդիսականների միջից.... Այդ՝ ծնողները օրհնում էին իրանց բարերարներին....*

*Մի սրտաշարժ տեսարան, մի ապացույց, որ* հայ կինը զարթել է, նա խոսում է, նա գործում է....

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐԻՆ

*Շատերը անհամբերությամբ հարցնում են, թե ինչու է հետաձգվում «Կայծերի» տպագրությունը, արդյոք այդ վեպը տպվելո՞ւ է, թե ոչ։*

*Այդ անհամբերությունը ես բոլորովին իրավացի եմ գտնում, առավել այն պատվելի պարոնների կողմից, որոնք «Կայծերի» բաժանորդ են գրվել, և որոնցից ես փող եմ ստացել։*

*Բայց «Կայծերի» տպագրության մինչև այսօր ուշանալու պատճառը ոչ իմ ծուլությունն է եղել և ոչ մի այլ նպատակ... կային պատճառներ, որոնց ես հրապարակավ անհարմար եմ համարում բացատրել... իսկ գլխավորն այն էր, որ այդ վեպը ես կամեցա բաժանորդագրությամբ տպագրել։*

*Շատ հասկանալի է, երբ մի հեղինակ դիմում է հասարակությանը և նրանից կանխիկ փող է խնդրում, որ փոխարենը գիրք տա, պետք է հավաքված գումարը գոնե այն քանակությանը հասնի, որ ծածկե տպագրության ծախքը։ Բայց դժբախտաբար այդ չհաջողվեցավ ինձ. ես չստացա այնքան բաժանորդներ, որքան սպասում էի, իսկ սակավաթիվ բաժանորդներից գոյացած գումարը թղթի ծախքն անգամ չէր բավականացնում։*

*Մեղադրելու մեր հասարակության սառնասրտությունը ես ցանկություն չունեմ, քանի որ ընթերցանությունը մեր մեջ դեռևս պահանջ չէ դարձել, քանի որ կոշկակարի արդյունաբերությունը շահ է տալիս, իսկ գրական վաստակը դժբախտացնում է գրողին....*

*Այսուամենայնիվ, իմ սակավաթիվ բաժանորդներին երկար սպասել չտալու համար, ես կշտապեմ որքան կարելի է շուտով տպագրել «Կայծերը»։ Ծախքերի պակասը կլրացնեմ պարտքերով։ Վեպի բնագիրը արդեն հանձնված է ցենզորին. Թույլտվություն ստացածին պես կսկսվի տպագրությունը։*

Եվ որովհետև ինձ շատ դժվար էր միևնույն ժամանակ տպագրել թե «Կայծերը» և թե «Դավիթ Բեկի» վերջին հատորը, այդ պատճառով ստիպվեցա «Դավիթ Բեկի» շարունակությունը առժամանակ ընդհատել «Մշակի» մեջ, մինչև «Կայծերի» լույս տեսնելը։

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐԻՆ

«Մեղուի» № 7 առաջնորդող հոդվածի մեջ, պ. Սպանդարյանը, կամենալով ցույց տալ, որ «Մշակը» ոչ միայն հակառակ է եղել «Մեղուի» հոբելյանի կատարվելուն, այլև «մինչև անգամ աշխատել է խափանել նրան»— ի թիվս այլոց ավելացնում է.

«Մշակը» մոռացավ, որ պպ. Բարխուդարյանի, Պռոշյանի, Րաֆֆիի, Աղայանի և ուրիշների հոբելյանները առաջարկելով ակամա մեծացնում է «Մեղուի» հոբելյանի նշանակությունը, որովհետև **դրանց ամենքին միասին** իրենց մտքերովը և իրենց ձգտումներովը ընդհանրապես առած **ամփոփում** է իր մեջ «Մեղուն»։

Հիշյալ միտքը ավելի այլաբանական ձևով կազմակերպելով, պ. Սպանդարյանը շարունակում է.

«Եթե այդ (այսինքն՝ Բարխուդարյանը, Պռոշյանը և մյուսները) և դրանց նման գործողները մի որոշ տարիներում կարող են ժամացույցի մեջ ժամանակի նշանները լինել, «Մեղուն» ինքը ժամացույցն է և սլաքը, որ այդ նշանների վրա պտույտ է անում»։

Այդ տողերը հիշեցնում են ինձ Ղորանի այն տեղերը, ուր Մուհամմեդը, կամենալով ապացուցել իր քարոզած նոր վարդապետության ճշմարտությունը, աշխատում է ցույց տալ, որ բոլոր ժամանակների հայտնի մարդիկ համերաշխ են եղել իր մտքերի հետ և **մուսուլմաններ** են եղել։ Մուհամմեդի ասելով, թե Սողոմոն Իմաստունը, թե Արիստոտելն ու Պղատոնը, և թե մինչև անգամ Աղեքսանդր Մակեդոնացին,— բոլորը **մուսուլմաններ** են եղել։ Ինչպես պ. Սպանդարյանի ասելով, Բարխուդարյանը, Աղայանը, Րաֆֆին, միով բանիվ մեր ժամանակի բոլոր հայ գործիչները **մեղվականներ** են,— «որովհետև դրանց ամենքին միասին իրենց մտքերովը և ձգտումներովը ընդհանրապես առած ամփոփում է իր մեջ «Մեղուն»։ Որովհետև «Մեղուն» ժամացույցն ու սլաքն է, իսկ մնացած գործիչները նրա ժամանակը որոշող նշան-

ներն են։ Եվ բոլորը միասին վեր առած կազմում են մի ամբողջություն...

Թե ի՞նչ կպատասխանեն պպ. Աղայանց, Բարխուդարյանց և Պռոշյանց,— այդ իրենց գործն է։ Իսկ իմ մասին հայտնում եմ, որ ես կատարյալ անպատվություն կհամարեմ «Մեղուի» ժամացույցի սլաքի ներքո ժամանակ որոշող նշաններից մեկը լինել։ Ես երբեք համերաշխ, համամիտ, համակամ չեմ եղել «Մեղուի» հետ և բնավ լինելու չեմ, քանի որ նա իր ուղղությունը չի փոխի։ Ես «Մեղուի» Հոբելյանի տոնախմբությունը համարում եմ մի բիծ հայոց գրականության պատմության մեջ, որը երբեք չի սրբվի։

Գուցե պ. Սպանդարյանին այն է առիթ տվել մտածելու, թե ես համերաշխ եմ «Մեղուի» հետ, որ մենք մեր մասնավոր խոսակցությունների մեջ, շատ հարցերում, շատ անգամ համաձայնվել ենք միմյանց հետ։ Բայց եթե պ. Սպանդարյանը նույն մտքերը գրի առներ և առաջարկեր «Մեղուի» պ. խմբագրին տպելու համար, ես հավատացած եմ, որ պ. Սիմոնյանցը իր խմբագրական կարմիր մատիտով կքաշեր երկու խաչաձև գծեր նրա հոդվածի վրա և կձգեր զամբյուղի մեջ։

Ինքը «Մեղուի» պ. խմբագիրը շատ լավ գիտե, որ իմ և իր լրագրի մեջ ոչինչ առնչություն չկա, ուրեմն և մտքերի ու գաղափարների համերաշխություն լինել նույնպես աներևակայելի է։ «Մեղուի» պ. խմբագիրը գիտե, որ ես «Մշակի» գաղափարների ամենամոլեռանդ» քարոզողներից մեկն եմ և պ. Սիմոնյանցը մի քանի տարի առաջ, կամենալով բացատրել իմ հարաբերությունները այդ լրագրի հետ, բավական հաջողակ կերպով արտահայտեց իր կարծիքը իմ մասին մի հայկական առածով, թե «կճուճը գլորվեցավ, իր խուփը գտավ...»։ Նրա կարծիքով ես կճուճն էի, իսկ «Մշակը» — իմ խուփը։

Այժմ ի՞նչ հրաշքով պ. Սպանդարյանը միևնույն ամանի մեջ գտնում է «Մեղուի» ամբողջ մտքերը...

Պ. Սպանդարյանին պետք է լավ հայտնի լինի, որ «Մշակի» մեջ և «Մշակի» դրոշին պատկանող մեկը չէ կարող «Մեղուի» հետ համերաշխ լինել,— և ոչ «Մեղուն» «Մշակի» մեջ գրողին կարող է իր բարեկամ կամ համամիտ համարել։ Այդ ընդհակառակն, «Մեղուն» միշտ աշխատել է հալածել, հարվածել «Մշակի» կուսակիցներին,— այդ պետք է պ. Սպանդարյանին լավ հայտնի լիներ։ Շեշտում եմ պ. Սպանդարյանին, որովհետև նա ինքը շատ անգամ

փորձել է «Մեղուի» հարվածներն իր անձի վրա, այն ժամանակ, երբ ինքը նույնպես «Մշակի» կուսակցությանն էր պատկանում և «Մշակի» մեջ էր գրում։ Գուցե նա այժմ մոռացել է այդ ապտակները, բայց հետքերը մինչև այսօր էլ մնում են...

Մի բան, որի մեջ հաջորդաբար է վարվել քսանհինգամյա «Մեղուն», մի բան, որի մեջ բնավ չի շեղվել նա իր ուղղությունից,— այդ այն է, որ «Մեղուն» միշտ հալածել է, միշտ հարվածել է իր ժամանակում հայտնված փոքրիշատե արտակարգ ուժերին (որոնց գաղափարների ամփոփումն է այժմ ձևացնում իրեն)։ «Մեղուն» աշխատել է մինչև անգամ բարոյապես մեռցնել նրանց, որ ինքը բարձրանա նրանց դիակների կույտի վրա, բայց միշտ ինքը ցած է գլորվում։ Նա հալածել է Նազարյանցին, Նալբանդյանցին, Այվազովսկուն։ Նա հալածել է և ինձ։ Նա աշխատել է թե դրական վաստակները և թե իմ անձնավորությունը միշտ սև գույնով ներկայացնել հայ հասարակությանը։

Կբերեմ շատ փաստերից մի քանիսը միայն.

Ես գրեցի «Հայ երիտասարդությունը»— «Մեղուն» իր հատուկ քաղաքավարությամբ ինձ կոչեց «թուլուղչի»։

Ես գրեցի «Հայ կինը»— «Մեղուն» իր անմաքուր մատներով սկսեց շոշափել իմ ընտանեկան կյանքը։

Ես գրեցի «Ջալալեդդինը» և «Դավիթ Բեկը» — «Մեղուն սկըսեց ինձ ցույց տալ որպես խռովարար։

Ես գրեցի «Քրդական միությունը» — «Մեղուն» աշխատեց ապացուցել, որ քրդերը ավելի բարձր ազգ են, քան թե հայերը։

Ես գրեցի «Ի՞նչ կապ կա մեր և Թուրքիայի հայերի մեջ» հոդվածը,— «Մեղուն» ինձ հրատարակեց որպես բողոքական։

Դեռ «Խաչագողի հիշատակարանը» տպված չէր, այլ ձեռագրի մեջ կարդացվում էր զանազան շրջաններում,— «Մեղուն» ինձ կոչեց «խաչագող», ա՛յն «Մեղուն», որ մինչև այսօր էլ պաշտպանում է մի անձնավորություն, որը ծածուկ հալել տված խաչերը Թիֆլիսում փութերով վաճառում էր[1]։

Վերջապես ես գրեցի «Խենթը»,— «Մեղուն» նրա մեջ ոչ մի նոր միտք չգտավ, այլ ասաց, որ այդ աշխատությունը «Մշակի»

---

[1] Այդ դեպքում «Մեղուն» մեղադրելի չէ, որովհետև նա ուխտել է լինել հայաստանյանց սուրբ եկեղեցու պաշտպան և այդ պաշտպանությունը պետք է արտահայտե նրանով միայն, որ բոլոր կատարված զեղծումների մասին խոհեմությամբ լռե, ինչպես լռություն է պահպանում Մանկունու և ընկերության կատարած քաջագործությունների վերաբերությամբ։ Ծան. հեղ.

ամբողջ տարիների հայտնած մտքերի (իհարկե վնասակար) ի մի հավաքած ամփոփումն է։ Այդ կարծիքի հետ ես համաձայն եմ։ Միայն հարցնում եմ, ինչպե՞ս կարող է «Խենթի» հեղինակը, որի գիրքը «Մշակի» գաղափարների միագումար արտահայտությունն է, «Մեղուի» հետ համերաշխ լինել։ Մի՞թե «Մեղուն» համակրում է «Խենթի» երազին։

Այդ բոլորից հետո ինձ շատ զարմանալի է թվում, որ «Մեղուն» հանկարծ իր լեզուն փոխում է, և իմ մտքերը և իմ ձգտումները ընդհանրապես առած իր մեջ ամփոփված է համարում։

«Մեղուն» մինչև անգամ այնքան նշանակություն տվեց իմ վեպերին, որ եթե իմ վեպերը չտպվեին «Մշակի» մեջ, այդ լրագիրը ոչ այնքան բաժանորդներ կունենար և ոչ այդքան ընթերցողներ։ Այդ նենգավոր կոմպլիմենտը ես համարում եմ երկպառակության խնձոր, որ նա գլորում է իմ և «Մշակի» խմբագրի մեջ։ Բայց սխալվում է...

Ինչ որ գեղեցիկ է պ. Սպանդարյանի առաջնորդող հոդվածի մեջ, դա է նրա վերջին տողերը. «Մենք կարծում ենք, որ կյանքի մեջ, ուրեմն և պարբերական մամուլում, բարեկամության ժամանակ պետք է լինել — անկեղծ, իսկ հակառակության ժամանակ — ազնիվ»։

Եթե պ. Սպանդարյանը երաշխավոր կլինի «Մեղուի» կողմից իր քարոզած ազնվության, այն ժամանակ մենք բաց կանենք այդ քսանհինգամյա լրագրի հին և նոր համարները և կքննենք, արդյոք արժե՞ր կատարել մի այսպիսի թերթի հոբելյանը, թե՝ ոչ։

## ՄԱՄՈՒԼԻ ԱՆԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

«Ստախոսները հիշողություն չունեն» — ասում է մի հայտնի առած։ Իսկ ես դրա վրա կավելացնեմ, որ ստախոսը իր երեկվա ասածը այսօր մոռանում է և անդադար ինքն իրան հակառակում է։

Այսպես է վարվում «Մեղու» լրագիրը, այսպես է վարվում նրա խմբագիր պ. Սիմոնյանցը։

Երբ «Մեղուի» դեմ մի լուրջ, սառն ու գրական պատշաճի բոլոր արժանավորությունները պահպանած հոդված է տպվում, երբ այդ լրագրի պ. խմբագիրը իրան նեղ տեղը ընկած է զգում, իսկույն խույս է տալիս, և փոխանակ նույնպես լուրջ կերպով

պատասխանելու, թաքչում է իր թերթի գծի տակ, և սկսում է այնտեղից ֆելետոնական մասխարություններով պատասխանել։

«Արձագանքի» մեջ տպվում է մի հոդված, որի մեջ ցույց է տրվում քսանհինգամյա «Մեղուի» քսանհինգամյա ոչնչությունը։ Բայց այդ լրագրի ազնիվ խմբագիրը, փոխանակ իր թերթը պաշտպանելու, դարձյալ ֆելետոնական խեղկատակությամբ ակնարկներ է անում մի պարոնի վրա, թե X-ը և Z-ի փողերի հետ այսպես կամ այնպես վարվեցավ։ Դա ի՞նչ է ապացուցանում։ Դրանով ոչ «Մեղուն» լավ լրագիր կհամարվի և ոչ նրա խմբագիրը փողի հաշիվներում իրան մաքուր պահող մարդ։

«Մշակի» մեջ տպվում է Ախլքալաքի նամակը, որը ներկայացնում է քսանհինգամյա «Մեղուի» կատարած տխուր դերը, որը մերկացնում է նրա այլանդակությունը, և ցույց է տալիս այդ լրագրի պ. խմբագրի ուղղությունը։— Դարձյալ, փոխանակ փաստերի դեմ փաստերով պատասխանելու, հանդես է դուրս գալիս ֆելետոնական մասխարությունը։

Այսպես է պատասխանում «Մեղուի» ֆելետոնիստը (նույն ինքը պ. Սիմոնյանցը) իմ պ. Սպանդարյանի հոդվածի առթիվ գրած նամակին։

Այս տեսակ միմոսություններին առհասարակ չեն պատասխանում, որպես չեն պատասխանում մի փչացած երեխայի սատահակությանը, որին երբ խրատում են, հանդիմանում են, կամ որևիցե նկատողություն են անում նրա անկարգությունների մասին, իսկ նա փոխանակ կարմրելու, փոխանակ զղջալու, սկսում է ավելի անամոթաբար բերանը ծռմռել և զանազան հիմարություններ ասել։ Մանկավարժների ոմանց կարծիքով, այս տեսակներին ուղղելու համար ավելի օգնում է ոչ թե խոսքը կամ խրատը, այլ ծեծը, ապտակը...

Բայց ի՞նչ պետք է անես, մենք մի այնպիսի հասարակության մեջ ենք ապրում, ուր դժբախտաբար խիստ սակավ է այն մարդկանց թիվը, որոնք հասկանում են, թե ինչ բան է մամուլի ազնվությունը։ Իսկ մեծ մասը ամեն մի կինտոյական հայհոյանքից ոչ միայն չի զզվում, այլ մինչև անգամ գովում է, զվարճանում է կարդալով, և ասում է. «տե՛ս, անպիտանը, ի՞նչ լավ քոթկել է...»։

Այս տեսակների ծաղրածության առարկա չդառնալու համար ստիպված ես պատասխանել։

Պ. Սիմոնյանցը ասում է, որ ես չեմ հասկացել պ. Սպանդարյանի հոդվածի միտքը (կարծես պ. Սպանդարյանը ինքը կարող է

պատասխանել, արդյոք ես հասկացել եմ, թե ոչ) թե նա, այսինքն՝ պ. Սպանդարյանը կամեցել է ասել, որ Րաֆֆին իր վեպերով, երբեմն երևացող և երբեմն դադարող կետերից մեկն է, իսկ «Մեղուն» քսանհինգ տարի շարունակ կանոնավորապես գործող լրագիր է, ազգային կյանքում շարունակ մշակող գործիչ է։

Պ. Սիմոնյանցը կարծում է, որ վեպը փռնչու հաց է, և կարելի է ամեն օր, քանի հատ կամենաս թխես, ինչպես քսանհինգ տարի շարունակ թխել է նա «Մեղուի» դատարկ համարները։

Եղել են հեղինակներ, որոնք իրենց ամբողջ կյանքում, քսաներեսուն տարի աշխատել են և միայն մի վեպ են գրել և իրենք մնացել են անմահ և նրանց գիրքը մինչև դարերի վերջը կկարդացվի։ Իսկ եթե այսոր դադարեց «Մեղուն», հինգ օրից հետո ոչ ոք չի հիշի, թե արդյոք եղե՞լ է այս աշխարհում մի որևիցե Սիմոնյանց, թե ոչ։ Նրա անունը կմեռնի իր թերթի հետ։

Բայց պ. Սիմոնյանցը իմ աշխատությունները վեպ չի կոչում, այլ «հեքիաթներ» է համարում այն ևս ծաղրական մտքով. «Դեռևս քննելի են այդ հեքիաթները,— ասում է նա,— թե վիպասանության որ ճյուղին են պատկանում և իրոք արժանի՞ են այդ անունը կրելու»։

Իրավ է, իմ վեպերի մասին, որքան հիշում եմ, մեր պարբերական հրատարակությունների մեջ հիմնավոր կրիտիկա չէ եղել. տպվել են միայն մասնավոր նկատողություններ։ Բայց գրվել է մի ընդարձակ կրիտիկա, այն ևս «Մեղուի» մեջ տպված, կարծեմ 81 թվականում։ Այդ հոդվածի մեջ կրիտիկոսը համեմատելով ինձ մեր մյուս գրողների հետ, առաջին տեղն է տալիս իմ վեպերին, և հայտնում է այն միտքը, որ եթե պետք լիներ մեր գրականությունից մի բան թարգմանել և ցույց տալ օտարազգիներին,—դա պետք է լինի Րաֆֆիի վեպերից և այլն։

Այս տողերը մեջ բերելով ես նպատակ չունեմ որևիցե նշանակություն տալ «Մեղուի» գովասանքներին։ Նրա գովասանքները իմ վերաբերությամբ նույն նշանակությունը ունեն, որպես նրա հայհոյանքները։ Այլ հիշեցի այն նպատակով, որ հաստատեմ իմ հոդվածի սկզբում դրած առածը, թե «ստախոսները հիշողություն չունեն». այսօր այս կասեն, մյուս օրը ուրիշ տեսակ կխոսեն։ Մի քանի տարի առաջ «Մեղուի» կարծիքով իմ վեպերը պատիվ կբերեին հայոց գրականությանը, եթե օտար լեզուներով թարգմանվեին, իսկ այժմ նույն «Մեղուի» ասելով նրանք «հեքիաթներ» են։

Ինչո՞ւ ենք հեռու գնում։ «Մեղուի» միևնույն համարում (№ 11), ուր գծի տակ պ. Սիմոնյանցը իմ վեպերը կոչում է «հեքիաթներ», գծի վերի հարկում տպում է հետևյալ տողերը.

«Գլխավորապես «Մշակին» ամենազորավոր զարկ տվողը և տարածողը եղավ մեր ամենից ճարգելի Րաֆֆին, որը իր գեղեցիկ և գողտրիկ գրչով գրավեց իր ընթերցողների ուշադրությունը յուր մի շարք վեպերով: (Հետո հիշելով վեպերի անունները, շարունակում է.) «Թող ներվի մեզ ասել, որ մեծ Րաֆֆին «Մշակը» բոնի կերպով տարածեց իր գեղեցիկ վեպերը զետեղելով այդ լրագրի մեջ»։

Հիմա որի՞ն պետք է հավատալ, գծի վերին գովասանքների՞ն, թե գծի տակի հայհոյանքներին։ Երկուսն էլ միևնույն համարի մեջ տպված։

Դա նմանվում է այն բանին, երբ մեկը վերևից շողոքորթություններ է անում, իսկ ներքևից ոտքով ծածուկ քացի է տալիս։

Այսպիսի վարմունքի ընդունակ է միայն «Մեղուի» պ. խմբագիրը, որը գոնե այնքան պատկառանք չունի, որ համարձակվում է դարձյալ միևնույն համարի առաջնորդող հոդվածի մեջ խոսել մամուլի ազնվության վրա: Մի՞թե մամուլի ազնվություն է այդ, նույն համարի մեջ մեկին համ մինչև երկինք բարձրացնել, համ աշխատել մրոտելու նրան։

Հիմա դառնանք դեպի «խաչագողների» հարցը։ Ինչպես երևում է, այդ բառը պ. Սիմոնյանցին շատ դուր է եկել, և անդադար գործ է ածում, դարձյալ միևնույն համարում։

Ես հավատացած եմ, եթե անմահ Շիլլերը և «Մշակի» մեջ տպեր իր «Ավազակներ» անունով գեղեցիկ դրաման, պ. Սիմոնյանցը հեղինակին կկոչեր ավազակ, որովհետև նկարել էր մի այնպիսի սարսափելի տիպ, ինչպես է Ֆրանց Մորը։

Նույնպես, եթե Էժեն Սուն հայ լիներ, հայոց լեզվով գրեր իր «Թափառական հրեան», պ. Սիմոնյանցը նրան կկոչեր կամ թափառական հրեա, կամ եգվիտ, որովհետև պաշտելի հեղինակը իրան թույլ էր տվել նկարագրել եգվիտների կեղտոտությունները և դուրս բերել Ռոդենի նման հրեշավոր տիպերը,— մանավանդ, որ հեղինակը եգվիտների հայրենիքից էր և այդ ավելի իրավունք կտար պ. Սիմոնյանցին նրան եգվիտ կոչելու։

Պ. Սիմոնյանցի լոգիկայով, ես էլ «խաչագող» եմ, որովհետև խաչագողների հայրենիքիցն եմ, որովհետև խաչագողների կյանքից մի վեպ եմ գրել։ (Կարծես թե, ես մեղավոր եմ, որ ծնվեցա

ոչ թե Փարիզում կամ Նոր Նախիջևանում, այլ Պարսկաստանում)։

Նույն լոգիկայով Շեքսպիրը Յագո է, իսկ Գյոթեն՝ Մեֆիստոֆել։

Ես ինձ համար փառք կհամարեի և կպարծենայի դրանով, եթե իրավ (ինչպես կամենում է ցույց տալ պ. Սիմոնյանցը) ես Սավրա գյուղացի լինեի, որտեղից դուրս են եկել խաչագողները։ Բայց պարոնը այստեղ էլ սուտ է խոսում, ինչպես ամեն բաներում։ Իմ հայրենական բնակարանը եղել է միշտ և այժմ է Փեյաջիկը։ Այնտեղ է իմ հայրենական տունը, այնտեղ են ապրում այժմ իմ եղբայրները, իմ մայրը — այնտեղ են և իմ կալվածքները։

Կրկնում եմ, ես ինձ համար փառք կհամարեի, եթե իմ հայրը խաչագող լիներ, իսկ ես խաչագողի որդի, և իմ գրչի տակից դուրս գար «Խաչագողի հիշատակարանը»։— Դա ինձ համար ավելի պատիվ կբերեր։ Բայց ես դժբախտություն եմ ունեցել ծընվել հարուստ և ազնվական ծնողներից։

Եթե որևիցե անձի արժանավորությունները (պ. Սիմոնյանցի լոգիկայով) չափվում են նրա ծագումով և նրա տոհմային հատկություններով, թող ներվի ինձ փոքր-ինչ անցնել համեստության սահմանը, և ասել, որ ես իմ հայրենիքում այնպիսի բարձր դիրք ունեի, որ բավական բարձր դրություն ունեցող մարդիկ իմ դռանը նոքարություն էին անում։ Ես մի ամբողջ գավառի հայ ազգաբնակության պետը և ներկայացուցիչն էի. իմ ձեռքի տակով էին անցնում ազգային բոլոր նշանավոր գործերը։ Իսկ իմ հայր Մելիք-Միրզաբեկը, Թիֆլիսի պարսկահպատակ վաճառականների թաջիրբաշի էր, միշտ հարգված արքունի խալաթներով և շքանշաններով։ Մեր ազնվականության տոհմային հրովարտակները, իրենց բոլոր արտոնություններով, նորոգվեցան պարսից ներկա շահի նոր շնորհված բարձրագույն ֆիրմանով։

Ես այս բոլորին մի առանձին նշանակություն չեմ տալիս. ես ինձ այժմ բախտավոր եմ համարում, որ տխուր հանգամանքները ինձ ցած գլորեցին իմ բարձրությունից և ձգեցին մի այնպիսի ասպարեզի վրա, ուր կարող եմ գործել, աշխատել իմ ազգի աղքատ գրականությունը հարստացնելու համար։

Կրկին դառնանք դեպի խաչագողները։ Ես այս կետի վրա պետք է փոքր-ինչ ավելի կանգնեմ, որպեսզի ցույց տամ, թե ինկապես ով է խաչագողը։

Ինքը պ. Սիմոնյանցը այսպես է բացատրվում խաչագողի նշանակությունը. «խաչագողություն է միամիտ ժողովուրդները հանուն սուտ քրիստոնեության, հանուն բարեպաշտության հաբըստահարելը, գողությամբ, խաբեբայությամբ, խարդախությամբ և այլ սրանց նման սխրագործություններով»։ (Պ. Սիմոնյանցը իմ գրած բանը ինձ է ուզում սովորեցնել)։ Հիշյալ մտքերի համեմատ ես կբերեմ մի քանի տող «Խաչագողի հիշատակարանից»։

«Խաչագողը գիտե մարդկային հասարակությունների թույլ կողմերից օգուտ քաղել։ Այդ թույլ կողմերից ավելի դյուրախաբը, ավելի հեշտ հրապուրվողը կրոնական զգացմունքն է: Խաչագողը ամենայն ճարպկությամբ հարստահարում է այդ սրբազան զգացմունքը»։ (Տե՛ս «Մշակ» 21)։

Կարծեմ ես և պ. Սիմոնյանը երկուսս էլ համաձայն ենք մեր մտքերի մեջ։

Հիմա բերենք մի քանի օրինակներ.

Խաչագողություն չէ՞, երբ մեկը 55 թվականներում իրեն ներկայացնում է որպես պարագլուխ այն խմբի, որոնք աշխատում են բողոքականություն տարածել հայերի մեջ, և որոնց վրա Թիֆլիսի փողոցներում քարեր էին գցում,— իսկ երբ միևնույն պարոնի համար գցեցին մի հայոց դպրոցի դռանը մի կտոր հաց, նա թողեց բողոքականությունը և սկսեց իրեն ձևացնել լուսավորչական եկեղեցու ջերմ պաշտպան, որովհետև վերջինը ավելի շահավետ էր։

Բերենք ուրիշ օրինակներ ևս.

Խաչագողություն չէ՞, իր ամբողջ կյանքում այս և այն հայր սուրբի հետ մասլահաթներ անել, ամեն ստորություն հանձն առնել, և մինչև անգամ կավատության պաշտոն կատարել, որ կարելի լինի նրանց քսակի ծուծը ծծել։

Խաչագողություն չէ՞, իրան ձևացնել բարոյականության դաստիարակ, և մի սուրբ հիմնարկություն սոդոմ դարձնել։

Խաչագողություն չէ՞, ներելի համարել զգեստներ, խաչեր և արծաթյա անոթներ հալելը, թանգարաններ կողոպտելը, և հանուն լուսավորության, հանուն կրոնի, հարյուր հազարներ հավաքելը և օտար երկիր ուղարկելը։

Այսպիսի շատ օրինակներ կարող էի բերել ես, բայց այդքան էլ բավական է, ցույց տալու համար, որ հանուն եկեղեցու, հա-

նում կրոնի միամիտ ժողովրդին հարստահարելը — խաչագողություն է։ Եվ ինքը պ. Սիմոնյանցը միևնույնն է ասում։

Այդ էլ մի տեսակ խաչագողություն է, անդադար բարձրաձայն գոռալ, գոչել.— Ով հայեր, սիրելի ազգ, պահպանեցեք մեր թերթը, որովհետև մենք ձեր կրոնի և եկեղեցու պաշտպանն ենք։ Մենք պահպանում ենք ձեր հավատը Ամիրխանյանցի որոգայթներից։ Եթե մենք ձեզանից 10 ռուբլի կառնենք, և մեր թերթի ճակատին կգրենք «ամենօրյա» վերնագիրը,— իսկ հետո ձեզ կխաբենք և շաբաթը երեք անգամ կտանք մեր թերթը, դուք սիրելի հայեր, դրա վրա չպիտի բարկանաք, որովհետև մենք ձեր եկեղեցու պաշտպանն ենք. եթե մենք չլինենք, Ամիրխանյանցը կքանդե ձեր եկեղեցին։ Եթե մենք ձեզանից ակցիաներով հազարներ կառնենք, բացի դրամագլխից և դիվիդենտ կխոստանանք, իսկ հետո ձեր փողերը կխժռենք,— դուք սիրելի հայեր, այդ մասին ձայն մի հանեք, որովհետև մենք ձեր եկեղեցին պաշտպանում ենք Ամիրխանյանցի դեմ։ Երբ որ մենք սարքելու լինենք հոբելյանի կոմեդիան, դուք մեզ փողեր և ընծաներ ուղարկեցեք, որովհետև մենք ձեր եկեղեցին պաշտպանում ենք Ամիրխանյանցի դեմ։

Եվ այսպես մի՛շտ Ամիրխանյանց, մի՛շտ Ամիրխանյանց և ամեն դեպքում Ամիրխանյանցը բավական հրապուրիչ առիթ է միամիտ ժողովրդի կրոնական զգացմունքը հարստահարելու համար։

Պետք է խիստ թշվառ համարել մի եկեղեցու դրությունը, երբ նրա քանդողը կլինի Ամիրխանյանցը, իսկ պաշտպանը՝ «Մեղուն»։ Այդ կեղծավորները փարիսեցությունը հասցնում են մինչև այն աստիճանի, որ աշխատում են հավատացնել հայոց ժողովրդին, որ եկեղեցին ամբողջ տասնութ դար ազգի հոգու, մտքի և սրտի հետ միացած եկեղեցին, խաղաթղթի պատառներից շինված մի տնակ է, որ կազմում են երեխաները, և եթե Ամիրխանյանցը փչելու լինի, իսկույն կքանդվի։

Այս բոլորը ինձ հիշեցնում է մի աղվեսի առակ։

Արագիլը բույն էր դրել հաստաբուն, բարձրադիտակ կաղնի ծառի վրա, որի կատարը հասել էր մինչև ամպերը։ Նա իր հոյակապ բույնի մեջ խաղաղությամբ ապրում էր և կերակրում իր ճտերին։ Հանկարծ խորամանկ աղվեսը մտածեց օգուտ քաղել արագիլի միամտությունից։ Նա ամեն օր գալիս էր թրխկացնում էր ծառի բունին և ձայն էր տալիս. «Ցած գցիր ճտերիցդ մեկը, որ ես ուտեմ, դու չե՞ս իմանում, որ ես եմ պահպանում քո բույնը.

ամեն օր փայտ կրողը գալիս է, ուզում է այս ծառը կտրել, բայց ես արգելում եմ, չեմ թողնում։ Եթե նա ծառը կտրելու լինի, քո բույնը կքանդվի և քո ճտերը էլ կենդանի չեն մնա»։ Միամիտ արագիլը հավատում է նրա խոսքերին և ամեն օր տալիս էր իր ճտերից մի-մի հատ, որ նա ուտի, որպեսզի իր բույնը հաստատ մնա և գոնե մնացած ճտերը ազատվեն վտանգից։ Մի անգամ օդի միջից անցնում էր թռչունների արքան՝ արծիվը։ Երբ նա լսեց աղվեսի միևնույն խոսքերը, ասաց նրան. «Տո՛, ողորմելի թշվառական, դու ի՞նչ ես, որ կարողանաս պահպանել այդ հաստարմատ կաղնին փայտ կտրողից. դու քո փորի համար ես միայն մտածում...»։ Այդ խոսքերի հետ արծիվը իր զորավոր ճանկերով հափշտակեց մերձակա բլուրից մի ժայռի կտոր, և վերևից նետեց խաբեբայի գլխին։ Նա հոգին տվեց, ասելով. «Իմ մեղքերի համար պատժեց ինձ աստված...»։

Այսքանը բավական է խաչագողի և խաչագողության մասին։ Պ. Սիմոնյանցի գրվածքի մեջ մնում է երկու կետ, որ չեմ կարող առանց պատասխանի թողնել։

Պ. Սիմոնյանցը մութ կերպով խոսում է ինչ որ անցքի վրա, իբրև թե մեկին թարս նստեցրել են էշի վրա, երեսին մուր են քսել, փողոցներում պտտեցրել են և հետո արտաքսել են մի քաղաքից։ Հետաքրքիր կարիկատուրա է. մի այսպիսի պատկեր կարող էր ստեղծել միայն պ. Սիմոնյանցի հիվանդոտ ֆանտազիան։

Եթե պ. Սիմոնյանցը այդ էշավարի պատմությունով կամենում է ակնարկել իմ Պարսկաստանից ազատագրվելու մասին, ես կպատմեմ եղելությունը՝ որպես կատարվել է, իհարկե, շատ համառոտակի կերպով։

Թավրիզում մի քանի խարդախ հայեր ինձ մատնեցին կառավարությանը։ Իմ Պարսկաստանի մասին տպված գրվածքներից շատերը (նրանց հետ ավելացնելով և այնպիսի գրվածքներ, որ բոլորովին իմ հեղինակությունը չէին) թարգմանելով ներկայացրին պարսից թե հոգևոր և թե մարմնավոր իշխանությանը։ Աշխատեցին ինձ մեղադրել կառավարության առջև, որպես քաղաքական հանցավոր, իսկ հոգևոր իշխանության առջև՝ որպես մահմեդական կրոնի հայհոյիչ։ Թավրիզի մուշտայիդը (մոլլաների գլխավորը) մահապարտության վճիռ տվեց իմ վերաբերությամբ։ Այդ վճռից հետո ամեն մի մահմեդական փողոցում պատահած ժամանակ իրավունք ուներ ինձ սպանել և անպատիժ մնալ։ Իմ տունը քարկոծում էին, գիշերները հրացաններ էին արձակում իմ տան

վրա։ Իմ կյանքը վտանգի մեջ էր։ Մոլեռանդ մահմեդականները կատաղած էին իմ դեմ։

Ատրպատականի փոխարքա և Թավրիզի գլխավոր կառավարիչ Սահաբ-դիվանը, քննելով մատնությունը, գտավ, որ դա մի քանի խարդախ հայերի ինտրիգա էր իմ դեմ և ավելի ոչինչ։ Բայց իմ կյանքը գրգռված ամբոխի կատաղությունից զերծ պահելու համար, Սահաբ-դիվանը մի շաբաթվա չափ ինձ պահեց իր տանը, հետո խորհուրդ տվեց առժամանակ հեռանալ Պարսկաստանից, մինչև հուզմունքը դադարի։ Ինձ տվեցին կառավարության սուրհանդակներ։ Ես ստացա անձնագրեր ռուսաց հյուպատոսարանից և պարսից դիվանխանայից, գիշերով թողեցի Թավրիզը, և երկրորդ օրվա առավոտը արդեն գտնվում էի ռուսաց հողի վրա։

Այդ անցքի մեջ միջամտություն է գործել Պարսկաստանի առաջնորդ Անդրեաս եպիսկոպոսը, այդ անցքի մեջ միջամտություն են գործել մի քանի հյուպատոսներ. այդ անցքի մասին հեռագրեր են գնացել Թեհրան և այնտեղից պատասխաններ են ստացվել,— վերջապես այդ անցքը հայտնի է Պարսկաստանի բոլոր հայերին, դա ծածուկ բան չէ, ամենքը գիտեն, որ ես մատնության զոհ եմ եղել, հալածվել եմ, բայց իմ պատվի դեմ ոչ մի անարգանք չի կատարվել։

Եվ ինչ զարմանալի բան է, որ Պարսկաստանի պես մի երկրից, ուր կամայականությունը տիրում է օրենքի տեղ, տարեգրել են ինձ։ Ես մի փոքրիկ ազգի փոքրիկ գրողն եմ։ Բայց այս տեսակ հալածանքներ պատահել են ամենամեծ ազգերի մեջ ամենամեծ գրողների վերաբերությամբ։ Ֆրանսիան մի ժամանակ աքսորեց իր միջից Վիկտոր Հյուգոյին, իսկ այժմ պաշտում է նրան։ Բանտը, աքսորը, հալածանքը վիճակված է եղել մի քանի ամենանշանավոր բանաստեղծներին և դրա մեջն է նրանց փառքը։

Պ. Սիմոնյանցը խոսում է մի Հ... Մ.-ի մասին ևս և իբր թե այդ անձը 72 թվից հետո (լավ հիշեցեք 11 տարի առաջ) Թավրիզից նամակով դիմել է նրան, առաջարկել է նրա թերթին թղթակցել և աշխատակցել, և այդ նամակը պահվում է «Մեղուի» խմբագրատանը և այլն։ Հետո նա խորհուրդ է տալիս ինձ, որ ֆալչիներից հարցնեմ, թե ով է այդ Հ... Մ...ը։

Առանց ֆալչիներից հարցնելու ես գիտեմ, որ հիշյալ անձը ես եմ եղել։ Իրավ է, ես իմ կյանքում մի անգամ դժբախտություն եմ ունեցել պ. Սիմոնյանցին մի նամակ գրելու։ Բայց թե ի՞նչ առիթով,— ահա՛ այստեղ է հետաքրքիր կետը, որ պ. Սիմոնյանցը

իր սովորական ձևով հեղաշրջելով, կամենում է ցույց տալ, իբր թե ես դիմել եմ նրան, խնդրելով, որ ինձ ընդունել իր թերթի աշխատակից:

Ահա՛ իրողությունը։ Թավրիզում գտնված ժամանակ ես տեղային ազգային ընթերցարանի գրադարանապետ էի։ Որպես պաշտոնական մարդ, ընթերցարանի կողմից պաշտոնական ձևով հայտնելով, թե ընթերցարանը հայոց բոլոր պարբերական հրատարակությունները ստանում է ձրի, և խնդրեցի, որ ինքը ևս բարեհաճի մի օրինակ «Մեղու» ձրիաբար ուղարկել ընթերցարանին։ Միևնույն նամակում հայտնեցի, եթե չի կամենա ձրի ուղարկել, ես նրա թերթի տարեկան վճարի փոխարեն կուղարկեմ մի թղթակցություն (և ոչ երկուսը)։

Հիմա դատեցեք, մի՞թե դա նշանակում է, թե ես առաջարկել եմ թղթակցել «Մեղուին»։ Եվ դիցուք, թե ճշմարիտ լիներ այդ. մի՞թե պ. Սիմոնյանցը իր թերթը այն աստիճան խայտառակ բան է համարում, որ նրան աշխատակցելու իրավունքը կարող էր ինձ համար անպատվություն համարվել, որ իմ երեսին է տալիս իբրև մի հանցանք։

Վերջացնում եմ իմ պատասխանը մի երկու տող ևս ավելացնելով։ Երևում է, որ պ. Սիմոնյանցը հոբելյանի կոմեդիայից հետո և արծաթե պսակ ստանալուց հետո բավական հպարտացել է։ Բայց այս տեսակ վատ միջոցներով և զանազան արհեստական հնարներով ձեռք բերած արծաթե պսակը ավելի շուտ է հնանում, ավելի շուտ է ոչնչանում, քան թե իմ մաշված հողաթափները...»

## Գ. ՀԱՅԿՈՒՆՈՒ ԿՐԻՏԻԿԱՆ ԵՎ «ԿԱՅԾԵՐԸ»

Լավ կրիտիկոս լինելու համար պետք է առանձին ձիրք ունենալ։ Լուսավոր ժողովուրդների մեջ շատ անգամ լինում են հարյուրավոր գրողներ, բայց մի կամ երկու լավ կրիտիկոս։ Մեզ ավելի ծանոթ ռուսաց գրականության մեջ մինչև այսօր, իբրև կրիտիկոս հայտնի են երկու անձնավորություններ միայն՝ Բելինսկի և Դոբրոլյուբով, բայց բանաստեղծներ և վիպասաններ համեմատաբար ավելի շատ են ունեցել ռուսները։ Այդ պատճառով, բոլորովին սխալ կլինի մտածել, թե կրիտիկա գրելը ամեն մի փոքրիշատե զարգացած մարդու գործ է։ Կրիտիկոսի տաղանդի հետ

պետք է և միացած լինեն այնպիսի ձիրքեր, այնպիսի պայմաններ, որոնք ամեն մարդու տված չեն։ Բացի բավականաչափ և բազմակողմանի հմտություններ ունենալուց, կրիտիկոսը պետք է ունենա և այնպիսի մտավոր և հոգեկան հատկություններ, որոնց շնորհում է մարդուն ինքը՝ բնությունը, որոնց անկարելի է ձեռք բերել գրքերի կամ գիտության միջոցով։ Նա պետք է ունենա խորին և ազնիվ զգացմունք, որն է աղբյուրը անկողմնապահության, որը թույլ չէ տալիս քննադատին անձնատուր լինել կրքերին։ Նա պետք է ունենա կրթված, զարգացած ճաշակ, ճանաչելու և գնահատելու գեղեցիկը և վայելուչը։ Նա պետք է ունենա բոցավառ սեր դեպի ստեղծագործական արհեստը, և բնավ կանխակալ նախապաշարմունքներով չի պիտի մերձենա դեպի այն գիրքը, որը իր քննադատության առարկա է ընտրել։ Եվ որ ամենագլխավորն է, նա պետք է ունենա դիտողական ընդունակություն, հայացքների ճշտություն և ընդարձակություն, բազմակողմանի կերպով ուսումնասիրելու քննելի առարկան, որպեսզի նրա նկատողությունները նեղ և միակողմանի չլինեն։ Կրիտիկոսի հանձն առած պարտավորությունը բարձր է և ծանր։ Ոչ ոքից այնքան չի պահանջվում սեր դեպի ճշմարիտը, դեպի արդարը, որպես կրիտիկոսից։ Նրա պաշտոնը դատավորի պաշտոն է։ Եթե մեղադրվածը հանցանք է գործել, նրա համեմատ էլ պատժվում է։ Բայց երբ որ դատավորը մեղանչում է արդարության դեմ, նրա պատիժը պետք է լինի ավելի սաստիկ։

Ինչպես արդար և խղճմտավոր դատավորի համար զանազանություն չունի, թե ինչ կրոնի և ազգության է պատկանում մեղադրվածը, այնպես էլ ճշմարիտ կրիտիկոսի համար պետք է զանազանություն չունենա, թե ի՛նչ բանակի կամ կուսակցության է պատկանում հեղինակը։ Նա պետք չէ նայե, թե ո՛վ է գրողը, բայց պետք է նայե, թե ի՛նչ է գրածը։ Կուսակցական հոգին տեղ չունի ազնիվ կրիտիկայի մեջ։ Կրիտիկան նայում է իր քննելի առարկայի վրա որպես արհեստի և ստեղծագործական արդյունքի վրա, բայց թե ո՛վ է արդյունաբերողը՝ նրա համար միևնույնն է։

Ամեն մի քննադատական հետազոտություն, որ առաջնորդվում է ոչ թե արհեստի և ստեղծագործության պայմանների տեսակետից, իսկ մի այլ, և քննելի առարկային բոլորովին չվերաբերվող նկատումներով,— մի այսպիսի հետազոտություն կրիտիկա չէ, այլ պոլեմիկա է, որքան էլ նա համեստ և քաղաքավարի կերպով գրված լինի։ Պոլեմիկա ասելով ես չեմ հասկանում կռիվ,

կամ հակաճառություն, այլ կարծիքների այն կերպով հայտնելու ձևը, որ ներշնչված է կուսակցական հոգով։ Կրիտիկայի նպատակը բարձր է, իսկ պոլեմիկայինը՝ ստոր։ Իսկ մեզ մոտ մի կարծիք այս կամ այն աշխատության մասին կոչվում է կրիտիկա։ Կրիտիկան հիմնվում է լայն մտահայեցողության վրա, հետազոտում է քննելի առարկան ամեն կողմից, իսկ պոլեմիկան որոնում է նեղ մանրամասնություններ, անձնատուր է լինում չնչին բծախնդրություններին։

Զանազան ազգերի մոտ նայելով ընթերցող հասարակության զարգացման աստիճանին, կրիտիկան նս իր աստիճանը պետք է ունենա։ Մեզ մոտ դեռ կրիտիկայի բարձր փիլիսոփայական հետազոտությունները անհասկանալի կլինեն։ Մեզ մոտ կրիտիկոսը պետք է այն գործը կատարե, ինչ գործ որ կատարում է աստվածաբանը սուրբ գրքերի մեկնաբանության մեջ։ Ստեղծագործության և տաղանդի ամեն մի արդյունքը սուրբ է։ Կրիտիկոսը պետք է բացատրե, լուսաբանե և ավելի պարզ կերպով պետք է երևան հանե այն գաղափարները, որ թաքնված են մի գրական աշխատության մեջ, և որոնք անզարգացած ընթերցողը ըմբռնել չէ կարող։ Մեզ մոտ կրիտիկան պետք է դաստիարակող լինի, պետք է կրթական նշանակություն ունենա,— պետք է ժողովրդականացնե այն բարձր ճշմարտությունները, ինչ որ հեղինակը վիպական ձևով արտահայտել է իր աշխատության մեջ։

Այդ ասելով ես ամենևին նպատակ չունեմ հայտնելու, թե կրիտիկոսը պետք է աչքը գոցե իր քննելի առարկայի թերություններին վրա կամ պետք է լռե, երբ կնկատե նրա մեջ վնասակար գաղափարներ։ Բայց չպիտի մոռանանք և այն, որ կրիտիկան զանազան տեսակետներ ունի։ Ա՛յլ է նայել մի գրական աշխատության վրա նրա գեղարվեստական կողմից, ա՛յլ է նայել նույն աշխատության վրա նրա տենդենցիայի կողմից։ Կարող է տենդենցիան վնասակար լինել և մինչև անգամ անբարոյական լինել, բայց դրանով աշխատությունը չի կորցնում իր նշանակությունը, երբ նա գեղարվեստական կողմից կատարելագործված է։ Մի բարոյագետ նայելով Վեներայի արձանի վրա, կվրդովվի տեսնելով նրա մերկությունը, մի արհեստագետ կհիանա, երբ կնկատե նրա մեջ հանճարի և ստեղծագործության հրաշալիքը։ Մենք շատ անգամ մեծ ուրախությամբ երգում ենք այս և այն բանաստեղծի երգերը գինու, գեղեցիկ կնոջ և սիրահարությունների վրա, թեև շատ լավ գիտենք, որ գինին, գեղեցիկ կինը, սիրահարությունները

մարդու կյանքի նպատակը չեն կազմում, բայց երգում ենք, թեև երգը իր տենդենցիայի կողմից դատարկ է, բայց իբրև բանաստեղծություն գեղեցիկ է։ Այդ օրինակները մեջ բերելով, ես ինձ ամենևին կուսակից չեմ համարում այն մտածողների հետ, որոնք ընդունում են գեղարվեստը միայն գեղարվեստի համար։ Գեղարվեստը միայն այն ժամանակ պետք է կատարյալ համարել, երբ արհեստի գեղեցկության հետ միանում են բարձր, վսեմ և հանրամարդկային գաղափարներ։ Բայց այդ բարձրը, այդ վսեմը, այդ հանրամարդկայինը այնքան վիճելի բաներ են, որքան հայացքների և կարծիքների տարբերություն կա մեր աշխարհում։ Ինչ որ մեկի կարծիքով օգտավետ է, բարի է, մյուսի կարծիքով կարող է չար և վնասակար համարվել։ Ինչ որ մեկի ճաշակով գեղեցիկ է, վայելուչ է, մյուսի ճաշակով կարող է տգեղ և անվայել երևալ։ Այդ պատճառով կրիտիկոսի անձնական հայացքները, նրա սեփական կարծիքները չեն կարող չափ լինել ընդհանրության համար, երբ նրանք հիմնված չեն ժամանակի լուսավոր և առաջադեմ մտածությունների վրա։

Շատերը վիճել են այն հարցի մասին, թե ազգերի գրականության մեջ արդյո՞ք կրիտիկան առաջ է ծնվում, թե՞ նա հայտնվում է միայն այն ժամանակ, երբ գրականությունը ծնունդ է առնում և մի որոշ հասակի է հասնում։ Ես այդ վեճը վճռելու նպատակ չունեմ, միայն այսքանը կասեմ, որ քննելու համար պետք է քննադատության առարկա լինի, երբ գրականությունը չկա, կրիտիկա էլ լինել կարող չէ։ Դրանով պետք է բացատրել այն երևույթը, որ մեր մանուկ գրականության մեջ, սկսյալ Աբովյանից մինչև Րաֆֆին մի լավ կրիտիկոս չենք ունեցել։ Մեզանում սովոր են ամեն մի ռեցենզիա, ամեն մի հարևանցի կարծիք այս և այն գրական աշխատության մասին կոչել կրիտիկա։ Բայց կրիտիկայի նպատակը ինչպես վերևում հիշեցի, շատ բարձր է, շատ ընդարձակ է։ Երանելի՜ են այն հեղինակները, որոնք իրենց ժամանակներում հանդիպել են ճշմարիտ և խելացի կրիտիկոսների։ Բայց եղել են տաղանդներ, մինչև անգամ հանճարներ, որոնք դարերով մնացել են անհայտության մեջ, մինչև դուրս է եկել մի կրիտիկոս և անմահացրել է նրանց բարձր նշանակությունը։

Այդ ընդհանուր դատողություններից հետո, ես դառնում եմ դեպի պ. Հայկունու կրիտիկան, որի քննադատությունը հոդվածիս նպատակն է։

Հիշյալ կրիտիկան տպվեցավ «Մեղուի» մեջ և լցրեց այդ լրագրի ութ համարների ամբողջ բանասիրական մասը[1]։ Իբրև կրիտիկա նայել այդ աշխատության վրա, բոլորովին սխալ կլիներ, որովհետև նա զուրկ է կրիտիկայի համար ընդունված բոլոր պայմաններից, զուրկ է լոգիկայից և որ ամենագլխավորն է, զուրկ է արդար, խղճմտավոր և անկողմնապահ քննադատության հատկություններից։ Պարոնի կրիտիկան կրքի, նախանձի, ատելության մի ողորմելի արտահայտություն է, և ավելի ոչինչ։

Նրա մեջ ամեն բան կա, ինչ որ պ. կրիտիկոսը մի անգամ լսել կամ տեսել է իր կյանքում, բայց բոլորը խառնիխուռն և անկապ կերպով դիզված միմյանց վրա։ Նրա մեջ կան զանազան հեղինակների և գրքերի անուններ, որոնց, որպես երևում է, չէ կարդացել պարոնը։ Նրա մեջ մտցրած է «Մշակի» խմբագիր Գրիգոր Արծրունուն, հայ բողոքականների քահանա Ամիրխանյանցին։ Նրա մեջ մտցրած է Պետրոս Սիմոնյանցի գդակը, Րաֆֆիի մաշված հողաթափները և ուրիշ շատ դրանց նման բաներ, իսկ այդ բոլորը ի՞նչ կապ ունի «Կայծերի» հետ,— դժվար է հասկանալ։

Առանց պ. Հայկունու հետ ծանոթ լինելու, առանց նրա գրասեղանի մոտ երբեք նստած լինելու, կարելի է ասել, թե ինչպես է կազմել պարոնը իր երկար ու ձիգ հոդվածը։ Նրան պատվիրել են Րաֆֆիին մի լավ «շինել», և նա կույր հնազանդությամբ հանձըն է առել այդ գործը։ Սկսել է գրել առանց նախապես իր համար մի հասկացություն կազմելու, թե ինչ պետք է գրել։ Դուրս են եկել առաջին, երկրորդ, երրորդ համարները։ Փողոցում նրան նկատողություն են արել, պարոն դու կրիտիկա ես գրում, դու մի վեպ ես քննում, բայց նրա գեղարվեստական արժանավորությունների կամ թերությունների մասին ոչինչ չես խոսում։ Պարոն կրիտիկոսը նեղ տեղն է ընկնում։ Նա չգիտե, թե ինչ բան է վեպի գեղարվեստական արժանավորությունը կամ թերությունը։ Բայց պետք է մի կերպով այդ նեղ դրությունից դուրս գալ, և տգետ չերևալու համար իր հոդվածի շարունակության մեջ, պատահած տեղում խցկում է հետևյալ տողերը.

««Կայծերի» վրա նայել ինչպես մի գեղարվեստական (բանաստեղծական) գրվածքի վրա, դա նշանակում է ոչ մի գաղափար և ճաշակ չունենալ Պառնասի մուսաների ստեղծագործության մասին»... «Որովհետև «Կայծերի» հեղինակը «Խենթի» հա-

[1] №№ 31, 32, 33, 34, 35, 36, 37, 39։

վատարիմ հեղինակն է, իսկ պ. Րաֆֆիի այդ աշխատությունը նա մի օր անվանեցի մի փառավոր ճեճիար։ Արդարությունից չշեղված լինելու համար պ. Րաֆֆիի այս վերջին աշխատության վրա ես ավելացնում եմ, ընթերցող, գույն բաղդատական մասնիկը և ասում՝ «Կայծերը» փառավորագույն հեքիաթ է»։

Տեսնո՞ւմ եք, որքա՜ն բարձրից են հնչում այդ խոսքերը, որքա՜ն փքված են նրանք, որքա՜ն ինքնավստահություն կա նրանց մեջ։ Պ. Հայկունին մի ժամանակ ասել է «Խենթը» մի փառավոր հեքիաթ է, հիմա էլ ասում է «Կայծերը» փառավորագույն հեքիաթ է. պրծավ, գնաց, էլ ի՞նչ գեղարվեստ կարելի է որոնել հեքիաթի մեջ։

Պարոնը, ինչպես երևում է, այնքան տգետ է, որ չի հասկանում հեքիաթի նշանակությունը կամ ի՛նչով է զանազանվում հեքիաթը վեպից։ Ոչ Րաֆֆին և ոչ էլ նրանից շատ բարձր գրողներ չեն կարող մի որևիցե հեքիաթ հորինել։ Հեքիաթը մի անհատի ստեղծագործություն չէ, հեքիաթը մի ժողովրդի երևակայության ծնունդն է. նրա հեղինակը ինքը ժողովուրդն է։ Բանաստեղծը կարող է և իրավունք ունի (ինչպես շատերը արել են) վեր առնել ժողովրդի բերնից մի հեքիաթ և նրան մի առանձին ձև ու գույն տալով, վերաստեղծել նրանից մի ամբողջ դրամա կամ մի ամբողջ վեպ։ Բայց այդ վեպը, այդ դրաման այլևս հեքիաթ չի լինի, նա հեքիաթ էր այն ժամանակ, երբ դեռ իր բնական պարզության ու կոշտության մեջ գտնվում էր ժողովրդի բերնում։ Մեր գրականության մեջ պ. Աղայանցի «Անահիտը» առնված է մի ժողովրդական հեքիաթից։ Բայց ո՞ր քննադատը կհամարձակվի ասել, թե նա հեքիաթ է, քանի որ այդ հեքիաթը հեղինակի գրչի տակ բոլորովին ուրիշ ձև և կերպարանք է ստացել։

Ցանկալի կլիներ, որ պ. Հայկունին ցույց տար, թե ո՞ր հեքիաթներից է կազմել Րաֆֆին իր «Խենթը» և «Կայծերը», գանձ այդ հետաքրքիր կլիներ մեր գրականության պատմության համար, որ մեր ժողովրդի երևակայությունն էլ ընդունակ է ստեղծել հեքիաթներ։

Բանը դրանում չէ, պ. Հայկունին կոչում է «Կայծերը» փառավորագույն ճեճիար, որ իր յախան պրծացանե, որ ցույց տայ, ինչպես ինքն ասում է, «Կայծերի» մեջ նրա համար միայն չի գտնում գեղարվեստական կամ բանաստեղծական արժանավորություններ, որովհետև այդ աշխատությունը վեպ չէ, այլ հեքիաթ է։ Դրանում էլ պ. կրիտիկոսը ցույց է տալիս իր խորին անհասկացողությունը։

*Հեքիաթը ժողովուրդների սկզբնական բանաստեղծությունն է։ Արաբական «Հազար ու մեկ գիշերները» ուրիշ ոչինչ չէ, եթե ոչ հեքիաթների մի ամբողջ հավաքածու։ Մի՞թե նրանց մեջ չէ փայլում արաբացու վառ երևակայությունը իր բանաստեղծական և գեղարվեստական սքանչելի գույներով։*

*Գեղարվեստը ճանաչելու, գեղարվեստը գնահատելու համար պետք է զարգացած ճաշակ, ազնիվ զգացմունք և դիտելու խորին ընդունակություն ունենալ։ Դրեցեք Ռաֆայելի «Մադոննան» կամ Այվազովսկու ծովանկարներից մեկը մի կոշտ, կոպիտ ռամկի առաջև։ Նա միայն ապուշի նման կնայե և արհամարհանքով երեսը շուռ կտա։*

*Այսպես էլ պ. Հայկունին դատում է իր անձնական տպավորությունների ներգործության ներքո, առանց հիմնվելու արվեստի և գրականության մեջ ընդունված պայմանների վրա։ Նա անխտիր կերպով գործ է ածում «գեղարվեստ», «Պառնասի մուսաների ստեղծագործություն», «գեղարվեստական տաճար» բառերը, խոհեմությամբ լռելով, թե ի՞նչ է հասկանում այդ փքած բառերով։ Ցանկալի կլիներ, որ պարոնը փոքրիշատե ցույց տար, թե գեղարվեստի ո՞ր օրենքներով է առաջնորդվում ինքը, որ «Կայծերը» զուրկ է գտնում այդ արժանավորությունից։ Անդադար հեքիաթ, հեքիաթ կոչելով, հարցը վճռված չէ կարելի համարել։ Կրկնում եմ, ցանկալի կլիներ, որ պարոնը փաստերով ապացուցաներ իր կարծիքը, դրանով փոքրիշատե կծանոթանայինք նրա գիտության հետ, թե ո՞ր աստիճան ծանոթ է նա կամ հասկանում է գեղարվեստի նշանակությունը և որքա՞ն ուսումնասիրել է ազգերի գրականությունը ընդհանրապես, և մերը առանձնապես։*

*Բայց չնայելով իր բոլոր զգուշությանը, իր տգիտությունը երևան չհանելու համար, մի տեղում պ. Հայկունին իր գրչից դուրս է թռցրել մի քանի բառեր, ասելով. «Գեղարվեստը գտնվում է ոչ թե երևակայական, ռոմանտիկական, այլ իրական կյանքում ու աշխարհում»։ Այդ մի քանի բառերով պ. կրիտիկոսը թեև ցույց չէ տալիս գեղարվեստի նշանակությունը, նրա թեորիան, նրա հիմնական օրենքները, բայց գոնե ցույց է տալիս նրա տեղը։ Եթե ես լռեմ, երևի, բոլոր ռոմանտիկները, սկսյալ Ժան-Ժակ Ռուսոյից մինչև Վիկտոր Հյուգոն, կբողոքեին, եթե լսեին, որ պ. Հայկունին այսպիսի կարծիք ունի նրանց մասին։*

*Ես շարունակում եմ խոսել պ. Հայկունու գրելու ձևի վրա։*

*Նրա հոդվածը տպվում է, համարները մինը մյուսի ետևից դուրս են գալիս, դեռ ճշմարիտ կրիտիկական ոչինչ չկա։ Փողոցում նրան դարձյալ նկատողություն են անում. «Պարոն, այդ ինչ տեսակ կրիտիկա ես գրում. քո ասածները ոչ մեկը վեպին չէ վերաբերում. դու «Կայծերի» մեջ գործող անձինքները, նրա տիպերը չքննեցիր, նրանց բնավորությունների, նրանց մտավոր և հոգեբանական կողմերի մասին ոչինչ չասեցիր»։ Դարձյալ դժվարություն։ Պետք է մի բան ասել։ Բայց որտե՞ղ ասել, հոդվածը արդեն վերջանալու վրա է։ Որտեղ էլ որ լինի, միևնույն է, և պարոն կրիտիկոսը մի տեղում մտցնում է այս տողերը.*

*«Ես իմ հոդվածումը մի խոսքով անգամ չշոշափեցի «Կայծերի» հերոսների հոգեբանական կողմերը, որովհետև այդ կողմերը թույլ, շատ թույլ էին և կարծես թե չկային»։*

*Ուր մարդիկ ապրում են, մտածում են, գործում են, սիրում են, ատում են, տրտմում են, ուրախանում են,— ուր մարդիկ զգացմունքների կատաղություն ունեն և աղավնու հեզություն, չէ կարելի ասել, թե նրանց մեջ չկան հոգեբանական կողմեր։ Առանց հոգու մարդը ոչինչ զգացմունք չունի. նա անշունչ դիակ է։ Բայց կարծեմ ինքը պ. Հայկունին հակառակում է իրան, որ «Կայծերի» հերոսներին բոլոր հոգեկան զգացմունքներից զուրկ դիակներ է համարում, որովհետև մի տեղում նա համեմատում է այդ վեպի հերոսներին այնպիսի անձնավորությունների հետ, որոնք մի ամբողջ աշխարհ սուգի մեջ՝ դրին…*

*Պ. Հայկունու հոդվածում ոչ մի միտք իր տեղում չէ. նրա մեջ կարգ, դասավորություն չկա. նա անդադար մեկ միտքը թերի թողնելով, դեպի մյուսն է թռչում։ Եվ այդ առաջ է եկել նրանից, որպես վերևում ցույց տվի, որ նա իր տեղեկությունները հավաքել է ուրիշների նկատողություններից, և այդ արել է այն ժամանակ, երբ նրա հոդվածը արդեն սկսել էր տպվել, հայտնի բան է, որ դասավորություն չէր կարող լինել։ Այդ հոդվածը կարդալիս հիշեցնում է այն մուրացկաններին, որոնք փողոցներում ինչ շորի կտոր որ ընկած են տեսնում, վեր են առնում, բերում են տուն և կարում, կարկատում են իրանց քրքրված վերարկուի վրա, այսպիսով դառնում է մի խայտաճամուկ բան։*

*Ասածներիս իբրև ապացույց, ես մատնացույց կանեմ մի ավելի հատկանիշ կետի վրա։ Պ. Հայկունու կրիտիկան տպվել, ստորագրվել և վերջացել էր արդեն։ Անցել էին շաբաթներ, անցել էին ամիսներ։ Հանկարծ նրան հիշեցնում են, թե «Կայծերի» մեջ*

բազմաթիվ պատմական, աշխարհագրական և ցեղագրական անուններ կային, մի՞թե նրանց մեջ սխալներ ցույց տալ չէր կարող։ Բայց ինչ անե պարոնը, ոչ հին Հայաստանի աշխարհագրությունը գիտե և ոչ նրա պատմությունը։ Մի մարդ պետք է օգնե նրան։ Օգնությունը հասնում է։ Մի վանեցի, թե էրզրումցի պարոն այդ միջոցին պատահմամբ հյուր է լինում «Մեղուի» խմբագրատան մեջ։ Նա տալիս է մի երկար ցուցակ աշխարհագրական, պատմական և ցեղագրական անունների, որոնք իբր թե սխալ էին գրված «Կայծերի» մեջ։ Այդ բոլորը լավ էր, նպաստավոր էր պ. կրիտիկոսի համար։ Բայց որտե՞ղ մտցնել նրանց։ «Կայծերի» քննադատությունը արդեն տպվել, վերջացել է։ Բայց պ. Հայկունու համար միևնույն է, նա ստանում է հիշյալ ցուցակը և որպես մաքուր արծաթ, տեղավորացնում է «Խաչագողի հիշատակարանի» քննության մեջ։

Եվ այսպես, պ. Հայկունու հոդվածը մի անկապ, խառնիխուռն և վայրիվերո գրված է։ Նա ոչ միայն կրիտիկա չէ, այլ պոլեմիկա կոչվելու արժանավորությունից զուրկ է։ Պոլեմիկայի մեջ առաջնորդում է քննադատին առողջ միտքը, քննելի առարկայի ճիշտ և խղճմտավոր հասկացողությունը։ Բայց երբ առողջ դատողության տեղ գործում է կիրքը, նախանձը, ատելությունը, անվանարկությունը դեպի հակառակորդի անձնավորությունը,— այդ դեպքում պոլեմիկան դառնում է մի զզվելի պամֆլետ և մինչև անգամ դիֆամացիա։ Պ. Հայկունու հոդվածը վերջին տեսակներին պետք է վերաբերել։ Նրա մեջ լիքն են զանազան կոպիտ սրախոսություններ, զանազան փողոցային մասխարություններ և զանազան ցինիկային ակնարկություններ դեպի «Կայծերի» հեղինակի անձնավորությունը։ Այդ բոլորը «Կայծերի» հեղինակի և նրա աշխատության վրա ոչինչ արատ չձգելեն հետո, վնասում է իրեն, կրիտիկոսին, երբ ընթերցողը բացարձակ կերպով նկատում է նրա մեջ կիրքը։ Նույնիսկ խայտառակ էպիգրաֆը, որը իբրև նախերգանք, պ. կրիտիկոսը դրել էր իր հոդվածի ճակատին, պարզ կերպով ցույց է տալիս, թե ի՞նչ հոգուց դրդված գրել է նա իր հոդվածը։

Իմ հոդվածի սկզբում ես ցույց տվի, թե ինչ է կրիտիկան և ինչ պետք է լինի ճշմարիտ կրիտիկոսի պարտավորությունը։ Բայց պ. Հայկունին շեղվում է բոլոր այն պայմաններից, ինչ որ կրիտիկայի գործը պետք է լինի։ Նա չէ քննում «Կայծերի» ամբողջ հյուսվածքը, ուշադրություն չէ դարձնում նրա ընդհանուր շինված-

քի վրա և որ աստիճան այդ աշխատությունը, իբրև վեպ, հասնում է իր նպատակին։ Նա միայն նախադասությունների, բառերի, կետադրությունների և զանազան մանր-մունր սխալների ետևից է ընկնում և չնչին բծախնդրություններ է անում։ Այդ է պատճառը, որ նրա ամբողջ 8 համարների մեջ զետեղված կրիտիկան կարդալուց հետո, ընթերցողը դարձյալ չէ կարողանում մի պարզ գաղափար կազմել, թե ինչ բան է «Կայծերը»։

Դիցուք թե մի մարդ կամենում է ծանոթացնել ձեզ այս և այն նշանավոր շինվածքի հետ, բայց փոխանակ ցույց տալու, թե ճարտարապետության ո՛ր ճյուղին է պատկանում, ի՛նչ ճաշակով է շինված, կամ որքա՛ն հարմարություններ ունի բնակության համար, այդ բոլորը թողնում է և միայն ասում է, թե լուսամուտներից մեկը ծուռն է, ծխնելույզներից մեկը իր տեղումը չէ, դռներից մեկը կոտրած է, պատից մի քանի աղյուսներ ցած են թափվել և այլն։ Տարակույս չկա, որ այդ մանր-մունր նկատողությունները չեն կարող ձեզ ճիշտ գաղափար տալ շինվածքի ամբողջության մասին։ Այս կերպով էլ վարվում է պ. Հայկունին «Կայծերի» վերաբերությամբ։

Նա միայն ամեն ջանք գործ է դնում, որ վեպի մեջ սխալներ ցույց տա, հակասություններ գտնե, անբնական երևույթներ երևան հանե, և որտեղ չկան այսպիսիները, ինքը ամենայն անբարեխղճությամբ հնարում է, ստեղծում է։ Նա վեր է առնում գրքի այս և այն երեսից նախադասություններ կամ նախադասությունների կեսը, վեր է առնում բառեր, և միացնելով, նրանցից իր ցանկացած միտքն է դուրս բերում։ Աղավաղել փաստերը, այլանդակել իրողությունները, շատ հասկանալի է, որ օրինավոր կրիտիկոսի գործ չէ։ Այդ բոլոր զեղծումները ես ցույց կտամ իր տեղում։

Որովհետև պ. Հայկունու հոդվածի մեջ ոչ կապ կա և ոչ կանոնավոր դասավորություն, այլ ամեն ինչ անշնորհք կերպով կարկատած է միմյանց հետ, այդ պատճառով շատ դժվար է մի ամբողջական գաղափար տալ նրա բովանդակության մասին։ Եվ այդ իսկ պատճառով ես պիտի աշխատեմ նրա նկատողությունները կարելվույն չափ դասավորել և մի առ մի վեր առնելով այդ նկատողությունները, ցույց տալ նրանց ամենայն ճշմարտությունից զուրկ լինելը։

Պ. Հայկունին, իր հոդվածի սկզբում «Կայծերի» բովանդակությունը ծուռ ու սխալ կերպով պատմելուց հետո, անցնում է նրա քննադատությանը։ Հենց սկզբից պարոնը աշխատում է ցույց տալ,

որ «Կայծերը» չէ կարող լինել ճիշտ նկարագիր տաճկահայերի կյանքի, որովհետև հեղինակը չէ ճանաչում այն երկիրը, այն կյանքը, որտեղից առել է իր վեպի նյութը։ Ահա նրա խոսքերը.

«Րաֆֆին տաճկահայերին ճանաչում է միմիայն լրագիրներից և մի քանի անկատար, անճիշտ գրքերից, գուցե և մի քանի ծանոթներից, իսկ դոքա երբեք բավական չեն տաճկահայերի կյանքից «Կայծեր» դուրս ցոլացնելու»։

Պարոնը մոռանում է, որ «Կայծերի» առաջին հատորի գործողությունների մի մասը կատարվում է Պարսկաստանի Սալմաստ գավառում, որ հեղինակի հայրենիքն է, ուրեմն նա չէր կարող ծանոթ չլինել իր հայրենիքի հետ։ Իսկ մնացած մասի գործողությունները կատարվում են Սալմաստի սահմանակից Վանա նահանգում, որտեղ հեղինակը մի քանի անգամ ճանապարհորդել է։ Դեռ 1860 թվականում «Հյուսիսափայլի» մեջ տպվեցավ նրա Վանա նահանգում կատարած ճանապարհորդության մի մասը, իսկ 1872 թվականում, այսինքն՝ «Մշակի» հրատարակվելու հենց առաջին տարվա մեջ, այդ լրագրում սկսվեցան տպվել նրա Պարսկաստանի ճանապարհորդությունները, որոնք ամենայն հետաքրքրությամբ կարդացվում էին։ Ուրեմն «Կայծերը» գրելու համար Րաֆֆին կարոտություն չուներ իր տեղեկությունները քաղել «միմիայն լրագիրներից և մի քանի անկատար, անճիշտ գրքերից», երբ որ ինքը անձամբ ուսումնասիրել է այդ երկրների կյանքը։ Այլևս չեմ խոսում այն բազմաթիվ սովար հոդվածների մասին, որ «Մշակի» գոյության տասներկու տարվա ընթացքում, գրել է Պարսկաստանի և Տաճկաստանի մասին։

Հիշյալ նկատողությունից հետո պ. Հայկունին վերջը ինքն իրան հակասում է, ասելով.

««Կայծերի» մեջ գեղեցիկ կերպով նկարագրված են քրդերը, թուրքերը և պարսիկները»։

Եթե հեղինակը այնքան ճանաչում է Պարսկաստանի և Տաճկաստանի քրդերին, թուրքերին և պարսիկներին, որ կարողանում է նրանց կյանքը գեղեցիկ կերպով նկարագրել, ինչո՞ւ չէր կարող ճանաչել և տեղային հայերին, քանի որ ինքն էլ հայ է և ծընված է նույն աշխարհում, ուր ապրում են «Կայծերի» մեջ նկարագրված հայերը։

Պ. Հայկունու հոդվածը լի է այս տեսակ միմյանց հակասող, միմյանց հակառակ մտքերով։ Մի տեղում նա ասում է, թե «Կայծերի» մեջ գեղեցիկ կերպով նկարագրված է քրդերի, թուրքերի և

պարսիկների կյանքը, իսկ հայերի կյանքի նկարագրությունը թույլ է գտնում, որովհետև հեղինակը իր տեղեկությունները հայերի մասին, նրա կարծիքով քաղել է լրագիրներից և մի քանի անկատար անճիշտ գրքերից։ Հանկարծ այդ բոլորը մոռանալով, մի այլ տեղում ասում է, որ «Կայծերի» մեջ բոլորովին կյանք չկա։ Ահա նրա խոսքերը.

«Նրանում («Կայծերի» մեջ) չկա կյանք, ոչ անցյալի և ոչ էլ ներկայի։ «Կայծերը» ոչ պատմական վեպ է, ոչ էլ ժամանակակից: Այլ նա մի վեպ, մի գրվածք է հայ ապագա կյանքից։ «Կայծերը»— եթե կարելի է այսպես ասել — իբր մի ծրագիր է տաճկահայերի ապագա կյանքին, գործունեությանը։ Եվ որովհետև նա մի ծրագիր է, ուրեմն վեպ, գեղարվեստական գրվածք կոչելու իրավունք չունի» և այլն։

Այդ խոսքերից երևում է, որ «Կայծերը» հեքիաթ չէ, ինչպես պ. կրիտիկոսը իր հոդվածի սկզբում ամենայն ջանքով աշխատում էր ապացուցանել։ Այժմ պ. կրիտիկոսը «Կայծերի» համար մի նոր անուն է հնարել՝ «ծրագիր»։

Կրիտիկոսի պարտավորությունն է ցույց տալ՝ իր քննության առարկա ընտրած գրքի գրականության որ ճյուղին պատկանելը։ Պ. Հայկունին ևս այդ պայմանը ի նկատի է ունեցել, որ «Կայծերը» առաջ կոչել է հեքիաթ, իսկ հետո ինքն իրան հակառակելով, կոչում է ծրագիր։ Ես այդ ծրագիր բառի վրա էլ պիտի կանգնեմ։

Ի՞նչ է նշանակում ծրագիր։— Առանց բացատրելու, ամեն մարդ գիտե ծրագրի նշանակությունը։ Բայց մի վեպի համար ասել ծրագիր, ես կարծում եմ, պետք չէ հասկանալ մի որևիցե կանոնադրություն զանազան հոդվածների և պարագրաֆների թվանշաններով։ Վեպը այդ ձևերը չունի իր մեջ։ «Կայծերի» մեջ ևս այս տեսակ պարագրաֆներ չկան։ Այսուամենայնիվ, ամեն մի վեպ, որ բովանդակում է իր մեջ որոշ տենդենցիա, կարելի է փոխաբերական կերպով ծրագիր կոչել, թեև այդ անունը շատ անհարմար է։ Շպիլհագենի «Անտառապահի ընտանիքը» կոչված վեպը նույնպես մի ծրագիր է մշակների հարցի վերաբերությամբ։

Բայց վեպի ձևով գրված ծրագիրը բոլորովին ուրիշ կերպարանք ունի։ Նրա մեջ պարագրաֆների տեղ ծառայում է նույն իսկ կյանքը իր բազմակողմանի երևույթներով։ Ուրեմն, եթե «Կայծերը» պ. Հայկունու կարծիքով մի ծրագիր է, նրա մեջ ևս անպատճառ պետք է կյանքի նկարագրությունները լինեն։ Այլապես ի՞նչ

հիման վրա պ. կրիտիկոսը պնդում է, թե «Կայծերի» մեջ չկա կյանք ոչ անցյալի և ոչ ներկայի։

Գլխավոր պատճառը, որ պ. Հայկունուն մոլորեցնում է և նրան հակասությունների մեջ է ձգում, այն է, որ այդ պարոնը չէ ուզում պարզ խոստովանվել, թե «Կայծերը» վեպ է։ Նա վեպ էլ է անվանում, հեքիաթ էլ է անվանում, ծրագիր էլ է անվանում, բայց ոչ մեկի վրա չէ կանգնում։ Եթե վեր առներ նրան իբրև վեպ, պետք է ցույց տար, արդյոք պատմակա՞ն է նա, թե ժամանակակից։ Իբրև պատմական վեպ, պետք է նայեր նրա վրա պատմական տեսակետից, իսկ իբրև ժամանակակից վեպ, պետք է նայեր ժամանակակից կյանքի տեսակետից։ Բայց այդ բոլորից խույս է տալիս նա, ասելով, «Կայծերի» մեջ չկա կյանք ոչ անցյալի և ոչ էլ ներկայի: «Կայծերը» ոչ պատմական վեպ է և ոչ էլ ժամանակակից: Հենց այդ սխալ որոշումը նրան ձգում է բազմաթիվ հակասությունների մեջ։ Ահա որպես.

Եթե «Կայծերը» ոչ պատմական վեպ է և ոչ ժամանակակից, եթե նրա մեջ չկա կյանք ոչ անցյալի և ոչ էլ ներկայի,— այստեղից լոգիկաբար ծագում է այն միտքը, որ «Կայծերի» հերոսները, նրա մեջ գործող անձինքը, այլ խոսքով, նրա տիպերը ոչ գոյություն են ունեցել անցյալում, այսինքն՝ հայոց պատմական կյանքում, և ոչ էլ նրանք գոյություն ունեն այժմ, այսինքն՝ հայոց ներկա կյանքում, այլ նրանք Րաֆֆիի երևակայության ծնունդ են, որոնց ստեղծել է ինքը հեղինակը։ Եվ այսպես էլ ասում է պ. Հայկունին, թե «Կայծերի» մեջ գործողները «իրական» մարդիկ չեն, այլ «վերացական և երևակայական» են: Շատ լավ։ Ուրեմն էլ ինչ լոգիկայով պ. կրիտիկոսը համեմատում է «Կայծերի» տիպերը Աբովյանի, Աղայանցի, Պռոշյանցի, Ծերենցի տիպերի հետ և գտնում է նրանց մեջ կատարյալ նմանություն։ Վեր առնենք նրա համեմատություններից մի կտոր միայն.

«Այսպես, ընթերցող, գրում է պ. Հայկունին. «Կայծերի» ամենագլխավոր գործողը — ասենք տիպը — որսորդ Ավոն, ոչ այլ ոք է, եթե ոչ ա) պ. Աբովյանի Աղասին, բ) պ. Աղայանցի Հարությունը, գ) պ. Պռոշյանցի Վարդը, դ) պ. Ծերենցի Թեոդորոս Ռշտունին և նույն հեղինակի Լևոնը («Թորոս Լևոնի» մեջ), ե) պ. Րաֆֆիի իրան Մելիք Մանսուրը («Խենթի» մեջ)։

Եթե պ. Հայկունու համեմատությունները ճշմարիտ համարենք, մենք կամա-ակամա պետք է հասնենք այն եզրակացությանը, որ մեր հարգելի վիպասանները, ամենքն էլ, առանց բացա-

ության, իրանց տիպերը գողացել են միմյանցից։ Շատ հետաքրքիր կլիներ, եթե պ. Հայկունին ցույց տար, թե առաջին գողությունը ո՞րն է կատարել դրանցից։

Ես այդ կարծիքը չունեմ մեր վիպասանների մասին, ես միայն պիտի երևան հանեմ պ. Հայկունու անբարեխղճությունը։ Նա աշխատելով ստվեր ձգել «Կայծերի» վրա, մոռանում է, որ միևնույն ժամանակ ստվեր է ձգում և մեր մյուս վիպասանների վրա։ մի կողմից, ասում է նա, թե «Կայծերի» և մեր մյուս վիպասանների դուրս բերած տիպերի մեջ ոչինչ «էական» զանազանություն չկա, իսկ մյուս կողմից, ասում է, թե «Կայծերի» մեջ գործողները **«իրական»** մարդիկ չեն, այլ **«վերացական»** և **«երևակայական»** են։ Ուրեմն, եթե «Կայծերի» վերացական և երևակայական տիպերը միևնույնն են, ինչ որ մինչև այսօր հայտնվել են մեր մյուս վիպասանների աշխատությունների մեջ,— բոլորովին լոգիկական կլիներ մտածել, որ նրանք ևս իրական տիպեր չեն, որ նրանք ևս վերացական ու երևակայական են, որովհետև պ. կրիտիկոսը նրանց և «Կայծերի» տիպերի մեջ ոչինչ «էական» զանազանություն չէ գտնում։ Եթե ճշմարիտ է այդ, շատ թշվառ պետք է համարել մեր գրականությունը և նույնքան թշվառ պետք է համարել մեր բոլոր վիպասաններին, որ նրանցից ոչ մեկը մինչև այսօր չէ կարողացել մի իրական և կենդանի տիպ դուրս բերել իր աշխատության մեջ։

Այդ բոլոր հակասությունները առաջ են գալիս նրանից, որ պ. կրիտիկոսը չէ հասկանում, թե ինչ է ասում։ Նա գործ է ածում բառեր, առանց նրանց նշանակությունը հասկանալու և որ ամենանշանավորն է, նրա դատողությունների մեջ ամենևին լոգիկա չկա։ Այդ ես ցույց տվի և դարձյալ պիտի աշխատեմ ցույց տալ։

Կարծեմ ընթերցողը չէ մոռացել, որ պ. Հայկունին ասաց, որ «Կայծերը» ոչ **պատմական վեպ** է և ոչ **ժամանակակից**: Ուրեմն, ի՞նչ համեմատություն կարող է լինել «Կայծերի» և Ծերենցի, Աբովյանի, Աղայանցի կամ Պռոշյանցի վեպերի մեջ։ Չէ՞ որ Աբովյանի «Վերք Հայաստանին», Ծերենցի «Թեոդորոս Ռշտունին», նրա «Երկունք» և «Թորոս Լևոնի» կոչված վեպերը պատմական վեպեր են, նրանց մեջ գործող հերոսները պատմական անձնավորություններ են, նրանք ապրել և գործել են մեզանից շատ դարեր առաջ, նրանք գտնվել են կյանքի բոլորովին ուրիշ պայմաններում։ Իսկ «Կայծերը», պ. Հայկունու ասելով, պատմական վեպ չէ։ «Կայծերի» տիպերը դեռ նոր պետք է ծնվեն։ Ուրեմն, ինչպե՞ս կարող

չին դրանք նման լինել Աբովյանի և Ծերենցի դարերով առաջ ապրող տիպերի հետ։ Բացի դրանցից, Պռոշյանցի վեպերը, Աղայանցի վեպերը, (բացի «Անահիտից») ժամանակակից կյանքից են առնըված։ Իսկ պ. Հայկունին ինքը ասում է, թե «Կայծերը» ժամանակակից վեպ չէ, այլ մի ծրագիր է տաճկահայերի ապագա գործունեության։ Եթե այդպես է, ուրեմն էլ ինչպե՞ս կարելի է, որ դեռ նոր ծնվող ապագա կյանքը իր նոր պայմաններով, իր նոր սերունդով ներկայի նման լիներ։

Այդ հակասությունները պ. Հայկունու հոդվածի մեջ առաջ են գալիս երկու պատճառներից։ Նախ, անբարեխղճությունից, երկրորդ՝ տգիտությունից։ Անբարեխղճությունից ասում եմ նրա համար, որ պ. կրիտիկոսը կամենում է ցույց տալ, թե «Կայծերի» մեջ նոր տիպեր չկան, թե Րաֆֆին իր բոլոր տիպերը գողացել է մեր գրականության մեջ արդեն վաղուց լույս տեսած այս և այն վեպից։ Իսկ տգիտությունից ասեցի այն պատճառով, որ պարոնը այնքան զարգացում չունի, որ հասկանա, թե ի՞նչ է տիպը կամ ի՞նչով է զանազանվում մի տիպ մյուսից։

Պ. Հայկունու տգիտությունը կազատեր իրան, եթե նա այսքանը միայն ասեր, թե «Կայծերի» տիպերը նման են Աբովյանի, Աղայանցի, Ծերենցի և Պռոշյանցի տիպերին, բայց նա մի բոլորովին աններելի համեմատություն էլ է անում, որը եթե մատնություն չանվանենք, կատարյալ զրպարտություն է, չարամիտ բամբասանք է։ Ահա նրա խոսքերը.

— «Սպասեցե՛ք, սպասեցե՛ք, պարոններ,— բղավում է պ. Հայկունին,— ես գիտեմ, որ որսորդ Ավոն և ընկ. («Կայծերի» մեջ) ուզում են լինել և կարծես թե են նաև մի... մի Միլորդ, մի Ժ... օֆ, մի Կ...իչ, մի Դ...ի et tuti guanti»...

Մտածո՞ւմ է պ. Հայկունին, թե ինչ սարսափելի և մեր ամենիս համար անհամակրելի անուններ են թաքնված հիշյալ դխատառերի տակ ...

Եթե «Կայծերի» տիպերը մի-մի Միլորդներ, մի-մի Ժ...եր, Կ...եր, Դ...եր են, ուրեմն և Աբովյանի, Ծերենցի, Պռոշյանցի, Աղայանցի տիպերն էլ միևնույնը պետք է լինեն, որովհետև, որպես վերևում ցույց տվինք, պ. կրիտիկոսը «Կայծերի» տիպերի և հիշյալ չորս վիպասանների տիպերի մեջ ոչինչ «էական» տարբերություն չէ գտնում։ Արդյոք իր այդ համեմատությամբ պ. Հայկունին Հուդայի համբույրով չէ՞ մերձենում դեպի մեր հարգելի վիպասանները ընդհանրապես և դեպի Րաֆֆին մասնավորապես...

Ինձ ասեցին, պ. Հայկունուց հարցրել են, թե ինչո՞ւ եք այդ տեսակ հիմարություններ գրում։ Նա առանց կարմրելու (սև երեսի վրա կարմրությունը չէ երևում, պարոնի երեսը բավականին սև է) պատասխանել է. գրում եմ նրա համար, որ Րաֆֆիի գրքերը չծախվեն։

Բոլորովին երեխայություն կլիներ մտածել, որ ոչ թե պ. Հայկունու հոդվածի նման այլանդակ հոդվածը, այլ ծանր, հիմնավոր և ամենազոր կրիտիկան անգամ իր որոտալից սաստկությամբ կարող կլիներ սպանել ճշմարիտ տաղանդը։ Այլևս ի՞նչ բանաստեղծ կլիներ Րաֆֆին, եթե զոյլիների բարբաջմունքը կստիպեր նրան լռել և նրա գրքերը դեպի փողոցը կնետվեին ընթերցողների լուսամուտներից։ Ազգերի գրականության մեջ հազիվ կարելի է ցույց տալ այս և այն նշանավոր բանաստեղծին, որ իր ժամանակին ենթարկված չլիներ անբարեխիղճ կրիտիկոսների հարձակմունքներին։ Բայց դրանով ոչինչ չկորցրին այդ բանաստեղծները, հարձակմունքները ավելի բորբոքեցին նրանց եռանդը։ Թշնամիները կորան, ոչնչացան, անհայտացան մոռացության խավարի մեջ, բայց բանաստեղծի գործը և անունը մնաց անմահ։ Ճշմարիտ բանաստեղծը խիստ հաստատ հավատ ունի դեպի իր կոչումը, և եթե կրիտիկան անիրավացի կերպով է վերաբերվում դեպի նա, դրա փոխարեն նա գտնում է սաստիկ պաշտպանություն ընթերցող հասարակության համակրության մեջ։ Եվ այդ համակրությունը վայելում է Րաֆֆին, որի ընդհակառակն, հասարակության անհամակրությունը, կարծեմ իր անձի վրա փորձեց պ. Հայկունին, որպես ինքն էլ խոստովանվում է այդ...

Րաֆֆիին և նրա աշխատությունները քննելը դուրս է իմ հոդվածի նպատակից, բայց այստեղ չեմ կարող մի փոքրիկ նկատողություն չանել։ Տարակույս չկա, որ բանաստեղծը և հասարակությունը պետք է գտնվեն միմյանց հետ թշնամական հարաբերությունների մեջ։ Այդ թշնամությունը ավելի սաստկանում է այն դեպքերում, երբ բանաստեղծը չէ շողոքորթում հասարակության անբարոյական բնազդումներին, հարվածում է նրա մոլությունները, խորտակում, ոչնչացնում է նրա նախապաշարմունքները և զորեղ ձեռքով բարձրացնելով այն դարևոր վարագույրը, որ ծածկում էր ժողովրդի կեղտերը, մերկացնում է նրա այլանդակությունը։ Մեր գրականության մեջ Րաֆֆիի աշխատությունները այդ բնավորությունն ունեն, նրանք սաստիկ կրիտիկաբար են վերա-

բերվում դեպի ժողովրդի կյանքը և անխնա կերպով հարվածում են նրա մոլությունները։ Բնականաբար պետք է ժողովուրդը ատեր նրան, բայց մենք ընդհակառակն ենք տեսնում. նա հարգված է, և նրա գրքերը սիրով կարդում են։ Երկու կերպով կարելի է բացատրել այդ երևույթի պատճառը կամ ժողովուրդը այնքան զարգացած է, որ հասկանում է նրան, կամ նա այնքան ուժ ունի, որ հասարակության զայրացած կրքերը ճնշում է, խոնարհեցնում է իր տաղանդի ծանրության ներքո։

Հիմա դառնանք դեպի պ. Հայկունու այն նկատողությունները, որոնցմով նա «Կայծերի» մեջ հակասություններ, անբնական երևույթներ և զանազան սխալներ է ցույց տալիս։

Պ. Հայկունին իր քննադատությունների մեջ մի խորամանկ, բայց կրիտիկայի կանոններին բոլորովին հակառակ ձև է ընդունել։ Նա «Կայծերի» տիպերը չէ քննում առանձին-առանձին, այլ բոլորին ձուլում է, միացնում է հեղինակի անձնավորության մեջ և նրանց կոչում է Րաֆֆի, անդադար կրկնելով, Րաֆֆին այդ վնասակար միտքն է հայտնում, Րաֆֆին ինքն իրան հակառակում է և այլն։ Եվ այդպիսով աշխատում է ցույց տալ հակասություններ։ Շատ հասկանալի է, ինչպես ամեն վեպի մեջ, այնպես էլ «Կայծերի» մեջ կան զանազան տիպեր, զանազան անձնավորություններ, միմյանց տարբեր և մինչև անգամ միմյանց հակառակ հայացքներով ու կարծիքներով։ Եթե բոլորը միանման լինեին, այլևս տիպերի զանազանություն չէր լինի։ Նրանց զարգացման և հասկացողության աստիճանը հավասար չէ։ Կարող է պատահել և պետք է այսպես էլ լինի, որ մեկը բոլորովին սխալ և մինչև անգամ վնասակար միտք է հայտնում, այդ մտքին գուցե հեղինակը ինքն էլ չէ համակրում, այսուամենայնիվ, պետք է իր հերոսին խոսել տա այնպես, որպես ինքն հերոսն է մտածում կամ զգում։ Բայց բոլոր գործող անձինքների մտածողությունները, խոսքերը անխտիր կերպով վերաբերել հեղինակին և նրանց համեմատություններից եզրակացություններ դուրս բերել,— այդ, իհարկե, միշտ սխալ հետևանքի կհասցնե։ Ինչո՞ւ։ Որովհետև վեպի մեջ լինում են, ինչպես ասեցի, միմյանց հակառակ տիպեր, թե բնավորությամբ և թե զարգացումով։ Լինում են հետադեմներ և հառաջադեմներ, խավարամիտներ և ազատամիտներ, խելացիներ և հիմարներ։ Եթե կրիտիկոսը կվեր առնի մի խելացիի կարծիքը և մի հիմարի կարծիքը և երկուսն էլ համարելով հեղինակի կարծիք, կհամեմատե միմյանց հետ, շատ հասկանալի է, որ հակասություն

կղուրս գա։ Իմ կյանքում այդ խարդախ ձևը ես ոչ մի կրիտիկայում չեմ տեսել, բացի պ. Հայկունու կրիտիկայից։ Նրա համար տիպերի տարբերություն չկա։ Ով ինչ խոսում է «Կայծերի» մեջ, ով ինչ միտք է հայտնում, թե լավ, թե վատ — բոլորը հեղինակին է վերաբերում։ Մինչև անգամ քրդերի և թուրքերի հայհոյական խոսքերը հայերի վերաբերությամբ, նրա կարծիքով, Րաֆֆիի բերնից են դուրս գալիս։

Ահա մի օրինակ.

«Ընթերցող, պ. Րաֆֆին հափշտակված է ամբոխով. նա նրանում գտնում է մեծ զորություն և բավականանում։ Շատ սիրուն։ Բայց, ահա, միևնույն պ. Րաֆֆին գտնում է նույնպես, որ հայը (ամբոխը) մի կույր հավի սիրտ չունի (եր. 350), որ հայը աղբի ջրաղաց է, պետք է գցել նրան մի տոպրակի մեջ և խփել պատին, որ երկու աչքերն էլ կուրանան» (եր. 105)։

Պ. Հայկունու զրպարտությունները ցույց տալու համար, ես ամբողջապես կբերեմ «Կայծերից» այն կտորը, որտեղից նա առել է վերոհիշյալ խոսքերը։

«Պատահում էին այսպիսի դեպքեր (ասում է Ֆարհադը) և այդ դեպքերը կրկնվում էին խիստ հաճախ։ Ամեն երեկո, երբ (հայ) աշակերտները դպրոցից վերադառնում էին իրանց տները, մահմեդականների փողոցներից անցկենալու ժամանակ, հավաքվում էին թուրքերի, պարսիկների երեխաները և ծեծում էին հայ երեխաներին։ Ես մինչև այսօր չեմ մոռացել մի երգ, որ հնարել էին նրանք և մեզ տեսնելու ժամանակ երգում էին։ Նրա բովանդակությունը մոտավորապես այս էր. «Հայը աղբի ջրաղաց է, պետք է գցել նրան տոպրակի մեջ և խփել պատին, որ երկու աչքերն էլ միասին կուրանան...»։ Մենք ուրախ էինք լինում, երբ մեր վիրավորանքը վերջանում էր այդ նախատական խոսքերով։ Բայց նրանք ծեծում էին մեզ։ Աշակերտները գանգատվում էին իրանց ծնողներին, բայց ի՞նչ կարող էին անել ծնողները։ Մեծերը ծեծվում էին մեծերից, իսկ փոքրերը՝ փոքրերից»... (եր. 105)։

Հիմա նայեցեք, պ. Հայկունին թուրք և պարսիկ երեխաների վարմունքը, նրանց հայհոյանքը վերագրում է «Կայծերի» հեղինակին և ասում է, թե Րաֆֆին հայ ամբոխին աղբի ջրաղաց է կոչում և այլն։

Պ. Հայկունին ոչ միայն «Կայծերի» մեջ գործող անձինքներին նույնացնում է հեղինակի անձնավորության հետ, այլ նրանցից

մի քանիսին համարում է հեղինակի հայրը, մայրը, քույրերը և այլն։

«Ինձ այնպես է թվում, թե դուք, պ. Րաֆֆի, ձեր կուրծքի վրա զգում եք այն ծանրությունը, որի տակ այսքան դարեր տնքտընքում ու հեծեծում են տաճկահայերը, ձեր հայրը — Սահակը, ձեր մայրը — Նիգարը, քույրերդ — Մարիամն ու Մագթաղը...»։

Այդ արդեն լրբություն է։

Հիմա անցնենք պ. Հայկունու ավելի նշանավոր նկատողություններին, որոնց մեջ պարոնը նույնպես «Կայծերի» գործող անձինքների կարծիքները վերաբերում է հեղինակին։

«Կայծերի» մեջ (եր. 461—463) հերոսներից մեկը՝ Ասլանը, հետևյալ դատողություններն է անում Հին Հայաստանի եկեղեցականների մասին։

«Բայց եղել են ժամանակներ և այն ժամանակները շատ հին են, երբ մեր եկեղեցականները այնպես չէին, որպես այժմ։ Նրանք դրանց նման անբնական կյանք չէին վարում. նրանք գերդաստանի հայրեր էին և ընտանիքների մեջ էին բնակվում։ Այս պատճառով, նրանք գիտեին, թե ի՞նչ է կյանքը, ի՞նչ է աշխարհը և ինչպես պետք է հոգ տանել նրա համար, որ մարդու ապրուստը հանգիստ ու բախտավոր լինի։ Գերդաստանի հայր լինելով միևնույն ժամանակ նրանք ժողովրդի հայրն էին, ծնողական սիրո զգացմունքը առաջ է բերել նրանց մեջ և խիստ ջերմ սեր դեպի ամբոխը և բոլոր սրտով նվիրել էին իրանց անձը ժողովրդի բարօրությանը։ Իսկ այժմ չէ կարելի գտնել մի մարդ, որ այնպես վայրենի, անզգա և անտարբեր լիներ դեպի հասարակաց բարին, ինչպես մեր կուսակրոն եկեղեցականը։

Վանքն այն ժամանակ, այժմյան պես, աշխարհային գործերից փախած և իրան երևակայական հոգևոր ծառայության նվիրած, ծույլերի բնակարան չէր։

Վանքն այն ժամանակ հոգևոր և մարմնավոր դպրոց էր, ուր անխոնջ միաբանությունը պարապած էր մանուկների կրթությունով, գրքերի թարգմանությունով, ինքնուրույն հեղինակություններով և գիտությունն ու լույսը ժողովրդի մեջ տարածելով։

Եկեղեցականությունը այն ժամանակ, որպես կրոնի, եկեղեցու և կրթության, նույնպես և հայրենիքի ու պետության հզոր պաշտպանն էր։ Եթե լինում էին մեր թագավորների ու նախարար-

ների մեջ խռովություններ, եկեղեցականն էր նրանց մեջ հաշտեցուցիչ տարրը։ Եթե լինում էին թշնամու հետ պատերազմներ, եկեղեցականն էր ոգևորում ժողովրդին կռվելու, քաջությամբ կռվելու և պաշտպանելու իր հայրենիքը։ Եթե որևիցե թագավորի հետ պետք էր խաղաղության դաշն կապել, եկեղեցականն էր դեսպանախոսության գնում։ Եթե հայրենիքին վտանգ էր սպառնում և ուրիշ թագավորներից պետք էր օգնություն խնդրել, եկեղեցականն էր միջնորդ դառնում։ Մի խոսքով, բարձր հոգևոր կառավարությունը խիստ սերտ կերպով կապված էր թագավորի իշխանության հետ և երկու ներդաշնակ ուժեր միացած մի ամբողջության մեջ, լծորդաբար առաջ էին տանում պետության կառավարությունը։

Այս ամենը, ինչ որ գործում էր եկեղեցականությունը, բոլորովին ընդդեմ էր նրա կրոնական բնավորությանը։ Բայց մեր եկեղեցականությունը այն ժամանակ մի նշանավոր բացառություն էր կազմում ամբողջ քրիստոնեական աշխարհում,— նա կատարյալ ժողովրդական էր, նա միացնում էր իր մեջ հոգևոր և նյութական կյանքը՝ իրական աշխարհը և երկինքը։ Իսկ այժմ...»։

Այժմ, ցույց է տալիս Ասլանը, որ այժմյան եկեղեցականները շեղվել են իրանց նախնական դրությունից։ Բայց պ. Հայկունին, նախնի եկեղեցականների վերև հիշած բոլոր արժանավորություններ, նրանց բոլոր լավ առանձնահատկությունները մի կողմ դնելով, «Մեղուի» և «Մշակի» կրոնական հարցն է ներս շպրտում «Կայծերի» քննության մեջ։ Նա աշխատում է ցույց տալ, իբր թե Րաֆֆին (դարձյալ Րաֆֆին) ասած լինի, թե նախնի եկեղեցականության առավելությունը միմիայն նրանումն էր, որ նրանք ամուսնացած էին, իսկ այժմյանները կուսակրոն են։ Եվ «Բոքլին» իրան օգնության կանչելով, աշխատում է սխալ համարել այդ կարծիքը և խորհուրդ է տալիս Րաֆֆիին գնալ պատմությունը նորից ուսումնասիրել և առանց պատմություն սովորելու, պատմական քննությունների մեջ չմտնել։

Նա հետևյալ խոսքերով պահանջում է «Կայծերի» հեղինակից, որ ցույց տա, թե «ե՞րբ, ո՞ր դարում և ո՞ր հոգևորականները իրանց կաթողիկոսական և եպիսկոպական աթոռների և բարձերի վրա բազմած ժամանակ իրանց հետ աթոռակից և բարձակից ունեին իրանց սիրասուն կեսերին՝ կնիկներին»։

Թեև իր վեպի քննության նպատակից բոլորովին դուրս է այս տեսակ եկեղեցական վիճաբանությունների մեջ մտնել, բայց որով-

հետև պ. Հայկունին պահանջում է, պետք է ցույց տալ, որ սկըսյալ սուրբ Գրիգոր Լուսավորչից մինչև նրա տոհմի վերջին ժառանգը, Սահակ Պարթևը, հայոց կաթողիկոսների մի ամբողջ շարք ամուսնացած էին, կին և որդիք ունեին, մինը մյուսից հետո ժառանգում էին հայրապետական աթոռը, որդին հաջորդում էր հորը։

Բայց որովհետև պ. Հայկունին պատմական մի մեծ սխալ է համարում այդ, նրա պարտավորությունն է՝ այդ երկուսից մեկը ապացուցանել. կամ ցույց տալ, որ վերև հիշված կաթողիկոսական ամբողջ սերունդը ամենևին ամուսնացած չէ եղել, և կամ, եթե ամուսնացած էին, նրանք հայրապետական աթոռը նստելուց հետո օրինապես բաժանվեցան իրանց ամուսիններից։ Դրանով պ. Հայկունին մի նոր գյուտ արած կլիներ մեր եկեղեցական օրենքների մեջ, որ ապահարզանը գոյություն է ունեցել մեր եկեղեցու սկզբնական դարերում, որովհետև կաթողիկոսները և ամուսնանում էին, և բաժանվում էին իրանց ամուսիններից։ Բայց թե «Բոքլը» այսպես է ասել, կամ այնպես է ասել,— այդ հարցի մեջ՝ Բոքլին դիմելու հարկ չկա, մանավանդ որ Բոքլից շատ խեր չի տեսնի պ. Հայկունին,— հարկավոր է ուղիղ դիմել հայոց պատմությանը։

Պ. Հայկունին իր կրիտիկայի մեջ մի խորամանկ ձև է բանեցնում հակառակորդի վրա մեղադրանքներ բարձելու համար։ Այդ ձևը կարող է շատ ընթերցողներին մոլորեցնել, եթե ուշադրությամբ չկարդան նրան։ Նա ուղղակի չէ դիմում հարցին, այլ ամեն ինչ սկսում է բարձր, փքված և սոֆիզմներով լի հառաջաբաններով, բայց երբ հասնում է բուն իրողությանը, փաստերին, այստեղ լռությամբ անցնում է, իսկ ընթերցողը մնում է հառաջաբանի տպավորության ներքո, ինքն իրան խաբելով, թե մի ճշմարիտ բան կարդաց։

Իմ հոդվածի սկզբներում ես ցույց տվի, որ պ. Հայկունին աշխատում էր հաստատել այն կարծիքը, թե «Կայծերը» պատմական վեպ չէ, թե նրա մեջ պատմական ոչինչ չկա։ Հանկարծ այդ բոլորը մոռանալով, նա սկսում է երկար երեմեականներ կարդալ, որ Րաֆֆին առանց պատմությունը ուսումնասիրած լինելու, հանդըգնում է պատմական վեպեր գրել։ Ես կբերեմ նրա սեփական խոսքերը։

«Պատմությունը, ևս առավել նրա ժամանակագրական մասերը գրելը, պ. Րաֆֆի, «Խենթեր» ու «Կայծեր» գրելու նման հեշտ բան

չէ, ինչպես դուք կարծել եք։ Պատմական-վիպասանը, իրան համար մի բարոյական, սեպուհ պարտավորություն պիտի համարե, թույլ չտալ իրան թեթև գրչին մի կետ, մի «նշանախեց» անգամ թղթի վրա, չդնել, առանց մի քանի տեսակ անհրաժեշտ և իրական փաստերի, առանց ոչ թե մոլեռանդ, այլ ամենաբարեխիղճ և բազմակողմանի հետազոտությունների և ամենամանրամասն խուզարկությունների։ Դրա համար անհրաժեշտ և անպայման հարկավոր է, բարեկամս, որ պատմական վիպասանը, կամ պատմության այս և այն մասը շոշափողը, լինի նախ՝ զերծ և ազատ որևէ տեսակ մոլեռանդությունից և երկրորդ՝ ունենա գիտություն (մանավանդ մի քանի գիտությունների) եթե ոչ մասնագիտական, գեթ հավատարիմ և առատ պաշար։ Խոստովանեցեք, պ. Րաֆֆի, որ ձեզ պակասում են թե առաջինը և թե երկրորդը, գուցե և երրորդ ու չորրորդ պայմաններ, ուստի խորհուրդ եմ տալիս ձեզ չմոտենալ այն տաճարին, պատմական վիպասանությանը, որի սուրբ և մաքուր աստիճանները կարող եք մի օր ձեր ցեխոտ և հնացած ու մաշված հողաթափով հանդգնաբար կեղտոտել ու նսեմացնել» և այլն։

Պ. Հայկունու այդ երկար հառաջաբանը, այդ ամբողջ մեղադրական ճառը կարդալով, ընթերցողը սպասում է, որ նա «Կայծերից» դուրս կբերե սխալների մի երկար շարք և ցույց կտա, որ Րաֆֆին մեղանչել է պատմության դեմ։ Բայց ինչո՞վ է վերջանում պարոնի մեղադրանքը։ Նրանով, որ ս. Տիրամոր վանքի տոնախմբության հանդեսի նկարագրությունը (363—397), նրա կարծիքով, ճիշտ չէ։ Թե ճիշտ է, թե ճիշտ չէ, այդ ուրիշ հարց է, բայց մի՞թե մի որևիցե վանքի տոնախմբության հանդեսը, որ այսօր կատարվում է մեր աչքի առջև, պատմական իրողություն է։ Նա կարող է հիշեցնել մեզ պատմության այս և այն երևույթները։ Նա կարող է պահպանած լինել իր մեջ շատ մնացորդներ հին ժամանակներից, բայց այսուամենայնիվ կատարվող իրողությունը ժամանակակից է։ Եվ նրան ուսումնասիրելու կամ նկարագրելու համար հարկավոր չէ դիմել պատմությանը, այլ պետք է ուղիղ դիմել դեռ չմեռած կյանքին, որի մեջ այսօր կատարվում է նա։

Պետք է բավական հանդգնություն ունենալ և այսպես անամոթաբար վերաբերվել դեպի մի հեղինակ, որ տվել է մեզ այն-

պիսի գեղեցիկ պատմական աշխատություններ, ինչպես են «Դավիթ Բեկը» և «Խամսայի մելիքությունները»[1]։

Ս. Տիրամոր վանքի մասին մենք երկար պետք է խոսենք, որովհետև այս մասը բռնում է պ. Հայկունու կրիտիկայի համարյա կեսը։ Բայց այժմ հարկավոր եմ համարում մի քանի խոսքերով ցույց տալ, թե պատմական վիպասանը մինչև որ աստիճան, կամ ինչ չափով պարտավոր է հետևել պատմությանը։

Բանաստեղծը ազատ է, նա չի պիտի լինի պատմության ստրուկը։ Եթե նա ամենայն ճշտությամբ կհետևի պատմությանը, այլևս չի լինի նա ստեղծագործող, բայց միայն արտագրող։ Բանաստեղծը, արդարև, կարդում է ժամանակագրություններ, ծանոթանում է պատմության հետ, ծանոթանում է իր ընտրած անձինքների հետ, ստուգում է, համեմատություններ է անում, բայց այդ բոլոր ուսումնասիրություններից նա առնում է այն գծերը միայն, ինչ որ պետք է իր ստեղծագործության համար, իսկ գլխավոր գործողությունները իր ֆանտազիայի ծնունդն է լինում։ Նա մինչև անգամ շատ դեպքերում իրավունք ունի ոչնչացնելու պատմության փաստական ճշմարտությունը, որովհետև նրան պետք են գաղափարական ճշմարտություններ։ Հայր Արսեն Բագրատունու Հայկ Դյուցազնը ամենևին նման չէ Խորենացու Հայկի հետ, ինչպես Շիլլերի Դոն-Կարլոսը նման չէ պատմության Դոն-Կարլոսին։ Նույնիսկ պատմաբանների գրչի տակ միևնույն պատմական անցքի նկարագրությունը, միևնույն պատմական անձնավորությունը տարբեր կերպարանք է ստանում։ Եղիշեի Վարդանը շատ զանազանվում է Ղազար Փարպեցու Վարդանից։ Կնշանակե, որ պատմաբաններն ևս իրանց իդեալն ունեն։ Բանաստեղծը վեր է առնում պատմությունից չոր ու ցամաք կմախքը միայն, նրան վերաստեղծում է, հոգի և մարմին է տալիս և մի առանձին պատկերով ներ-

[1] «Դավիթ Բեկի» և «Խամսայի մելիքությունների» վրա խոսելով, պ. Հայկունին իր հոդվածի ծանոթությունների մեջ, կարծեմ չորս տեղ միևնույնը կրկնում է, որ թեև ինքը չէ կարդացել այդ գրքերը, բայց հաստատ իմանում է, որ նրանց մեջ ևս շատ պատմական սխալներ կան։ Այդ պետք է վերաբերել պ. կրիտիկոսի առանձին ընդունակությանը, որ նա առանց կարդալու ևս կարող է նկատել գրքերի մեջ սխալներ։ Բայց ես չեմ կարող լռել պարոնի ստախոսության վրա, թե նա հիշյալ գրքերը չէ կարդացել։ Մի ժամանակ պարոնը Ախալցխայի և Ախալքալաքի գյուղերում մի նոր գրավաճառության եղանակ էր հնարել, գիշերները, գյուղացիներին հավաքում էր անասունների ախոռներում և կարդում էր նրանց «Դավիթ Բեկը»։ Գյուղացիները գրավվում էին, հետո վճարում էին նրան գարի, ձու, պանիր, հավ և այդ մթերքներով գնում էին «Դավիթ Բեկի հատորները։ Ծան. հեղ.:

կայացնում է մեզ։ Այդ պատկերը թեև պատմության նկարագրած պատկերը չէ, բայց մենք տեսնում ենք նրա մեջ պատմությունը հարություն առած, կենդանացած և իր ամբողջական կերպարանքով մեր առաջ կանգնած։ Ահա դրա մեջն է պատմական վիպասանի ճարտարությունը։

Պ. Հայկունու վերևում բերած մեղադրական ճառի մեջ ավելի աչքի են զարկում հետևյալ տողերը, որ նա ուղղում է դեպի Րաֆֆին, թե «պատմական վիպասանը պետք է ունենա գիտություն, (մանավանդ մի քանի գիտությունների), եթե ոչ մասնագիտական, գեթ հավատարիմ և առատ պաշար»։ Այդ տողերի վրա ես ուշադրություն չէի դարձնի, եթե պ. կրիտիկոսը իր հոդվածի մեջ մի քանի անգամ ևս ակնարկած չլիներ, թե Րաֆֆին չէ կարող լավ վիպասան լինել, որովհետև համալսարանական դիպլոմ չունի։ Բայց ես կասեմ, բանաստեղծ լինելու համար դիպլոմ հարկավոր չէ. բանաստեղծի դիպլոմը տալիս է ինքը բնությունը։ Գիտությունը անհաշտ է բանաստեղծության հետ, ճշմարիտ գիտնականը բանաստեղծ լինել կարող չէ։ Ահա ինչ է ասում այդ մասին մի երևելի կրիտիկոս.

«Գիտության և գեղարվեստի մեջ, իրավ է, կռիվ կա։ Ոգևորությանը պետք չէ գիտություն, նա ավելի ուսյալ է, քան թե գիտությունը, նա երբեք չէ սխալվում։ Ստեղծագործության հիմնական օրենքը այն է, որ նա նպատակահարմար է լինում առանց կանխակալ նպատակի, որ նա անգիտակցաբար հասնում է գիտակցության, հերքում է բոլոր թեորիաները և սիստեմները, բացի նրանից, որ առաջացած է մարդկային հոգու օրենքներից և դարևոր փորձերից, որ գործ են դրվում գեղարվեստական արդյունքների վրա։ Ուրեմն, ոչ թե գիտությունն է ստեղծում գեղարվեստը, այլ ինքը գեղարվեստը ստեղծում է մի առանձին գիտություն, այն է՝ գեղեցկի թեորիան։ Ուրեմն գեղարվեստը այն ժամանակ միայն ճշմարիտ է և վսեմ, երբ հավատարիմ է իրան և ոչ թե գիտության, իսկ եթե գիտության, բայց հենց դրա ստեղծած գիտության։ Գիտությունը միայն բարձրացնում է տաղանդը և ոչ թե ստեղծում է նրան»։

Հիմի դառնանք ս. Տիրամոր վանքի տոնախմբության նկարագրությանը «Կայծերի» մեջ (363—379), որի մասին պ. Հայկունին այնքան վրդովված է, որ մեղադրում է հեղինակին և պատմության տգիտության մեջ և թշնամության մեջ դեպի հայոց եկեղեցին և ուրիշ շատ հանցանքների մեջ։

«Կայծերի» հերոսներից մեկը, Ֆարհադը, նկարագրելով Հիշյալ վանքի տոնախմբության հանդեսը իր բոլոր հետաքրքիր սովորություններով ու արարողություններով, միևնույն ժամանակ ներկայացնում է վանքի «խեղճերի» ու «ընկավորների» սարսափելի պատկերը։ «Խեղճերը» ուրուկների (уроды), հաշմանդամների, բորոտների և զանազան տեսակ հիվանդություններով այլանդակված թշվառների մի խումբ է, որ պահվում է վանքում սուրբ աստվածամորից բժշկություն գտնելու նպատակով։ Իսկ ընկավորները մի տեսակ պատգամախոսներ են, որոնք խելագարի նման ցած ընկնելով, փրփրելով, սկսում են զանազան գուշակություններ անել ուխտավորների համար։ Թե առաջինները և թե երկրորդները հովանավորվում են աբեղաներից, որովհետև ազդում են ուխտավորների մեջ սարսափ, սնահավատություն և ջերմեռանդություն։ Եվ այդ բոլորը աբեղաները նպաստավոր են համարում իրանց շահերի համար։

Ֆարհադը այդ բոլորը նկարագրելով, այն կարծիքն է հայտնում, թե դրանք հեթանոսական դարերից մնացած սնահավատություններ են։ Ահա նրա խոսքերը.

«Ոչ մի նոր վարդապետություն բոլորովին չէ կարողանում ջնջել, անհետացնել ժողովրդի սրտից այն, որ թողել է անցյալը։ Հեթանոսական ծեսերը, արարողությունները, պաշտամունքը դարերով արմատացել էին հայ հոգու մեջ, նրանք միացել էին նրա բնավորության հետ։ Քրիստոնեությունը միանգամով սրբել Հայաստանը հին նախապաշարմունքներից կարող չէր, մինչև ժամանակը և կրթությունը չտար մի նոր ձև և կերպարանք» (եր. 370—371)։

Նույն հիվանդները տարվում են և Թիֆլիսի մոտակա եկեղեցիներում, շաբաթներով և ամիսներով պահվում են, նույն ընկավորները կարելի է տեսնել և Թիֆլիսի մոտակա ուխտատեղիներում, որոնք ուխտավորների վրա սարսափ են ձգում։ Բայց Ֆարհադի նկարագրած «խեղճերը» ու «ընկավորները» իրավ, որ հիշեցնում են խորին հեթանոսական ժամանակները, ինչպես որ պատկերացրած է «Կայծերի» մեջ։

Բայց պ. Հայկունին «Կայծերի» մեջ նկարագրած ս. Տիրամոր վանքի տոնախմբության հանդեսը մանրամասն պատմելուց հետո ասում է, որ այդ բոլորը գրպարտություն է, բոլորը հնարել է Րաֆֆին հայոց վանքի սրբությունը արատավորելու համար։ Ահա նրա խոսքերը.

«Կռապաշտության և կուռքերի կենտրոնը հին ժամանակներում, քրիստոնեության և սրբերի կենտրոնը, մինչև մեր օրերը — ինչպես հայտնի է — Տարոնի ս. Կարապետն է (**)։ Այդ վանքը տեսնելու բախտ ես չեմ ունեցել, բայց բավական ճանապարհորդների գրվածքներ (***) այդ վանքի, նրա ուխտագնացների և հանդեսների մասին, կարդացած եմ։ Բացի դրանից, շատ ուխտագնացների հետ մանրամասն խոսակցություն ունեցել եմ։ Բայց ոչ մեկ ճանապարհորդությունից, ոչ էլ մեկ ուխտագնացից ես լսած չեմ «ընկավոր», «ընկավորի» այդ տեսակ պատմություն, այդքան կախարդական գործողությունում հայ կրոնավորի այդքան ջերմ և խորամանկ մասնակցություն — այդքան և լոկ շահասիրական դիտմամբ եղած աչքակապություն»։— Բայց որովհետև դա մի շատ հետաքրքիր խնդիր է, որովհետև «Կայծերի» «ընկավորի» պատգամներից ես չեմ կարող այդ հետևացնել, որովհետև պ. Րաֆֆին այդ և այդպիսի պատմական պարագաների վրա շատ թեթև աչքով նայելու սովորություն ունի, որովհետև — ինչպես ես եմ կարծում — արաբական և պարսկական դերվիշների, վհուկ ու կախարդների գործողությունների ազդեցությունը պարոնի վրա բավական զորեղ է, ուստի ես խոնարհաբար խնդրում եմ նրանից ցույց տալ թե՝ իրան նկարագրությունը ի՞նչ բանի վրա է հիմնըված։ Արդյոք նա ունի՞ իրան ձեռքին որևէ գրավոր կամ բանավոր հիշատակարան, ավանդություն։ Արդյոք իրանից զատ, ուրիշներն էլ տեսա՞ծ են մեր օրերում ս. Աստվածամոր վանքի այդ կռապաշտ վեղարավորներին։ Մի՛ մոռանաք պ. Րաֆֆի, որ այդ ձեր պատկերով, դուք վեր եք առնում մի ցեխի ու շաղախի ահագին կտոր և ծեփում քրիստոնեական եկեղեցվո պատն ի վեր և Քրիստոսի պաշտոնեի երեսն ի վեր»։ «Մեկնեցեք մեզ, պ. Րաֆֆի, թե ձեր այդ ս. Աստվածամոր վանքը իրան միաբանությունով ինչի՞ց արդյոք այդպիսի խոշոր բացառություն է կազմում ամբողջ հայ-քրիստոնյա աշխարհում»։

Այդ տողերը տպվում են «Մեղվի» 37 համարում զետեղված կրիտիկայի մեջ, իսկ նրանից առաջ, նույն կրիտիկայի մեջ, իսկ նրանից առաջ նույն կրիտիկայի շարունակության մեջ (№ 33) միևնույն Աստվածամոր վանքի տոնախմբության մասին խոսելով, ահա ինչ է ասում պ. կրիտիկոսը.

«Պ. Րաֆֆիի արդար իրավունքն է նմանապես նկարագրել և ուրիշ որևէ ազգային հասարակական երևույթ, ժողովրդական սովորություն, վարքուբարք, թեկուզ այդ ամենը իրանից առաջ

ուրիշներն էլ արած լինեն: *Միևնույն բանի և միևնույն ձևով կրկնելը ընթերցող հասարակության վրա կարող է լավ տպավորություն և օգուտ գործել (պ. կրիտիկոսը ծաղրում է)։ Արդ՝ պ. Րաֆֆին էլ, օգուտ քաղելով իրան այդ արդար իրավունքից... երկայն բարակ նկարագրում է «ս.* Աստվածամոր վանքի *ուխտավորներին» (եր. 362—380), թեպետև* միևնույն նկարագրությունը *ունի պ. Աղայանցը Շամշուլդայի ս. Աստվածածնի և Բոլնիսի ս. Գևորգին։* Միևնույն նկարագրությունը *արած ունի և պ. Սարգսյանը («Շահենն ի Սիբիր») ս. Կարապետի ուխտավորներին»։*

*Լավ ուշադրություն դարձրեք։ Այստեղ պ. Հայկունին բոլորովին մերկ, առանց դիմակի, երևան է գալիս իր Յանուսի նման կրկնակի դեմքով,— մեկը ետևից, մյուսը առջևից և ժամանակի ու հանգամանքների համեմատ, նա այս և այն կողմը շուռ է տալիս։*

*Վերևում բերած առաջին օրինակի մեջ նա ասում էր, թե ինքը շատ ճանապարհորդների գրվածքներ է կարդացել, շատ ուխտագնացների հետ մանրամասն խոսակցություններ է ունեցել, հարցուփորձ է արել, բայց ոչ ոքից Րաֆֆիի նկարագրության նման մի բան չէ լսել։ Թե Րաֆֆին այդ իր պատկերով (ս. Տիրամոր վանքի տոնախմբության հանդեսի մասին) «վեր է առնում մի ցեխի ահագին կտոր և նրանով ծեփում է թե քրիստոնեական եկեղեցու պատերը և թե Քրիստոսի պաշտոնյայի երեսը»։ Եվ այդ պատճառով նա խստիվ պահանջում է, որ հեղինակը գրավոր փաստերով ապացուցանի իր նկարագրությունները հիշյալ վանքի տոնախմբության մասին։*

*Վերևում բերած իր երկրորդ օրինակի մեջ, այդ բոլորը մոռանալով, ասում է նա, որ Րաֆֆիի նկարագրությունը ուրիշ ոչինչ չէ, եթե ոչ պպ. Աղայանցի և Սարգսյանցի նկարագրությունները՝ ս. Գևորգի, ս. Աստվածածնի և ս. Կարապետի վանքի տոնախմբությունների մասին։*

*Եթե այդ ճշմարիտ է, այլևս ինչո՞վ է Րաֆֆին հայոց եկեղեցու ու նրա պաշտոնյաների վրա ցեխ քսում։ Չէ՞ որ, առաջին ցեխը իրանց վեպերով քսել են պպ. Աղայանցը և Սարգսյանցը։ Եթե այդ ճշմարիտ է, այլևս ի՞նչ գրավոր ապացույցներ է պահանջում Րաֆֆիից պ. կրիտիկոսը, երբ որ գրավոր ապացույցների տեղը ինքը ցույց է տալիս, ինչպես են՝ պ. Աղայանցի և պ. Սարգըսյանցի վեպերը։*

*Ստախոսները հիշողություն չունեն։*

Եթե պ. Հայկունին մտքումը պահած լիներ, թե «Մեղուի» 33 համարում ասել է, որ Րաֆֆիի նկարագրությունը պպ. Սարգըսյանցի և Աղայանցի նկարագրությունների ճիշտ օրինակն է, այլևս «Մեղվի» 37 համարում ինքն իրան չէր հակառակի, ասելով թե ինքը շատ գրքեր է կարդացել և Րաֆֆիի նկարագրության նման բան չէ տեսել։

Բայց ոչ, ես պ. Հայկունուն այդ աստիճան մոռացկոտ չեմ համարում։ Այդ հակասությունների մեջ մի ավելի հետաքրքիր պատճառ կա։ Պ. Հայկունին, խարդախ վաճառականների նման, իր կրիտիկայի մեջ երկու տեսակ չափ և երկու տեսակ կշիռ է բանեցնում, և որը որտեղ հարկավոր է, այն է գործ ածում։ Այսինքըն՝ նա բոլորովին ներելի է համարում առանձին նպատակների համար առանձին կերպով իր խոսքերը փոփոխել։ Մի տեղում նրան հարկավոր է ցույց տալ, թե Րաֆֆին սեփական դիտողության ընդունակություն չունի, որ ինքնուրույն կերպով նկարագրե մի որևիցե վանքի տոնախմբություն. և այդ պատճառով, իր նկարագրությունը գողանում է պպ. Աղայանցի և Սարգսյանցի վեպերից։ Իսկ մի այլ տեղում նրան հարկավոր է ընթերցողներին գրգռել Րաֆֆիի դեմ և ցույց տալ, թե նա հայոց եկեղեցու թշնամի է, նրա վրա ցեխ է քսում, թե նա ստեղծում է այնպիսի հրեշավոր և երևակայական նկարագրություններ հայոց վանքերի ու վանականների մասին, որ նրանց սրբությունը արատավորե, որ նրանց վարկը ցած գցե։ Պարոնի թե առաջին թե երկրորդ վարմունքը պետք է կրքի և թշնամության արդյունք համարել և ոչ խղճմտավոր կրիտիկական հետազոտություն։

«Կայծերի» մեջ նկարագրված ս. Տիրամոր վանքի տոնախմբության պատկերը ոչ առած է պ. Աղայանցից և ոչ էլ պ. Սարգըսյանցից։ Նրանց մեջ ոչինչ նմանություն չկա։ Նմանությունը այնքան է միայն, որ այստեղ էլ ուխտավորներ կան, այնտեղ էլ։ Բայց Րաֆֆին իր պատկերի մեջ նկարել է այնպիսի հետաքրքիր գծեր, որոնց վրա մեր վիպասաններից ոչ ոք ուշադրություն չի դարձրել։ Այդ մասին հետևյալ համարում։

Ես շարունակում եմ խոսել ս. Տիրամոր վանքի մասին, որովհետև այդ մասը պ. Հայկունու քննադատության մեջ ընդարձակ տեղ է բռնում։

Պ. կրիտիկոսը սաստիկ զայրացած է երևում այդ վանքի «ընկավորներով» և «խեղճերով»։ Ես նախընթաց համարում ծանոթացրի ընթերցողին, թե ինչ են «ընկավորները» և «խեղճերը», իսկ

այժմ համառոտ կերպով ցույց կտամ, թե ի՞նչ կարծիք է հայտնում դրանց մասին «Կայծերի» հերոսներից մեկը, Ֆարհադը։

Նկարագրելով «Խեղճերի» թշվառ դրությունը իր բոլոր սարսափելի գույներով, Ֆարհադը այդ միտքն է հայտնում.

«Տիրամոր վանքի այս ավանդությունները և սովորությունները խիստ խորին կապ ունեին մեր պատմական անցյալի հետ, այն ժամանակների հետ, երբ Ներսես մեծը Տիրանի որդի Արշակի օրերով Հայաստանում հիմնեց բազմաթիվ վանքեր, նրանցից շատերը ծառայում էին որպես բորոտների և հաշմանդամների պատսպարաններ։ Ժողովրդից հեռացած այդ ախտավոր հասարակությունն ապրում էր առանձին վանքերի մեջ, ուր նրանց խնամք էին տանում։ Բայց այդ մարդասիրական սովորությունը, ժամանակների հետ փոխվելով, ստացավ բոլորովին ուրիշ նշանակություն և ժողովրդի սնահավատությունը տվեց նրան մի այլ կերպարանք» (369)։

Հետո խոսում է, թե ինչպես այդ բորոտները և հաշմանդամները այժմ համարվում էին ս. Տիրամայրից պատժված թշվառներ և նրանց ժողովրդի մեջ ման ածելով, վանքի սպասավորները տարածում էին Աստվածամոր սարսափը և փող էին հավաքում և այլն։

Մեր ժողովրդի մեջ համարյա ամեն տեղ կա այդ նախապաշարմունքը, որ հայտնի հիվանդություններ համարում են այս և այն սուրբից կամ խաչից ստացված, որպես պատիժ, և տանում են հիվանդներին նույն սուրբերի ուխտատեղիները բժշկություն գտնելու համար։

Իսկ նկարագրելով «ընկավորներին», թե որպես այդ մարգարե կանայք, բերանները փրփրած, խելագարի նման զանազան պատգամներ են կարդում և ուխտավորների համար գուշակություններ են անում,— Ֆարհադը, այդ բոլորից հետո, նրանց համեմատում է հին պիֆիաների հետ, ասելով.

«Կարդալով վերջին ժամանակներում Հունաստանի պատմության մեջ օլիմպիական, դելֆյան Ապոլլոնի և սպանդարամետական տոների մասին՝ միշտ ես հիշում եմ իմ ուխտագնացությունը և սուրբ Տիրամոր վանքը։ Ես հիշում էի նրա տոնախմբությունը, ուր սկսյալ խորին հեթանոսությունից, ժողովրդի հոգու մեջ մտած նախապաշարմունքները արտահայտվում էին իրանց բոլոր նախնական կերպարանքով։ Ես երևակայում էի իմ մտքում միշտ մի այսպիսի պատկեր — քրիստոնեությունը հայտնված քուրմի զգեստով» (370)։

*Պ. Հայկունին այդ բոլորը զրպարտություն է համարում ասելով, որ ս. Ցիրամոր վանքում ոչ «ընկավորներ» կան և ոչ «խեղճեր»։ Եվ այդ առիթով երկար Րաֆֆիի հակաքրիստոնեական և հակաեկեղեցական նկրտումները բամբասելուց հետո, պահանջում է, որ հեղինակը ուրիշ գրավոր փաստերով ապացուցանե, թե իր նկարագրությունները հիշյալ վանքի մասին ճիշտ են։ (Մի՛ մոռացեք, որ ինչպես նախընթաց համարում ցույց տվի, պ. կրիտիկոսը ինքը աշխատում էր ապացուցանել, որ Րաֆֆին իր նկարագրությունները գողացել է պ. Աղայանից և պ. Սարգսյանից, որոնք նրանից շատ առաջ նկարագրել են միևնույն երևույթները)։*

*Բայց այստեղ ինձ զարմացնում է երկու բան. առաջինը, որ պ. Հայկունին դատապարտում է թե՛ հեղինակին և թե՛ իր քննելի առարկան առանց նախապես ապացուցանելու նրանց անճշտությունը։ Մենք տեսանք, թե որպիսի մեղադրական ճառ կարդաց հեղինակի վրա, նախատելով նրան և պատմության տգիտության մեջ, և եկեղեցու դեմ թշնամության մեջ և այլն։ Երկրորդ, ավելի զարմանալին այն է, որ նա հեղինակի գրածները հերքելու համար, փոխանակ փաստերը ինքը առաջ բերելու, փաստերը հեղինակից է պահանջում։ Ահա նրա խոսքերը.*

*«Գիտեմ, իրավունք ունիք ասելու, որ ես ձեր վերջին գաղափարները — «խեղճերն» իբրև վանքի և վանականի նյութական աղբյուր լինելը — չհերքեցի։ Այդ միտքը ցրելու համար մի բառ անգամ չասացի։ Չասացի, որովհետև ձեր ասածներին հավատ չընծայեցի։ Դուք, պ. Րաֆֆի, այդ դեպքում մի գանգատավոր եք, իսկ ես պատասխանատու։ Թե քաղաքական և թե բարոյական օրենքների զորությամբ, պ. Րաֆֆի, գանգատատուն նախ՝ ինքը պարտական է իրան գանգատը փաստերով ապացուցանե, որ հետո պատասխանատուն էլ աշխատի իրան հերթում իրան փաստերը առաջ բերել։ Այդ պարզ հիման վրա, եթե դուք ձեր գրածները չհաստատեք, իմացեք, որ դատը կորցրած եք»։*

*Պ. Հայկունին նեղ տեղ բռնված կատվի նման պատեպատ է ընկնում և ինքն էլ չէ հասկանում, թե ի՞նչ է ասում։ Նա դիմում է հիմար սոֆիզմների։ Րաֆֆիին գանգատավոր է համարում, իսկ իրան պատասխանատու, և այդ հիման վրա Րաֆֆիից ապացույցներ է պահանջում։ Կարծես թե վեպի հեղինակը պարտավոր է իր գրածի յուրաքանչյուր տողի համար նոտարիուսի մոտ հաստատած վկայականներ ունենալ և ուղարկել ընթերցողներին, որ նրան հավատան։*

Պ. Հայկունին մոռանում է, որ ինքը կրիտիկոսի պաշտոն է կատարում, և եթե նա նկատում է վեպի մեջ անճշտություններ, պետք է ինքը ապացուցանե, որ նրանք անճիշտ են։ Նա է դատ սկսել, նա է բողոքողը, նա է գանգատավորը և ոչ թե Րաֆֆին։ Ես կարծում եմ, որ Րաֆֆին նրան չէ հրավիրել «Կայծերի» մասին ամեն տեսակ հիմարություններ գրել, և նա շատ գոհ չի լինի, որ իր աշխատությունները քննում են կրիտիկայի դեռ այբուբենը չկարդացած Հայկունիներ։

Պ. Հայկունին նայում է վեպի վրա որպես մի պոլիցիական ակտի վրա, որի մեջ վկաների ցուցումներով արձանագրվում է մի որևիցե պատահած անցք։ Նա խստիվ պահանջում է, որ Րաֆֆին անպատճառ գրավոր փաստերով ապացուցանե, որ ս. Տիրամոր վանքում կատարվում են այն արարողությունները, որ նկարագրված են «Կայծերի» մեջ։

Ս. Տիրամոր վանքում կարող էին ամենևին կատարված չլինել այն արարողությունները և ս. Տիրամոր վանքը կարող էր մինչև անգամ ամենևին գոյություն չունենալ, բայց վիպասանը կատարյալ իրավունք ունի ստեղծել մի երևակայական վանք և տեղափոխել այնտեղ այս և այն վանքում կատարվող արարողությունները։ Տեղը նշանակություն չունի, այլ նշանակություն ունի իրողությունը, որ կատարվում է։ Բայց ես ավելին կասեմ, մինչև անգամ իրողություններն ևս իրանց իսկական կերպարանքով նշանակություն չունեն վիպասանի համար։ Նա իրավունք ունի հավաքել փաստեր և հավանականության վրա հիմնվելով, նրանցից ստեղծել մի բոլորովին ուրիշ պատկեր, որը թեև իր ձևով եղածների նման չէ, բայց նրանց հատկությունն ու բնավորությունն ունի։ Ես օրինակներով կբացատրեմ այդ միտքը։

Մի քանի տարի առաջ, հացի թանկության ժամանակ, Երևանյան նահանգի վանքերի մեկից ձայն տարածեցավ, թե այնտեղ հրաշք է կատարվել և միաբանների սաստիկ քաղցածության միջոցին, վանքի դատարկ կարասները լցվել են ալյուրով։ Այդ ալյուրն այն հատկությունն ուներ, եթե նրանից մի փոքր տարվելու լիներ մի որևիցե տուն և ցրիվ տայիր դատարկ կարասների մեջ, նրանք ևս կլցվեին ալյուրով։ Շրջակայքի գյուղացիները բազմությամբ դիմում էին հիշյալ վանքը և մի բուռն հրաշալի ալյուրից ձեռք բերելու համար մի քանի ռուբլիներ էին վճարում։ Բարձր հոգևոր կառավարությունն այդ իմանալով, իհարկե, արգելեց վանահոր այդ խաբեբա վաճառականությունը։

Ես ճանաչում եմ մի այլ վանք, որի տաճարի մեջ ուխտավորներին ցույց են տալիս մի փոքրիկ ավազան, լցված ձեթով, նրա համար ասում են, թե ձեթը ինքն իրան բխում է և նրանով վառվում են վանքի բոլոր կանթեղները։ Այդ սրբությունը կաթիլներով վաճառվում է ուխտավորների վրա, որոնք նրանով օծում են իրանց հիվանդոտ աչքերը և բժշկություն են սպասում։

Մի այլ տեղ աբեղան ավետարանի վրա բախտահմայություն է անում։ Ուխտավորը աչքերը խփած, իր ձեռքերով բաց է անում սուրբ գիրքը, իսկ հետո վարդապետը պատահած երեսի առաջին համարը կարդալով, նրա իմաստի համեմատ գուշակում է ուխտավորի բախտը։

Վիպասանը տեսնում է այդ բոլորը և դրանց նման ուրիշ շատ արարողություններ և ստեղծում է մի բոլորովին այլ պատկեր, որի մեջ նույնպես երևում է կղերի խաբեությունը և ռամկի սնահավատությունը։ Այդ երևույթի մեջ այնքան նշանակություն չունի գործողության ձևը, տեսակը, թե ինչպես է կատարվում, այլ նշանակություն ունի գործի բնավորությունը և նպատակը, որի համար կատարվում է։ Եվ վիպասանը այդ վերջինից միայն օգուտ է քաղում և նրա համար պատկեր է ստեղծում։

Բայց ցույց տալու համար, որ Րաֆֆին իբրև վիպասան անգամ անձնատուր չէ եղած երևակայական հրապույրների, ցույց տալու համար, որ «Կայծերը» խորին հետազոտության և անցյալի ու ներկայի խղճմտավոր ուսումնասիրության արդյունք է, ես կբերեմ ս. Տիրամոր վանքի մասին այն գրավոր ապացույցները, որ պահանջում է հեղինակից պ. Հայկունին։

Այդ ես չէի անի, եթե պ. Հայկունին թե իր նկատողությունները հիշյալ վանքի մասին և թե իր պահանջը, նենգավոր նպատակներով արած չլիներ։ Նա աշխատել է, որպես առաջ ես ասեցի, ընթերցող հասարակության մոլեռանդությունը գրգռել հեղինակի դեմ, իբր թե նա ցեխ է քսում հայոց վանքի ու վանականների վրա, նկարագրելով նրանց մեջ հեթանոսական արարողությունների մնացորդները։

Իմ բերած ապացույցները կլինեն ոչ թե մի աշխարհականի գրվածքներից, այլ մի հարգելի վարդապետի գրվածքներից։ Կարծեմ վարդապետի վկայությունը վանքի մասին ավելի մեծ կշիռ պետք է ունենա։

Մեր գրականության մեջ հայտնի է հայր Գարեգին վարդապետ Սրվանձտյանցը,— Խրիմյան Հայրիկի առաջադեմ աշակերտ-

ներից մեկը։ Նա հայտնի է, ոչ միայն իբրև մի ուսյալ և լավ եկեղեցական, այլև որպես հեղինակ զանազան գրքերի։ Ոչ ոք նրա չափ չէ ուսումնասիրել և չէ հավաքել մեր ժողովրդական ավանդությունները, սովորությունները, մեր նախապաշարմունքները և մեր թե վանքերում և թե կյանքի մեջ կատարվող սնոտիապաշտությունները։ Նա տվեց մեզ, բացի զանազան պարբերական թերթերի մեջ հրատարակված հոդվածներից և չորս ամենահետաքրքիր գրքեր[1], որոնք խիստ հարուստ գանձ են մեր հնագետների հետազոտության համար։

Ահա թե ինչ է գրում հայր Սրվանձտյանցը միևնույն սուրբ Տիրամոր վանքի մասին, որի տոնախմբության հանդեսը իր «խեղճերով» և «ընկավորներով» նկարագրված է «Կայծերի» մեջ։

Խոսելով այն բանի վրա, թե վանքերից շատերը սկզբում մեհյանների տեղեր լինելով, մինչև այսօր մնացել են նրանց մեջ կռապաշտական սովորություններ, հայր Սրվանձտյանցը շարունակում է.

«Իբրև օրինակ խոսենք Խաթուն Տիրամոր վրայոք.

Վանեն դեպի հյուսիս իբր ութն ժամու չափ հեռավորությամբ, Բզնունյաց ծովուն ափը, բարձրադիտակ դիրք մը ունի այս վանքը և քանի մը տուն հայ գյուղացիք կը բնակին անոր շուրջ. ծովն իր երկայնությամբ կը տարածի անոր առջևը, և իր եղջերաձև սպառվածքը սույն դարևանդին ոտներուն ներքևն է, ուստի կընդունի իր մեջ Բանդիմահույի գետը, որ է ձկանց առուն, իր առջև կերևի Արճեշ քաղաքը, տակավին շեն իր պարիսպներով, դռներով, շուկաներով, եկեղեցիով և մինարայով մը, զոր շրջապատած է ծովուն ջուրը և դարձուցած է կղզի մը, բայց անբնակ....

Այս վանքը գերեզման մը ունի իր տաճարին մեջը և կսեն թե աստվածածնի հագուստներեն մաս մը զետեղված է հոն։ Այս գերեզմանն է, որ կերդնուն «Խաթուն Տիրամոր» անունով. այն անունով օրհնություն և անեծք կուտան և շատ հրաշալի է. հոն կուգան ոչ միայն Վանա բոլոր գավառաց կողմերեն, այլև Պարսկաստանի և Երևանի ու Նախիջևանա գավառներեն ամեն տարի բազմաթիվ ուխտավորները։ Ուրուկներու[2] ժողով մը կա անպակաս այստեղ, որ զանազան աշխարհներե կուգան և քանի մը տա-

---

[1] «Գրոց-Բրոց, [2] «Հնոց-Նորոց», [3] «Մանանա», [4] «Թորոս աղբար»։

[2] Ուրուկ նույն նշանակությունն ունի, որ ռուսերեն ասում են урод։ Ուրուկ ասում են բորոտներին, հաշմանդամներին, մարմնի հրեշավոր այլանդակություն ունեցողներին։

րի կը ծառայեն, կաղոթեն ու գյուղացիներեն կը ղրկվին այս և այն գավառների ժողովք ընելու, բերելու գիրենք ղրկողին, վասնզի գյուղացիք բաժին ըրած են իրենց վրա, մեկը՝ Վան քաղաք և անոր շրջապատի գյուղորայք, մեկը՝ Բաշգալան, մեկը՝ Պարսկաստան, մեկը՝ Մուշ, մեկը՝ Տիգրանակերտ, մեկը՝ Պայազիտ, մյուսը Երևան, մինչև Կարնո և Ախալցխայի կողմերը և այլն։ Ամեն տարի իրենց մարդ կերթա շրջելու և հանուն տիրամոր եղած խոստումները թե մոմ, թե խունկ, շուշփա, խաչ, դրամ, կանանց խոստ ըրած արծաթի զարդերը, մատաղցու կենդանիք, մանավանդ «տիրամոր նշան» ունեցող կով և եզ, որոնց ճակատին վրա ճերմակ նշան մը կլինի, կը բերեն և այդ գյուղացիք կը տիրեն։

Ուրուկները հետզհետե կառողջանան և կերթան, ոմանք ալ նույն կը մնան և հոն կը մնան։ Այսպիսիք կանվանին «տիրամոր խեղճ» և իրենց ախտի անունն է «տիրամոր յարա»»[1]։

Վանքի տոնախմբության հանդեսի մասին մի համառոտ նկարագիր տալուց հետո հայր Սրվանձտյանցը շարունակում է.

«Այս տոնը կանվանեն «ասպարածնի տոն» և գյուղն ու վանքը մեկ անունով «ասպարածին» կանվանեն, այնինչ զաստված՝ ասպած և աստվածածին՝ ասպածածին կարտասանեն վանցիք, միայն այս տեղին ասպարածին անունը կուտան կամ Խաթուն տիրամոր։

Արդ, այդ գիրքը, այդ արարողությունք, այդ անունը արդյոք հնախուզաց համար նոր լույս մը չընծայեր թե քրիստոնեությենեն առաջ ի՞նչ վայր է եղել դա։

Եվ մի՞թե Մշո սուրբ Կարապետի վանքը իր վարդավառի տոնովը Զենոբի գրածին համեմատ նախնի գիսանյանց և վահևանյանց տոնը չե՞ն հիշեցներ. ինչպես նաև հոն մինչև ցայսօր Աշտիշատ ուխտի երթալը նույն օրը... Սույնպես և Անձևացյաց գավառի մեջ Հոգվոց վանից Դարբնաքարերուն[2] ականջ դնել, կուանի ճայ-

1 Տիրամոր յարա նշանակում է տիրամոր վերք, խոց, բորոտություն։

2 Հոգվոց վանքի դարբնաց քարի մասին ընդարձակ գրում է Խորենացին ս. Տիրամոր պատկերի պատմության մեջ և հիշում միևնույն կախարդական արարողությունները, որ այնտեղ կատարվում են և մեր օրերում։ «Եւ եկեալ (Բարթողիմեոս առաքեալ) յաշխարհն Անձավացեաց՝ ի համբաւ քարի միոջ՝ զորգի դևք բազումք բնակեալ էին անդ, և պատրէին զմարդիկ տեղվոյն՝ տանել յայնմ տեղվո է գեղս ախտական առ ի կատարել զպղծութիւնս ախտից, կռանաձայնս դարբնից ահավոր հրաշիվք արհավիրս գործեին, յորս մարդիկ աշխարհին սովորեալք՝ անդ առ քրային դեգերէին, առեալ ի չաստվածոցն ծրարս ճարախածոր ի պատիրախտիցն... և անուանէին զանուն տեղվոյն այնորիկ դարբնաց քար։ Հասեալ սուրբ առաքեալն Աստուծոյ անդ՝ հալածեաց զդարբինսն և զկռասն

նը լսելու և անկե փոշիներ առնուլ ի պահպանություն անձյանց» և այլն[1]։

Գալով «ընկավորներին», ինչպես է գրում Հայր Սրվանձտյանցը․

«Ինկավորներն ալ մեր աշխարհի մեջ նշանավոր են. բացի ճշմարիտ լուսնոտներեն, կամավոր դաս մը կա կանանց մեջ «ինկավոր» ըսված, որոց թևերն ու թիկունքը նաև երեսներ ու ճակատները զանազան նկարներ ունին ասեղներով ծակած և կապույտ գունավորած, որոց յուրաքանչյուրը մեկ-մեկ սուրբի կամ վանքի, կամ անվանի հրաշագործ ավետարանի մը ինկավորներն են, տունետուն կշրջին և կանանց համար թիզ կչափեն, աղոթք կընեն և կհորդորեն անոնց ախտերուն կամ ուխտերուն համար իրենց սուրբին դիմել։ Երբ ուխտավոր կանայք լցվեր են թագավոր ավետարանին առջև կամ որևիցե ուխտատեղ մը, ինկավոր առաջուց գիտակ եղած է անոնց յուրաքանչյուրի սրտի խորհուրդին, և անոնց ունեցած իրին, կամ վրաները կրած զարդին, ուստի հանկարծ կփրփրի և գետինը կիյնա ի մեծ զարհուրանս ներկայից. կանշնչանա պահ մը և խաչ կդնեն բերան կհանդարտի, ապա հափըշտակյալ իմն՝ գուշակություններ կսկսի ընել. «Կատիկ խաթուն, քո սրտի խորհուրդն այս ինչ է, բարի է, իմ աղեն (նույն սուրբը) քեզնից ի քեն կուզե ճակտիդ մաղշան (արծաթե զարդ է), կամ վզիդ ճտնոց ոսկին, կամ գինդերդ և այլն, որ քո սրտի մուրադը տա»։ Երանելի կդառնա այն տիկինը և մեծավ զվարթամտությամբ կհանե կձգե հոն ուզած բանը։ Այսպես յուրաքանչյուրեն ուզած կոզոպուտը կամավորապես կավարե թշվառականը, վերջը ավետարանի կամ խաչին տիրոջ հետը մեջերնին կբաժանեն։

Այսպիսիք են, որ բազում շահս տան տերանց յուրյանց մուջելովն։ Իսկ իրենց մարմնո վրա եղած նկարն և մյուս ձևերն ու հնարքները ավելի հին և հնդկական կթվին»[2]։

---

փշրեաց, որ հանուն Անահտայ էր... Անդ հիմնարկեալ սուր առաքեալն զհիմն տաճարի Սրբուհոյն յուրովք, իսկ ձեռօքն՝ շինեա եկեղեցի և անվանեաց զնա Սուրբ Աստուածածին... և անուանե զտեղին Հոգեաց վանս»։

Պ. Թոխմախյանի ճանապարհորդության մեջ կարդում ենք, որ հիշյալ Հոգվոց վանքում մշտապես պահվում է մի նվիրական աքաղաղ, որի ձայնին կամ ազդարարությանը թե միաբանները և թե ուխտավորները ամենայն հնազանդությամբ խոնարհվում են։ Ծան. հեղինակի։

1 «Մանանա» ժողովաց և ի լույս ընծաեաց Գ. Վ. Սրվանձտյանց, Կ. Պոլիս, 1876։

2 «Մանանա— եր. 126—128։

Հիմա համոզվո՞ւմ է պ. Հայկունին, որ ս. Աստվածամոր վանքում մինչև այսօր հայոց Պղնձեաս քրմուհին ուխտավորների համար գուշակություններ է անում։ Բայց մենք ավելին կասենք, որի վրա Րաֆֆին ուշադրություն չէ դարձրել իր «Կայծերի» մեջ։ Մեր մի քանի վանքերում դեռ գոյություն ունեն, եթե ոչ հնդկացոց սպիտակ փղերը և եգիպտացոց ապիսները[1], բայց դրանց նման ուրիշ սրբազան անասուններ։ Ահա ի՛նչ է գրում այդ մասին հայր Սըրվանձտյանցը․

«Պարսկահայոց սահմանագլուխը, Վասպուրականի գավառը, Բաշգալեին մերձ է ս. Բարդուղեմիոսի վանքը, հոն մշտնջենապես կգտնվի զույգ մը ճերմակ գոմեշ, արու և էգ, որքան ծնեն, որքան մեռնեն, միշտ երկու հատ կմնան. երբ մեկը քանի մը տարի տենդով տանջվի, այն գոմեշներեն մազ մը կբերեն իրեն, վրան պահելու լինի, մեկեն կառողջանա»[2]։

Գալով այն հարցին, որ «Կայծերի» տեր Թոդիկը, այդ քահանա-կախարդը երևակայական անձնավորություն չէ, այլ նրա նմանները բազմաթիվ են, այդ մասին մի քանի քաղվածքներ կբերենք հայր Սրվանձտյանցի «Մանանայից»։

«Հըզու քաղաք կոչված՝ տասն քահանա ունին, հորում 80 տուն հայ կա։ Ըրնդվան՝ ինը քահանա, 60 տուն հայ։ Ասոնց քահանայք մուրացկանությամբ կապրին գեղեր ու քաղաքներ շրջելով, հասարակ կարդալե անգամ տգետ են, բայց շատերը կախարդություն կնեն» (եր. 114)։

«Սասնո և Մոտգանու քահանայից գործն ալ կախարդություն է ըստ մեծի մասին։ Փոխանակ ավետարանի՝ մեկ-մեկ Ախտարք[3] ունին ծոցերնին գյուղե գյուղ կշրջեն հիվանդաց թուղթ ընելու, ոմանք ալ աղջկանց սիրտը զինք սիրող երիտասարդին դարձնելու, կամ երիտասարդին սիրտը՝ զինքը սիրող աղջկան» (եր. 115—116)։

«Այս կողմերը ծառապաշտություն և ջրապաշտությունն ընդհանուր է հայոց, քրդաց և եզիտաց մեջ»։— «Այս կարգի բաներ շատ կան, բայց մենք չենք կրնար պատմել» (եր. 117)։

Պատմողը վարդապետ է, զգուշանում է...

---

1 Ապիս եգիպտացոց ամենանշանավոր աստվածներից մեկն էր, Օզիրիսի ներկայացուցիչը երկրի վրա, դա մի սև եզն էր և ճակատի վրա պետք է ունենար սպիտակ քառանկյունի բիծ։

2 «Մանանա» եր. 107—108։

3 «Ախտարք», աստղահմայության կախարդական գիրք է։

Այդ բոլորից հետո, եթե պ. Հայկունին չհամոզվի, կարծեմ «Կայծերի» ընթերցողները կհամոզվեն, որ Րաֆֆին ամենևին նպատակ չէ ունեցել, որպես ասում է պ. Հայկունին, հայոց վանքի և վանականների վրա «ցեխ քսելու» այլ նա նկարագրելով վանքի մեջ կատարվող հեթանոսական արարողությունները, կամեցել է, որ վանքերը սրբվեն այդ «ցեխերից» և քրիստոնեական տաճարները վայելուչ ձև ու կերպարանք ստանան։ Բայց պ. Հայկունին ուրիշ կերպով է հասկանում այդ. ահա նրա խոսքերը.

«Այս կամ այն վանահոր կամ աբեղայի կողմից այսպիսի ձղեռնագործություն ամեն տեղ և ամեն ազգի մեջ եղած է և միշտ կարող է լինել։ Բայց թե այդ բանից խրախուսված՝ մի ամբողջ ազգի դարավոր սրբությունները խեղկատակության և ձղեռնագործության որջեր շինել — դա պետք է խոստովանեմ, միմիայն «Կայծերի» հեռատես հեղինակը կարող է անել։ Եթե «Կայծերը» մի տեսակ փիլիսոփայական, ուսումնական գրվածք լիներ, ինչ ասել կուզի, որ նրա հեղինակը միանգամայն իրավունք ուներ վանական ամեն տեսակ երևույթ էլ մանրաքննին հետազոտության և խիստ քննադատության առնելով՝ վերջ ի վերջո այս կամ այն եզրակացության հասնել, բայց որովհետև պ. Րաֆֆիի գիրքը որոշ ուղղությամբ և որոշ տենդենցիայի համար գրված է, ուստի ես չեմ հասկանում, ընթերցող, թե հայ «քաղաքական» թերթի «Մշակի» գաղափարների ամենամոլեռանդ քարոզիչը, հայ ազգի համար ի՞նչ շահ և օգուտ է տեսնում, երբ այդ ստրճան գայթակղեցնում և մոլորեցնում է հայ ամբոխին դեպի սրա դարավոր սրբություններն ու սրբավայրերն» և այլն։

Երբ բանը հասնում է կրոնական, եկեղեցական խնդիրներին, պ. Հայկունին իր դատողությունների թելը երկարացնում է, այստեղ նա իր մթնոլորտի մեջն է։

Այդ պարոնը, որպես առհասարակ նրա նմանները մի տեսակ արդարանալու ձև ունեն։ Երբ նրանց ասում ես, թե մեր ժողովուրդը այս և այն անբարոյական սովորություններն ունի կամ մեր հոգևորականները այս և այն անկարգություններն են կատարում, նրանք միշտ խոսք են գտնում պատասխանելու ասելով, թե այդ ամեն ազգի մեջ կա։ Լավ, մի՞թե մենք չի պիտի բողոքենք մեր մեջ գտնված գողերի, ավազակների, խաբեբաների դեմ, մտածելով թե գողեր, ավազակներ, խաբեբաներ ամեն ազգի մեջ գտնըվում են։ Ո՞ր ազգի մտածող և խելացի մարդիկը չեն բողոքում անբարոյականության դեմ։ Մի՞թե խաբեբա աբեղաների, կախարդ

քահանաների վարքի նկարագրությունը ի լույս ածելը նշանակում է մի ամբողջ ազգի դարևոր սրբությունները խեղկատակության առարկա դարձնել։ Մի՞թե Բարթուղիմեոս առաքելո վանքի սպիտակ «գոմեշները, Տիրամոր վանքի «ուրուկներն» ու «ընկավորները» և Հոգվոց վանքի «դարբնաքարերն» ու «նվիրական աքաղաղը» ազգային սրբություններ են և նրանց դեմ խոսելը կարող է մեղք համարվել։ Ես կարծում եմ, ոչ թե Րաֆֆին, այլ եթե Հայաստանեայց եկեղեցու հիմնադիր ս. Գրիգոր Լուսավորիչը, որը անխնա ձեռքով խորտակում էր Հին Հայաստանի կուռքերն ու հեթանոսական հիշատակարանները,— եթե նա ինքը մյուս անգամ աշխարհ գալու լիներ և տեսներ, որ մեր աբեղաները իրենց շահերի համար դեռ պահպանել են այս և այն վանքում կռապաշտական արարողություններ, անտարակույս, բոլորին դուրս կաներ, կրկնելով Հիսուս Քրիստոսի խոսքերը. «Իմ տունը պետք է աստուծո տուն կոչվի, իսկ դուք արեցիք ավազակների այր»։

Պ. Հայկունին ասում է, եթե «Կայծերը» լիներ մի փիլիսոփայական կամ ուսումնական գրվածք, նրա հեղինակը իրավունք ուներ վանական այս և այն երևույթները խիստ քննադատության ենթարկել, բայց քանի որ նա ոչ փիլիսոփայական և ոչ էլ ուսումնական գրվածք է, նրան ներելի չէ վանքերին կամ վանականներին դիպչել։ Ամեն մի հարցում պ. կրիտիկոսը ցույց է տալիս իր խորին տգիտությունը։ Պարոնը չգիտե, որ ժամանակակից վեպի բարձր նշանակությունը հենց նրանումն է, որ վճռում է այն բոլոր հարցերը, ինչ որ փիլիսոփայությունն ու ուսումը անզոր են լինում վճռելու։ Նրա մեջ քննադատվում են ամեն տեսակ հիմնարկություններ, ամեն տեսակ երևույթներ, ինչ որ ներկայացնում է մեզ կյանքը և մարդկությունը։ Այդ հիմնարկությունների և երևույթների մեջ բացառություն չէ կազմում եկեղեցին իր եկեղեցականներով, վանքը իր վանականներով։ Ի՞նչ է «Թափառական հրեան», եթե ոչ եզվիտների խաբեբայության նկարագիրը։ Ո՞ր եվրոպական ազգի մեջ չկա մի ամբողջ գրականություն, որ նվիրված չլիներ հոգևորականների վարքի նկարագրություններին։ Իրանց վանքերը և աբեղաները նկարագրում են նրանք ոչ միայն վեպերի մեջ, այլ մինչև անգամ թատրոնական բեմի վրա են դուրս բերում։

Բայց պ. Հայկունու նպատակը ուրիշ է. նա աշխատում է գրգռել հայ ժողովրդի մոլեռանդությունը «Կայծերի» հեղինակի դեմ և նրա գրքին վնասել։ Մի տեղում չկարողանալով զսպել իր կրքերը, պարզ ասում է նա.

«Պարշելի վարդապետներ։ Ահա, երևի, ինչի համար «Մշակը» և նրա գաղափարների ամենամոլեռանդ քարոզիչ րաֆֆիները այդքան ջերմ եռանդով ու ցանկությամբ հայ եկեղեցու համար ռեֆորմ, վերանորոգություն են պահանջում»։

Մի՞թե վանքը կախարդներից, սրբազան գոմեշներից, նվիրական աքաղաղներից և սուտ մարգարեություններ անող կնիկներից (ընկավորներից) մաքրելը նշանակում է եկեղեցու մեջ վերանորոգություններ կամ ռեֆորմ մտցնել։ Ուրեմն պ. Հայկունին այդ կռապաշտական արարողությունները մեր եկեղեցու էական հիմունքներից մեկն է ընդունում, որ նրանց ոչնչացնելը համարում է եկեղեցու դավանությունները փոփոխել և նրա մեջ վերանորոգություններ մտցնել։ Թող շողոքորթ փարիսեցիները խունկ ծխեն ամեն տեսակ կուռքերի, բայց Հիսուս Քրիստոսի եկեղեցին սուրբ է և պետք է միշտ մաքուր մնա ամեն տեսակ աղտեղներից։

Այժմ դառնանք դեպի պ. Հայկունու այն նկատողությունները, որոնցմով ցույց է տալիս, թե Րաֆֆին «Կայծերի» զանազան տեղերը առել է այս և այն գրվածքից։ Բայց նախքան նրա նկատողությունների վրա խոսելը, պետք է հասկանալ, թե ի՞նչ է նշանակում գրականական սեփականություն։ Այդ մասին ես կբերեմ Սարդուի խոսքերը, որին շատ ժամանակ չէ, որ մեղադրում էին գրականական գողության մեջ։

Խոսելով գրականական սեփականության մասին, ասում է նա.— Այդ հարցի վճռելը շատ դժվար է, թեև նոր չէ։ Ահա երկու հազար տարի է, որ նա հերթի վրա է և հասարակական կարծիքը միշտ քննում է նրան միևնույն կերպով։ Իրավ է, գտնվել են մարդիկ, որոնք ասել են, թե գրականական սեփականությունը գտնըվում է միայն այնտեղ, որտեղ կա ստեղծագործություն։ Այդ նշանակում է լուծել հարցը մի նոր անլուծանելի խնդիրով, որովհետև, նախ և առաջ, պետք է լուծել, թե ի՞նչ է ստեղծագործությունը։ Մյուսները ասում էին.— Շատ հասկանալի է, դուք ստեղծում եք մի մեծ աշխատություն, ոչ ոքի խելքին չէ գալիս փոխակերպել նրան, ահա հենց այստեղ է ձեր գրականական սեփականությունը։ Իհարկե, լավ խորհուրդ է, բայց դժվար է կատարելը։ Երրորդները գրում էին.— Գրականական սեփականությո՞ւն։ Բայց դա ամենևին չկա։ Այդ պպ. Վեյսի, Սարսեի և Ֆուկիեի կարծիքն է։ Բայց դա մեր կարծիքը չէ։ Ես հաստատ հավատ ունեմ գրականական սեփականության մասին, բայց ես հավատում եմ ճշմարիտ գրականական սեփականությանը։ Գրականական սեփականությունը է այն

ինքնուրույն, առանձին ձևը, որը մատենագիրները կամ արհեստագետները կարողանում են տալ ընդհանուր գաղափարին։ Այդ որոշումը ինձ չէ պատկանում, այլ պատկանում է բոլորին։ Եվ ինչպե՞ս կարող է այլ կերպ լինել։ Մարդկությունը միշտ միևնույնն է։ Նա անվերջ կերպով ինքն իրան կրկնում է։ Այստեղ դուք միշտ հանդիպում եք միևնույն կրքերին, միևնույն ծիծաղելի կողմերին, միևնույն մոլություններին։ Դրաման կամ կոմեդիան (բացառություն չեն կազմում և վեպերը), որ օգուտ են քաղում այդ կրքերից, ծիծաղելի կողմերից, մոլություններից, ստիպված են պտույտ գալ միևնույն կախարդված շրջանի մեջ։ Այդ պատճառով, մեր ժամանակի մատենագիրները կամ արհեստագետները անում են այն, ինչ որ արել են նրանց նախորդները, միայն այն կերպարանափոխություններով, որոնք պայմանավորվում են հասարակական կյանքով, լեզվով, բարքուվարքով և այլն։ Իսկ էության մեջ, չնայելով ձևերի զանազանությանը,— էությունը մնում է միևնույնը։ «Համլետը — դա Օրեստն է, Օրոսմանը—Օթելլոն է, Գրանդոնը—Հարպագոնն է...։ այսինքն, միշտ սեր, խանդոտություն, ամուսինների անհավատարմություն, ժլատություն, մի խոսքով, միշտ միևնույն մարդկությունը։ Բայց ամեն մեկը օգուտ է քաղում այդ ընդհանուր գաղափարներից իր ձևով։ Թեև էությունը միշտ միևնույնն է մնում, բայց ձևը կարող է փոփոխվել անվերջ կերպով, հեղինակի իսկական և սեփական դրոշմի շնորհիվ, որը նա տալիս է ընդհանուր գաղափարին և բոլորովին մաշված սյուժետից նա կարողանում է ստեղծել մի նոր և ճշմարիտ ինքնուրույն աշխատություն։ Եվ այդ է գրականական սեփականությունը։ Նա կայանում է ոչ թե գաղափարի մեջ, որից մատենագիրը օգուտ է քաղում, այլ նրա մեջ, թե ինչ է շինում նա այդ գաղափարից։ Եվ այսպես, գաղափարը, սյուժետը պատկանում է ամենին, իսկ ձևը պատկանում է ամեն մի մատենագրին առանձին կերպով»։

Կյանքի մեջ կատարվող այս և այն հասարակական երևույթը ամեն մի գրողի սեփականություն է, ամեն ոք իրավունք ունի նրանցից օգուտ քաղել և իր ցանկության համեմատ նրանց ձև ու կերպարանք տալ։ Եվ այդ պատճառով, ազգերի գրականության մեջ չկա և չէ կարելի ցույց տալ կյանքի այս և այն երևույթներից գոնե մեկը, որի վրա հազարավոր գրողներ ուշադրություն դարձրած չլինեին և իրանց աշխատության նյութ շինած չլինեին։ Բայց դրանցից ամեն մեկը նկարագրում է իր ձևով։ Իսկ պ. Հայկունին, իհարկե, այդ պայմանները հասկանալ չէ կարող, մանավանդ, որ

նա իրան նպատակ է դրել ցույց տալ, որ «Կայծերի» մեջ նոր բան չկա։

Օրինակ, «Կայծերի» հերոսները մի կռիվ են ունեցել մի կիրճի մեջ քրդերի հետ (եր. 248—253)։ Ծերենցի հերոսներն ևս մի կռիվ են ունեցել մի կիրճի մեջ արաբացիների հետ։ Պ. Հայկունին աշխատում է հասկացնել, որ Րաֆֆին այդ կռվի նկարագրությունը սովորել է Ծերենցից։ Րաֆֆին ամենևին պետք չուներ Ծերենցից բան սովորելու, քանի որ Ծերենցի գրքի լույս տեսնելուց առաջ մի նույնպիսի կռվի նկարագիր Րաֆֆին պատկերացրել է իր «Ջալալեդդինի» մեջ։ Բացի դրանից, «Դավիթ Բեկի» մեծ մասը զանազան ռազմագիտական և պատերազմական նկարագիրներ են։ Եթե Րաֆֆին պետք լիներ գաղափար կազմել այս տեսակ կռիվների մասին, ավելի շուտով կուսումնասիրեր Հունաց պատմության այն տեղը, ուր Լեոնիդաս մի կիրճի մեջ 300 հոգով ընդդիմացավ պարսից բազմաթիվ զորքերին։ Հարյուրավոր ռոմաններ կարելի է ցույց տալ եվրոպական գրականությունից, որոնց մեջ կան զանազան կռիվների և մենամարտությունների նկարագրություններ։ Բայց այդ ռոմանների կրիտիկոսները շատ ծիծաղելի կլինեին, եթե ասեին, թե հեղինակները գողացել են միմյանցից, քանի որ յուրաքանչյուրը առանձին կերպով է նկարագրում իր հերոսի կռվի հանդեսը։

Մի այլ օրինակ. «Կայծերի» հերոսներից մեկը, Կարոն, մի ճառ է խոսացել (197—201)։ Պ. Հայկունին ասում է, թե Աբովյանի Աղասին, Աղայանցի Հարությունը, Ծերենցի քահանան (*) և չգիտեմ այլևս ովքեր, նույնպես ճառեր են խոսացել։ Շատ լավ են արել։ Խիստ սակավ ռոմաններ կարող են պատահել, որի մեջ հերոսներից մեկը մի որևիցե ճառ ասած չլինի։ Եթե պ. Հայկունին կամենում է ցույց տալ, որ Կարոյի ճառը Րաֆֆին առել է մի ուրիշ գրվածքից, ավելի լավ կաներ, որ Կարոյի ճառը նույնությամբ արտատպեր և նրա հանդեպ դներ մյուսը, որտեղից վեր է առել Րաֆֆին։ Այն ժամանակ մենք «Կայծերի» հեղինակի վարմունքը կհամարեինք գրականական գողություն։ Բայց քանի որ այդ չէ արել պ. Հայկունին, մենք նրա ասածը կհամարենք բամբասանք և ավելի ոչինչ։

Մի այլ օրինակ ևս։ Այստեղ պ. Հայկունին կատարյալ իդիոտության է հասնում։ «Կայծերի» մեջ Րաֆֆին նկարագրում է մի հայոց տուն (եր. 20)։ Պ. Հայկունին ասում է, թե Պռոշյանցն էլ ունի մի տան նկարագրություն «Հացի խնդրի» մեջ։ Պ. Հայկունին

կամ իր կյանքում մի երկու հայերեն վեպ է կարդացել և ամեն անգամ դիմում է այդ վեպերին, կամ թե շատ է կարդացել, ուրեմն պետք է նկատած լիներ, որ բոլոր ազգերի գրականության մեջ չէ կարելի ցույց տալ մի վեպ, որի մեջ տան նկարագրություն չլիներ։ Հայտնի բան է, ուր մարդիկ են ապրում, այնտեղ էլ տուն կլինի։

Պ. Հայկունին իր այդ և դրա նման նկատողությունների մեջ փոքր է մնում, որ ասե, թե Րաֆֆին «Կայծերի» ամբողջ գործողությունները առել է ուրիշ վեպերից, որովհետև այստեղ էլ մարդիկ ուտում են, խմում են, խոսում են, պառկում են, այստեղ էլ մարդիկ երկու աչք, երկու ոտ ունեն։ Եվ այդ բոլորը նա համարում է կրիտիկա։

Այժմ դառնանք այն կետերին, որոնցմով պ. Հայկունին «Կայծերի» մեջ անբնական երևույթներ և գործողություններ է ցույց տալիս։

Ֆարհադը և Սարոն սենյակի մեջ մեկմեկու հետ խոսում են. այդ միջոցին բակից լսելի է լինում շան կղնձկղնձոցի ձայնը։ Օրիորդը և Ֆարհադը սենյակից դուրս են վազում, որ տեսնեն ինչ է պատահել (եր. 330)։ Պ. Հայկունին այդ անբնական է համարում։

Ֆարհադը հուսահատությունից գիշերը գնում է գետի մոտ, պատրաստվում է գետն ընկնել և խեղդվել։ Այդ միջոցին պատահում է նրան իր 12 տարի առաջ անհայտացած ընկերը՝ Կարոն և թույլ չի տալիս (եր. 85)։ Պ. Հայկունին այդ անբնական է համարում։

Կարոն Ֆարհադին տանում է մի ավերակ մինարեթ։ Գիշերը մութն է։ Այդ միջոցին դուրս է գալիս լուսինը և լուսավորում է նրանց ճանապարհը (եր. 86)։ Պ. Հայկունին այդ անբնական է համարում, երևի, մտածում է, թե Պարսկաստանում լուսին չկա։

Բայց նշանավորն այն է, որ պ. Հայկունին «Կայծերի» մեջ անբնական գործողություններ ցույց տալու համար իր բերած փաստերը աղավաղում է։

«Կայծերի» մեջ (եր. 152) նկարագրված է, թե ինչպես Ֆարհադ մանուկը նստած մերկ, առանց սանձի ձիու վրա, բռնում էր նրա բաշից և արագությամբ պտտեցնում էր, այսինքն՝ ման էր ածում։ Պ. Հայկունին «պտտեցնել» բառը դիտմամբ ուրիշ իմաստով է բացատրում, որպեսզի ցույց տա, որ Ֆարհադը բռնած ձիու բաշից, գնդակի նման իր ձեռքի վրա պտտեցնում էր։ Իհարկե, եթե Ֆարհադ մանուկը Հերքուլես էլ լիներ, դարձյալ այդ շատ անբնական կլիներ ձիուն ձեռքի վրա պտտեցնելը։ Բայց քանի որ նա

ինքը նստած էր ձիու վրա, այլև ինչպես կարող էր ձեռքի վրա պտտեցնել ձիուն։ Շատ հասկանալի է, որ պտտեցնել բառը ման ածելու մտքով է գրված։

Բացի վերոհիշյալ օրինակից, պ. Հայկունին ուրիշ օրինակներ էլ է բերում, որ ցույց տա, թե Րաֆֆին իր հերոսներին Հերքուլեսի ուժ է տալիս։

«Մըհեի համար մի ահագին քարը մի տաշեղ է», ասում է նա (եր. 354)։ Այդ քարը սովորաբար գիշերները դնում էին որսորդ Ավոյի բակի դռան ետևում, որ դուռը չկարողանան դրսից բաց անել։ Որսորդի աղջիկը, Մարոն, կարողանում էր նույն քարը երկու ձեռքով բարձրացնել։ Ուրեմն այստեղ ի՞նչ անբնական մի բան կա, որ նույն քարը հսկա Մըհեն կարողանար տաշեղի նման շարժել։ Բայց պ. Հայկունին Մարոյի գործողությունը դիտմամբ թաքցընում է, որ Մըհեի գործողությունը չափազանց ցույց տա։

Նույն հսկա Մըհեն իր լախտի մի հարվածով ջախջախեց շան գլուխը և ուղեղը դուրս թափեց (եր. 330)։ Պ. Հայկունին այդ անբնական է գտնում։ Շատ հովիվներ իրանց մահակի մի հարվածով շան գլուխը ջախջախում են։

Նույն հսկա Մըհեն մտնում է որսորդական վիրապը և զսպում է թակարդի մեջ ընկած գազանին (եր. 50)։ Պ. Հայկունին այդ անբնական է համարում։ Ես էլ անբնական կհամարեի, եթե «Կայծերի» մեջ այնպես նկարագրված լիներ, որպես պ. Հայկունին է ցույց տալիս։ Նա գողանում է խեղճ Մըհեից նրա գլխավոր զենքը, ահագին երկաթե մահակը և նրան առանց զենքի թողնում է գազանի հետ կռվելու։ Իհարկե, չէր կարող զսպել նրան։ Բայց Րաֆֆին իր հերոսի ձեռքում զենք էր տվել, այդ զենքը ինչո՞ւ թաքցըրիք, պ. Հայկունի։

Բայց պ. Հայկունու վերոհիշյալ նկատողության մեջ մի ուրիշ շատ հետաքրքիր կետ կա։ Նա ասում է, թե ինքը կարդացել է, որ սուրբ Գրիգոր Լուսավորիչը և Դանիել մարգարեն իրանց աչքերով էին մագնիսացնում վիրապի օձերին և գուբի առյուծներին և այսպիսով զսպում էին նրանց։

«Մըհեի աչքերումն էլ մագնիսական զորություն չկա՞ր արդյոք»,— հարցնում է նա։ Ես զարմանում եմ, որ այդ տողերը տպվում են հայաստանեայց սուրբ եկեղեցու պաշտպան թերթի մեջ։ Արդյոք այդ եկեղեցու հիմնադիր սուրբ Գրիգոր Լուսավորիչը զո՞ւրկ էր հրաշքներ գործելու զորությունից և միայն մագնիսացնելո՞վ էր զսպում գազաններին։

Եվ այսպես, իր նկատողությունների մեջ պ. Հայկունին բոլորովին ներելի է համարում խրողությունները սխալ կերպով պատմել, փաստերը հեղաշրջել, բնագիրը աղավաղել, որպեսզի կարողանա իր ցանկացած հետևանքը դուրս բերել։

Ահա մի օրինակ ևս.

«Զումրութ տատը Կարոյին հայտնում է նրա հոր (ոչ թե հոր, այլ մոր) կտակը, ուխտը։ Բավական երկար և ոգևորված կերպով խոսելուց հետո՝ հիվանդ պառավը վերջապես «հոգին ավանդում է», որ սովորաբար նշանակում է մեռնել, բայց պ. Րաֆֆին այդ բառերը այլ կերպ է հասկացել։ «Հոգին ավանդելուց» հետո Զումրութ տատը նորից շարունակում է գրեթե մի ամբողջ երես խոսել և հետո վերջապես «մեռնում է»» (եր. 126—128)։

Ես կբերեմ Զումրութ տատի պատմությունից այն կտորը, որտեղից պ. Հայկունին դուրս է բերել «հոգին ավանդեց» բառերը, որ ցույց տամ, թե մեռնողը ո՞վ է։

«Այն սարսափելի կոտորածի միջոցին (պատմում է Զումրութ տատը) քո մայրը, Կարո, կուրծքից խենջարով խոցված, մի ձեռքով բռնել էր վերքը, մյուս ձեռքով քեզ հանձնեց ինձ ասելով. «Առ, Զումրութ, եթե աստված կհաջողե ազատել երեխայիս, սովորեցուր նրան վրեժխնդիր լինել»... Այդ խոսքերի հետ նազելի տիկինս ավանդեց հոգին» (եր. 126—128)։

Հիմա նայեցեք, պարզ երևում է, որ հոգին ավանդողը Զումրութ տատի «նազելի տիկինն» էր, այսինքն՝ Կարոյի մայրը և ոչ թե ինքը Զումրութ տատը։ Երկուսից մեկը կամ պ. Հայկունին մի ծխական դպրոցի առաջին դասատան աշակերտի չափ հասկացողություն չունի, որ ըմբռնե իր կարդացածը, կամ այնքան անազնիվ է, որ անբարեմտությամբ աղավաղում է վեպի բնագիրը։ Ես հակված եմ ընդունել վերջինը։ Պարոնին չէ կարելի այն աստիճան անգրագետ համարել, որ նա չհասկանա, թե ո՞վ է մեռնողը կամ ո՞վ է մեռնողի մասին պատմում։ Բայց նա իրան թույլ է տալիս աղավաղել բնագիրը, հույս դնելով իր ընթերցողների միամտության վրա, որ կհավատան նրան և նրանցից ոչ ոք չի բաց անի «Կայծերը» ու համեմատություն չի անի իր ասածի հետ և այսպիսով առժամանակ իր ստախոսությունը առաջ կքշե ու «Կայծերի» վրա ստվեր կձգե, բայց պարոնը չէ մտածել, որ կգտնվեն մարդիկ և ցույց կտան նրա խարդախությունը։ Պ. Հայկունին իրան նպաստավոր է համարում մինչև անգամ «Կայծերի» մեջ գտնված ծաղրական կամ հեգնությամբ ասած խոսքերը ընդունել

որպես ճշմարտություն և նրանցից իր ցանկացած եզրակացությունը դուրս բերել։ Օրինակ, Ֆարհադը հարցնում է Սագոյից իրանց մի երրորդ ընկերի, Հասոյի մասին, թե ի՞նչ է շինում նա։ Սագոն պատասխանում է.— Գրողը տանի նրան, հիմա տուն ու տեղի տեր է դարձել, վար է վարում, ցանք է անում, կնիկ ունի, ամեն տարի երկու հատ ծնվում են, տունը լիքն է երեխաներով, ճանճերի նման վժվժում են (եր. 156)։

Պ. Հայկունին այդ խոսքերից դուրս է բերում այն միտքը, որ Հասոյի կինը «խոզի ցեղից» է եղել, որ կարողացել է ամեն տարի երկու հատ զավակ ծնել։ Զզվելի է։

Խոսակցության մեջ, մանավանդ հեգնական խոսակցության մեջ, այս տեսակ ասացվածները կարելի է պարզել հետևյալ օրինակով. Ես ասում եմ, որ տիրացու Գեղամը ամեն մի րոպեում յոթանասունյոթ անգամ սուտ է խոսում։ Այդ չէ նշանակում, որ ոչ մի անգամ չէ պատահել, որ տիրացու Գեղամը յոթանասունյոթ անգամից պակաս սուտ խոսեր։ Այլ այդ նշանակում է, որ նա չափազանց ստախոս է։ Այնպես էլ Սագոյի խոսքերից երևում է, որ Հասոյի կինը բազմածին է և ոչ թե «խոզի ցեղից»։

Այս բոլորից հետո հասկանալի է, թե ինչ արժեք պետք է տալ պ. Հայկունու կրիտիկային։ Հիմա դառնանք նրա մի քանի այլ նկատողություններին։

Որքա՜ն մեծ դժվարությունների պիտի հանդիպի վիպասանը, երբ ձեռնարկում է մեր ազգային թե ներկա և թե անցյալ կյանքից մի վեպ գրելու։ Մեր գրականությունը վիպասանի համար համարյա ոչինչ պաշար չէ պատրաստել, որ նրա աշխատությունը հեշտացնե։ Իմ խոսքը գլխավորապես տաճկաց և պարսկաց հայերի մասին է։ Մենք չունենք այդ երկրների նոր քարտեզն անգամ, մենք չունենք լավ հետազոտված էտնոգրաֆիական գրվածքներ այդ երկրների ազգաբնակության մասին, մենք համարյա ոչինչ չունենք, ինչ էլ որ ունենք, բոլորը թերի, անկատար, խառնիխուռն և երկբայական են։ Վիպասանը ստիպված է անձամբ ճանապարհորդել և ուսումնասիրել բոլորը։ Իսկ այդ ամեն վիպասանի հազիվ կհաջողվի։ Մինչդեռ մի եվրոպացի գրող իր կաբինետի մեջ կարող է ձեռքի տակ ունենալ այն բոլոր գրքերը, ինչ որ նրան պետք են։ Հարյուրավոր մարդիկ նրա համար աշխատել, նրա գործը հեշտացրել են։

Ձնայելով այդ բոլոր դժվարություններին, «Կայծերը» ներկայացնում է մեզ որպես կատարյալ նկարագիր իր պատմական, էտ-

նոգրաֆիական և աշխարհագրական ճշտություններով, որովհետև հեղինակը անձամբ ուսումնասիրել է բոլորը։

Բայց պ. Հայկունին ցույց է տալիս թվով 22 սխալներ, ավելացնելով, թե «Ես հավատացած եմ, որ պ. Րաֆֆին այս և այսպիս սխալանքներ (որո բոլորը ես առաջ չբերի) չէր անիլ, եթե այդ պատմական և աշխարհագրական կետերի վրա խոսելիս՝ մի փոքր աշխատություն տար իրան պետք եղած մի քանի գրքերից ("") և քարտեզներից ("") տեղեկություններ հավաքել և ստուգել» և այլն։

Եթե պ. Հայկունին կամենում է, որ հավատային իրան, թե նրա նկատած սխալները իրավ սխալներ են, անպատճառ հարկավոր էր, որ փաստերով ապացուցաներ, թե իր նկատողությունները ո՞ր գրքերի և քարտեզների հետ է համեմատել և անճիշտ է գտել։ Նա ապացույցներ չէ բերում և կարծում է, թե կհավատան, որ նրա ասածները ուղիղ են, իսկ «Կայծերի» մեջ գրվածը սխալ է։ Այսպես չեն քննադատում. մի փաստ հերքելու համար պետք է ուրիշ փաստ առաջ բերել։

Ես մի առ մի կվեր առնեմ պ. Հայկունու առաջ բերած նկատողությունները և ցույց կտամ, որ պ. Հայկունին, այդ դեպքում ևս, ոչ միայն չէ հիմնվում որևիցե գրական փաստի վրա, այլ խարդախությամբ կամ աղավաղում է վեպի բնագիրը, կամ իր ընթերցողներին մոլորեցնելու համար խաբուսիկ միջոցների է դիմում։

1. «Իր (երկրագործ Հասոյի) հայրը գնել էր այդ հողը մի քուրդ բեկի այրի կնոջից» (213), մինչդեռ հայտնի է, որ քուրդը սեփական հող չունի իսկապես։ Դրա մի ապացույցն էլ նույն իսկ հեղինակի իրան խոսքերն են մի այլ տեղում, թե «քրդերը կալվածատերեր չէին» (286)։

Ջնջին բծախնդրություն։ Ի՞նչ է ուզում ասել դրանով պ. Հայկունին, այն, թե Րաֆֆին մի տեղում գրել է, թե Հասոյի հայրը այդ հողը գնել էր մի քուրդ բեկի այրի կնոջից, իսկ մի այլ տեղում ասում է, թե քրդերը կալվածատերեր չէին, ուրեմն, եթե քրդերը կալվածատերեր չէին, ինչպե՞ս կարող էին հող վաճառել։ Ըստ երևույթին պ. կրիտիկոսի այդ նկատողությունը ճիշտ է և ցույց է տալիս Րաֆֆիի հակասությունը։ Բայց նայեցեք խարդախությունը ինչումն է. «Քրդերը կալվածատերեր չէին» բառերը նա վեր է առնում մի նախադասությունից և թողնում է նույն նախադասության մնացած բառերը մինչև վերջակետը։ Ինչո՞ւ։ Որովհետև

եթե ամբողջ նախադասությունը վեր առնելու լիներ, դուրս կգար, որ քրդերը կալվածատերեր էին։ Ահա ամբողջ նախադասությունը, «Բայց քրդերը կալվածատերեր չէին, նրանց մեջ աղաներից մեկը սեփականացնում էր սրի ուժով մի կտոր հող, մյուս աղան, ավելի զորեղ գտնվելով, խլում էր նրա ձեռքից և այսպես հողը անդադար անցնում էր մի աղայից դեպի մյուսը» (286)։ «Կայծերի» մեջ ամբողջ Ib-րդ գլուխը (260—270) նվիրված է քրդերին և թուրքերին և այդ գլխի մեջ մանրամասն կերպով բացատրված է թե առաջինների և թե վերջինների կալվածատիրական պայմանները։ Մի՞թե կարելի է ամբողջ գլուխներից միայն երեք բառ վեր առնել և նրանց վրա հիմնել իր կարծիքը։ «Կայծերի» նկարագրած ժամանակներում քրդերը ոչ միայն մասնավոր կալվածատերեր էին, այլ ամբողջ գյուղերի և գավառների տերեր էին։ Խան-Աբդալները, Խան-Մահմուդները, Բադիր-խան բեկը, Նուրուլլահ-բեկը դեռ մինչև 1850 թվականները տիրապետում էին միևնույն երկրին, ուր գործում են «Կայծերի» հերոսները։

2. «Հայտնի է նմանապես, որ քրդերը ունին խալիֆներ և ֆախիներ, այլ ոչ թե «մուֆթիներ և ղազիներ» (269)։

Պարոնը չգիտե, որ մուֆթիները և ղազիները կառավարությունից նշանակված դենպետներ են, գլխավորապես դատական (շարիաթի) գործերի համար։ Նրանց հպատակվում են ինչպես քրդերը, այնպես էլ սուննի աղանդին պատկանող բոլոր մուսուլմանները։

3. «Որ մահմեդականություն ընդունող քրիստոնեաները ոչ պարսկական, ոչ էլ տաճկական օրենքով, երբեք իրավունք չունեն — ինչպես այդ պնդում է պ. Րաֆֆին — «տեր դառնալ ազգականների թե շարժական և թե անշարժ ժառանգությանը»» (280)։

Պ. Հայկունին իր այդ խոսքերը այն աստիճան վստահությամբ է արտասանում, կարծես տարիներով ուսումնասիրել է պարսկական և տաճկական օրենքները։ Պարոնի տգիտությունը ցույց տալու համար, ես կբերեմ մի քանի ապացույցներ մեր պատմագրներից, որ Րաֆֆին բանաստեղծության մեջ ևս հավատարիմ է մնացել թե պատմությանը և թե ներկայինի։ Ահա ինչ է գրում այդ մասին Առաքել պատմագիրը իր գրքի գլ. Ե., եր. 66։

«Եւ դատաւորքն ըստ անօրէն օրինաց իւրեանց իրաւացուցանէին զբանս ուրացողացն. թէ որովհետև նա եկեալ է յօրէնս Մահմեդի, նմա հասանի ամենայն ինչք իւրոց ազգակցաց, և այսպէս զրկեալ զողորմելի քրիստոնեայս՝ յափշտակեալ զամենայն ինչս տան ուրացողացն այնոցիկ»։

1880 թվականում Նոր Ջուղայի Ամենափրկչյան վանքի տպարանում տպվեցան պ. Հարություն Տեր-Հովհանյանցի հետաքրքիր պատմության երկու հատորները, Պարսկաստանի և Հնդկաստանի հայերի մասին։ Այդ պատմությունը կարելի է համարել Առաքել պատմագրի շարունակությունը մինչև մեր ժամանակները։ Նրա առաջին հատորի 366 երեսում կարդում ենք հետևյալը.

«Ծանրակշիռ եղև յոյժ վնասն՝ զոր յուրացողաց ընկալաւ Ջուղայ (Նոր)։

Սկիզբն այսր աղետից է ի ժամանակէ երկրորդ Շահ-Աբասայ, ուժգնութիւն ի թագաւորութեան Շահ Սուլթան Հօսէյնի, և տևումն ցմեր ժամանակս։ Դենպետք պաշտպան են օրինացն որ հրամայէ զի ինչք և ստացուածք վախճանեալ քրիստոնէի՝ ուրացեալ ազգականի նորա են ժառանգութիւն, այդ իրաւունք ժառանգութեան ըստ ոմանց մինչև ցչորս ազգն (սերունդ) և ըստ ոմանց մինչև ցեօթն ազգն ընտանեաց ուրացողին ունի ներգործութիւն»։ Հետո նկարագրում է պատմագիրը, թե որպիսի բարբարոսությամբ գործադրըվում էր այդ օրենքը։ Մինչև այսօր նույն բարբարոսությունը շարունակվում է մոլլաների ձեռքով, չնայելով որ պարսից շահերը շնորհել են քրիստոնյաներին շատ հրովարտակներ հիշյալ օրենքի չգործադրվելու մասին։ Շառյաթի մոլեռանդության դեմ անզոր գտնվող այդ հրովարտակները պահվում են Թավրիզի և Սպահանի հայոց առաջնորդարաններում։

Ես շարունակում եմ պ. Հայկունու «Կայծերի» մեջ ցույց տված սխալների մասին խոսել։

4. «Որ ոչ մի տեղ և ոչ մի ժամանակ լսված կամ տեսնված չէ, որ պարսիկ խաները իրանց հրավերքի և կերուխումի ժամանակ հայ քահանաներին հրավիրելով իրանց տուն ստիպում էին նրանց խաների զվարճության համար «պատարագ» մատուցանել, եկեղեցական սպաս և ծես կատարել»։ Որ «այդպիսի հանդեսներից մեկի մեջ, խանը հրամայեց քահանային սաղավարտը դնել յուր շան գլխին, շուրջառը գցել նրա վերա և ստիպեց տերտերին յուր բուրվառով խնկարկել շանը» (281)։

Կարծեմ մահմեդական մոլեռանդությունը պաշտպանող պ. Հայկունին, եթե հետևել է մեր մամուլի վերջին տարիներում հաղորդած տեղեկություններին, պետք է շատ անգամ կարդացած լինի, թե ինչպես Թուրքաց Հայաստանում մահմեդականները աղբով ծեփում էին քրիստոնեական տաճարների պատերը, ինչպես խաչը շան վզից կախ տալով ման էին ածում փողոցներում, ինչ-

պես քրիստոնեական եկեղեցու բեմի վրա մուծրուփներ էին պարածում և այլն։ Թողյալ ժամանակակից մամուլը, մեր պատմությունը լի է հազար ու մեկ այս տեսակ սրբապղծությունների նկարագրություններով։ Բայց եթե ավելին ցանկանում է տեղեկանալ պ. Հայկունին, թող կարդա Կ. Պոլսի հայոց պատրիարքարանի «Տեղեկագիրը», որը դուրս է բերած պատրիարքարանի քսանամյա պաշտոնական արձանագրություններից։ Նրա մեջ Րաֆֆիի «Կայծերի» մեջ նկարագրածից ավելի զարհուրելի բաներ կտեսնե պ. Հայկունին։

5. «Որ Մշու (թե՞ Վանա) դաշտի ծովակը կոչվում է ոչ թե «Արշակա ծովակ» (293), այլ Արջակա ծովակ։ Սկզբում ես կարծեցի թե դա տպագրական սխալ է, բայց միևնույն բառը մի քանի տեղ կրկնված տեսա»։ Արշակա ծովակը ոչ Մշու դաշտումն է և ոչ Վանա դաշտում. երբ պ. կրիտիկոսը կամենում է ուղղել մի տեղագրական սխալ, նախ և առաջ պետք է գիտենա նրա տեղը։ Սուտ է և այն, թե «Կայծերի» մեջ այդ բառը մի քանի տեղ կրկնվել է։ «Կայծերի» մեջ միայն մի տեղում հիշվում է այդ բառը։ Ուղիղը Արշակա ծովակ է, բայց ժողովրդի բերնում դարձել է Արջակա ծովակ շ-ն ջ-եի փոխվելով, ինչպես Արշամը Արջամ է դարձել և ինչպես շատ պատմական անուններ ժողովրդի բերնում աղավաղվել են։

6. «Որ Կոփա վանքը Մուշի մոտ չէ (299), այլ Պուլանքի»։ Կոփա վանքը ոչ Մուշի մոտ է և ոչ Պուլանքի։ Կոփա վանքը գտնըվում է Կոփ գյուղի մոտ, Կոփ գյուղը գտնվում է Պուլանքի վիճակում, իսկ Պուլանքի վիճակը գտնվում է Մուշի գավառում։ (Տես հայր Ալիշանի «Տեղագիր հայոց մեծաց» եր. 46, պրակ 81)։

7. «Որ Տարոնը և Վասպուրականը ավելի լեռնոտ երկիրներ» չեն (311), այլ ավելի դաշտային։ «Կայծերի» մեջ «ավելի լեռնոտ» ասված է, համեմատելով հիշյալ երկու նահանգները Ատրպատականի հետ։

8. «Որ այդ նահանգներում շատ քիչ, այլ ոչ թե «շատ տեղ սարերը ծածկված են անտառներով»» (312)։ Իսկապես անտառ ասած բանը Տարոնում և Վասպուրականում չկա անգամ։

Շատ տեղ սարերը ծածկված են անտառներով ասված է «Կայծերի» մեջ, դարձյալ համեմատելով հիշյալ նահանգները Ատրպատականի հետ։ Իսկ թե բոլորովին անտառներից զուրկ են, այդ սուտ է։

9. «Որ այդ նահանգների հայերը քրդերի նման ոչ երբեք բնակվում են «չադրներում (վրան) և լեռների բարձրավանդակների վրա»» (312)։

Սուտ է, «Կայծերի» մեջ չէ ասված, թե այդ երկրների հայերը բնակվում էին միմիայն չադրներում, լեռների բարձրավանդակների վրա։ Այլ ասված է որպես երկրագործ և միևնույն ժամանակ անասնապահ ժողովուրդ, բնակվում էին գյուղերում, տուներ ունեին, իսկ չադրներում բնակվում էին այն ժամանակ, երբ լեռների արոտատեղիներում արածացնում էին իրանց ոչխարները։

10. «Որ Բարդուղիմեոս առաքելո վանքի կշտի դաշտը չէ որ «Հաբիստան է կոչվում» (319), այլ համանուն գյուղը, որո անունով և դաշտն էլ կոչվում է Հաբստանու դաշտ»։

Նախ և առաջ, Հաբիստան չէ, այլ Հասբիստան է, երկրորդ, «Կայծերի» մեջ խոսքը դաշտի մասին է և ոչ թե գյուղի մասին, իսկ թե գյուղն էլ կոչվում է դաշտի անունով,— այդ ո՞վ է հերքում։

11. «Որ մուքրիներն (մուքուրիներ) և մամքաները (քրդական ցեղեր են) ոչ երբեք կարող էին միմյանց հետ շարունակ վեճեր և կռիվներ ունենալ (320), որովհետև առաջինները բնակվում էին և են Հաղբակում, իսկ երկրորդները — Խնուսում,— մի ահագին տարածություն հեռու միմյանցից»։

«Կայծերի» մեջ չէ ցույց տված հիշյալ քուրդ ցեղերի բնակության տեղերը և ի՞նչ տեղ պետք է ցույց տալ թափառական քրդերին, որը անդադար գաղթում է։ Իսկ պ. Հայկունու ցույց տված տեղերը, որպես նա կարծում է, ահագին տարածությամբ, հեռու չեն միմյանցից։ Խնուսը հեռու է Աղբակից մի օրվա ճանապարհով միայն։

12. «Որ Ծոլամերիկը գտնվում է ոչ թե «Կորդվաց լեռների մեջ» (322), այլ Մոկաց և Կորճեից լեռների»։

Մոկաց և Կորճեից լեռները միևնույն Կորդվաց լեռներն են։ Մի՞թե պ. Հայկունին չգիտե, որ Կորդիք և Կորճեք միևնույն երկրներն են։

13. «Որ Արտամետը գտնվում է ոչ թե «Հայոց ձորում (323), այլ Վանա դաշտում»։

Սո՛ւտ է, «Կայծերի» մեջ չէ՛ ասված, թե Արտամետը գտնվում է Հայոց ձորում։ Սխալ է և այն, թե Արտամետը գտնվում է Վանա դաշտում։ Վան քաղաքը դաշտ չունի, նրա դաշտը ծովակի հարթ մակերևույթն է։ Եթե պ. Հայկունին կամենում է Արտամետ գյուղի տեղն իմանալ, նա գտնվում է Հայոց ձորի մուտքի մոտ։

14. «Որ Հոգվոց վանքը գտնվում է ոչ թե «Շատախում» (323), այլ Վասպուրականի Անձևացյաց գավառում, ինչպես մի տեղ վկայած են (299) ինքը և հեղինակը»։

Սուտ է, «Կայծերի» մեջ չէ ասված, թե Հոգվոց վանքը գտնըվում է Շատախում, այլ Անձևացյաց գավառում, ինչպես ցույց է տվել հեղինակը։

15. «Որ Միր-Մասումը եզիդի լինելով, իսկ բաղեշցին և մշեցին (՞՞) քուրդ, սխալ է ասել թե «քուրդը քրդի դեմ զինել» (324)։

Բոլորովին անհասկանալի է։ Ես այսքանն եմ միայն հասկանում, որ պ. Հայկունին ուզում է ասել, թե քրդին եզդիի հետ կըռվացնելը՝ չէ նշանակում «քուրդը-քրդի դեմ զինել», որովհետև եզդին քուրդ չէ։ Պ. Հայկունին, ինչպես երևում է, քրդերի և եզդիների վրա դատում է նույն հայացքով, որպես նրա նմանները դատում են հայ-բողոքականների և հայ-լուսավորչականների վրա։ Նա եզդին քուրդ չէ համարում, որովհետև եզդին ուրիշ կրոնքի է պատկանում։ Եզդի անունը կրոնի անուն է և ոչ թե ցեղի. եզդին նույնպես քուրդ է, թեև մահմեդական կրոնին չէ պատկանում։

16. «Որ ս. Տիրամոր վանքը գտնվում է ոչ թե Լիմ անապատի հանդեպ, Կորդվաց լեռների մեջ (363—368), այլ Վասպուրականի Գնունիք կոչված գավառին մեջ»։

Վասպուրականի Գնունիք կոչված գավառը մի՞թե Լիմ անապատի հանդեպ չէ։ Պ. Հայկունին թող նայե Վենետիկում տպված 1849 թվի քարտեզի վրա, բայց պետք է գիտենա, որ հիշյալ գավառը ուրիշ անուններ ևս ունի — Քաջբերունիք, Աղխովիտ, Արճիշակովիտ և այլն։ Րաֆֆին վեպ է գրել, աշխարհագրության դասագիրք չէ գրել, որ այդ բոլոր անունները շարեր միմյանց մոտ։

17. «Որ «Տիրամոր վանք» ասածը չէ կարող վանահայր և վարդապետ միաբաններ ունենալ (365), վասնզի դա վանք չէ, այլ գյուղական եկեղեցի՝ միայն «Տիրամոր վանք» անունով։ Եվ ուրեմն այդ վանքում ոչ երբեք կարող էին վանքի «մըղդսիների» ձեռքով կատարվել այն եղեռնագործությունները, տարածվել այն տարափոխիկ հիվանդությունները, ինչ որ նկարագրած է պ. Րաֆֆի յուր վեպի 363—380 երեսներումը»։

Պ. կրիտիկոսի լոգիկան ինձ զարմացնում է։ Գյուղական եկեղեցին չէ կարելի վանք կոչել։. Իսկ եթե Տիրամոր վանքը պ. Հայկունու կարծիքով, այժմ միաբաններ չունի, դա չէ զրկում նրան վանք լինելուց։ Հարյուրավոր վանքեր ունենք, որ զուրկ են միաբաններից։ Իսկ թե «մղդըսիները» ինչ դեր են խաղում այնտեղ,—

այդ արդեն պ. Հայկունին կարդաց հայր Սրվանձտյանցի «Մանանա» գրքից բերած վկայությունների մեջ, որ խսկապես նրանք են կազմում վանքի միաբանությունը և տաճկաց Հայաստանի ու Պարսկաստանի բոլոր հայաբնակ վիճակները բաժանել են իրանց մեջ և «ուրուկները» տանում և ման են ածում այդ երկրներում։

18. «Որ «Հին Տմորիքը» չէ կարող այժմյան Ճոլամերիկը լինել (469), որովհետև թե Ճոլամերիկը (Փոքր Աղբակ) և թե Տմորիքը տարբեր գավառներ էին միևնույն Կորճայք կոչված նահանգում»։

«Կայծերի» մեջ այսպես է ասված. «Այս երկիրը (Ճոլամերիկը), որ մեր հին Տմորիք կամ Կորդիք գավառն է» և այլն։ Պետք է գիտենալ, որ պատմական-աշխարհագրական անունները դարերի ընթացքում զանազան փոփոխություններ են կրել։ Ինչո՞վ է հաստատում պ. Հայկունին, որ այժմյան Ճոլամերիկը հին Տմորիքը կամ Կորդիքը չէ, ինչո՞վ է հաստատում, որ նրանք տարբեր գավառներ են։ Այժմյան Ջոլամերիկը չէ կարելի համարել պ. Հայկունու կարծիքով, Փոքր Աղբակը, որովհետև Փոքր Աղբակը ընկնում է Զաբ կամ Նեհրի գետի (Զավ, Զարոս, կամ Գայլ գետ) աջ կողմում, իսկ Ճոլամերիկը նույն գետի ձախ կողմում, ուր գտնվում էր հին Տմորիքը կամ Կորդիքը։ Նայեցեք Վենետիկում տպված 49 թվի քարտեզի վրա կամ հայր Ալիշանի «Տեղագիր հայոց մեծաց» գրքի եղած քարտեզի վրա։

19. «Որ «մի լեռնային բարձրավանդակություն (՞՞) կազմող Փոքր Աղբակը» (426) ոչ երբեք կարող է «Վասպուրականում լինել, քանի որ նա Կորճայքումն է և թե Վասպուրականում եղածը Փոքր Աղբակը չէ, այլ Մեծ Աղբակը, որ այժմ կոչվում է Սեր Ալպաղ, կամ Գարագոյունլու»։

Պ. Հայկունին ամեն ինչ խառնում է միմյանց։ Նախ Գարագոյունլու (Հին Վրնջունիք) կոչված վիճակը գտնվում է Պարսկաստանում (տես Հ. Ալիշանի «Տեղ. հայոց մեծաց» եր. 57, պրակ 103), իսկ թե Մեծ Աղբակը և թե Փոքր Աղբակը գտնվում են Տաճկաստանում։ Ուրեմն Գարագոյունլուն և Մեծ Աղբակը տարբեր երկիրներ են։ Գարագոյունլուն Մեծ Աղբակից այնքան հեռու է, որ նրանց մեջ մի քանի ուրիշ վիճակներ են ընկած։ Երկրորդ, այժմյան բաժանման համեմատ Մեծ և Փոքր Աղբակներ չկան։ Իսկ Սեր Ալպաղ (որ քրդերեն նշանակում է Աղբակի գլուխ) կոչվում է այդ երկրի այն մասը միայն, որ կազմում է տաճկաց այժմյան սահմանագլուխը պարսից Սալմաստ գավառի հետ։

20. «Որ «Ս. Ղազարու կամ Առաքելոց վանքը Մուշի մեջ (239) չէ գտնվում», այլ այդ քաղաքից բավական հեռու Ծիրընկատար լեռան ստորոտը»։

Սո՛ւտ է, «Կայծերի» մեջ չէ՝ ասված թե ս. Ղազարու վանքը գտնվում է Մուշ fաղաfում, այլ «Մուշի մեջ» (299), ուր պետք է հասկանալ դաշտը և ոչ թե քաղաքը։ Այս վանքը գտնվում է Մուշ քաղաքից 2 ժամ հեռավորությամբ միայն և հայտնի է անունով «Մշու Սուրբ Առաքյալք» (տես հայր Ինճիճյանի «Ստորագրություն Հին Հայաստանեայց», եր. 102—103)։

Ինչի՞ց են առաջ գալիս պ. կրիտիկոսի այդ բոլոր խառնափընթորությունները[1]։ Գիտության բացակայությունից։ Ճշմարիտ գիտնականի մեջ զգուշությունը հասնում է մինչև երկչոտության։ Նա երբեք չի վստահանա մի որևիցե միտք հայտնել, եթե շատ անգամ փորձած և ստուգած չլինի։ Բայց պ. Հայկունու նման անուսները համարձակ են լինում, մինչև անգամ հանդուգն են լինում։ Դրանք ամեն բանի վրա դատողություն են անում, առանց նախապես սովորած լինելու։ Գիտնականը երկչոտ է լինում, որովհետև գիտե, որ մի ամենափոքր սխալ կարող է կոտրել նրա հեղինակությունը։ Իսկ անուսը հանդուգն է լինում, որովհետև կորցնելու ոչինչ չունի։ Ի՞նչ բան կկորցնե պ. Հայկունին, երբ նրան ցույց են տալիս, որ նա կեղծ փաստեր է հնարում և նրանից իր ցանկացած եզրակացություններն է դուրս բերում, որ նա իր քննելի առարկայի հետ այնպես է վարվում, «որպես մի կաշառված և խարդախ դատական քննիչ՝ մի անմեղ մեղադրվածի հետ»։ Ի՞նչ պիտի կորցնե նա։ Ոչինչ։ Ով որ ոչինչ չունի կորցնելու, վտանգից ազատ է մնում։

Մոլլա Նասրեդդինը էշի վրա նստած անց էր կենում փողոցով, հանկարծ էշից վայր ընկավ։ Տեսնողները սկսեցին ծիծաղել։ Մոլլան պատասխանեց նրանց. «Ի՞նչ եք ծիծաղում, գետնի վրա էի, էլի գետնի վրա եմ գտնվում»։ Այդ խոսքերով կամեցավ հասկացնել նրանց, որ էշի վրա նստած ժամանակ ևս գետնի մակերևույթից շատ բարձր չէր գտնվում։ Այսպես էլ մեր գրականական սողունները, այդ ստորաքարշ զեռունները ի՞նչ հեղինակություն ունեն կամ ի՞նչ բարձրությունից պետք է ցած ընկնեն, երբ ցույց է տրվում նրանց մտավոր և հոգեկան բոլոր դատարկությունը։ Նրանք գետնի վրա էին, էլի գետնի վրա կմնան։

---

1 Մի մոռացեք, որ Ներսիսյան դպրոցի պատկառելի հոգաբարձությունը հանձնել է այդ մարդուն հին Հայաստանի աշխարհագրության դասերը։

Պ. Հայկունին, երբ նեղ տեղն է ընկնում, երբ դժվարանում է իր սովորության համեմատ, գոնե կեղծ փաստեր ստեղծել, անդադար կրկնում է. «Այդ իմ համոզմունքն է»։ Համոզմունքը լավ բան է, բայց նա պետք է հիմնված լինի առողջ դատողության վրա, եթե ոչ, դատարկ համոզմունքը ավելի վատ է ամենևին համոզմունք չունենալուց։

Հիմա դառնանք դեպի պ. Հայկունու հոդվածի այն մասը, որտեղ նա խոսում է «Կայծերի» գաղափարների մասին։

— «Որո՞նք են «Կայծերի» գաղափարները, նրա տենդենցիան ինչո՞ւմ է», հարցնում է պ. Հայկունին։ Մենք սպասում ենք նրա պատասխանին, թե ինչպե՞ս կվճռե այդ հարցը, բայց մի որոշ պատասխան չենք լսում։

Վեպի հիմնական գաղափարը չէ կարելի ցույց տալ նրա այս և այն տողերի, նրա այս և այն գլխի մեջ։ Վեպի հիմնական գաղափարը տարածվում է, միախառնվում է նրա ամբողջության հետ, որպես հոգին մարմնի հետ։ Եվ դրա մեջն է նրա կենդանությունը։ Հեղինակից է կախված, թե ինչ ձև կամ ինչ պատկեր է ստեղծում ցանկացած գաղափարը նրա մեջ ամփոփելու համար։ Միայն այդ ձևը պետք է համարություն ունենա գաղափարը արտահայտելու և նրա հետ միանալու, ոչ թէ որպես լավ ձևած հագուստը մարմնի հետ, այլ որպես մի օրգանական մարմին, որ կրում է իր մեջ կենդանի հոգի։

Այդ ընդհանուր օրենքը մի կողմ դնելով, պ. Հայկունին, վեպի ամբողջության վրա ամենևին ուշադրություն չէ դարձնում, այլ իր սովորության համեմատ, մի քանի տողերից, մի քանի նախադասություններից բռնելով, աշխատում է նրանցով ցույց տալ «Կայծերի» հիմնական գաղափարը։

Ինչպես կենդանի մարմնի մեջ ամեն մի անդամ իր հատուկ պաշտոնը և իր առանձին նշանակությունն ունի և բոլորը միասին կազմում են մարմնի ամբողջությունը, այնպես էլ վեպի մեջ նրա ամեն մի մասը իր հատուկ նշանակությունն ունի, որոնք, բոլորը միանալով, կազմում են մի անբաժան ստեղծագործություն։ Բաժանել ամբողջությունից այն մասերը միայն, որոնցմով կրիտիկոսը նպատակահարմար է գտնում իր կարծիքները հաստատելու, դա ոչ միայն հակառակ է կրիտիկայի օրենքներին, բայց սխալ եզրակացության կհասցնե։ Պ. Հայկունին այդ եղանակին է հետևվում։ Նա ոչ միայն մասնատում է, այլանդակում է վեպի ամբող-

ջությունը, այլ աշխատում է միայն սև կետերի վրա ուշադրություն դարձնել։

Ի՞նչ հասկացողություն կարող ենք կազմել մի պատկերի գեղարվեստական արժանավորությունների մասին, նրա արտահայտած գաղափարի մասին, երբ կսկսենք նայել միայն նրա սև գույների վրա։ Չէ՞ որ այդ սև գույները, որպես ստվերներ, նրա համար են միայն, որ ավելի բացորոշ կերպով երևան նրա պայծառ գույները։ Գույների համեմատական միավորությունից ստեղծվում է ամբողջ պատկերը, որպես մուզիկայի մեջ զանազան հնչյունների ներդաշնակությունից կազմվում է մի ամբողջ պիեսա։

Պ. Հայկունին, ինչպես հիշեցի, մասնատում է, այլանդակում է վեպի ամբողջությունը և առնում է նրանից այն տեղերը միայն, որ իրան նպատակահարմար է համարում։

Ես կներեի նրան, եթե տգիտությամբ արած լիներ այդ, բայց չեմ ների, որովհետև նա այդ արել է գիտությամբ։

Որպեսզի ցույց տամ նրա քննադատության եղանակը, ես կհիշեցնեմ ընթերցողին, թե առհասարակ ինչպես վերաբերվեցավ նա դեպի իր քննելի առարկան և ապա կդառնանք դեպի այն հարցը, թե ինչպե՞ս է վերաբերվում պ. կրիտիկոսը դեպի «Կայծերի» հիմնական գաղափարները։

«Կայծերի» գրական նշանակությունը վճռելու ժամանակ, նա այդ վեպը կոչեց հեքիաթ։ Ես դրա դեմ չեմ վիճում։ Ծաղրել կարելի է ամեն բան և մինչև անգամ ամեն սրբություն, դրա համար ոչ շատ խելք և ոչ էլ շատ զարգացում է հարկավոր, բավական է փոքր-ինչ անպատկառ լինել, փոքր-ինչ համարձակ լինել։ Բայց պ. կրիտիկոսը մի խոշոր սխալ գործեց, որ չկանգնեց հեքիաթի վրա և չքննեց «Կայծերը» իբրև հեքիաթ։ Հեքիաթը շատ անմեղ բան է, որպես անմեղ է նահապետական ժողովրդի հոգին, որ ստեղծում է նրան։ Բայց նա թողեց անմեղ հեքիաթը և աշխատեց «Կայծերի» մեջ ցույց տալ վնասակար մտքեր, վնասակար գաղափարներ։ Այստեղից ևս խույս տալով, նա աշխատեց ցույց տալ, որ «Կայծերը» մի ծրագիր է տաճկահայերի ապագա կյանքի և գործունեության։ Թեև նա մանրամասնաբար չբացատրեց, թե ինչում պետք է կայանար այդ «ապագա գործունեությունը», բայց որքան էլ որ ասաց, այն էլ բավական էր, որ տեսնենք, թե որպիսի չար հոգուց ներշնչված է եղել պ. կրիտիկոսը։ Նա մասնացույց արեց Վանա բերդի գրավման վրա և այլն։ «Կայծերի» ընթերցողները գիտեն, որ այդ տեսակ բաներ չկան այդ գրքի մեջ։

«Մրագրից» և «Հեքիաթից» անցնելով, պ. կրիտիկոսը հայտնեց այն միտքը, թե «Կայծերը» ոչ ժամանակակից վեպ է և ոչ պատմական: Այդ հարցը պետք է լուծվի, որովհետև առանց որոշելու, թե «Կայծերը» ի՛նչ վեպ է, դժվար կլինի նրա հայտնած գաղափարների մասին խոսել։

Պ. Հայկունին սխալ է հասկացել կամ չէ կամեցել հասկանալ, որ «Կայծերը» ժամանակակից վեպ է, ժամանակակից վեպի կատարյալ նշանակությամբ։

Մեր կարծիքը հաստատելու համար, հարկավոր ենք համարում մի քանի խոսքով ցույց տալ, թե ի՛նչ բան է ժամանակակից վեպը։

Մեր գործնական դարում այլևս չէ պահանջվում գեղարվեստը միայն գեղարվեստի համար, այլ պահանջում են գեղեցիկի մեջ գտնել և օգտավետ և կենսականը։ Ժամանակակից վեպը չէ կարող բավականություն տալ առասպելական պատմություններով, երևակայական հերոսների անհավատալի գործողություններով, և չի պիտի ապշեցնե ընթերցողին միայն զարմացք, հիացում ու սոսկում ազդող տեսարանների անբնական նկարագիրներով։ Կարող է նա զվարճացնել, զբաղեցնել մեր միտքն ու հոգին, բայց միևնույն ժամանակ պետք է մի բան սովորացնե մեզ։ Ամենադժվարին հարցերը, որ փիլիսոփայությունը և գիտությունը իրանց չոր ու ցամաք թեորիաներով դժվարանում են լուծել, լուծում է ժամանակակից վեպը բանաստեղծության ավելի գրավիչ, ավելի հասկանալի և ավելի շոշափելի շրջանակի մեջ։

Ժամանակակից վեպը իր նյութը առնում է իրական աշխարհից, որով շրջապատված ենք մենք։ Նրա մեջ պատկերանում է ընթացող կյանքը, թե ընտանիքի և թե հասարակության մեջ, իր բոլոր լավ կամ վատ երևույթներով։ Նրա մեջ վճռվում են ամեն տեսակ հարցեր թե բարոյական, թե քաղաքական, թե կրոնական և թե տնտեսական, որոնք զբաղեցնում են քաղաքակիրթ աշխարհի մտքերը։ Նրա մեջ քննության են ենթարկվում այն գաղափարները, այն հասկացողությունները, այն հիմնարկությունները, որոնք թեև դարերով ընդունված էին որպես օգտավետ, բայց հնանալով և ներկա ժամանակի պահանջներին անհամապատասխան համարվելով, կորցնում են իրանց հեղինակությունը։ Նրա մեջ երևան են հանվում, մշակվում են այն հրապուրիչ նորությունները, որոնք խոստանում են ապագայում բախտավոր հետևանքներ և այդ նորություններով խորտակվում է ինչ որ հին է, ինչ որ վաղուց

արդեն կորցրել է իր նշանակությունը։ Նրա մեջ քննվում են հարաբերությունները ժողովրդի զանազան դասակարգերի մեջ, հարվածվում է հարստահարիչը և պաշտպանվում է հարստահարյալի անհատական իրավունքը և նրա բարեկեցության համար միջոցներ է առաջարկվում։ Նրա մեջ քննվում են ընտանեկան կյանքի հիմունքները, որոնք խախտված են, որոնք նույն դրության մեջ մնալով չեն կարող ընտանիքի բարօրությունը պահպանել և առաջարկում են ավելի լավ պայմաններ ամուսնի և կնոջ, ծնողների և որդիների հարաբերության համար։

Այդ բոլորը, որպես մի կատարդական հայելի, ամփոփում է իր մեջ «Կայծերը» և երևան է հանում Պարսկաստանի և Տաճկաստանի հայերի կյանքի տխուր պատկերները։

Ես ինձ հեռու եմ պահում «Կայծերի» քննությունից, որովհետև «Կայծերը» քննելու, «Կայծերը» բացատրելու համար պետք է միևնույն չափով գիրք գրել և այդ ավելի ձեռնհաս, ավելի հմուտ անձինքների գործ է։ Բայց այսքանը կասեմ, որ Րաֆֆիի այդ նոր աշխատությունը իբրև ժամանակակից վեպ իր ընդարձակ նշանակությամբ, ամենաճիշտ ֆոտոգրաֆիայի նման, մի կողմից պատկերացնում է մեզ Տաճկաստանի հայերի հասարակական հիվանդությունը իր բոլոր փտեցնող, օրըստօրե լուծվող և քայքայվող կողմերով,— իսկ մյուս կողմից, ցույց է տալիս այն դարմանները, որոնցմով պետք է բժշկել հիվանդին։ Այդ դարմանները գուցե շուտով չեն օգնի, գուցե առաջին անգամ բոլորովին անաջող կանցնեն, բայց դրանով պետք չէ հուսահատվել, թե դարմանները անօգուտ են։ Դարևոր հիվանդությունը մի ժողովրդի կյանքի մեջ երկարատև բժշկության պետք ունի։ Բայց դարմանները փորձված են։ Այդ հիվանդությունը ունեցող ժողովուրդները միշտ դիմել են նույն դարմաններին։ Ուրիշ հնար չկա, հրաշքներով մեր դարում մարդիկ չեն բժշկվում։

Որպես ժամանակակից վեպը, այնպես էլ ժամանակակից վիպասանը իր ժամանակի արդյունքն է։ Մեր գրականության մեջ նշմարվում է այդ երևույթը բայց պ. Հայկունու խելքի տեր մարդիկ ոչ հասկանալ կարող են և ոչ բացատրել։

Սկսվում է ռուս-թուրքական 26 թվականների պատերազմը։ Պարսից լծի տակ ճնշված և դարևոր ստրկության մեջ մաշված հայերը, ընդհանուր ոգևորությամբ, սպասում են ազատության՝ ռուսաց զենքի շնորհիվ։ Ներսես 5-րդը քաղաքական դեր է խաղում։ Հայերը ամենայն անձնվիրությամբ մասնակցում են ռուսաց կռիվ-

ների մեջ։ Նրանցից ամեն մեկը ցանկանում է իր հայրենիքը փրկված տեսնել մահմեդականների բռնակալությունից։ Ռուսաց և անգլիացվոց քաղաքականությունը մրցում են միմյանց հետ։ Անգլիացիք խոստանում են հայերին արտոնություններ և հանգստություն պարսից երկրներում։ Նույնը խոստանում են ռուսները իրանց նոր գրաված երկրներում։ Ռուսաց քաղաքականությունը հաղթող է հանդիսանում և տեղի է ունենում Պարսկաստանի հայերի մեծ գաղթականությունը դեպի Երասխ գետի այս կողմը։

Այդ ժամանակներում հայտնվում է Աբովյանը և որպես թարգման հայերի զգացմունքի և ցանկությունների, գրում է իր «Վերք Հայաստանի» կոչված վեպը։

Անցնում է ուղիղ 50 տարի, սկսվում է ռուս-թուրքական 76 թվի պատերազմը։ Տաճկաստանի հայերի թշվառ դրության վրա ուշադրություն են դարձնում։ Ռուսաց զինվորների արյունով գրվում են Սան-Ստեֆանոյի դաշնագրի 16-րդ և Բեռլինի դաշնագրի 61-րդ հոդվածները։ Խոստանում են թուրքաց Հայաստանում վերանորոգություններ մտցնել և հայերի համար մի լավ դրություն ստեղծել։ Ներսես պատրիարքը դիվանագիտական դեր է խաղում։ Բոլոր ինտելիգենտ հայերի մտքերը զբաղված են այն հարցով, թե ինչպե՞ս պետք է ստեղծել այդ լավ դրությունը, որ իրանց եղբայրակիցների վիճակը բարվոքվի Տաճկաստանում։

Բոլորովին անբնական կլիներ, որ մտածությունների այդ սաստիկ մաքառումների ժամանակ, ձգտումների այդ ջերմ շարժման ժամանակ և ցանկությունների այդ ուժեղ հոսանքի ժամանակ անտարբեր մնար ազգային բանաստեղծը։ Այո՛, բոլորովին անբնական կլիներ, որ բանաստեղծը լուռ մնար այն ժամանակ, երբ Տաճկաստանի ստրկացած ժողովրդի մեջ տիրում էր մի տենդային գրգիռ բողոքելու և իր ցավերն ու վշտերը դնելու քաղաքակիրթ Եվրոպայի առջև։ Բանաստեղծը պետք է արձագանք տար ժողովրդի ձայնին և նրա սրբազան ցանկությունները, նրա խորին զգացմունքները, և նրա լացն ու արտասուքը պետք է նյութ աներ իր երգերի և իր վեպերի։

Այդ ժամանակներում Գամառ-Քաթիպան թողնում է իր «Կռամպապուլին», թողնում է մայրաքաղաքներում կրթված աղջիկներին ու երիտասարդներին և սկսում է երգել մշեցի մշակների դժբախտությունը։ Այդ ժամանակներում ալևոր Ծերենցը մտնում է պատմության խորքը և հնության փոշիների միջից ի լույս է ածում «Թորոս Լևոնին», «Երկունքը» և «Թեոդորոս Ռշտունին»։ Այդ ժա-

մանակներում Րաֆֆին թողնում է իր «Հարեմները», «Ոսկի աքաղաղները», «Ուխտյալ Միանձնուհիները» և գրում է՝ «Ջալալեդդին», «Խենթը», «Դավիթ-Բեկը», «Խամսայի մելիքությունները», թարգմանում է «Ղարաբաղի Աստղագետը» և այա ի լույս է ածում «Կայծերը»։ Այդ վեց գրքերը հայտնվում են միևնույն տարիների ընթացքում, երբ Տաճկաստանի հայոց մտքերը ընդհանուր խմորման մեջ էին, երբ Տաճկաստանի հայերի վիճակը զբաղեցնում էր բոլորին։

Եթե վեպը կյանքի ու նրա երևույթների նկարագիր է, եթե վեպը մի արտահայտություն է ժողովրդի մտավոր և հոգեկան տրամադրության, շատ բնական է, որ միևնույն ժամանակներում լույս տեսած զանազան վեպեր կարող են բավական նման լինել միմյանց, եթե ոչ իրանց բովանդակությամբ և տիպերով, բայց գոնե իրանց ոգու ընդհանուր ներշնչությամբ, իրանց գաղափարներով։

Հենց այդ պատճառով Աբովյանի, Ծերենցի և Րաֆֆիի վերոհիշյալ վեպերը իբրև ժամանակի մտածությունների և զգացմունքների արտահայտություն, իրանց հիմնական գաղափարներով բավական նման են միմյանց, թեև իրանց բովանդակությամբ և տիպերով բոլորովին տարբեր են[1]։

Իմ բարեկամներից մեկը բավական ճիշտ համեմատությամբ բացատրում էր այդ երևույթի բնական պատճառը, թե ինչու մեր գրականության մեջ ժամանակ առ ժամանակ լույս են տեսնում միևնույն բնավորությամբ, միևնույն ոգով գրված վեպեր։ Երևակայեցեք, ասում էր նա, մի հրաբխային զորություն. Նա դարերով իր ստորերկրյա կայարանի մեջ գործում է, աճում է, հավաքում է իր ուժերը, և վերջ ի վերջո այլևս չկարողանալով տեղավորվել իր նեղ արգելանի մեջ, սկսում է ժամանակ առ ժամանակ ժայթքումներ գործել։ Եվ այսպես կազմակերպում է նա միևնույն լեռնային շղթայի վրա մի շարք բլուրներ, գագաթներ և զանազան բարձրություններ։ Այդ բարձրությունները թեև միևնույն հրաբխային զորությունից են առաջ եկած, թեև կազմում են մի ամբողջ լեռնային շղթա, բայց թե իրանց ներքին բովանդակությամբ, և թե իրանց արտաքին կերպարանքով ամենևին նման չեն միմյանց։ Մեկը մեծ է, մյուսը փոքր է, մեկը բարձր է, մյուսը ցածր է, յուրաքանչյուրը առանձին անուն է կրում և յուրաքանչյուրի մեջ կան

[1] Մեր մյուս վիպասանների, Աղայանցի, Պռոշյանցի, Սարգսյանցի վեպերը չեն կարող վիպասանության այդ տեսակի հետ դասավորվել, որովհետև նրանք բոլորովին այլ տենդենցիայով գրված են։

զանազան տեսակ հանքային մարմիններ, յուրաքանչյուրի զանգվածը առանձին բաղադրություն ունի։

Եթե Աբովյանի, Ծերենցի և Րաֆֆիի վեպերը ընդունելու լինենք որպես մի բնական երևույթ մեր գրականության մեջ և եթե վերևում բերած օրինակով քննելու լինենք նրանց հայտնվելու պատճառները, անշուշտ կտեսնենք, որ համեմատության մեջ սխալված չենք։ Աբովյանի «Վերք Հայաստանին» հրաբխային գործության առաջին ժայթքումն էր։ Բայց այդ ժայթքումը կատարվեցավ բավական թույլ և դանդաղ կերպով և վեր հանեց դեռ ոչ կատարելապես կազմակերպված մի բարձրություն։ Հետո ժայթքումները կատարվում են ավելի սաստիկ և սաստիկ կերպով երևան են հանում ավելի մեծ բարձրություններ, որոնց վերջինը և իր կազմակերպությամբ ավելի կատարելագործվածը պետք է համարել Րաֆֆիի «Կայծերը»։

Եթե բնության մեջ դադարում է այս տեսակ գագաթների հայտնվելը, մենք ասում ենք, թե հրաբուխը հանգել է և ստորերկրյա գործող զորությունը սպառվել է։ Իսկ եթե գրականության մեջ դադարում է միևնույն ոգվով կազմված աշխատությունների երևան գալը, մենք մտածում ենք՝ կամ կյանքը մեռել ու սպառվել է և կամ ժողովուրդը հասել է իր ցանկացած նպատակին և հանգստացել է։

Ուրեմն, քանի որ դեռ երևան են գալիս միևնույն բնավորությամբ, միևնույն հոգով ներշնչված վեպեր, մենք պետք է այդ երևույթը վերաբերենք ոչ թե այն պատճառին, որպես մտածում են Հայկունու նման կարճատես կրիտիկոսները, թե մեր վիպասանները ուրիշ նյութ չունեն իրանց ֆանտազիային բավականություն տալու և միշտ կրկնում են միևնույն մտքերն ու գաղափարներ — այլ պետք է մտածենք, որ ժողովրդի պահանջը դեռ լրացած չէ։ Այդ պահանջը արտահայտվում է և շարունակվում է արտահայտվել ոչ միայն ժամանակակից վեպերի ու բանաստեղծությունների մեջ, այլ մամուլի և գրականության ուրիշ ճյուղերի մեջ ևս։

Այդ կետից նայելով, թե այժմ և թե քսան, հիսուն տարիներից հետո, եթե մի կրիտիկոս հանձն կառնե քննել «Կայծերը» կամ Րաֆֆիի մյուս վեպերը, նա միշտ սխալանքների մեջ կընկներ, եթե ի նկատի չէր առնի ժամանակի պատմությունը և այն բոլոր հանգամանքներն ու շարժառիթները, որ պատճառ եղան այդ վեպերի ստեղծվելուն։ «Կայծերը» խորին կապ ունի տաճկահայերի

ներկա դրության և Տաճկաստանի քաղաքական ու տնտեսական պայմանների հետ։ Քննելով «Կայծերը», միևնույն ժամանակ պետք է քննել և այդ պայմանները։ Եվ դրա մեջն է Րաֆֆիի բարձըր նշանակությունը, որ մեր գրականության ասպարեզում չէ հանդիսանում նա որպես լոկ վիպասան միայն, այլ որպես ժամանակի գործիչ, որպես առաջնորդող ժամանակի ձգտումների և գաղափարների։ Եվ այդ է պատճառը, որ մենք համարում ենք «Կայծերը» կատարյալ ժամանակակից վեպ, և ոչ թե հեքիաթ կամ մի ծրագիր գրված տաճկահայերի ապագա գործունեության համար, որպես աշխատում է ցույց տալ պ. Հայկունին։

— «Որո՞նք են «Կայծերի» գաղափարները, նրա տենդենցիան ինչո՞ւմն է»,— հարցնում է պ. Հայկունին։ Մենք սպասում ենք նրա պատասխանին,— դարձյալ մի որոշ պատասխան չենք լսում։

Ինչպես «Կայծերի» տիպերի քննության մեջ, ինչպես «Կայծերի» գեղարվեստական արժանավորությունների կամ նրա հոգեբանական կողմերի վրա խոսելով, պարոնը խույս է տալիս որոշ միտք հայտնելուց և բավականանում է մի քանի ընդհանուր և կրիտիկայի մեջ ոչինչ նշանակություն չունեցող ֆրազներով միայն,— այնպես էլ «Կայծերի» տենդենցիայի և նրա մեջ բովանդակված գաղափարների մասին խոսելով, նա մի որոշ միտք չէ հայտնում։ Նա միայն աշխատում է ցույց տալ, թե «Կայծերի» հեղինակը սեփական գաղափարներ չէ ունեցել, այլ իր բոլոր մտքերը առել է «Մշակ» լրագրից։ Այդ կարծիքը հիմնում է նա հեղինակի մի այլ առիթով հայտնած խոստովանության վրա, թե «ինքը «Մշակի» գաղափարների ամենամոլեռանդ **ճառագողներից մեկն է»**:

Եթե ընդունենք «Մշակը» որպես մի որոշ ուղղության արտահայտություն, այն ժամանակ շատ հասկանալի կլինի Րաֆֆիի խոստովանությունը։ «Մշակը» մի խմբի, մի հայտնի կուսակցության օրգան է։ «Մշակը» մի հավաքական ուժ է։ Նրա մեջ որպես խմբագիրը, այնպես էլ ամեն մի գրող իր մեծ և փոքր մասն ունի։ Րաֆֆին այդ գրողներից մեկն է։ Նա չէ սովորում «Մշակից», այլ իր գաղափարները և իր մտքերը սովորեցնում է կամ որպես ինքն է ասում՝ **«ճառագում է»** «Մշակի» միջոցով։ «Մշակը» մտքերի մի հոսանք է, որի մեջ զանազան աղբյուրներից բխած վտակները միախառնվում են և կազմում են մի մեծ գետ։ «Մշակի» խմբագիր պ. Արծրունին միայն հսկում է, որ գետը չփոխե իր ընթացքը և չշեղվի իր ուղղությունից։ Րաֆֆին այն վտակներից մեկն է, որ խառնվում է այդ գետին։ Եվ որովհետև ամեն մի

վտակ ինչ հողի կամ հանքային բաղադրության մոտից որ անցնում է, իր հետ բերում է նրանց համը, հոտը և գույնը,—այդպես էլ Րաֆֆին ունի իր առանձին գույնը և հատկությունները։

Խոսելով «Մշակի» գաղափարների վրա և բավական շողոքորթելով պ. Արծրունու բանաստեղծական տաղանդը, պ. Հայկունին դարձյալ մի որոշ միտք չէ հայտնում, թե որոնք են «Մշակի» գաղափարները, որ իբրև պատրաստի նյութ առել է Րաֆֆին և մտցրել է «Կայծերի» մեջ։ Նա միայն ասում է, թե «պ. Արծրունին հիվանդության տագնապների մեջ գտնվող Գյոթեի նման անդադար բացականչում է. «Լո՛ւյս, լո՛ւյս, ուրիշ ոչինչ, եթե ոչ լույս»։

Եթե այդ է միայն «Մշակի» քարոզած գաղափարը,— դա շատ հնացած և բոլորովին մաշված միտք է և ոչ մի ժամանակակից վեպի նյութ տալ չէ կարող։ Ամենքը գիտեն, որ լույսը լավ բան է, և մինչև անգամ «Կայծերի» պատանի Ֆարհադն էլ է իմանում այդ և հիացած արեգակի ճառագայթներով, ասում է. «Ա՜խ, ինչ լավ բան է լույսը, որպես բաց է անում նա մարդի աչքերը և զորություն է տալիս նրա տեսողությանը։ Չէ՞ որ միևնույնն է լինում և կյանքի մեջ,— մի ժողովրդի, մի ազգի և ամբողջ աշխարհի կյանքի մեջ։ Երբ որ տիրում է մթավոր խավարը, մարդիկ չեն տեսնում իրանց ամենախոշոր թերությունները, նրանք չեն նշմարում այն ճանապարհի ուղղությունը կամ ծռությունը, որով գնում են. նրանք չեն նկատում այն խոչընդոտները, որ ամեն անգամ նրանց ոտքին է դիպչում և ճակատի վրա վայր է գլորում, նրանք ոչինչ չեն տեսնում, միայն խարխափում են մոլորության մեջ»...
(եր. 238—239)։

Այդ տողերը կարդալուց հետո, պ. Հայկունին դարձյալ «Մշակի» և Րաֆֆիի գաղափարների մեջ հակառակություն է գտնում։ Նա ասում է. «Մշակը» անդադար բացականչում է՝ «լույս, լույս»։ Իսկ «Կայծերի» հեղինակը բղավում է. «խավար, խավար»։ Պ. Արծրունին պնդում է. «դեպի առաջ, նորություն»։ Իսկ Րաֆֆին քարոզում է. «դեպի ետ, հնություն, վայրենություն»։

Արդյոք ի՞նչ փաստերի վրա է հիմնում պ. Հայկունին իր համեմատությունները, այդ մասին լռում է, որովհետև «փաստեր առաջ բերելու ժամանակ չէ, ասում է նա, բայց եթե այդ անհրաժեշտ է, դժվար էլ չէ, միայն սիրտ ու հավես պետք է»։

Բայց քանի որ պ. Հայկունու «սիրտն ու հավեսը» իր տեղը չէ, քանի որ նա փաստերից փախչում է, նրա դիտողությունները կրիտիկական ոչինչ արժեք ունենալ չեն կարող։

*Չէ՛ կարելի այսպիսի ընդհանուր խոսքերով բացատրել մի որևիցե վեպի գաղափարները, ասելով.— ««Կայծերի» արգս հեղինակը ընդունում է (գոնյա ինչպես սեփական խոսքերից է երևում), որ հայ ազգի նյութական և բարոյական անկման պատճառը նրա ընտանեկան, դպրոցական և ընկերական կյանքի տգիտությունից է առաջ գալիս։ Բայց այդ ընկած վիճակը վերականգնեցնելու համար պարոնը առաջարկում է դարձյալ* տգիտություն, մինչև անգամ վայրենություն»:

*Պարոնը չէ հասկանում, եթե վեպի մեջ նկարագրվում է մի որևիցե հիմնարկության անկարգ դրությունը, նրա վնասակար ազդեցությունը, այդ չէ նշանակում, որ հեղինակը մերժում է այն հիմնարկության կարևորությունը, այլ ընդհակառակը, ցույց տալով նրա թերությունները, հեղինակը ցանկանում է վերանորոգել և ավելի օգտավետ պայմանների մեջ դնել նրան։ Օրինակ, «Կայծերի» մեջ նկարագրված է տեր Թոդիկի դպրոցը իր բոլոր այլանդակությամբ, իր բոլոր ստրկացնող և բթամտացնող ազդեցությամբ (եր. 53—83)։ Նկարագրելով այդ դպրոցը կամ որպես նրա աշակերտ Ֆարհադը կոչում է՝ այդ «դժոխքը»,— հեղինակը դրանով չէ կամենում ցույց տալ, թե ուսումը կամ «լույսը» պետք չէ, այլ այդ «դժոխքի» նկարագրությունից ինքնըստինքյան ծագում է այն միտքը, թե «լույս» կամ ուսում ստանալու համար պետք է ունենալ ավելի կանոնավոր, ավելի նպատակահարմար դպրոցներ։ Այնպես էլ, նկարագրելով հայոց ընտանեկան և ընկերական կյանքը իրանց բոլոր պակասություններով, հեղինակը ցանկանում է, որ այդ պակասությունները լրացվեն ավելի օգտավետ և կյանքի պահանջներին համապատասխան պայմաններով։*

*Իսկ թե «Կայծերի» հեղինակը «վայրենություն» կամ «վայրագություն» է քարոզում,— մեզ շատ մութն է, թե ի՞նչ է ուզում պ. Հայկունին հասկացնել այդ խոսքերով. մի՞թե նա վայրենություն է համարում անձնապաշտպանությունը։ Մի՞թե նա վայրենություն է համարում վայրենի քրդի հափշտակությունից իր կյանքը, իր ընտանիքը պահպանելը։ Եթե այդ վայրենություն համարվեր, մենք պետք է ամբողջ լուսավորյալ Եվրոպան վայրենի համարեինք, որտեղ պետությունները իրանց երկրի հասույթների ամենամեծ մասը ծախսում են զինվորների պահպանության համար, որպեսզի պահպանեն իրանց երկրի շահերը։*

*Պ. Հայկունին ուրիշ հակառակություններ ևս գտնում է «Կայծերի» հեղինակի և «Մշակի» մտքերի մեջ։ «Մշակը» քարոզում է,*

որ սուրբ Ավետարանը աշխարհաբարի թարգմանելով, պետք է տալ ժողովրդի ձեռքը, որ նա կարդա և բարոյապես զարգանա։ Իսկ Րաֆֆին ասում է, որ սուրբ գրքերը վնասակար են, նրանց փոխարեն պետք է տալ ժողովրդին Ղորանը, որ նա կարդա և վայրենություն սովորի։

Պետք է կամ վերին աստիճանի տգետ լինել, կամ վերին աստիճանի անամոթ լինել, այսպես անխղճաբար աղավաղելու համար «Կայծերի» արտահայտած մտքերը։ Րաֆֆին չէ ասում, թե սուրբ գրքերը վնասակար են, այլ ասում է, որ մեր տեր Թոդիկները այնքան տգետ են, որ սուրբ գրքերի մտքերին այնպիսի սխալ բացատրություններ են տալիս, որ փոխանակ օգուտ բերելու, վնասում են։ Որի ընդհակառակն, մահմեդական մոլլան համեմատաբար ավելի նպատակահարմար կերպով է բացատրում Ղորանի իմաստները (եր. 255—257)։ Եվ այդ կարծիքը ոչ թե Րաֆֆիի կարծիքն է, այլ որսորդ Ավոյի կարծիքն է։

Չնայելով, որ պ. Հայկունին, որպես տեսանք, մի կողմից աշխատում է ցույց տալ «Մշակի» և «Կայծերի» գաղափարների մեջ հակառակություն, մյուս կողմից, ինքն իրան հակասելով, հայտնում է այն միտքը, թե «Կայծերի» հեղինակը «Մշակի» խմբագրից փող ստանալով, նրա թերթի գաղափարները ամբողջապես մտցրել է իր գրքի մեջ։

«Ինչպես կկամենայիք, ասում է նա, որ ես իմ մեկենասից («Մշակի» խմբագրից) յուրաքանչյուր տողի համար մի որոշյալ գումար ստանայի, նրա բերանից իմ մասին ամեն օր մի-մի դըրվագ ու ներբող լսեի և միևնույն ժամանակ նրա գաղափարները ամենամոլեռանդաբար չքարոզեի»։

Ես հետո ցույց կտամ, թե ի՞նչ է նշանակում յուրաքանչյուր տողի համար մի որոշյալ գումար ստանալը, կամ ի՞նչ է նշանակում «Մշակի» գաղափարները ամենամոլեռանդաբար քարոզելը։ Այժմ հարկավոր եմ համարում մի քանի օրինակներով ավելի պարզել այդ հարցը։

Ընդունենք, որ «Կայծերի» գաղափարները մի քանի կետերում նման են «Մշակի» հայտնած մտքերին։ Ի՞նչ է դրա պատճառը։— Արդյոք ա՞յն, որ «Կայծերի» հեղինակը սեփական համոզմունք, սեփական իդեալներ չէ ունեցել և կուրորեն հետևել է «Մշակին», թե մի այլ երևույթի մեջ պետք է որոնենք իսկական պատճառը։ Այդ հարցը պետք է լուծեր պ. Հայկունին, բայց նա ամենայն անբարեխղճությամբ աղավաղում է։

Շատ հասկանալի է, որ ժամանակակից հարցերը քննվում, վիճաբանվում են ժամանակակից մամուլի և գրականության այլ ճյուղերի մեջ։ Բանաստեղծը կատարյալ իրավունք ունի բոլորից օգուտ քաղելու։ Բայց բանը նրանումն է, որ այս և այն հարցը լրագրի մեջ քննվում է առաջնորդող հոդվածի ձևով, ամսագրի մեջ քննվում է ամսագրական հոդվածի ձևով, բայց վեպի մեջ նա բոլորովին ուրիշ կերպարանք է ստանում։ Եվ դրա մեջն է վիպասանի առավելությունը, որ նա լրագրի արտահայտած մերկ մտքից ստեղծում է կյանք, մարմին և հոգի է տալիս նրան, շոշափելի կերպով ներկայացնում է մեզ։ Ես օրինակներով կբացատրեմ իմ ասածը։ Դիցուք թե լրագիրների մեջ քննվում է ապահարզանի հարցը։ Այդ հարցին ի նպաստ և աննպաստ զանազան դատողություններ ենք կարդում,— բայց բոլորը խոսքեր և դատողություններ են միայն։ Բանաստեղծը վեր է առնում այդ բոլորը, գրում է մի վեպ և ներկայացնում է մեզ մի զույգ ամուսիններ, որոնք անբաժան ամուսնությունով դժբախտ էին, բայց հետո բաժանվելով և քաղաքական ամուսնությունով ապրելով յուրաքանչյուրը իր սիրածի հետ, ավելի բախտավոր դարձան։ Ո՞ր անփորձ կրիտիկոսը քննելով այդ վեպը, կասե, թե նա իր աշխատության գաղափարը առել է այս և այն լրագրից։ Այս տեսակ դատողություններ կարող են անել միայն հայկունիները, որոնք չգիտեն, թե ի՞նչ է վեպը, կամ ում պետք է վերաբերել նրա գաղափարները։

Մի այլ օրինակ ևս։ Մի ժամանակ Հյուսիսային և Հարավային Ամերիկայի ամբողջ մամուլը զբաղված էր ստրուկների ազատության հարցով։ Այդ հարցի առիթով տպվում էին հազարավոր բրոշյուրներ, այդ հարցի առիթով քահանան եկեղեցու բեմից կարդում էր քարոզներ, իսկ տնտեսագետը գիտության ամբիոնից կարդում էր դասախոսություններ,— բոլորը կամ ի նպաստ ստրուկների, կամ աննպաստ։ Եկեղեցին, մամուլը, գիտությունը կատաղած կերպով վիճում էին միմյանց հետ և վիճաբանության առարկան ստրուկներն էին։ Մտքերի այդ կռվի ժամանակ հայտնվում է մի կին, Բիչեր Ստոու, և օգուտ քաղելով ժամանակի մտածություններից, գրում է մի վեպ ստրուկների կյանքից, «**Թոմաս աղբոր տնակը**»։ Այդ կնոջ համար ասում են, որ ստրուկների ազատիչը եղավ ոչ այնքան հյուսիսային ամերիկացիների զենքը, որքան նրա վեպը։ Եթե մի կրիտիկոս քննելու լինի նրա գեղեցիկ գիրքը, շատ ծիծաղելի կդառնա, եթե ասե, նրա բոլոր գաղափար-

ները և տենդենցիան հազար անգամ հայտնված են եղել մամուլի մեջ։

Ռուսաստանում ծագում է ճորտերի ազատության հարցը։ Նույն երևույթն է նշմարվում ռուսաց թե մամուլի և թե գրականության մյուս ճյուղերի մեջ, ինչ որ կատարվեցավ Ամերիկայում։ Ինքը կառավարությունը զբաղված էր այդ հարցով։ Այդ միջոցներում Տուրգենևը, օգուտ քաղելով ընդհանուր մտածություններից, գրում է «Записки охотника» ռոմանը։ Բայց մինչև այսօր ոչ ոք չէ մեղադրել հարգելի վիպասանին գրականական գողության մեջ, թե նա իր վեպի գաղափարը առել է այս կամ այն գրվածքից։ Եվ դրա մեջն է ժամանակակից վեպի բարձր նշանակությունը, որ նա ամփոփում է իր մեջ այն բոլորը, ինչ որ հազարավորները և միլիոնավորներն են մտածում։ Բանաստեղծը խլում է թե թղթի վրա և թե շրջապատող մթնոլորտի մեջ տարածված մտքերը, պարզում է, և իր սեփական գույնը տալով, վիպական կենդանի ձևով վերադարձնում է մեզ։

Նույնը արել է և Րաֆֆին. նրա գիրքը ժամանակի արդյունք է։ Եթե նա ծնված լիներ հիսուն տարի առաջ կամ աշխարհ գալու լիներ մեզանից հիսուն տարի հետո, ես հավատացած եմ, որ «Կայծեր» չէր գրի, այլ կգրեր մի ուրիշ վեպ, որը կհետաքրքրեր իր ժամանակի ընթերցողներին։

Այդ բոլորից հետո, ես դարձյալ վերադառնալով դեպի պ. Հայկունին, հարկավոր եմ համարում նկատել, որ այդ պարոնը, խոսելով «Կայծերի» գաղափարների կամ տենդենցիայի վրա, ամենևին մի որոշ միտք չէ հայտնում, թե ինչումն է կայանում այդ տենդենցիան։ «Վայրենություն», «վայրագություն», «խավար», «հետադիմություն» բառերը անդադար կրկնելով, հարցը պարզած է համարում։ Բայց այդ մի քանի լոկ բառերը բավական չեն կրիտիկայի համար։ Ես նախորդ համարում հայտնեցի, թե վեպի հիմնական գաղափարները չի պիտի որոնել նրա այս և այն բառի, նրա այս և այն տողի մեջ, այլ վեպի ամբողջության մեջ։ Բայց երբ կրիտիկոսը իրան նպատակահարմար է համարում վեր առնել տողեր, նախադասություններ, կամ ամբողջ կտորներ վեպից և նրանցով բացատրել նրա պարունակած գաղափարները,— դա բարեխիղճ կրիտիկոսի գործ չէ։

Հիմա դառնանք պ. Հայկունու այն կարծիքին, որով ցույց է տալիս, թե Րաֆֆին իր մեկենասից («Մշակի» պ. խմբագրից) փող ստանալով, նրա գաղափարները մտցրել է իր գրքի մեջ։

«Պ. Րաֆֆին իրան գրքի առաջին երեսում գտնում է, որ մեկենասությունը գրականության մեջ օգտակար է, այսինքն «մի ձեռքը» կարող է հառաջացնել ու ծաղկեցնել և գրականություն (**)։ Այդ կարծիքը անպայման կերպով ոչ մի հասկացող մարդ, ես կարծում եմ, չէ ընդունում։ Եվ ինչպե՞ս ընդունել, ինչպե՞ս Բոքլի նման չասել, որ մեկենասությունը փչացնող, շողոքորթող, անբարոյականացնող երևույթ է, երբ տեսնում ես որ այդ մեկենասը, օրինակի համար, ֆրանսիացիների մեջ մի Լուդովիկոս է, իսկ հայ գրականության մեջ մի «Մշակ»։ Ինչպե՞ս կկամենայիք, որ ես իմ մեկենասից յուրաքանչյուր տողի համար մի որոշյալ գումար ստանայի, նրա բերանից իմ մասին ամեն օր մի մի դրվագ ու ներբող լսեի, և միևնույն ժամանակ նրա գաղափարները ամենամոլեռանդաբար չքարոզեի»։

Ես նախորդ համարում այդ ևս ցույց տվի, թե ինչ է նշանակում «Մշակի» գաղափարները ամենամոլեռանդաբար քարոզելը, այժմ պիտի խոսեմ գրականական վարձատրության մասին և մեկենասների նշանակության մասին։

Թե ինչ է ասել «Բոքլը», թե ինչ համեմատություն է արել «Մշակի» և ֆրանսիացի Լուդովիկոսի մեջ,— այս ես նրա գրքում չեմ կարդացել։ Միայն այսքանը գիտեմ, եթե «Մշակի» խմբագիր պ. Արծրունին իրան Բոքլին հրավիրելու լիներ «Մշակի» մեջ աշխատակցելու, նա անպատճառ կպահանջեր յուրաքանչյուր տողի համար մի որոշյալ գումար: Եվ եթե պ. Արծրունին նրան ասելու լիներ. «Պարոն Բոքլ, ինչո՞ւ եք ինձանից փող պահանջում, դուք չէի՞ք, որ ասում էիք, թե մեկենասությունը անբարոյականացնող միջոց է»։ Պարոն Բոքլը անպատճառ կպատասխաներ. «Ներեցեք պարոն, դուք ինձ լավ չեք հասկացել. ես իմ աշխատության վարձն եմ պահանջում ձեզանից, դա մեկենասություն չէ...»։

Պ. Հայկունին, որի դատողությունների տարածությունը իր կրքերի սահմանից այն կողմը չէ անցնում, աշխատում է մոլորեցնել իր ընթերցողներին ասելով, որովհետև Րաֆֆին «Մշակի» աշխատակից է, որովհետև այդ լրագրի խմբագիր պ. Արծրունին նրա գրած յուրաքանչյուր տողի համար մի որոշյալ գումար է վճարում, այդ պատճառով էլ Րաֆֆին շողոքորթում է նրան և «Մշակի» գաղափարներին «ամենամոլեռանդաբար» հետևում է։ Այժմ կպարզենք վարձատրության հարցը, որովհետև պ. Հայկունին անդադար շեշտում է հիշյալ հարցի վրա։

Թե Րաֆֆին գրում է «Մշակի» մեջ, թե յուրաքանչյուր տողի համար մի որոշյալ գումար է ստանում,— դա հանցանք չէ, ամեն մի նշանավոր լրագրի աշխատակիցները փող են ստանում, ձրի չեն գրում։ Բայց ի՞նչ կապ ունի այդ «Կայծերի» հետ։ «Կայծերը» խո «Մշակի» մեջ չէ տպվել, «Կայծերի» համար «Մշակի» խմբագիրը ոչինչ չէ վճարել։ Կամ մի՞թե փողի համար հեղինակը կփոխե իր համոզմունքները։ Կարծեմ, ինքը պ. Հայկունին իր հոդվածի մեջ աշխատում է ցույց տալ Րաֆֆիի և «Մշակի» գաղափարների մեջ հակառակություններ։ Մի՞թե մի մարդ կարող է միևնույն ժամանակ և հակառակ լինել և հլու հպատակ լինել։

Եթե Րաֆֆին յուրաքանչյուր տողի համար մի որոշ գումար է ստանում, այդ պատիվ է բերում նրան, որ կարողանում է ապրել գրական աշխատանքով. դա շատ գեղեցիկ երևույթ է, դա պետք է ուրախացնե մեզ։ Ես չեմ սխալվի, եթե ասեմ, որ Րաֆֆին առաջինն է մեր գրականության մեջ, որ իր տոկուն աշխատությամբ կարողացավ ցույց տալ, որ տաղանդը նույնպես հարստություն է, որ գրական արդար վաստակով ևս կարելի է ապահովել կյանքը։ Բայց որտե՞ղ, ի՞նչ հասարակության մեջ։— Իհարկե, ոչ մեզանում։ Եվրոպական հասարակությունների մեջ մի կամ երկու հաջող վեպեր բավական են, որ հեղինակը սեփական կառք և վիլլա ունենա և շրջապատե իրան ամեն տեսակ հարմարություններով։ Բայց Րաֆֆին, որ հայ հասարակությանը տվել է տասն հատոր գրքեր և նույնքան հատորներ կկազմեն նրա մեր պարբերական հրատարակությունների մեջ տպված մյուս աշխատությունները,— Րաֆֆին իր գրական վաստակով հազիվհազ կարողանում է ձեռք բերել մի կտոր արդար հաց և կյանքից ավելին չէ պահանջում։ Մի ամբողջ քառորդ դար այդ մարդը աշխատում է, դեռևս իր ապրուստը ապահոված չէ։ Այսօր ձգեց գրիչը, մյուս օրը, գուցե, ուտելու հաց չի ունենա։ Մինչև այսօր մի ամբողջ ժողովուրդ չէ կարողացել ապահովել իր վիպասանին, և դեռևս գտնվում են մարդիկ, որ տրտնջում են նրա ստացած մի քանի կոպեկների համար։ Ասացեք խնդրեմ, ինչո՞ւ մեզ մոտ մի վարժապետ, մի տեսուչ կարող են չորս հազարներ, հինգ հազարներ ստանալ և թուղթ խաղալով իրանց ժամանակը սպանել, իսկ մի վիպասան, որ կրթում է մի ամբողջ հասարակություն, պատրաստում է մի ամբողջ սերունդ, որի գրական վաստակը կմնա ազգի համար իբրև հավիտենական ժառանգություն,— մի՞թե մի այսպիսի աշխատողը պետք է մնա առանց վարձատրության։

Պ. Հայկունին այն միտքն է հայտնում, որ փողը ոչ միայն հրապուրում է, այլ մինչև անգամ անբարոյականացնում է գրողին։ Գուցե պ. Հայկունին փողի համար ամեն բան կաներ, բայց ճշմարիտ տաղանդը երբեք չէ կաշառվում։ Եվրոպական լավ գրողները մեծ փողեր են ստանում, բայց դրանից նրանց աշխատությունները ամենևին չեն վատանում։ Նույնիսկ Լուդովիկոսին շրջապատողները գիտե պ. Հայկունին, թե ովքեր էին,— Ռասին, Բուալո, Մոլիեր, Լաֆոնտեն, Ֆենելոն, Բոսուե,— այդ մարդիկը չփչացան իրանց մեկենասից օգնություններ ընդունելուց։

Ազգերի գրականության մեջ եղել են ժամանակներ, երբ մեկենասներն ևս իրանց օգտավետ ազդեցությունն են ունեցել։ Այդ այն ժամանակներում է լինում, երբ գրականությունը դեռ նոր է սկսել ծաղկել, երբ ընթերցանությունը դեռ ժողովրդի պահանջ չէ դարձել, որ հեղինակների գրքերը վաճառվեին և նրանք իրանց սեփական արդյունքով կարողանային շարունակել իրանց աշխատությունը։ Բայց երբ ընթերցանությունը ժողովրդի պահանջ է դառնում, մեկենասների կարևորությունը ինքնըստինքյան ոչնչանում է։ Ծիծաղելի կլինեին այժմ մեկենասները Ֆրանսիայում, Գերմանիայում, Անգլիայում, ուր հեղինակների աշխատության դեռ թանաքը չցամաքած, հայտնվում է գրավաճառը, և հազարներ է առաջարկում տպագրության իրավունքը գնելու համար։ Բայց մի ժամանակ այդ երկրներում մեծ բարերարություն էին անում մեկենասները։

Մեր գրականությունը դեռ այն շրջանի մեջն է, որ գիրքը, ընթերցանությունը պահանջ չէ դարձել։ Գրողները բոլորովին աղքատ մարդիկ են, ինչո՞վ կարող են տպագրել իրանց աշխատությունները, եթե նրանց օգնողներ չլինեն։ Բախտավոր պետք է համարի իրան այն հեղինակը, եթե դուրս կբերի տպագրության ծախքը։ Բայց ինչո՞վ պետք է ապրե նա։ Չէ՞ որ պետք է միջոց տալ նրան գործելու։ Եվ եթե այդ չէ անում հասարակությունը, անպատճառ պետք է անեն մասնավոր մարդիկ, եթե ցանկանում են, որ ընթերցանությունը տարածվի ժողովրդի մեջ։

«Կայծերի» տպագրության ծախքը հոգացել է գնդապետ Ա. Թ. Մելիք-Հայկազյանը։ Ամենայն համակրության արժանի է հարգելի պարոնի առատաձեռնությունը, որ նրա շնորհիվ մեր հասարակությունը ամեն տարի կարդում է մի քանի գրքեր։ Եթե պարոնի օրինակին հետևողներ շատ լինեին, մեր մանուկ գրականությունը

ավելի ևս կծաղկեր և կհարստանար և ոչ թե, որպես պ. Հայկունին է կարծում, գրողները անբարոյական կդառնային։

Ես պ. Հայկունու զանազան մանր-մունր նկատողությունների վրա ուշադրություն չդարձրի, որովհետև ինչ էլ որ գրեցի, այդ էլ բավական է ցույց տալու համար, թե որքա՞ն անբարեխղճությամբ, որքա՞ն վայրիվերո կերպով վերաբերվում է նա դեպի մի գործ, որ լուրջ, ծանր ու խորին քննադատության կարոտ է։ Բայց չեմ կարող առանց ուշադրության թողնել պարոնի փոքրոգությունը, եթե նա իր կրիտիկան գրել է լոկ թշնամական և վրեժխնդրական զգացմունքից դրդված,— պետք է գոնե այնքան մեծահոգի լիներ, որ սպասեր մի հարմար ժամանակի։ Երբ հարևանի տանը կրակ է ընկնում, շտապում են հանգցնելու և ոչ թե կրակի վրա յուղ են լցնում։ Պարոնի կրիտիկան տպվում էր հենց միևնույն օրերում, երբ «Կայծերի» հեղինակի դրությունը շատ նախանձելի չէր։ Լավ մարդը հակառակորդի այդպիսի դրության ժամանակ պատերազմ չէ հայտնում։

Երևում է պ. կրիտիկոսը սաստիկ վրդովված է եղել «Կայծերի» հերոսներից մեկի, Ասլանի, հետևյալ դատողություններով.

— «Ես չեմ զարմանում գործերի այսպես լինելու մասին, այլ ցավում եմ, որովհետև ամեն ժամանակ, երբ հայի համար որևիցե դավաճանություն է պատրաստվում, նրա մեջ խառն է լինում դարձյալ նույնիսկ հայի մատնիչ ձեռքը։ Դա մի պատմական եղեռնագործություն է, որ սկսյալ ամենահին դարերից, խիստ հաճախ կրկնվել է մեր ազգի կյանքում։ Դա հայի վատ հատկություններից մեկն է» (եր. 441)։

Պ. Հայկունին Ասլանի այդ խոսքերից այն եզրակացությունն է դուրս բերում, թե Րաֆֆին (դարձյալ Րաֆֆին) բոլոր հայերին դավաճան կամ մատնիչ է կոչում։ Րաֆֆին այդպիսի միտք չէ հայտնում, որովհետև, եթե բոլոր հայերը մատնիչ լինեին, այլևս մի արդար հայ չէր մնա, որին մատնեին։

Ես թողնում եմ մեր պատմությունը, որի մեջ դավաճանների բազմաթիվ օրինակներ ունենք։ Ես թողնում եմ և մեր ներկան, որի մեջ նույնպես նրանց թիվը պակաս չէ,— ես հարցնում եմ պ. Հայկունուց. միթե նա ինքը իր վարմունքով չէ՞ ապացուցանում, որ Ասլանի հայտնած միտքը բովանդակում է իր մեջ մի դառն ճշմարտություն։ Ի՞նչ են նշանակում այդ խոսքերը.

— «Սպասեցեք, սպասեցեք, պարոններ, ես գիտեմ, որ որսորդ Ավոն և ընկ. («Կայծերի» մեջ) ուզում են լինել և կարծես թե...

են նաև մի մի... Միլորդ, մի Ժ... օֆ, մի Կ...իչ, մի Դ...ի et tutti guanti»...

Դա մատնություն չէ՞։

Պ. Հայկունին ոչ միայն մեծ զրպարտություն է անում «Կայծերի» ու նրա հեղինակի վրա, այլև անխիղճ կերպով կասկած է հայտնում և ցենզուրայի վերաբերությամբ, որ թույլ է տվել հիշյալ վեպի տպագրությունը։

Վերոհիշյալ զրպարտություններով չբավականանալով, պ. Հայկունին, «Կայծերի» հեղինակին վնասելու համար, մի այլ մատնություն էլ է անում։ Նա ասում է, որ «Կայծերի» հեղինակը շատ է կարդացել Չերնիշևսկու ռոմանը և իր վեպերը գրում է նրա ազդեցության ներքո։— «Ինչպես, ավելացնում է նա, մի ժամանակ «Խենթում», ուր Չերնիշևսկու Վերա Պավլովնայի երազը իրա Վարդանի բերանն էր դնում»։

Պ. Հայկունուն պետք է լավ հայտնի լինի, որ Չերնիշևսկու հիշյալ գիրքը Ռուսաստանում արգելված է և հեղինակը անհայտության մեջ է ապրում։ Պ. Հայկունին այն ևս գիտե, որ Րաֆֆիի վեպերը տպվել են Թիֆլիսում, ցենզուրայի թույլտվությամբ։ Ուրեմն ցենզուրան ինչպե՞ս թույլ կտար նրանց հրատարակությունը, եթե նկատելու լիներ նրանց մեջ վնասակար գաղափարներ և մանավանդ Չերնիշևսկու գրքին հետևողություն։ Ի՞նչ նպատակ ունի պարոնը, որ մեր անմեղ գրականության վրա տարածում է այս տեսակ կասկածներ։

Երևում է պ. Հայկունին այս տեսակ կասկածներ տարածում է այն նպատակով միայն, որ Րաֆֆիի վեպերի վաճառումը արգելվի։ Նրա նենգավորությունը պարզ երևում է հետևյալ դեպքում։ Ամենքին հայտնի է, որ «Կայծերի» երկրորդ հատորը դեռ լույս տեսած չէ. նրա բովանդակությունը դեռ ոչ ոքին հայտնի չէ։ Բայց պ. Հայկունին երկրորդ հատորի մասին ևս իր վճիռը տալիս է, ասելով, թե երկրորդ հատորը կվերջանա նրանով, որ առաջին հատորի հերոսները կհարձակվեն Վանա բերդի վրա և այդ քաղաքը կգրավեն...։ Պարոնը որտեղի՞ց գիտե, որ երկրորդ հատորը այսպես է վերջանալու։ Միթե այդ զրպարտություններով չէ՞ մտածում «Կայծերի» մուտքը արգելել Թուրքիայի սահմաններից։

Եվ այդ բոլորից հետո պ. Հայկունին ինչո՞ւ է վրդովվում, երբ «Կայծերի» հերոսներից մեկը՝ Ասլանը, ասում է, որ հայերին դավաճանողները իրանք հայերն են լինում...

Պ. Հայկունին իր հոդվածը վերջացնում է զանազան պատավական խրատներով, որ ուղղում է դեպի «Կայծերի» հեղինակը, խորհուրդ տալով նրան, որ իր չհասկացած բաների մասին գրիչ չշարժե, որ «երեխայական դյուրագրգիռ ոգևորությամբ ինքնակոչ բժիշկ չձևանա բուժելու համար բարոյական այնպիսի վերքեր, որոնց արտաքին խոցերը նա միայն տեսնում է, այն էլ այնքան թույլ ակնոցավոր աչքերով»,— ավելացնում է, որ Րաֆֆիի առաջարկած դեղը այն atrophia nervorum-ն է, որով Չերնիշևսկու (դարձյալ Չերնիշևսկի) երևելի բժիշկները կամենում էին բժշկել Կատարինա Վասիլևնային, բայց Կատարինա Վասիլևնան այդ դեղով չբժշկվեցավ և այլն։

Եթե ամեն մի խրատ տվող իր խրատները նախ իր գլխի վրա փորձելու լիներ և չհասկացած ու չսովորած բաների մասին դատողություններ չաներ, կարծեմ, շատ հիմարություններ դուրս տալու վտանգից ազատ կմնար։

Պ. Հայկունին, այդ Խալիբյան դպրոցի առաջին, թե երկրորդ դասատանից արտաքսված համբակը, իր հոդվածի մեջ աշխատում է ձևանալ ոչ միայն իբրև քաջ կրիտիկոս, այլ որպես լեզվագետ ևս, և այդ մտքով գործ է ածում զանազան ռուսերեն, ֆրանսերեն և լատինական բառեր ու առածներ, առանց նրանց նշանակությունը հասկանալու։ Նա կարծում է, որ atrophia nervorum-ը դեղի կամ դարմանի անուն է և զարմանում է, որ Կատարինա Վասիլևնան այդ դեղով չբժշկվեցավ։ Բայց atrophia nervorum-ը դեղի անուն չէ, այլ հիվանդության անուն է և նշանակում է նյարդային անսնընդականություն: Մի՞թե հիվանդությունը կարելի է հիվանդությունով բժշկել։ Ես կարծում եմ, որ պ. Հայկունին նույնպես ազատ չէ հիշյալ հիվանդությունից, բայց նա իզուր է դարմանը խարդախության մեջ որոնում...

«Կայծերի» կրիտիկայից հետո, պ. Հայկունին գրեց Րաֆֆիի «Խաչագողի հիշատակարանի» առաջին հատորի քննադատությունը։ Այստեղ նա, ինչպես սովորաբար ասում են, երեսի փարդան բոլորովին պատռել է,— այստեղ նա երևում է իր կատարյալ տգեղությամբ։ Ես իր ժամանակին կտեսնվեմ պարոնի հետ[1]։

---

1 Վերջացնելով հոդվածս, հարկավոր եմ համարում հայտնել, որ ընդհանուր դատողությունների մեջ, մի քանի տեղերում հետևել եմ Բելինսկու հայացքներին։ Ծան. հեղ.:

# ՄԵՐ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ՄԵՐ ԲԱՐԵԳՈՐԾՆԵՐԸ

*Ազգերի կյանքում լինում են այնպիսի դարաշրջաններ, երբ համարյա ամբողջ ժողովրդի ուշադրությունը, ձգտումները լարված են լինում դեպի մի նպատակ։ Հարուստն իր արծաթը, աղքատն իր աշխատանքը, գիտնականն իր հմտությունները գործ են դնում նույն նպատակի իրագործվելուն։ Մեկի արածը մյուսի համար օրինակ է դառնում և գործը ընդհանրանում է։*

*Տեսնում ենք, այսինչ ազգի մեջ, այսինչ դարում ծաղկում է արհեստը, մյուսի մեջ՝ գիտությունը, երրորդի մեջ՝ վաճառականությունը, մի այլ ազգ այդ ժամանակ զբաղված է պատերազմական պատրաստություններով, ամրացնում է իր երկրի սահմանները, բերդեր է կառուցանում, զինվորների թիվն է ավելացնում. իսկ նրա հարևանը նոր դպրոցներ է հիմնում, աշակերտների թիվն է ավելացնում, բայց մի ուրիշը անշարժության մեջ է գտնվում և ոչինչ բանի վրա չէ մտածում։— Այդ բոլորը ամեն մի ժողովրդի մեջ, ժամանակի պայմանների և պահանջների համեմատ, ունեն իրանց բնական դրդիչ պատճառները։ Նույն պատճառներից զարթնում է մի ժողովրդի մեջ և բարեգործական ոգին։*

*Բարեգործությունը և բարիի գաղափարը զանազան ժամանակներում զանազան տեսակ է հասկացել մարդկությունը։ Ինչ որ մի քանի դար առաջ բարի էր, օգտավետ էր, այսօր կարող է չար և վնասակար համարվել; որի ընդհակառակն, ինչ որ մի քանի դար առաջ վնասակար էր համարվում, այսօր բարիքը նրա մեջն են գտնում։ Բարեգործությունը իր տեսակներով նույնպես ժամանակի ծնունդ է և կրում է յուր վրա իր դարի դրոշմը։ Այդ է պատճառը, որ միևնույն ժամանակում արտահայտված, նույնատեսակ բարեգործական հիմնարկություններն ընդհանրանում են ժողովրդի մեջ, և բոլորը ձգտում են նրանց նպաստելու։*

*Մեր ազգի կյանքի մեջ ևս եղել են այնպիսի դարաշրջաններ, երբ ժողովրդի բարեգործության առարկան եղել են միևնույն հիմնարկությունները։ Տեսնում ենք, միևնույն դարում, համարյա միևնույն ժամանակ Հայաստանում կառուցվել են բազմաթիվ վանքեր և եկեղեցիներ։ Միայն մի քաղաք ունեինք, որը ուներ հազար և մի եկեղեցի, վերջին մեկը, ըստ ավանդության, շինել էր տվել մի հովիվ։ Մեր թագավորները, իշխանները և մեծատունները ահագին ծախքեր էին անում վանքեր կառուցանելու, և ապագայում նրանց*

նորոգությունների և միաբանության պահպանության համար ոմանք սեփականացնում էին գյուղեր, ագարակներ և զանազան անշարժ կալվածքներ։ Այդ բոլորը համարվում էր բարեգործություն։ Տեսնում ենք, միևնույն դարում, համարյա միևնույն ժամանակ կառուցվել են զանազան մեծ ու փոքր գետերի վրա բազմաթիվ կամուրջներ։ Շինողները նույնպես ապահովացրել են կամուրջների գոյությունը, թողնելով նրանց ապագա նորոգությունների համար անշարժ կալվածքների եկամուտներ։ Այդ նույնպես բարեգործություն էր համարվում։ Նույնպիսի բարեգործական նպատակներով մեր իշխաններից շատերը հարթել են ճանապարհներ և լեռնային բարձրավանդակների վրա, բնակությունից մեկուսացած տեղերում, կարավանները ցրտից և բուքից պատսպարելու համար, շինել են իջևաններ, պանդոկներ։ Բարեգործություն էր համարվում և անապատ տեղերում աղբյուրներ անցկացնելը, որ ճանապարհորդները ջուր գտնեն խմելու։ Բարեգործություն էր համարվում և ջրանցքներ բաց անելը, որ դյուրացնեն երկրագործությունը։ Ամեն մի ջրանցքի, ամեն մի աղբյուրի հետ պահպանվել է բացանողի անունը և յուրաքանչյուր վայելող սրբազան պարտք է համարում «ողորմի» ասել հիմնողի հոգուն։

Երբ մի հասարակություն այնքան զարգացած չէ, որ համայնական ուժերով հոգա ընդհանուրի պետքերը, այդ դեպքում մասնավոր բարեգործների արածը ունի իր օգտավետ նշանակությունը։

Բայց որովհետև բարեգործությունն ևս ունի իր հրապուրիչ կողմերը, այդ պատճառով բարեգործներն ունենում են շատ հետևվողներ։ Օրինակ, մեկը մի վանք է շինում, ժողովուրդը շնորհակալ է լինում նրանից, օրհնում է և հարգում է նրան։ Այդ փառքը գրգռում է և մյուսների բարի նախանձը, և սկսում են բոլորը վանքեր շինել։

Այդ բոլորը շատ լավ է, բայց ունի և իր վնասակար կողմերը։ Երբ մի բարեգործ, մյուսին հետևելով, անում է այն, ինչ որ մյուսն է արել, այսպիսով, միևնույն հիմնարկությունները այնքան բազմանում են, որ հասարակության պահանջի հետ համեմատելով, ոչ միայն ավելորդ են դառնում, այլ նրանց պահպանությունը մի ծանր բեռն է լինում հասարակության վրա։ Մի ժամանակ վանքերն ու եկեղեցիներն այնքան բազմացան, որ եթե հասարակությունը իր բոլոր միջոցները գործ դներ, հազիվ թե կարող էր պահպանել նրանց գոյությունը։ Եվ բարեգործության այդ արդյունքները ավելացրին Անդրկովկասի ավերակների թիվը։

*Մյուս վնասակար կողմն այն է, որ երբ մի ժողովրդի բարեգործական նկրտումները ուղղված են լինում դեպի միևնույն հիմնարկությունները, այդ դեպքում հասարակության պետքերի մյուս ֆակտորները, որոնք նույնքան և գուցե ավելի անհրաժեշտ են, մնում են անգործադրելի և բոլորովին զանցառության են արվում։ Ի՞նչ կլիներ, եթե բոլորը եկեղեցիներ կառուցանեին և դպրոցի վրա ոչ ոք ուշադրություն չդարձներ։*

*Մեր ժամանակներում բարեգործները և բարեգործական հիմնարկությունները սկսեցին ուշադրություն դարձնել դպրոցների և ուսման վրա։ Հարուստները մեռնելու ժամանակ իրանց հարստությունից մի մասն են հանում դպրոցների համար։ Ոմանք առանձին դպրոցներ են կառուցանում։ Ոմանք իրանց ծախքով որդեգիրներ են պահում թե այստեղ և թե արտասահմանում։ Ամեն ոք ցանկանում է, որ ամենահետին գյուղացին անգամ գրել-կարդալ գիտենա. ամեն ոք ցանկանում է իր լուման ձգել ժողովրդի կրթության գանձանակի մեջ։ Այդ բոլորը շատ գեղեցիկ է, շատ օգտավետ է, բայց մի՞թե ժողովրդի առաջադիմությունը միայն դպրոցներից պետք է սպասել։ Ինչո՞վ է զանազանվում այժմյան բարեգործությունը այն ժամանակների բարեգործությունից, երբ բոլորը վանքեր կամ կամուրջներ են հիմնում։*

*Ինչպես վանքերի թիվը բազմացնելով մենք ստացանք բազմաթիվ աբեղաներ, որ չգիտենք, թե ինչպես կերակրենք նրանց, այնպես էլ միմիայն դպրոցների թիվը բազմացնելով մենք շուտով կստանանք մի ուսումնական* պրոլետարիատ, *որ չենք իմանա որտեղից հաց ճարենք նրանց համար։*

*Երբ ժողովրդի կրթության ֆակտորներից մեկը միայն զարգանում է, կրթության ջանքերը դառնում են միակողմանի։ Ժողովրդի կրթության բոլոր ֆակտորները պետք է ներդաշնակաբար և հավասար կերպով զարգանան և պետք է ներդաշնակաբար գործեն, որպես գործիչները մի որևիցե մեխանիզմի մեջ և որպես կենդանի մարմնի մեջ նրա բոլոր գործարանները։ Գործարաններից մեկի չափազանց զարգանալը կթուլացնի մյուսների գործողությունը, և առողջությունն ու կյանքը կդադարի։*

*Մասնավորենք մեր խոսքը։*

*Այժմ թե մեր բարեգործական հիմնարկությունները և թե մեր մասնավոր բարեգործները, բոլորը իրանց խելքն ու միտքը տվել են դպրոցական գործին, բոլորը նպաստում են դպրոցների բարեկարգությանը և ուսումնական անձանց թիվը ավելացնելուն։ Մեր*

կրթության մյուս անհրաժեշտությունները կամ բոլորովին անուշադիր են թողնված, կամ խիստ աննախանձելի դրության մեջ են։

Մեր հոդվածի նպատակից դուրս է մի առ մի մատնացույց անել այն բոլոր պայմանների վրա, որոնք անհրաժեշտ են մի ժողովրդի կրթության համար,— բայց որովհետև մեր խոսքը բարեգործական օժանդակությունների մասին է, ուստի ավելորդ չենք համարում մասնավորապես ցույց տալ, թե մեր բարեգործները ուրիշ ի՞նչ բանի վրա կարող էին ծախսել իրանց արծաթը։

Ահա հասարակության մեջ հայտնվել է մի երիտասարդ տաղանդ։ Նա նկարիչ է, նրա նկարները մենք ամեն օր տեսնում ենք փողոցի վրա դրած և հիանում ենք։ Երիտասարդը ցանկանում է գնալ արտասահման և ավելի կատարելագործել իր արհեստը։ Բայց նա աղքատ է, միջոցներ չունի։ Մեր բարեգործներից ոչ ոք նրան նպաստելու համար ուշադրություն չէ դարձնում, չնայելով, որ մի ժողովրդի մեջ կարելի է հարյուրավոր ֆիզիկոսներ, քիմիկոսներ և այլ մասնագետներ պատրաստել, բայց դարերի ընթացքում հազիվ թե ծնվում են մի կամ երկու լավ նկարիչներ։ Մեր խոսքը պ. Բաշինջաղյանի մասին է։ Այդ երիտասարդը գուցե մի օր Այվազովսկու արժանավոր հաջորդը կլինի, բայց ոչ ոք միջոց չէ տալիս նրան իր ձիրքերը զարգացնելու և իր արհեստը կատարելագործելու։

Մի ուրիշի մեջ երևում են մուզիկայի ձիրքեր, նա կամ ածում է և կամ նվագագիր (կոմպոզիտոր) է։ Մանուկ տաղանդը դեռ կարոտ է կատարելագործության։ Բայց ո՞վ է մտածում նրա վրա։ Այսպիսիները իրանց թարմ ուժերը նվիրում են մասնավոր դասատվության, որ քաղցած չմնան։ Բայց եթե շարունակեին սովորել, գուցե ժամանակով նշանավոր երաժիշտներ կդառնային։

Մի երրորդը գրող է. նա իր աշխատություններով արդեն ցույց է տվել, թե որքան կարող է պիտանի լինել իր հասարակությանը։ Բայց ո՞վ է քաջալերում նրան։ Նրա գրվածքները այնքան արդյունք չեն տալիս, որ կերակրեին հեղինակին, և նա ստիպված է իր թանկագին ժամանակը վատնել կողմնակի պարապմունքների վրա, որ ապրել կարողանա։ Բայց այսպիսիները շուտ-շուտ չեն ծնվում...

Դեռ «Մշակի» երեկվա համարի մեջ տպվեցավ հանգուցյալ Իփեկճյանի մահագույժը։ Նրա ցավալի մահը մի դառն նախատինք է հայ հասարակությանը, որ մենք հարգել գիտենք մեր գործիչների գերեզմանը միայն, իսկ նրանց կյանքը, որ այնքան թան-

կագին է, պահպանելու համար անփույթ ենք։ Մի՞թե նույն թըշվառության մեջ չմեռան Դուրյանը, Պեշկիթաշլյանը, և ուրիշ շատ այսպիսի զոհեր...

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐԻՆ

Պարոն խմբագիր.

Խնդրեմ այս մի քանի տողին տեղ տաք Ձեր պատվական շաբաթաթերթի մեջ։

«Մեղուի» 90-րդ համարում տպված էր մի հոդված, որի մեջ ի միջի այլոց ասված էր, թե ես ստացել եմ Առաքել վարդապետ Կոստանյանցից նորա երկու հատոր աշխատությունները և մինչև այսօր չեմ վերադարձրել։ Եվ նույն հոդվածի ներքև խմբագրի ծանոթության մեջ հիշված էր, որ ես հիշյալ աշխատությունները հանձնեմ «Մեղուի» խմբագրատանը, որպեսզի նա հասցնե ըստ պատկանելույն։

Բոլորովին ճշմարիտ է, ես Տող բերդում գտնված ժամանակ Առաքել վարդապետը հանձնեց ինձ երկու տետրակների մեջ ամփոփված մի հավաքածու, և ես այդ մասին յուր ժամանակին հայտնել եմ «Խամսայի մելիքությունների» 382, 383, 384, 387 երեսներում։ Հիշյալ հավաքածուն մինչև այսօր էլ պահված է ինձ մոտ, և եթե չեմ վերադարձրել, պատճառն այն է եղել, որ արժանապատիվ հայր սուրբը, երբեք չի դիմել ինձ ու չի պահանջել յուր տետրակները։ Նա թողել էր այդ տետրակները ինձ մոտ բոլորովին այլ նպատակով, և այդ նպատակը իրան հայր սուրբին լավ հայտնի է...

Բայց ինձ զարմացնում է այն, թե ի՞նչն է ստիպել «Մեղուի» խմբագրին ուրիշների հարաբերությունների մեջ մտնել և մի այդպիսի ինքնակոչ սուդերճի պրիստավի դեր հանձն առնել։ Եթե Առաքել վարդապետը ցանկանում է ինձ հանձնած ավանդը ետ ստանալ, իմ հասցեն նորան հայտնի է, նա թո՛ղ ինձ գրե, այն ժամանակ ես մեծ հոժարությամբ ետ կուղարկեմ, և ավելի ապահով ձեռքով, քան թե «Մեղուի» խմբագրատան միջոցով։

# ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐԻՆ

Պ. խմբագիր

Խնդրեմ այս նամակին տեղ տաք Ձեր պատվական շաբաթաթերթի համարներից մեկում, որով մենք նպատակ ունենք փարատել մի քանի տարակուսանքներ, որ խոսակցության նյութ են դարձել մեր հակառակորդների բերանում։

Մինչև «Խամսայի մելիքությունների» լույս տեսնելը, մեր նորագույն պատմության մի նշանավոր մասը բաց էր մնացած։ Ոչ ոքի մտքին անգամ չէր գալիս, որ ամենամոտ ժամանակներում Ղարաբաղում վերջացել էր մի հայկական իշխանություն, որ յուր անցյալը և յուր պատմությունն ուներ։ Թեև այս և այն հրատարակությունների մեջ տպված էին զանազան անկապ, հատուկտոր հոդվածներ, բայց դրանք այնքան աղքատ էին իրենց բովանդակության կողմից, որ մի պարզ գաղափար չէին կարող տալ վերջացած իշխանության մասին։ Զանազան խորշերում ընկած էին ծածկված, մոռացված ձեռագրեր, որոնք դեռ գրականության սեփականություն չէին դարձել։ Իսկ ժողովրդի բերանում մնացել էին կենդանի ավանդություններ, որոնք հավաքելու կարոտ էին։ Ահա այդ բոլորը անհայտությունից ի լույս ածել և, ի մի ամփոփելով, նրանցից մի ամբողջական պատմություն կազմել Ղարաբաղի մելիքությունների մասին,— շատ վաղուց ի վեր դարձել էր մեր աշխատության առարկան։ Մենք տարիներով միշտ հետամուտ ենք եղած, ամեն հնարք գործ ենք դրել, որ ամեն տեղ ինչ բանավոր կամ գրավոր հիշատակարաններ կան, ազատենք խավարից և կորստից և, նյութերի մի հարուստ պաշար մեր ձեռքի տակ ունենալուց հետո, սկսենք գրել մեր պատմությունը։ Այդ իսկ նպատակով, դեռ 1881 թվականի հուլիս ամսում, «Մշակի» մեջ մենք տպեցինք մի հրավեր, որով դիմում էինք ձեռնահաս անձինքներին, խնդրելով օգնել մեզ մեր ձեռնարկության մեջ և եթե գտնըվում էին նրանց մոտ որևէ գրավոր կամ բանավոր տեղեկություններ, ուղարկեին մեզ, որպեսզի մեր աշխատությունն ավելի լրացած և ճոխ լիներ փաստերի կողմից։ Չբավականանալով հիշյալ պատվերով, նույն տարվա հուլիս ամսում մենք սկսեցինք ճանապարհորդություններ անել այն երկրներում, ուր դարերով գոյություն էր ունեցել մելիքների իշխանությունը։ Անցանք Գանձակի, Ղարաբաղի, Զանգեզորի, Ղափանի գավառները, անցանք Սյունյաց աշխարհը։ Մեր ճանապարհորդությունը տևեց երեք ամիս և ապար-

դչյում չանցավ։ Մեզ հաջողվեց ձեռք բերել բավականաչափ, բոլորովին անհայտ, գրավոր նյութեր և, որ ամենագլխավորն է, ժողովրդի մոտ լինելով, մենք առիթ ունեցանք հավաքել նրա մեջ պահպանված ավանդությունները։ Վերադառնալով Թիֆլիս, սկըսեցինք «Մշակի» մեջ մաս առ մաս տպել մեր պատմությունը, որը հետո առանձին գրքով լույս տեսավ 1882 թվին։

Եվ այսպես մենք խավարից ի լույս ածեցինք մի ամբողջ պատմություն, մի կորած, մոռացված իշխանության պատմություն։ Մենք մեր նպատակի համար ծախսեցինք մեր ամենաչքավոր նյութական միջոցները, և ոչ ոքից շնորհակալություն չէինք սպասում, և շատ շնորհակալ կլինեինք, եթե մեր հակառակորդները փոքր-ինչ բարեխիղճ լինեին և չխանգարեին մեզ առաջ տանելու մեր սկսած գործը։

Եվ որպեսզի կասկածանքի տեղիք չմնար, թե «Խամսայի մելիքությունները» հեղինակի երևակայության ծնունդ է, և որպեսզի ցույց տայինք, թե այդ աշխատությունը հիմնված է պատմական ճիշտ փաստերի վրա, այդ նպատակով մենք մեր գրքի վերջաբանի մեջ (եր. 369—414) մի առ մի տպեցինք այն բոլոր աղբյուրների անունները, մինչև անգամ նրանց բովանդակությունը, որոնցից մենք օգուտ էինք քաղել մեր պատմությունը կազմելու ժամանակ։ Եվ այդ բավական չհամարելով մենք մինչև անգամ խոստացանք առանձին հատորով տպել մեր ձեռքի տակ ունեցած բոլոր դոկումենտների իսկականները։ Ահա մեր խոսքերը.

> «Եթե «Խամսայի մելիքությունների» առաջին հատորը ընդունելություն գտավ ընթերցող հասարակությունից և տպված գրքերը վաճառվեցան, այն ժամանակ ես կտպեմ մի երկրորդ հատոր, որպես հավելված առաջին հատորի։ Այս վերջին հատորի մեջ զետեղված կլինեն այն բոլոր նյութերը, որոնք ծառայել են ինձ իբրև աղբյուր առաջին հատորը կազմելու համար։ Բովանդակությունը կլինի հետևյալ կարգով.— զանզան անձինքների զանազան ժամանակներում Ղարաբաղի կաթողիկոսների, մելիքների մասին գրած և անտիպ մնացած պատմական աշխատություններ.— մեր պարբերական հրատարակությունների կամ այլ և այլ գրքերի մեջ ցըրված հոդվածները Ղարաբաղի մելիքների մասին.— ռուսաց աքտերի մեջ զանազան տեղեկություններ Ղարաբաղի մելիքների մասին.—ռուսաց պատմագիրների՝ Սոլովևի, Բուտկովի, Դուբրովինի, Յ. Արարատսկի (հայ) և այլոց գրքերի մեջ

> գտնված տեղեկությունները Ղարաբաղի մելիքների մասին, այլև պարսից պատմագրության մեջ հայոց մելիքների մասին գտնված տեղեկություններ.— ռուսաց կայսրների, պարսից շահերի, վրաց իշխանների և զանազան խաների Ղարաբաղի կաթողիկոսներին ու մելիքներին շնորհած անվանական հրովարտակների, ֆիրմանների օրինակները.—մելիքների տոհմերի վերաբերությամբ գտնված անձնագրությունների օրինակները, եկեղեցիների, վանքերի, շիրիմների քարերի վրա և գրքերի հիշատակարանների մեջ.— մելիքների տոհմային ճյուղագրական աղյուսակը։— Այս բոլորը տպված կլինեն իմ սեփական բացատրություններով և ծանոթություններով» (եր. 398, 399)։

Եթե մենք խոստացել ենք մի այսպիսի հավաքածու տպել, որպես հավելված «Խամսայի մելիքությունների», այստեղից շատ պարզ է, որ մեր խոստմունքը թե դեպի հասարակությունը և թե դեպի գրականությունը կատարելու համար, ոչ միայն հարկավոր է, այլև անհրաժեշտ է, որ մի անգամ մեզ հանձնված և մեր ձեռքի տակ գտնված նյութերը մեզ մոտ մնային, որպեսզի մենք միջոց ունենայինք կազմելու մեր հավաքածուն։

Եվ հենց այդ նպատակով մենք մինչև այսօր պահել ենք մեզ մոտ Առաքել վարդապետ Կոստանյանցի տետրակները, ինչպես շատ ուրիշների մեզ հանձնած նյութերը, որպեսզի նրանց մեջ եղած փոքրիշատե պատմական նշանակություն ունեցող տեղերը քաղվածորեն տպենք մեր հավաքածուի մեջ։ Մենք այդ միտքը, որպես վերևում ցույց տվինք, յուր ժամանակին հայտնել ենք մեր պատմության վերջաբանի մեջ, ուրեմն Առաքել վարդապետին պետք է հայտնի լիներ, թե ինչու համար ենք պահել նրա տետրակները։ Իսկ եթե արժանապատիվ հայր սուրբը կամենում է ետ ստանալ յուր տետրակները, մենք մեծ ուրախությամբ կվերադարձնենք **իրան՝ հայր սուրբին**, բայց ուրիշի ձեռքը չենք տա։ Միայն մեզ պետք է նախ բանակցություններ անել նրա հետ, եթե նա չի ցանկանում յուր տետրակների այն տեղերը, որ պատմական նշանակություն ունեն, տպված տեսնել, այն ժամանակ ետ կուղարկենք։ Իսկ նրանք, որ ուրիշի գործը իրանց գործ են շինել և անպատկառ հանդգնությամբ սպառնում են մեզ սուդերով, թող դիմեն, ուր դիմելու միշտ սովորություն ունեն... Մենք մեր հաշիվը առանց դատի հայր սուրբի հետ կվերջացնենք։

Այդ կլինի մեր վերջին պատասխանը։ Եթե մենք մեր մասին խոսված կամ տպված բոլոր վայրահաչություններին պատասխանելու լինեինք, դա մեզանից շատ ժամանակ կխլեր։

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ

«Արձագանքի» ներկա տարվա 29-րդ համարում՝ ոմն Հարություն-բեկ Սարգիս-բեկյան Հասան-Ջալալյան՝ դիմում է մեր հասցեին մի նկատողությամբ, թե մենք Հասան-Ջալալյանների տոհմագրության մեջ, որ տպվեցավ անցյալ տարի «Արձագանքի» 45 և 46 համարներում, սխալներ ենք արել. և այդ սխալները «յուր մոտ գտնված առավել ճավատարիմ տեղեկություններով» պարոնն իբր թե ուղղում է։

Առանց մի բառով անգամ ցույց տալու՝ թե որտե՞ղ կամ ինչո՞ւմն է մեր սխալը, պարոնը սկսում է Հասան-Ջալալ մեծից և, ամբողջ յոթ հարյուր տարիների տարածությունը լցնելով միայն մի քանի անհայտ անուններով, իսկույն թռչում և հասնում է յուր հորը՝ Սարգիս-բեկին, և վերջացնում է ճյուղագրությունը յուր անունով, երևի ցույց տալու համար, թե ինքն էլ մեծն Հասան-Ջալալ իշխանի որդիներիցն է։

Եթե պարոնը հայերեն կարդալ իմանում է և կարդացածը հասկանում է, մենք խորհուրդ կտանք նրան՝ կրկին բաց անել անցյալ տարվա «Արձագանքի» 45 և 46 համարները, և կարդալ մեր հրատարակած Հասան-Ջալալյանների տոհմագրության վերնագիրը։ Ահա՛ նա.

«Ազգաբանութիւն և ծննդաբանութիւն ազգին Հասան-Ջալալյանց՝ հանեալ և հավաքեալ ի պատմութեանց Հայոց և Աղուանից, նաև ի յարձանագրաց ի խաչքարաց և ի տապանաքարաց, եղելոց ի վանսն Գանձասարայ և շրջակայ նորին վանորայս և տեղիս հանդերձ թուաբանությամբ, զորս համառոտ շարահիւսեցի ես Բաղդասար Միտրապոլիտ Աղուանից հայոց, որդի Դանիէլ-բէկ իշխանի և թոռն Մէլիք-բէկ իշխանին Հասան-Ջալալյանց, նախկին տէրանցն երկրին Արցախոյ՝ գավառին Խաչենոյ, յաղագս տեղեկության ներկայ և ապագայ սերնդոց, տոհմայնոց և ազգականաց իմոց։ Գրեցաւ ի ՌՄՂԸ թուին հայոց և ի 1849 ամի տեառն»։

Կարծեմ, վերոհիշյալ տողերից պարոնը կհամոզվի, որ «Ար-

ձագանքի» մեջ տպված Հասան-Ջալալյանների տոհմագրությունը ոչ մեր հեղինակությունն է և ոչ մեր ստորագրությունն է կրում յուր ներքո։ Այլ այդ տոհմագրությունը կազմել է հանգուցյալ Բաղդասար Միտրոպոլիտը և տպված է նրա անունով։ Եթե սխալներ կան, նրա սխալներն են, և ոչ թե մերը։ Ուրեմն, պարոնի ուղղակի մեր հասցեին դիմելը՝ խորին անուշադրություն պետք է համարել։

Բայց ինչ որ հետաքրքիր է պարոնի ճյուղագրության մեջ, այդ ա՛յն է, որ Հասան-Ջալալ մեծը և Մուղալ խաչենու իշխանը (երկուսն էլ տղամարդ) ծնում են Աթաբեկ առաջինին (դարձյալ տղամարդ)։ Այդ, իրավ, շատ հետաքրքիր է, որովհետև, սկսյալ հայր Ադամից և մայր Եվայից տեսնված է, որ մի տղամարդ և մի կին միայն ընդունակ են ծնել երրորդ մարդուն։ Իսկ պարոնի ճյուղագրության հենց սկզբի տողերում՝ երկու տղամարդիկ, առանց կնոջ միջնորդության, ծնում են երրորդ տղամարդին։ Եթե պարոնը **«յուր մոտ ունեցած ավելի հավատարիմ տեղեկություններով»** կարողացավ ապացուցանել այդքանը միայն, անտարակույս, մեծ գյուտ արած կլինի ոչ միայն Հասան-Ջալալյանների տոհմագրության վերաբերությամբ, այլ ամբողջ մարդկային սեռի պատմության վերաբերությամբ։ Եվ մենք առնիվ խոսք ենք տալիս պարոն Հարություն-բեկ Սարգիս-բեկյան Հասան-Ջալալյանին, որ յուր նշանավոր գյուտը ապացուցանելուց հետո, նրա մյուս սխալները բոլորովին կներենք իրան։

## ՊԱՐՈՆ Գ. ԱՂԱՅԱՆՑԻ ՀԱՍՑԵԻՆ

Երբ լույս տեսավ «Կայծերի» առաջին հատորը, պ. Աղայանցը այն աստիճան հափշտակվեցավ, որ խորին ոգևորությամբ նվիրեց մեր աշխատությանը մի շատ երկար ներբողյան բանաստեղծություն։ Նրա մի օրինակը գտնվում է մեզ մոտ, իսկ մյուս օրինակը՝ «Աղբյուրի» խմբագրի մոտ։

Իսկ երբ լույս տեսավ «Կայծերի» երկրորդ հատորը, պ. Աղայանցը նրա գլխավոր հերոսներին կոչում է «իմաստակներ», «շառլատաններ», «խոզեր», «խաչագողներ» և այլն, և նրանց գործունեության մեջ օգտավետ կամ բարոյական ոչինչ չէ գտնում[1]։

Տե՛ս «Աղբյուր №№ 8—9, օգոստոս-սեպտեմբերի տետրակը։

*Նույն հերոսները կային և նույն բնավորությամբ գործում էին «Կայծերի» առաջին հատորի մեջ ևս։ Բայց այն ժամանակ այդ «շառլատանները» իրանց գործունեությամբ բորբոքում էին պ. Աղայանցի բանաստեղծական ոգևորությունը։ Հանկարծ նա սառեց, և նրա իդեալները «խողեր» դարձան։*

*Ինչո՞վ բացատրել պարոնի հակասությունները։*

*Երկուսից մեկը. կամ նրա առաջին փառաբանությունները պետք է համարել պարզ շողոքորթություն, որով կամեցել է հաճոյանալ «Կայծերի» հեղինակին՝ մեզ, կամ վերջին հայհոյանքները պետք է համարել չարանախանձ զոիլի ստոր վարմունք։*

*Բայց «Կայծերը» դարձյալ կմնան բարոյական կայծեր, և բնավ կարոտ չեն այնպիսի անձանց գովասանքներին, որոնք պատրաստ են իրանց համոզմունքները ամեն րոպե փոխել, նայելով, թե քամին ո՛ր կողմից է փչում...*

## ՊԱՐՈՆ Ղ. ԱՂԱՅԱՆՑԻ ՀԱՍՑԵԻՆ

*Շատերի սովորությունն է, երբ նրանց հետ որևէ հարցի մասին վիճում ես, աշխատում են վիճաբանության իսկական առարկան մի կողմ դնել, և մի այլ, հարցի հետ ոչինչ կապ չունեցող, խնդիր մեջ նետել, որպեսզի հարցը ավելի բարդվի, ավելի մթնանա։*

*«Արձագանքի» 39-րդ համարում տպված մեր փոքրիկ նկատողությունը, որ ուղղված էր պ. Աղայանցի հասցեին, շատ պարզ էր և հասկանալի։ Մենք պարոնին հիշեցրել էինք, որ սկզբում նա յուր համակրությունը արտահայտեց դեպի մեր աշխատությունը՝ «Կայծերը», նվիրելով նրան մի բանաստեղծություն, իսկ հետո նույն աշխատության մասին տպեց «Աղբյուրի» մեջ մի քննադատություն, որով թափել էր յուր սրտի ամբողջ մաղձը։*

*Շեշտելով պ. Աղայանցի հակասությունների վրա, մեր նպատակը երբեք այն չի եղել, որ ցույց տանք, թե մեր աշխատությունը որևէ ժամանակ վայելել է նրա համակրությունը։ Այլ կամեցանք ապացուցանել, որ նա համոզմունքից բոլորովին զուրկ մարդ է, և նրա համակրությունը նույնքան նշանակություն ունի, որքան նրա հակակրությունը։*

*Ուրեմն, հարցը շատ պարզ էր դրված։ Խնդիրը պարոնի նվիրած բանաստեղծության մասին էր։ Նա պետք է կարճ կերպով պատասխաներ. արդյոք նվիրե՞լ է, թե ո՛չ։*

*Բայց պ. Աղայանցը, պատասխանելով մեր նկատողությանը, ոչ բոլորովին ուրանում է, և ոչ էլ պարզապես խոստովանում է, թե ճշմարիտ է, արել է մի այդպիսի նվեր։ Նա միայն խուլ ակնարկներով ասում է. «Ձեր հիշած ոտանավորը տպագրված է «Աղբյուրի» 1884 թվականի երկրորդ տետրում «Սառնամանիք» վերնագրով, ընթերցողները կարող են ստուգել, թե կա՞ արդյոք նրանում* Ներբաղյանի *հետք դեպի ձեզ և ձեր աշխատությունը»։*

*Կարծես, վեճը «ներբողյան» բառի մասին լիներ։*

*Պ. Աղայանցը, որպես սովորաբար ասում են, կամեցել է բուն խնդիրը կտուրը նետել, և միայն «ներբողյան» բառի պոչից բռնելով, պատասխանում է, թե ինքը «ներբողյաններ» չէ գրել, և մեղադրում է մեզ, որ մենք բառերը շփոթում ենք միմյանց հետ*[1]*։ Բառերի գործածությունը պ. Աղայանցից սովորելու բնավ պետք չունենք։ Հիշյալ բառը մեր նկատողության մեջ գործ ենք ածել բոլորովին ծաղրական մտքով։*

*Ներբողներ այժմ ոչ ոք չէ գրում։*

*Հարցը նրանում չէ, արդյոք պ. Աղայանցը ներբողյա՞ն բանաստեղծություն է գրել, թե մի այլ տեսակ բանաստեղծություն։ Հարցը նրանումն է, թե ի՞նչ առիթով և ո՞ւմ համար է գրել։*

*Երբ մի գրող յուր բանաստեղծությունը նվիրում է որևէ գրքի, շատ ծիծաղելի կլիներ, եթե նա ներբողյան լիներ, այսինքն՝ գովասանական ճառի ձևով գրված։ Այլ հարկավոր է, որ նվերը ունենար մի ներքին հարաբերություն, կամ մի խորհրդավոր առնչություն նույն գրքի բովանդակության հետ, որին նվիրվում է։ Պ. Աղայանցի՝ «Կայծերին» նվիրած «Սառնամանիքը»*[2] *ուներ այդ հարաբերությունը։ Մի կողմ թողնելով նրա իսկական իմաստը, բավական է, եթե* «Սառնամանիք» *և* «Կայծեր» *բառերը դնենք մի-*

---

*1 Պ. Աղայանցը, յուր դատը թողնելով, մի ուրիշի փաստաբանությունն և հանձն է առել յուր պատասխանի մեջ, հիշեցնելով մեզ «մաղալա» բառը, որի նշանակությունը, իբր թե մենք չհասկանալով, շփոթել ենք մի այլ բառի հետ։ Շատ շնորհակալ կլինեինք պարոնից, եթե նա շարունակեր յուր պաշտպանությունը, որով ցույց տված կլիներ յուր պատմական և աշխարհագրական հըմտությունը։*

*2 Այդ բանաստեղծությունը առաջ ավելի խորհրդավոր վերնագիր ուներ, որը փոխել է պ. Աղայանցը։*

մյանց մոտ,— մեկը սառեցնող և ամեն աճելություն սպանող զորություն, իսկ մյուսը ջերմացնող և կենդանություն տվող զորություն։

Այդ բոլորից հետո պ. Աղայանցը, յուր ոչինչ չապացուցանող պատասխանի մեջ, միամտաբար դիմում է մեզ, ասելով. «Բայց դուք, որ արդեն հասկացել եք ձեր սխալը (??), կարող եք երկու տողով շտկել, իբրև ազնիվ մարդ»։

Մենք պատրաստ կլինեինք ոչ թե երկու տողով, այլ տասն տողով «շտկել» մեր սխալը, եթե պ. Աղայանցը ցույց տար, թե ինչո՞ւմն է մեր սխալը։ Բայց ով որ առանց փաստերի ուրիշին ազնվության է հրավիրում, պետք է նախ ինքը ազնիվ վարվի...

## ՊԱՐԿԱՊԶՈՒԿ ԱԾՈՂՆԵՐԸ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Ձեզանից ամեն մեկը, ընթերցող, անշուշտ տեսած կլինեք մի տեսակ ծափառական երգիչներ, որոնք պարկապզուկը թևի տակ դրած, ամեն բակ մտնում են, ամեն լուսամուտի առջև կանգնած են և իրանց նահապետական նվագարանը ածելով, մի քանի գրոշներ են ստանում։

Այդ ողորմելի երգիչների ռեպերտուարը շատ փոքր է և համարյա բաղկացած է երկու երգից՝ մեկը գովասանություն, մյուսը պարսավ: Նրանք մտնում են հանդիպած տունը, սկսում են առաջին երգը՝ գովասանությունը, փառաբանում են տանտիրոջ առաքինությունները, բարեգործությունները, առատաձեռնությունները, նորա բարձր հասակը, քաջությունը, գեղեցիկ դեմքը, մի խոսքով, տալիս են նրան ամեն տեսակ լավ հատկություններ, թեև գովասանության առարկան ամենաանպիտանի մեկը լիներ։

Իսկ երբ իրանց շողոքորթության ցանկացած վարձատրությունը չեն ստանում, սկսում են երկրորդ երգը՝ պարսավը, պախարակում են այն բոլոր լավ հատկությունները, ինչ որ իրանք գովաբանել էին։ Այժմ քաջը նրանց համար երկչոտ է դառնում, առաքինին՝ չարագործ, առատաձեռնը՝ ժլատ, գեղեցիկը՝ տգեղ և այլն։

Այս տեսակ պարկապզուկ ածողներ կան և մեր գրականության մեջ։ Դրանց համար արդարությունը, ճշմարտությունը ոչինչ նշանակություն չունին, դրանք միշտ պատրաստ են թեքվել դեպի այն կողմը, ուր շահերի հրապույրը ձգում է նրանց։

Սեփական խելք, սեփական համոզմունքներ չունին, դատում են ուրիշի խելքով, իրանց համոզմունքները փոխում են, որքան փոխվում են հանգամանքները։

Դրանք ցած, կեղտոտ և պատվի զգացմունքից բոլորովին զուրկ մարդիկ են...

Գրականության մեջ ոչինչ այնքան զզվելի չէ, որքան այդ վարձկան գրիչները. դրանք մի տեսակ ցինիկներ են, որ ում տանից հաց են ստանում, նրա օգտին էլ վայրահաչություններ են անում։

Այդ անամոթները չէին լինի և երբեք ձայն հանելու վստահություն չէին ունենա, եթե ընթերցող հասարակության մեջ զարգացած լիներ դատելու և լավը վատից, ճշմարիտը սուտից զանազանելու ընդունակությունը։

Բայց քանի որ ընթերցող հասարակությունը ամեն մի տպված խոսքին նշանակություն է տալիս, այդ դեպքում խարդախները, խաբեբաները, ստախոսները, ընթերցողներին մոլորության մեջ ձգողները ժամանակավոր հաջողություն են գտնում։

Զարգացած, լուսավոր հասարակությունների գրականության մեջ այդ տեսակները, անտարակույս, երևան գալու համարձակություն չէին ունենալ, իսկ մեր մեջ նրանք բազմությամբ վխտում են՝ քաջահույս լինելով, որ դեռ տիրում է խավարը և միթության խավարի մեջ նրանց մերկությունը, այլանդակությունը ոչ ոք չի նկատի։

Խոսքս մասնավորելով, ես կվերառնեմ մեր գրականության պարկապզուկ ածողներից մի քանիսին...

## ՎԻՊԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ ՌՈՒՍԱՀԱՅԵՐԻ ՄԵՋ

Ռուսահայ նոր գրականության մեջ վիպագրության առաջին օրինակը տվեց Աբովյանցը։ Նա գրեց մի գիրք միայն, և իր հետևից քարշ տվեց հետևողների մի ամբողջ շարք։ Նա գրեց ռամկական բարբառով, մյուսները նույնպես գրեցին ռամկական բարբա-

ռով։ Նա նկարագրեց գյուղական կյանքը, մյուսները նույնպես գյուղական կյանքի շրջանակի մեջ դրին իրանց նկարները։ Եվ այս բոլորը շատ բնական էր, որովհետև գրողները, առանց բացառության, ամենքը գյուղացիներ էին, և գեղջկական կյանքի պատկերները ավելի մոտ էին թե նրանց սրտին և թե երևակայությանը։

Պետք է մի առանձին բախտ կամ հանգամանքների պատահական դիպված համարել, որ մեզանում վիպագրության առաջին հիմնաքարը դրեց մի ճշմարիտ վարպետ, մի լավ պատրաստված մարդ, որ ինքը գյուղացի լինելով, սկսեց գյուղից։ Եվ այսպես մեզանում դեռ քառասունական թվականներում, բոլորովին անգիտակցաբար ստեղծվեցավ այն, որ կոչվում է ժողովրդական գրականություն, և որը այժմ միայն սկսվել է ուրիշների մոտ կատարվել գիտակցաբար։

Բայց վիպագրությունը չէր կարող միշտ գեղջկական կյանքի նեղ, սահմանափակ շրջանակի մեջ մնալ, մանավանդ, որ Աբովյանից հետո չհայտնվեցան զորեղ տաղանդներ, որ ավելի խոր թափանցեին գյուղական կյանքի բոլոր ծալքերում և նրա մեջ նոր տարրեր, նոր երևույթներ գտնելով, ավելի հետաքրքիր դարձնեին իրանց աշխատությունները։ Թողյալ այդ, Աբովյանի հետևողները, Աբովյանի անշնորհք աշակերտները եղան։ Դրանց համար հայկական վեպ նշանակում էր այն, ինչ որ միմիայն հային է վերաբերում, առանց մտածելու, որ հայը յուր կյանքում շփվում է օտար ազգերի հետ, որոնք նրա դրացիներն են, և որոնք նրա հետ միասին բաժանում են կյանքի միևնույն հանգամանքները։ Աբովյանը յուր գրքի մեջ տեղ տվեց օտարազգիներին, բայց նրա հետևողները ազգասիրաբար մերժեցին նրանց։

Հայկական վեպ դրանց համար նշանակում էր, որ անպատճառ պետք է ներկա լիներ գյուղի տերտերը, գյուղի տանուտերը, գյուղի խալիֆան և շատ շատ դրանց հետ ավելացնում էին մի հարստահարիչ չարչի կամ վաշխառու։ Պատկերը ամբողջացած էր համարվում, և միևնույն տիպարները, մինը մյուսից առնելով, զանազան ձևերով ծամծմվում էին։ Եվ ով որ մի այսպիսի գիրք էր գրում, արդեն գրականական մանդարինի փառքը ստացած էր համարում։ Նրանց պահանջները սահման չունեին։ Քնթները բարձրացրած զարմանում էին, թե ինչու ամեն կողմից մատով չեն ցույց տալիս նրանց։ Եվ եթե մարդիկ ուշադրություն չէին դարձնում, իրանք իրանց մատով ցույց տալու անհամեստությունն էլ ունեին։

Դրանց համար հայի անցյալ, հայի պատմություն չկար։ Դրանց համար չկար և հայի ապագա։ Դրանք ծանոթ էին այն գյուղի հետ միայն, որի մեջ ծնված էին, և որի սահմաններից դուրս մի այլ կյանք չէին ճանաչում։ Դրանց աշխարհահայեցողության թռիչքը իրանց գյուղի հորիզոնից ավելի հեռու չէր անցնում։ Եվ եթե պատահում էր, որ ոտքը դուրս էին դնում իրանց գյուղից, իսկույն մոլորվում էին և խրվում էին հիմարությունների մեջ։

Երկար ժամանակ վիպագրությունը նույն նեղ, միակողմանի շավղով ընթանալով, նույն շավղի վրա մնաց և քարացավ, առանց որևէ առաջադիմություն գործելու։ Նա չկարողացավ նոր լեզու մշակել, որովհետև գրվում էր գեղջկական բարբառով։ Նա չկարողացավ ընթերցանություն տարածել, որովհետև հասկանալի էր միայն այն շրջանին, որի բարբառով գրված էր։ Եվ այսպես իրանք հեղինակները իրանց աշխատությունները դատապարտեցին շուտափույթ մահվան և սկսեցին կատաղել, թե ինչու հաջողություն չգտան։ Նրանց աշխատությունները մնացին գրականության համար իբրև լեզվագիտական ցամաք նյութ, իսկ գեղարվեստի համար իբրև շատ հասարակ արդյունք։

Ահա այս էր Աբովյանի ստեղծած շկոլան: Նրա ներկայացուցիչները մինչև այսօր էլ գոյություն ունեն, շարունակում են ապրել, ոչ նորոգվում են և ոչ փոխվում, այլ եգիպտական մումիաների նման պահպանում են մի տեսակ մեռած կենդանություն։

Մենք անունների հետ առայժմ գործ չունենք։ Մենք արդեն ձեռնարկել ենք կազմել հայոց վիպագրության պատմությունը սկսյալ Աբովյանից մինչև մեր ժամանակները։ Նույն աշխատության մեջ յուրաքանչյուրին երևան կհանենք յուր վաստակներով։

Մինչդեռ վիպագրությունը անդրկովկասյան հայերի մեջ այդ դրության մեջ էր, սարերի մյուս կողմում, հեռավոր Մոսկվայում, հրատարակվում էր «Հյուսիսափայլը»։ Կյանքից տարակած, օտար հողի վրա, շատ հասկանալի է, որ չէր կարող ստեղծվել բուն հայկական վիպագրություն։ Եվ դրանով պետք է բացատրել «Հյուսիսափայլի» ամլությունը, որ նա իր ամբողջ տևողության ընթացքում, բացի մի քանի աննշան պատկերներից, չտվեց ոչ մի հայոց վեպ։ Նա բավականացավ թարգմանություններով միայն։

Բայց Նալբանդյանի շուրջը, հակառակ նրա ցանկության, ծնունդ առեց մի այլ տեսակի վիպագրություն։ Որովհետև հայոց ընդհա-

նուր կյանք չկար, որովհետև նրա ամսագիրը հրատարակվում էր հայ գաղթականների մի շատ նեղ շրջանում, այդ պատճառով և վիպագրությունը այնտեղ բոլորովին նեղ և մասնավոր կերպարանք ստացավ։ Փոխանակ ընդհանուր տիպարներ երևան հանելու, սկսեց նկարագրել զանազան անձանց անձնական կամ ընտանեկան կյանքը։

Իբրև մասնավոր անձանց պատկերներ, կարող էին այս տեսակ նկարները իրենց առանձին նշանակությունն ունենալ, եթե նկարիչները դրդված չլինեին միմիայն անձնական հաշիվներից։ Կիրքը ստիպում էր նրանց այլանդակել պատկերները։ Այդ ուղղությունը առաջ բերեց մի քանի մուրացկան գրողներ, որոնք անբարոյականացրին վիպագրությունը և նրան բոլորովին անպատկառ պարսավաբանության ձև տվին։ Նրանք պատրաստ էին փառաբանել և ամենագեղեցիկ գույներով նկարագրել, եթե նրանց փող կտային, և միևնույն անձին պատրաստ էին ցեխի մեջ թաթախել, եթե նրանց հաճույքները կմերժեին։

Եվ այսպես «Հյուսիսափայլը» հայոց վիպագրությանը չնպաստեց, և անկարող էր նպաստել, որովհետև նա հայոց կյանքից անջատված էր։ Նա նպաստեց միայն բանաստեղծության, և ավելի քնարերգական բանաստեղծության։

---

1872 թվին սկսվեց հրատարակվել «Մշակը»։ Մինչև այս լրագրի լույս տեսնելը, հայկական աշխարհի հորիզոնը այնքան նեղ էր, որ մի փոքր հեռավորության վրա ոչ ոք չգիտեր, թե ի՛նչ է կատարվում։ Կյանք կարծես թե չկար կամ եթե կար նրա վրա ոչ ոք ուշադրություն չէր դարձնում։ Հարցերը ինքնաբերաբար զարթնում էին և դարձյալ ինքնաբերաբար քնում էին։ Ամեն ինչ մրափում էր մի տեսակ խուլ, մեռելային թմրության մեջ։ Կար մի լրագիր, բայց մի քանի մարդիկ միայն գիտեին, թե նա կար։ Նրա գոյության մասին հիշում էին այն ժամանակ միայն, երբ մեկին շողոքորթում էր, իսկ մյուսին՝ պախարակում, կամ երբ մի փտած հիմնարկություն պաշտպանում էր, իսկ մի նոր միտք՝ հալածում։ Կենսական հարցերը մնում էին բոլորովին լքյալ դրության մեջ, իսկ անվերջ վիճաբանությունները պտտվում էին մի փոքրիկ խմբակի շահերի շուրջը, որի պարագլուխն էր ինքը խմբագիրը։

«Մշակը» յուր մոգական հարվածով միանգամայն շարժեց հասարակական թմրած մարմինը։ Մարդիկ հանկարծ աչքները բաց արին, սկսեցին մտածել իրանց գործերի վրա, սկսեցին մտածել իրանց պետքերի վրա։ Լրագիրը դարձավ հասարակության դաստիարակ և, միևնույն ժամանակ, նրա ընդհանուր կարիքների արտահայտություն։

«Մշակը» ընդարձակեց, լայնացրեց հայկական աշխարհի նեղ հորիզոնը։ Ոչ միայն ռուսաստանցի հայի, այլ ամենուրեք, ուր որ հայեր էին ապրում,— բոլորի գործերն ու կյանքը նրա քննադատության առարկան դարձավ։ Նա առաջինը եղավ, որ ծանոթացրեց ռուսահայերին իրանց տաճկաստանցի, պարսկաստանցի, հնդկաստանցի և երկրագնդի զանազան կողմերում ցրված եղբայրների հետ, որոնք առաջ մոռացված և մինչև անգամ արհամարհված էին։ Նա ուշադրություն դարձրեց և հայի դրացի օտարազգիների վրա, որոնց վիճակի ուսումնասիրությունը հայոց լրագիրը յուր պարտքը չէր համարում։

Յուր բոլորովին թարմ, երիտասարդ խմբագրի ղեկավարության ներքո «Մշակը» հեղեղեց հասարակությանը մի նոր կենդանացուցիչ հոսանքով, որ ամենափոքր ժամանակում արգասավոր արդյունք ունեցավ։ Վաղեմի, ավանդական ինքնախաբեության փոխարեն, սկսեց տիրապետել կրիտիկական հայացքը։ Ինքնաքննությունը և ինքնաճանաչությունը,— ահա այն դրդող և առաջ մղող տեսակետը, որով սովորեցրեց նա հայ հասարակությանը մտածել յուր պետքերի և յուր թերությունների վրա։

Այդ բոլորը իհարկե չէր կարող չգրգռել խավարասերների բարկությունը։ Հին փարիսեցին կատաղեց, հին դպիրը փրփրեց, և ամեն կողմից սկսեցին քարեր արձակել։ Բայց քաջ մարտիկը անվեհեր կերպով առաջ տարավ յուր սկսած գործը և լավ տարավ։

«Մշակի» ուղղությունը խիստ բարերար ազդեցություն ունեցավ և վիպագրության վրա։ Նրա օրերում վիպագրությունը ավելի լայն շրջանակի մեջ դրեց յուր պատկերները։ Նա դուրս եկավ Աբովյանի շկոլայի գեղջկական նեղ շրջանից, և սկսեց հետազոտել ժողովրդի կյանքի ամեն կողմերը։ Նա ավելի խոր թափանցեց զանազան դասակարգերի բոլոր ծալքերի և բոլոր խավերի մեջ, և երևան հանեց նոր տիպարներ, նոր երևույթներ։ Քննադատական ոգին միացավ արհեստի գեղեցկության հետ, և վիպագրությունը ավելի ռեալական հողի վրա դրվեցավ։

«Մշակի» օրով գավառական բարբառներն ընկան, և գրական լեզուն առաջին անգամ համարձակություն ստացավ վեպի լեզու լինելու։ Գեղարվեստի հետ սկսեց գեղեցկանալ նա, և նյութի բազմակողմանիության հետ՝ սկսվեց մշակվել և հարստանալ։

Այս լրագրի հենց սկսվելու օրից՝ նրա մշտական աշխատակից լինելու բախտն ենք ունեցել, և շարունակ 14 տարի նրա լծակի ծանրության մի մասը մեր ուսերի վրա ենք տարել։

Թող ներվի մեզ, որ մենք մեր մասին պիտի խոսենք։ Յուր մասին անդադար խոսում էր բազմարդյուն Նազարյանցը, որովհետև թշնամիները միշտ վատ էին խոսում։ Յուր մասին խոսել է և Գրիգոր Արծրունին, որովհետև խավարասերները, խաբեբաները միշտ հալածել են նրան, իսկ հայ հասարակությունը տակավին չէ ճանաչել յուր անկեղծ բարեկամին։ Մեր մասին էլ մենք պետք է խոսենք, մինչև կլռեն չար զոիլները, մինչև կպապանձվեն նեխած ճահիճների մեջ սնանվող գզվելի գեռունները, և կհայտնվեն անաչառ մարդիկ, որ ցույց կտան, թե ով ինչ է արել։ Քանի դեռ գործին հմուտ և արդարադատ անձինք հանձն չեն առնում քննադատել իրանց գործիչների արդյունքները, քանի դեռ ասպարեզը մնացել է վատերին և շառլատաններին, այդ դեպքում գործիչը ստիպված է, ոչ թե ինքնագովության համար, այլ գեթ ինքնապաշտպանության համար ցույց տալ, թե ինչ է արել ինքը։ Մեր հասարակությունը սաստիկ մոռացկոտ է, պետք է միշտ հիշեցնել նրան։

Մեր գրական ասպարեզում գործել ենք՝ թե իբրև հրապարակախոս և թե իբրև վիպագիր։ Առաջինի մասին չենք խոսում, բավական է միայն բացել «Հյուսիսափայլի», «Մշակի», «Փորձի համարները համոզվելու համար, թե ինչ ենք գրել։ Մենք մի փոքր հաշիվ կներկայացնենք միայն մեր վիպական վաստակների մասին։

Մեզանից առաջ դեռ ոչ մի վիպասան ուշադրություն չէր դարձրել մի մռայլ դասակարգի վրա, որ խավարի մեջ կեղեքում էր յուր զոհերին, և անհագ վամպիրի նման ծծում էր նրանց արյունը։ Դա էր հարստահարիչ վաճառականների և վաշխառուների հասարակությունը, որ ոսկու փայլով սնգուրել էր յուր դեմքը, և մեծ հարգանք էր վայելում։ Մենք պատառեցինք նրա ոսկեղեն դիմակը, մենք ցույց տվինք նրա այլանդակությունը, երբ գրեցինք «Ոսկի աքաղաղը», «Ուխտյալ միանձնուհին» և «Անմեղ վաճառքը»։

Մեզանից առաջ դեռ ոչ մի վիպասան ուշադրություն չէր դարձրել տաճկահայերի կյանքի վրա։ Մենք ցույց տվեցինք նրանց թշվառ դրությունը, մենք երևան հանեցինք նրանց կյանքի ամենատխուր պատկերները, երբ գրեցինք «Կայծերը», «Խենթը», «Ջալալեդդինը» և «Ղարիբ մշեցին»։

Մեզանից առաջ դեռ ոչ մի վիպասան ուշադրություն չէր դարձրել Պարսկաստանի հայերի դրության վրա։ Մենք նկարեցինք նրանց աննախանձելի կյանքի պատկերները, երբ գրեցինք «Գեղեցիկ Վարդիկը», «Սովը», «Կուսադրությունը», «Անբախտ Հռիփսիմեն», «Մի օրավար հողը» և այլն։

Մեզանից առաջ դեռ ոչ մի վիպասան ուշադրություն չէր դարձրել հասարակական կազմության մի բոլորովին նեխած, ապականված մասի վրա, որ գործում էր մթին խորշերում։ Մենք երևան հանեցինք այդ անծանոթ հասարակությունը, երբ գրեցինք «Խաչագողի հիշատակարանը»։

Մեզանից առաջ դեռ ոչ մի վիպասան ուշադրություն չէր դարձրել անցյալի վրա։ Մենք եղանք առաջինը, որ մտանք պատմության խորքերը և մոռացության վիհից ի լույս ածեցինք հայոց հին ժամանակների հերոսներին, երբ գրեցինք «Դավիթ Բեկը», «Պարույր Հայկազը», «Սամուելը» և թարգմանեցինք «Ղարաբաղի Աստղագետը»։

Մեզանից առաջ հայոց պատմությունը սկսվում էր Հայկից և վերջանում էր Լևոն Զ-ով։ Մենք եղանք առաջինը, որ անհայտության միջից գտանք մի կորած հայկական իշխանություն, երբ գրեցինք «Խամսայի մելիքությունները»։

Մեզանից առաջ դեռ ոչ մի վիպասան չէր մտածել օտար ազգերի կյանքը հայոց վեպի նյութ դարձնել։ Մենք տվեցինք առաջին օրինակը, երբ գրեցինք «Հարեմը», «Բիբի-Շարաբանին», «Խազ-փուշները» և այլն։

Մենք չենք խոսում մեր զանազան ուղեգրությունների և ժողովրդական նկարագրների մասին, ինչպես են «Հայ կինը», «Հայ երիտասարդությունը» և այլն, բայց հանգիստ խղճով մեզ թույլ ենք տալիս ասել, որ երկար տարիների տոկուն աշխատությամբ՝ կարողացել ենք դնել հայ հասարակության ընթերցանության սեղանի վրա հիսունի չափ վեպեր, վեպիկներ և զանազան պատկերներ։

Մենք չենք ունեցել մեր նախորդը, այլ մեր հետևից քարշ ենք տվել մեր նոր գրողներին։ Մենք առաջինն ենք եղել, որ վստահու-

թյուն ենք ունեցել հայոց դեռ անմշակ, աղքատ գրական լեզուն վեպի լեզու դարձնելու և մեր աշխատությունների մեջ պահպանել ենք մեզ հատուկ ինքնուրույնությունը։

Իբրև մի նոր ուղղության կարապետ, շատ բնական էր, որ մենք պետք է թշնամիներ և նախանձորդներ վաստակեինք։ Եվ վաստակեցինք...

Շատ գործել և սակավ խոսել,— միշտ այս է եղել մեր կյանքի կանոնը... Թող ներվի մեզ, որ այս անգամ մեղանչեցինք մեր սովորական համեստության դեմ։

# ԽԱՄՍԱՅԻ ՄԵԼԻՔՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(1600—1827)

## ՆՅՈՒԹԵՐ ՀԱՅՈՑ ՆՈՐ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Իր հանգուցյալ հայր
ՄԵԼԻՔ-ՄԻՐԶԱ-ԲԵԿԻ
անմոռանալի հիշատակին
խորին երախտագիտությամբ
նվիրում է որդին
նրա դասակակիցների պատմությունը

## I

*Հայաստանը իր անկման զանազան շրջաններում, կորցնելով իր գահը, ամեն անգամ թողել է իր ներկայացուցիչներին, որպես դեռ չմարած կայծեր պահպանված նախկին փառքի մոխիրի մեջ։ Հայկազանց թագավորող տունը վերջանալուց հետո, թողեց իր ետևից մի շարք իշխողներ, որ կոչվում էին* կուսակալներ: *Արշակունիք թողին* մարզպաններին, կյուրապաղատներին, պատրիկներին *և* ոստիկաններին: *Իսկ Բագրատունիները և Ռուբինյանները թողին զանազան, միմյանցից բաժանված, անկախ իշխանություններ։*

*Հիշյալ իշխանությունների ներկայացուցիչները ըստ մեծի մասին եղել են հայոց հին նախարարական տների ժառանգները։ Դրանք հայոց թագավորության մի շրջանի վերջանալուց հետո պահպանում էին նրա իշխանությունը մինչև մի նոր շրջանի ստեղծվելը և այսպիսով, ծառայում էին որպես օղակներ, որոնք անխզելի կերպով պահպանում էին հայկական անկախության շարունակությունը, մինչև կործանված գահի կրկին վերականգնելը։ Այդ իշխանությունները, թեև երբեմն օտարներից նշանակված և օտարների հարկատու են եղել, բայց երբեք չեն կորցրել իրանց ինքնավարության իրավունքները։*

*Վերջին դարերում նախարարական հին տների փոխարեն երեվան եկան* **մելիքները**, *որոնց իշխանությունը ավելի կանոնավոր ձև ստացան Շահ-Աբաս մեծի օրերից (1603)։ Պարսից այդ աշխարհաշեն թագավորը, որի քաղաքական հայացքները օտարազգիների վերաբերությամբ բոլորովին տարբեր էին իր նախորդներից, ավելի բարվոք էր համարում իր հպատակ այլասեռ ժողովուրդներին կառավարել հենց իրանց ներկայացուցիչների ձեռքով և դրանով ամրացնել ամբողջ պետության մեջ համերաշխության կապերը։ Նա առաջինը եղավ, որ հաստատեց հայոց իշխանների «մելիք»[1] տիտղոսը, որ կրում էին ավելի հին ժամանակներից։ Դրանով Շահ-Աբասը կամեցավ վարձատրել այն մեծ ծառայությունը[2], որ հայոց մելիքները կատարեցին նրա՝ օսմանցիների դեմ ունեցած հաղթությունների մեջ։*

*Մելիքների իշխանությունը տևեց շատ երկար, իսկ Անդրկովկասում, մինչև ռուսների տիրապետության օրերը։ Ես պիտի խոսեմ այդ իշխանություններից միայն մի խմբի վրա, որը ընդհանուր անունով կոչվում էր* **Խամսայի մելիքություններ**[3]:

*Խամսայի մելիքությունները բաղկանում էին հինգ փոքրիկ գավառներից, որոնք միմյանց սահմանակից լինելով, կազմում էին մի ամբողջ նահանգ, որը այժմ կոչվում է Ղարաբաղ, իսկ մեր պատմության մեջ հայտնի է Արցախ կամ Փոքր-Սյունիք անունով։ Դա ավելի հին ժամանակներում Աղվանից աշխարհի մի մասն էր ներկայացնում։*

*Հիշյալ հինգ գավառները հետևյալներն են.*

*1)* **Գյուլիստան** *կամ Թալիշ, որ սկսվում է Քյուրակ-Չայ գետից. այսինքն՝ Գանձակի սահմաններից և տարածվում է մինչև Թարթար գետը։*

*2)* **Ջրաբերդ** *կամ Չարաբերդ, որ սկսվում է Թարթար գետից և տարածվում է մինչև Խաչենի գետը։*

*3)* **Խաչեն**, *որը սկսվում է նույն անունով գետից և տարածվում է մինչև Բալլու-Չայ գետը։*

*4)* **Վարանդա**, *որը սկսվում է այդ գետից և տարածվում է մինչև Դիզափայտի լեռնային գոտին։*

---

1 *Մելիք կամ մալիք նշ. իշխող, տիրապետող, այլև արքա։*

2 *Սյունյաց աշխարհի հայոց մելիքները և էջմիածնի կաթողիկոսը մի քանի եպիսկոպոսների հետ, օսմանցիների լծից ազատվելու համար, իրանք դիմեցին Սպահան և հրավիրեցին Շահ Աբասին Հայաստանը տիրելու համար։*

3 *Խամսա արաբերեն նշ. հինգ, իսկ խամսայի մելիքություններ նշ. հինգ մելիքություններ։*

5) Տիզակ կամ Դուզախ, որը սկսվում է այդ լեռներից և տարածվում է մինչև Երասխ գետը։

Այդ երկրները, որ, ինչպես վերևում հիշեցի, մի ժամանակ Աղվանից թագավորության մի մասն էին կազմում, հետո ապաստան դարձան հայոց մելիքների։ Երկրի անմատչելի դիրքը նպաստում էր այստեղ հայոց իշխանության պահպանվելուն դառն ժամանակների փոթորիկներից։ Վայրենի բնությունը, դարևոր խուլ անտառներով պատած ահագին լեռները, անդնդախոր ձորերի մթությունը, ստեղծել էին այստեղ մի մթին ժողովուրդ, որ իր շրջապատող ժայռերի նման ամուր կուրծք ուներ և իր ծմակների վագրների նման աներկյուղ սիրտ ուներ։ Այդ ժողովուրդը ապրում էր իր սիրելի լեռների այրերի մեջ, քարանձավների խորքում, ապրում էր գետնի տակ, կերակրվում էր իր անտառների պտուղներով, իր անասունների բարիքներով և որպես մի դարանամուտ գազան, իր թաքստի միջից հարձակումներ էր գործում, երբ թշնամին հանդգնում էր վրդովել նրա խաղաղությունը։

Յուրաքանչյուր մելիք իր գավառի տերն էր. նա ուներ իր առանձին բերդը և իր ամրոցները։ Գյուլիստանի մելիքի ամրոցը գտնվում էր Գյուլիստան գյուղի մոտ[1] մի անմատչելի սարի գագաթի վրա. մի այլ ամրոց նույն գավառում գտնվում էր Թալիշ ավանի մոտ, Հոռեկա վանքի հանդեպ։ Ջրաբերդի մելիքի ամրոցը գտնվում էր Թարթար գետի ափի մոտ։ Երիցմանկանց վանքի հանդեպ։ Այդ բերդի անունով ամբողջ գավառը կոչվում է Ջրաբերդ, որովհետև բերդը կանգնած է համարյա թե ջրի մեջ, մի ահագին սեպաձև ժայռի գագաթի վրա, որի ստորոտը քերելով, անցնում են կատաղի Թարթարը և Թըրղին։ Այդ երկու գետերը, կտրելով միմյանց, բերդին թերակղզու ձև են տալիս։ Խաչենի մելիքների բերդերը գտնվում էին Խաչեն գետի մոտ. նրանցից մեկը կանգնած է Գանձասարի հռչակավոր վանքի հանդեպ, բարձր, անտառապատ լեռան գլխի վրա և կոչվում է Թարխանաբերդ (Խոխանաբերդ)։ Այս բերդում տասն և երրորդ դարու սկզբներում պաշտպանվում էր Հասան-Ջալալ իշխանը թաթարների արշավանքների դեմ։ Մի այլ բերդ, դարձյալ Խաչեն գավառում, գտնը-

1 Ղարաբաղի մելիքների բերդերը, ամրոցները, մի քանիսը ավերակ, մի քանիսը ամբողջ դրության մեջ, գոյություն ունեն մինչև այսօր։ Բայց պետք է նկատի առնել, որ այդ ամրոցներից շատերը Աղվանից թագավորների և իշխանների ժամանակներից մնացած են, մելիքները միայն նորոգեցին իրանց գործածության համար։

վում է Հիշյալից մի քանի ժամ ճանապարհով հեռու, սուրբ Հակոբի վանքի հանդեպ։ Այդ բերդը արժանի է իր անվանը. նա կոչվում է Կաչաղակաբերդ (Սաղսաղան-կալասի), որովհետև սրաթռիչ կաչաղակները միայն կարող են բարձրանալ մինչև նրա սրածայր գագաթը, որ կորչում է ամպերի մեջ։ Վարանդայի մելիքի ամրոցը գտնվում էր Ջանախչի (Ավետարանոց) ավանում, կուսանաց անապատի հանդեպ։ Տիզակի մելիքի ամրոցը գտնվում էր Տող ավանում, Գտչի վանքի հանդեպ, որը բարձրացել է մինչև երկինքը։

Այդ երկրում աշխարհից հրաժարված աբեղաների վանքերի հանդեպ կանգնած էին իշխանական ամրոցները, նրանց սարսափելի բերդերը, իսկ խաչի հետ միացրած էր սուրը։

Մելիքների իշխանությունը ժառանգական էր. հոր մահից հետո տիրում էր անդրանիկ որդին և կոչվում էր մելիք, իսկ մյուս եղբայրները կոչվում էին բեկ: Օրենքի փոխարեն կառավարում էր տիրողի կամքը և ժողովրդական սովորությունները, որոնք դեռ պահպանված էին իրանց նահապետական ձևերի մեջ։ Մելիքները անսահման իրավունք ունեին իրանց հպատակների վրա, նրանց դատելու, պատժելու և մինչև անգամ մահվան դատապարտելու։

Մելիքները թե քաղաքական շահերով և թե խնամության կապերով միացած էին միմյանց հետ, և այսպիսով, Խամսայի բոլոր հինգ իշխանությունները կազմում էին մի ամբողջ դաշնակցական միություն։ Պատսպարված իրանց անմատչելի լեռների և մթին անտառների մեջ, նրանք ոչ մի մահմեդականի թույլ չէին տալիս բնակություն հաստատելու իրանց երկրներում և ամբողջ Ղարաբաղի ազգաբնակությունը բաղկացած էր միայն հայերից, որոնց քանակությունը բազմաթիվ էր։

Այժմ դառնանք Խամսայի հինգ գավառների տիրապետող մելիքների ծագմանը։

## II

### 1. Գյուլիստանի *Մելիք-Բեգլարյանների ծագումը*[1]։

Մելիք-Բեգլարյանները բնիկ ուտեացիներ են, Նիժ գյուղից։ Թե ի՞նչ հանգամանքներ ստիպեցին նրանց թողնել իրանց հայրե-

1 Մեր ձեռքում գտնված մի գրչագիր պատմություն Մելիք-Բեգլարյանների ծագումը դուրս է բերում Աղվանից ամենահին թագավորների մեկից՝ Առանից, որ ապրում էր Քրիստոսից շատ առաջ։ Այդ ենթադրությունը խիստ ստուգության կարոտ է։

նիքը և գաղթելով Ղարաբաղի կողմերը, Գյուլիստան գավառում նոր բնակություն հաստատել,— այդ մասին լռում է պատմությունը.։ Միայն այսքանը հայտնի է, որ առաջին գաղթականը, որին թուրքերը կոչում էին «Ղարա-Յուզբաշի» (սև հարյուրապետ), իսկ հայերի մեջ հայտնի էր անունով սև Աբով, հասարակ մարդ չէր[1]. Նա իր հայրենիքում ժողովրդի կառավարիչ էր, հարուստ էր։

Տասնվեցերորդ դարու սկզբներում, հանկարծ այդ «սև հարյուրապետը» հայտնվում է Ղարաբաղի կողմերում, բոլորովին աղքատ, իր հետ ունենալով միայն յոթ ընտանիքներ և մի քանի անասուններ, որ կրում էին նրանց ճանապարհի ծանրությունները։ Երևում է, որ իրանց հայրենիքում մի աղետալի դեպք պետք է պատահած լիներ նրանց հետ, որով թե կողոպտված են եղել և թե տարագրված։

Գալով մի անծանոթ աշխարհ, նրանք ոչ բնակության տեղ ունեին և ոչ պատսպարան։ Թեև աշնան ցրտերը արդեն սկսվել էին, նրանք դեռ բնակվում էին իրանց չադրներում, Թարթար գետի ձախ ափերի մոտ, այժմյան Թալիշ գյուղից փոքր-ինչ հեռու։

Գուցե «սև հարյուրապետը» կցանկանար իր նոր եկած աշխարհում առժամանակ անհայտության մեջ ծածկված մնալ, բայց մի դեպք երևան հանեց նրան։ Մի օր նրա գրաստները դաշտում արածելու ժամանակ, վրա հասան մի խումբ ավազակներ և ավարի առին անասունները։ Այդ միջոցին դուրս եկավ «սև հարյուրապետը» և նրա հետ մի քանի երիտասարդներ, նետվեցին ավազակների ետևից։ Մի քանի ժամից հետո վերադարձան նրանք, բերելով իրանց հետ ոչ միայն կողոպտված անասուններին, այլև կողոպտող ավազակներին, որոնց բոլորին կալանավորեցին։

Մյուս օրը հայտնվեցան մի այլ խումբ ձիավորներ, որոնք դիմելով «սև հարյուրապետին», ասացին նրան, թե իրանք Բարդայի խանի մարդիկն են, թե իրանց հրամայված էր այդ ավազակներին բռնելու, որովհետև նրանք մեծ վնասներ են հասցրել երկրին և այժմ շատ ուրախ են, որ ավազակները կալանավորվեցան առանց իրանց աշխատության։ Այդ խոսքերով առնում են ավազակներին և տանում են Բարդայի խանի մոտ, առանց հայտ-

---

[1] Ղարաբաղի բոլոր մելիքների նախնիքը կրում էին «յուզբաշի» տիտղոսը, այդ տիտղոսը տրվում էր այն անձանց, որոնք սեփական երկրների տեր էին և իրավունք ունեին զորքեր պահելու։

նելու նրան, թե ով եղավ ավազակների բռնողը, որպեսզի խանի պարգևները իրանք ստանան։

Խանը հրամայում է ավազակներին գլխատել, իսկ իր մարդիկներին պարգևներով վարձատրել, նրանց քաջության համար։ Այդ միջոցին ավազակապետը ասում է խանին. «Պատժեցեք մեզ, որպես ձեր կամքն է, որովհետև մենք քո երկրները ավերակ դարձրինք։ Բայց մի անպատվեցեք մեզ, այդ ողորմելի մարդիկների չկատարած քաջությունները վարձատրելով, իբր թե դրանք են եղել մեզ հաղթողները...»։

Խանը ստուգելով իմանում է, որ իր մարդիկը խաբել են իրան և կանչել է տալիս «սև հարյուրապետին»։ Նա մի այլ վարձատրություն չէ պահանջում իր մատուցած ծառայության համար, միայն որպես գաղթական մարդ, խնդրում է, որ իրան բնակության տեղ տան։ Խանը որոշում է նրա համար որպես մշտական սեփականություն հին Թալիշ կամ Թարինջ գյուղը Գյուլիստանի գավառում, Հոռեկա վանքի մոտ։ Ահա այսքանը միայն հայտնի է «սև հարյուրապետի» կյանքից։ Նրա գերեզմանի քարի վրա, որ գտնվում է հիշյալ վանքի մոտ, փորագրված է մի տող միայն, որից երևում է, թե նա վախճանվեցավ հայոց ՌՋԱ (1081) թվականին, իսկ փրկչական 1632 թվականին։

Սև Աբովը ուներ մի քանի որդիներ, որոնցից երեցը՝ Մելիք-Բեգլարը, հաջորդում է հորը։

Մելիք-Բեգլար 1-ը իր նախնիքների քաջասրտության հետ ուներ և խելք։ Նա հիմքը դրեց Գյուլիստանի մելիքների իշխանությանը և տիրապետելով նոր երկրներ, ավելի ընդարձակեց իր իշխանությունը։ Նա խլեց տեղային նախկին տիրապետողից, որ կոչվում էր Աբրահամ Յուզբաշի[1] (Իբրահիմ գավուր), մի քանի գյուղեր, որպես էին՝ Վերին-շենը, Ներքին-շենը, Էրքեջը և այլն։ Եվ տիրապետելով Գյուլիստան բերդին, նորոգեց այդ անմատչելի ամրոցը և իր բնակությունը այնտեղ հաստատեց։ Նա թողեց երկու որդի. երեցը կոչվում էր իր պապի անունով Աբով, իսկ կրտսերը՝ Թամրազ (Թեյմուրազ)։

Հոր մահից հետո հաջորդեց երեց որդին Աբով 2-ը, որի մի ոտքը հրացանի գնդակից վնասված լինելով, հայտնի էր անունովս կաղ Աբով։

---

1 Աբրահամ Յուզբաշու ժառանգները այժմ բնակվում են Գյուլիստան գյուղում, որպես հասարակ շինականներ։

Կաղ Աբովը իր անպարտելի քաջագործություններով շատ նման էր իր պապին՝ սև Աբովին։ Հափշտակությունը, ավարառությունը և հանդուգն ասպատակությունները նրա ժամանակներում երկրների իշխողների համար ոչ միայն անբարոյականություն չէին համարվում, այլ ընդունվում էին որպես քաջազնական արժանավորություններ, որոնց անպատճառ պետք է ունենար երկրի իշխողը, իր շրջակա թշնամիներին երկյուղի մեջ պահելու համար։ Այդ հատկություններից զուրկ չէր կաղ Աբովը։ Նա ամեն ինչ ձեռք էր բերում հափշտակությունով. նա հափշտակեց մինչև անգամ իր կնոջը՝ գեղեցիկ Ղամարսուլթանին։

Մի անգամ, երբ իր խումբով գնում էր Գանձակի կողմերում ավարառություններ անելու, Գետաշեն գյուղից բարձր, Դուլուսլու գյուղի մոտ, լեռների վրա հանդիպում է Գանձակի Մամադ-խանի օբաներին (кочевка)։ Հարձակման միջոցին տեսնում է խանի աղջկան, որը իր «քառասուն» աղախինների հետ եկել էր, այնտեղ իր հոր հովիվների մոտ ամառը անցկացնելու։ Օրիորդի գեղեցկությունը այն աստիճան հափշտակում է Աբովին, որ նա մոռանում է Մամադ-խանի հոտերի հարուստ ավարը և առևանգում է միայն նրա դստերը։ Աբովը այդ ժամանակ ազապ երիտասարդ էր, բայց գեղեցիկ երիտասարդ, թեև ոչ այնքան հաղթանդամ, և դեմքով բավական թուխ, որպես լինին առհասարակ սև Աբովի ժառանգները։ Բերելով իր չքնաղագեղ ավարը Գյուլիստանի բերդի մոտ գտնված Ամենափրկիչի վանքը, այնտեղ քրիստոնյա է մկրտել տալիս և ամուսնանում է նրա հետ։

Այդ առևանգությունը առիթ տվեց Աբովի և Գանձակի խանի մեջ մի քանի արյունահեղ կռիվների, որոնք վերջացան խանի պարտությունով։ Խանը միշտ անհաշտ մնաց թե իր դստեր և թե իր ինքնակոչ փեսայի հետ։ Բայց ծերության հասակում նա հաշտվեցավ։ Եվ որովհետև ինքը մի այլ ժառանգ չուներ բացի միակ աղջկանից, այդ պատճառով իր բոլոր գյուղերը, հարստությունը կտակով նրան թողեց։ Կնոջ միջոցով Աբովը տեր եղավ ահագին ժառանգության։

Աբով 2-ը վախճանվեցավ 1728 թ. Նրա մահից հետո, մելիքների սովորության համեմատ, պիտի հաջորդեր որդին՝ Մելիք-Յուսուբը։ Բայց որովհետև Մելիք-Յուսուբը դեռ անփորձ պատանի էր, այդ պատճառով երկրի կառավարությունը հանձնվեցավ հանգուցյալի եղբայր Թամրազին և պատանի Յուսուբը մնաց նրա հոգաբարձության ներքո, մինչև չափահաս դառնալը։

Մելիք-Թամրազը իր բնակության տեղ ընտրեց Հոռեկա վանքի մոտ գտնված պալատը[1] և վարում էր իր իշխանությունը ոչ իբրև ժամանակավոր հոգաբարձու, այլ որպես լիակատար տեր։ Նա խիստ դաժան մարդ էր և անգութ։ Մտադրված լինելով խլել պատանի Յուսուֆին հոր ժառանգությունից, նա սկսեց հետզհետե ճնշել, հարստահարել նրան, մինչև անգամ մտածում էր իր եղբորորդու կյանքի դեմ որոգայթ լարել, որ իշխանությունը միանգամայն իրան մնա։ Պատանի Յուսուֆը ապրում էր Գյուլիստանի բերդում իր մոր հետ, աննախանձելի վիճակի մեջ։

Այդ միջոցներում Շահ-Սուլթան-Հուսեյնի հարկահաններից մեկը, որ կոչվում էր Միրզա-Թահիր, և որը Ատրպատականի վեզիր էր, Դերբենդից սկսյալ արքունի հարկերը հավաքելով, գալիս է, հասնում է Գանձակի և Ղարաբաղի կողմերը։ Մելիք-Թամրազը ընդունում է նրան իր տանը, և կամենալով շողոքորթել պարսից կառավարությանը, հրամայում է իր ժողովրդից ևս ավելորդությամբ հավաքել հարկերը, որը մինչև այնօր վճարելու սովորություն չունեին։ Այդ բավական չէ. նա կամենում է մի արժանավոր ընծա տալ իր հյուրին նրա սիրտը գրավելու համար։

«Իմ եղբոր հրացանը, ասում է նրան, գտնվում է իմ եղբորորդի Յուսուֆի ձեռքում. այդ զենքը մի հազվագյուտ բան է, և շահի գանձարանին վայել է»։

Պարսիկը խաբեությամբ կանչել է տալիս Յուսուֆին և խնդրում է, որ հոր հրացանը բերե տեսնելու համար։ Երբ նա բերում է, ձեռքիցը առնելով, ասում է նրան. «Այդ հրացանը շահի գանձարանին է վայել և ոչ թե քեզ». այլևս ետ չէ տալիս։

Մանկահասակ Յուսուֆը բարկության արտասուքը աչքերում վերադառնում է մոր մոտ, պատմում է նրան այդ անցքը։ Մայրը սաստիկ վշտանում է. նրան մնացել էր իր ամուսնի ժառանգությունից այդ նվիրական զենքը միայն, որ մի թանկագին հիշատակ էր նրա քաջագործությանը։ Որդու սրտմտությունը ավելի սաստկանում է, երբ լսում է մոր հանդիմանությունը. «Քաջ հոր անարժան որդի, լավ էր, որ քո սպանված դիակը ինձ մոտ բերեին, և ասեին, որ դու կռվեցար, քո հոր հիշատակը չկորցնելու համար»։

---

1 Այդ հոյակապ պալատը կիսավեր դրության մեջ մնում է մինչև այսօր. Նա մի խոսուն վկա է Գյուլիստանի վաղեմի փառքի և զորության։

— Ես կվերադարձնեմ հորս հրացանը...,— ասում է որդին, և խնդրում է մորից, որ իրան փող տա մի քանի զենքեր գնելու համար։ Մայրը տալիս է նրան իր գլխի ոսկիներից մի քանիսը։

Պարսիկ հարկահանը, հավաքելով տեղային հարկերը, բեռնում է ջորիների վրա և իր նոքարների հետ ճանապարհ է ընկնում։ Այդ ժամանակ մանկահասակ Յուսուբը, մի խումբ կազմելով իր բարեկամ երիտասարդներից, ծածուկ հետևում է հարկահանին։ Հարձակման պայմանական նշանը որոշվում է «ծըկըտ» բառը, իսկ դադարման նշանը՝ «մըկըտ» բառը։ Երբ հարկահանը մտնում է Թարթար գետի նեղ ձորի մեջ, «ծըկըտ» կոչելով, Յուսուբը տալիս է հարձակման նշանը։ Նա իր ձեռքով կտրում է պարսիկի գլուխը և խլում է նրանից իր հոր հրացանը[1]։

Նրա ջորիների բեռները, որ բովանդակում էին իրանց մեջ ամբողջ գավառներից հավաքած ոսկիները, ավար դարձան մանկահասակ Յուսուբի և նրա քաջ ընկերների ձեռքով։ Նրա նոքարների մի մասը կոտորեցին, իսկ փախչողները ազատվեցան։

Երիտասարդ Յուսուբը, իր հափշտակած գանձը առնելով, ամրացավ Գյուլիստանի բերդում։ Նրա վարմունքը մնաց անպատիժ, որովհետև, որպես հետո կտեսնենք, այդ միջոցներում Պարսկաստանում մեծ խռովություններ և փոփոխություններ պատահեցան։ Շահ-Սուլթան-Հուսեինը գահընկեց եղավ. ավղանները տիրեցին պարսից մայրաքաղաքին. և այդ ժամանակվա պատերազմական շփոթությունների մեջ, ո՞վ պիտի մտածեր, թե Ղարաբաղի կողմերում մի այդպիսի անցք էր պատահել։

Երիտասարդ Յուսուբը հարստության տեր դառնալով, սկսեց օրըստօրե զորացնել իր ուժերը։ Նա դաշնակցություն կապեց Ջրաբերդի մելիք Աթամի հետ, որի հարաբերությունները իր հորեղբոր՝ Մելիք-Թամրազի, հետ բարեկամական չէին։ Այժմ մտածում էր ոչ միայն խլել նրանից Գյուլիստանի իշխանությունը, որ նա բռնությամբ հափշտակել էր, այլ ցանկանում էր վրեժխնդիր լինել այն բոլոր անիրավությունների և զրկանքների համար, որ իր անգութ հոգաբարձուն, Մելիք-Թամրազը, կատարել էր, երբ ինքը դեռ անչափահաս էր։ Միանալով Մելիք-Աթամի հետ, երիտասարդ Յուսուբը հարձակվեցավ Մելիք-Թամրազի ամրոցի վրա։ Մի քանի

---

1 Այդ հրացանը հետո Մելիք-Բեգլարյանների ժառանգները վաճառեցին 1000 ռուբլով գեներալ Երմոլովին և նա ուղարկեց Ս. Պետերբուրգի Արուժեյնի պալատը։

օրվա սաստիկ կռիվներից հետո ամրոցը գրավվեցավ և Մելիք-Թամրազը գերի բռնվեցավ։ Յուսուֆը հրամայեց նրան կախ տալ մի չինարի ծառից[1] և ինքը այնուհետև սկսեց կառավարել Գյուլիստանի իշխանությունը։ Մելիք-Թամրազից մնաց մի որդի Սարուխան-բեկ անունով, որը 1723 թվականի հայոց գունդերի չորս քաջ զորապետներից մեկն էր։

Մելիք-Յուսուֆի մայրը, խելացի Ղամար-Սուլթանը, որ իր խորհուրդներով ոչ սակավ օգնեց որդու բարձրանալուն, վախճանվեցավ 1753 թ.։ Նրա մարմինը թաղվեցավ Մելիք-Բեգլարյանների տոհմային գերեզմանատանը Հոռեկա վանքի հանդեպ։

Մելիք-Բեգլարյանների մնացած պատմությունը ժամանակագրական կարգով կտեսնենք մեր հոդվածի շարունակության մեջ։

2. **Ջրաբերդի** *Մելիք-Իսրայելյանների ծագումը։*

Ջրաբերդի Մելիք-Իսրայելյանների ծագման մասին մենք շատ փոքր տեղեկություններ ունենք։ Մի ձեռագիր պատմությունից քաղում ենք այսքանը միայն. թե Մելիք-Իսրայելի որդի Մելիք-Եսայի Սյունյաց աշխարհի գլխավոր խանին (?) սպանելու համար, որը անբարոյական նպատակներ ուներ նրա քրոջ վերաբերությամբ, 1687 թ. գաղթում է Ղարաբաղ, բերելով իր հետ բազմաթիվ ընտանիքներ։ Խանի զորքերը հետամուտ են լինում նրան, բայց Մելիք-Եսային Մռավ լեռան ձորերի մեջ ջարդում է նրանց, և սպանում է խանի յոթ որդիներին, հափշտակելով նրանցից ահագին պատերազմական ավար, իսկ մնացածներին Հանդաբերդի և Ծար գավառի կողմերից փախցնում է։

Այնուհետև Մռավ սարի լեռնաբնակներին և վրանաբնակներին հետզհետե դեպի ինքը գրավելով, Մելիք-Եսային ավելի զորանում է, տիրում է Կուսանք կոչված ձորին և սկսյալ Ոմբոստյան լեռներից մինչև Դյութական գյուղը, որ այժմ կոչվում է Կաթուղկասար, տարածում է իր տիրապետությունը։

Մելիք-Եսայու մահից հետո նրան հաջորդում են մյուս եղբայրները, նախ՝ Ալլահ-ղուլի-սուլթանը, հետո՝ Մելիք-Աթամը։ Դրանք ավելի զորանալով, տիրում են Վերին Խաչենին, Հավքախաղացին, Հանդաբերդին, Հաթերքին, Ականային և Ջրաբերդին, այսպիսով, ավելի ևս ընդարձակում են իրանց իշխանությունը։

Ալլահ-ղուլի սուլթանը, որպես կտեսնենք, դավաճանությամբ

---

1 Այդ չինարի հինավուրց ծառը մինչև այսօր էլ ցույց են տալիս Գյուլիստանի և Ջրաբերդի սահմանի վրա, և կոչվում է «Ղանլու չինար», որ նշանակում է արյունոտ չինարի։

սպանվեցավ Շուշի բերդի Փանահ խանի ձեռքով, իսկ Մելիք-Աթամը երկար պատերազմեց այդ խանի հետ։

Մելիք-Աթամը իր բնակության համար նորոգեց քաղաքատեղ կամ մայրաքաղաք կոչված ավերակների մոտ մի հոյակապ պալատ, որի մեջ տասներկուերորդ դարու վերջերում բնակվում էր Խաչենի և Շամքորի իշխան Վահրամ շահը։ Իսկ որպես ամրոց ընտրեց իր համար անմատչելի Ջրաբերդը[1]։

3. Խաչենի Հասան-Ջալալյան մելիքների ծագումը։

Ղարաբաղի տիրապետող հինգ մելիքական տներից միայն Խաչենի իշխողները բնիկներ են եղել, իսկ մնացած չորսը, որպես տեսանք և որպես հետո պիտի տեսնենք, օտար երկրներից գաղթականներ էին։

Խաչենի Հասան-Ջալալյան մելիքների ծագումը շատ հին պետք է համարել, նրանք առաջ են եկել Հասան-Ջալալյան իշխաններից։ Դարերի ընթացքում այնքան բազմացել և ճյուղավորվել էին նրանք, որ Խաչենի փոքրիկ գավառը ամենամանր կտորներով բաժանված էր այդ տոհմի ներկայացուցիչների ձեռքում, որոնք բնականաբար շատ հաշտ չէին կարող լինել միմյանց հետ։ Այդ էր պատճառը նրանց վերջին ժամանակների թուլության, որ չէին կազմում մի զորեղ, միացյալ իշխանություն։ Բացի դրանից, միևնույն տոհմից ընտրվում էին Գանձասարի վանքի կաթողիկոսները, որոնց ճնշման ներքո այս երկրի մելիքները շատ չէին զորանում։

Տասն և վեցերորդ դարում Հասան-Ջալալյան իշխաններից նշանավոր էին երեք եղբայրներ՝ Երեմյա կաթողիկոսը, Վելիջան-բեկ 3-ը և Մուլքի-բեկը։

Երեմյա կաթողիկոսը վախճանվեցավ 1700 թվին։ Վելիջան-բեկը վախճանվեցավ 1686 թվին և նրա որդի Եսային Երեմյայի փոխարեն կաթողիկոս դարձավ։ (Դա միևնույն Եսայի կաթողիկոսն է, որ ինչպես հետո պիտի տեսնենք, Պետրոս Մեծի ժամանակ սկսեց ռուսաց կառավարության հետ բանակցություններ անել Ղարաբաղում հայոց անկախ իշխանություն հիմնելու համար, ռուսաց հովանավորության ներքո)։ Իսկ Մուլքի-բեկը վախճանվեցավ 1716 թվին և թողեց երկու որդի. երեցը կոչվում էր Մելիք-Գրիգոր, կրտսերը կոչվում էր Մելիք-Ալլահվերդի։

---

1 Մելիք-Աթամը ուներ մի քանի ամրոցներ, որոնցից մեկը այժմ ամբողջությամբ մնում է Կսապատ և Հին-Մոխրաթաղ գյուղերի մոտ, Իննմասանց անապատի հանդեպ։ Այդ գեղեցիկ շենքը կարող է բավական լույս ձգել մեր նախնիքների ճարտարապետական ճաշակի վերաբերությամբ։

Մելիք-Գրիգորը խելացի, ճարտարախոս մարդ էր. իր շեկության համար պարսիկներից ու օսմանցիներից մականուն ստացավ «սարի-մելիք», որ նշանակում է շեկ մելիք։ Ջանազան քաջագործություններից հետո, նա հեռացավ աշխարհից, և մտնելով Գանձասարի վանքը, վարդապետ ձեռնադրվեցավ։ Մելիք-Գրիգորից հետո նրա եղբայր Մելիք-Ալլահվերդին վարեց Խաչենի իշխանությունը, իսկ այդ վերջինի մահից հետո՝ իր որդի Մելիք-բեկը, որը ութ որդիներ թողեց։ Նրա որդիներից մեկն էր Գանձասարի Հովհաննես կաթողիկոսը, որ սպանվեցավ Շուշի բերդի Իբրահիմխանից։

4) Վարանդայի Մելիք-Շահնազարյանների ծագումը։

Առաքել պատմագրի մեջ կարդում ենք հետևյալը. «Թիֆլիսից դուրս գալով շահը (Աբաս մեծը) գնաց Գեղամա գավառը և այնտեղ դրեց իր արքունի բանակը, իսկ ինքը Շահ-Աբասը իջևանեց Մելիք-Շահնազարի տանը, որ գտնվում էր Մազրա գյուղում և ինքը (մելիքը) բնիկ նույն գյուղացի էր։ Եվ այս Մելիք-Շահնազարը հայոց ազգից էր, հավատով քրիստոնյա. նա փառավոր և հզոր իշխան էր, որը այնպիսի հյուրընկալություն արեց շահին, որպես վայել էր մի թագավորին։ Եվ նա ինքը թագավորի մտերիմը ու բարեկամն էր և հարգելի էր նրա առջև։ Դրա համար թագավորը պատվական ու ազնիվ զգեստներով շքեղացրեց նրան և խալաթներ տվեց. այլև պարգևեց նրան այն գավառի մելիքության իշխանությունը, և ուրիշ դաստակերտներ և գյուղեր ընծայեց նրան և նրա եղբայրներին։ Եվ հաստատուն նոմոս (հրովարտակ) գրեց և կնքեց թագավորական կնիքով և տվեց նրանց, որ այդ ժառանգությունները անփոփոխ լինեն, թե նրանց համար և թե նրանց զավակների համար, սերունդից սերունդ մինչև հավիտյան»։

1682 թվին կովկասյան լեռնաբնակների փոթորկալից արշավանքները Գեղարքունյաց երկիրը ավերակ դարձրին։ Այդ ժամանակ վերոհիշյալ Մելիք-Շահնազարի որդի Մելիք-Հուսեինը և նրա եղբոր (Մելիք-Միրզա-բեկի) որդի Մելիք-Բաղին թողին Գեղամա լճի եզերքը և գաղթեցին, իրանց ժողովրդի մի մասի հետ, դեպի Ղարաբաղի կողմերը։ Վարանդա գավառի Ավետարանոց (Ջանախչի) գյուղը ընտրեցին նրանք իրանց բնակության համար։ Այստեղ կառուցին եկեղեցի, կուսանաց անապատ և Ավետարանոցը շրջապատեցին ամուր պարիսպներով և նրան բերդի ձև տվին։ Նույն բերդում հիմնեցին իրանց համար ամրոցներ, որոնց հոյակապ շենքերը կիսավեր դրության մեջ մինչև այսօր էլ մնում են։

1721 թվին, երբ կովկասյան լեռնաբնակները դարձյալ հեղեղի նման Թափվեցան, ապատակեցին Շաքին, Շիրվանը, Գանձակը և անցան մինչև Երասխ գետը,— այդ ժամանակ, երբ մոտեցան Վարանդային, նրանց առջև դուրս եկավ Մելիք-Բաղին և ազատեց երկիրը ավերմունքից։ Այդ և դրա նման մի քանի անցքեր այն պատճառն գրավեցին տեղային ժողովրդի համակրությունը դեպի Մելիք- Շահնազարյանները, որ ամբողջ Վարանդան ընդունեց իր վրա այդ տոհմի իշխանությունը։

5) Տիզակի Մելիք-ավանյանների ծագումը։

Մելիք-Ավանյանները նույնպես գաղթականներ են, Լոռի գավառի Արտոս անունով գյուղից։ Տասնվեցերորդ դարում այդ գավառում զորացան Լորիս-Մելիքյանները. այդ տոհմից էր Մելիք-Ավանը (Եգանը), որը Ղուկաս վարդապետի որդին էր։

Մելիք-Ավանը անընդհատ կռիվներ ուներ իր տոհմակից Մելիք-Էլիզբարի հետ, որը բռնությամբ խլել էր Մելիք-Ավանից նրա հայրենի ժառանգությունը՝ Փամբակի ձորը և Լոռիի մի մասը։ Չկարողանալով հաղթել իր թշնամուն և հալածված նրանից, Մելիք-Ավանը իր հոր՝ Ղուկաս վարդապետի հետ և իր ժողովրդով գաղթեց Ղարաբաղի Տիզակ գավառի Տող գյուղը։ Այստեղ նրա հայրը նորոգեց Գտիչ վանքը, միաբանություն հաստատեց և բնակվեցավ նույն վանքում։ Իսկ որդին, Մելիք-Ավանը, Տող գյուղում հիմնեց հոյակապ եկեղեցի և ամրացրեց այդ գյուղը շրջապարիսպներով։ Նրա փառավոր պալատը նույն գյուղում մինչև այսօր էլ մնում է, հայկական արձանագրություններով, որի մեջ բնակվում են նրա ժառանգներից այն մնացորդները միայն, որոնք Շուշի բերդի Իբրահիմ-խանի հալածանքների ժամանակ ընդունեցին մահմեդականություն։ Այդ մահմեդականները ազնվականներ են և պարծանքով են հիշում իրանց նախահոր՝ Մելիք-Ավանի անունը, նրա գերեզմանը օրհնել են տալիս ամեն մի տոն օրերում, և ամեն տարի զատկի ավագ կիրակի պատարագը տեղային եկեղեցում նրանց հաշվով է կատարվում[1]։

1 1881 թվում, Սյունյաց աշխարհում ճանապարհորդելու ժամանակ, մի գիշեր մնացի Տող գյուղում. այստեղ ինձ պատմեցին, թե հիշյալ մահմեդականների գլխավոր ներկայացուցիչը իր երկու որդիներին հանձնեց Սարգիս եպիսկոպոս Ջալալյանցին, որ նա հայկական ոգով կրթել տար, հետո քրիստոնեություն ընդունեին և շարունակեին Մելիք-Ավանյանների ժառանգությունը իբրև հայեր։ Բայց բարեհոգի եպիսկոպոսը, փոխանակ նրանց դպրոց տալու, սկսեց ծառայեցնել իր մոտ որպես սպասավորներ։ Նրա խոհանոցում մանուկները լրբացան և գողացան եպիսկոպոսի թեյի գդալները։ Եպիսկոպոսը այնուհետև ստիպվեցավ նրանց վռնդել իր տնից։ Ջալալյանը այդ ժամանակ Շուշիի առաջնորդն էր։

Մենք համառոտ կերպով ցույց տվեցինք Ղարաբաղի հինգ գավառների — Գյուլիստան, Ջրաբերդ, Խաչեն, Վարանդա և Տիզակ — տիրապետող մելիքների ծագումը։ Տեսանք, որ այդ մելիքական տներից միայն Խաչենի իշխողները բնիկներ են եղել, իսկ մյուս բոլորը օտար երկրներից գաղթականներ, որոնք համարյա միօրինակ պատմական հանգամանքներից ստիպված, ապաստան են գտել Ղարաբաղի անտառների և անմատչելի լեռների մեջ և հիմնել են իրանց հզոր իշխանությունը։ Այժմ դառնանք դեպի այդ մելիքների ապագա գործունեությունը, որոնք նշանավոր տեղ են բռնում մեր նոր պատմության մեջ։

## III

Տասնութերորդ դարու սկզբներում Պարսկաստանում պատահեցան նշանավոր փոփոխություններ, որոնք Ղարաբաղի մելիքների դրության վրա ոչ սակավ ազդեցություն ունեցան։ Շահ-Սուլթան-Հուսեինի թույլ կառավարությունը ամեն կողմից հրավիրեց Պարսկաստանի վրա նրա թշնամիներին։ Ավղանները ապստամբվեցան. Ղանդահարի Միր-Մահմուդ-խանը, արշավանք գործելով, տիրեց պարսից մայրաքաղաքը՝ Սպահանը, և շահին գահընկեց անելով. ինքը թագավոր դարձավ (1722)։ Կովկասյան լեռնաբնակները, Դաղստանի Ալի-սուլթանի և Սուրխեյ-խանի առաջնորդությամբ, հեղեղի նման թափվեցան, ավերակ դարձրին Վրաստանը և պարսկական այլ նահանգները մինչև Սևանա լիճը, մինչև Երասխ գետը (1721—22—23)։ Միևնույն ժամանակներում, Պետրոս Մեծի կայսրության օրերում (1722—1723) ռուսները տիրեցին Կասպից ծովեզրյա պարսկական գավառները, որպես էին Դերբենդը, Բաքուն, Գիլանը, Մազանդարանը և Աստրապատը։ Հենց այդ միջոցներում (1722—1723) օսմանցիք, տեսնելով ռուսների իրենց սահմաններին մոտենալը և մանավանդ տեղյակ լինելով Պետրոս Մեծի աշխարհակալական ձգտումներին դեպի արևելք, գրավեցին իրանց սահմանակից բոլոր պարսկական նահանգները։ Երկու տարվա մեջ, մինը մյուսից հետո տիրեցին նրանք ամբողջ Ատրպատականը, Նախիջևանը, Երևանը, Թիֆլիսը, Գանձակը և այլ պարսկական երկրներ, մինչև հասան Ղարաբաղի մելիքների իշխանություններին։

Տեսնելով, որ քայքայված Պարսկաստանը բաժան-բաժան է դառնում, Ղարաբաղի մելիքները ևս մտածեցին մի մեծ պատառ

իրանց ձեռքը ձգելու։ Մինչև այնօր մելիքները համարվում էին պարսից ավատական իշխաններ, իսկ այժմ կամենում էին բոլորովին թոթափել պարսկական լուծը և հայոց անկախ պետություն հիմնել։ Իրանց դիտավորությունների մասին խորհելու և կարգադրություններ անելու համար, նրանք գաղտնի ժողովներ էին կազմում Գանձասարի վանքում, նույն ժամանակվա Եսայի կաթողիկոսի նախագահությամբ։

Այդ ժամանակներում Ղարաբաղի հինգ մելիքները հետևյալ անձինք էին.

1) Գյուլիստանում տիրում էր Մելիք-Բեգլարյան Մելիք-Աբով 2-ը։

2) Ջրաբերդում տիրում էր Մելիք-Իսրայելյան Մելիք-Եսային։

3) Խաչենում տիրում էր Հասան-Ջալալյան Մելիք-Գրիգորը, հետո նրա եղբայր Մելիք-Ալլահվերդին։

4) Վարանդայում տիրում էր Մելիք-Շահնազարյան Մելիք-Հուսեինը։

5) Տիզակում տիրում էր Ղուկաս վարդապետի որդի Մելիք-Եգանը (Ավանը)։

## IV

Ղարաբաղի մելիքների ձգտումները, իրանց հայրենիքում մի անկախ հայկական իշխանություն հիմնելու վերաբերությամբ, նոր մտածություններ չէին։ Դեռ 1701 թվին նրանք ուղարկեցին Պետրոս Մեծի մոտ որպես պատգամավոր Իսրայել Օրի անունով հընդկաստանցի հային Մինաս վարդապետի և մի քանի այլ անձինքների հետ։ Նրանք ներկայացան կայսրին Սմոլենսկի մեջ։ Այդ դեսպանության նպատակն այն էր, որ նրանք համոզեին կայսրին ընդունելու հայերին իր պաշտպանության ներքո, և հայերը այն ժամանակ իրանց սեփական ուժերով կպատերազմեին պարսիկների հետ և կթոթափեին իրանցից մահմեդական լուծը և կընդունեին իրանց վրա ռուսաց քրիստոնյա պետության հովանավորությունը։ Իրանց հայրենիքի փրկության գործը առաջ տանելու համար, հայտնեց Օրին, հայերը արդեն պատրաստած ունեն Շամախու կողմերում 17 հազար զինվոր, Ղարաբաղում 60 հազար, իսկ Հայաստանի պարսկական 17 նահանգներից կարելի է հավաքել ավելի քան 100 հազար հոգի։ Եվ եթե կայսրի զորքերը այդ կողմերը կգան, հայերը հանձն են առնում իրանց ծախքով պահպանել նրանց։

Որպես արևելքի հետ լավ ծանոթ մարդ, Օրին ցույց տվեց կայսրին Հայաստանի քարտեզը, ծանոթացրեց նրան հայոց հին պատմության և թագավորների[1] հետ և բացատրեց այն օգուտները, որ կայսրը կարող էր ունենալ Հայաստանը իր հովանավորության ներքո առնելով։ Նա հայտնեց, որ ինքը դիմել է եվրոպական և այլ պետություններին և արդեն ստացել է Ավստրիայի կայսրի ու Բավարիայի կուրֆիրստի հաճությունը, իրանց ուժերը միացնելու ռուսների հետ, Հայաստանի վերականգնման գործը հաջողեցնելու համար։

Մեծ կայսրի արծվի աչքերը իսկույն նախատեսեցին այն մեծ շահերը, որ նա կարող էր քաղել, ձեռք առնելով մի ճարպիկ առևտրական և միևնույն ժամանակ պատերազմող ժողովուրդ, որի հետ ծանոթ էր նա դեռ իր երիտասարդական հասակում[2]։ Նրա աշխարհակալական ցանկությունների համար դեպի արևելք, նրա հեռատես նպատակների համար կապելու Հնդկաստանը Ռուսաստանի հետ առևտրական հարաբերություններով, հարկավոր էին հմուտ միջնորդներ և լավ առաջնորդներ,— այդ գործիչներին նա գտնում էր հայերի մեջ։ Այդ էր պատճառը, որ նա խիստ սիրով ընդունեց հայոց պատգամավորների առաջարկությունը և խոստացավ չխնայել իր օգնությունը հայերի իրանց հայրենիքի վերաբերությամբ ունեցած դիտավորությունները իրագործելու համար։

Բայց արևելքում մի վճռական գործ սկսելու համար Պետրոս Մեծը ժամանակ չուներ, որովհետև նա զբաղված էր շվեդական պատերազմով, որը այդ միջոցներում ավելի սաստիկ կերպով բորբոքված էր։ Բացի դրանից, նա հարկավոր համարեց ավելի լավ ծանոթանալ Պարսկաստանի նույն ժամանակվա դրության և քաղաքական հանգամանքների հետ։ Այդ մտքով Պետրոս Մեծը կազմեց մի դեսպանություն, որի լիազորը կարգվեցավ նույն իսկ Իսրայել Օրին[3] և ճանապարհ դրեց դեպի Պարսկաստան (1707) Շահ-Սուլթան-Հուսեինի մոտ։

---

1 Մինչև այսօր Գանձասարի վանքի գրադարանում կարելի է տեսնել հայոց թագավորների ձիթանկար պատկերների մնացորդները, որ պատրաստվեցան այն ժամանակ Եվրոպայի թագավորներին ներկայացնելու համար։

2 Մեծն Պետրոս արտասահմանում գտնված ժամանակ, Հոլանդիայում ծանոթացավ մի Աբրո անունով զմյուռնացի վաճառականի հետ, որին հետո հրավիրեց Ռուսաստանում առևտուր անելու։

3 Իսրայել Օրին այդ ժամանակ պոլկովնիկի աստիճան էր ստացել կայսրից։

Նրա ընկեր Մինաս վարդապետը մնաց Ռուսաստանում և շարունակում էր բանակցությունները Գանձասարի վանքի «Հայոց ժողովի» կողմից ռուսաց արքունիքի հետ։

Օրին իր Պարսկաստանի ճանապարհորդությունը կատարեց Հայաստանի վրայով, անցավ Շամախու, Ղարաբաղի, Նախիջևանի կողմերով, որպեսզի ավելի մոտից տեսնե հայոց պատրաստությունները, խրախուսե նրանց և գրգռե պարսից դեմ հօգուտ Ռուսաստանի։

Բայց չնայելով, որ նրա դեսպանախումբը ծածկված էր Հռոմի պապի դեսպանության անմեղ անունով, որը արևելքում որևէ քաղաքական շահեր ունենալ չէր կարող, այսուամենայնիվ, մինչև Օրիի պարսից մայրաքաղաքը հասնելը, Շամախու կառավարիչ Մուսաբեկյան Հյուսեին-խանը[1] իմացում տվեց շահին, որ այդ Օրին աշխատում է հայոց թագավորություն հիմնել, պարսիկների իշխանությունը ոչնչացնել և այլն։ Այդ տեղեկությունները ստանալուց հետո, շահը այն աստիճան վրդովվեցավ, որ մինչև անգամ չէր կամենում ընդունել պապի պատրվակյալ դեսպանությունը։ Բայց Օրին մի լավ դիպլոմատի հատուկ ճարպկությամբ կարողացավ փարատել շահի տարակուսանքները և Սպահանում փառավոր ընդունելություն գտավ։

Օրին մնաց Սպահանում մի քանի տարի։ Այդ միջոցներում նրան հաջողվեցավ կատարել կայսրի զանազան հանձնարարությունները, հաջողվեցավ հավաքել նրա ցանկացած բոլոր տեղեկությունները և գաղտնի ուղարկել Ռուսաստան իր ընկեր Մինաս վարդապետին, որը իր կողմից ներկայացնում էր կայսրին։

Իր դեսպանության խորհուրդը հաջողությամբ կատարելուց հետո, Օրին վերադարձավ Ռուսաստան, տանելով իր հետ 200,000 ռուբլու արժեք ունեցող ընծաներ պարսից շահի կողմից Պետրոս Մեծին։

Կայսրը այնքան գոհ մնաց դեսպանի գործակատարության համար, որ խոստացավ տալ նրան 40 հազար զինվորներ իր հայրենիքը ազատելու համար, իսկ նրա Պարսկաստանից բերած ըն-

1 Այդ Հյուսեին-խանը ազուլեցի էր, ազգով հայ, Մուսաբեկյանց տնից։ Նրա մի եղբայրը, որ կոչվում էր Մեհմետ-Ղուլի-խան, նույն ժամանակ Երևանում պարսից փոխարքա էր։ Այդ վերջինը մեծ տուգանքի ենթարկեց էջմիածնի վանքը, երբ կասկածեց, որ Աստվածատուր կաթողիկոսը գաղտնի բանակցություններ ունի վրաց իշխանների հետ և կամենում է միանալ նրանց հետ Հայաստանը պարսից լծից ազատելու համար։ Առհասարակ մահմեդականություն ընդունած Մուսաբեկյան եղբայրները մեծ վնաս տվեցին հայոց ապստամբության գործին։

ծաները հրամայեց գործ դնել պատերազմական ծախքերի վրա։ Բայց Օրին ազնիվ մարդու հատուկ մեծահոգությամբ հրաժարվեցավ կայսրի ընծաներից, հայտնելով, թե հայերը կարոտություն ունեն նրա ողորմածությանը միայն, իսկ զորքեր իրանք պատրաստ ունեն և որքան էլ հարկավոր լինի, կարող են պատրաստել։

Բայց Ղարաբաղի մելիքները շուտով զրկվեցան այդ եռանդուն հայրենասերից, որովհետև Օրին, կայսրի մի այլ հանձնարարությամբ Հաշտարխանից անցնելու ժամանակ, այնտեղ հիվանդացավ և Հայաստանի վերականգնման բոլոր ցանկությունները իր հետ գերեզման տարավ (1711)[1]։ Բայց նրա սկսած գործը չմեռավ։

## V

Օրիի մահից հետո նրա ընկեր Մինաս վարդապետը շարունակեց նրա սկսած գործը։ Նա Ռուսաստանից չհեռացավ և կատարում էր միջնորդի պաշտոն կայսրի և Գանձասարի վանքի «հայոց ժողովի» մեջ, ուր խմբվում էին խորհրդի համար Ղարաբաղի մելիքները։ Այդ եռանդուն վարդապետը, թեև նշանակված էր այն ժամանակ Ռուսաստանի հայոց արքեպիսկոպոս, բայց ավելի քաղաքական գործերով էր զբաղված, քան թե եկեղեցական։ Նա իր գաղտնի գործակատարները տարածել էր Պարսկաստանի բոլոր նշանավոր տեղերում, որոնք ամեն կողմից նրան տեղեկություններ էին հաղորդում[2]։ Նրա գործակատարներից ոմանք արժանացան կայսրի առանձին ողորմածությանը[3]։

Այդ ժամանակներում Պարսկաստանում հետզհետե կատարվեցան 1721, 22 և 23 թվերի անցքերը, որ նկարագրեցինք մեր III գլխում։ Շահ-Սուլթան-Հուսեինը գահընկեց եղավ. ավղանները

1 Օրիի մահից հետո Հաշտարխանի ռուս աստիճանավորները կողոպտեցին նրա կայքը և սկսեցին զրպարտել նրան զանազան խարդախությունների մեջ։ Մեծ ջանք էր հարկավոր նրա ընկեր Մինաս վարդապետին, մինչև կարողացավ ձեռք բերել հափշտակված կայքի մի մասը և վերականգնել իր հանգուցյալ ընկերոջ պատիվը։

2 Այդ գործակատարներից մեկն էր Սարգիս դի-Գիլանյանց, որի հետաքրքիր օրագրությունը, Պարսկաստանի այն ժամանակվա անցքերի վերաբերությամբ, տպվեցավ «Կռունկ» ամսագրում։ Իսկ 1870 թվին պրոֆեսոր Ք. Պատկանյանը ռուսերեն թարգմանելով, որպես հարուստ պատմական նյութ, ներկայացրեց Ս. Պետերբուրգի կայսերական ակադեմիային։

3 Դրանցից մեկն էր Նավասարդ անունով մի հայ, որի մատուցած ծառայությունների համար, երբ կայսրը կամեցավ վարձատրել նրան, Նավասարդին գտան Պարսկաստանում վախճանված, առանց անգամ ժառանգ թողնելու։ Մնացել էր

տիրեցին պարսից մայրաքաղաքին. օսմանցիք սկսեցին գրավել իրանց սահմանակից պարսկական նահանգները։ Սեֆևյանների պետությունը իր կատարյալ քայքայման վիճակի մեջն էր գտնվում։ Բայց ռուսները, փոխանակ Հայաստանի վրա ուշադրություն դարձնելու, տիրում էին Կասպից ծովեզրյա պարսկական գավառները։

Մելիքները կրկին սկսեցին դիմել դեպի ռուսաց արքունիքը։ Նրանց պատվիրակները, որպես էին՝ Հովհաննես երեցը, տեր Անտոնը, տեր Պետրոսը, Չելեբի-քյոխվան, Սիմոն Պապովը անդադար դիմում էին դեպի Ռուսաստան և Մինաս վարդապետի միջնորդությամբ հայոց մելիքների, Եսայի և Ներսես կաթողիկոսների խնդիրքները ներկայացնում էին կայսրին։ Պետրոս Մեծը միշտ պատասխանում էր նրանց իր ամենաողորմած խոստմունքներով, խորհուրդ էր տալիս սպասել, հուսադրելով, թե նրանց բոլոր բաղձանքները կատարված կլինեն։ Այդ բանակցությունները տևեցին մի քանի տարի։ Եվ որովհետև Վրաստանն էլ այդ ժամանակ միևնույն դրության մեջն էր ինչպես Հայաստանը, այսինքն՝ օսմանցիք այնտեղ էլ էին տիրել, այդ պատճառով վրացիներն ևս հայերի նման միևնույն խնդիրքներով դիմում էին կայսրին։ Վերջը հայերը պատասխան ստացան, որ իրանց ուժերը միացնեն վրացիների հետ և սպասեն մինչև այն ժամանակ, երբ կայսրը ինքն անձամբ ռուսաց զորքերով կգա պարսկական նոր գրաված երկրները տեսնելու համար,— այն ժամանակ հայերը և վրացիները, միանալով ռուսաց զորքերի հետ, կարող են սկսել ապստամբության գործը։

## VI

Վերջին խոստմունքը սաստիկ ուրախություն պատճառեց թե հայերին և թե վրացիներին։ Երկու վիճակակից քրիստոնյա ազգեր, ձեռք ձեռքի տված, քրիստոնյա մեծ կայսրի պաշտպանության ներքո, պիտի պատերազմեին մահմեդական բռնակալության դեմ, պիտի կռվեին իրանց հայրենիքի փրկության համար։

---

միայն Ղազար անունով մի հայ, որ ծառայում էր հանգուցյալի մոտ և ծանոթ էր նրա գործերի հետ։ Կայսրը կանչել տվեց Ղազարին և արժանացրեց գեներալի աստիճանի։ Դա միևնույն գեներալ Լազար Խրիստաֆորովիչն էր, որ հայերից կազմված մի առանձին զորախմբի հրամանատար դառնալով, բավական նշանավոր գործեր կատարեց Պետրոս Մեծի պարսկական արշավանքների ժամանակ։ Հետո (1736) իր զորքով և հայ օֆիցերներով տեղափոխվեցավ Ղզլար։

Ղարաբաղի մելիքները այդ ժամանակ դիմեցին վրաց թագավոր Գիորգի-Շահնավազին, խնդրելով, որ տա իրանց մի հմուտ և ընդունակ զորավար հայոց զորքերին առաջնորդելու համար։ Թագավորը ընտրեց հայազգի իշխան Դավիթ Բեկին[1], որը այն ժամանակ վրաց ծառայության մեջ էր գտնվում։ Դավիթ Բեկը եկավ Ղարաբաղ (1722) և ժողովեց մինչև 60 հազար զորք, որոնց վրա զորապետներ կարգեց Մելիք-Ավան-խանին (Մելիք-Եգանին) և Ավան-Միրզային (Ավան-Յուզբաշուն), իսկ ինքը իր գլխավոր զորաբաժնի հետ գնաց դեպի Ղափանի նահանգը Ջավնդուր կոչված տեղում, որը իշխանի հայրենիքն էր։

Պետրոս Մեծի նոր արշավանքի նշանավոր պատրաստությունները դեպի Պարսկաստան մի կողմից, և Դավիթ Բեկի գործողությունները մյուս կողմից, առիթ տվեցին Էրզրումի օսմանցոց փաշային բեկից բացատրություններ պահանջել Ղարաբաղի հայ զորքերի հավաքման մասին։ Գործը այն աստիճան ակներև ձև էր ստացել և ռուսների խոստմունքները այն աստիճան անկասկած էին համարվում, որ Դավիթ Բեկը, որքան էլ ցանկանար, ծածկել չէր կարող։ Նա համարձակ պատասխանեց, թե այդ բոլորը կատարում է թագավոր Պետրոս Մեծի հրամանով։ Այդ ժամանակ օսմանցիները փութապես սկսեցին գրավել իրանց սահմանակից պարսկական երկրները և տիրեցին Երևանից սկսյալ մինչև Թավրիզ, որպեսզի արգելք դնեն մեծ թագավորի արշավանքի հաջողությունների դեմ։

Դավիթ Բեկը և հայոց մյուս մելիքները, տեսնելով օսմանցոց ուժերի մոտենալը, որը իրանց նպատակներին միանգամայն վտանգ էր սպառնում,— շուտով այդ մասին տեղեկություն տվին Պետրոս Մեծին, խնդրելով, որ չուշանա, այլ փութացնե իր արշավանքը։ Կայսրը այս անգամ չուշացավ. նա իսկույն հրամայեց իր զորքերին (թվով 30 000) առաջ խաղալ դեպի պարսից սահմանը, իսկ ինքը, զորքերի ճանապարհ ընկնելուց հետո, անձամբ գնաց Դերբենդ (1722 թ. օգոստոսի 23)։

Մինչև Պետրոս Մեծի Դերբենդ հասնելը, հայերը և վրացիները, առաջուց բանակ դրած Գանձակ քաղաքի մոտ, սպասում էին ընդունելու կայսրին։ Վրաց զորքերը գտնվում էին Շահնավազ-Գիորգիի երկրորդ հաջորդ Վախթանգի հրամանատարության ներքո, իսկ հայոց զորքերը Դավիթ Բեկի հրամանատարության ներքո։

[1] Դա միևնույն անձնավորությունն է, որ մեր «Դավիթ-Բեկ» անունով վեպի մեջ ներկայանում է որպես հերոս։

Երկու կողմերի զորքերի թիվը հասնում էր 52 000 հոգու։ Հայոց բանակի մեջ գտնվում էր հայոց շարժման պարագլուխ Գանձասարի Եսայի կաթողիկոսը[1]։ Բայց այդ փառավոր պատրաստությունը, թե հայոց և թե վրաց կողմից, մնաց անգործադրելի, որովհետև, հանկարծ մի տխուր լուր ստացվեցավ, որ կայսրը Դերբենդից վերադարձել է Աստրախան և այնտեղից Ռուսաստան։

Կայսրի անակնկալ վերադարձի պատճառները բացատրում էին նրանով, որ մրրիկը Կասպից ծովի վրա մեծ մասամբ ոչնչացրեց նրա նավերը, որոնք զորքերի համար պաշար էին կրում, և կայսրը վախեցավ իր զորքերի սովամահ լինելուց, եթե նրանց դուրս կբերե Հայաստանի կողմերի ցամաքի վրա։ Բայց այսքանը ճիշտ է, որ նա Աստրախանից ուղարկեց մի քանի գունդեր, որոնք պոլկովնիկ Շիպովի և գեներալ Մատյուշկինի առաջնորդությամբ ոտք կոխեցին Կասպից ծովի հարավային եզերքի վրա և գրավեցին մի քանի պարսկական գավառներ, որպես էին՝ Գիլանը, Մազանդարանը, Աստրապատը և Բաքուն։

Հայոց և վրաց զորքերը, տխուր, սրտաբեկ, խաբված իրանց հույսերի մեջ, վերադարձան իրանց տեղերը։ Վախթանգը գնաց Թիֆլիս և աղետալի դեպքերի պատահեց[2], իսկ Դավիթ Բեկը դիմեց դեպի Սյունյաց աշխարհը։

---

1 Այդ երևելի հոգևորականը, որ իր ժամանակի անցքերի ոչ միայն ականատեսը, այլ գլխավոր գործիչն էր, օրագրության ձևով գրեց բոլոր անցքերի մանրամասն և ընդարձակ պատմությունը։ 1839 թվին Բաղդասար միտրոպոլիտը Շուշի քաղաքում տպագրել տվեց այդ պատմությունը, բայց սաստիկ համառոտած և անխնա կերպով կրճատած։ Մենք այժմ ավելորդ ենք համարում բացատրել, թե ի՞նչ նպատակով է կատարել հանգուցյալ միտրոպոլիտը այդ գրականության սպանությունը, միայն այսքանը կասենք, որ Եսայի կաթողիկոսի պատմության իսկականը շատ ընդարձակ է եղել, ինչպես երևում է այդ մեր ձեռքը հասած մի գրչագրի օրինակից, որը դժբախտաբար կիսով չափ փտած է։ Ցանկալի կլիներ, որ գտնվեր այդ աշխատության ամբողջը և դա առատ նյութ կտար մեր նոր պատմությանը։

2 Նազար-Ալի-խանի (Հերակլ I) որդի Մահմադ-Ղուլի-խանը (Կոստանդին I), որը իր հոր և եղբոր Իմամ-Ղուլի-խանի (Դավիթ III) նման մահմեդականություն ընդունելով, ստացել էր պարսից շահի Կախեթիայի իշխանությունը,— այդ չարագործը, դիմեց լեզգիների գլխավոր Ալի-սոլթանին, խոստացավ նրա զորքերի յուրաքանչյուրին 3 թուման վարձ տալ, եթե նրանք կօգնեն իրան Թիֆլիսին տիրելու և Վախթանգին սպանելու գործում։ Լեզգիները կատարեցին նրա խնդիրքը, Թիֆլիսը գրավեցին և Վախթանգը փախավ դեպի Իմերեթիայի կողմերը։ Բայց Մահմադ-Ղուլի-խանը չկարողացավ վճարել իր խոստացած վարձատրությունը, թույլ տվեց, որ լեզգիները դրա փոխարեն կողոպտեն Թիֆլիսը, և ամբողջ քաղաքը բարբարոսների ավարառության զոհ դարձավ։

## VII

Այդ անհաջողությունը սաստիկ վատթարացրեց հայերի սկսած գործը։ Մինչև այնօր նրանք պարծենում էին ռուսներով, սպառնալիքներ էին կարդում մահմեդականներին մեծ թագավորի անունով, բայց հենց որ մահմեդականները նկատեցին, որ այդ բոլորը երևակայական ցնորք էր, սկսեցին ավելի կատաղությամբ բռնանալ քրիստոնյաների վրա։

Հենց միևնույն ժամանակ (1723), երբ ռուսները տիրեցին պարսից ծովեզերյա գավառները, օսմանցիք սկսեցին առաջ խաղալ դեպի Հայաստանի խորքը։ Տիրելով Նախիջևանը, Երևանը, Թիֆլիսը և Գանձակը, նրանք հասան Ղարաբաղին։

Սարի-Մուստաֆա-փաշան, որ դեպի Ղարաբաղի կողմերը ուղարկված օսմանցոց գնդերի հրամանատարն էր, նստած էր Գանձակ քաղաքում և իր զորքերը տարածել էր դեպի ամեն կողմ։ Հայոց մելիքները, այժմ սարսափելով տեսան, որ թուլացած, ուժից ընկած պարսիկների փոխարեն հայտնվեցավ մի նոր և ավելի զորավոր թշնամի, որ կարող էր ոչնչացնել նրանց բոլոր հույսերը։

Նրանք իրանց դաշնակից Վախթանգի[1] հետ փորձեցին Երրորդ անգամ դիմել կայսրին, օգնություն խնդրելով օսմանցիների դեմ։ Բայց կայսրը այդ ժամանակ այլևս վերականգնել Հայաստանի անկախության վրա չէր մտածում, այլ մտածում էր ավելի նրա վրա, որ նոր գրաված պարսկական ծովեզերյա երկրները՝ Գիլանը և Մազանդարանը բնակեցնե մի քրիստոնյա և հավատարիմ ժողովրդով, որպես էին հայերը։ Այդ ժողովրդի ընտիր զորապետները իրանց հայկական գնդերով նպաստեցին նրան հիշյալ երկրները տիրապետելու ժամանակ, այդ ժողովրդից դուրս եկած խելացի քաղաքագետները ճանապարհ ցույց տվին նրան, առաջնորդեցին, և համարյա առանց պատերազմի գրավեցան հիշյալ երկրները,— այժմ կայսրը ցանկանում էր, որ նույն ժողովուրդը թողներ իր սիրելի հայրենիքը, որի վերածնելության մասին այնքան ոգևորված էր և գաղթեր մի անծանոթ և հեռու աշխարհ։ Այդ ժողովուրդը պետք էր այդ նոր աշխարհի համար. նա հավատարիմ էր, հլու էր, և գլխավորն այն է, որ նրա ձեռքումն էր արևելքի վաճառականությունը և նրա միջոցով մեծ կայսրը կարող էր իրա-

[1] Թիֆլիսը գրավված լինելով օսմանցիներից, Վախթանգը այդ ժամանակ հալածված էր իր հայրենիքից և գտնվում էր Իմերեթիայի կողմերում, հետո բոլորովին հուսահատված, իր ընտանիքով գնաց Մոսկվա (1724)։

*գործել իր մեծ նպատակները՝ արևելքի վաճառականությունը կապել Եվրոպայի հետ Ռուսաստանի վրայով և իր պետությանը մի նոր կյանք տալ։*

*Բայց որպես հայերը, նույնպես և վրացիները չէին դադարում կայսրի պաշտպանությունը խնդրել իրանց հայրենիքի փրկության համար։ Նրանք ավելի բարվոք էին համարում մնալ իրանց հայրենիքում, միայն ազատ լինել մահմեդական լծից։*

*Իսկ այդ միջոցներում կատարվեցան մի քանի դիպլոմատիական կապակցություններ, որոնք իսպառ զրկեցին թե հայերին և թե վրացիներին իրանց բաղձանքներից։*

*Հենց նույն ժամանակ, երբ կայսրը Աստրախանից վերադարձավ Ս. Պետերբուրգ (1723, 3 սեպտեմ.), այնտեղ եկավ Շահ-Թահմասի[1] դեսպանը, ռուսաց և պարսից մեջ խաղաղության դաշն կապվեցավ, որի հիման վրա պարսիկները թողեցին ռուսների տիրապետության ներքո Դերբենդ և Բաքու քաղաքները, այլև Գիլանի, Մազանդարանի և Աստրաբատի նահանգները, իսկ կայսրը իր կողմից պարտավորվեցավ զորք ուղարկել Շահ-Թահմասին օգնելու համար ավղանների և օսմանցիների դեմ։ Թեև այդ դաշնագրին վերջը չստորագրեց շահը, այսուամենայնիվ, օսմանցիները սաստիկ վրդովվեցան, երբ նկատեցին ռուսների միջամտությունը պարսից գործերի մեջ։ Բայց կայսրը հանգստացրեց նրանց, Բ. Դռան հետ կապած իր դաշնադրությամբ (1724, 12 հունիսի), որի հիման վրա համաձայնվեցավ, որ օսմանցիք տիրեին Վրաստանին, ստորին Դաղստանին և հայոց նահանգներին, որպես էին՝ ամբողջ Ատրպատականը, Նախիջևանը, Երևանը, Գանձակը, Ղարաբաղը և այլն, մինչև Շիրվանի մի մասը։ Այդ դաշնագրության զորությամբ իզուր էին հայերի հույսերը Ռուսաստանից օգնություն սպասել, որովհետև որքան էլ ցանկանային ռուսները, չէին կարող օգնել։*

*Այդ էր պատճառը, երբ հայոց կաթողիկոսները և մելիքները կրկին անգամ դիմեցին Պետրոս Մեծին, իր հրովարտակով (1824, 10 նոյեմ.), կայսրը բարեհաճեց հայերին ընդունել իր բարձր հովանավորության ներքո և ամենաողորմածաբար հրամայեց Դերբենդի բերդապահ գեներալ Կրոպոտովին, որ հայերին բնակության տեղ տա Սուրբ խաչ բերդի մոտ, Սուլակու, Ագրախանա և Թերեկ գետերի ափերի մոտ։ Միևնույն ժամանակ կայսրի կանցլեր գրաֆ Գավրիլո Գոլովկինը գաղտնի հրահանգներ է ու-*

---

1 *Շահ-Թահմասը Շահ-Սուլթան-Հուսեինի որդին էր։*

ղարկում իրանց նոր գրաված պարսկական նահանգների կառավարիչներին, որ համոզեն հայերին թողնել իրանց հայրենիքը և գաղթել Կասպից ծովեզերյա երկրների վրա, որպես էին Գիլանը և Մազանդարանը։ Որովհետև օսմանցոց Բ. Դռան հետ կապած դաշնագրի պատճառով կայսրը չէր կարող օգնել հայերին, քանի որ նրանք իրանց հայրենիքումը կմնան։ Դեռ դրանից առաջ Կասպից ծովեզերքի կառավարիչ գեներալ Մատյուշկինը հրաման էր ստացել, որքան կարելի է աննկատելի կերպով աշխատել մաքրելու Գիլանը և Մազանդարանը մահմեդականներից, հանդարտ կերպով ոչնչացնելով նրանց, որպեսզի հետո կարելի լինի նրանց տեղը լցնել հայ գաղթականներով։

Բայց Պետրոս Մեծի վաղահաս մահը (1725, 28 հունիսի) թողեց Ղարաբաղի հայերի գաղթականության խնդիրը անկատար։ Կայսրի մահից հետո ռուսաց գահի վրա նստեց նրա ամուսինը՝ Եկատերինա I, որի թագավորության ժամանակ հայերի վիճակը ավելի ծանրացավ։

Թեև Պետրոս Մեծը չկարողացավ իր կողմից օգնել հայերին մահմեդականների դեմ, այսուամենայնիվ, մեծ թագավորի մահվան բոթը հայերին սուգի մեջ դրեց։ Հայոց Եսայի և Ներսես կաթողիկոսները և Ղարաբաղի մելիքները Դերբենդից ուղարկեցին մի պատգամավորություն կայսրուհի Եկատերինա I մոտ, հայտնելու իրանց խորին ցավակցությունը։ Այդ պատգամավորության գլխավորներն էին Յուզբաշի Բաղին, Չելեբի քյոխվան և ուրիշ նշանավոր անձինք։ Նրանք միևնույն ժամանակ հայտնեցին, որ Սարի-Մուստաֆա փաշան 40 հազար հոգով հարձակվեցավ Ղարաբաղի վրա և հայերը ութ օր հուսահատ կերպով պատերազմելով, հազիվ կարողացան հաղթել օսմանցիներին։ Պատգամավորները ավելացրին, թե դժվար կլինի հայերին երկար պաշտպանվել, եթե նրանց օգնություն չհասնի։

Կայսրուհին իր հրովարտակով (1726, 22 փետրվարի) բարեհաճեց արտահայտել իր ողորմածությունը և համակրությունը դեպի հայերը, իսկ ինչ որ գործին էր վերաբերում, գրվեցավ, որ Չելեբի քյոխվան բերանացի կհաղորդե։

Հայոց պատգամավորներին պատվիրված էր հաղորդել Ղարաբաղի ապստամբներին, որ նրանք հաստատ մնան իրանց ապստամբության շարժման մեջ, շարունակեն իրանց կռիվները մահմեդականների դեմ, շուտով նրանց օգնության կհասնեն վրաց Վախթանգ իշխանը և գեներալ Դոլգորուկի իշխանը։

Այնուհետև հայերը մի քանի անգամ կրկնեցին իրանց խընդիրները, բայց ոչ ոք նրանց օգնության չհասավ և ստիպված էին իրանց սեփական ուժերով պատերազմել թշնամու դեմ։ Բայց երևի հայերին վիճակված չէր մի լավ օր տեսնել, որովհետև Աննա Իվանովնա կայսրուհու թագավորության ժամանակ (1732) հայտնըվեցավ սարսափելի Նադիրը և Պարսկաստանում նշանավոր փոփոխություններ կատարվեցան, որոնք մեծ ազդեցություն ունեցան հայերի սկսած գործի ապարդյուն մնալու վրա։

## VIII

Նադիրը[1] հայտնվեցավ այն ժամանակ, երբ որպես տեսանք վերևում, Պարսկաստանը բաժան-բաժան էր եղած և պարսից գահի վրա նստում էին օտարները։ Պարսկաստանի մի մասին տիրում էին ավղանները, մի մասը գրավել էին ռուսները, իսկ պարսկական Հայաստանը, Վրաստանը և մի քանի այլ նահանգներ օսմանցիների ձեռքումն էին։

Նադիրը հայտնվեցավ ինչպես մի կատաղի փոթորիկ, որը զորավոր ձեռքով նախ մաքրեց Պարսկաստանը ավղաններից, տիրեց Հնդկաստանի մի մասը, հետո իր սուրը դարձրեց օսմանցիների դեմ։ Նրա զարմանալի հաջողությունները նոր ուժ, նոր խրախույս ներշնչեցին Ղարաբաղի հայոց մելիքներին։ Այդ վերջինները սկըսեցին իրանց սեփական ուժերով մաքրել իրանց հայրենիքը օսմանցիներից։

Այդ ժամանակ օսմանցիների սերասկեր (գլխավոր հրամանատար) Սարի-Մուստաֆա փաշան իր գլխավոր բանակով զետեղված էր Գանձակ քաղաքում, իսկ մնացած զորքերը տարածել էր Ղարաբաղի մելիքների երկրներում։ Մելիք-Ավանը, որ բոլոր մյուս մելիքների գահերեցն էր, օգուտ քաղելով փաշայի դեպի ինքն ունեցած բարեկամական հարաբերություններից, և առերես հնազանդություն ցույց տալով, գաղտնի կերպով սարքեց մի մեծ դավադրություն։ Ղարաբաղի բոլոր մելիքները միաբանվեցան նրա հետ։

1 Նադիրը կոչվում է և Թահմազ-Ղուլի-խան, նա սկզբում մի հասարակ ավազակապետ էր, ասպատակություններ էր գործում Խորասանի անապատներում. հետո Շահ-Թահմասի մոտ զորապետ և ապա ընդհանուր սպարապետ դարձավ. վերջը Շահ-Թահմասին սպանել տալով, ինքը թագավոր եղավ։

Ապստամբության նշանաբանը բովանդակվում էր հետևյալ խոսքերի մեջ. «պահպանեցեք հին սերմերը, որպես բուսնելու հույս տվողներ և ոչնչացրեք նորը, որ պտուղ չէ խոստանում»։ Այսինքն՝ խնայել պարսիկներին և կոտորել օսմանցիներին։ Կոտորածը պետք է կատարվեր մեծ պասի առաջին գիշերվա մեջ։ Այդ բարթուղմյան գիշերում հայերը ոչնչացրին թե Ղարաբաղի և թե Գանձակի կողմերում գտնված բոլոր օսմանցի զորքերին։ Ձմեռվա ցրտի պատճառով զինվորները հայերի տներումն էին բնակվում։ Ամեն մի տանտեր սպանեց իր ինքնակոչ հյուրին։ Սարի-Մուստաֆա փաշան հազիվ կարողացավ ազատվել փախչելով Երևան։ Այդ հիշատակի արժանի անցքը կատարվեցավ 1733 թ.։

Որպես մի փոքրիկ միջնավեպ, ես ավելորդ չեմ համարում նկարագրել մի դեպք, որ նույն գիշերը տեղի ունեցավ Վարանդայ'ի Ավետարանոց գյուղում։ Դրա մեջ փայլում է հայ կնոջ հերոսությունը։ Ավետարանոցը Վարանդայի մելիքության բերդավանն է։ Այստեղ իր զինվորներով զետեղված էր օսմանցիների զորապետներից մեկը, որ կոչվում էր Սուլեյման-բեկ։ Դա լսելով տեղային Մելիք-Հուսեինի դստեր Գայանեի գեղեցկությունը, մտածում էր տիրապետել նրան։ Բայց չհամարձակվելով հայտնի բռնություն գործ դնել, առաջարկում է ամուսնանալ Գայանեի հետ։ Հայրը և մայրը անպատկառ մահմեդականին միամտացնելու համար խոստանում են տալ աղջիկը, բայց միշտ հետաձգում են, հայտնելով, թե հայերի ազգային և կրոնական սովորությունների համեմատ պետք է դեռևս այս և այն ծեսերը կատարված լինեն։ Այսպես օրըստօրե ժամանակ են խլում, մինչև հասնում է նշանակյալ գիշերը։ Սկսվում է կոտորածը։ Մելիք-Հուսեինը այն գիշեր տանը չէ լինում. նա գնացել էր իր գավառի մյուս տեղերում գործելու համար։ Ավետարանոցի կոտորածին առաջնորդում էր նրա քաջասիրտ կինը՝ Աննա խաթունը[1]։ Երբ այդ զինված հերոսուհին ավանի փողոցների մեջ կոտորել էր տալիս օսմանցիներին, այդ միջոցին նրա ինքնակոչ փեսացուն՝ Սուլեյման-բեկը, իր կյանքը ազատելու համար, փախչում է դեպի Աննա խաթունի տունը։ Նույն րոպեում Գայանեն, նույնպես զինված, կանգնած է լինում տան դռան մոտ։ Տեսնելով իր ատելի փեսացուին ներս մըտնելիս, օրիորդը իր խենջարը խրում է նրա սրտի մեջ... Այդ սպա-

[1] Աննա խաթունը Տիզակի գավառի Մելիք-Ավանի (Մելիք-Եգանի) քույրն էր, նույն անձի, որ սարքեց ընդհանուր ապստամբությունը։

նությունից հետո Գայանեն իր անձը նվիրեց կուսակրոնության և մտավ Ավետարանոց գյուղի կուսանաց անապատը[1]։

Աննա խաթունի և Գայանեի քաջագործության հիշատակը պահպանված է միայն ժողովրդական ավանդության մեջ, իսկ Մելիք-Հուսեինի հիշատակը մնում է արձանագրված իր գերեզմանի քարի վրա, որը գտնվում է Ավետարանոց բերդի կուսանաց անապատի գավթում[2]։

Ղարաբաղի մելիքների կռիվները օսմանցիների հետ մի մեծ տեղ են բռնում այդ ժամանակի պատմության մեջ, որը դեռ ոչ ուսումնասիրված է և ոչ տպագրված։ Մենք այժմ այնքանը միայն կասենք, որ հայերը սրի ուժով մաքրելով իրանց հայրենիքը օսմանցիներից, բավական հեշտացրին Նադիրի հաղթությունները օսմանցիների դեմ, և պարսիկ սպարապետը թագավոր դառնալուց հետո, ինչպես կտեսնենք, չմոռացավ հայոց մելիքների ծառայությունները։ Նա ավելի երախտամատույց գտնվեցավ, քան թե քրիստոնյա կայսրները։

Մինչ Ղարաբաղում հայոց մելիքները ջարդում էին օսմանցիներին, հենց միևնույն ժամանակներում Սյունյաց իշխան Դավիթ Բեկը Ղափանի կողմերում հրաշքներ էր գործում։ Մահմեդական տիրապետողների բերդերը մինը մյուսից հետո ընկնում էին նրա ահեղ զորության առջև։ Հալիձորի բերդի պաշարման ժամանակ մի բուռն քաջերով ցրվեց նա օսմանցիների ավելի քան քսան հազար զորքերը[3]. Ղափանը, Բարգյուշատը, Զավնդուրը, Գենուազը և Գողթանը բոլորովին մաքրեց օսմանցիներից, խլեց նրանցից Մեղրի և Օրդուբադ քաղաքները։ Այդ բոլորը լսելով պարսից Շահ-Թահմասը[4] թե որքան նա օգնեց իրան, պատերազմելով Պարսկաստանի թշնամիների հետ, վարձատրեց քաջի հաղթությունները, զանազան

1 Իմ 1881 թվի ճանապարհորդության ժամանակ, Ավետարանոց գյուղում ինձ հաջողվեցավ տեսնել մի հրաշալի գրչագիր ավետարան, որ գրված էր նույն Գայանեի ձեռքով։

2 «Այս է տապան Մելիք Շահնազարի որդի Մելիք Հուսեինին. թվ. Ռ. Ճ. Ջ. 1185» (1736)։

«Ոգեմ բանս գովեստի ի վերա Մելիք Հյուսեինի, զոր գրեցի այս տապանի. սա էր տեր երկրին Վարանդի. երեսուն և հինգ մասն գեղի. սա էր հացով սեղանով լի. ողոր մեր ամեն ազգի. կերպարանոքն էր գովելի. սա ոչ ետ ճարկ թագավորի. ամուր պարիսպ էր աշխարհի. թագ պարծանք հայոց ազգի. պատերազմեաց ընդ օսմանցի. յոյժ կոտորյաց ազգեն տաճկի»։

3 Պատմության մեջ 70 հազար է նշանակված. այդ թիվը չափազանց է։

4 Պետք չէ մոռանալ, որ մինչև Շահ-Թահմասի սպանվիլը, Նադիրը շահի սպարապետն էր. Շահի մահից հետո նա թագավոր դարձավ։

արտոնություններ շնորհելով Դավիթ Բեկին։ Նա ուղարկեց բեկին մի դրոշակ, մի պատվական նժույգ ձի և թագավորական ֆիրմանով հաստատեց, որ նա ժառանգաբար իր տիրած երկրների տերը և իշխանաց-իշխանը լինի, նա իրավունք տվեց բեկին իր անունով դրամ կտրելու։ Բայց հանկարծակի մահը թույլ չտվեց այդ հերոսին երկար վայելելու իր հաղթությունների փառքը... 1728 թվին դավաճանի թույնը նրան գերեզման տարավ։ Միևնույն տարվա մեջ մեռան Ղարաբաղի երեք նշանավոր գործիչները՝ Մելիք-Բեգլարյան Աբով II, Մելիք-Իսրայելյան Մելիք-Եսային և Գանձասարի Եսայի կաթողիկոսը։ Մելիք-Աբովին հաջորդեց իր որդի Մելիք-Յուսուբը, Եսայի կաթողիկոսին հաջորդեց Երիցմանկանց վանքի Ներսես կաթողիկոսը, իսկ Մելիք-Եսայուն հաջորդեց իր եղբայր Ալլահ-Ղուլին, որ իր քաջագործությունների համար Նադիրից ստացավ սուլթանության տիտղոս և կոչվեցավ Ալլահ-Ղուլի-սուլթան։

Նադիրը, հաջողությամբ առաջ տանելով իր արշավանքները, մի քանի տարվա մեջ հետզհետե խլեց այն բոլոր պարսկական նահանգները, որ օտարները և օսմանցիները տիրել էին (Ատրպատականը, Նախիջևանը, Երևանը, Վրաստանը, Գանձակը և այլն)։ Նրա հաղթությունները երկյուղի մեջ գցին մինչև անգամ ռուսաց կառավարությանը, որը առանց պատերազմի, Աննա Իվանովնա կայսրուհու օրերում (1732—1735), վերադարձրեց Նադիրին Պետրոս Մեծի գրաված բոլոր պարսկական գավառները (Գիլանը, Մազանդարանը, Աստրաբատը, Բաքուն և Դերբենդը)։

Իր հաղթությունները փառավոր կերպով կատարելուց հետո, 1736 թ. ձմեռը, Նադիրը բանակ դրեց Երասխ գետի մոտ, Մուղանի լայնատարած անապատում։ Այնտեղ կանչված էին Պարսկաստանի բոլոր նահանգապետները, այնտեղ էր Կախեթիայի վալին՝ Իմամ Ղուլի-խանի (Դավիթ III) որդի մահմեդականացած Ալի-Միրզա-խանը. այնտեղ հրավիրված էր էջմիածնի Աբրահամ կաթողիկոսը[1] և Ղարաբաղի Ներսես կաթողիկոսը, այնտեղ էին Ղա-

[1] Այդ Աբրահամ կաթողիկոսը, որ կոչվում էր կրետացի, վայելում էր Նադիրի առանձին սերը և համակրությունը։ Պարսից քաջ զորապետը նրա մոտ հյուր եղավ էջմիածնի վանքում և իր արշավանքների ժամանակ, Հայաստանի և Վրաստանի կողմերում, նրան չէր հեռացնում իր բանակից։ Այդ հեշտացրեց կաթողիկոսին ավելի մոտից ծանոթանալ նրա գործողությունների հետ և օրագրության ձևով թողեց մեզ մի հետաքրքիր պատմություն, որ կոչվում է «Աբրահամ կաթողիկոսի կրետացվո պատմագրություն անցիցն յուրո և Նադիր-Շահին պարսից», տպված էջմիածնում 1870 թ.։

բաղի, Նախիջևանի, Երևանի հայոց բոլոր մելիքները և քալանթարները, այնտեղ էր Թիֆլիսի իշխան Մելիք-Աշխալ-բեկի որդի Աղա-բեկը (իշխան Բեհբուդյանների պապը), որը մասնակցեց Նադիրի հնդկական արշավանքներին։

Նույն տարվա փետրվար ամսում, Մուղանի անապատում, կատարվեցավ Նադիրի թագադրության հանդեսը։ Հայոց Աբրահամ կաթողիկոսը օրհնեց նրա սուրը և իր ձեռքով կապեց պարսից նոր թագավորի մեջքին։

Թագադրությունից հետո, Նադիր-շահը այնտեղ հավաքված ավագներին զանազան պաշտոններ և աստիճաններ շնորհելու ժամանակ, վարձատրեց և հայոց մելիքների կատարած քաջագործությունները, որոնք այնքան եռանդ էին ցույց տվել օսմանցիներին կոտորելու գործում։ Առանձին ֆիրմաներով նրանց կրկին հաստատեց իրանց հայրենական իշխանությունների մեջ, իրավունք տալով յուրաքանչյուրին անկախ կերպով կառավարելու երկիրը, վճարելով ամեն տարի մի որոշյալ քանակությամբ հարկ։ Այնուհետև մելիքները կախումն ունենալով միայն շահից, իսկ իրանց իշխանության մեջ վայելելով ինքնավարության կատարյալ իրավունքներ, որպես վալիներ (ավատական իշխաններ) ավելի հանգիստ և ապահով դրություն ստացան և սկսեցին ավելի ևս զորացնել իրանց ուժերը։

Մի քանի մելիքներ առանձին աստիճաններ ստացան։ Ջրաբերդի Մելիք-Իսրայելի որդի Մելիք-Ալլահ-Ղուլին ստացավ սուլթանի աստիճան[1] և կոչվեցավ Ալլահ-Ղուլի-սուլթան։ Շահի առանձին շնորհը վայելում էր Տիզակի գավառի Մելիք-Ավանը (Եգանը), որին շահը «բաբալըզ» էր կոչում, որ նշանակում է հոգևոր հայր։ Մելիք-Ավանը Ղարաբաղի մելիքների գահերեցն էր. դա մի ամբողջ տարի իր ծախքով կերակրեց շահի զորքերին. դա էր պարագլուխը մեր վերև հիշած սարսափելի կոտորածի, որով մի գիշերվա մեջ հայերը ոչնչացրին Ղարաբաղում գտնված բոլոր օսմանցիներին։ Շահը շնորհեց նրան խանության աստիճան, կոչվեցավ Մելիք-Ավան-խան և կարգեց Խամսայի հինգ մելիքությունների գլխավոր. դրա մոտ էին հավաքվում վճարելիք հարկերը և դրա ձեռքով էին հանձնվում արքունի գանձարանին։

---

[1] Սուլթանը չպետք է հասկանալ այն մտքով, ինչ նշանակություն որ ունի այժմ Թուրքիայում։ Սուլթանը այժմյան Պարսկաստանում զինվորական աստիճան է, իսկ Նադիրի ժամանակ այդ տիտղոսը տրվում էր առանձին գավառների կամ փոքրիկ վիճակների տիրապետողներին։

Երբ Հովհաննես կաթողիկոսը Մուղանի անապատում, շահի խնդրելով, Երասխ գետի ափի մոտ կատարեց սուրբ ծննդյան և մկրտության տոնի հանդեսը, ներկա էին, բացի քրիստոնյաներից, մինչև երեք հարյուր պարսիկ ազնվականներ, Շեյխուլիսլամը, ղազին և այլ նշանավոր անձինք։ Բոլորի մեջ միայն Մելիք-Ավան-խանը արժանացավ այն պատվին, որ խաչը ջրից դուրս հանեց։

Ավելորդ չեմ համարում հիշել մի փոքրիկ դեպք, որը ինքնըստինքյան, թեև շատ ծաղրական է, բայց ցույց է տալիս, թե որ աստիճան հայոց այդ ավագը մտերիմ և բարեկամ էր Պարսկաստանի ահարկու թագավորին։

Նադիր-շահը սովորություն ուներ շուտ-շուտ ճաշել Մելիք-Ավան-խանի տանը, որի ճոխ սեղանը հռչակված էր, թե այնտեղ ամեն բարիք կարելի է գտնել։ Մի անգամ շահը կամենալով փոքր-ինչ ամաչեցնել իր հյուրընկալին, պատվիրեց ճաշի համար թարմ սունկ պատրաստել։ Թեև ձմեռն էր, թեև տարվա այն ժամանակին Ղարաբաղի անտառներում թարմ սունկ գտնելը անկարելի բան էր, այնուամենայնիվ, Մելիք-Ավան-խանը ցույց տվեց, թե շահի փափագը կատարված կլինի։ Ճաշի ժամանակ, երբ թագավորը պահանջեց ցանկացած կերակուրը, մելիքի սպասավորները դրեցին նրա առջև մի մատուցարան, լիքը դիզած ոսկիներով։

— Ես սունկ էի պատվիրել,— ասաց շահը։— Մենք առանց սունկի էլ կարող ենք կշտանալ, պատասխանեց մելիքը,— իսկ ձեր զինվորներին ոսկի է հարկավոր թշնամու հետ պատերազմելու համար։ Շահին խիստ հաճո թվեցավ մելիքի պատասխանը և ընդունեց ոսկիները։

Մելիք-Ավան-խանը հարգված էր և ռուսաց կառավարությունից։ Աննա Իվանովնա կայսրուհու թագավորության ժամանակ (1734) նա իր աստիճանավորներով գնաց Ռուսաստան, փառավոր ընդունելություն գտավ և արժանացավ կայսրուհու առանձին ուշադրությանը։ Պետրոս Մեծի պարսկական արշավանքների ժամանակ, իր ցույց տված նշանավոր ծառայությունների համար Մելիք-Ավան-խանը ստացավ գեներալ-մայորի աստիճան և զանազան շքանշաններ։ Նրա ամբողջ սվիտային նույնպես աստիճաններ, շքանշաններ շնորհեցին և թոշակ նշանակեցին։

Հետո Ելիզավետա Պետրովնա կայսրուհու թագավորության ժամանակ, Մելիք-Ավան-խանը, արդեն ծերացած հասակում, կըրկին անգամ գնաց Ռուսաստան, իր ընտանիքը իր հետ տանելով։ Ղարաբաղի երևելի տիրապետողը կրկին անգամ արժանացավ զա-

նաղան շքանշանների և պատվի, թեև նրա այցելությունների նպատակը իր անձնական փառասիրությունը չէր, այլ նա աշխատում էր իր դժբախտ հայրենիքի փրկության համար։ Մեծն Պետրոսի օգոստափառ դուստրը ցանկացավ ծերունի հերոսին անձամբ տեսնել Ս. Պետերբուրգում և նշանակեց առանձին աուդենցիա։ Գրաֆ Մինիխը և գրաֆ Րազումովսկին Մելիք-Ավան-խանին իր ամբողջ ընտանիքի հետ ներկայացրին կայսրուհուն։ Ընդունելության ժամանակ կայսրուհին տեսնելով մի մանկահասակ գեղեցկուհի, որը մելիքի թոռն էր, այնքան սիրեց նրան, որ ցանկացավ պահել իր արքունիքում, իբրև պալատական օրիորդ (ֆրեյլեյն)։ Մինչև Ավան-խանի Ս. Պետերբուրգից հեռանալը, կայսրուհին պահեց նրան իր պալատում և միայն ծերունի մելիքի շատ խնդրելու համար, թույլ տվեց օրիորդին, որ իր ծնողների հետ վերադառնա իր հայրենիքը, պարգևելով նրան շատ ընծաներ։

Վերադառնալով իր հայրենիքը՝ Տիզակ, Մելիք-Ավան-խանը երկար չապրեց. նա վախճանվեց 1744 թ. և մարմինը թաղվեցավ իր Տող անունով բերդի եկեղեցու գավթում։ Նրա մահից հետո, երեց որդին՝ Մելիք-Արամը, միայն մի տարի իշխեց և մեռավ, հետո իշխանությունը ձեռք առեց կրտսեր եղբայրը՝ Մելիք-Եսային, որը, ինչպես հետո կտեսնենք, սպանվեցավ Շուշիի Իբրահիմ-խանի դավաճանությամբ։ Մելիք-Ավան-խանի ժառանգների մեծ մասը դավաճանության զոհ եղան։ Այդ էր պատճառը, որ նրա այրի կինը՝ Գոհար-խանումը (ханша) ստիպված եղավ թողնել իր հայրենիքը և մնացած զավակների հետ գաղթել Աստրախան, որտեղից իր բնակությունը տեղափոխեց Ղզլար, երբ այդ քաղաքը շինվեցավ։ Մելիք-Ավան-խանի և նրա եղբոր ժառանգներից առաջ եկան իշխան Սումբատյանները, իշխան Մելիքովները և Հայրապետյանները, որոնք մի ժամանակ Աստրախանում, Ս. Պետերբուրգում և Մոսկվայում ռուսաց նշանավոր պաշտոնների մեջ մտան։

IX

**Փանահ-խանի հայտնվելը**

Երբ Նադիր-շահը Մուղանի դաշտում իրան պարսից թագավոր հայտնեց, այդ ժամանակ Կուր գետի աջ եզերքի մոտ գտնված անապատների վրա թափառող մի թուրք ցեղից, որ տեղի անունով կոչվում էին ջուանշիրցիք, բավական մեծ բազմություն գաղթեց-

լեց Խորասանի կողմերը, բնակեցնելով նրանց Սարխաս կոչված գավառում։ Ջուանշիրցիք, որպես հովվական կյանքով ապրող մի ժողովուրդ, իրանց գլխավոր պարապմունք էին ընտրել խաշնարածությունը և ավազակությունը։ Երկրի խաղաղությունը պահպանելու համար Նադիրը ավելի բարվոք համարեց այդ անհանգիստ, կիսավայրենի ցեղը հեռացնել դեպի Պարսկաստանի խորքերը։

Այդ ցեղի մի տոհմից, որ առանձին անունով կոչվում էր Սարիջալլու, առաջ եկավ Փանահ անունով մի մարդ, որը Պարսկաստան գաղթելուց հետո, շնորհ գտավ շահի դռանը և ստացավ մի աննշան պաշտոն։ Այդ պաշտոնի համար մի այլ արժանավորություն պետք չէր, բայց միայն ունենալ զորեղ ձայն և երկրի սովորության համեմատ, թագավորի հրամանները քաղաքի հրապարակում բարձր ձայնով հրատարակել։ Փանահը ուներ այդ արժանավորությունը և թագավորի դռան մունետիկը դարձավ, կոչվեցավ այնուհետև «ջառչի» Փանահ։ Երկար այդ պաշտոնը կատարում էր նա, բայց մի անկարգության համար, երբ պիտի գըլխատման դատապարտվեր, Պարսկաստանից փախավ և կրկին եկավ իր հայրենիքը։ Որպես հանցավոր, նա անհայտ կերպով թափառում էր Ղարաբաղի անապատներում, աննշան, ստանդական կյանք էր վարում։

Հետո դիմեց նա Ջրաբերդի Մելիք-Ալլահ-ղուլի սուլթանին և նրա մոտ ապաստան գտավ։ Սուլթանը նշանակեց նրան իր գյուղերի վրա որպես դարուղա, այսինքն՝ տուրքեր հավաքող։ Թեև Պարսկաստանից մի քանի անգամ սաստիկ հրամաններ ստացվեցան, որ բռնեն Փանահին և ետ ուղարկեն, բայց նա պահպանվելով հայ սուլթանի պաշտպանության ներքո, ազատ մնաց։

Երբ Խորասանում, գիշերն իր վրանի մեջ քնած ժամանակ իր գրանիկների դավաճանությամբ, Նադիր-շահը սպանվեցավ հենց իր վրանի պահապանների ձեռքով (1747), այդ ժամանակ պարսից գահը ժառանգելու համար սարսափելի խռովություններ բարձրացան։ Զանազան տեղերում զանազան թագավորներ նստեցին. նահանգներից շատերը ապստամբվեցան։ Մաշհադի մեջ թագավորեց նրա թոռը՝ Շահ-ռուխ կոչվածը. Ատրպատականում թագավորեց նրա եղբորորդի Ադիլ-շահը, որի եղբայրը՝ Միրզա-Իբրահիմը հետո կուրացնելով հարազատ եղբորը, ինքը թագավոր դարձավ։ Այդ երկպառակությունների ժամանակ, երբ Պարսկաստանում շատ իշխողների պատճառով երկիրը անիշխանության մեջ

*էր գտնվում, Նադիրի Խորասան տարած ջուանշիրցի գաղթականները վերադարձան իրանց հայրենիքը՝ Ղարաբաղի անապատները։*

*Այդ ժամանակ «ջառչի» Փանահը իրան ազատ զգաց. այլևս պատժվելու, գլխատվելու երկյուղ չուներ։ Այդ մարդը, այդ հովի, անապատների պարզամիտ որդին, երկար տարիներ ապրելով պարսկական Բարձր Դռան ինտրիգների մեջ, սովորեց պարսիկների խորամանկությունը, վարժվեցավ նրանց խաբեությունների մեջ։*

*Նա արդեն Զրաբերդի հզոր մելիքի՝ Ալլահ-Ղուլի-սուլթանի ծառայության մեջ բավականին նշանակություն էր ստացել։ Երբ լսեց Նադիր-շահի մահը և իր ցեղակիցների վերադարձը Խորասանից, թողեց այդ ծառայությունը և մտավ ջուանշիրցի խաշնարածների մեջ, սկզբում նրանց նման կյանք էր վարում, որպես մի հասարակ հովիվ։ Բայց հետո սկսեց փոքր առ փոքր դեպի իր կողմը գրավել միամիտ խաշնարածներին, մինչև հաջողվեցավ նրան հրաժարեցնել տալ ցեղի նախկին տանուտերին* (старшина) *և իրան ընտրել տալ նրա տեղը։*

*Այդ չնչին պաշտոնը միայն մի առիթ էր, որով Փանահը կարողացավ փոքր ժամանակում խաշնարածների մի քանի ցեղեր իր հրամանին ենթարկել։ Բայց նրա փառասիրությունը դրանով չհագեցավ։ Նադիրի մահից հետո, երբ նրա եղբոր որդի Ադիլ-շահը Թավրիզում թագավոր դարձավ, նա ուղարկեց դեպի Ղարաբաղի կողմերը Ամիր-Ասլան-խան անունով մեկին, տեղային խռովությունները խաղաղեցնելու համար։ Այդ ժամանակ պարսից շահերը այն անհաստատ դրության մեջ էին, որ մի օրվա համար ևս իրանց վիճակը ապահով չէին համարում։ Այդ պատճառով, շտապելով շուտափույթ օգուտ քաղել իրանց դիրքից, մի քանի թումանով վաճառում էին պաշտոններ, աստիճաններ, տիտղոսներ և այլն։ Ջառչի Փանահը նույնպես օգուտ քաղելով այդ հանգամանքից, հիշյալ Ամիր-Ասլան-խանի միջնորդությամբ ստացավ Ադիլ-շահի* խանության *տիտղոսը։*

*Բայց նա խելացի մարդ էր. նա մտածում էր ստեղծել մի ավելի հիմնավոր իշխանություն, որի գլուխը, իհարկե, ինքը պետք է լիներ։ Իսկ այդ նպատակը իրագործելու համար շատ դժվարություններ կային. գլխավորը իր ցեղի կենցաղավարության պայմաններն էին։*

*Ջուանշիրցիները, որպես մի խաշնարած և թափառաշրջիկ ժողովուրդ, ձմեռը անց էին կացնում Կուր գետի աջ ափերի մոտ տարածված տափարակների վրա, բնակվելով շարժական տաղա-*

վարների մեջ, կամ գետնափոր խրճիթներում, իսկ գարնան սկզբից մինչև աշնան վերջը սփռվում էին Ղարաբաղի լեռների վրա, իրանց անասունները արածացնելու համար։ Զուրկ լինելով հաստատ բնակությունից, նրանք զուրկ էին և հողի սեփականությունից։ Ամբողջ Ղարաբաղը գտնվելով հայ մելիքների իշխանության ներքո, քոչանշիրցիները ստիպված էին իրանց ոչխարներից տասանորդ վճարել, որպեսզի թույլ տրվի իրանց անասունները արածացնել մելիքների արոտատեղերում։

Երկրի աշխարհագրական դիրքն այնպես էր, որ լեռնային անտառապատ բարձրավանդակները, հովասուն հովիտները, որոնց վրա ամառային տոթերի ժամանակ կարող էր խաշնարածը ապաստան գտնել, հայ մելիքների ձեռքում էին։ Իսկ լեռներից սկսած անջուր, ցամաք տափարակների վրա, որ տարածվում էին մինչև Կուր գետի ափերը, թափառում էին ջուանշիրցիները։ Փանահ-խանը մտածում էր Ղարաբաղի լեռների վրա, մի տեղում հաստատ ոտքի տեղ ունենալ։ Մի ամուր դիրք ռազմագիտական նպատակով նրան պետք էր իր նպատակները իրագործելու համար։

Սկզբում նա գնաց Բայաթ[1] և այնտեղ սկսեց մի բերդ հիմնել։ Բայց Գյուլիստանի Մելիք-Բեգլարյան Մելիք-Յուսուբը և Ջրաբերդի Մելիք-Իսրայելյան Մելիք-Ալլահ-ղուլի սուլթանը, միանալով Շիրվանի Հաջի-Չելեբի անունով կառավարչի հետ, ոչնչացրին այդ հիմնարկությունը։ Հետո նա սկսեց Շահ-բուլաղի մոտ, Թարանակյուրտ (Տիգրանակերտ) կոչված ավերակների վրա մի այլ բերդ կառուցանել Ասկարան անունով։ Բայց Գյուլիստանի Մելիք-Յուսուբը, Ջրաբերդի Մելիք-Ալլահ-ղուլի սուլթանը և Խաչենի Հասան-Ջալալյան Մելիք-Ալլահվերդին, այդ բերդը մոտ գտնելով իրանց երկիրների սահմաններին, սկսեցին պատերազմել նրա հետ և դարձյալ ոչնչացրին։

Տեսնելով այդ արգելքները հայ մելիքների կողմից, խորամանկ Փանահ-խանը մտածեց երկպառակել նրանց միաբանությունը և այսպիսով, թուլացնել նրանց ուժերը, որպեսզի կարողանա իրագործել իր նպատակները։ Նրան նպաստեցին մի քանի անցքեր, որ կատարվեցան այդ միջոցներում և որոնք սկիզբ դրեցին Ղարաբաղի մելիքների քայքայմանը... Այդ էջերն այնքան տխուր տեղ են բռնում Ղարաբաղի մելիքների պատմության մեջ, որ մենք ավելորդ չենք համարում մի փոքր ընդարձակ խոսել այդ մասին։

---

1 Բայաթ ավերակ քաղաքատեղ է Գարգար գետի մոտ։

X

Տիզակի Մելիք-Ավան-խանը, Պետրոս Մեծի և Նադիր-շահի սիրելին, Ղարաբաղի մելիքների գահերեցը, վաղուց արդեն վախճանված էր (1744)։ Նրա մահից հետո Ղարաբաղի իշխանների մեջ չկար մի այնպիսին, որ նրա չափ հանճար և հեղինակություն ունենար, որ կարողանար պահպանել մելիքների մեջ խաղաղ ներդաշնակություն։ Հանգուցյալի երեց որդին, Մելիք-Արամը, միայն մի տարի իշխեց։ Նա այնքան թույլ մարդ էր, որ երբ Նադիր-շահի միակ որդին վախճանվեցավ և հարկավոր եղավ շահին մխիթարելու համար մի պատգամավորություն ուղարկել, փոխանակ ինքը գնալու կամ ուրիշ արժանավոր մարդիկ ուղարկելու, ուղարկեց իր կնոջը։ Խելացի կինը զարմացրեց պարսից բոլոր պալատականներին, երբ իր սվիտայի հետ, սգազգեստ ներկայացավ շահին։ Իր մխիթարական ճառից հետո, տիկինը, բավական խորամանկ քաղաքավարությամբ, մատուց շահին 6,000 թուման փեշքեշ, ասելով. «Դուք այնքան ողորմած էիք, որ գնահատելով Մելիք-Ավան-խանի ձեզ մատուցած ծառայությունները և հարգելով նրա ծերությունը, ձեր «բաբալըղ» (հոգևոր հայր) էիք կոչում։ Նրա վախճանից հետո արժան էր, որ դուք ևս ձեր մասը ստանայիք ձեր հայրացուի ժառանգությունից։ Եվ ես ահա բերեցի ձեր բաժինը։ Շահին այնքան հաճո թվեցավ այդ ընծան, որ հրամայեց երկու այն չափով պարգևներ տային նրան իր գանձարանից և մեծ հարգանքով ճանապարհ դրեց, նրա ձեռքով ուղարկելով նրա ամուսնի, Մելիք-Արամի, հաստատության ֆիրմանը։

Վերադառնալով Պարսկաստանից, տիկինը գտավ իր ամուսնին վախճանված։ Փանահ-խանի թելադրությամբ մի դավաճան հայ թունավորել էր նրան։

Մելիք-Արամի մահից հետո Տիզակի իշխանությունը իր ձեռքն առեց հանգուցյալի կրտսեր եղբայր Մելիք-Եսային, որը իր հատկություններով բոլորովին նման էր իր հորը։

Մինչև այսօր Տիզակ գավառի բնակիչները հիշում են հին ավանդությունը, թե երբ Մելիք-Եսային ծնվեցավ, մանկաբարձ պառավները նկատեցին, որ տղայի աջ ձեռքի մատները խփված էին։ Երբ բուռը բաց արին, տեսան ափի մեջ լիքն էր արյունով։ Այն օրից նախագուշակեցին, որ երբ այդ մանուկը կմեծանա, դրա ձեռքով շատ արյունահեղություններ կլինեն։ Եվ իրավ, Մելիք-Եսային իր ամբողջ կյանքը անցկացրեց պատերազմներում։ Տի-

ղակը պարսից սահմանի վրա լինելով, Երասխ գետի ափի մոտ, ենթարկված էր պարսիկների անընդհատ հարձակումներին։ Քաջ իշխանը իր երկիրը նրանց արշավանքներից պահպանելու համար ստիպված էր անդադար պատերազմել նրանց հետ։

Մելիք-Եսային առաջինն էր Ղարաբաղի մելիքների մեջ, որ հասկացավ կանոնավոր զորքի և ընդհանուր զինվորագրության անհրաժեշտությունը երկրի ապահովության համար. նա տուգանք նշանակեց գյուղացիների վրա, եթե նրանց զենքերից մեկը պակաս կլիներ, կամ եթե իրանց զենքերը չէին պահպանի անխափան դրության մեջ։ Որոշյալ օրերում, երկրագործական պարապմունքներից հետո, գյուղացի երիտասարդները զբաղվում էին զինվորական մարզությունններով. նրանց վրա կարգված էին տասնապետներ, հիսնապետներ, հարյուրապետներ կրթելու համար։ «Նրա ժամանակում, գրում է մի վարդապետ, մեր երկրում այնպիսի ապահովություն էր տիրում, որ դեռահաս աղջիկները այգիների ծառերի տակ նստած, կար էին կարում, մնում էին այնտեղ, մինչև մութը պատում էր. հարսները զուգված, զարդարված դուրս էին գալիս տներից և աներկյուղ զբոսնում էին լեռների վրա, բոլորովին չմտածելով, թե թուրքը կամ պարսիկը կգա, կհափշտակի և կտանե նրանց։ Երբ թշնամին հայտնվում էր, երկրի երիտասարդները զենքը ձեռքում միշտ պատրաստ էին նրան հանդիպելու համար»։

Նադիր-շահի մահից հետո Մելիք-Ավան-խանի տան բարեկամական հարաբերությունները պարսից արքունիքի հետ կտրվեցան։ Մելիք-Եսային տեսնելով Պարսկաստանում տիրող անիշխանությունը, խռովությունները և ներքին պատերազմները և մանավանդ ձանձրացած լինելով պարսից հարկահաններից, վճռեց միանգամայն չճանաչել նրանց և մերժել հարկապահանջներին։ Այդ առիթից օգուտ քաղեց Փանահ-խանը և Մելիք-Եսայուն մատնեց Թավրիզում նստող Ադիլ-շահին։ Շահը հրամայեց Ղարադաղի[1] կառավարիչ Քազմ-խանին գնալ և պատժել Մելիք-Եսայուն։ Ղարադաղի խանը եկավ զորքերի մեծ բազմությամբ. ինքը Փանահ-խանը մի քանի հազար հոգով միացավ նրա հետ, պաշարեցին Մելիք-Եսայու Տող բերդը։ Ով որ տեսել է Տողը, կարող է երևակայել, որ թշնամու զորքերի բազմությունը չէր կարող սարսափեցնել Մելիք-Եսայուն, երբ որ իր քաջ զինվորների փոխարեն առավելապես

1 Պետք է ի նկատի ունենալ, որ Ղարադաղը (հին Փայտակարանի մի մասը) և Տիզակ գավառը սահմանակից են, բաժանվում են միայն Երասխ գետով։

բնության ամրությունները պիտի պատերազմեին թշնամու զորության դեմ։ Հայոց զինվորները մասամբ պաշտպանված բերդի մեջ, մասամբ թաքնված շրջակա լեռների խիտ անտառների մեջ, անակընկալ հարձակումներ են գործում, և ջարդում են պարսիկներին։ Ղարադաղի խանը հաղթված, իր զորքերի մեծ մասը կորցրած, ետ է դառնում Պարսկաստան։ Հետևյալ տարին նա արշավանք է գործում ավելի մեծ բազմությամբ. Փանահ-խանը դարձյալ միանում է նրա հետ, բայց երկուսի ջանքերը ևս ապարդյուն են անցնում, Մելիք-Եսային հաղթող է հանդիսանում։

Այնուհետև Փանահ-խանը ամբողջ յոթն տարի պատերազմեց Մելիք-Ավանյան Մելիք-Եսայու հետ, երբ նկատեց, որ հնար չկա նրան հնազանդեցնելու, ստիպվեցավ հաշտվել մտածելով, գուցե բարեկամական միջոցներով կարող կլինի ոչնչացնել նրան, և որպես հետո կտեսնենք, խորամանկ խանի այդ մտադրությունը հաջողվեցավ...

## XI

Փանահ-խանը մի քանի անհաջող փորձերից հետո վերջապես համոզվեցավ, որ Ղարաբաղի մելիքների միաբանությունը քանդելու համար և Ղարաբաղի մեջ մի հաստատ դիրք բռնելու համար, անպատճառ հարկավոր է, որ մելիքներից գոնե մեկին գրավե դեպի իր կողմը։ Մի աղետալի անցք կատարեց նրա ցանկությունը։

Որպես վերևում հիշեցինք, Նադիր-շահը Մուղանի անապատում իրան պարսից թագավոր հրատարակելուց հետո, Ղարաբաղի հինգ մելիքներին հաստատեց իրանց իշխանությունների մեջ, տալով նրանց հայրենական վաղեմի իրավունքները։ Բայց միևնույն տարվա մեջ (1736) վախճանվեցավ Վարանդայի իշխան Մելիք-Շահնազարյան Մելիք-Հուսեինը, որի կինը Ավետարանոց գյուղում կոտորել տվեց օսմանցիներին։ Մելիք-Հուսեինի փոխարեն Վարանդային սկսեց կառավարել նրա ազգական Մելիք-Միրզա-բեկ II[1]։ Դա իր հանդուգն անհնազանդությամբ գրգռեց շահի բարկությունը և շահը հրամայեց գլխատել նրան։ Մելիք-Միրզա-բեկ II փոխարեն շահը Վարանդայի մելիք նշանակեց Մելիք-Հուսեինի որդի Մելիք-Հովսեփին։ Այդ Մելիք-Հովսեփը, որին պարսիկները Հուսեին էին կոչում, չափազանց հեզաբարո, գրասեր և ճնլացի

[1] Մելիք-Միրզա-բեկ II Մելիք-Բաղիի որդին էր, իսկ այդ վերջինը՝ Մելիք-Հուսեինի հորեղբայր Մելիք-Միրզա-բեկ I որդին էր։

մարդ էր, բայց մի ոտքով կաղ և փոքրահասակ։ Նա ուներ մի եղբայր ևս, որը ընդհակառակն վայելչահասակ, գեղեցիկ և չափազանց փառասեր տղամարդ էր։ Դա էր Մելիք-Շահնազար II[1], Ղարաբաղի կործանիչը...

Իր ընտանեկան կյանքում Մելիք-Շահնազարը սաստիկ անբարոյական մարդ էր. պարսիկների սովորությանը հետևելով, իր տունը լցրել էր բազմաթիվ հարճերով։ Բացի դրանից, նա ուներ իր առաջին օրինավոր կինը Թագում (Թագուհի) անունով, որը Խաչենի Հասան-Ջալալյան իշխանների տնից էր։ Թագումի մեռնելուց հետո Մելիք-Շահնազարը բռնությամբ խլեց կենդանի ամուսնից նրա գեղեցիկ կինը Սոնա անունով (որը Տիզակի իշխան Մելիք-Եսայու աղջիկն էր) և պսակվեց նրա հետ։ Նույնիսկ Սոնայի կենդանության ժամանակ Մելիք-Շահնազարն ամուսնացավ իր հանգուցյալ կնոջ, Թագումի, հարազատ եղբոր Մալայիկ անունով դըստեր հետ, և այսպիսով, մտցրեց իր ընտանիքի մեջ մահմեդական բազմակնությունը։ Մելիքի այդ տեսակ վարմունքները սաստիկ վիրավորեցին ժողովրդի կրոնական զգացմունքը և նրան ատելի դարձրին Ղարաբաղի մյուս մելիքների մոտ։ Բայց նրա կատարած մի եղեռնագործությունը հրավիրեց իր վրա բոլոր մելիքների վրեժխնդրությունը։

Մելիք-Շահնազարը փառասեր, հանդուգն և ոխերիմ մարդ էր. նա չկարողացավ համբերել, որ իր եղբայր Մելիք-Հովսեփը վարեր Վարանդայի իշխանությունը, թեև նա կարգված էր Նադիր-շահից։ Մի գիշեր հարձակվելով Մելիք-Հովսեփի տան վրա, իր ձեռքով սպանեց եղբորը և նրա ամբողջ ընտանիքը կոտորել տվեց։ Կոտորածից ազատվեցավ մի երեխա միայն, փոքրիկ Սայի-բեկը, որին դայակը ծածուկ փախցրեց Խաչեն գավառի Հասան-Ջալալյան Մելիք-Ալլահվերդու մոտ, որը երեխայի քեռին էր[2]։

[1] Մելիք-Հովսեփը և Մելիք-Շահնազարը խորթ եղբայրներ էին, վերջինը ծընված էր Մելիք-Ավան-խանի Աննա-խաթուն անունով կնոջից, որը Տիզակի իշխան Մելիք-Ավան-խանի քույրն էր, իսկ Մելիք-Շահնազարը ծնված էր Զոհրա-խանումից, որը Նախիջևանի խանի աղջիկն էր, ազգով թուրք։ Մելիք-Հուսեինը նրան իբրև գերի բերեց Նախիջևանից, հետո ամուսնացավ նրա հետ։

[2] Ավետարանոց (Չանախչի) բերդը շատ անգամ եղել է հանդիսարան արյունոտ գործերի։ Մենք նկարագրեցինք Մելիք-Հուսեին մեծի ժամանակ տեղի ունեցած օսմանցիների կոտորածը այդ բերդում։ 1723 թ. օգոստոս 20-ին, ղափանցի Ղանլու-Շաբան անունով հայ իշխանը 300 ձիավորներով հյուր է գալիս Ավետարանոց բերդի Մելիք-Միրզա-բեկի մոտ (Մելիք-Բաղիի որդին)։ Չնայելով, որ Մելիք-Միրզա-բեկը հին ոխ ուներ Ղանլու-Շաբանի հետ, այսուամենայնիվ, սիրով ընդունում է նրան իր տանը և նրա ավիտային որպես հյուրեր բաժանում է իր գյու-

Սպանելով իր եղբորը, Մելիք-Շահնազարը բռնությամբ իր ձեռքը ձգեց Վարանդայի իշխանությունը։ Բայց նրա եղեռնագործությունը սաստիկ բորբոքեց իր դեմ Ղարաբաղի մյուս չորս մելիքների բարկությունը։ Նրանք միաբանվեցան Մելիք-Շահնազարից վրեժխնդիր լինելու համար։ Դրանք էին՝ Գյուլիստանի Մելիք-Բեգլարյան Մելիք-Յուսուբը, Ջրաբերդի Մելիք-Իսրայելյան Ալլահ-Ղուլի-սուլթանը, Խաչենի Մելիք-Ալլահվերդին և Տիզակի Մելիք-Ավանյան Մելիք-Եսային։ Իրանց զորքերով այդ չորս մելիքները դիմեցին դեպի Վարանդա։ Մելիք-Շահնազարը ամրացավ իր Ավետարանոց բերդի մեջ։ Պաշարումը երկար տևեց, ձմեռը վրա հասնելով, բերդը չկարողացան գրավել, բայց Վարանդայի գյուղերի մեծ մասը ավարի առնելով, ավերակ դարձնելով, մելիքները վերադարձան իրանց տեղերը, պայման դնելով, որ հետևյալ գարունքին կրկին արշավանք գործեցին, Ավետարանոց բերդը կործանելու համար։

Փանահ-խանը այժմ հասավ իր նպատակին։ Ղարաբաղի մելիքների մեջ սկսվեցավ ներքին պատերազմը։ Նա շտապեց օգուտ քաղել այդ հանգամանքներից։

Մելիք-Շահնազարը որքան էլ հանդուգն, աներկյուղ մարդ լիներ, դարձյալ գիտեր, որ իր ուժերը չէր կարող հավասարեցնել բոլոր չորս մելիքների անհամեմատ մեծ զորությանը։ Այդ պատճառով նա սաստիկ անհանգստությամբ սպասում էր գարնան արշավանքին։ Նրան պետք էր մի դաշնակից, մի օգնական, և նա ձեռք մեկնեց իր հայրենիքի ոխերիմ թշնամուն,— ջուանշիրցի ավազակին...

Մյուս մելիքները ավելի կատաղեցան, երբ նկատեցին, որ Մելիք-Շահնազարը միացավ Փանահ-խանի հետ, որի չար դիտավորությունները, Ղարաբաղի հայկական բոլոր իշխանությունները ոչնչացնելու մասին, ամենքին հայտնի էին։

Փանահ-խանը իր կողմից շատ ուրախ եղավ, երբ մելիքների միաբանությունը քանդված տեսավ, երբ նրանցից մեկը, և ամենանշանավորը, անցավ իր կողմը։

Վաղուց նա դիտավորություն ուներ մտնելու անմատչելի Ղա-

---

ղացիների տներում։ Գյուղացիները պատվեր են ստանում, հենց որ գիշերը Մելիքի տնից լսելի կլինի հրացանի ձայն, ամեն մարդ պատրաստ լինի իր հյուրին սպանելու։ Այսպիսով մի գիշերվա մեջ կոտորում են բոլոր 300 ձիավորներին՝ իրենց իշխանի հետ։ Դա միևնույն Մելիք-Միրզա-բեկն էր, որին Նադիր-շահը գլխատել տվեց։

րաբաղի սրտի մեջ և մի հարմար դիրքի վրա ցանկանում էր մի ամուր բերդ հիմնել։ Նրա Բայաթի և Ասկարանի բերդերը, ինչպես տեսանք, հայոց մելիքները ոչնչացրին։

«Ձեր Ջանախչին պաշտպանության համար խիստ անհուսալի դիրք ունի,— ասաց Փանահ-խանը Մելիք-Շահնազարին,—պետք է որոնել մի ավելի ամուր դիրք և ես մի այսպիսի տեղ ի նկատի ունեմ, որի վրա բերդ հիմնելով, կլինենք այնուհետև բոլորովին ապահովված...»։

Փանահ-խանը ցույց տվեց Վարանդայի գավառում մի տեղ, Գարգար գետի վրա, որը Մելիք-Շահնազարի սեփական կալվածքն էր և բնությունը, իրավ որ, այդ անմատչելի լեռնային բարձրավանդակը ստեղծել էր ամուր բերդ լինելու համար։ Երկու դաշնակիցները սկսեցին բերդի հիմնարկությունը։ Մելիք-Շահնազարը իր ձեռքով դրեց նրա առաջին քարը, որ իր և ամբողջ Ղարաբաղի մելիքությունների գերեզմանը դարձավ...

Մի կողմից բերդի կառուցումը առաջ տանելու, մյուս կողմից՝ մելիքների հետ պատերազմ մղելով, երկու դաշնակիցները շուտով վերջացրին շինությունը (1752) և մերձակա Շոշի ավանի հայ բնակիչներին տեղափոխելով այնտեղ, բերդը կոչվեցավ Շոշի կամ Շուշի։

Փանահ-խանը մտնելով Ղարաբաղի սրտի մեջ, իր դաշնակից Մելիք-Շահնազարի աջակցությամբ, ոչ միայն կարողացավ պաշտպանվել մյուս հայ մելիքների հարձակումների դեմ, այլ իր իշխանությունը տարածեց և այն թուրք ցեղերի վրա, որոնք առաջ չէին խոնարհվում նրան։

Ինքը Փանահ-խանը իր ծագումը ստացած լինելով ավելի աննշան և ստոր ցեղից, որպես էին սարուջալլուցիք, մյուս ավելի զորեղ և նշանավոր ցեղերը (ջուանշիրցիք, քաբիրլուցիք և օթուզիքի՝ այսինքն՝ երեսուներկու կոչված ցեղը) արհամարհանքով էին նայում նրա վրա։ Եվ մանավանդ իրենց նահապետական սովորություններին խիստ հակառակ էր թվում խոնարհվել մեկ միապետի հրամանի ներքո, որը պարսից խանի տիտղոս էր կրում։ Բայց Մելիք-Շահնազարի օգնությամբ այդ բոլորին կարողացավ հետըզհետե գրավել նա։

Իսկ հայոց մելիքների վերաբերությամբ դեռ վճռական քայլ չէր անում նա, աշխատում էր առանձնացնել նրանց, աշխատում էր երկպառակություն սերմանել նրանց մեջ և փոքր առ փոքր նրանց ուժերը թուլացնել։

Սկսեց Խաչենի մելիքություններից, որը մնացածներից ավելի մոտ էր Շուշի բերդին։ Այստեղ ամենահին ժամանակներից իշխում էին Հասան-Ջալալյան իշխանների ժառանգները։ Դրանք դարերի ընթացքում այնքան բազմացել էին, որ Խաչեն գավառը ամենամանր կտորներով բաժանված էր այդ տոհմի ներկայացուցիչների ձեռքում, որոնք բնականաբար շատ հաշտ չէին կարող լինել միմյանց հետ։ Փանահ-խանը մտածեց ստեղծել այստեղ մի նոր մելիքություն, նրանց բոլորին հետզհետե ոչնչացնելու նպատակով։ Նրան զորավիգ եղավ ինքը Մելիք-Շահնազարը։

Մենք տեսանք, երբ Մելիք-Շահնազարը սպանեց իր եղբորը՝ Մելիք-Հովսեփին և բռնությամբ գրավեց Վարանդայի իշխանությունը, սպանվածի որդիներից մեկին դայակը փախցրեց Խաչեն գավառը և թաքցրեց իր քեռիների տանը։ Մանուկի քեռին էր Հասան-Ջալալյան իշխան Մելիք-Ալլահվերդին։ Մտածելով, որ մի ժամանակ այդ մանուկը կմեծանա և իր քեռիների օգնությամբ վրեժխնդիր կլինի իր հոր արյան համար և գուցե ետ կխլե հոր իշխանությունը,— Մելիք-Շահնազարը վճռեց ոչնչացնել թե մանուկին և թե նրա քեռիներին։ Փառասեր մելիքը այդ ձեռնարկության մեջ իր առանձին հաշիվները ուներ, իսկ այդ հաշիվները նպաստավոր էին Փանահ-խանի համար այն կողմից, որ նա Խաչենի մելիքությունները ոչնչացնելով այնտեղ կնշանակեր իր ցանկացած մարդուն և այսպիսով, մի ամբողջ գավառ իր ձեռքը կառներ։ Մելիք-Ալլահվերդին բնակվում էր սեփական ամրոցում, որ իր պապերից մեկի անունով կոչվում էր Ուլու-պապի բերդ[1]։ Նա հայտնի էր որպես քաջ և անպարտելի պատերազմող։ Երբ Փանահ-խանը, միանալով Մելիք-Շահնազարի հետ, իրանց հայ և թուրք զորքերով արշավեցին նրա վրա, Մելիք-Ալլահվերդին այնպիսի մի սաստիկ ջարդ տվեց նրանց, որ երկու դաշնակիցները հազիվ կարողացան իրանց կյանքը ազատել, փախչելով և մտնելով Շուշի բերդը։

Այդ ժամանակ Փանահ-խանը, Մելիք-Շահնազարի խորհրդով, գաղտնի կերպով կանչեց իր մոտ Խնզիրիստան գյուղի տանուտեր Միրզա-խանին, որը Մելիք-Ալլահվերդուց կարգված, նույն գյուղի կառավարիչն էր։ Խանը առաջուց իմացած լինելով տանուտերի փառասիրական ձգտումները, խոստացավ նրան, եթե Մելիք-Ալ-

[1] Ուլու-պապի բերդը գտնվում է Խաչեն գետի մոտ, Քարամեջ կամ Օրախաչ գյուղում, Պտկեսի սուրբ Գևորգ անունով մատուռի մոտ։ Այդ ամրոցին թուրքերը կոչում են Բալլու-Կայա։

լահվերդուն մի հնարքով կբռնի և իր ձեռքը կտա, նրան ամբողջ Խաչենի գավառի վրա մելիք կկարգե։

Միրզա-խանը, հրապուրված խանի խոստումներից, դիմեց Մելիք-Ալլահվերդու մոտ, հայտնեց նրան, թե իրան հայտնի է, որ Փանահ-խանը ավելի մեծ պատրաստություններով հարձակվելու է նրա վրա և թե նրա սեփական ամրոցը այնքան հուսալի մի տեղ չէ, որի մեջ կարելի լինի պաշտպանվել թշնամու այս անգամվա ահագին զորության դեմ և խորհուրդ տվեց ամրանալ Կաչաղակաբերդի մեջ, որը անառիկ և անմատչելի դիրք ուներ։ Որպես ստորադրյալ և պաշտոնյա, Միրզա-խանը առաջարկեց իր պատրաստակամությունը ամեն կերպով օգնելու իշխանին, ավելացնելով, թե ինքը արդեն պատրաստած ունի Կաչաղակաբերդի մեջ մի քանի ամիսների համար պաշար, ուր նա կարող է ապահով կերպով պաշտպանվել թշնամու դեմ, եթե այդ բերդը պաշարված կլինի։ Նա իշխանին հրավիրեց իր տունը, որ այնտեղից միասին գնան Կաչաղակաբերդը, որը շատ հեռու չէր Խնզիրիստանից։ Բայց նույն գիշերը ընթրիքի ժամանակ, դավաճանը սենյակից դուրս եկավ և իր ետևից կողպեց դուռը, իշխանին այնտեղ մենակ թողնելով։ Այդ միջոցին Փանահ-խանի և Մելիք-Շահնազարի մարդիկը, որ առաջուց պահված էին նրա տան մեջ, վրա հասան և կալանավորեցին իշխանին։ Փանահ-խանը նրան տվեց դահիճների ձեռքը և գլխատեցին, նրա ամբողջ ընտանիքը կոտորել տվեց։ Այդ ժամանակ Մելիք-Շահնազարը սպանել տվեց իր եղբորորդի փոքրիկ Սայիբեկին, որ նույն ընտանիքի մեջ պահված էր։ Եղեռնագործը իր եղբոր արյան մեջ շաղախված ձեռքերը թաթախեց դժբախտ զավակի արյան մեջ...

Փանահ-խանը կատարեց իր խոստումը. դավաճան Միրզա-խանին կարգեց Խաչենի վրա մելիք (1755) և այն օրից Հասան-Ջալալյան իշխանների տիրապետությունը համարյա թե ընկավ։ Թե ինքը Մելիք-Միրզա-խանը և թե նրա ժառանգները (Մելիք-Ալլահվերդին[1] և Մելիք-Ղահրամանը) հավատարմությամբ ծառայեցին Շուշիի խաներին և կտրվելով հայոց մելիքների դաշնակցությունից, անթիվ վնասներ հասցրին Ղարաբաղի հայոց իշխանություններին։

Եվ այսպես Ղարաբաղի հինգ մելիքություններից երկուսը, Վարանդան և Խաչենը, անցան Փանահ-խանի կողմը։

[1] Այդ Մելիք-Ալլահվերդուն պետք չէ շփոթել Հասան-Ջալալյան Մելիք-Ալլահվերդու հետ։

## XII

Մնում էին երեք մելիքություններ՝ Գյուլիստանը, Ջրաբերդը և Տիզակը։

Գյուլիստանում տիրում էր Մելիք-Բեգլարյան Մելիք-Յուսուփը, Ջրաբերդում տիրում էր Մելիք-Իսրայելյան Ալլահ-Կուլի-սուլթանը, իսկ Տիզակում տիրում էր Մելիք-Ավանյան Մելիք-Եսային։

Տեսնելով, որ մի կողմից Մելիք-Շահնազարը իր բերդը, Շուշին, պարգևեց Փանահ-խանին և նրա ամենահավատարիմ դաշնակիցը դարձավ, մյուս կողմից Խաչենում մի նոր մելիքություն կազմվեցավ, որը նույնպես մահմեդական խանի դաշնակից եղավ,— վերոհիշյալ երեք մելիքները ոչ միայն չվհատեցան, այլ իրանց միացած ուժերով սկսեցին սաստիկ պատերազմներ մղել Փանահ-խանի և նրա հայ դաշնակիցների հետ։ Այդ արյունահեղ պատերազմները, որպես կտեսնենք, տևեցին ամբողջ քսան տարի, որոնք խիստ զգալի վնասներ պատճառեցին Ղարաբաղին։

Վերջը Փանահ-խանը անճար մնալով, մտածեց հաշտություն խոսել Ալլահ-Կուլի-սուլթանի, Մելիք-Յուսուփի և Մելիք-Եսայու հետ։ Խաղաղության պայմանների վրա բանակցելու համար որոշվեցավ ոչ թե Շուշի բերդը, այլ մի չեզոք տեղ՝ Ամարասա վանքը։ Ջրաբերդի Ալլահ-Կուլի-սուլթանը ուղարկվեցավ հայոց դաշնակից մելիքների կողմից իբրև հավատարմատար Ամարասա վանքը։ Այնտեղ եկավ և Փանահ-խանը իր հավատարիմ Մելիք-Շահնազարի հետ։

Այդ միջոցներում Փանահ-խանի մոտ միևնույն վանքում տեսության է գալիս Նախիջևանի Հեյդար-Կուլի-խանը։ Երբ նրան ներս են տանում, Փանահ-խանի մոտ նստած է լինում հայոց մելիքների հավատարմատարը՝ Ալլահ-Կուլի-սուլթանը։ Տեսնելով շքեղ կերպով հագնված, հսկայատիպ սուլթանին, Նախիջևանի խանը շփոթվում է, և կարծելով, թե այդ գեղեցիկ տղամարդը լինելու է ինքը Փանահ-խանը, ողջունում է նրան և ամենայն խոնարհությամբ սկզբից նրան է գլուխ տալիս։ Բայց հետո, երբ հասկացնում են նրան իր սխալը, նա հիշեցնում է Փանահ-խանին պարսից երևելի բանաստեղծի, Սաադիի խոսքը. «Տասը դերվիշներ կարող են մի փալասի կտորի վրա պառկել, բայց երկու թագավորներ չեն կարող մի աշխարհի մեջ հաշտ ապրել...»։

Այդ խոսքերով նենգավոր նախիջևանցին կամեցավ հասկացնել Փանահ-խանին, թե նրա իշխանությունը չէ կարելի ապահով-

ված համարել, մինչև որ Ղարաբաղում կգտնվեն այս տեսակ նշանավոր հայ պետեր։ Փանահ-խանը, արդարև, դավաճանեց իր պայմանին. Ալլահ-Կուլի-սուլթանին կալանավորեց, տարավ Շուշի բերդում բանտարկեց և մի քանի օրից հետո գլխատել տվեց (1756)։ Այսպես վարվեցավ իր բարերարի հետ, որի մոտ առաջ ծառայում էր նա և որը ազատեց նրա կյանքը Նադիր-շահի դահիճների ձեռքից...

Այդ անցքը, որի խղճությունը չէ ուրանում և պարսից պատմությունը, Ղարաբաղի ժողովրդական ավանդությունների մեջ լեգենդական ձև է ստացել։ Մինչև այսօր չեն մոռացվել ժողովրդի բերանում այն երգերը, որ հսկա կալանավորը երգում էր իր բանտի մեջ։ Նա կոչում էր իր քաջ եղբորը՝ Մելիք-Աթամին, նա կոչում էր իր անպարտելի նիզակակցին՝ Դալի-Մահրասային, հորդորում էր Շուշին քարուքանդ անել, արյունով շաղախել նրա մոխիրն ու հողը և իրան ազատել բանտից։ Դրանցից և ոչ մեկը չէ հայտնվում. հսկայի ձայնին օգնության է հասնում սիրող կինը. նա Փանահ-խանի հարեմի ամենագեղեցիկն էր։ Գիշերը, կալանավորին ընթրիք տանելու ժամանակ, սիրահարված գեղեցկուհին թաքցնում է փլավի մատուցարանի մեջ բանտի և նրա երկաթյա ոտնակապերի բանալիները, որ նա բաց անե և փախչե։ Բայց հսկան պատասխանում է, հայոց քաջերը փախչելու սովորած չեն. եթե ինքը ցանկանա, այդ բանալիներին կարոտություն չունի։ Եվ նա զորավոր ձեռքով փշրում է իր շղթաները և նրանց կտորտանքը լցնելով փլավի մատուցարանի մեջ, ետ է ուղարկում, ասելով. «Դավաճանությունը կպատժվի... իր արյունը առանց վրեժխնդրության չի մնա...»։

Ալլահ-Կուլի-սուլթանի ողբալի մահից հետո Ջրաբերդի մելիքության կառավարությունը անցավ նրա կրտսեր եղբոր՝ Մելիք-Աթամի ձեռքը։ Դա իր բոլոր հատկություններով շատ նման էր իր քաջ եղբորը։ Մանկության հասակից իբրև պատանդ պահված լինելով Դաղստանի Խոսրով-սուլթանի մոտ, Մելիք-Աթամը վարժվեցավ տեղային լեռնաբնակների հերոսական հատկությունների մեջ։ Նրան ազատեց այնտեղից Նադիր-շահը իր Դաղստանի արշավանքի ժամանակ։

Զրկելով Ջրաբերդը իր հզոր իշխանից, Փանահ-խանը կարծեց դաշնակից մելիքների ուժերը բոլորովին թուլացած, և նա հանդգնաբար հրաման գրեց Գյուլիստանի Մելիք-Յուսուբին, բացարձակ կերպով պահանջելով նրանից, որ հպատակություն ընդունե։ Այդ

ժամանակն էր, որ Մելիք-Յուսուֆի որդի Մելիք-Բեգլար II, որը սաստիկ գոռոզ ու դյուրաբորբոք երիտասարդ էր, թույլ չտվեց իր հորը պատասխանելու, ասելով, թե ինքը կտա Փանահ-խանի պատասխանը։ Նա իր սուրը բռնելով խանի պատգամավորի գլխի վրա, ստիպեց նրան կուլ տալ բերած հրամանագիրը։ Երբ խեղճ պատգամավորը սարսափելով կուլ տվեց թղթի վերջին պատառը, երիտասարդը ասաց նրան. «Հիմա գնա ինչ որ կերար այստեղ, նրա արտադրությունը... կլինի Փանահ-խանի պատասխանը...»[1]։

Այդ անցքերից հետո ավելի սաստիկ կերպով բորբոքվեցավ պատերազմը Փանահ-խանի և դաշնակից մելիքների մեջ։ Վարանդայի Մելիք-Շահնազարը և Խաչենի Մելիք-Միրզախանը, ինչպես առաջ, նույնպես և այժմ հավատարիմ մնացին հայոց ոխերիմ խանին։ Ոչ թե միայն իրանց խորհուրդներով, այլ շատ անգամ իրանց զորքերով օգնում էին նրան։ Բայց չնայելով այդ բոլորին, դաշնակից մելիքները (Գյուլիստանի Մելիք-Յուսուֆը, Ջրաբերդի Մելիք-Աթամը և Տիզակի Մելիք-Եսային) այն աստիճան նեղության մեջ էին դրել Փանահ-խանին, որ նրա Շուշի բերդը մշտական պաշարման դրության մեջ էին պահում։

Մինչև այսօր առակ է դարձել Ղարաբաղի ժողովրդի մեջ, թե Թյուլի-Արզումանը, Դալի-Մահրասան և Չալաղան-Յուզբաշին ամբողջ յոթն տարի թույլ չտվեցին, որ մի Թուրք անցկենար Մաղե-կամուրջից[2] դեպի Ջրաբերդի և Գյուլիստանի կողմերը։

Հիշյալ երեք անձնավորությունները երեք հերոսներ են, որոնց դեռ ժողովուրդը չէ մոռացել։ Ես ավելորդ չեմ համարում ծանոթացնել նրանց մեր ընթերցողներին։

Դալի-Մահրասա Թուրքաց լեզվով նշանակում է գիժ աբեղա։ Եվ իրավ, այդ մարդը աբեղա էր, Ջրաբերդի Եղիշե առաքելո վանքի միաբան։ Ամեն ուխտավոր և այսօր կարող է տեսնել հիշյալ վանքում այն բարձր աշտարակը, որի մեջ, առանձնացած վանականների աղմկող միաբանությունից, բնակվում էր «գիժը»։ Նրա իսկական անունը Ավագ վարդապետ էր, բայց ժողովուրդը նրան դալի (գիժ) տիտղոսը տվեց։ Մի այսպիսի տիտղոս կրում էին արևելքի տասնվեցերորդ դարու հերոսը՝ Քոր-օղլին և նրա խմբի մեջ գտնված քաջերը. դրանք կոչվում էին Քոր-օղլու դալիներ (գժեր)։

[1] Այդ պատմական փաստը չէ մոռացված և «Ղարաբաղի Աստղագետը» կոչված վեպի երկրորդ հատորի 9-րդ գլխում։

[2] Մաղե-կամուրջ կոչվում է Թարթար գետի վրա գտնվող կամուրջը Շուշի բերդի մոտ։

Դալի-Մահրասան Ղարաբաղի հայոց Քոր-օղլին էր. ժողովուրդը գուցե մինչև հավիտյան կհիշե այն բոլոր հրաշքները, որ կատարել է նա իր կռիվների մեջ։ Երբ նստում էր իր նշանավոր մոխրագույն (բոզ) նժույգի վրա և կայծակի նման նետվում էր դեպի պատերազմի դաշտը, նրա ահարկու, որոտալից ձայնը բավական էր թշնամուն սարսափեցնելու համար։ Եկեղեցու մոլեռանդությունը պատժեց գիժ աբեղային իր կատարած արյունահեղությունների համար։ Սիմոն կաթողիկոսի ժամանակ նրան տարան Էջմիածին և բանտարկեցին սառցատան մեջ, որ ապաշխարե։ Մի օր իր բանտի մեջ լսեց նա, որ վանքում ինչ-որ աղմուկ և իրարանցում է տիրում։ Նրա հարցին պատասխանեցին, թե Ջալալի քրդերը եկել վանքի անասունները թալանեցին, հիմա վտանգ կա, որ վանքն էլ կողոպտեն։— Կարող եք տալ ինձ մի ձի և մի քանի զենքեր, ասաց ապաշխարողը։ Երբ նրա խնդիրը կատարվեցավ, նա նստեց ձին և նետվեցավ ջալալների ետևից։ Մի քանի ժամից հետո վերադարձավ նա, ետ բերելով քրդերի տարած ավարը։ Այդ օգուտը վանքին տալուց հետո, նրան արձակեցին, խոստմունք առնելով, որ այլևս մարդասպանություն չանե։ Բայց նա չկատարեց իր խոստմունքը։ Հայրենիքի թշնամիներին սպանելը նա մեղք չէր համարում, և շարունակում էր մասնակցել մելիքների բոլոր պատերազմների մեջ։ Մի անգամ Գանձակ քաղաքի մոտ, լեզգիների հետ պատերազմելու ժամանակ, գիշերը վրա հասավ։ Նա կռվից հոգնած, նստել էր մի գերեզմանաքարի վրա, որ փոքր-ինչ հանգստանա։ Նրա շուրջը ծածկված էր դիակներով, որ ընկել էին իր ձեռքով։ Այդ միջոցին վիրավոր լեզգիներից մեկը, որի շունչը դեռ չէր կտրված, ատրճանակը բարձրացրեց և գնդակով զարկեց նրան։ Քաջի մարմինը թաղվեցավ Գանձակի մայր եկեղեցու գավթում։

Գժի հետ ծանոթացանք, հիմա անցնենք Թյուլի-Արզումանին։

Թյուլի թուրքաց լեզվով նշանակում է ավազակ, բայց ոչ այն տեսակ մանր ավազակներից, որոնք գիշերը ծածուկ կերպով մըտնում են քնած քաղաքացու տունը և կողոպտում են նրան։ Թյուլին բացարձակ կերպով է գործում. օր-ցերեկով քարավաններ, գյուղեր և քաղաքներ է կողոպտում։ Այդպես էր և Արզումանը։ Նա Մելիք-Աթամի հոր (Մելիք-Իսրայելի) հովիվի որդին էր, մանկության օրերում ուխարներ էր արածացնում, իսկ հետո Մելիք-Աթամի ընտիր զորապետներից մեկը դարձավ։

Փանահ-խանը այն պատճառով նեղված էր Թյուլի-Արզումանից, որ մի հնարքով նրա հորը, Սարգսին, բռնել ավեց, տարավ Շուշի

բերդում իբրև պատանդ պահեց, գուցե դրանով ազատվեր որդու հասցրած վնասներից։ Մի օր խանը ասաց Սարգսին.— Խրատիր քո որդուն, որ դադարե չարագործությունից. նա Ղարաբաղի երկիրը ավերակ դարձրեց. Մազե-կամուրջը թողեց կարոտ մարդիկների անցուդարձից։— Ես Արզուման անունով որդի չունեմ, պատասխանեց ծերունի հայրը սառնասրտությամբ։— Ինչպե՞ս չունես, հարցրեց խանը բարկանալով։— Մի՞թե այն արյունարբու Արզումանը, որ իմ երկրները կողոպտում է, որ իմ շինականների տները հրդեհում է, որը ինձ ամեն օր հանգստություն չէ տալիս, մի՞թե այդ ավազակը քո որդին չէ։— Այո՛, իմ որդին չէ, պատասխանում է դառնացած ծերունին,— եթե նա իմ որդին լիներ, քեզ մինչև այսօր կենդանի չի պիտի թողներ և քո բերդի ավերակները քո գերեզմանը պիտի դարձներ...»։

Խանը հրամայեց, իսկույն գլխատեցին հանդուգն ծերունուն։ Իսկ Արզումանը սպանվեցավ Գանձակի պաշարման ժամանակ, որի մանրամասնությունները կտեսնենք հետո։

Ջալաղան-Յուզբաշու պատմությունը կարճ է. նա բովանդակվում է հենց իր մականունի մեջ, որ ժողովուրդը տվել էր նրան։ Դա բառացի թարգմանությամբ նշանակում է հափշտակող կամ ասպատակող հարյուրապետ։ Եվ իրավ, նա ավելի մի ավազակապետ էր, քան թե զորապետ։ Մինչև այսօր Ջրաբերդի գավառում, Երիցմանկաց վանքի հանդեպ, մի նեղ ձորի մեջ, որի երկու կողմից բարձրանում էին ահագին անտառապատ լեռներ, Թրթռի գետի ափի մոտ ցույց են տալիս մի հին ամրոցի ավերակներ։ Այստեղ էր բնակվում «հափշտակող և ասպատակող հարյուրապետը»։ Նրա իսկական անունը հայտնի չէ. ժողովուրդը իր սիրելի հերոսին կոչում էր իր արհեստի անունով։ Այն ևս հայտնի չէ, թե որպիսի վախճան ունեցավ այդ քաջը։ Միայն պատմում են, թե դա էր այն պատգամավորներից մեկը, որոնք անդադար դիմում էին դեպի ռուսաց արքունիքը և իրանց հայրենիքի փրկության համար օգնություն էին խնդրում։ Երբ տեսան դիպլոմատիան չօգնեց, սկսեց գործել սրով։

## XIII

Հայոց դաշնակից մելիքները նկատեցին, որ Փանահ-խանին իսպառ ոչնչացնելու համար և նրա կողմնակից երկու հայ մելիքներին (Մելիք-Շահնազարին և Մելիք-Միրզախանին) պատժելու համար պետք էր արտաքին ուժերից ևս օգնուտ քաղել։

Երբ Պարսկաստանից եկավ Ղարաբաղի կողմերը ուրմեցի օվշար Ֆաթալի խանը (1761), Գյուլիստանի Մելիք-Յուսուբը և Ջրաբերդի Մելիք-Աթամը միացան նրա հետ։ Այդ Ֆաթալի-խանը Նադիր-շահի սիրելի և քաջ զորապետներից մեկն էր[1]։ Շահի մահից հետո, Պարսկաստանում հուզված խռովությունների ժամանակ, Ֆաթալի-խանը սրի ուժով հնազանդեցրեց ամբողջ Ատրպատականը, հետո արշավեց դեպի Ղարաբաղի կողմերը։ Միանալով հայոց մելիքների հետ, նա պաշարեց Շուշի բերդը։ Փանահ-խանը և Մելիք-Շահնազարը առժամանակ կարողացան քաջությամբ պաշտպանվել, բայց հետո անճարացած, ստիպված եղան անձնատուր լինել։ Ֆաթալի-խանը մեղանչեց այն պայմանի դեմ, որ դրել էր իրան օգնող երկու մելիքների՝ Աթամի և Յուսուբի հետ։ Այդ պայմանը կայանում էր նրանում, որ Ֆաթալի-խանը պիտի բավականանար միայն Շուշի բերդի կողոպուտով, իսկ Փանահ-խանին պիտի հանձներ Մելիք-Աթամի և Մելիք-Յուսուբի ձեռքը, որպես կամենային, այնպես վարվեին նրա հետ։ Բայց նա ստանալով Փանահ-խանից տասն հազար թուման փող, և նրա որդի երիտասարդ Իբրահիմ-աղային պատանդ առնելով, իր հետ տարավ Պարսկաստան։

Այդ պարտությունը երկար մոռանալ չկարողացավ Փանահ-խանը, պահելով իր սրտում այն ոխը, որ եթե հայոց մելիքները չօգնեին, պարսիկ խանը չէր կարող գրավել իր բերդը և իր որդուն որպես գերի տանել Պարսկաստան։ Այդ անցքն ավելի գրգռեց Փանահ-խանի թշնամությունը դեպի հայոց դաշնակից մելիքները և նորանոր կռիվների առիթ տվեց։

Հայոց դաշնակից մելիքներին հարկավոր էին նոր ուժեր։ Պետք է ի նկատի առնել, որ Ղարաբաղի մելիքությունների աշխարհագրական բաժանումներն այնպես էին դասավորված, որ երեք դաշնակից մելիքները խիստ դժվարությամբ կարողանում էին միանալ և ընդհանուր ուժերով դեմ դնել թշնամուն։ Որպես մեզ հայտնի է, դաշնակից երեք մելիքությունները՝ Գյուլիստանի, Ջրաբերդի և Տիզակի մելիքություններն էին։ Գյուլիստանը և Ջրաբերդը սահմանակից էին և այդ պատճառով կարող էին իրանց ուժերը միացնել, իսկ Տիզակը իր աշխարհագրական դիրքով բաժանված էր այդ երկու գավառներից։ Տիզակի և հիշյալ երկու գավառների

[1] Դա միևնույն օվշար (ցեղի անուն է) Ֆաթալի-խանն էր, որ Տաթևի վանքը կողոպտեց (1762), մի մասը ավերակ դարձրեց և Տաթևի վանահայր Հովհաննես եպիսկոպոսին սպանել տվեց։

մեջտեղում ընկած էին՝ Խաչենի մելիքությունը, Շուշի բերդը և Վարանդայի մելիքությունը, որոնք կապված էին Փանահ-խանի հետ։ Ուրեմն թշնամին մտել էր դաշնակիցների մեջտեղում։ Այդ էր պատճառը, որ Գյուլիստանի և Ջրաբերդի մելիքները շատ օգուտ չէին կարողանում քաղել իրանցից անջատված Տիզակի մելիքից, որը այդ ժամանակ Մելիք-Եսային էր։

Գյուլիստանի Մելիք-Յուսուբը և Ջրաբերդի Մելիք-Աթամը դիմում են վրաց իշխան Հերակլեի հայր Թեյմուրազին, առաջարկում են միանալ նրա հետ, Փանահ-խանի իշխանությունը ոչնչացնելու համար, խոստանում են, որ իրանք ևս պատրաստ կլինեն ամեն մի հարկավորած դեպքում օգնել վրաց իշխանին, որպես հավատարիմ դաշնակիցներ։ Թեյմուրազն ընդունում է հայոց մելիքների առաջարկությունը, որովհետև ինքն ևս թշնամություն ուներ Փանահ-խանի հետ։ Նա հավաքում է վրացիների, օսերի, խևսուրների և այլ լեռնցիների ահագին խառնիճաղանջ բազմություն, արշավում է դեպի Ղարաբաղի կողմերը (1762)։ Մելիք-Աթամը և Մելիք-Յուսուբը իրանց զորքերով միանում են նրա հետ։ Ասկարանի ավերակների[1] մոտ բանակ է դրվում, հայոց մելիքները մատակարարում են իրանց դաշնակից հյուրերի բոլոր պաշարեղենները։

Այդ միջոցին Փանահ-խանը նույնպես անգործ չէ մնում. նա ամրացնում է իր բերդը՝ Շուշին, օգնություն է կանչում իր երկու հավատարիմներին՝ Մելիք-Շահնազարին և Մելիք-Միրզա-խանին, որոնք իրանց ուժերով միանում են նրա հետ։

Ճակատամարտը կատարվում է Գարգար գետի ափերի մոտ, Ասկարանի ավերակներից փոքր-ինչ հեռու։ Փանահ-խանի զորքերը ջարդվում են և ինքը փախչում է դեպի Պարսկաստան։ Բայց երկու քաջեր՝ Դալի-Մահրասան (Ավագ վարդապետը) և Թյուլի-Արզումանը փախստականին Խուդափիրինի կամուրջից[2] բռնելով, ետ են բերում։

Մելիք-Շահնազարը հաղթվելուց հետո փախչում է և ամրանում իր Ավետարանոց բերդում. Մելիք-Միրզա-խանն էլ նրա մոտ ապաստան է գտնում։ Այդ միջոցին հայոց և վրաց միացած ուժերը պաշարում են Ավետարանոց բերդը, և մի քանի օրվա ընդդիմադրությունից հետո, գրավում են նրան։ Մելիք-Շահնազարը և Մելիք-Միրզախանը գերի են ընկնում. Ավետարանոց բերդը ավերակ

[1] Ասկարանի ավերակները Շուշի բերդից մոտավորապես 30 վերստ հազիվ հեռավորություն ունեն։

[2] Երասխ գետի վրա։

է դառնում. այդ երկու մելիքների և Փանահ-խանի երկրները բոլորովին ավարի են առնում, հրդեհում են և ամեն ինչ ոչնչացնում են։

Այդ բոլորից հետո Թեյմուրազը հիշյալ երկրների իշխանությունը տալով Մելիք-Աթամին և Մելիք-Յուսուբին, կամենում է վերադառնալ դեպի Վրաստան, Փանահ-խանին, Մելիք-Շահնազարին և Մելիք-Միրզա-խանին իր հետ տանելով որպես գերիներ։ Բայց հայոց դաշնակից մելիքները, Թեյմուրազի հետ սկզբից դրած պայմանի համեմատ, պահանջում են, որ Փանահ-խանին և հիշյալ երկու մելիքներին իրանց ձեռքը տա, որպես կամենան, այնպես վարվեն նրանց հետ, իսկ ինքը պետք է բավականանա միայն պատերազմական ավարով։ Թեյմուրազը կամենում է նույն խաբեությունը գործ դնել իր դաշնակիցների հետ, ինչ խաբեություն, որ գործ դրեց օվշար Ֆաթալի-խանը։ Նա բացարձակ կերպով չէ մերժում Մելիք-Աթամի և Մելիք-Յուսուբի պահանջը, բայց զանազան պատրվակներով հետաձգում է, մինչև իր զորքերի և գերիների հետ դուրս է գալիս Ղարաբաղի սահմաններից։

Մելիք-Աթամը և Մելիք-Յուսուբը հասկանում են, որ վրաց ընչաքաղց իշխանը դիտավորություն ունի մեծագումար փրկանք ընդունել Փանահ-խանից և նրա երկու մելիքներից, և այնուհետև նրանց բաց թողնել։ Այդ առիթ է տալիս սաստիկ հակառակության, հայ և վրաց դաշնակցությունը քանդվում է, և Մելիք-Աթամը ու Մելիք-Յուսուբը վիրավորված բաժանվում են Թեյմուրազից։

Բայց Մելիք-Աթամը և Մելիք-Յուսուբը այն տեսակ մարդիկներից էին, որ չէին կարող անպատիժ թողնել խաբեբային։ Նրանք իսկույն դիմում են Շիրվանի կառավարիչ Հաջի-Չելեբի[1] անունով

[1] Հաջի-Չելեբին ծագումով հայ էր։ Տասն և յոթերորդ դարու վերջերում, Շիրվանի Ղաբալա կոչված գավառի Սոգութլու գյուղում բնակվում էր Բարսեղ անունով մի քահանա, որին թուրքերը կոչում էին «ղարա-քեշիշ» (սև քահանա)։ Դա գաղթական էր Ղարաբաղի Խաչեն գավառից և տեղային մելիքների տոհմից էր։ «Սև քահանան» իշխանական փառասիրություն ուներ, դիմեց Սպահան պարսից շահից մելիքության ֆիրման ստացավ։ Բայց նա ուներ մի հակառակորդ՝ Մելիք-Մուհամմեդ անունով Ղաբալա գավառի Ղուրթղաշին գյուղում, որը թույլ չտվեց «սև քահանայի» ստացած ֆիրման գործ դրվեր։ Այդ Մելիք-Մուհամմեդը, ինչպես երևում է, նույնպես հայոց ծագումից էր, բայց մահմեդականություն ընդունած։ «Սև քահանան» նույնպես ընդունում է մահմեդականություն, որ կարողանա իր ֆիրմանը գործ դնել։ Բայց հակառակորդը ավելի զորավոր է լինում և քահանայի կրոնափոխությունը անցնում է ապարդյուն։ «Սև քահանայի» որդին էր Ղասաբ-Ղուրբանալին, որը մի հասարակ մսավաճառ էր։ Իսկ այդ հասարակ մսավաճառից ծնվեցավ Հաջի-Չելեբին, որը Շիրվանի զորավոր խաների նախահայրը եղավ։

խանին և առաջարկում են նրանց իրանց դաշնակցությունը, միանալու մասին վրաց իշխանի դեմ։ Այդ Հաջի-Չելեբին հաշտ էր Հայոց մելիքների հետ. մենք տեսանք, դեռ մի քանի տարի առաջ նա միացավ Մելիք-Աթամի և Մելիք-Յուսուբի հետ և միասին քանդեցին Փանահ-խանի Ասկարան անունով բերդը։ Բայց նա սաստիկ ատելություն ուներ դեպի վրացիները, այդ պատճառով սիրով ընդունեց Մելիք-Աթամի և Մելիք-Յուսուբի առաջարկությունը։

Մինչև Հաջի-Չելեբիի Կուր գետը անցնելը, մինչև հայոց երկու մելիքների հետ միանալը, կատարվեցավ մի այլ անցք։ Վրաց իշխան Թեյմուրազը Գանձակի մոտից անցկենալու ժամանակ, նրա զորքերը կողոպտում էին ճանապարհի վրա պատահած գյուղերը։ Նրա առաջը դուրս եկավ տեղային իշխան Շահվերդի-խանը, երկուսի մեջ սաստիկ կռիվ ծագեց։ Շահվերդի-խանը գերի բռնվեցավ։ Այդ միջոցին վրա հասավ Հաջի-Չելեբին հայոց երկու մելիքների հետ։ Մի թեթև ճակատամարտից հետո, որ կատարվեցավ Շեյխ-Նիզամի կոչված տեղում, վրացիները հաղթվեցան և թողնելով իրանց հափշտակած բոլոր ավարը, սկսեցին փախչել դեպի Թիֆլիս։ Հայոց և Հաջի-Չելեբիի զորքերը հետամուտ եղան, հալածեցին նրան մինչև Սընըղի կամուրջը, անցան Ղազախի և Շամշադինի գավառները, և, ամեն տեղ թալանելով, ետ դարձան։

Բայց այն, ինչ որ հայոց մելիքների ամենագլխավոր ցանկությունն էր, դժբախտաբար չկատարվեցավ։ Նրանք չկարողացան ձեռք ձգել ոչ Փանահ-խանին, ոչ Մելիք-Շահնազարին և ոչ էլ Մելիք-Միրզա-խանին։ Որովհետև մինչև նրանց հասնելը, Թեյմուրազը հիշյալ գերիներից մեծ գումար ստանալով, բաց էր թողել։ Հայոց մելիքները կարողացան ազատել միայն Գանձակի Շահվերդի-խանին և այդ երախտիքը ապագայում մեծ օգուտ ունեցավ, որովհետև, որպես պիտի տեսնենք հետո, Գանձակի խաների և հայոց մելիքների մեջ կազմվեցավ սերտ բարեկամական հարաբերություն։ Գանձակի բերդը դարձավ հայոց մելիքների և նրանց ժառանգների ապահով ապաստարան. ամեն մի տագնապի և դժվարին դեպքերի ժամանակ այստեղ էին պատսպարվում։

## XIV

Գանձակի Շահվերդի-խանը[1], բացի վերոգրյալ պատճառներից, վաղուց արդեն երախտապարտ էր Մելիք-Աթամին և նրա լավ

[1] Շահվերդի-խանը Ուղուրլու-խանի որդին էր։

քարեկամը։ Երբ Շահվերդի-խանի հայրը մեռավ, նրա եղբայրը, Մամատ-խանը, կամենում էր սպանել նրան Գանձակի խանությունը գրավելու համար։ Այդ միջոցին Շահվերդի-խանը փախավ Ջրաբերդ՝ Մելիք-Աթամի մոտ և իր կյանքը ազատեց։ Հետո Մելիք-Աթամը հայոց զորքերով նրան տարավ Գանձակ, և Մամատ-խանին խեղդել տալով, Շահվերդի-խանին հաստատեց իր հոր իշխանության մեջ։ Այդ օգնությունը չմոռացավ Շահվերդի-խանը, չմոռացավ և նրա որդի Ջավադ-խանը Մելիք-Աթամի ժառանգ Մելիք-Մեջլումի վերաբերությամբ, որպես պիտի տեսնենք մեր պատմության ընթացքում։

Իսկ Մելիք-Յուսուբը, որպես մեր ընթերցողին հայտնի է, մոր կողմից տոհմակից էր Շահվերդի-խանին։ Մելիք-Յուսուբի մայրը, Ղամար-սուլթանը, Շահվերդի-խանի եղբոր աղջիկն էր, քրիստոնեություն ընդունած։ Նրա պատմությունը հիշեցինք մեր հոդվածի սկզբներում։

Թեյմուրազի հետ ունեցած պատերազմներից հետո, Մելիք-Աթամը և Մելիք-Յուսուբը առժամանակ մնացին Գանձակում։ Շահվերդի-խանը նրանց հյուրասիրեց իր մոտ։ Շահվերդի-խանը բարեսիրտ մարդ էր, որպես առհասարակ եղել են Գանձակի խաները։ Նա ծագումով թուրք չէր, այլ պարսիկ էր. պարսիկները համեմատաբար ավելի բարի են եղել դեպի քրիստոնյաները, քան թե վայրենի, մանգոլական թուրքերը։ Իր սահմանակից և հեռավոր խաների մեջ (որպես էին Շաքիի, Շիրվանի Շուշիի, Դերբենդի, Բաքվի և այլ խաները) Շահվերդի-խանը ավելի բարձր դիրք ուներ և ձայն. նա պարսից կառավարությունից ճանաչված էր որպես բեգլեր-բեգի, այսինքն՝ իշխանների իշխան։

Շահվերդի-խանը կամեցավ հաշտեցնել Մելիք-Աթամին և Մելիք-Յուսուբին Փանահ-խանի հետ։ Քսանամյա անընդհատ պատերազմները, որոնք այնքան արյան և դժբախտությունների պատճառ դարձան, մաշել էին երկու կողմերի ուժերն ևս։ Ժողովուրդը բոլորովին ձանձրացել էր շարունակ կռիվներից, հանգստանալ էր ուզում։ Այդ էր պատճառը, որ Մելիք-Աթամը և Մելիք-Յուսուբը հաճությամբ ընդունեցին Շահվերդի-խանի առաջարկությունը։ Հաշտության գլխավոր պայմանները դրանք էին, որ Փանահ-խանը տեր լինի Շուշի բերդին, առանց իրավունք ունենալու միջամտել մելիքների երկրի և հպատակների գործերի մեջ. եթե հարկավոր լինի պատերազմ արտաքին թշնամիների հետ, պետք է վճռվի ընդհանուր համաձայնությամբ. Փանահ-խանը ինքնագլուխ ոչ ոքի

հետ պատերազմելու իրավունք չի պիտի ունենա. հայոց մելիքնե֊րի երկրներից հավաքված հարկերը պետք է գործ դրվեն տեղային պետքերի համար. Փանահ-խանը Ղարաբաղի մեջ նոր նվաճումներ անելու համարձակություն չի պիտի ունենա և այլն։

Փանահ-խանը, քանի կենդանի էր, պահպանեց խաղաղության այդ պայմանները։ Նրա մահից հետո որդին, Իբրահիմ-խանը, թեև առժամանակ հետևեց հոր օրինակին, բայց հետո ոչնչացրեց հոր դաշնադրությունը և հանգամանքները փոխվեցան...

Ավելորդ չէր լինի մի քանի խոսք ասել Փանահ-խանի մահվան մասին։

Մենք տեսանք, որ ուրմեցի օվշար Ֆաթալի-խանը, միանալով հայոց մելիքների հետ, պատերազմեց Փանահ-խանի հետ և նրան հաղթելով, որդուն, Իբրահիմ-աղային, իբրև պատանդ տարավ Պարսկաստան։ Այդ Ֆաթալի-խանը հետո Պարսկաստանում պատերազմ ունեցավ Ասկար-խանի հետ (որը զենդ Քերիմ-խանի եղբայրն էր) և սպանեց նրան։ Երբ Քերիմ-խանը զորացավ և Պարսկաստանում շատ նվաճումներ կատարեց, կամեցավ պատժել Ֆաթալի-խանին իր եղբոր սպանման համար։ Շիրազից գալով, պաշարեց նա Ֆաթալի-խանի Ուրմի բերդը (1762) և նրան կալանավորելով, տարավ Շիրազ։ Այդ ժամանակ Քերիմ-խանը ազատեց Փանահ-խանի որդի Իբրահիմ-աղային, որը Ուրմի բերդում պահված էր, նրան ևս իր հետ Շիրազ տարավ։

Փանհ-խանը լսելով այդ դեպքը, մեծ ընծաներով գնաց Պարսկաստան Քերիմ խանի մոտ, իր որդուն ստանալու դիտավորությամբ։ Երկու տարի մնաց Շիրազում, վերջը տեսնելով, որ ոչ իրան են բաց թողնում և ոչ որդուն են տալիս, իր հատուկ խորամանկությամբ հնարեց մի խաղ, որ գոնե իր անձը կարողանա ազատել։ Որովհետև Քերիմ-խանը, որ այդ ժամանակ իրան ամբողջ Պարսկաստանի թագավոր էր համարում, երկրի խաղաղությունը պահպանելու համար չէր ցանկանում Ղարաբաղի խռովարարին կրկին բաց թողնել իր հայրենիքը։ Փանահ-խանը իրան ձևացրեց մեռած և դրվեցավ դագաղի մեջ։ Նրա մարդիկը, դիմելով Քերիմ-խանին, խնդրեցին, որ թույլ տա կատարելու հանգուցյալի կտակը, նրա մարմինը տանելով իր հայրենիքը, այնտեղ թաղելու համար։ Քերիմ-խանը հասկացավ խորամանկությունը։— Ես նրան պետք է պատվով հուղարկավորեմ...— ասաց նա,— նրա մարմինը ճանապարհին կհոտի. հարկավոր է գմռսել նրան...

Քերիմ-խանի հրամանով դահիճները դուրս թափեցին կենդա֊

նի հանգուցյալի փորոտիքը, որպես անում են դիակները զմռսելու համար, հետո հանձնեցին նրա մարդիկներին, ասելով, թե հիմա կարող եք տանել։ Նրա մարմինը բերվեցավ Ղարաբաղ։

Այս մահով մեռավ Փանահ-խանը (1763)։ Այնուհետև Քերիմ-խանը մտածելով, որ որդին ավելի հավատարմությամբ կծառայե Պարսկաստանին, քան թե խորամանկ հայրը, նրան խանության աստիճան շնորհեց և ուղարկեց Ղարաբաղ։ Իբրահիմ-աղան դարձավ Իբրահիմ-խան և հաջորդեց հորը։

## XV

Իբրահիմ-խանը սկզբում պահպանեց իր հոր կապած դաշնադրության պայմանները հայոց մելիքների հետ, որովհետև դեռ թույլ էր և բոլորովին չէր ամրացած իր տեղի մեջ։ Բայց հետո մի քանի հանգամանքներ նպաստեցին նրան զորանալ և հայոց մելիքների հետ բռնությամբ վարվել։

Այդ հանգամանքներից մեկն այն էր, որ Վարանդայի Մելիք-Շահնազարը, այդ հայրենիքի դավաճանը, որ իր Շուշի բերդը տալով Փանահ-խանին, նրան ուժ և զորություն տվեց, որը իր աջակցությամբ այնքան բարձրացրեց հասարակ ջուանշիրցի խաշնարածին, որ Ղարաբաղի հայ իշխանությունների քայքայման պատճառը դարձավ,— այժմ միևնույն Մելիք-Շահնազարը, Փանահ-խանի մեռնելուց հետո, իր վաղեմի բարեկամությունը նրա որդու հետ պահպանելու համար, կատարեց մի այլ ամոթալի գործ։ Նա իր աղջկան, գեղեցիկ Հյուրի-զադին տվեց Իբրահիմ-խանին կնության։ Մելիք-Շահնազարի այդ վարմունքը սաստիկ վրդովեցրեց հայոց մյուս մելիքներին, մանավանդ Տիզակի Մելիք-Եսայուն, որովհետև Հյուրի-զադը իր աղջկանից ծնված էր[1]։

Այդ դեպքը առիթ տվեց սարսափելի կռիվների Մելիք-Շահնազարի և Մելիք-Եսայու մեջ, որոնք տևեցին մի քանի տարիներ։ Մելիք-Շահնազարը միացավ Խաչենի Մելիք-Միրզա-խանի հետ, և երկուսը միասին հարձակումներ էին գործում Մելիք-Եսայու Տող բերդի վրա։ Մի ճակատամարտի մեջ Մելիք-Միրզա-խանը գերի բռնվեցավ։ Մելիք-Եսային[2] իր սուրը բռնելով նրա գլխի վրա, արտասանեց հետևյալ խոսքերը. «Դո՛ւ, Միրզա-խան, շատ նման

[1] Մելիք-Շահնազարն ուներ մի քանի կնիկներ. նրա Սոնա անունով կինը Հյուրի-զադի մայրն էր և Մելիք-Եսայու աղջիկը։

[2] Մելիք-Եսային կարդացած մարդ էր, նա բավական հմտություններ ուներ հայոց, պարսից և արաբական դպրության մեջ։

ես այն դավաճանին, որին կոչում էին Մեհրուժան։ Նա ուրացավ մեր կրոնը, նա պարսից ձեռքում գործիք եղավ և սկսեց մեր հայրենիքը ավերակ դարձնել։ Նրան, որպես վարձատրություն իր կատարած չարագործությունների համար, խոստացել էին Հայաստանի թագը։ Մի ճակատամարտի մեջ նա ևս քեզ նման գերի ընկավ հայերի ձեռքը։ Այդ միջոցին հայոց զորավարներից մեկը, որին կոչում էին Սմբատ Բագրատունի, կրակի մեջ շիկացած շամփուրին պսակի ձև տվեց, և դնելով նրա գագաթի վրա, ասաց. «Դու ցանկանում էիր հայոց թագավոր լինել, ահա՛ ես, իբրև ասպետ և թագադիր, պսակում եմ քեզ...»։ Բայց դու գոնե Մեհրուժանի չափ փառասիրություն չունեիր. դու միայն մի ցած դավաճան էիր, որ առօրյա չնչին փառքի համար Թուրք խանի և Մելիք-Շահնազար չարագործի արբանյակը դարձար։ Քեզ հետ պետք է վարվել ինչպես մի կատաղած շան հետ, որին սպանում են, որպեսզի մյուս արարածները նրա կծոտելուց չվարակվեն...»։ Վերջին խոսքերի հետ նա իջեցրեց իր սուրը (1775)։

Մելիք-Միրզա-խանի փոխարեն Իբրահիմ-խանը Խաչենի կառավարիչ կարգեց նրա որդի Մելիք-Ալլահվերդուն, որը հոր նման հավատարիմ մնաց Թուրք խանին։ Դրանով կռիվը ավելի բորբոքվեցավ։ Եվ որովհետև կռիվների սկզբնապատճառը գեղեցիկ Հյուրի-զադն էր, այդ պատճառով Իբրահիմ-խանը նույնպես խառնվեցավ կռիվների մեջ, իհարկե, բռնելով Մելիք-Շահնազարի կողմը։

Մելիք-Եսային միայնակ պիտի պատերազմեր իր երեք թշնամիների դեմ, որպես էին՝ Իբրահիմ-խանը, Մելիք-Շահնազարը և Մելիք Ալլահվերդին։ Նրա հզոր դաշնակիցները այլևս չկային։ Մենք հետո կտեսնենք, որ Գյուլիստանի Մելիք-Բեգլարյան Մելիք-Յուսուբը վախճանվեցավ (1775) և նրա որդին, Մելիք-Աբով III, ավելի զբաղված էր իր երկրի կառավարությունով, քան թե պատերազմներով։ Մելիք-Յուսուբից հինգ տարի հետո՝ 1780 թվին վախճանվեցավ Ջրաբերդի Մելիք-Իսրայելյան Մելիք-Աթամը, այն սարսափելի մարդը, որից դողում էր Իբրահիմ-խանը։ Հանգուցյալի մահից հետո հաջորդեց որդին՝ Մելիք-Մեջլումը։ Այդ երիտասարդը թե հոր քաջությունը և թե նրա հայրենասիրությունն ուներ։ Բայց չափազանց դյուրագրգիռ և բարկացկոտ բնավորության տեր լինելով, նա հրացանի բռնել տվեց մի քանի նշանավոր հայ ազնվականների[1] և այդ պատճառով բարձրացրեց իր իշխանության

[1] Դրանցից մեկն էր Գյուլ-Յաթաղ գյուղի Միսայել-բեկը, մյուսը նրա փեսա-Հակոբ-Յուզբաշին։

*մեջ ներքին կռիվ։ Դրա համար ժամանակ չունեցավ Մելիք-Եսայուն օգնելու։*

*1781 թվին Իբրահիմ-խանը իր բարեկամ երկու մելիքների հետ պաշարեցին Մելիք-Եսայու Տող բերդը։ Նա քաջությամբ պաշտպանվում էր։ Պաշարումը տևեց երկար։ Հետո խանը Մելիք-Շահնազարի խորհրդով ուղարկեց նրա մոտ մի քահանա և մի նշանավոր հայ մարդ[1], երդումով, խաչով և Ավետարանով, որ Մելիք-Եսային ցած իջնե իր բերդից հաշտվելու համար։ Նա հավատաց և դուրս եկավ բերդից։ Իբրահիմ-խանը նրան բանտի մեջ խեղդել տվեց. նրա ամբողջ կայքը հափշտակեց և տունը ավերակ դարձրեց[2]։*

*Մելիք-Եսային խաբեության զոհ դառնալուց հետո, նրան հաջորդեց իր եղբոր (Մելիք-Աթամի) որդի Մելիք-Բախտամը։*

*Իբրահիմ-խանը ունեցավ մի երկրորդ ամուսնություն ևս, որը ոչ սակավ նպաստեց նրա զորանալուն։ Նա կին դարձրեց Դաղստանի Ավարիա գավառակի իշխող Օմար-խանի (Ումայի-խան) աղջկան, որ կոչվում էր Բիքա։ Այդ Օմար-խանը Նուսխալ-խանի որդին էր։ Փեսա դառնալով, մի կողմից Վարանդայի հայոց իշխանին, մյուս կողմից, Դաղստանի լեռնաբնակների խանին, Իբրահիմ-խանը սկսեց օրըստօրե զորանալ։ Ամեն մի սպառնալից դեպքում, նա կամ Դաղստանից օգնություն էր ստանում, կամ փախչում էր իր աներոջ մոտ, կյանքը ազատում էր։*

*Բայց միայն Մելիք-Շահնազարը և Օմար-խանը չէին Իբրահիմ-խանի զորանալու պատճառները. տեղի ունեցան և ուրիշ առիթներ, որոնք ոչ սակավ ուշադրության արժանի են։*

## XVI

*1775 թվին, որպես հիշեցինք, վախճանվեցավ Գյուլիստանի Մելիք-Բեգլարյան Մելիք-Յուսուբը ծերության հասակում։ Ղարա-*

---

*[1] Անունները հայտնված չեն այն գրչագիր պատմության մեջ, որից մենք քաղում ենք այդ անցքը։*

*[2] Նրա գերեզմանը գտնվում է բերդի եկեղեցու գավթում. տապանաքարի վրա կարդացվում է հետևյալ արձանագրությունը.*

*«Այս է տապան քաջ իշխանին, Սայի անուն մեծ մելիքին. կարգեալ իշխան Նադիր-շահին. եռեսուն երեք ամ տիրեաց Տիզակ երկրին. զքաջութիւն և զհաշխթութիւն՝ արար բազում ձեռամբ նորին։ Ընդ անօրինաց էր հակառակ. ի սուր մաշեր զԹշնամին։ Ինքն պարթև և զորավոր, քան զառաջինսն էր ահավոր։ Մինչ վաթսուն և վեց ամաց եղեալ, ի յաշխարհէ վերափոխեալ։*

*Վախճանվեցավ թվին ՌՄԼ (1781)»։*

բաղի մելիքների մի հայրենասեր և եռանդոտ դաշնակիցը պակսեցավ։ Նա կտակեց որդուն իր սուրը պատյանի մեջ չդնել, մինչև Ղարաբաղը խսպառ մաքրված չլինի մահմեդականներից։

Նա թողեց երկու որդի. երեցը կոչվում էր Բեգլար, կրտսերը՝ Աբով։ Հոր մահից հետո հաջորդեց Բեգլարը։

Դա Մելիք-Բեգլար II է, որը սաստիկ գոռոզ, քաջասիրտ և պատերազմասեր երիտասարդ էր։ Նա դեռ հոր կենդանության ժամանակ մասնակցում էր նրա կռիվների մեջ և հայտնի էր իր զարմանալի հաղթություններով։

Բայց այդ անպարտելի տղամարդը, որ իր երիտասարդությունը անցուցել էր պատերազմների մեջ, երկար չվարեց իր երկրի իշխանությունը։ Մի անգամ լեզգիների հետ ունեցած ճակատամարտում, որ տեղի ունեցավ Գանձակից ոչ այնքան հեռու, Գորանի գետի ափին, նույն անունով գյուղի մոտ Մելիք-Բեգլարը հրացանի գնդակից սպանվեցավ։

Նրա մահվան մասին ավանդությունը ստեղծել է մի այսպիսի լեգենդա. թե այն րոպեում, երբ մելիքը պատրաստվում էր պատերազմ գնալու, նրա մայրը, բարեսիրտ Հերիքնազը դուրս եկավ որդու առջև և արտասուքը աչքերում բռնեց նրա ձեռքից, աղաչում էր, որ իրան հեռու պահե արյունահեղությունից, որ գոնե այս անգամ պատերազմ չգնա, որովհետև ինքը վատ երազ է տեսել... տխուր կասկածներ տանջում են նրա սիրտը... Խստասիրտ որդին մերժեց մոր աղաչանքը և ձեռքով մի կողմ հրելով նրան, ցած ձգեց և ձին նստելով գնաց։ Բայց այլևս չվերադարձավ. մոր անեծքը պատժեց նրան...

Բայց Մելիք-Բեգլարի սպանման մեջ կար մի ամբողջ ռոման։

Մելիք-Բեգլարը ամուսնացած էր Վարանդայի Մելիք-Շահնազարի դստեր Ամարնանի (Մարիամի) հետ։ Բացի օրինավոր կնոջից նա պահում էր մի սիրուհի Բալա անունով։

Մինչև այսօր, երբ ուղևորը անցնում է Գյուլիստանի խարխափուլ գյուղից և մտնում է նույն անունով ձորի մեջ, ճանապարհի աջ կողմում ցույց են տալիս մի հին այգի։ Անտառային ծառերը աճելով, խառնվել են պտղատու ծառերի հետ և այգու վաղեմի գեղեցկությունը ծածկվել է վայրենի մացառների տակ։ Այդ տեղին կոչում են Մելիք-Բեգլարի այգի։ Այստեղ հատկապես շինել տված գեղեցիկ ամառանոցում ապրում էր իշխանի սիրուհին։ Ամառանոցի ավերակներն են մնացել այժմ։

Ամուսնի այդ տեսակ վարմունքը չէր կարող չգրգռել նրա

օրինավոր կնոջ, Ամարնանի, խանդոտությունը։ Այդ կինը, ինչպես վերևում հիշեցի, Վարանդայի Մելիք-Շահնազարի աղջիկն էր։ Իր հոր նման միջոցների մեջ ընտրություն անել չգիտեր նա. վաղուց մտածում էր վրեժխնդիր լինել Բալայից։ Նա ընտրեց հենց այն գիշերը, երբ իր ամուսինը զբաղված էր պատերազմական պատրաստություններով, իսկ առավոտյան պետք է կռվելու գնար։ Նա կաշառեց իրանց ծառաներից մեկին, որ կոչվում էր Լալա և ուղարկեց իր ախոյանուհուն սպանելու համար։ Եղեռնագործությունը կատարելու համար մի այլ զենքի կարոտություն չկար, ասում են՝ գեղեցիկ կնոջ մազերի հյուսերն այնքան երկար էին, որ չարագործը փաթաթեց նրա պարանոցով և իր մազերով իրան խեղդեց։ Մարմինը ձգվեցավ հորի մեջ։

Առավոտյան հենց այն րոպեում, երբ Մելիք-Բեգլարը պատրաստվում էր նստել ձին, որ գնա կռվելու, նրան լուր տվին, թե Բալան սպանված է։ «Երբ կվերադառնամ պատերազմից, ես գիտեմ, թե ի՞նչ կանեմ սպանողներին...»,— ասաց նա և գնաց։

Մելիք-Բեգլարի խստասրտությունը հայտնի էր եղեռնագործին։ Նա հասկացավ, որ մելիքը ամեն հնարներ գործ կդներ երևան հանելու սպանությունը և այն ժամանակ ոչ միայն իրան մահով կպատժեր, այլ իր ամբողջ ընտանիքը սրից անց կկացներ։ Երկյուղը նրան մի հանցանքից մի ավելի մեծ հանցանքի մեջ ձգեց։ Նա հետևեց մելիքին, որպես նրա թիկնապահներից մեկը, պատերազմի դաշտը։ Կռիվի խռովության ժամանակ թուփերի միջից անցավ հրացանի գնդակը և մելիքին ցած գլորեց։ Իհարկե, այն խառնաշփոթության մեջ ոչ ոք չէր կարող ստուգել, թե գնդակը արդյոք մի որևիցե լեզգու հրացանից արձակվեցավ, թե՞ մելիքի անձնական թիկնապահից։

Մելիք-Բեգլար II մահից հետո, նրա որդի Ջրեյդունը անչափահաս լինելով, Գյուլիստանի կառավարությունը անցավ հանգուցյալի եղբայր Աբով III ձեռքը։ Այդ Աբովն իր նախկին մյուս Աբովների նման, նույնպես հայտնի եղավ որպես մի քաջ պատերազմող։ Դրա կառավարության օրերում, որպես պիտի տեսնենք, կատարվեցան Ղարաբաղի բախտավոր և ամենադժբախտ անցքերը։

Եվ այսպես, Գյուլիստանի Մելիք-Յուսուբը մեռավ. նրա որդին՝ Մելիք-Բեգլարը սպանվեցավ. Տիզակի Մելիք-Եսային Իբրահիմ-խանի խաբեության զոհ դարձավ. Ջրաբերդի Մելիք-Աթամը մեռավ։ Նշանվոր փորձված մարդիկը անհետացան, մնացին դյուրագրգիռ, տաքարյուն երիտասարդները...

Մնացած մելիքների մեջ Իբրահիմ-խանն ավելի երկյուղ ուներ Ջրաբերդի Մելիք-Իսրայելյան Մելիք-Մեջլումից։ Այդ երիտասարդն իր հոր՝ Մելիք-Աթամի նման ամենակատաղի թշնամի էր Շուշի բերդի մահմեդական բռնակալներին։ Նրան ոչնչացնելու համար Իբրահիմ-խանը հետևեց իր հոր՝ Փանահ-խանի, քաղաքականությանը։ Այդ խորամանկ ջուանշիրցին, ինչպես իր տեղում տեսանք (XI գլ.), Խաչենի Հասան-Ջալալյան մելիքների իշխանությունը թուլացնելու համար ստեղծեց այնտեղ (Խնզիրիստան գյուղում) մի նոր մելիքություն՝ Մելիք-Միրզախանյանների տունը, որոնք ոչ սակավ, քան մահմեդականները վնասեցին Ղարաբաղի հայկական իշխանությունների քայքայմանը։ Այժմ Իբրահիմ-խանը, իր հոր օրինակին հետևելով, Ջրաբերդի Մելիք-Իսրայելյանների իշխանությունը թուլացնելու համար, մտածեց ստեղծել այնտեղ մի նոր մելիքություն։ Այստեղ Դյուլ-Յաթաղ գյուղում ապրում էին Ալլահվերդի-Յուզբաշու ժառանգները։ Դրանց հայրը ծառայում էր Մելիք-Աթամի մոտ, իսկ ժառանգները ծառայում էին Մելիք-Աթամի որդի Մելիք-Մեջլումի մոտ։ Իբրահիմ-խանը կանչեց իր մոտ Ալլահվերդի-Յուզբաշու որդի Միսայել-բեկին, հայտնեց նրան, եթե մի կերպով Մելիք-Մեջլումին կոչնչացնե, ինքը խոստանում է նրան օգնել, որ ամբողջ Ջրաբերդի վրա մելիք դառնա։ Միսայել-բեկը, հրապուրված խանի խոստումներով, համաձայնվեցավ կատարելու նրա ցանկությունը։

Միսայել-բեկը իր փեսա Հակոբ-Յուզբաշուն[1] իր հետ առնելով գնաց Մելիք-Մեջլումի մոտ իբրև հյուր։ Մելիքը այդ ժամանակ գտնվում էր իր սեփական ամառանոցում։ Թարթար գետի ափի մոտ, Ղազախ կոչված տեղում[2]։ Նա առանց կասկածանքի ընդունեց հյուրերին, որովհետև մեկը իր գյուղերի կառավարիչն էր, իսկ մյուսը՝ նրա փեսան։

Ընթրիքից հետո, երբ հյուրերը առանձնացան իրանց համար պատրաստված սենյակում քնելու, երկար նրանց ճրագը վառ մնաց։ «Հիմա հարկավոր է ճրագը հանգցնել...»— ասաց Միսայել-բեկը։— «Այո՛, ժամանակն է...»— պատասխանեց նրա փեսան։ Այդ ինքնըստինքյան անմեղ խոսակցությունը գրավեց մելիքի սպասա-

---

[1] Այդ Հակոբ-Յուզբաշին (հարյուրապետը) հայտնի էր անունով Թյուլի-Հակոբ, այսինքն՝ ավազակ Հակոբ. իր հատկանիշները բացատրվում են իր ստացած մականունով։

[2] Այդ տեղը այժմ կոչվում է Մարաղա, որովհետև բնակեցրած է 1828 թվի Պարսկաստանի Մարաղա անունով քաղաքից բերված գաղթականներով։

վորներից մեկի ուշադրությունը, և նա սկսեց ծածուկ լրտեսել խռովակցության շարունակությունը, որից նկատեց, որ հյուրերը ինչ-որ չար դիտավորություն ունեն։ Նա իսկույն իմացում տվեց մելիքի կնոջը, որը հրամայեց ծառաներին գաղտնի հսկել իր ամուսնի բնակարանի մոտ և սպասել հետևանքին։ Եվ իրավ, գիշերից բավական անցած, նրանք նկատեցին, որ հյուրերը մոտեցան մելիքի բնակարանին և փորձում էին ներս մտնել։ Երկուսին ևս կալանավորեցին։

Մյուս օրը Մելիք-Մեջլումը քննելով այն դրդիչ պատճառները, որոնցից հրապուրված իր հյուրերը կամենում էին սպանել իրան, հրամայեց թե Միսայել-բեկին և թե նրա փեսա Հակոբ-Յուզբաշուն, երկուսին էլ հրացանի բռնեցին։ Մելիքը այն աստիճան զայրացած էր, որ հրամայեց նրանց ամբողջ ընտանիքը բնաջինջ անել, բայց Միսայել-բեկի փոքր եղբայր Ռուստամ-բեկը առեց նրանց և փախավ Շուշի բերդը Իբրահիմ-խանի մոտ։

Այդ անցքը ոչ միայն ներքին երկպառակությունների պատճառ դարձավ, այլ հիշյալ Ռուստամ-բեկը, Իբրահիմ-խանի ձեռքում գործիք դառնալով, շատ չարիքներ գործեց Մելիք-Մեջլումի դեմ։ Այդ կտեսնենք մեր պատմության շարունակության մեջ, բայց այժմ այսքանը պետք է հիշել, որ Ռուստամ-բեկը մի նշանավոր մարդու Ապրես աղայի փեսան էր[1]։ Իր աներոջ հետ կազմեց մի զորեղ կուսակցություն ոչ միայն Մելիք-Մեջլումի դեմ, այլև բոլոր այն մելիքների դեմ, որոնք դաշնակից էին Մելիք-Մեջլումին, որպես էին՝ Գյուլիստանի Մելիք-Բեգլարյանները և Տիզակի Մելիք-Ավանյանները։

Եվ այդպես, թեև Իբրահիմ-խանին չհաջողվեցավ Մելիք-Մեջլումին սպանել տալ և Ջրաբերդում ստեղծել մի նոր մելիքություն իր հովանավորության ներքո, այսուամենայնիվ, նա հասավ իր նպատակին։ Նա կարողացավ կազմել մի նոր և հակառակ կուսակցություն, որի մեջ կար և կաթողիկոս։ Այսպիսով, Ղարաբաղի մելիքները երկու հակառակ կուսակցությունների բաժանվեցան. մեկը, Մելիք-Շահնազարյանների կուսակցությունը, որին պատկանում էին խամսին համախոհները և Երիցմանկաց վանքի կաթողիկոս-

[1] Այդ Ապրես աղան կապալատցի էր. նա ամուսնացած էր Երիցմանկաց վանքի Ներսես կաթողիկոսի քրոջ հետ։ Այդ ամուսնությունից ծնվեցավ մի որդի Իսրայել անունով և մի աղջիկ՝ Վարդ-խաթուն անունով։ Իսրայելը Երիցմանկաց վանքի կաթողիկոս դարձավ, իսկ Վարդ-խաթունը ամուսնացավ Ռուստամ-բեկի հետ։

ները, մյուսը, Մելիք-Մեջլումի և Մելիք-Բեգլարյանների կուսակցությունը, որոնք հակառակ էին խանին և միացած էին Գանձասարի վանքի կաթողիկոսի հետ։

## XVII

Որպես մի միջանկյալ պատմություն, մենք հարկավոր ենք համարում մեր ընթերցողներին ծանոթացնել վերև հիշած երկու, միմյանց հակառակ, կաթողիկոսությունների հետ, որոնցից մեկը գտնվում էր Գանձասարի վանքում, իսկ մյուսը՝ Երիցմանկաց վանքում, որոնք ոչ սակավ ներգործություն ունեցան Ղարաբաղի հայկական իշխանությունների կործանման վրա։

Մեր պատմության մեջ սակավ չէ այն տխուր երևույթների թիվը, որ ամեն անգամ, երբ ծագել է մի որևիցե ազգային կարևոր հարց, ամեն անգամ, երբ հայրենիքը տագնապի մեջ է գտնըվել, ամեն անգամ, երբ ժողովրդի բարօրության համար մխիթարական երևույթներ են նշմարվել,— մի խոսքով, ամեն մի բախտավոր և դժբախտ րոպեներում, երբ ժողովրդի ուշադրությունը լարված է եղել դեպի իր դրությունը,— հանկարծ ծագել են կրոնական կամ եկեղեցական վեճեր։ Ժողովուրդը թողել է իր կենսական հարցերը և զբաղվել է այդ վեճերով։

Մենք կարող էինք շատ օրինակներ բերել անցյալից[1], բայց կվեր առնենք հենց նույն պատմությունից, որը մեր հոդվածի նյութ ենք ընտրել։

Հայտնի է, որ Աղվանից կաթողիկոսությունը, սկսյալ Գրիգորիսի[2] օրերից, ավանդական կերպով շարունակվեցավ մինչև 1828 թվականը. ուրեմն նա ամբողջ 15 դար գոյություն ուներ։ Այդ կաթողիկոսության ներկայացուցիչները նստում էին Աղվանից աշխարհի զանազան վանքերում, իսկ վերջին ժամանակներում նրանց աթոռատեղին եղավ Ղարաբաղի Խաչեն գավառի Գանձասարի վանքը։

Խաչենը Հասան-Ջալալյան իշխանների ժառանգությունն էր. այնտեղ տիրում էին վերջին ժամանակներում այդ տոհմից առաջ

[1] Մի՞թե ներկայումս միևնույնը չէ. Բեռլինի 61-րդ հոդվածը մնացել է թղթի վրա. Կ. Պոլսի հայոց պատրիարքը նստած է իր տանը. Սսի կաթողիկոսը պտտերվում է Թուրքաց նախարարների դռներում և նորանոր չարիքների ճանապարհ է բաց անում, իսկ Մանկունին հայտնի է, թե ինչով է զբաղված...,

[2] Գրիգորիսը սուրբ Գրիգոր Լուսավորչի թոռն էր։

եկած մելիքները։ Կաթողիկոսներն ընտրվում էին դարձյալ միևնույն տոհմից։ Եվ այսպիսով քահանայապետությունը և մարմնավոր իշխանությունը գտնվում էր միևնույն տոհմի ներկայացուցիչների ձեռքում։

1651 թվին խոտորաշենցի Սիմեոն անունով մեկը (որը Հասան-Ջալալյանների տոհմից չէր, այլ մի հասարակ քահանայի որդի էր), Մռավ լեռան մթին ձորերի մեկի մեջ հիմնեց մի վանք Երիցմանկաց անունով և այդ վանքի կաթողիկոսը դարձավ։ Նրանից սկսվեցավ մի նոր և Աղվանից վաղեմի կաթողիկոսարանին հակաթոռ կաթողիկոսություն[1]։ Այդ երկու միմյանց հակառակ կաթողիկոսարանները (Գանձասարի վանքը և Երիցմանկաց վանքը), կանգնած էին միմյանց հանդեպ, ոչ ավելի, քան 24 ժամ ճանապարհի հեռավորությամբ։ Առաջինը գտնվում էր Խաչենի գավառում, իսկ երկրորդը՝ Ջրաբերդի գավառում։

Երիցմանկաց վանքի կաթողիկոսների աթոռակալությունը տևեց 1651 թվից մինչև 1800 թվականի վերջը։ Դա այն ժամանակամիջոցն էր, երբ Ղարաբաղի հայերի ամեն մի իզուր վատնած րոպեն նրանց համար մեծ կորուստ էր։ Այդ ժամանակամիջոցում զարթնել էին Ղարաբաղի մելիքների անկախության ձգտումները, նրանք, սկսյալ Պետրոս Մեծի օրերից, ծանրակշիռ բանակցություններ ունեին ռուսաց արքունիքի հետ, պատերազմում էին պարսիկների և օսմանցիների հետ. ամբողջ Ղարաբաղը շարժման մեջ էր։ Այդ տարիները Ղարաբաղի պատմության ամենատագնապալի ժամանակներն էին...

Բայց ի՞նչ էին շինում կաթողիկոսները։

Բաղդասար միտրոպոլիտի կազմած և մեր ձեռքում այժմ գտնված զանազան ֆիրմանների և հրովարտակների հավաքածուից երևում է, որ Գանձասարի և Երիցմանկաց կաթողիկոսարանների միմյանց հակառակ աթոռակալները[2], հիշյալ ժամանակամիջոցում, երբ Ղարաբաղի ժողովուրդը զբաղված էր իր հայրենիքի անկախության խնդրով,— կաթողիկոսները, ընդհակառակն, զբաղված են եղել կռիվներով, միմյանց վրա գանգատներ անելով, միմյանց ձեռքից վիճակներ խլելու համար։

---

1 Սիմոնին հաջորդեց նրա ազգական Ներսեսը, հետո Ներսեսի քրոջ որդի Իսրայելը, հետո Սիմոնի եղբորորդի՝ փոքր Սիմոն կաթողիկոսը, որ վերջինն էր։

2 Երիցմանկաց վանքի կաթողիկոսների ժամանակակիցները Գանձասարի վանքում էին՝ Երեմիա, Եսայի, Հովհաննես և վերջինը Սարգիս, որ վախճանվեցավ 1828 թվին։ Բոլորը Հասան-Ջալալյան իշխանների տոհմից էին։

*Իհարկե, կաթողիկոսներից յուրաքանչյուրն ուներ իր կուսակցությունը, և այդ պատճառով կռիվների մեջ մասնակցում էին թե ժողովուրդը և թե ժողովրդի ներկայացուցիչները — մելիքները։*

*Չէ կարելի հերքել, որ կաթողիկոսների մեջ կային և օրինավոր մարդիկ, ինչպես Եսային և Ներսեսը, որոնք մելիքների հետ միացած, գործում էին հայրենիքի փրկության համար։ Բայց մի օրինավորի շինածը մյուս անպիտանները ոչնչացնում էին...*

*Այդ կտեսնենք հետո. հիմա շարունակենք մեր պատմությունը։*

*Երբ Իբրահիմ-խանը հաջորդեց Փանահ-խանին, միևնույն տարվա մեջ (1763) Գանձակում վախճանվեցավ Երիցմանկաց վանքի Ներսես կաթողիկոսը։ Դարձյալ միևնույն տարվա մեջ Ղարաբաղի մելիքները, գլխավորապես Ջրաբերդի իշխան Մելիք-Աթամը[1] օծել տվին Հովհաննեսին Գանձասարի վանքի կաթողիկոս։*

*Նույն միջոցում, երբ Հովհաննեսը Գանձասարի կաթողիկոս դարձավ, նրա հակառակ, Գանձակի հայերը, տեղային խանի օգնությամբ, օծել տվին Իսրայել եպիսկոպոսին կաթողիկոս Երիցմանկաց վանքի անունով (1763)։*

*Երկու կաթողիկոսների մեջ երկար հակառակություններ եղան։ Մելիքները դիմեցին էջմիածին, որը ավելի խառնեց գործը։ Խռովությունները վերջացան նրանով, որ Հովհաննեսը ընդունվեցավ որպես Գանձասարի օրինավոր աթոռակալ, իսկ Իսրայելը մնաց Գանձակում որպես նրա հակաթոռ։ Նա համարձակություն չունեցավ մինչև անգամ Գանձակից գալ իր վանքը (Երիցմանկաց վանքը), որի անունով օծված էր և այդ վիրավորանքի համար միշտ մի հարմար առիթ էր որոնում վրեժխնդիր լինելու իր հակառակորդից՝ Հովհաննես կաթողիկոսից։ Այդ առիթը գտավ նա. և իր վրեժխնդրությամբ ոչ միայն սպանել տվեց Հովհաննես կաթողիկոսին, այլ սպանեց այն մեծ գործը, որ Ղարաբաղի մելիքները ստեղծել էին...*

## XVIII

*1762 թվին ռուսաց գահը ժառանգեց Եկատերինա II կայսրուհին։ Նա սկսեց ուշադրություն դարձնել Հայաստանի և Վրաստանի վրա։ Հայոց հարցը կրկին զարթնեցավ։*

*[1] Հովհաննես կաթողիկոսը Մելիք-Աթամի հետ խնամություն ուներ. նրա քույրը՝ Ղամար-սուլթանը Մելիք-Աթամի կինն էր։*

Եկատերինա II կամեցավ իրագործել Պետրոս Մեծի նպատակները Հայաստանի և Վրաստանի վերաբերությամբ։ Այդ ժամանակ Ռուսաստանի հայոց առաջնորդն էր Հովսեփ արքեպիսկոպոս Արղության-Երկայնաբազուկը։ Վայելելով կայսրուհու առանձին ողորմածությունը և ավելի մոտ հարաբերություններ ունենալով ռուսաց արքունիքի հետ, Հովսեփ արքեպիսկոպոսը դարձավ թարգման հայ ժողովրդի բաղձանքների, որ վաղուց սնուցանում էր նա իր հայրենիքի վերականգնման մասին։

Նա ավելի մեծ եռանդով սկսեց հետևել իր նախորդի, Մինաս արքեպիսկոպոսի, օրինակին։ Այդ արժանահիշատակ եկեղեցականը, որպես տեսանք մեր պատմության սկզբում, գործում էր Պետրոս Մեծի օրերում, իր ընկեր Իսրայել Օրիի հետ։ Իսկ Հովսեփ արքեպիսկոպոսը գործում էր Հովհաննես Լազարյանի հետ։ Թե Օրին և թե Լազարյանը միևնույն հայրենիքից էին, այսինքն՝ Սպահանից գաղթած հնդկաստանցիներ։

Սպահանի և Հնդկաստանի հայերը թեև պատմական հանգամանքների պատճառով տարագրվեցան իրանց հայրենիքից, բայց իրանց սրտերը թողեցին Հայաստանի ավերակների մեջ։ Նրանք արևելքի հեռավոր խորքերում բախտ և հարստություն գտան, բայց Ինդոս գետի ափերից միշտ խորին կարոտով հիշում էին հայկական աշխարհը, որպես տարագրված Իսրայելը Տիգրիսի ափերից հիշում էր սուրբ Երուսաղեմը։

Նրանք չէին խնայում իրանց հարստությունը, եթե կարելի լիներ առանց արյունի ոսկով գնել հայրենիքի փրկությունը։ Եկատերինա II կայսրուհու գահակալությունից երկու տարի առաջ (1760) Անգլիայից Ս. Պետերբուրգ եկավ հայազգի Էմին Հովսեփյանը, որը բնիկ Պարսկաստանի Համադան քաղաքիցն էր, իսկ Հնդկաստանում միլիոններ էր վաստակել։ Նա առաջարկեց իր բոլոր հարստությունով օգնել ռուսներին, եթե կընդունեին իրանց զորքերով մասնակցել հայերի հետ, Հայաստանը պարսից լծից ազատելու գործում։ Նրա առաջարկությունը համակրությամբ ընդունվեցավ։ Էմինը Ս. Պետերբուրգից եկավ Հայաստան. Ղարաբաղի մելիքները մեծ ոգևորությամբ ընդունեցին նրան։ Իրանք պատերազմելու համար սիրտ և զորեղ բազուկներ ունեին, իսկ Էմինը փող էր տալիս զենքեր գնելու համար։ Ուրեմն ամեն ինչ պատրաստ էր։ Վրաց և հայոց մեջ մի զորեղ դաշնակցություն կապելու համար Էմինը դիմեց և Քարթալինիայի իշխան Հերակլին, հայտնեց նրան իր միտքը։ Բայց այդ երկերեսանի իշխանը, որը

այդ ժամանակ մի կողմից պարսիկների փեշիցն էր բռնած, իսկ մյուս կողմից աչքերը դարձրած ուներ դեպի Ս. Պետերբուրգ, անհամակրությամբ վերաբերվեցավ դեպի Էմինի առաջարկությունը։ Հայոց կրեսոսը գնաց այնուհետև Կալկաթա քաղաքական առանձին խորհուրդներով։ Բայց վաղահաս մահը թողեց նրա նպատակները անկատար։ Նրա միլիոնները անտեր մնալով անգլիական բանկում, այնպես էլ կորան...

Հովսեփ արքեպիսկոպոսն այն աստիճան ոգևորված էր Հայաստանի փրկության գաղափարով, որ նա իր հայրենիքի վերականգնման հարցը կայսրուհու ողորմածությամբ արդեն իրականացած էր համարում։ Վերանորոգված Հայաստանը պիտի գտնվեր Ռուսաստանի հովանավորության ներքո, որպես առանձին ավատական իշխանություն։ Հովսեփ արքեպիսկոպոսին մինչև անգամ առաջարկվեցավ կազմել դաշնակցության ծրագիրը, թե ո՛րպիսի հարաբերություններ պիտի ունենար հայոց ազգը իրան հովանավորող պետության հետ։ Այդ դաշնագիրը, որպես հետո կտեսնենք, բաղկացած էր 19 հոդվածներից և բովանդակում էր իր մեջ գլխավոր հիմունքները, թե որպիսի կազմակերպություն պիտի ստանար վերանորոգված Հայաստանը և ինչ պարտավորություններ պիտի հանձն առներ նա ռուսաց պետության վերաբերությամբ։

Հիշյալ դաշնագիրը գրվեցավ 1790 թվին. միևնույն ժամանակ Հովսեփ արքեպիսկոպոսը կազմեց մի ընդարձակ տեղեկագիր, որի մեջ մանրամասնաբար նկարագրեց Ղարաբաղի մելիքների ունեցած հարաբերությունները ռուսաց արքունիքի հետ, սկսյալ Պետրոս Մեծի օրերից մինչև իր ժամանակը, և հիշեցրեց նրանց մատուցած մեծ ծառայությունները Ռուսաստանին։ Այդ տեղեկագիրը վերոհիշյալ դաշնագրի հետ արքեպիսկոպոսը ներկայացրեց կայսրուհուն գեներալ ֆելդմարշալ իշխան Գրիգորի Ալեքսանդրովիչ Պոտյոմկինի միջնորդությամբ։

Պոտյոմկինը Հովսեփ արքեպիսկոպոսի լավ բարեկամը և մտերիմն էր։ Ինչպես երևում է շատ պատմական փաստերից, նա արդեն իրան հայկական նոր իշխանության աթոռի կանդիդատ էր համարում։

Ընդհանուր հայերի ոգևորությանը չափ չկար. աշխարհի ամեն ծագերում ափոված հայերը արդեն գիտեին, թե շուտով Հայաստանը կվերականգնի։ Հովսեփ արքեպիսկոպոսը, այդ եռանդոտ, անխոնջ եկեղեցականը, շարունակ թղթակցություններ ուներ ամեն երկրների հետ, ուր որ հայեր կային։ Սկսյալ Հնդկաստանից մինչև

Լեհաստան, սկսյալ Եգիպտոսից մինչև Պարսկաստան նա տարածում էր իր թղթերը և ամեն տեղ բորբոքում էր հայրենասիրություն։ Նա թղթակցություն ուներ Վրաստանի իշխանների, Էջմիածնի կաթողիկոսի, Աղվանից կաթողիկոսի և Ղարաբաղի մելիքների հետ։

Ոգևորությունը այնքան մեծ էր, և Հայաստանի ազատության գործը այնքան իրականացած էր համարվում, որ Հնդկաստանում Հակոբ Շահամիրյանի հեղինակությամբ տպագրեցին մի գիրք, որ բովանդակում էր իր մեջ հայոց և վրաց միացյալ թագավորությունների վարչական և դատաստանական օրենքները։

Հնդկաստանի դրամատերերը չէին խնայում իրանց փողերը հեռավոր Հայաստանի ազատության գործին ծառայեցնելու համար։ Այդ միջոցներում հայտնվեցավ մի այլ հնդկաստանցի հայրենասեր, որ ցանկանում էր Հայաստանի ազատությունը գնել Պարսկաստանից և Թուրքիայից ոսկով։ Նա արդեն գնել էր վրաց Գիորգի իշխանից Լոռու գավառը և դիտավորություն ուներ գնելու նաև Բորչալուի գավառը, Երևանի նահանգը և ուրիշ երկրներ, որպեսզի այդ կողմերում զարգացներ բամբակի, շաքարեղեգնի, լեղակի և ղահվեի մշակությունը, գործարաններ բաց աներ և իր հայրենիքը տնտեսապես կենդանացներ։

Ռուսաց կառավարության այն ժամանակվա քաղաքական շահերը պահանջում էին, որ պետության արևելյան սահմանները պարսից և օսմանցոց հարձակումներից ազատ պահելու համար, որպես մի ամուր պատնեշ, վերականգնեցնեին հայ-վրաց միացյալ իշխանությունը, որը Ռուսաստանի հովանավորության ներքո, խոստանում էր հավատարիմ սահմանապահ լինել։ Արևելյան մահմեդականությունը միշտ մեծ վտանգ էր սպառնում Ռուսաստանին։ Հարկավոր էր մի միջնապարիսպ նրանց կատաղի հոսանքի առաջն առնելու համար, և այդ միջնապարիսպը պետք է լինեին քրիստոնյա հայերը և վրացիները։

Դեռ 1783 թ. ապրիլի 6-ին իշխան Գրիգորի Ալեքսանդրովիչ Պոտյոմկինը, որը հրապուրված էր անկախ Հայաստանի իշխանության գլուխ անցնելու բաղձանքով, հրամանագրեց նույն ժամանակվա կովկասյան զորքերի գլխավոր հրամանատար գեներալ պորուչիկ Պավել Սերգեիչ Պոտյոմկինին, որ նա իշխանությունից հեռացնե Շուշիի Իբրահիմ-խանին, օգնե հայոց մելիքներին հաստատելու համար Ղարաբաղում հայոց անկախ իշխանություն։ Միևնույն բովանդակությամբ հրաման կրկնվեցավ 1783 թ. մայիսի

10-ին, միևնույն գեներալ պորուչիկ Պոտյոմկինին, որ հայերին հուսադրե, որպեսզի նրանք գործակցեն ռուսաց կառավարության նպատակներին, որը դիտավորություն ունի կազմելու նրանցից մի զորեղ քրիստոնյա պետություն, Ռուսաստանի բարձրագույն հովանավորության ներքո։

Այդ բոլորը գիտեին Ղարաբաղի մելիքները. այդ բոլորը հայտնի էր Գանձասարի Հովհաննես կաթողիկոսին, որը մելիքների խորհրդակիցն էր. այդ բոլորը հայտնի էր և էջմիածնի կաթողիկոսին, որը գաղտնի մասնակցում էր ընդհանուր գործին։ Ղարաբաղի մելիքները խոստանում էին մատակարարել ռուսաց զորքերի բոլոր պաշարները և այլ պիտույքները, երբ նրանք իրանց կողմը կգային, խոստանում էին իրանց ուժերով միանալ ռուսաց զորքերի հետ։ Պատերազմը նշանակված էր 1784 թվի ամառը. գեներալ-պորուչիկ Պոտյոմկինը պատրաստված էր պարսիկների դեմ պատերազմ գնալու։ Այդ ժամանակ Ղարաբաղի մելիքների կողմից Ստեփան Դավթյան անունով մի պատվիրակ գնաց գեն. պոր. Պոտյոմկինի մոտ, հայոց պատրաստությունների և Անդրկովկասի քաղաքական դրության մասին նրան մանրամասն տեղեկություններ հաղորդելու։ Այդ Ստեփան Դավթյանը իր արժանավոր ծառայության համար վարձատրվեցավ պրեմիեր-մայորի աստիճանով։

## XIX

Մինչ ռուսաց կողմից այսպիսի պատրաստություններ էին կատարվում, մինչ Ռուսաստանի հայոց արքեպիսկոպոս Հովսեփը, վառված հայրենասիրության հոգվով, անխոնջ կերպով աշխատում էր իրագործել իր սկսած գործի մեծ գաղափարը, այդ միջոցներում Ղարաբաղում կատարվեցան մի քանի աղետալի դեպքեր։

Մենք տեսանք. մինը մյուսից հետո (1775—1780) վախճանվեցան Ղարաբաղի երկու նշանավոր իշխողները՝ Գյուլիստանի Մելիք-Յուսուբը և Ջրաբերդի Մելիք-Աթամը, որոնք իրանց հայրենիքի ազատության համար ամենաեռանդուն գործիչներ էին, որոնք ամբողջ քսան տարի պատերազմեցին Փանահ-խանի հետ և թույլ չտվեցին, որ նրա իշխանությունը տարածվի Ղարաբաղի վրա. Մելիք-Յուսուբին հաջորդեց որդին՝ Մելիք-Աբով III, իսկ Մելիք-Աթամին հաջորդեց որդին Մելիք-Մեջլումը։ Դրանք պահպանեցին նույն դաշնակցությունը, որ կապել էին իրանց հայրերը և շարու-

նակեցին նույն բանակցությունը, որ սկսել էին նրանք ռուսաց կառավարության հետ, իրանց հայրենիքի ազատության վերաբերությամբ։

Դարձյալ տեսանք, որ Մելիք-Աթամի վախճանվելուց մի տարի հետո (1781) Տիզակի տիրապետող Մելիք-Ավանյան Մելիք-Եսային Իբրահիմ-խանի խաբեության զոհ դարձավ։ Նրա հաջորդը, Մելիք-Բախտամը, ամենայն հավատարմությամբ պահպանեց իր նախորդի դաշնակցությունը վերոհիշյալ երկու մելիքների հետ։

Նույնպես տեսանք, երբ Հասան-Ջալալյան Հովհաննեսը Գանձասարի վանքի կաթողիկոս ձեռնադրվեցավ (1763), նրա հակառակ նույն տարվա մեջ, Գանձակում Իսրայել անունով մեկը նույնպես Աղվանից կաթողիկոս ձեռնադրվեցավ և մնաց տեղային Ջավադ-խանի պաշտպանության ներքո։ Այդ հակաթոռ Իսրայել կաթողիկոսը կործանեց այն մեծ շենքը, որը Հովհաննեսը և Ղարաբաղի երեք մելիքները մեծ ջանքերով կառուցել էին...

Մինչ Ղարաբաղի մելիքները մի կողմից քաղաքական բանակցություններ էին վարում ռուսաց կառավարության հետ, իսկ մյուս կողմից, ներքին երկպառակությունը ջլատում էր նրանց ուժերը, այդ միջոցներում Իբրահիմ-խանը քնած չէր, նա խիստ արթուն էր և գիտեր ամեն հանգամանքներից օգուտ քաղել։

Նա նկատում էր ռուսների պատրաստությունները. նրան աղոտ կերպով հայտնի էր, որ այդ պատրաստությունների և Ղարաբաղի մելիքների շարժումների մեջ կար մի գաղտնի կապ։ Նրան հայտնի էր և այն, որ վրաց Հերակլ իշխանը ծածուկ բանակցություններ ուներ մելիքների հետ։ Նա գիտեր, որ այդ բոլորը իր իշխանության կործանմանը վտանգ էր սպառնում։ Նա սկսեց ամրացնել Շուշի բերդը, պատրաստվեցավ վտանգի առաջն առնելու։

Ռուսները խոստանում էին օգնություն հասցնել հայերին և վրացիներին, բայց ուշանում էին։

Իբրահիմ-խանը տեսնում էր, որ առանց ռուսների օգնության էլ, հայոց և վրաց միացյալ ուժերը կարող էին նրան միանգամայն ոչնչացնել, մտածեց Վրաստանին կողմնակի կերպով մի հարված տալ, իսկ հետո դառնալ դեպի հայերը։

Մենք XV գլխում հիշեցինք, որ Իբրահիմ-խանը, բացի Մելիք-Շահնազարի աղջիկը իրան կին առնելուց, ամուսնացավ Ավարիայի տիրապետող Օմար-խանի քրոջ հետ։ Այդ խնամությունը մի ամուր դաշնակցական կապ դարձավ նրա և Օմար-խանի մեջ։ Իբրահիմ-խանը մտածեց վրաց Հերակլ իշխանին զբաղեցնել իր անե-

բոջ բարբարոս լեռնաբնակների հետ, որպեսզի նա ժամանակ չունենա հայերի հետ միանալու և իր դեմ գործելու։

Նրա դրդելով Օմար-խանը կովկասյան լեռնաբնակների ահագին բազմությամբ հարձակվեցավ Վրաստանի վրա (1782)։ Նախ Բորչալուն ավերակ դարձրեց, հետո մտավ Լոռու գավառը, պաշարեց Գյումուշ-խանա կոչված բերդը[1]։ Այդ բերդում ամրացած էին այն հույները, որոնք հանքերում աշխատում էին, այնտեղ էին ապաստանած և մերձակա հայոց գյուղերի բնակիչները։ Օմար-խանը գրավեց բերդը և բոլոր հույներին կոտորել տվեց, իսկ հայերից բազմաթիվ գերիներ վեր առեց։ Թեև Հերակլ իշխանը բացի վրացիներից, իր հետ 300 ռուսաց զինվորներ ունենալով, շտապեց Օմար-խանի բարբարոսությունների առաջը առնել, բայց չհամարձակվեցավ մոտենալ նրան։ Օմար-խանը կատաղի կերպով ամեն ինչ ավերակ դարձնելով, գերիների բազմությամբ անցավ Ախալցխա, որը այդ ժամանակ օսմանցիների ձեռքումն էր, և ձմեռը անցկացրեց տեղային կառավարիչ Սուլեյման-փաշայի մոտ։ Այստեղից Օմարը իր զորքերը ուղարկեց վրաց Վախամու բերդի վրա։ Այնտեղ ընտանիքով բնակվում էր իշխան Աբաշիձեն։ Օմարի զորքերը հիշյալ բերդը գրավեցին, բնակիչներին գերի վեր առին, որոնց թվումն էին Աբաշիձեի երկու աղջիկները, որոնցից մեկը Օմարը իր համար պահեց, իսկ մյուսին ընծա ուղարկեց Իբրահիմ-խանին։

Գարնանը Օմարը թողեց Ախալցխան և Երևանի նահանգի միջով անցավ Ղարաբաղի կողմերը և այնտեղից գնաց իր երկիրը, տանելով իր հետ բազմաթիվ գերիներ և կողոպուտ։ Բայց Երևանի և Ղարաբաղի բնակիչներին շատ վնասել չկարողացավ, որովհետև մինչև նրա հասնելը, բոլորը ամրացած էին անմատչելի տեղերում։ Այսուամենայնիվ, լեռնային գազանի կատարած այդ փոթորկալից շրջանը Վրաստանի և Հայաստանի միջով մի ազդու ցույց էր, որով Իբրահիմ-խանը կամեցավ զգալ տալ քրիստոնյաներին իր զորությունը։

## XX

Ղարաբաղի մելիքները սպասում էին 1784 թվի ամառին և գեներալ-պորուչիկ Պոտյոմկինի զորքերին, որ նրա հետ միանա-

[1] Գտնվում է Հաղպատի և Սանահինի մոտ և տեղային հանքերի անունով կոչվում է Գյումուշ-խանա, որ նշանակում է արծաթի տուն կամ արծաթի հանք։

լով, սկսեն պատերազմել մահմեդականների դեմ։ Անցավ մի տարի ևս, խոստացած օգնությունը չհասավ։

1785 թ. ապրիլ ամսում մի մարդ մուրացկանի հագուստով, ձեռքին բռնած մի ծանր ճանապարհորդական մահակ, Գանձասարի վանքից ճանապարհ ընկավ դեպի Գանձակ։ Այդ մուրացկանին սաստիկ արագընթացության համար կոչում էին «յորղա» Գրիգոր։ Նույն ամսի նույն օրում մի այլ մարդ Շահ-Մանսուր գյուղից ուղևորվեցավ դեպի Շուշի բերդը։ Այդ վերջինը մուրացկան չէր, ազնվական էր։ Նա ուղիղ ներկայացավ Իբրահիմ-խանի մոտ, հայտնեց նրան, թե հայոց մելիքները, Գանձասարի Հովհաննես կաթողիկոսի հետ միացած, մի նոր թուղթ գրեցին ռուսաց կայսրուհուն, և հրավիրում են ռուսներին, որ գան տիրեն քո երկրները,—մի խոսքով, դավաճանը մանրամասնաբար տեղեկություններ տվեց այն բոլոր պատրաստությունների և ռուսաց հետ ունեցած հարաբերությունների մասին, որ մինչև այնօր կատարել էին մելիքները և Հովհաննես կաթողիկոսը։

Թեև մելիքները իրանց պատրաստությունները սաստիկ զգուշությամբ էին կատարում, թեև նրանց մեջ պահպանվում էր խորին գաղտնապահություն, բայց այդ դավաճանը Հովհաննես կաթողիկոսի ընտանիքն էր, նրա հարազատ եղբայրն էր, նա ինքը մասնակցում էր խորհուրդների մեջ։ Դա Հասան-Ջալալյան Մելիք-բեկի որդի Ալլահ-Ղուլի-բեկն էր։ Մի եղբոր շինածը մյուս եղբայրը քանդում էր... Մեր պատմությունը բավական աղքատ է լավ մարդիկներով, իսկ հարուստ է դավաճաններով...

Իբրահիմ-խանին հայտնի էին ռուսաց պատրաստությունները. նա վաղուց արդեն սկսել էր ամրացնել Շուշի բերդը։ Նրան անորոշ կերպով հայտնի էին և հայոց գաղտնի հարաբերությունները ռուսների հետ, բայց այդ մասին նա մի հաստատ փաստ չուներ իր ձեռքում հայերին պատժելու համար։ Դավաճանը ցույց տվեց նրան փաստը։ Նա հայտնեց, թե մի սուրհանդակ, մուրացկանի հագուստով, իր ձեռքի գավազանի մեջ թաքցրած, նոր թղթեր տարավ Գանձակ, իսկ այնտեղից պիտի գնա Թիֆլիս։ Այդ թղթերին, ավելացրեց նա, ստորագրել են իմ եղբայր Հովհաննես կաթողիկոսը, Գյուլիստանի Մելիք-Բեգլարյան Մելիք-Աբովը, Ջրաբերդի Մելիք-Իսրայելյան Մելիք-Մեջլումը, Տիզակի Մելիք-Ավանյան Մելիք-Բախտամը և այլ նշանավոր եկեղեցական ու աշխարհական անձինք։

Վարանդայի Մելիք-Շահնազարը, Խնզիրիստանի Մելիք-Ալլահ-

վերդին, Դյուլ-Յաթաղի Ռուստամ-բեկը, խանի կողմնակիցները լինելով և միանգամայն հակառակ մյուս մելիքների ձգտումներին,— այդ պատճառով դաշնակից մելիքները չէին հրավիրել նրանց մասնակցելու իրանց խորհրդի մեջ։

Խանի հարցմունքին, թե կարելի՞ է արդյոք սուրհանդակի տարած թղթերը մի հնարքով ձեռք բերել, դավաճանը պատասխանեց, թե սուրհանդակը ներկայանալու է Գանձակում Իսրայել կաթողիկոսին, որ նրանից ևս թղթեր առնե ու հետո գնա. բավական է ձեզ հայտնել Իսրայել կաթողիկոսին, նա իսկույն կկալանավորե բոլոր թղթերը։

Իսրայելը վերջին ժամանակներում, թաքցնելով իր հին թշնամությունը, որ ուներ Հովհաննես կաթողիկոսի դեմ, առերես ցույց էր տալիս, թե նրա հետ համամիտ և համակամ է այն բոլոր խորհուրդների մեջ, որ պիտի կատարվեին հայրենիքի փրկության համար։ Նա Գանձասարի վանքում խաչի և ավետարանի վրա հանդիսավոր կերպով երդում տվող եկեղեցականներից մեկն էր, որոնք ուխտեցին հավատարիմ մնալ հայրենիքի ազատության գործին։ Բայց միևնույն ժամանակ այդ չարագործը շատ անգամ գաղտնի կերպով դիմել էր Իբրահիմ-խանին, հայտնելով նրան, որ եթե Հովհաննես կաթողիկոսին կհեռացնե և Գանձասարի վանքի կաթողիկոսական աթոռը իրան կտա, ինքը խոստանում է հավատարիմ լինել խանին։

Խանը այժմ հարմար առիթ գտավ փորձելու նրա հավատարմությունը։ Գանձակի Ջավադ-խանը իր հետ թշնամական հարաբերությունների մեջ լինելով, ինքը չէր կարող մարդ ուղարկել սուրհանդակին կալանավորելու համար։ Նա մի նամակ գրեց Իսրայել կաթողիկոսին, հայտնելով, թե նրա մոտ գալու է մի թղթատար՝ մուրացկանի հագուստով, որի ձեռքի գավազանի մեջ թաքցրած կան կասկածավոր թղթեր. եթե այդ թղթերը կկալանավորե և իրան կուղարկե, ինքը խոստանում է ամեն միջոցներով օգնել նրան, որ գրավե Գանձասարի կաթողիկոսական աթոռը։ Նամակը ուղարկվեցավ միևնույն դավաճանի՝ Հասան-Ջալալյան Ալլահ-Ղուլի-բեկի ձեռքով։

Թեև Իսրայել կաթողիկոսը շատ լավ գիտեր, որ խանի կամքը կատարելով, ո՛րպիսի սարսափելի վտանգի պիտի ենթարկեր հայոց մելիքներին և Հովհաննես կաթողիկոսին, թեև նա կարող էր հասկանալ, որ իր մատնությունով պիտի սպաներ հայրենիքի ազատության գործը, այսուամենայնիվ, իր փառքի և Գանձա-

սարի կաթողիկոսական աթոռն ավելի բարձր դասելով ամեն ազգային գործերից, նա կալանավորեց թղթերը և ուղարկեց Իբրահիմ-խանին։

## XXI

Իբրահիմ-խանը Իսրայել կաթողիկոսի ուղարկած թղթերը ստանալուց հետո լուռ մնաց, այնպես ձևացնելով, թե ինքը մելիքների գործողություններից ամենևին տեղեկություն չունի։ Հետո բարեկամաբար հրավիրեց իր մոտ Մելիք-Մեջլումին, Մելիք-Աբովին և Մելիք-Բախտամին, իբր թե երկրի կառավարության գործերի վերաբերությամբ նրանց հետ կարևոր խորհելիքներ ունի։ Երբ նրանք եկան, Մելիք-Մեջլումին և Մելիք-Աբովին կալանավորեց Շուշի բերդում, իսկ Մելիք-Բախտամին, որի հետ ավելի մեծ թշնամություն ուներ, մատնեց պարսից կառավարությանը, իբրև քաղաքական հանցավոր, որ ձգտում էր պարսից երկրների մեջ մտցնել ռուսներին։ Մելիք-Բախտամին տարան Պարսկաստան և բանտարկեցին Արդավիլի բերդում։ Պետք է ի նկատի առնել, որ այդ բերդում, պարսից վաղեմի սովորությունների համեմատ, բանտարկվում էին ոչ թե հասարակ հանցավորները, այլ միայն նշանավոր քաղաքական հանցավորները իշխանական բարձր տոհմերից։ Մելիք-Բախտամը, Մելիք-Ավան-խանի թոռը, նույնպես փոքր մարդ չէր։ Նրա ազգատոհմը ծանոթ էր Պարսկաստանին սկսյալ Նադիր-շահի օրերից։ Մելիք-Բախտամի կալանավորությունից հետո նրա երկիրը (Տիզակը) պարսկական գավառ դարձավ։

Մելիքներին իր ճանկերի մեջ պահելուց հետո, նա մի խումբ ձիավորներ ուղարկեց, Գանձասարի հարուստ վանքը կողոպտեցին. կայքերի մի մասը միայն կարողացան առաջուց թաքցնել։ Հետո Հովհաննես կաթողիկոսին բռնելով, իր հինգ եղբայրների հետ[1] բերեցին Շուշի բերդը։ Բոլորը բանտարկվեցան։ Այնուհետև սկսեց զանազան բարբարոսական տանջանքներով չարչարել նրանց։ Հովհաննես կաթողիկոսին թունավորելով բանտի մեջ սպանեց (1786). իսկ նրա եղբայրներին և մյուս ազգականներին ամբողջ ինն ամիս բանտի մեջ մաշեց։ Քսան օր շարունակ Սար-

[1] Հովհաննես կաթողիկոսը յոթ եղբայրներ ուներ, դրանցից մեկն էր Սարգիս եպիսկոպոսը, որ հետո կաթողիկոս դարձավ. մյուս վեց եղբայրները դրանք էին՝ Գաբրիել-բեկ, Դանիել-բեկ, Իսրայել-բեկ, Միխայել-բեկ, Ջալալ-բեկ և Ալլահ-Ղուլի-բեկ դավաճանը, որ մատնեց բոլորին։

գիս եպիսկոպոսի ոտները փայտով ծեծել էր տալիս, որ նա ցույց տա ռուսաց կառավարությունից ստացած թղթերը։ Բայց թղթերը առաջուց կրակի մեջ ձգելով այրել էին։ Վերջը Գանձասարի վանքը ութն հազար թուման[1] տուգանքի ենթարկելով, Սարգիս եպիսկոպոսից ստացավ այդ գումարը, հետո նրան իր եղբայրների հետ արձակեց բանտից։

Բայց Մելիք-Մեջլումը և Մելիք-Աբովը երկար չմնացին բանտում։ Նրանք կալանավորված էին առանձին տեղում։ Հենց որ նրանց կալանավորությունը լսեց Մելիք-Մեջլումի քաջ զորապետ Արղումանը, նա իր հետ առեց իր երկու աներկյուղ ընկերներին,— Դալի Մահրասային (Ավագ վարդապետին) և զարգար Մելքումին, գիշերով մտան Շուշի բերդը և բանտի դռները խորտակելով, ազատեցին մելիքներին։

Իսրայել կաթողիկոսը իր մատուցած ծառայությունների համար ստացավ Իբրահիմ-խանից Աղվանից կաթողիկոսական աթոռը, այն աթոռը, որի գրավելու համար նա սպանել տվեց Հովհաննեսին։ Բայց նրան թույլ տվեցին նստել Ամարասա վանքում, որ ավելի մոտ լինի խանին և մնա նրա ձեռքի տակ։ Գանձասարի վանքում այդ ժամանակ նստած էր նահատակված Հովհաննես կաթողիկոսի եղբայր Սարգիս եպիսկոպոսը։

Եվ այսպես, Խամսայի հինգ տիրապետող մելիքներից մնաց երկուսը՝ Մելիք-Բեգլարյան Մելիք-Աբովը և Մելիք-Իսրայելյան Մելիք-Մեջլումը։ Մյուս երեքը համարյա թե ոչնչացան։ Տիզակի Մելիք-Ավանյան Մելիք-Բախտամը աքսորվեցավ Պարսկաստան և որպես Արշակ Երկրորդը պահվում էր Անուշ բերդում, դա էլ նույնպես պահվում էր Արդավիլի բերդում։ Խաչենի Հասան-Ջալալյան մելիքները, որպես հետո կտեսնենք, Հովհաննես կաթողիկոսի մահից հետո, բոլորը ցրիվ եկան, տարագրվեցան։ Խաչենում տիրում էին Իբրահիմ-խանից կարգված մելիքները։ Մնում էր Վարանդայի իշխողը — Մելիք-Շահնազարը, բոլոր չարիքների հորինողը, Իբրահիմ-խանի սիրելին։

1787 թվին գեներալ Բուրնաշովը վրաց Հերակլ իշխանի հետ ռուսաց զորքերով մոտեցավ Գանձակին։ Մելիք-Մեջլումը և Մելիք-Աբովը Շուշի բերդից փախչելուց հետո անմիջապես գնացին Հերակլի և Բուրնաշովի մոտ։ Նրանք հույս ունեին, որ իրանց շատ անգամ հաղորդված խոստումների համեմատ, օգնական զորք կստանային, որ գնան Իբրահիմ-խանի հետ պատերազմեն և

[1] Մի ձեռագիր պատմության մեջ գրված է 56 հազար թուման։

իրանց հպատակներին կրկին տիրեն։ Եվ իրա՛վ, նրանց խոստացան տալ չորս հազար զինվորներ իշ. Օրբելյանիի հրամանատարության ներքո։

Բայց միևնույն ժամանակ (1787) ծագեց ռուսաց երկրորդ պատերազմը օսմանցիների հետ. գեներալ Բուրնաշովը անսպասելի հրաման ստացավ, որ իր գնդերով վերադառնա Ռուսաստան։ Այդ պատճառով Բուրնաշովը և Հերակլը չկարողացան կատարել իրանց խոստումները։

Հերակլը ռուսաց զորքերի հետ գնաց Թիֆլիս, իսկ Մելիք-Մեջլումը և Մելիք-Աբովը, զրկված օգնությունից, գնացին նրա հետ

Այդ տեսնելով, Իբրահիմ-խանը ավելի վստահություն ստացավ, ավելի կատաղի դարձավ։ Մինչև այնօր նա երկյուղ ուներ ռուսներից. բայց ռուսները հայտնվեցան և երազի նման դարձյալ աներևութացան։ Այնուհետև այլևս ի՞նչը կարող էր նրան զսպել։ Մելիքների միաբանությունը քայքայված էր. հայոց կաթողիկոսն անգամ նրա ձեռքում մի անարգ գործիք էր դարձել իր հայրենիքի կործանման համար։ Մնացել էին երկու մելիքներ միայն,—Աբովը և Մեջլումը — ճշմարիտ հայրենասերներ, պատվի և զգացմունքի տեր տղամարդիկ,— դրանք ևս օտարների դռներում օգնություն էին մուրում,— այն մարդիկը, որոնց զորությունից սարսափում էր Իբրահիմ-խանը։

Իբրահիմ-խանը, երբ լսեց, որ երկու մելիքները ռուսաց զորքերի հետ գնացել են Թիֆլիս, Մելիք-Մեջլումի մորը և Մելիք-Աբովի ընտանիքից մի քանի հոգի բռնել տվեց, և բերելով Շուշի բերդը, այնտեղ պահեց իբրև պատանդ։ Հետո Մելիք-Մեջլումի երկիրը կողոպտեց, ավերակ դարձրեց. նրա տեղը կարգեց Գյուլ-Յաթաղ գյուղի Ռուստամ-բեկին[1], որը խանի սիրելի Իսրայել կաթողիկոսի քրոջ ամուսինն էր։ Մելիք-Աբովի տեղը նույնպես ուրիշին կարգեց։

Իբրահիմ-խանը այժմ հասավ իր նպատակին. նա իրան ամբողջ Ղարաբաղի տերն էր համարում։ Այնտեղ մնացած մելիքները, թեև դեռևս վայելում էին իրանց վաղեմի արտոնությունները, բայց բացի Վարանդայի Մելիք-Շահնազարից, մյուսները խանի ստորադրյալներն էին համարվում։

---

[1] Այդ Ռուստամ-բեկը Միսայել-բեկի եղբայրն էր. մեր պատմության մեջ տեսանք, որ Միսայել-բեկը, կաշառված Իբրահիմ-խանից, կամենում էր Մելիք-Մեջլումին սպանել, որ Ջրաբերդի մելիքությունը ինքն ստանա։ Այժմ ստացավ նրա եղբայրը, անպատիվ հպատակություն խոստանալով մահմեդական խանին։

Բայց Մելիք-Մեջլումը և Մելիք-Աբովը հանգիստ չմնացին. նրանք չէին կարող անպատիժ թողնել մահմեդական խանին, որ իրանց հայրենիքը ավերակ դարձրեց...»

## XXII

Մելիք-Մեջլումը և Մելիք-Աբովը Թիֆլիսում երկար չմնացին։ Այնքան վշտություններ կրելուց հետո, հայրենիքը, ընտանիքը թշնամու ձեռքում թողնելուց հետո, մեծ հույսերով Թիֆլիս գալուց և այնտեղ հուսահատ մնալուց հետո, երկու մելիքները — Մեջլում և Աբով — դարձյալ իրանց երեսները հետ չէին դարձնում Ռուսաստանից, դարձյալ մեծ ակնկալություններ ունեին նրա պաշտպանության վրա։

Նրանք նամակով դիմեցին գեներալ-անշեֆ Տեկելլուն, նկարագրելով այն բոլոր դժբախտությունները, որ կրեցին իրանք, սկսյալ այն օրից, երբ գեներալ-պորուչիկ Պոտյոմկինի խոստումներից հրապուրված, անձնատուր եղան Ռուսաստանին, սկըսեցին պատերազմել Իբրահիմ-խանի հետ, նկարագրեցին այն բոլոր բարբարոսությունները, որ կատարեց այդ խանը։

Նրանք դարձյալ խնդրում էին կայսրուհու պաշտպանությունը՝ հետևյալ պայմաններով.

1) Բարբարոսների լուծը իրանցից հեռացնելու համար տալ իրանց իսկուրյամբ օգնություն զորքերով, թեև փոքր թվով։ Որովհետև նրանք միացնելով իրանց ուժերը ռուսաց զորքերի հետ, կարող էին միայն իրանց աշխարհի անունով ոչնչացնել պարսից զորությունը և ջնջել Շուշվա խանի իշխանությունը։ Միևնույն ժամանակ խնդրում էին՝ տալ իրանց մի գլխավոր հրամանատար, որ իր արժանավորություններով և հատկություններով ընդունակ լինէր գործին։

2) Եթե իրանք հիշյալ պաշտպանությունը ստանալ չէին կարող, խնդրում էին, որ թույլ տրվի իրանց տեղափոխել Կասպից ծովի ափերի մոտ, Դերբենդի շրջակայքում, այնտեղ նոր գաղթականություն հիմնելու համար։ Իսկ իրանց տրվելիք նոր երկրները պիտի համարվին իրանց սեփականություն, տալով մելիքներին և նրանց ժառանգներին լիակատար իշխանություն իրանց հպատակների վրա տիրելու։

Միևնույն ժամանակ Ղարաբաղի մելիքների պատգամավոր և ռուսաց գործակատար Ստեփան Դավթյանը խնդրում էր Պոտյոմ-

*կինին շուտափույթ օգնություն հասցնել մելիքներին։ Նա էլ խոստանում էր ուղարկել Դերբենդ վեց գունդ զորք, ցանկացողներին ռուսաց հովանավորության ներքո ընդունելու համար։*

*Հիշյալ գաղթականության մասին Ռուսաստանի հայոց արքեպիսկոպոս Հովսեփը իր ընդարձակ տեղեկագրի մեջ, որը իշխան Գրիգորի Ալեքսանդրովիչ Պոտյոմկինի միջնորդությամբ ներկայացրեց Եկատերինա II կայսրուհուն, ի միջի այլոց գրում է հետևյալը.*

*«Սեպտեմբերի 19-ին, 1789 ամի Ղարաբաղի մելիքները, իրանց ստացած* **մխիթարական** *թղթերի համար, հայտնեցին ինձ՝ հայոց արքեպիսկոպոսիս իրանց շնորհակալությունը, և իմացում են տալիս հետևյալի մասին.— թե իրանք, մելիքները, տեղեկություն են ստացել, իբր թե նորին պայծառափայլություն, իշխան Գրիգորի Ալեքսանդրովիչ Պոտյոմկինը, հրամայել է գեներալ Պետր Աբրամովիչ Տեկելլուն, որ մելիքներին կանչե Ռուսաստան և թե հիշյալ գեներալ Տեկելլու կողմից այդ գործի մասին իրանց ոչինչ հաղորդած չէ։ Այդ պատճառով ինձանից (արքեպիսկոպոսից) հատկապես խնդրում են, որ նրանց ճիշտ տեղեկություն տամ։ Մելիքները հայտնում են ինձ իրանց մեջ վճռած բոլոր պայմանները իրանց պահանջների վերաբերությամբ և խնդրում են, որ նրանց իմացում տամ նորին պայծառափայլության բարի կարգադրության մասին։*

*Հիշելով այն խնդիրքները, որ իրանց նախնիքը մատուցել են Պետրոս Մեծին, և հիմնվելով կայսրի ողորմածության վրա, որ նա ցույց էր տվել նույն խնդիրքների առիթով,— մելիքները այժմ նույնպես խնդրում են, որ իրանց թույլ տրվի գաղթել Դերբենդի կողմերը և այդ երկրները վավերացվին նրանց անունով որպես* **մշտական ժառանգություն:** *Իսկ եթե հարկ կհամարվի նրանց գաղթել Ռուսաստան, խնդրում են Վրաստանում գտնված ռուսաց զորքից օգնություն, որպեսզի իրանց ժողովրդի հետ միասին կարողանան անվտանգ կերպով հեռանալ Ղարաբաղի իշխանությունից։ Միևնույն ժամանակ հայտնում են, որ իրանց ամբողջ հասարակությունը, այդ երկու առաջարկության մեջ, համաձայնվելով մելիքների հետ, խնդրում են, որ նրանց տեղեկություն տան, թե արդյոք որտե՞ղ, ո՞ր երկրում նրանց հողեր կտան,— եթե Ռուսաստանում, ուրեմն ի՞նչ պայմաններով։ Մելիքները պահանջում են, որ բարեհաճեն վերահաստատելու իրանց ունեցած* **վաղեմի արտոնությունները,** *որ ամենահին ժամանակներից վայելում*

վին իրանք, և որը մինչև անգամ իրանց թշնամիները չեն կամեցել խափանել։ Այսինքն, որ նրանք իրավունք ունենան տիրելու իրանց հպատակների վրա, և իրանց հաջորդները նույնպես իրավունք ունենան ժառանգելու հոր իշխանությունը։ Նույնպես և այն երկրները, որ կտրվեն նրանց բնակության համար, կարողանան սեփականացնել իրանց միևնույն իրավունքներով։

Հիշյալ երկու մելիքները, Մեջլում և Աբով, իրանց խնդիրքը մատուցանելուց հետո, հավատացնում են, որ մնացյալ երեք մելիքներն ևս, որ մնացել են Ղարաբաղում, համաձայն են իրանց հետ։ Այդ բոլորը հաղորդելով ի գիտություն ձերդ պայծառափայլության (Պոտյոմկինին) նորին կայսերական մեծությանը զեկուցանելու համար, հատկապես և ամենախոնարհաբար խնդրում եմ, որ շնորհվի նրանց բարձրագույն ողորմած հովանավորություն, որով նշանավոր օգուտ կլինի Ռուսաստանին։ Իսկ ինձ պետք է հրահանգ տալ, թե ի՛նչ կարող եմ հայտնել նրանց։ Որովհետև ես առանց առանձին թույլտվության, առանց բարձրագույն բարեհաճության կամ ձեր պայծառափայլությունից տեղեկություն ստանալու, նրանց պատասխանել կարող չեմ։ Իսկ հիշյալ երկու մելիքների, Մեջլումի և Աբովի, նամակների իսկականը, իրանց թարգմանության հետ, ուղարկում եմ այդ թղթով»։

Թե ի՞նչ պատասխան ստացան մելիքները, մեզ հայտնի չէ, միայն այդքանը հայտնի է, որ ռուսները այդ միջոցներում զբաղված էին թուրքական պատերազմով և հազիվ թե ժամանակ ունեին մի հիմնավոր կարգադրություն անելու մելիքների ծանր դրությունը փոքր-ինչ հեշտացնելու համար։

Նրանք առժամանակ միայն մնալով Հերակլ իշխանի մոտ, առաջարկում էին նրան միանալ իրանց հետ և ոչնչացնել Իբրահիմ-խանի իշխանությունը, հիշեցնում էին նրան այն բարբարոսական ասպատակությունները, որ մի քանի տարի առաջ Վրաստանում կատարեց Ավարիայի Օմար-խանը Իբրահիմ-խանի դրդելով։ Հերակլը խոստանում էր կատարել նրանց ցանկությունը, միայն խորհուրդ էր տալիս փոքր-ինչ սպասել։ Բայց մելիքները սպասելու համբերություն չունեին, նրանց հպատակները, նրանց ընտանիքը մինչև անգամ գտնվում էին Իբրահիմ-խանի ձեռքում։

Այդ միջոցներում Հերակլը նամակ է ստանում Իբրահիմ-խանից։ Խանը գրում է նրան, որ Մելիք-Մեջլումին և Մելիք-Աբովին բռնե և իր մոտ ուղարկե։ Իսկ դրանց փոխարեն խոստանում էր խանը հետ ուղարկել այն 3000 թուրք ընտանիքներին, որոնք

առաջ վրաց հպատակներ էին, բայց Բորչալուի կողմերից փախել եկել էին Ղարաբաղ, բնակվում էին Ասկարանի բերդի մերձակայքում։

Վրաց իշխանը ոչ այնքան իր հպատակները հետ ստանալու ցանկությամբ, որքան երկյուղ կրելով Իբրահիմ-խանի վրեժխնդրությունից, մտածում է կատարել նրա հրամանը և իր մոտ ապաստանած հյուրերին վատությամբ կալանավորելով, ուղարկել դահճի մոտ։

Նրա խորհուրդը հայտնվում է հայոց մելիքներին։ Հերակլի քարտուղարը, որը կոչվում էր Միրզա-Գիորգին, և գիտեր պարսկերեն ու արաբերեն, ազգով հայ էր։ Նա Իբրահիմ-խանի նամակը կարդալուց հետո, բովանդակությունը հայտնում է մելիքներին։

Որպես պատմում են, Հերակլը Թիֆլիսի Օրթա-Ճալա կոչված այգիներում ճաշ է պատրաստում, այնտեղ հրավիրում է երկու մելիքներին, որ արբեցնե, այնուհետև իր սեղանի վրա կալանավորե հյուրերին։ Մելիքներին արդեն հայտնի էր նրա դիտավորությունը. դեռ ճաշից առաջ ձի են նստում, պատճառելով, թե կամենում են մերձակայքում որսորդություն անել իշխանի սեղանի համար։ Նրանք այլևս չեն վերադառնում։ Երկու մելիքները ունեին իրանց մոտ հարյուր ձիավորներ միայն, թողնում են անհյուրընկալ Թիֆլիսը և ուղևորվում են դեպի Գանձակ։ Ճանապարհին հանդիպում են նրանց վրացի սայլապաններ, որ գնում էին դեպի քաղաքը. դրանց միջոցով Մելիք-Մեջլումը լուր է տալիս Հերակլին, ասելով, թե գնացեք հայտնեցեք ձեր իշխանին, որ Մելիք-Մեջլումը չի մոռանա նրա հյուրասիրությունը***

Եվ իրավ, Մելիք-Աթամի պատվասեր որդին չմոռացավ վրեժխնդիր լինել վրաց իշխանի խաբեության համար. նրա սարքած ճաշը մի քանի տարուց հետո Թիֆլիսի կործանման պատճառը դարձավ***

Վրաց իշխանի նենգավորությունը սաստիկ վիրավորեց Մելիք-Մեջլումի զգայուն սիրտը։ Ռուսաստանի հայոց Հովսեփ արքեպիսկոպոսը այնքան մեծ համարում ուներ Հերակլի վրա, որ մինչև անգամ մտածում էր, եթե չհաջողվի իշխան Պոտյոմկինին հայ-վրաց միացյալ իշխանության աթոռի վրա բազմեցնել, նրանից հետո ի նկատի ուներ միայն Հերակլին։ Իսկ այդ երկչոտը, սարսափած Իբրահիմ-խանի նամակից, կամենում էր նրա ձեռքը մատնել Ղարաբաղի երկու նշանավոր մելիքներին, որոնց նույն

խանի դեմ օգնական զորք տալու հույսով հրավիրեց իր մոտ Թիֆլիս։

Երկու մելիքները Թիֆլիսից եկան Գանձակ. տեղային Ջավադ-խանը սիրով ընդունեց նրանց, բնակության տեղ տվեց իր քաղաքում և նրանց կեցության համար ռոճիկ նշանակեց։ Թեև Իբրահիմ-խանը մի քանի անգամ դիմեց Ջավադ-խանին և զանազան խոստումներով խնդրեց նրանից, որ մելիքներին իր ձեռքը տա, բայց Ջավադ-խանը ավելի մեծահոգի գտնվեցավ, քան թե վրաց իշխանը և մերժեց նրա խնդիրքը։

## XXIII

Երբ Մելիք-Մեջլումը և Մելիք-Աբովը հանգստություն գտան Գանձակ քաղաքում, այստեղ լսեցին այն բոլոր բարբարոսությունները, որ Իբրահիմ-խանը գործ էր դրել Հովհաննես կաթողիկոսի և առհասարակ Հասան-Ջալալյան տոհմի վրա,— լսեցին Գանձասարի հարուստ վանքի կողոպտիլը և շարունակ հալածանքները, որ բռնակալը կատարում էր այդ վանքի միաբանության վրա, չարչարելով նրանց և պահանջելով, եթե այլևս վանքային թաքցրած կայքեր են մնացել, իրանց ցույց տան։ Մելիք-Մեջլումը, որպես գիտենք, նահատակված Հովհաննես կաթողիկոսի քրոջ որդին էր։ Նա Գանձակից ուղարկեց մի խումբ ձիավորներ Թյուլի-Արզումանի և զարգար Մելքումի առաջնորդությամբ, որ գնան Գանձասարի վանքը, և Հովհաննես կաթողիկոսի եղբայր Սարգիս եպիսկոպոսին մյուս միաբանների հետ բերեն Գանձակ։

Արզումանի խումբը, գալով Խաչեն, թաքնվում է Գանձասարի վանքի մոտ, անտառի մեջ, Կրատափ կոչված տեղում, և իմացում են տալիս Սարգիս եպիսկոպոսին, որ պատրաստվի փախչելու։ Լրտեսների թիվը այդ ժամանակ այնքան բազմացել էր հայերի մեջ, որ Սարգիս եպիսկոպոսը ստիպված է լինում սկզբից մի խորամանկություն գործ դնել, որպեսզի իրանց փախուստի մասին խանին չմատնեն։ Նա հանկարծ լուր է տարածում, թե ասպատակներ են հայտնվել, պետք է հարձակում գործեն։ Այդ լսելով շրջակա գյուղացիները հավաքվում են Գանձասարի վանքի ամրության մեջ, որ այնտեղ պատսպարվեն։ Այդ ժամանակ եպիսկոպոսը նրանցից, որին որ կասկածավոր էր համարում, բռնել է տալիս և վանքում բանտարկում է։ Բայց չնայելով նրա

գործ դրած նախազգուշությանը, թշնամու համար միշտ պատրաստ հայ լրտեսներից մեկը արդեն խանին իմացում էր տվել բոլորը, թե Սարգիս եպիսկոպոսը փախչելու է Գանձակ և վանքի մնացած հարստությունը տանելու է իր հետ։

Խանը ուղարկեց մի խումբ ձիավորներ, որ փախստականներին կալանավորեն և վանքային բոլոր իրեղենները հափշտակեն։ Նրանք այնպես շուտափույթ կերպով վրա հասան, որ փախստականները միջոց չունեցան իրանց հետ վեր առնել վանքային իրեղենները, որոնք մնացին իրանց թաքցրած տեղերում։

Թեև վանքային հարստությունը ազատվեցավ, այսուամենայնիվ, Մելիք-Մեջլումի ուղարկած մարդիկներին մեծ քաջություն էր հարկավոր, որ կարողանային եպիսկոպոսին և նրա ընկերներին ազատել խանի ձիավորների ձեռքից։ Այդ միջոցին օգնության հասավ ինքը բնությունը։ Մռավ լեռների վրա պատեց Ղարաբաղի այն սովորական թանձր մառախուղը, որ մի քայլ հեռավորության վրա ոչինչ չէ կարելի տեսնել։ Արզումանը իր խումբը երկու մասի բաժանեց, մի մասը հանձնեց զարգար Մելքումին և պատվիրեց նրան, որ եպիսկոպոսին մյուսների հետ առանձին ճանապարհով տանե դեպի Գանձակ, իսկ ինքը մնացած մասի հետ ետ մնաց և սկսեց կռվել խանի ձիավորների հետ։ Նրան հաջողվեցավ մեծ հաղթություն գործել մի քանի հարյուր ձիավորների դեմ, որոնցից շատերին բռնելով, ականջները և քթները կտրեց, և ետ ուղարկեց, ասելով. «Գնացեք ձեր խանին խաբար տարեք, որ Արզումանը հեշտ կուլ տալու պատառ չէ...»։

Սարգիս եպիսկոպոսը իր եղբայրների հետ եկան Գանձակ 1791 թվին. նրա հետ էր պատանի Բաղդասարը[1], որ այդ ժամանակ 22 տարեկան էր։ Ջավադ-խանը[2] սիրով ընդունեց նրան, եպիսկոպոսին բնակության տեղ տվեց, ռոճիկ նշանակեց և այնուհետև Սարգիսը Գանձակի գավառի հայոց առաջնորդը դար-

---

[1] Բաղդասարը Սարգիս եպիսկոպոսի եղբայր Հասան-Ջալալյան Դանիել-բեկի որդին էր. նա եպիսկոպոս ձեռնադրվելուց հետո, Ղարաբաղի միտրոպոլիտ նշանակվեցավ և շատ նշանավոր գործեր կատարեց։

[2] Ջավադ-խանը իր հոր՝ Շահ-Վերդի-խանի նման շատ հայասեր մարդ էր. նա շարունակ հայոց եկեղեցի էր գնում և ներկա էր գտնվում հայոց բոլոր կրոնական տոներին և հանդեսներին։ Գանձակի մայր եկեղեցու սյուներից մեկի վրա կա փոքրիկ արձանագրություն. «Ջավադ-խանի սյունը»—այդ սյունի մոտ էր կանգնում նա, երբ որ գալիս էր հայոց եկեղեցին։ Հին, ցեղական թշնամություն ունենալով Շուշիի խաների հետ, Ջավադ-խանը ավելի բարվոք էր համարում բարեկամություն պահպանել հայոց մելիքների հետ, և Իբրահիմ-խանի հակառակ գործել։

ձավ։ Գանձասարի վանքը մնաց ավերակ դրության մեջ, զուրկ հոգևոր միաբանությունից։

Միևնույն տարում (1791), երբ Հասան-Ջալալյան Սարգիս եպիսկոպոսը եկավ Գանձակ, իր երկու եղբայրներին՝ Դանիել-բեկին և Ջալալ-բեկին այնտեղից ուղարկեց Գանձասար, որ վանքի թաքցրած կայքերը դուրս հանեին և բերեին Գանձակ։ Այդ վանքի անբավ հարստությունը Իբրահիմ-խանը հափշտակելու ժամանակ՝ կարողացել էին մի մասը միայն թաքցնել, որովհետև Սարգիս եպիսկոպոսի փախուստը այն աստիճան շտապով կատարվեցավ, որ նա ժամանակ չգտավ վանքի կայքերը իր հետ վեր առնելու։

Բայց նրա եղբայրներին նույնպես չհաջողվեցավ։ Դանիել-բեկը և Ջալալ-բեկը, թեև գաղտնի եկան Գանձասար, բայց իսկույն մատնվեցան։ Իբրահիմ-խանի մարդիկը բռնեցին նրանց, Ջալալ-բեկի գլուխը կտրեցին, իսկ Դանիել-բեկին կենդանի տարան խանի մոտ։ Խանը հրամայեց բանտարկել նրան; ասելով. «Գնա այնտեղ մնա՛, թող ռուսները գան և ազատեն քեզ...»։ Այդ խոսքերով գոռոզ խանը կամեցավ ծաղրել հայերի այն հույսերը, որ դրած էին ռուսների վրա։ Մի քանի օրից հետո նրան բանտից դուրս բերելով, հրամայեց մաս-մաս կտրատել...

Նրա քույրը, տիկին Ղամար-սուլթանը (Մելիք-Մեջլումի մայրը) այդ ժամանակ պահված էր Շուշի բերդում իբրև պատանդ։ Նա հավաքեց եղբոր մարմնի կտորտանքը և թաղել տվեց տեղային գերեզմանատանում[1]։

Մենք վերևում հիշեցինք, որ Իբրահիմ-խանը դավաճան Իսրայել կաթողիկոսին մատուցած ծառայությունների համար, Մելիք-Շահնազարի խորհրդով, նրան տվեց Ամարասա վանքը, և Ղարաբաղի վրա հովիվ կարգեց։ Այդ ժամանակ Երիցմանկաց վանքում նստած էր փոքր Սիմոն անունով մեկը կաթողիկոս։ Եվ այսպես, Ղարաբաղում երկու կաթողիկոսներ կային, Իբրահիմ-խանի հովանավորության ներքո։

---

[1] 1851 թվին Դանիել-Բեկի որդի Բաղդասար միտրոպոլիտը մի արձան կանգնեցնելով հոր շիրիմի վրա, փորագրել տվեց հետևյալ տողերը. «Յարձանիս շիրմի ամփոփեալ դնի՝ մարմին իշխանին Խաչէն գաւառի, վեհ իշխանազնեայ Դանիել-բեկի, որդոյ Մէլիք-բէկ իշխանապետի, ի տանէ հայկազն մեծ Ջալալ-Դօլի, տեառն Արձախայ հայոց աշխարհի, որ Ղարաբաղայ կամ Շուշվոյ նահանգ՝ նա սովորաբար արդ վերաձայնի։ Առ սուրբ հավատոյ սա լուսահոգին՝ նահատակի աստ յամրոցիս Շուշի, դառն տանջանոք Իբրահիմ-խանի, որ թշնամի էր Խաչին Քրիստոսի։ Ի 1240 թվին հայոց (1791)։

Այդ տեսնելով Գանձակում գտնված հայոց մելիքները՝ Մեջլումը և Աբովը, Ջավադ-խանի հետ միաբանելով, Իբրահիմ-խանի հակառակ, Սարգիս եպիսկոպոսին Գանձակում կաթողիկոս օծել տվին (1794)։ Պատմում են, օծության խորհուրդը կատարելու ժամանակ եպիսկոպոսների թվից մեկը պակաս էր. այդ պակասը լրացնելու համար ինքը Ջավադ-խանը կանգնեց եպիսկոպոսների շարքում, ասելով. «Օծեցեք, թող մեկն էլ ես լինեմ»։

Գանձակի հայերը այնտեղ գտնված մելիքների հետ դիմեցին էջմիածին, խնդրելով, որ Սարգսին հաստատեն Աղվանից կաթողիկոսության մեջ[1]։ Բայց էջմիածինը մերժեց նրանց խնդիրքը, պատճառ բերելով, թե Ղարաբաղում կան արդեն երկու կաթողիկոսներ՝ Իսրայելը և Սիմոնը,— թեև այդ երկու կաթողիկոսներն ավելի մահմեդականների հոգևորականներ էին, քան թե հայոց։

Եվ այսպես ծագեցան երկպառակություններ երեք միմյանց հակառակ կաթողիկոսների մեջ, որոնցից Սիմոնը նստած էր Երիցմանկաց վանքում, Իսրայելը նստած էր Ամարասա վանքում, իսկ Սարգիսը՝ Գանձակում։

Այդ երկպառակությունները երկար զբաղեցրին Ղարաբաղի և Գանձակի հայ հասարակություններին, մի այնպիսի ժամանակում, երբ Ղարաբաղի հայկական իշխանությունները Իբրահիմ-խանի ոտքերի տակ հետզհետե խորտակվում էին... և հայերը պետք է լուծեին մի մեծ ազգային խնդիր...

## XXIV

Մելիք-Մեջլումի և Մելիք-Աբովի Գանձակում գտնված ժամանակ, Իբրահիմ-խանը իրան դեռևս այդ երկու մելիքների վտանգից ազատված չէր համարում, մանավանդ, երբ տեսնում էր, որ նրանք միացել են իր թշնամու, Ջավադ-խանի, հետ։ Նա նկատում էր, որ Մելիք-Մեջլումի և Մելիք-Աբովի Ղարաբաղում թողած ժողովրդի մեջ ինչ-որ գաղտնի շարժում կա։ Այդ ժողովուրդը չէր կարող մոռանալ իր սիրելի մելիքներին և հպատակել այնպիսի հայ դավաճանների, որոնք մահմեդական խանից կարգված և մահմեդականի հլու էին։ Մենք տեսանք, որ Մելիք-Մեջլումի և Մելիք-Աբովի Ղարաբաղից հեռանալուց հետո, նրանց հպատակներին, Իբրահիմ-խանի օգնությամբ, սկսեցին տիրել Նոր

[1] Պետք չէ մոռանալ, որ ոչ միայն Ղարաբաղը Աղվանից կաթողիկոսության թեմ էր համարվում, այլև Գանձակի գավառը, Շամախու, Նուխու Դերբենդի և ուրիշ մի քանի գավառներ։

*մելիքներ։ Այդ օտար և խորթ մելիքներն անտանելի էին ժողովրդին։*

*Այդ էր պատճառը, որ Իբրահիմ-խանը կասկածելով, թե Գյուլիստանի և Ջրաբերդի հայերը (այսինքն՝ Մելիք-Մեջլումի և Մելիք-Աբովի հպատակները) կարող են միանալ Գանձակի հայերի հետ, և մեծ ուժ կազմելով, կարող են իրան վտանգ սպառնալ,— այդ մտքով սկսեց նրանց Գանձակի սահմանների մոտից տեղափոխել ուրիշ տեղ։ Գյուլիստանի բնակիչներին տարավ Խաչենի գավառը, իսկ Ջրաբերդի բնակիչներին տարավ Տիզակի գավառը[1] և այսպես ցրեց նրանց դեպի ամեն կողմեր։ Այդ ժամանակներում էր (1788), որ Մելիք-Աբովի հպատակներից (Գյուլիստանից) 500 ընտանիք, չկարողանալով համբերել Իբրահիմ-խանի բռնությանը, թողեցին իրանց հայրենիքը և գաղթեցին Գանձակի գավառը։ Ջավադ-խանը նրանց բնակության տեղ տվեց Շամքորի մեջ, որը իր իշխանության տակ էր գտնվում։ Դարձյալ այդ ժամանակներումն էր, որ Մելիք-Մեջլումի հպատակներից մոտ հազար ընտանիք թողեցին Ջրաբերդը, նույնպես գաղթեցին Գանձակի գավառը։ Ջավադ-խանը նրանց բնակության տեղ տվեց Շամշադինում։*

*Այդ գաղթականները, թեև անցան մի օտար հողի վրա, բայց դարձյալ գտնվում էին իրանց մելիքների հպատակության ներքո։ Ջավադ-խանը չէր իշխում նրանց վրա։ Մելիք-Մեջլումը տիրում էր իր ժողովրդին, իսկ Մելիք-Աբովը տիրում էր իր ժողովրդին։ Դրանք բնակվում էին Գանձակի գավառում որպես ժամանակավոր հյուրեր։*

*Այժմ ի դեպ է հիշել, որ ինչպես Ղարաբաղում կային հինգ հայկական մելիքություններ, այնպես էլ Գանձակի գավառում կային չորս հայկական մելիքություններ[2], որոնց մասին մեր պատմության մեջ ոչինչ չենք խոսացել։*

---

[1] *Այդ տեղափոխություններին պետք է վերաբերել այն երևույթը, որ այսօր Ղարաբաղի զանազան վիճակներում հանդիպում ենք շատ միևնույն անունով գյուղերի, որպես են՝ Հին-Խնծակ, Նոր-Խնծակ, Հին-Ջեյվա, Նոր-Ջեյվա և այլն։*

[2] Բարսումի *մելիքները, որպես էր Մելիք-Ռոստոմը և այլն։ 2)* Խաչակապի *մելիքները, որպես էր Մելիք-Մովսեսը և այլն։ 3)* Ոսկանապատի *մելիքները, որպես էր Մելիք-Յուսուբը և այլն։ 4)* Գետաշենի *մելիքները, որպես էր Մելիք-Եդգարի որդի Մելիք-Մնացականը և այլն։ Այդ մելիքները նույնպես ժառանգաբար իշխում էին իրանց ժողովրդի վրա, միայն դրանց և Գանձակի խանի մեջ այն հակառակությունը չկար, որպես Ղարաբաղի մելիքների և Շուշիի խաների մեջ։ Այդ մելիքները միշտ հաշտ են եղել Գանձակի խաների հետ և համարվել են նրանց ստորադրյալներ։*

Ղարաբաղի հայերի մի մասը խմբվելով Գանձակի գավառում, իրանց վաղեմի մելիքների իշխանության ներքո, սկսեցին այստեղից արշավանքներ գործել Իբրահիմ-խանի վրա։ Նրանց երբեմն օգնում էին և Գանձակի գավառի հայ մելիքները Ջավադ-խանի դրդելով։ Այդ արշավանքները տևեցին մի քանի տարի։ Արշավանքները ոչ այնքան տիրապետական նպատակներով էին կատարվում, որքան ասպատակության և ավարառության նպատակներով։ Ամեն մի հարձակում վերջանում էր կոտորածով, հրդեհով, ավերածով և գերիվարությամբ։ Ղարաբաղի Թուրքերը սկսեցին այդ ժամանակ հայի ձևով հագնվել, որ չճանաչվեն։ Ամեն մի Թուրք, որ հայերի ձեռքն էր ընկնում, անխնա կերպով սպանվում էր։ Արշավանքներին առաջնորդում էին Դալի-Մահրասան (Խելագ վարդապետը), Թյուլի-Արզումանը և շուշեցի զարգար Մելքումը։ Նրանք այն աստիճան նեղի մեջ դրին Իբրահիմ-խանին, որ բոլորովին կտրեցին Թարթար գետի անցքը և ոչ մի մահմեդական չէր համարձակվում դեպի Գանձակի կողմերը անցկենալ։

Իբրահիմ-խանը հարկադրվեցավ մի քանի անգամ դիմել Ջավադ-խանին, խնդրելով նրա միջնորդությունը, որ իրան հաշտեցնե Մելիք-Մեջլումի և Մելիք-Աբովի հետ, որ նրանք դադարեցնեն իրանց թշնամական գործողությունները, և վերադառնալով իրանց հայրենիքը, վայելեն իրանց վաղեմի իրավունքները, տիրելով իրանց երկրներին։ Բայց մելիքները չէին հավատում խաբեբայի խոստմունքներին, առաջարկում էին, թե իրանց հաշտությունը կկայանա այն ժամանակ միայն, երբ Շուշի բերդը կքանդվի և Իբրահիմ-խանը դուրս գալով այդ որջից, կհեռանա Ղարաբաղից, հիմնելով իր համար նոր բնակություն Ջուանշիրի անապատներում, ուր ապրում էին նրա նախնիքը։ Այդ առաջարկությունը խիստ ծանր էր. զրկվել Շուշի բերդի ամրությունից, նշանակում էր զրկվել ամեն բանից։ Պետք է ասած, որ Ջավադ-խանը նույնպես համակրում էր այն մտքին, որ Շուշի բերդը դատարկված և քանդված լինի։ Նրան անտանելի էր տեսնել իր հարևանության վրա մի նորաբուսիկ խանություն, ամրացած Շուշիի անմատչելի բարձրության վրա։ Նա անդադար կրկնում էր այդ խոսքը. «Անզովյալ լինի Մելիք-Շահնազարը, որ կյանք տվեց սատկած օձին, իր կուրծքի վրա ջերմացնելով նրան։ Եթե չլիներ Շուշի բերդը, չէր լինի և ջուանշիրցիների խանությունը...»։

Եվ իրավ, այդ բերդը հիմնեց Մելիք-Շահնազարը և տվեց

Փանահ-խանին։ Նա Ղարաբաղի կուրծքի վրա սկսեց զարգացնել մի նենգավոր, օձաբարո մահմեդական խանություն…

Փանահ-խանը համեմատաբար ավելի լավ էր. նա փոքրիշատե պահպանել էր իր ցեղի պարզությունը, նա ազատ էր մահմեդական մոլեռանդությունից և հայոց մելիքների հետ վարվում էր ոչ իբրև իշխող, այլ որպես դաշնակից։ Բայց Իբրահիմ-խանը հոր նման չէր։ Մանկությունից կրթված լինելով Պարսկաստանում, սովորել էր նա մահմեդական կրոնի բոլոր մոլեռանդությունները։ Նա ոչ միայն հալածում էր քրիստոնեությունը, այլ բռնությամբ ստիպում էր շատերին ընդունել մահմեդականություն։ Մելիքների տիրապետության ժամանակներում Ղարաբաղում ոչ մի թուրք բնակիչ չկար։ Եթե այսօր հանդիպում ենք Ղարաբաղում ամբողջ գյուղերի հայ-մահմեդական բնակիչներով, եթե տեսնում ենք հայոց գյուղերում թուրք ընտանիքներ, որոնք խոստովանվում են, թե իրանց նախնիքը հայեր են եղել,— այդ բոլորը Իբրահիմ-խանի ժամանակների պտուղներն են։

Խանի այդ վարմունքը սաստիկ վիրավորում էր հայոց մելիքների կրոնական զգացմունքը։ Նրանք մի այլ հնար չէին գտնում կրոնափոխության առաջը առնելու, միայն պատահած ժամանակ սպանում էին Քրիստոսի հավատքը ուրացողներին։ Դալի-Մահրասան (Ավագ վարդապետը) այսպես էր վարվում։ Նա երդվել էր, թե որքան թվով Իբրահիմ-խանը հայերից մահմեդական կդարձնե, ինքը նույնքան թվով թուրքեր պիտի կոտրե։ Իսկ Թյուլի-Արզումանը միսիոնարի դեր էր կատարում։ Նա իր ձեռքն ընկած մահմեդականներին ստիպում էր խոստովանվել քրիստոնեական կրոնի ճշմարտությունը և մահմեդականության ստությունը, իհարկե, ոչ թե քարոզներով, այլ սրի ուժով։ Մի դեպք, որ Ղարաբաղի հայերի բերանում առակի ձև է ստացել, արտահայտում է այդ մարդու կրոնական նախանձախնդրության հատկանիշները։ Մի անգամ Արզումանը պատահում է մի բարձրաստիճան թուրք մոլլայի, որը իր ծառաների հետ գնում էր Շուշի բերդը։ Բռնում է մոլլային, և իր սուրը նրա պարանոցի վրա դնելով, ասում է. «Եթե կխոստովանվես, որ Քրիստոսն աստված է, ես քեզ չեմ սպանի»։ Մոլլան խոստովանվում է։ Արզումանը այդ խոստովանությունը երեք անգամ կրկնել է տալիս և ապա բաց է թողնում մոլլային։ Այդ անցքը իմացում են տալիս Իբրահիմ-խանին։ Խանը մոլլային իր մոտ կանչելով, բարկությամբ հարցնում է. «Մի՞թե դու խոստովանվեցար, որ Քրիստոս աստված է։—«Այո՛, խոս-

տովանվեցա, պատասխանում է մոլլան։— Իսկ եթե դուք, վեհափառ խան, Արզումանի ձեռքը ընկնեիք, կասեիք, ոչ թե միայն Քրիստոսը աստված է, այլ և դու ինքդ, Արզուման, աստվածների աստվածն ես...»։

## XXV

Մի քանի տարի Գանձակի գավառում մնալուց հետո, Մելիք-Մեջլումի և Մելիք-Աբովի մեջ տիրող միաբանությունը սկսեց փոքր առ փոքր խախտվել։ Մելիք-Մեջլումը մի տղամարդ էր խոհեմ, զգաստ և սուր դատողությունով։ Իսկ Մելիք-Աբովը, թեև պատերազմների մեջ քաջ, աներկյուղ և անպարտելի էր, բայց բնավորությամբ սաստիկ դյուրագրգիռ և անհեռատես էր։ Ջավադ-խանը ավելի հարգում էր Մելիք-Մեջլումին. այդ գրգռեց Մելիք-Աբովի նախանձը։

Նրանց հակառակությունը ավելի սաստկացավ այն պատճառով, որ Մելիք-Աբովը ցանկանում էր իր ժողովրդով թողնել Գանձակի գավառը և գաղթել Վրաստան և Բոլնիսում նոր գաղթաշենք հիմնել։ Բայց Մելիք-Մեջլումը չէր համաձայնում այդ մտքի հետ։ Նա այժմ բոլորովին ցանկություն չուներ թողնել հայրենիքը և ապաստան գտնել մի նոր գաղթականության մեջ։ Նրանք առանց դրան էլ իրանց հայրենիքից դուրս էին ապրում։ Բայց Գանձակի գավառը, Մելիք-Մեջլումի մտածելով, ավելի մոտ էր Ղարաբաղին, այստեղից ավելի հեշտ կլիներ պատեհ ժամանակում կրկին անցնել Ղարաբաղ։ Բայց Վրաստան գնալ և վրաց իշխանի գործ դրած նենգավորություններից հետո վրացիների հետ դարձյալ գործ ունենալ,— նա ամենևին չէր կամենում։

Ջավադ-խանի բոլոր ջանքերը իզուր անցան երկու մելիքներին հաշտեցնելու համար։ Մի անգամ ամենաչնչին առիթով Մելիք-Աբովը կռվեց Մելիք-Մեջլումի հետ։ Երկուսն էլ Ջավադ-խանի մոտ ճաշի էին հրավիրված. օրը պաս էր. Մելիք-Մելջումը անխտիր ուտում էր բոլոր կերակուրներից, իսկ Մելիք-Աբովը հրաժարվում էր ասելով, թե ինքը մեղք է համարում պասը լուծել։ Այդ առիթ տվեց վիճաբանության և Մելիք-Աբովը սկսեց սաստիկ նախատել Մելիք-Մեջլումին, թե նա մեղանչում է հայոց կրոնի դեմ և այլն։ Այդ օրից նա թողեց Գանձակը և իր ժողովուրդը վեր առնելով գնաց Բոլնիս։

Բոլնիսում էլ Մելիք-Աբովը հակառակություն ունեցավ վրաց

իշխանների հետ, երկար այնտեղ մնալ չկարողացավ։ Հետո (1795) թողեց Բոլնիսը և Իբրահիմ-խանի հետ հաշտվելով, վերադարձավ Ղարաբաղ, բնակվեցավ իր հայրենի երկրում, Գյուլիստանում։ Բայց հանգամանքները, որպես հետո կտեսնենք, կրկին ստիպեցին նրան թողնել հայրենիքը...

## XXVI

1791 թվին վախճանվեցավ Մելիք-Շահնազար II։ Ղարաբաղը ազատվեցավ իր կործանողից։ Բայց Խամսայի մելիքություններին հասցրած նրա հարվածը այն աստիճան մահացու էր, որ այլևս ոչինչով բժշկել չէր կարելի...

Մահվան անկողնում զղջաց նա, կամեցավ հաշտվել իր խղճի և աստծո հետ։ Եվ որպես այդ տեսակ մարդիկ միշտ կրոնական բարեպաշտության մեջ են որոնում իրանց մեղքերի թողությունը, նա ևս շրջապատեց իրան աբեղաներով, բաց արեց հարստահարությամբ մթերած ցորենի ամբարները և մի սովի ժամանակ ձրի կերակրեց ժողովրդին իր հացով։

Մելիք-Շահնազարը շատ հարուստ մարդ էր։ Նա մտածեց ավելի նշանավոր գործերով քավել իր նշանավոր հանցանքները։ Ամարասա վանքը, որի մեջ ամփոփված էին Լուսավորչի թոռի՝ սուրբ Գրիգորիսի նշխարները, խիստ անշուք և կիսավեր դրության մեջ էր նրա ժամանակում։ Նա սկսեց այդ վանքի շինությունները վերանորոգել. շրջապատեց վանքը ամուր և բարձր պարիսպներով, աշտարակներով, միաբանության համար խուցեր, սենյակներ շինեց, վանքային տնտեսության համար ընդարձակ սեղանատուն, ամբարանոցներ և ախոռատուն հիմնեց, բոլորը սրբատաշ քարից, բոլորը մեծ և վայելուչ։ Բայց դեռ տաճարի կառուցմանը չձեռնարկած, մահը վրա հասավ, նրա բաղձանքը թողեց անկատար։ Հանգուցյալի արկղների մեջ գտան մի քանի քսակներ լիքը ոսկիներով, որ կտակել էր տաճարի շինվածքը ավարտելու համար։ Ժառանգները չկատարեցին կտակը։

Մելիք-Շահնազարը թողեց չորս որդի՝ Ջումշուդ, Հուսեին III, Ջհան-բախշ և Ջհանգիր։

Դեռ մեռնելուց առաջ նա կարգեց որդիների վրա հոգաբարձու իր բարեկամ Իբրահիմ-խանին, հանձնելով նրան, որ ժառանգներից որին որ հարմար կհամարե, կարգե իր փոխարեն հաջորդ։

Օրենքով պետք է հաջորդեր Ջումշուդը, որովհետև նա ծնված էր Մելիք-Շահնազարի օրինավոր ամուսնությունից։ Բայց Իբրահիմ-խանը իր կնոջ, Հուրիզատ-խանումի ազդեցությամբ ընտրեց նրա հարազատ եղբորը՝ Հուսեինին[1]։ Խանի կամայականությունը առիթ տվեց ժառանգների մեջ երկպառակության։ Ջհան-բախշը դիմեց պարսից շահին, նրանից ֆիրման ստացավ, աշխատում էր ինքը իշխել։ Բայց Մելիք-Հուսեինը, Իբրահիմ-խանի օգնությամբ, հարձակվեցավ Ջհան-բախշի տան վրա, նրա կայքը կողոպտեց և Ջհան-բախշը հազիվ կարողացավ իր կյանքը ազատել, իր եղբայր Ջհանգիրի հետ փախչելով Շամախի Մուստաֆա-խանի մոտ։ Ժառանգների մեջ այդ երկպառակությունները տևեցին մինչև Աղա-Մահմատ-խանի գալուստը, երբ ինքը՝ Իբրահիմ-խանը, իր կյանքը պարսից ներքին շահի ձեռքից ազատելու համար, ստիպվեցավ փախչել Բալաքան։

## XXVII

Մելիք-Շահնազարի մեռնելուց հետո Իբրահիմ-խանի զորությունը թուլացավ։ Այդ մարդու ձեռքումն էր բռնված այն շղթայի մի ծայրը, որով հայոց մի քանի նորաբուսիկ մելիքներ հնազանդվում էին Թուրք խանին։ Այդ մելիքները, որոնք առաջ իշխանության և աստիճանի տեր լինելու բաղձանքով դիմեցին Թուրք խանի օգնությանը և նրան անձնատուր եղան, Մելիք-Շահնազարի մահից հետո, սկսեցին փոքր առ փոքր զգալ իրանց սխալը, սկըսեցին վերջապես հասկանալ, որ իրանք իրանց ձեռքով քանդեցին իրանց տունը և մահմեդական բռնավորին բարձրացրին իրանց գլխի վրա։

Այդ ինքնաճանաչությունը առաջ եկավ զանազան հանգամանքներից, որոնց հարկավոր ենք համարում համառոտ կերպով անցնել, ցույց տալու համար, թե իսկապես ի՞նչ նշանակություն ունեին Շուշի բերդի խաները, և իրանց հարաբերությունների մեջ հայոց մելիքների հետ ո՛ր աստիճան իրավունքներ ունեին և արդյոք կարելի՞ է համարել նրանց երկրի տերը կամ իշխանը։

---

[1] Մելիք-Շահնազարը ուներ մի քանի կնիկներ, Թագուհի-խանումից ծնվեց Մելիք-Ջումշուդը, Սոնա-խանումից ծնվեց Մելիք-Հուսեին III և մի աղջիկ՝ Հուրի-զատ անունով, որին հայրը կնության տվեց Իբրահիմ-խանին, իսկ Մալայիկ-խանումից ծնվեց Ջհան-բաշխը, Ջհանգիրը և մի աղջիկ Հումայի անունով։

Մենք գիտենք Փանահ-խանի ծագումը. մենք գիտենք և այն, որ Պարսկաստանը կառավարող զենդ-Քերիմ-խանը (որը թագավոր չէր, այլ Պարսկաստանի մի մասը բռնությամբ տիրացած մի աննշան լոռեցի[1] Փանահ-խանին սպանել տալուց հետո, նրա որդի Իբրահիմին խանության աստիճան շնորհեց և կարգեց Շուշի բերդի կառավարիչ։ Ուրեմն Իբրահիմ-խանը ուրիշ ոչինչ չէր, եթե ոչ Պարսկաստանից կարգված, պարսից մի հասարակ խան, որը Պարսկաստանի նույն ժամանակվա երկպառակությունների և անիշխանության պատճառով, կարողացավ երկար ժամանակ իր տեղում մնալ,— կարողացավ հայոց անմիաբան մելիքների հաշվով նրանց գլխին նստել։ Բայց իսկապես նա երկրի տերը կամ իշխանը չէր. նա մի ժամանակավոր կառավարիչ էր, որի նմաններին պարսից կառավարությունը անդադար փոփոխում էր։ Նա ինքը պարսից հարկատու էր. իր պաշտոնի մեջ մնալու համար ամեն տարի ահագին փիշքեշներ և ընծաներ էր ուղարկում Պարսկաստան։

Մելիքների անմիաբանության շնորհիվ նա կարողացավ և կարողանում էր իր դիրքը պահպանել։ Եթե մելիքներից մի քանիսը նրան թշնամի էին, ընդհակառակն, մի քանիսն էլ բարեկամներ էին, և այսպիսով, նրա կացության հավասարակշռությունը պահպանվում էր։

Իբրահիմ-խանը դեռ չէր դիպել հայոց մելիքների ուղղակի և զգալի շահերին։ Թեև նրա հայրը և ինքը, օրինակ, Խաչենում և Ջրաբերդում երկու նոր մելիքություններ վերականգնեցին, բայց այդ կատարեցին նրանք որպես օգնողներ և ոչ որպես կարգողներ կամ հիմնողներ։ Եվ այդ պատճառով խաների հարաբերությունները դեպի այդ մելիքները ավելի դաշնակցական էին, քան թե իշխողի և ստորադրյալի հարաբերության բնավորությունն ունեին։

Բայց Մելիք-Շահնազարի մահից հետո Իբրահիմ-խանը հետ քաշեց դիմակը և օգուտ քաղելով հանգուցյալի դեպի ինքն ունեցած հավատարմությունից, որով իրան հոգաբարձու էր կարգել իր ժառանգների վրա,— նա բացարձակ իրավունք համարեց հաջորդ նշանակելու մելիքի որդիներից նրան, որ բոլորից անընդունակն էր, բայց որը իր կնոջ եղբայրը լինելով, ավելի հավատարմությամբ կծառայեր իրան։ Այդ էր պատճառը, որ վրդովեցրեց ժառանգներին, որովհետև խանի միջամտությունը միանգամայն հա-

[1] Դա մեր Լոռին չէ, հարավային Պարսկաստանում մի գավառ նույնպես կոչվում է Լոռի կամ Լոռիստան։

կառակում էր նրանց ավանդական սովորություններին հաջորդության կարգերի վերաբերությամբ։

Բայց Իբրահիմ-խանը ավելի հեռու գնաց։ Նա դիպավ ժողովրդի և մելիքների ամենազգալի շահերին. նա սկսեց միջամտություն գործել երկրի հողային խնդիրների մեջ, որոնք մինչև այնօր թողված էին անձեռնմխելի և կառավարվում էին միմիայն հայոց վաղեմի սովորություններով, որոնք օրենքի ձև էին ստացել։ Մեր պատմության նպատակից դուրս է մանրամասնաբար բացատրել, թե ի՞նչ դրության մեջ էր հողային հարցը Ղարաբաղում, կամ ի՞նչ պարտավորություններ ունեին գյուղացիները մելիքների վերաբերությամբ ընդհանրապես, իսկ խանի վերաբերությամբ մասնավորապես[1]։ Միայն այսքանը կասենք, այն աղետալի անցքերը, որ նկարագրեցինք մեր XXIV գլխում, միջոց տվին Իբրահիմ-խանի կամայականությանը բացարձակ կերպով հողային բաշխումներ և կարգադրություններ անելու,— մի իրավունք, որից նա առաջ զուրկ էր։ Մենք տեսանք, որ Ջրաբերդի Մելիք-Մեջլումը և Գյուլիստանի Մելիք-Աբովը, իրանց ժողովրդի մի մասը առնելով, գաղթեցին Գանձակի գավառը։ Նրանց գյուղերը, նրանց հողերը մնացին անտեր, դատարկ։ Այդ ժամանակ խանը սկսեց նրանց հողերը բաժանել ում որ կամեցավ, նրանց տեղերում բնակեցրեց նոր գաղթականներ[2]։ Եվ այսպիսով, հանգամանքների շնորհիվ նա իրավունք գտավ հայոց հողերի վրա, որը մինչև այնօր չուներ։

Այդ կամայականությունը վրդովեցրեց մինչև անգամ խանին անձնատուր եղած մելիքներին, առավել այն ժամանակ, երբ տեսան, որ խանը հայոց հողերի վրա բնակեցրեց և թուրք գաղթականներ, որպես էին գոլանիները, մի վայրենի և ավազակ ցեղ, որ թափառում էր Ջուանշիրի անապատներում։ Բոլորովին հայաբնակ Ղարաբաղում մտան թուրք բնակիչներ, որոնք առաջ չկային։ Խանի այդ վարմունքը հուզեց ընդհանուր դժգոհություն թե Ղարաբաղի հայ ժողովրդի և թե խանի բարեկամ մելիքների մեջ։

Բայց այդ մելիքները դեռևս ոչինչ չէին ցույց տալիս իրանց անբավականությունը, միայն իրանց սրտերում սնուցանում էին մի խուլ բողոք և սպասում էին հարմար ժամանակի։

[1] Այդ հարցերը մենք դիտավորություն ունենք հրատարակել առանձին բրոշյուրով, որ կկրե այսպիսի վերնագիր. «Հողային հարցը Ղարաբաղում մելիքների տիրապետության ժամանակ»։

[2] Խանի այդ բախշումները այնքան անհիմն և անհաստատ էին, որ երբ հայոց գաղթականների մի մասը վերադարձավ, կրկին տեր դարձան իրանց հողերին, և արտաքսեցին խանի նոր բնակեցրած գյուղացիներին։

Առաջին բողոքը բարձրացրեց Վարանդայի Մելիք-Շահնազարի որդի Մելիք-Ջումշուդը, որը իր բոլոր եղբայրների մեջ ավելի հառաջադեմը և ավելի խելացին էր։ Նա արդեն հասկացել էր, թե որքան կորցրեց իր հայրը և ո՛րքան կորցնել տվեց Ղարաբաղի մյուս մելիքներին, բարեկամություն պահպանելով Շուշի բերդի խաների հետ։

Հասարակության վրա տարածված բռնությունը այնքան զգալի չէ լինում անհատներին, մինչև իրանց անձի վրա դեռ չեն փորձել նրա ճնշող ներգործությունը։ Մելիք-Ջումշուդը անձամբ նրա փորձը առեց։ Բռնավորը նրան զրկեց օրինավոր հաջորդությունից և նրա փոխարեն կարգեց անարժան եղբորը։ Նրա երկու մյուս եղբայրները, Ջհանգիրը և Ջհան-բախշը, հալածված նույն բռնավորից, փախան Մուստաֆա-խանի մոտ։ Ինքը մնաց միայնակ և անօգնական։

Նրա տոհմային հպարտությունը սաստիկ վիրավորված էր։ Նրա նախնիքը՝ Մելիք-Շահնազար մեծը, ամբողջ Գեղարքունյաց տերը, բարեկամություն ուներ Շահ-Աբասի հետ, որից սարսափում էր արևելքը։ Նրա պապը, Մելիք-Հուսեին մեծը, հարաբերություն ուներ կայսրների հետ։ Իսկ այժմ այդ մեծ մարդկանց ավելի քան մի քանի հարյուր տարի գոյություն ունեցող հոյակապ տան մեջ կարգադրություններ էր անում մի նորելուկ ջուանշիրցի խան, որի իշխանության թվականը իր հասակի տարեթվից հեռու չէր անցնում։ Բայց ո՞վ բարձրացրեց ջուանշիրցուն, ո՞վ օգնեց նրա զորանալուն։ Դարձյալ մի հայ, մի անբարիշտ և խռովարար հայ, որը հայրենիքի ազատությունը զոհեց իր մանր անձնական շահերին և նրա ավերակների պատճառը դարձավ։ Մելիք-Ջումշուդը չէր կարող առանց վրդովմունքի հիշել, որ այդ հայը իր հայրն էր…

Այդ բոլորը անվերադառնալի կորուստներ էին։ Բայց Մելիք-Ջումշուդը մտածում էր կարելվույն չափ կորուստը ետ դարձնել և դարման տանել հայրենիքի վերքերին։ Նա պարզ տեսնում էր, որ այդ վերքերը առաջ եկան անմիաբանությունից, երկպառակությունից և հային հատուկ օտարասիրությունից։ Մելիք-Ջումշուդը բավական կարդացած երիտասարդ էր։ Նա չէր զարմանում, երբ հիշում էր, որ մի ժամանակ հայոց նախարարները դիմեցին պարսից արքային, խնդրում էին նրանից, որ Հայաստանի հարազատ թագավորին վեր առնե և նրա տեղը պարսիկ մարզպան դնե։ Նա չէր զարմանում, նա միայն ցավում էր հայերի օտարասիրության

վրա, նա միայն վրդովվում էր, երբ նույնը տեսնում էր կատարված իր ժամանակում, իր աչքերի առջև։

Նրա հայրը անմատչելի Ղարաբաղի մեջ մտցրեց մի օտար ցեց, որը ուտելով, մաշելով խախտեց տեղային բոլոր հայկական իշխանությունների հիմքը և վերջապես կործանեց այն հաստատուն շենքը, որ դարերով կառուցված էր։ Այդ ավերմունքին գլխավորապես նպաստեցին իրանց՝ հայերի գործակցությունները։ Մելիք-Ջումշուդը մտածում էր վերականգնել խորտակված շենքը։ Նա գիտեր, որ կործանման պատճառը եղավ նույնիսկ հայ մելիքների երկպառակությունը. ուրեմն շինությունը կարող էր հաջողվել դարձյալ նույն մելիքների միաբանությամբ։ Նա աշխատում էր կրկին նորոգել միաբանության խզված կապերը մելիքների մեջ։ Բայց որտե՞ղ էին մելիքները։

Մեկը, Տիզակի Մելիք-Բախտամը, շղթաների մեջ պահված էր Արդավիլի բերդում, երկուսը, Գյուլիստանի Մելիք-Աբովը և Ջրաբերդի Մելիք-Մեջլումը, գտնվում էին հայրենիքից դուրս, պանդխտության և գաղթականության մեջ ապահովություն էին որոնում։ Երկրի նշանավոր և հիմնական ուժերը ցրիվ էին եկած օտար աշխարհներում։ Իսկ հայրենիքի մեջ մնում էին դավաճանները — խանին անձնատուր եղած մելիքները։ Մելիք-Ջումշուդը մտածում էր այդ վերջիններին իր կողմը ձգել և նրանց բարեկամական հարաբերությունները անջատել խանից։ Մի դեպք նպաստեց նրա ցանկությանը։ Այդ դեպքը թեև ընտանեկան էր, բայց քաղաքական կերպարանք ստացավ։

Իբրահիմ-խանը սաստիկ անբարոյական մարդ էր. նրա հարեմը լի էր հայոց աղջիկներով. և ամեն տեղ, եթե գտնվում էր մի գեղեցիկ հայ աղջիկ, հազիվ թե կարող էր ազատ մնալ նրա կրքերից։ Մենք գիտենք, որ նրա հավատարիմ մելիքներից մեկը, Ռուստամը, ամուսնացած էր կսապատցի Ապրես-աղայի դստեր՝ Վարդ-խաթունի հետ։ Երբ Վարդ-խաթունը դեռ օրիորդ էր, Իբրահիմ-խանը ցանկացավ նրան իր կին ունենալ։ Օրիորդի հայրը աղջկան մահմեդական հարեմից ազատելու համար տվեց Մելիք-Ռուստամին, թեև աղջիկը դեռ փոքրիկ էր և կին լինելու հասակին չէր հասած։ Բայց դրանով Իբրահիմ-խանը չհանդստացավ. նա շատ բաներ էր լսած Վարդ-խաթունի գեղեցկության մասին, ցանկանում էր նրան իր մոտ ունենալ։

Մենք տեսանք, երբ Մելիք-Մեջլումը և Մելիք-Աբովը հեռացան Ղարաբաղից, Իբրահիմ-խանը նրանց ընտանիքներից մի քա-

նի Հոգի բերեց Շուշի բերդը, պահեց այնտեղ իբրև պատանդ։ Այդ ժամանակ պահանջեց նա Մելիք-Ռուստամից պատանդի անունով նրա կնոջը՝ Վարդ-խաթունին։ Մելիք-Ռուստամը անճարացած տվեց, թեև նրան լավ հայտնի էր, որ խանը ավելի իր համար սիրուհի է տանում, քան թե պատանդ, որովհետև իր հավատարմության վրա կասկածելու առիթ չուներ նա։

Մենք գիտենք և այն, որ Մելիք-Ռուստամը Խամսայի մելիքներից չէր, այլ Մելիք-Իսրայելյան Մելիք-Մեջլումի կյանքի դեմ դավադրություն սարքելու համար, որպես վարձատրություն ստացավ խանից Ջրաբերդի իշխանությունը։ Իսկ այժմ հիշյալ ընտանեկան անպատվությունն այն աստիճան վիրավորեց նրան, որ նա թողեց Իբրահիմ-խանի ծառայությունը և իր մնացած ընտանիքով[1] գնաց Շամախի Մուստաֆա-խանի մոտ, որը այդ ժամանակ թշնամական հարաբերության մեջ էր Իբրահիմ-խանի հետ։

Մուստաֆա-խանը սիրով ընդունեց Մելիք-Ռուստամին և Դաշբուլաղ անունով գյուղը ընծայեց նրա բնակության համար։ Այնտեղից Մելիք-Ռուստամը սկսեց հարձակումներ գործել Շուշի բերդի վրա և շատ վնասներ տալ Իբրահիմ-խանին։

Թեև մի առանձին մեծ նշանակություն չունեին նրա հարձակումները, որովհետև Իբրահիմ-խանին ոչնչացնելու համար հարկավոր էր, որ հայոց բոլոր մելիքները հավաքական ուժերով պատերազմեին։ Բայց այդ էլ բավական էր, որ խանի հավատարիմ մելիքներից մեկը, ոչ միայն անջատվեցավ նրանից, այլև թշնամացավ նրա հետ։

Խանին բարեկամ մնացին միայն երկու մելիքներ՝ Խնզիրիստանի Մելիք-Միրզախանյան Մելիք-Ալլահվերդին և Վարանդայի Մելիք-Շահնազարյան Մելիք-Հուսեին III, որը Իբրահիմ-խանի կնոջ (Հուրի-զատ խանում) հարազատ եղբայրն էր, և քրոջ ազդեցությամբ իր ձեռքը ձգեց Վարանդայի իշխանությունը։ Այդ անցքը, որպես վերևում ցույց տվեցինք, սաստիկ գրգռեց Մելիք-Շահնազարյան Մելիք-Ջումշուդի թշնամությունը, և նա սկսեց այնուհետև մտածել Իբրահիմ-խանի կործանման վրա, միայն սպասում էր մի հարմար ժամանակի։ Նա սկսեց գաղտնի թղթակցել Մելիք-Մեջլումի, Մելիք-Աբովի և Մելիք-Ռուստամի հետ, որոնք խանից հալածված նույնպես թշնամի էին խանին։

---

[1] Ղարաբաղի մելիքներից շատերը բազմակնության սովորություն ունեին. Մելիք-Ռուստամը ուներ երկու կին, մեկը վերև հիշած Վարդ-Խաթունը, մյուսը՝ Մարիամ անունով մի կին։

## XXVIII

Ռուս-տաճկական երկրորդ պատերազմի հետ (1787—1791) միևնույն ժամանակ ծագեց շվեդական պատերազմը։ Ռուսաց կառավարությունը այն աստիճան զբաղված էր այդ պատերազմներով, որ ամենևին ժամանակ չուներ մտածելու Անդրկովկասի քրիստոնյաների վրա, թեև այդ վերջինները անդադար տեղեկություններ էին տալիս իրանց աննախանձելի դրության մասին։ Իշխան Պոտյոմկինը և Հովսեփ արքեպիսկոպոսը մասնակցում էին ռուսաց արշավանքներին. դրանք ևս, որ խիստ հետաքրքրված էին Անդրկովկասով, այդ ժամանակ հազիվ թե կարող էին իրանց ցանկությունները իրագործել։

Իսկ վերոհիշյալ պատերազմների ընթացքում, որպես տեսանք, Ղարաբաղում կատարվեցան մի շարք աղետալի անցքեր։ Իբրահիմ-խանը ձեռք բերելով հայոց մելիքների ռուսաց հետ ունեցած թղթակցությունները, սկսեց հալածել նրանց։ Նույն խանի ձեռքով Հովհաննես կաթողիկոսը սպանվեցավ, Գանձասարի վանքը կողոպտվեցավ, Տիզակի Մելիք-Բախտամը աքսորվեցավ, Խաչենի Հասան-Ջալալյաններից երկու մելիքները սպանվեցան և ամենացավալին այն էր, որ նշանավոր մելիքներից երկուսը, Մեջլումը և Աբովը, իրանց ժողովրդի հետ դուրս եկան Ղարաբաղից, այնտեղ մնացին կամ խանին համակրող, կամ նրանից վախեցող մելիքները։

Այդ բոլոր տխուր անցքերը առիթ տվին Հովսեփ արքեպիսկոպոսին շտապելու, կրկին ողորմած կայսրուհու ուշադրությունը դարձնելու հայերի վրա։

Այդ ժամանակ արքեպիսկոպոսը կազմեց իր նշանավոր պատմական տեղեկագիրը, որ բովանդակում էր իր մեջ Ղարաբաղի տիրապետող մելիքների հարաբերությունները ռուսաց կառավարության հետ, սկսյալ Պետրոս Մեծի օրերից, և նրանց մատուցած նշանավոր ծառայությունները Ռուսաստանին, և հասցրեց մինչև իր օրերը։ Հիշյալ տեղեկագիրը իշխան Պոտյոմկինի միջնորդությամբ ներկայացվեցավ կայսրուհուն 1790, 23 հունվարի։

Այդ տեղեկագիրը իր առանձին ազդեցությունն ունեցավ։ Օսմանցոց հետ ունեցած պատերազմը միայն արգելք էր լինում կայսրուհուն Անդրկովկասի քրիստոնյաների վերաբերությամբ մի վճռական գործ սկսելու։ Այդ պատճառով եռանդոտ, արքեպիսկոպոսի խնդիրքները հետաձգվում էին, հուսադրելով նրան, թե իր

*բաղձանքները կկատարվեն, միայն հարկավոր է փոքր-ինչ ևս համբերել։*

*Բայց մի ցավալի կորուստ թե արքեպիսկոպոսին և թե Ղարաբաղի մելիքներին սաստիկ հուսահատություն պատճառեց։ Թուրքաց պատերազմը վերջանալու վրա էր, երբ իշխան Պոտյոմկինը կովի դաշտից կանչվեցավ Ս. Պետերբուրգ, և ապա կրկին ետ ուղարկվեցավ (1791) թուրքերի հետ հաշտության պայմանների մասին բանակցելու համար։ Նույն տարվա աշնան սկզբումը իշխանը վախճանվեցավ։ Նրա մահը սուգի մեջ դրեց հանգուցյալի մտերիմ բարեկամ Հովսեփ արքեպիսկոպոսին։ Սրբազանը ոչինչով իրան մխիթարել չէր կարողանում. նա իր հիմնած մեծ շենքը բոլորովին կործանված էր համարում և նրա ավերակների տակ խորտակված էր տեսնում իր սրտին խիստ մոտ ցանկությունները...*

*1791 թվի դեկտեմբերի 29-ին հաշտության պայմանը ստորագրվեցավ Ռուսաստանի և Թուրքիայի մեջ։ Կայսրուհին կրկին ուշադրություն դարձրեց Անդրկովկասի վրա։ Այդ ժամանակ թե հայերը և թե վրացիները ավելի մեծ տագնապի մեջ էին։ Պարսկաստանում զորացել էր Աղա-Մամադ-խան ներքինին և մի քանի տարի անդադար արշավանքներ էր գործում դեպի Արարատյան նահանգը, վտանգ էր սպառնում Վրաստանին։ Վրաց Հերակլ իշխանը մի կողմից, Թիֆլիսի հայերը մյուս կողմից, սարսափած ներքինի խանի բարբարոսություններից, սկսեցին օգնություն խնդրել։ 1795, 4 սեպ. բարձրագույն հրովարտակով հրամայվեցավ կոմս Գուդովիչին, ռուսաց զորքով օգնության հասնել և պաշտպանել Վրաստանը։ Բայց նա ուշացավ...*

## XXIX

Աղա-Մամադ-խանի արշավանքները: *Կուրացրած Շահ-Ռուխից հետո Պարսկաստանը ամբողջ ութն տարի խռովության մեջ էր, կեղեքվում էր զանազան ինքնիշխան տիրապետողների ձեռքում, որոնք շարունակ միմյանց հետ պատերազմելով, երկիրը, դարձրել էին արյան ընդարձակ դաշտ։ Այդ տիրապետողները էին՝ Ալի-Մուրադ-խանը, զենդ-Քերիմ-խանը, Ազատ-խանը, Մուհամեդ-Հասան-խանը և ուրիշ շատեր։*

*Վերջը հաղթող հանդիսացավ լորիստանցի զենդ-Քերիմ-խանը, նստեց Շիրազ քաղաքում, թեև ոչ իբրև թագավոր, բայց*

Պարսկաստանի իշխող։ Այդ միջոցներում նրա մոտ իբրև պատանդ Շիրազ քաղաքում պահվում էր ներքինիացրած Աղա-Մամադ-խանը, որը վերոհիշյալ Մուհամեդ-Հասան-խանի որդին էր, ցեղով ղաջար, իսկ տեղով մազանդարանցի։

Քերիմ-խանի մահից հետո (1779) Աղա-Մամադ-խանը փախավ Շիրազից, և գալով Մազանդարանի կողմերը, հավաքեց իր շուրջը մեծ բազմություն, ապստամբվեցավ և տիրելով Արաղստանին, իրան պարսից թագավոր հրատարակեց, Թեհրան քաղաքը իր համար աթոռանիստ ընտրելով[1]։

1795 թվի գարնանը Աղա-Մամադ-խանը Թեհրանից արշավանք գործեց դեպի Ատրպատական, նվաճեց այդ պարսկական ընդարձակ նահանգը, տիրեց Թավրիզը և ուրիշ շատ քաղաքներ, հետո իր եղբայր Ալի-Ղուլի-խան սարդարին ուղարկեց դեպի Երևանի կողմը։ Այդ վերջինը, տիրելով Նախիջևանը, նույն տարվա հուլիս ամսում, բանակ դրեց Երևանի պարիսպների մոտ։ Էջմիածնի Ղուկաս կաթողիկոսը, սարսափելով նրա մոտ եկավ և ներկայացնելով ծանրագին ընծաներ, աղաչում էր խնայել իր վանքը։ Ներքինի շահի եղբայրը պատվով ընդունեց կաթողիկոսին, խոստանալով, թե ոչ հայերին և ոչ վանքին վնաս չի հասցնի, եթե հայերը հավատարիմ կմնան Պարսկաստանին, ինչպես միշտ եղել են։

Երևանը առանց պատերազմի անձնատուր եղավ. տեղային խանը իր կնոջը և որդիներին պատանդ տալով, հպատակություն խոստացավ։ Այդ միջոցին ինքը Աղա-Մամադ-խանը, ուրիշ ճանապարհով դիմում էր դեպի Ղարաբաղի կողմերը, որ այնտեղից անցկենա Թիֆլիս։ Նա Խուդափիրինի կամրջով անցավ Երասխ գետը և լուր տվեց եղբորը, որ դադարեցնե արշավանքը Երևանի կողմով և շտապեց իր մոտ։ Երկուսի նպատակն էլ այն էր, որ նվաճեին Վրաստանը, պատժեին Հերակլ իշխանին։

Պետք է ի նկատի ունենալ, որ Վրաստանը այն ժամանակ և նրանից առաջ, ուրիշ ոչինչ չէր, եթե ոչ մի պարսկական նահանգ, որ հարկ էր վճարում Պարսկաստանին։ Նրա մի մասը օսմանցիների ձեռքումն էր և Ախալցխայի մեջ նստած էր թուրք փաշա։ Իսկ երբ Հերակլը, պարսիկներից ազատվելու համար, Վրաստանը դրեց ռուսների հովանավորության ներքո,— նրա վարմունքը, իհարկե, չէր կարող չգրգռել պարսից շահի բարկությունը, որը ճանաչում էր Վրաստանը իբրև պարսից պետության մի մա-

---

[1] Աղա-Մամադ-խանի տոհմից սկսվեցավ Պարսկաստանի այժմյան թագավորող տան գահակալությունը։

սը, իսկ վրաց իշխաններին՝ իբրև պարսից Դոնից նշանակված կառավարիչներ կամ վալիներ։

Աղա-Մամադ-խանը մտադիր էր անցկենալ դեպի Թիֆլիս, Ղարաբաղի և Գանձակի գավառների միջով։ Անհարկու ներքինիի արշավանքը մի նոր և ամենաաստիկ հարված պիտի տար Ղարաբաղի մելիքների նպատակներին և միանգամայն պիտի ոչնչացներ նրանց ունեցած հույսերը իրանց հայրենիքի ազատության մասին։ Նրանք վաղուց իմացում էին տվել ռուսաց կառավարությանը ներքինիի դեպի Հայաստան և դեպի Վրաստան կատարելիք արշավանքի մասին[1]։ Թեև կոմս Գուդովիչին հրամայված էր հայերին և վրացիներին օգնության հասնել, բայց Աղա-Մամադ-խանի բանակն արդեն դրած էր Շուշի բերդի մոտ, իսկ կոմսը տակավին չէր հայտնվել։

Պետք չէ մոռանալ, Աղա-Մամադ-խանը, թեև սիրում էր իր նախկին «խան» տիտղոսով կոչվել, բայց նա արդեն Պարսկաստանի ինքնակալ շահն էր։ Նրան հայտնի էին Ղարաբաղի մելիքների ձգտումները, նրանց հարաբերությունները ռուսների հետ և այդ վերջինների խոստումները հայերի վերաբերությամբ և այլն։ Նրան հայտնի էին նաև Իբրահիմ-խանի բռնակալությունը և նրա գործ դրած բարբարոսությունները հայերի դեմ։ Այդ էր պատճառը, որ դեռ Երասխ գետից չանցած, նա հրաման ուղարկեց Ղարաբաղի մելիքներին, հրավիրելով նրանց, որ խոնարհվեն իրան, խոստանալով, որ ինքը կվերահաստատե նրանց իրանց վաղեմի իշխանությունների և արտոնությունների մեջ, և կոչընչացնե Իբրահիմ-խանին։

Աղա-Մամադ-խանը թեև բարբարոս, բայց միևնույն ժամանակ խելացի և քաղաքագետ մարդ էր։ Նա շատ լավ հասկանում էր, որ հայերի առաջնորդությամբ ռուսները ավելի հեշտությամբ կարող էին մուտք գործել իր տերության մեջ,— ուրեմն հայոց մելիքներին գոհացնելով, նա կփակեր ռուսների հառաջադիմության ճանապարհը դեպի Պարսկաստան։

Բայց հայոց մելիքները ավելի բարվոք համարեցին հավատարիմ մնալ ռուսներին, և Աղա-Մամադ-խանին ընդդիմադրելու

[1] Աղա-Մամադ-խանը մի քանի անգամ պատրաստվեցավ արշավանք գործելու դեպի Հայաստան և Վրաստան, բայց ժամանակ չունեցավ անցնելու Երասխ գետը, որովհետև ամեն անգամ Պարսկաստանի խորքերում նորանոր ապստամբություններ էին ծագում, և նա ստիպված էր լինում հետ դառնալ, ապստամբությունները զսպելու համար։

համար միացան մինչև անգամ իրանց վաղեմի թշնամի Իբրահիմ-խանի հետ, մտածելով, որ նրան հետո հեշտ կլինի ոչնչացնել, բայց եթե մի անգամ հպատակվեցան Աղա-Մամադ-խանին, այնուհետև հայրենիքը պարսից լծից ազատելը անհնարին կլինի։ Միայն Մելիք-Իսրայելյան Մելիք-Մեջլումը չհամաձայնվեցավ մյուս մելիքների հետ։

Մելիք-Շահնազարյան Մելիք-Ջումշուդը և Մելիք-Բեգլարյան Մելիք-Աբովը հայոց զորքերով ամրացան Շուշի բերդի մեջ և Իբրահիմ-խանի հետ միասին սկսեցին պաշտպանել բերդը։

Բերդի պաշարումը տևեց ամբողջ քառասուն օր։ Հայ և թուրք զորքերի քաջությունը, միացած բերդի բնական ամրությունների հետ, ի չիք դարձրին Աղա-Մամադ-խանի բոլոր ջանքերը բերդը գրավելու համար։

Այդ ժամանակ Աղա-Մամադ-խանի բանակի մեջ իր զորքերով գտնվում էր Մելիք-Իսրայելյան Մելիք-Մեջլումը և Գանձակի Ջավադ-խանը, որոնք երկուսն էլ Իբրահիմ-խանի թշնամիներն էին և միացած էին Աղա-Մամադ-խանի հետ։

Մելիք-Մեջլումի վարմունքը բացատրության կարոտ է։

Մելիք-Մեջլումը ազնիվ երիտասարդ էր, բայց չափազանց վրեժխնդիր և ոչինչ միջոցների դեմ չդողացող՝ թշնամուն ոչնչացնելու համար։ Մենք հիշում ենք այն սպառնալիքը, երբ Թիֆլիսից վիրավորված դուրս գալու ժամանակ, վրացի սայլապանների բերանով ուղարկեց նա Հերակլ իշխանին. «ասացեք ձեր իշխանին, որ Մելիք-Մեջլումը չի մոռանա նրա հյուրասիրությունը...»։

Այդ երիտասարդը վշտացած էր, դառնացած էր անդադար իր բարեկամներից խաբված լինելուց։ Հոր մահից հետո նա տարիներով շարունակ պատերազմում էր Իբրահիմ-խանի հետ։ Նրան հույսեր էին տալիս, օգնություններ էին խոստանում, բայց խաբում էին... Վերջը դարձյալ մեծ խոստմունքներով նա հրավիրվեցավ Թիֆլիս, կամենում էր իր հյուրին կալանավորել և մատնել նրա թշնամու, Իբրահիմ-խանի ձեռքը...

Մեր նախընթաց գլուխներում տեսանք, որ ամեն կողմից խաբված, ամեն տեղից հուսահատված, Մելիք-Մեջլումը ապաստան գտավ իր հոր վաղեմի բարեկամի՝ Գանձակի Ջավադ-խանի մոտ։ Նրա ժողովուրդը թողեց Ղարաբաղը և հյուրասիրվեցավ նույն խանի երկրում։ Ջրաբերդի հայրենազուրկ իշխանը իր ժողովրդի հետ օտար հողի վրա էր բնակվում, որպես մի ժամանա-

կավոր հյուր, իսկ նրա հայրենի երկրին տիրել էր Իբրահիմ-խանը...

Մելիք-Մեջլումը խելացի երիտասարդ էր։ Նա շատ լավ էր իմանում, եթե իրանց նախնիքը ունեցել են և պահպանել են Ղարաբաղի լեռների մեջ մի ինքնուրույն հայկական իշխանություն,— այդ եղել է ոչ թե քրիստոնյա թագավորների օգնությամբ, այլ պարսից շահերի շնորհիվ։ Այդ էր պատճառը, երբ Աղա-Մամադ-խանը անցավ Երասխ գետը և հրավեր կարդաց Ղարաբաղի մելիքներին, խոստանալով, եթե կմիանան իր հետ, նա կոչնչացնե Իբրահիմ-խանին և կհաստատե նրանց իրանց հայրենական իշխանությունների մեջ,— բոլոր մելիքները մերժեցին շահի հրավերը, միայն Մելիք-Մեջլումը միացավ նրա հետ։

Պետք է խոստովանվել, որ բացի ընդհանուր շահերից, Մելիք-Մեջլումը ուներ և իր նեղ անձնական հաշիվները ևս։ Նա հին թշնամի էր Իբրահիմ-խանի հետ. նա նոր թշնամացել էր Հերակլ իշխանի հետ. Աղա-Մամադ-խանի ձեռքով կամենում էր պատժել, թե առաջինին և թե երկրորդին։

Բայց Շուշի բերդի պաշարումը երկար տևեց։ Այդ բերդը, որ Ղարաբաղի մելիքությունների քայքայմանը պատճառ դարձավ, այժմ նույն մելիքները նույն բերդի միջից պատերազմում էին պարսից շահի դեմ, որը խոստանում էր կրկին վերանորոգել նրանց վաղեմի իշխանությունը, եթե կթողնեն Իբրահիմ-խանին և կանցնեն իր կողմը։

Ժամանակ չկորցնելու համար, Մելիք-Մեջլումը խորհուրդ տվեց շահին թողնել Շուշի բերդի պաշարումը, ասելով, թե ավելի նպատակահարմար կլինի նախ գնալ Թիֆլիսը գրավել, իսկ Շուշին այնուհետև ինքն իրան անձնատուր կլինի։

Աղա-Մամադ-խանին հավանական երևեցավ Մելիք-Մեջլումի խորհուրդը, նա իր զորքերի մի մասը թողեց Շուշի բերդի մոտ, իսկ մնացածը իր հետ առնելով, դիմեց դեպի Թիֆլիս։ Նրան առաջնորդում էին Մելիք-Մեջլումը և Գանձակի Ջավադ-խանը։

## XXX

Աղա-Մամադ-խանը դեռ Գանձակից չէր անցել, Թիֆլիսը արդեն սարսափի մեջ էր գտնվում։ Հերակլը հրավիրեց իր ազնվականներին, որ պատրաստվեն թշնամու առաջը առնելու։ Բայց նրա

հրավերքին ոչ ոք ուշադրություն չդարձրեց։ Ազնվականները զբաղված էին իրանց քեֆերով։ Նրան օգնության հասավ միայն Իմերեթիայի Սոլոմոն իշխանը մի քանի հազար հոգով։

Բայց պետք է ասած, որ Հերակլի երկչոտությունը սաստիկ վհատեցրեց նրա զորքերին։ Նա իր ընտանիքը Թիֆլիսից տեղափոխեց Վրաստանի խորքերում։ Այդ տեսնելով, նրա զորապետները և զորքերը նույնը խնդրեցին, որ իրանց ընտանիքները հեռացնեն, հետո կգան պատերազմելու։ Բայց գնացողը այլևս հետ չդարձավ։ Եվ այսպես, դեռ թշնամուն չհանդիպած, զորքերի մեծ մասը ցրիվ եկավ։

Իր մոտ մնացած զորքերով Հերակլը դուրս եկավ Թիֆլիսից և Ղազախի Ինջա կոչված գետի մոտ բանակ դնելով, սպասում էր թշնամուն։ Բայց երբ լսեց, որ Աղա-Մամադ-խանը արդեն անցավ Գանձակից, նա թողեց իր դիրքը և վերադառնալով կրկին մտավ քաղաքը։

Նա սկսեց կարելվույն չափ ամրացնել քաղաքը։ Այստեղ նրան օգնության եկած իմերելները քաղցածությունից սկսեցին, նախքան թշնամու ավարառությունը, իրանք կողոպտել քաղաքացիներին։

1795 թ. սեպտեմբեր ամսի 12-ին Աղա-Մամադ-խանը հասավ Սողանլու գյուղի մոտ, և գիշերը այնտեղ բանակ դնելով, վաղ առավոտյան հարձակվեցավ Թիֆլիսի վրա։ Հերակլը դուրս եկավ նրա առաջ, բայց մի փոքրիկ ճակատամարտից հետո վրացիները ջարդվեցան և փախչելով մտան քաղաքը։

Այդ միջոցին պարսից զորքերի մի մասը Մելիք-Մեջլումի առաջնորդությամբ Սոլոլակի կողմից, իսկ մյուս մասը իրա՝ Աղա-Մամադ-խանի առաջնորդությամբ բաղանիքների կողմից, նույնպես մտան քաղաքը։ Հերակլը Հավլաբարի կամուրջով մի ջորեպանի հետ փախավ դեպի Կախեթիայի կողմերը, թաքնվեցավ լեռների մեջ։ Իսկ նրա ավելի ևս երկչոտ զորքերը ցիրուցան եղան։

Անպաշտպան քաղաքը մնաց գազանաբարո պարսիկների ձեռքում։ Ամբողջ ութն օր շարունակվում էր կոտորածը և ավարառությունը։ Աղա-Մամադ-խանը, 12 հազար գերիներ իր հետ առնելով, հեռացավ ավերակ քաղաքից։ Մելիք-Մեջլումը առեց իր վրեժը Հերակլ իշխանից, բայց նրա անգթությունը ոչինչով արդարացնել չէր կարելի։ Մինչև այսօր Հավլաբարի հին կանանց բերանում կարդացվում է մի այսպիսի անեծք։

Մելիք-Մեջլումը շուն դառնա,
Ջավադ-խանը պստիկ կուճի,
Մելիք-Մեջլումի ազգեմեն
Թո՛ղ չմնա մեկը Շուշի...

Որովհետև Աղա-Մամադ-խանը իր հաղթությունով առավել պարտական էր Մելիք-Մեջլումին, ճանապարհին, հենց առաջին իջևանում, հրամայեց իր զորապետներին, որ ավարից նրա մարդիկների համար բաժին հանեն, ասելով, «քրիստոնյային պատկանածը քրիստոնյային տվեցեք»։ Մելիք-Մեջլումի ձիավորները իրանց յափունջիները տարածեցին գետնի վրա և պարսից զորքերը որքան խաչեր, եկեղեցական անոթներ և զգեստներ կողոպտել էին Թիֆլիսի եկեղեցիներից, բոլորը թափեցին նրանց յափունջիների վրա։ Մելիք-Մեջլումը այս բոլորը հետ ուղարկեց Թիֆլիս, բայց դրանով չկարողացավ գրավել թիֆլիսեցիների սիրտը...

Շահը շնորհեց Մելիք-Մեջլումին այդ երեք արտոնությունները. 1. երբ և կամենա, կարող է անարգել կերպով ել և մուտ գործել իր մոտ. 2. ինչ որ խնդրելու լինի, նրա կամքը կկատարվի. 3. արքունի գանձարանը նրա տրամադրության ներքո կլինի։

Բայց Մելիք-Մեջլումն այն աստիճան հպարտ և անշահասեր երիտասարդ էր, որ շահից ուրիշ ոչինչ չպահանջեց, միայն Թիֆլիսը ավերակ դարձնելուց հետո, խնդրեց նրա օգնությունը Շուշի բերդը նույնպես կործանել, Իբրահիմ-խանին ոչնչացնել և ավելի հաստատություն տալ Ղարաբաղի մելիքների իշխանությանը։

Շահը հոժարվեցավ ուղղակի գնալ Ղարաբաղ, Շուշին գրավելու, և Մելիք-Մեջլումի ցանկությունները կատարելու համար։ Բայց դժբախտաբար այդ միջոցներում Ղանդահարի և Հերաթի կողմերում խռովություններ ծագեցան, և նա ստիպվեցավ շտապել դեպի Պարսկաստան ապստամբությունները զսպելու համար։ Նա հանձնեց Ջավադ-խանին և Մելիք-Մեջլումին սպասել, խոստանալով, որ շուտով կվերադառնա։

Ջավադ-խանը Մելիք-Մեջլումի հետ գնացին Գանձակ, իսկ շահը ուրիշ ճանապարհով դիմեց դեպի Պարսկաստան։

Թիֆլիսը ավերակ դառնալուց 25 օրից հետո, Հերակլը մտավ մոխիր դարձած քաղաքը։

## XXXI

Աղա-Մամադ-խանի հեռանալուց հետո, Հերակլը իր դժբախտությունը հայտնելով Եկատերինա կայսրուհուն, սկսեց նրանից օգնություն խնդրել։ Բոլորը սարսափով սպասում էին, որ այդ գազանը կրկին պիտի վերադառնա։

Աղա-Մամադ-խանի արշավանքը մեծ հարված տվեց ռուսաց արևելյան շահերին։ Ռուսները աշխատում էին իրանց ազդեցությունը տարածել Անդրկովկասի ոչ միայն քրիստոնյաների, այլև մահմեդականների վրա։ Բայց Աղա-Մամադ-խանը բոլորովին վայր ձգեց նրանց վարկը։ Դեռ 1783 թվին, Եկատերինայի թագավորության հենց առաջին տարում, իշխան Պոտյոմկինի աշխատությամբ, Վրաստանն ընդունեց իր վրա Ռուսաստանի գերիշխանությունը և մտավ նրա հովանավորության ներքո։ Հասկանալի է, թե ռուսները որքան պիտի կորցնեին իրանց համարումը, որ չկարողացան պաշտպանել իրանց հոգաբարձության ներքո առած երկիրը, որին շատ բան էին խոստացել։

Իրանց համարումը վերականգնելու համար ռուսները ստիպված էին սկսել մի նոր արշավանք պարսիկների դեմ։ 1796, 19 փետրվարի գրված հրովարտակով հրամայվեցավ կոմս գեներալ Վ. Ա. Զուբովին, որ Անդրկովկասի քրիստոնյաներին օգնության հասնե։ Նույն հրովարտակի մեջ, ի թիվս այլոց, հիշված էր, որ Ռուսաստանը զենք է բարձրացնում հանուն ճնշյալ ազգերի ազատության։

Ռուսաստանի հայոց Հովսեփ արքեպիսկոպոսը, որպես երևում է նրա՝ Հերակլ իշխանին գրած մխիթարական նամակներից, սաստիկ հուսահատված և վշտացած էր Աղա-Մամադ-խանի բարբարոսություններից և Թիֆլիսի ավերակ դառնալուց։ Բայց ռուսաց զորքերի նոր արշավանքը պարսիկների դեմ նրան կրկին սիրտ և հոգի տվեց, կրկին կենդանացրեց նրա հույսերը հայրենիքի ազատության մասին։

Հովսեփ արքեպիսկոպոսը հրավիրվեցավ ռուսաց կառավարությունից, որ անձամբ մասնակցե արշավանքին։ Ծերացած, ուժից ընկած արքեպիսկոպոսը պատրաստ էր ամեն զոհողություններ, ամեն տեսակ նեղություններ հանձն առնել, միայն թե ռուսաց սուրը հաջողություն գտներ,— ա՛յն սուրը, որ պիտի պատերազմեր Անդրկովկասի քրիստոնյաների ազատության և նրանց մի խաղաղ կյանք տալու համար։

1796 մարտ ամսում, Ղզլարում արքեպիսկոպոսը տեսնվեցավ կոմս Զուբովի հետ արշավանքի մասին խորհրդակցելու և զանազան նախապատրաստություններ կարգադրելու համար։ Այդտեղից արքեպիսկոպոսը գաղտնի նամակներ գրեց հայոց մելիքներին, ավետում էր նրանց ռուսաց զորքերի գալուստը, հորդորում էր պատրաստվել, թե զենքով և թե պաշարներով ռուսներին օգնելու համար։ Բացի արքեպիսկոպոսի մասնավոր նամակներից, լույս ընծայվեցավ կայսրուհու հրովարտակի բովանդակության մտքով մի շրջաբերական հրավերք, որ ուղղված էր Անդրկովկասի և Պարսկաստանի բնակիչներին։ Արքեպիսկոպոսը այդ շրջաբերականի թարգմանությունը Հաշտարխանում տպել տվեց և մի քանի հազար օրինակ տարածեց հայերի մեջ։

Նույն տարվա գարունքին ռուսաց զորքը Ղզլարից ճանապարհ ընկավ։

Զուբովը մոտեցավ Դերբենդին (մայիս ամսում), տեղային Ֆաթալի-խանի որդի Շեխալի-խանը ընդդիմացավ նրան, պատրաստվում էր պատերազմելու։ Բայց Դերբենդի հայ բնակիչները քաղաքը մատնեցին Զուբովի ձեռքը, բացի դրանից, բռնեցին Շեխալի-խանին նույնպես մատնեցին Զուբովի ձեռքը։ Ռուսները համարյա առանց պատերազմի, հայերի աջակցությամբ, տիրեցին Դերբենդին։

Զուբովը Դերբենդից անցավ Ղուբա, իր հետ տանելով Շեխալի-խանին։ Ղուբան նույնպես առանց արյունի գրավվեցավ։ Այստեղ մի օր ձիարշավի հանդես կատարելու ժամանակ, որին հանդիսատես էր ինքը Զուբովը, Շեխալի-խանը, մտրակելով իր նժույգին ասպարեզից դուրս եկավ, փախավ դեպի Պարսկաստան. ոչ ոք չկարողացավ բռնել նրան։ Բայց Բաքվի մեջ նրան կալանավորեցին, երբ այդ քաղաքը առանց պատերազմի անձնատուր եղավ ռուսներին։

Նույն թվի հուլիս ամսում Զուբովը մոտեցավ Շամախի քաղաքին։ Տեղային Մուստաֆա-խանը պատրաստվել էր պատերազմելու։ Բայց Հովսեփ արքեպիսկոպոսն առաջուց անձամբ գնաց նրա մոտ, աշխատեց համոզելու, որ ընդդիմությունն ապարդյուն կլիներ, ավելի լավ էր առանց արյունահեղության ընդունել ռուսաց հպատակությունը։ Մուստաֆա-խանը համաձայնվեցավ ընդունելու արքեպիսկոպոսի առաջարկությունը, բայց երբ նրանից մի հուսալի պատանդ պահանջեցին նա դրժեց իր խոստմունքին և դիմեց Շուշի բերդի Իբրահիմ-խանին, որ միանա նրա հետ, և

երկուսը միասին պատերազմեն ռուսաց դեմ։ Այդ ժամանակ (օգոստոս ամսում) արքեպիսկոպոսը կրկին ուղարկվեցավ Մուստաֆա-խանի մոտ, և տեսնվեցավ նրա հետ սուրբ Ստեփաննոսի վանքում։ Այս անգամին արքեպիսկոպոսին կատարելապես հաջողվեցավ կատարել իր միջնորդության խորհուրդը, և Շամախին նրա աշխատությամբ առանց արյունահեղության անցավ ռուսների ձեռքը։

Վերոհիշյալ քաղաքները դյուրությամբ գրավելուց հետո, ձմեռն անվտանգ անցկացնելու համար, Զուբովը անցավ Մուղանի անապատը և ձմեռեց Սալիանում։

Հետևյալ տարվա գարունքին Զուբովը դիմեց դեպի Գանձակ։

Մելիք-Աբովը այդ ժամանակ գտնվում էր Գանձակում, տեղային Ջավադ-խանի մոտ։ Մինչև ռուսաց զորքերի հասնելը, Մելիք-Աբովը Հովսեփ արքեպիսկոպոսի խորհրդով կարողացավ համոզել Ջավադ-խանին, որ առանց պատերազմի անձնատուր լինի ռուսներին։ Ջավադ-խանը պատրաստեց իր սեփական պալատը և հարգանքով ընդունեց թե կոմս Զուբովին և թե Հովսեփ արքեպիսկոպոսին իր քաղաքում։

Այդ ժամանակ Ջավադ-խանը ընծայեց նորին սրբազանությանը Կենաց փայտի մի մասը, որ Հաղբատա վանքից բերված էր Թիֆլիս և այդ քաղաքի ավարառության ժամանակ ընկել էր պարսից զինվորների ձեռքը, որոնցից գնել էր խանը։

Այդ միջոցներում Շուշի բերդի Իբրահիմ-խանը տեսնելով, որ հայերը միասիրտ և միահոգի կերպով միացած են ռուսների հետ,— տեսնելով, որ մյուս գավառների մահմեդական խաները հնազանդվեցան, ինքն ևս անճար մնալով, իր որդի Աբդուլ-Ֆաթհի-խանին ուղարկեց կոմս Զուբովի մոտ և հայտնեց իր հպատակությունը։ Կոմսը սիրով ընդունեց նրա որդուն և հարգանքով ճանապարհ դրեց, ուղարկելով նրա ձեռքով ընծաներ Իբրահիմ-խանին, այլև մի թանկագին գավազան Շուշի բերդի մահմեդական հոգևորականների գլխավոր մոլլա Փանահին։

Կոմսի բարեկամական ցույցերը դեպի Շուշի բերդի բռնակալը բավական խախտեցին Ղարաբաղի հայոց մելիքների հավատը դեպի ռուսները։ Նրանք բոլորովին ուրիշ բան էին սպասում. Նրանք հույս ունեին, որ Իբրահիմ-խանի իշխանությունը կոչնչացնեն և Ղարաբաղում կրկին կհաստատեն մելիքների վաղեմի իշխանությունը։ Դրա համար էլ մելիքները ամեն զոհողություն հանձն առին ռուսների տիրապետությունը հեշտացնելու համար։ Բայց

Հովսեփ արքեպիսկոպոսը դարձյալ հանգստացնում էր նրանց, ասելով, թե դա քաղաքագիտական առժամանակյա խաղ է միայն, թե Իբրահիմ-խանը երկար չի մնա իր տեղում և թե մելիքները դարձյալ տեր կլինեն Ղարաբաղին, ինչպես միշտ եղել են և այլն։

Գուցե արքեպիսկոպոսի հույսերը երազներ չէին, գուցե այդ բոլորը կկատարվեր, բայց երևում է, որ ինքը նախախնամությունը վճռել էր պատժել հայերին իրանց մեղքերի համար...

Հանկարծ հասավ Եկատերինա կայսրուհու մահվան բոթը (1796, 6 նոյեմ.)։ Եվ մինչդեռ կոմս Զուբովը պատրաստվում էր կատարելու իր արշավանքի այլ խորհուրդները, հրաման ստացավ վերադառնալ Ռուսաստան։ Նրա հետ ռուսաց զորքերը թողեցին Անդրկովկասը (1797, գարունքին)։

Այդ անակնկալ դժբախտությունից հետո, հասկանալի է Հովսեփ արքեպիսկոպոսի անմխիթար սրտի դառնությունը։ Նրա ողորմած կայսրուհին վախճանվեցավ։ Նրա բոլոր բարձր գաղափարները, որոնցով ոգևորված առաջնորդում էր նա ռուսաց զորքերին,— նրա բոլոր պլանները հայրենիքի ազատության մասին, միանգամայն խորտակվեցան։

Նա անմխիթար, հուսահատ սրտով ինքն ևս վերադարձավ Ռուսաստան։

## XXXII

Ռուսաց զորքերի հանկարծ հեռանալը բոլորովին այլ կերպով էին բացատրում Անդրկովկասի մահմեդականները։ Արդեն Պարսկաստանից լսվում էր, որ Աղա-Մամադ-խանը պատրաստվում է մի նոր արշավանք գործել դեպի Անդրկովկաս։ Այդ պատճառով ռուսների հեռանալը վերաբերում էին նրանց վախենալուն, նրանց երկչոտությանը, իբր թե շահի գալուստը լսածին պես, սկսեցին փախչել։ Թեև այդ ենթադրությունը պարծենկոտ մահմեդականների երևակայության ցնորքն էր միայն, այսուամենայնիվ ռուսաց հեռանալը մեծ հարված տվեց անդրկովկասյան քրիստոնյաներին, առավելապես հայերին։

Մենք տեսանք, թե ո՛րպիսի եռանդով, թե ո՛րքան անձնազոհությամբ աշխատում էին հայերը ռուսաց հաղթությունները հեշտացնելու համար։ Բոլոր գավառների տիրապետող խաները, համարյա առանց պատերազմի, անձնատուր եղան։ Ինչո՞ւ,— որովհետև ժողովուրդը խաների դեմ էր և ռուսների բարեկամ։ Իսկ ժո-

ղովուրդը բաղկացած էր ըստ մեծի մասին հայերից։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ այդ խաները և առհասարակ մահմեդական ամբոխը, ռուսների հեռանալուց հետո, պիտի սկսեին իրանց բոլոր վրեժխնդրության թույնը թափել հայերի վրա։

Մենք տեսանք, որ Ղուբայի և Դերբենդի հայ բնակիչները իրանք բաց արին այդ քաղաքների դռները ռուսաց զորքերի առջև և տեղային Շխալի-խանին բռնելով, մատնեցին կոմս Զուբովի ձեռքը։ Իհարկե, ռուսաց զորքերի հեռանալուց հետո նույն հայերը այլևս չէին կարող մնալ իրանց տեղերում. նրանք թշնամացան մահմեդականների հետ.— նրանք դավաճան հայտնվեցան խանի աչքում։ Եվ այդ էր պատճառը, որ Դերբենդի ու Ղուբայի հայերը համարյա բոլորը գաղթեցին ռուսաց զորքերի հետ և գնացին Ռուսաստան։ Դրանցից ավելի քան հազար ընտանիք կոմս Զուբովը բնակեցրեց Ղզլարի գավառում։

Շամախու Մուստաֆա-խանը, նույնպես վիրավորված իր քաղաքի հայերից, նրանց դեպի ռուսները ունեցած համակրության մասին, սկսեց հալածել նրանց։ Նա սպանել տվեց Հովհաննես վարդապետին, որ գրգռում էր հայերին խանի դեմ հօգուտ ռուսների։

Իբրահիմ-խանը միայն լուռ մնաց, պահելով իր սրտում Ղարաբաղում գտնված մելիքների վերաբերությամբ սաստիկ ոխակալություն։ Նա խորամանկ, միևնույն ժամանակ իր գործը հասկացող մարդ էր. նա մելիքների մեջ դեռևս շատ պետքեր ուներ. մի կողմից լսվում էր Աղա-Մամադ-խանի նոր արշավանքի ձայնը դեպի Ղարաբաղ, մյուս կողմից, նա մտադիր էր վրեժխնդիր լինել Մելիք-Մեջլումին, որը Աղա-Մամադ-խանի հետ միանալով, պաշարեց նրա բերդը՝ Շուշին։

## XXXIII

Վրաց Հերակլ իշխանը չէր մոռացել Թիֆլիսի ավերումը Մելիք-Մեջլումի և Ջավադ-խանի ձեռքով։ Շուշի բերդի Իբրահիմ-խանը նույնպես չէր մոռացել, որ հիշյալ երկու անձինքը, առաջնորդելով Աղա-Մամադ-խանին, պաշարեցին իր բերդը և ահագին վնասներ պատճառեցին։ Ուստի երկուսն էլ միաբանվելով, կամեցան իրանց այդ ոխերիմ թշնամիներից վրեժխնդիր լինել։

Համարյա կոմս Զուբովի Դերբենդը տիրելուց մի ամիս հետո (1796, ապրիլ ամսում) Հրակլը վրացի և վարձված լեզգի զորքե-

րով, այլև իր հետ վեր առնելով Թիֆլիսում գտնված ռուսաց զորքերի մի մասը, իսկ Իբրահիմ-խանը Ղարաբաղի հայ և թուրք զորքերով պաշարեցին Գանձակի բերդը։ Նրանց օգնության հասավ և Ավարիայի Օմար-խանը։

Իբրահիմ-խանի զորախմբի մեջ գտնվում էր Մելիք-Ռուստամը, բացի նրանից, Ղարաբաղի մյուս մելիքներից ոչ ոք չմասնակցեց խանի արշավանքին։ Այդ փոփոխամիտը, որպես տեսանք XXVII գլխում, իր կնոջ պատճառով թշնամացավ խանի հետ, բայց Մելիք-Մեջլումի դեմ պատերազմելու համար կրկին հաշտվեցավ։ Նա վաղեմի թշնամություն ուներ Մելիք-Մեջլումի հետ, որովհետև այդ վերջինը, որպես ցույց տվինք XXVI գլխում, մի դավաճանության համար հրացանի բռնել տվեց Մելիք-Ռուստամի եղբորը և փեսային։

Գանձակի բերդի մեջ իր զորքերով գտնվում էր Մելիք-Մեջլումը, տեղային Ջավադ-խանի մտերիմ բարեկամը։ Բացի նրանից, Գանձակի հայ մելիքները իրանց մարդիկներով նույնպես բերդի մեջն էին, պաշտպանում էին նրան։ Բերդի ութն աշտարակներից չորսը հայերի պաշտպանության ներքո էր, իսկ մնացածը պաշտպանում էր ինքը Ջավադ-խանը։

Պաշարումը տևեց երկար, ավելի քան չորս ամիս։ Ռուս, թուրք, վրացի և լեզգի զորքերը,ահագին քանակությամբ շրջապատել էին բերդը և անդադար հարձակումներ էին գործում, բայց պաշարվածները քաջությամբ պատասխանում էին նրանց։ Վերջը Հերակլ իշխանը անճարացած մի գաղտնի պատգամավորություն ուղարկեց Ջավադ-խանի մոտ, հայտնելու նրան, եթե Մելիք-Մեջլումին իր ձեռքը կտա, դրանով ամեն ինչ կվերջանա։

Ջավադ-խանը խիստ արհամարհանքով պատասխանեց, ասելով թե մի այդպիսի վարմունք միայն իրան Հերակլին կվայելե, իսկ ինքը չէ կարող իր բարեկամին և դաշնակցին մատնել թշնամու ձեռքը։ Այդ խոսքերով Ջավադ-խանը կամեցավ հիշեցնել վրաց իշխանին նրա անազնիվ վարմունքը Մելիք-Մեջլումի վերաբերությամբ, երբ նա Թիֆլիսում կամենում էր կալանավորել իր հյուրին և մատնել Իբրահիմ-խանի ձեռքը, որի համար սաստիկ պատժվեցավ, Թիֆլիսը ավերակ դարձավ...

Այդ պատասխանից հետո Հերակլը և Իբրահիմ-խանը սաստկացրին իրանց հարձակումները։ Երկու կողմից ևս սարսափելի կռիվներ էին լինում, բայց բերդի գրավելը օրըստօրե անհնարին

էր դառնում։ Թշնամին սկսեց ավարի առնել, ավերակ դարձնել Գանձակի շրջակա գյուղերը։

Կռիվների մեջ առանձին հերոսությամբ հանդիսացան Մելիք-Մեջլումի երկու քաջերը՝ Դալի-Մահրասան (Ավագ վարդապետը) և Թյուլի-Արզումանը. առաջինը լեզգիների դեմ, իսկ երկրորդը վրացիների դեմ։ Այդ երկուսը իրանց խմբերով շատ անգամ դուրս էին գալիս պաշարված բերդից և կայծակի նման նետվելով թշնամու բանակի վրա, սարսափելի կոտորածներ գործելով, հետ էին դառնում։ Բայց երկու քաջերն ևս իրանց հանդուգն հարձակումների զոհը դարձան. Թյուլի-Արզումանը գնդակի հարված ստացավ Գանձակի այգեստանի մեջ տեղի ունեցած կռվում, իսկ Դալի-Մահրասան, որպես նկարագրեցինք XII գլխում, սպանվեցավ Գանձակի գերեզմանատան մեջ։ Այդ քաջերի կորուստը Մելիք-Մեջլումին սաստիկ ցավ պատճառեց։

Երեք ամիս անցավ, բայց բերդը դեռ աներկյուղ պաշտպանվում էր։ Այդ միջոցներում մի ծերունի, որ չնայած գլխի ալևոր մազերին դեռ պահպանել էր մարմնի ժրությունը և սրտի աշխույժը, թշնամու բանակից բաժանվելով, աննկատելի կերպով մտավ բերդի մեջ։ Նա մոտեցավ այն աշտարակներից մեկին, որ գտնըվում էին հայերի պաշտպանության ներքո։ Այդ ծերունու ներկայությունը, կարծես, մի դյութական զորությամբ ազդեց աշտարակի հայ պահակների վրա, որոնց թիվը մի քանի հարյուր հոգի էր, և գիշերը բոլորն էլ ապստամբվեցան, աշխատում էին բաց անել թշնամու առջև բերդի դռները։ Մելիք-Մեջլումը այդ լսելով թողեց իր բռնած դիրքը, շտապեց զսպելու ապստամբությունը։ Գիշերային խռովության մեջ նա գնդակի հարված ստացավ. նրան վիրավորված տարան Ջավադ-խանի պալատը։ Ծերունին բռնվեցավ։ Ո՞վ էր այդ չարագործը։

Դա Իսրայել կաթողիկոսի հայր Ապրես-աղան էր։ Նորա օծյալ որդին դավաճանություն գործեց Ղարաբաղի բոլոր հայ մելիքների դեմ, և նրանց թղթերը բռնելով, մատնեց Իբրահիմ-խանին, և Ղարաբաղի կործանման պատճառը դարձավ։ Այժմ ծերունի հայրը նույն եղեռնագործության դերը կատարեց։ Նրա փեսան[1], Մելիք-Ռուստամը, թշնամու բանակի մեջն էր, կամեցավ նրան և Իբրահիմ-խանին մի մեծ ծառայություն անել։

Նույն գիշերվա առավոտյան պահուն Ջավադ-խանը Ապրես-

---

[1] Ապրես-աղայի աղջիկը, Վարդ-խաթունը, Մելիք-Ռուստամի կինն էր։

աղայի գլուխը կտրել տվեց և որպես ընծա ուղարկեց թշնամու բանակը նրա փեսա Մելիք-Ռուստամին։ Իսկ ապստամբներից շատերը նույնպես պատժվեցան։

Մելիք-Մեջլումը, այդ վիրավոր առյուծը, խնամվում էր Ջավադ-խանի պալատում։ Երրորդ օրում նա վախճանվեցավ։ Բայց Ջավադ-խանը երկու ամբողջ շաբաթ նրա մարմինը պահեց իր տան մեջ, բժիշկը գնում-գալիս էր, իր ժամանակին նրա սենյակը ընթրիք և ճաշ էին տանում, և ամեն օր Ջավադ-խանը ուրախությամբ հայտնում էր հայոց զորքերին, թե շուտով Մելիք-Մեջլումը բոլորովին առողջացած դուրս կգա։ Դրանով խանը կամենում էր պահպանել հայոց զորքերի եռանդը, որպեսզի իրանց իշխանի մահը լսելով չվհատվեն, մինչև ինքը թշնամու հետ գործը վերջացնե։

Գանձակի բերդի պաշարման չորրորդ ամիսը լրանալու մոտ էր, երբ Ջավադ-խանը, առանց որևիցե զիջում անելու, հաշտվեցավ իր թշնամիների հետ։ Իբրահիմ-խանը հեռացավ դեպի Ղարաբաղ, Հերակլը գնաց Թիֆլիս, իսկ Օմար-խանը՝ դեպի Դաղըստան։ Մելիք-Մեջլումի մահը իմացան նրանք այն ժամանակ միայն, երբ հաշտության պայմանները արդեն կնքված էին։

Չնայելով, որ Թիֆլիսը ավերակ դարձնելուց հետո Մելիք-Մեջլումը փոքր-ինչ կորցրել էր իր համարումը հայ հասարակության աչքում, բայց Ջավադ-խանը, հարգելով իր հանգուցյալ բարեկամի հիշատակը, ուշադրություն չդարձրեց հայերի դժգոհության վրա և նրա մարմինը հանդիսավոր կերպով թաղել տվեց Գանձակի եկեղեցու տաճարի աջակողմյան խորանի մեջ։ Նույն եկեղեցու գավթում ամփոփվեցան Դալի-Մահրասայի (Ավագ վարդապետի) և Թյուլի-Արզումանի մարմինները։

Ջավադ-խանը իր հոգաբարձության ներքո առեց Մելիք-Մեջլումի միակ որդի Մելիք-Աթամ II։

Նրա հայրը, դեռ Թիֆլիսում եղած ժամանակ, նշանադրել էր իր որդու համար տեղացի երևելի ազնվական Յասսեի[1] կրտսեր աղջկան, գեղեցիկ Ռեհանին։ Երբ Մելիք-Մեջլումի մահից հետո Ջավադ-խանը հարսնախոսներ ուղարկեց Թիֆլիս Ռեհանին բերելու, նրա հայրը փոխանակ գեղեցիկ Ռեհանին տալու, տվեց երեց քրոջը, Թամարին, որը բավական տգեղ էր։ Այդ դժբախտ ամուս-

---

[1] Այդ Յասսեն չգիտենք Թիֆլիսի հայոց որ ազնվականների տոհմից էր։

նության պատճառով, Մելիք-Աթամ II, երկար չապրեց, նա մեռավ երիտասարդական հասակում, թողնելով մի աղջիկ միայն Սըհար-նազ անունով։

Իսկ Թամարը թեև շատ գեղեցիկ չէր, բայց խելացի և ճարպիկ կին էր։ Ամուսնի մահից հետո նա երկար կարողացավ կառավարել Մելիք-Իսրայելյանների թողած մեծ ժառանգությունը և նրանց հպատակներին, որ այն ժամանակ գտնվում էին Գանձակի գավառում։ Հետո իր աղջկան, Սըհար-նազին, կնության տալով նախիջևանցի Ասրի-բեկի որդի Սայի-բեկին, տիկին Թամարը ընտրեց նրան իբրև տնային փեսա, և Մելիք-Իսրայելյանների ժառանգությունը անցավ այդ Սայի-բեկի ձեռքը, որը սկսեց այնուհետև կրել իր կնոջ տոհմանունը։

## XXXIV

Մելիք-Մեջլումի մահը զրկեց Ջավադ-խանին լավ դաշնակցից, իսկ Ղարաբաղը զրկվեցավ իր քաջ հայրենասերից։ Նա իր հետ գերեզման տարավ ավելի ընդարձակ և հիմնավոր ծրագիրը՝ Ղարաբաղի մելիքությունների վերականգնման մասին, որը բոլորովին տարբերվում էր մյուս մելիքների և Հովսեփ արքեպիսկոպոսի գաղափարներից։ Երբ մի անգամ նրա նիզակակից Դալի-Մահրասան (Ավագ վարդապետը) համարձակվեցավ հանդիմանել նրան Թիֆլիսի ավերակ դարձնելու պատճառով, երիտասարդ մելիքը դառնացած կերպով պատասխանեց նրան. «բավական խաբվեցանք... մինչև երբ պետք է երազներով հրապուրվենք... մեր բարերարները մեզ կռվեցնում են իրանց թշնամիների հետ, իսկ իրանք մեջտեղից շահվում են... Մենք ավելի հաստատ պատճառներ ունենք հավատալու պարսից շահերին, քան թե ուրիշներին։ Շահ-Աբասը հաստատեց Ղարաբաղի մելիքություններ, Նադիրը վերահաստատեց, իսկ Աղա-Մամադ-շահը խոստացել է ինձ ավելի, քան թե իր նախորդները[1]...»։

Ինչ էլ որ լիներ Աղա-Մամադ-խանի խոստմունքը, Մելիք-Մեջլումը այժմ նրանից օգուտ քաղել չէր կարող։ Նրա թշնամիները — Իբրահիմ-խանը և Հերակլ իշխանը — ավելի լավ էին հաս-

[1] Մի հին ձեռագրի մեջ կարդում ենք, որ Աղա-Մամադ-խանը խոստացել էր Մելիք-Մեջլումին, ոչ միայն Իբրահիմ-խանին ոչնչացնելով բարձրացնել Ղարաբաղի մելիքությունները, այլև պիտի հանձներ նրան և Վրաստանի կառավարությունը։

կանում այդ բոլորը. և այդ էր պատճառը, որ մինչև Աղա-Մամադ-խանի կրկին վերադարձը, աշխատեցին Մելիք-Մեջլումին ոչնչացնելու։

Հերաթի և Ղանդահարի ապստամբությունները զսպելով, Աղա-Մամադ-խանը վայելում էր իր հաղթությունների փառքը իր նոր աթոռանիստ Թեհրան քաղաքում, երբ Գանձակի Ջավադ-խանից նամակ ստացավ Անդրկովկասում պատահած անցքերի մասին։ Նամակագիրը տեղեկացնում էր նրան կոմս Զուբովի արշավանքների և խաների ռուսաց հպատակություն ընդունելու մասին, հետո կոմս Զուբովի անակնկալ վերադարձի մասին դեպի Ռուսաստան,— տեղեկացնում էր Հերակլ իշխանի միաբանության մասին Իբրահիմ-խանի հետ, և իր բերդի, Գանձակի, պաշարման մասին հիշյալ երկու դաշնակիցներից, և վերջապես Մելիք-Մեջլումի սպանման մասին, որը շատ սիրելի էր շահին։— Այդ բոլորը լսելով, Աղա-Մամադ-խանը 1797 թվի ամառը կատարեց մի նոր արշավանք դեպի Անդրկովկաս։

Դեռ նա Երասխ գետից չէր անցած, Իբրահիմ-խանը տեսնելով, որ չէ կարող ընդդիմադրել պարսից ահագին զորությունը, և մանավանդ հույս չունենալով, որ հայոց մելիքները այս անգամ ես կօգնեն իրան Աղա-Մամադ-խանի դեմ, վեր առեց իր ընտանիքը, և գիշերով թողնելով Շուշի բերդը, փախավ Բալաքան իր աներ Օմար-խանի մոտ։

Այդ ժամանակ հայոց մելիքները նույնպես մեծ երկյուղի մեջ ընկան։ Նրանք դեռ Աղա-Մամադ-խանի առաջին արշավանքի ժամանակ մերժել էին շահի հրավերքը, որով կոչում էր նրանց ընդունել Պարսկաստանի հովանավորությունը, խոստանալով ոչընչացնել Իբրահիմ-խանին և վերահաստատել Ղարաբաղում մելիքների վաղեմի իշխանությունը։ Բայց մելիքները այնքան անխոհեմ գտնվեցան, որ բռնեցին Իբրահիմ-խանի կողմը, և որպես տեսանք XXIX գլխում, սկսեցին իրանց բոլոր ուժերով պաշտպանել նրան և Շուշի բերդը շահի ահագին զորության դեմ։ Իսկ այժմ ի՞նչ պիտի անեին, երբ նույն շահը ավելի մեծ պատրաստությամբ հարձակվեցավ Ղարաբաղի վրա։

Մելիքների զորքը իրանց ժողովուրդն էր, իսկ ժողովուրդը սկսել էր ցրիվ գալ, ոչ այնքան Աղա-Մամադ-խանի երկյուղից, որքան մի նոր և ավելի անգութ թշնամուց, որը այդ միջոցներում վրա հասավ։— Դա էր Ղարաբաղի սարսափելի սովը, որին հետևվեց ժանտախտը։

Մենք հետո ցույց կտանք, թե սովը և ժանտախտը, խառնվելով քաղաքական տագնապների հետ, որպիսի կործանիչ ներգործություն ունեցան Ղարաբաղի հայ իշխանությունների վրա, իսկ այժմ այդքանը կասենք, որ մելիքները որքան էլ ցանկանային, չէին կարող դեմ դնել Աղա-Մամադ-խանին, որովհետև նրանց ժողովուրդը այդ ժամանակ միայն հացի համար էր մտածում և վազում էր դեպի այն կողմը, ուր կարող էր հաց գտնել։

Դեռ Աղա-Մամադ-խանը չհասած Շուշի բերդին, Մելիք-Բեգլարյան Մելիք-Աբովը գնաց Վրաստանի կողմերը, իսկ Մելիք-Շահնազարյան Մելիք-Ջումշուդը կամենում էր գնալ Թիֆլիս, բայց ճանապարհին պատահեց Աղա-Մամադ-խանի խումբերին, և նրանց հետ կռիվ ունենալով, գլխից վերք ստացավ։ Նրան վիրավոր բերեցին Աղա-Մամադ-խանի մոտ, երբ նա արդեն բանակ էր դրած Ասկարանի ավերակների մոտ, Շուշի բերդից մի քանի մղոն հեռավորության վրա։

Քսան հազար թուման տուգանքը հազիվ կարողացավ ազատել Մելիք-Ջումշուդի գլուխը շահի դահիճների ձեռքից։ Նրա տունը կողոպտելուց և կայքը հափշտակելուց հետո շահը նրան ներում շնորհեց։

Մելիք-Ջումշուդն անձամբ առաջնորդեց նրան, տարավ Շուշի բերդը, որը առանց ընդդիմության իր դռները բաց արեց ներքինի թագավորի առջև։ Հայոց հոգևորականությունը հանդեսով դուրս եկավ նրա առջևը և տարավ Իբրահիմ-խանի պալատը։

Այդ հանդեսի ժամանակ շահի մանկահասակ սենեկապետներից մեկի, որ կոչվում էր Սաֆարալի-բեկ, ուշադրությունը գրավեց սուրբ աստվածածնի պատկերը, ոսկեզօծ շրջանակի մեջ, որ կրում էր իր կուրծքի վրա մանուկ Հիսուսին։ Նա հարցրեց՝ ո՞ւմ պատկերն է այդ, երբ պատասխանեցին, մոտեցավ և համբուրեց։ Նույն րոպեում նրա աչքերում երևացին մի քանի կաթիլ արտասուքներ, իսկ այդ մի քանի կաթիլները պատճառ եղան շատ արյան կաթիլների...

Աղա-Մամադ-խանը մնաց Շուշի բերդում 25 օր։ Այդ ժամանակ կամեցավ նա պատժել այն բոլոր հայ և թուրք ավագներին, որոնք իրան ընդդիմություն էին գործել Շուշի բերդի առաջին պաշարման ժամանակ և որոնք Իբրահիմ-խանի կուսակիցներ էին։ Դրանց թվում էին՝ Մելիք-Ռուստամը, Մելիք-Միրզախանյան Մելիք-Ալլահվերդին և մի քանի հայ հոգևորականներ, յուզբաշիներ և տանուտերներ։ Դրանց թվումն էին Իբրահիմ-խանի եղբոր որդի

Մամադ-բեկը և մի քանի ուրիշ բեկեր։ Ամենքն էլ բանտարկված էին։

Մի գիշեր, որի առավոտը բանտարկյալներին պիտի դուրս բերեին հրապարակի վրա գլխատելու համար, շահի մոտ մտավ մեր վերև հիշած սենեկապետը՝ պատանի Սաֆարալի-բեկը։ Նա այնքան սիրելի էր շահին, որ համարձակվեցավ նրա ոտները համբուրելով աղաչել, որ ներումն շնորհե այն դատապարտյալներին, որոնց մյուս օրը պիտի գլխատեին։ Երբ շահից մերժում ստացավ, նա սկսեց խնդրել, որ գոնե խնայե հայերին...։ Վերջին խնդիրքը սաստիկ բորբոքեց շահի բարկությունը և նա ասեց հետևյալ խոսքերը. «կարմիր արյունով ցողելով «սև այգին»[1], ես նրան վարդի գույն պիտի տամ... առավոտյան այն բոլոր դավաճանների գլուխներից հրապարակի վրա մի աշտարակ պիտի կազմել տամ, իսկ քո գլուխը, Սաֆարալի-բեկ, այդ աշտարակի գագաթի վրա պիտի դնեմ...»։

Պատանին սարսափած դուրս եկավ շահի սենյակից։

Նրան ծանոթ էր իր թագավորի խստասրտությունը. նա գիտեր, ինչ որ ասեց նա, անպատճառ կկատարե։ Հղացավ մի չար խորհուրդ...

Նույն գիշերը պալատում տեսնվեցավ նա շահի մի այլ սենեկապետի հետ, որ իրան խիստ մտերիմ էր։ Այդ վերջինը կոչվում էր Աբաս-բեկ։ Դեռ առավոտյան լույսը չբացված, երկուսն էլ մտան շահի քնարանը։ Աբաս-բեկը այնքան սրտի արիություն չունենալով, երկյուղից ուշաթափ եղավ և ընկավ քնարանի հատակի վրա։ Շահը խորին քնի մեջ էր. նրա թանկագին մահճի չորս կողմերում, ոսկյա աշտանակների վրա, դեռ վառվում էին ճրագները։ Սաֆարալի-բեկը մոտեցավ և խենջարի մի քանի հարվածներով վերջացրեց գործը...

Առավոտյան ամբողջ բերդի մեջ շշուկ տարածվեցավ, թե Աղա-Մամադ-խանը սպանված է։ Բայց ոչ ոք չէր հավատում, մինչև նույն Սաֆարալի-բեկը, թագավորի կտրած գլուխը իր ձեռքին բռնած, դուրս եկավ պալատից, բերեց և ձգեց հրապարակի վրա։ Այդ միջոցին բերդի հայ և թուրք բնակիչները թափվեցան պալատի վրա, սկսեցին կողոպտել շահի գանձերը։

Պարսից զորքերը անմիջապես թողեցին բերդը և փախան դեպի Պարսկաստան։ Սադր-խան շաղաղին, որը Աղա-Մամադ-խանի նշանավոր զորապետներից էր, հազիվ կարողացավ երկու արքա-

---

[1] Ղարա-բաղ թուրքաց լեզվով նշանակում է սև այգի։

յասպաններից մեկին միայն՝ Աբաս-բեկին, կալանավորել և իր հետ տարավ Պարսկաստան, իսկ Սաֆարալի-բեկը թաքնվեցավ։

Մեզ համար շատ պարզ չէ այդ արքայասպանի ի՞նչ ազգից կամ ո՞վ լինելը, միայն մի ձեռագիր պատմության մեջ, որը գրըված է Ղարաբաղի վանքերից մեկում, կարդում ենք, որ Սաֆարալի-բեկը ազգով հայ էր. մանկության հասակում իբրև գերի տարված էր Պարսկաստան և այնտեղ բռնի մահմեդականություն էին ընդունել տվել։ Բայց նրա սրտում դեռ բոլորովին չէին հանգած հայության և քրիստոնեական կրոնի կայծերը, որոնք իսկույն բորբոքվել սկսան, երբ նա Շուշի բերդը մտնելու ժամանակ տեսավ հայոց եկեղեցական հանդեսը և համբուրեց սուրբ աստվածածնի պատկերը[1]...

Ջնայելով, որ Աղա-Մամադ-խանի սպանման լուրը տարածվեցավ ամեն տեղ, բայց Իբրահիմ-խանը տակավին չէր համարձակվում Բալաքանից վերադառնալ Շուշի բերդը։ Նրա բացակայությունից օգուտ քաղելով, բերդին սկսեց տիրել Իբրահիմ-խանի եղբորորդի Մամադ-բեկը։

Այդ Մամադ-բեկը առաջարկեց հայոց Մելիք-Ռուստամին միանալ իր հետ, հակառակել Իբրահիմ-խանին, պայման դնելով,

---

1 Մեր ծանոթության մեջ հարկավոր ենք համարում դնել մի քանի քաղվածքներ հիշյալ ձեռագիր պատմությունից. «Բայց նա (Աղա-Մամադ-խանը) զորօքն եկն մտանել ի բերդաքաղաքն Շուշի։ Հայք վասն երկյուղի ելին ընդ առաջ նորա դասուք քահանայից, խաչիվ և խաչվառավ և ամենայն զարդուք։ Իբրև ետես զխումբս հայոց մեծ բռնավորն, զկայ առեալ անդ ի տեղի, և եհարց ի մերձակայ նախարարաց իւրայնոց. թե արդյոք ո՞յք են դոքա, զի այդպես հրաշափառ զգեստուք և զարդուք գան ընդ առաջ մեր։ Եվ որք հմուտք էին և տեղեակք իրանց գործելոց, ետուն զարժանն պատասխանի, թե ի հայս կան հնական սովորութիւնք այսպիսիք, գնալ ընդ առաջ թագավորաց ի մեծարանս և ի պատիվ երեսաց նոցա, առ շարժել ի գթածութիւն և ի խնամս վասն ողորմելի ազգին իւրեանց։ Առ այս պատասխան սիրայորդոր բանիւք մխիթարեաց և քաջալերեաց զազգս մեր տառապեալ, բայց վերին երեսօք, զի գաղեալ նենգութիւնն ծրարեալ պահեր ծածկաբար ի մտի իւրում։

Մինչ խօսեր բռնավորն ընդ ազգիս մերոյ իշխանաց, ընդ իւր ունելով պատանեակ մի մտերիմ, և ամենայն ինչ ի ձեռս նորա էր. ի ձեռաց նորա կերակրիւր։ Պատանին էր յազգիս հայոց ի վաղուց գերեալ և տարեալ ընծաեալ էին նմա։ Ետես ի նմին ժամու զպատկեր տիրամօրն, որ ուներ ի գիրկս զմանկացեալն Հիսուս, կարի իմն գեղեցկազարդ և ոսկեզօծ նկարեալ։ Եհարց պատանին, թե պատկերս այս որո՞յ է. նոքա չծանեան, զի այդ հիշեաց զտառապանս ազգի մերոյ...»։

Հետո մանրամասնաբար նկարագրում է այն շարժառիթները, որ դրդեցին պատանուն սպանելու թագավորին։

որ Ղարաբաղի հայերի գլխավորը ինքը, Մելիք-Ռուստամը, կլինի, իսկ Թուրքերի գլխավորը՝ Մամադ-բեկը։

Հայերը ըստ մեծի մասին տիրասեր են դեպի օտարները, իսկ անհավատարիմ դեպի իրանց հարազատ ազգայինները,— այդ իսկ պատճառով Մելիք-Ռուստամը մերժեց Մամադ-բեկի առաջարկությունը և չկամեցավ անհավատարիմ լինել Իբրահիմ-խանին, որը այնքան չարիքներ էր հասցրել Ղարաբաղի հայ ժողովրդին։

Մելիքը նամակով հայտնեց Իբրահիմ-խանին բոլոր անցքերը, խոստացավ նրան իր օգնությունը, փութացնելով, որ առանց ժամանակ կորցնելու վերադառնա Բալաքանից և կրկին ձեռքն առնե Շուշի բերդի իշխանությունը։ Իբրահիմ-խանը ինքը չվստահացավ գալ և ուղարկեց իր որդի Մեհտի-խանին։ Մելիք-Ռուստամը կես ճանապարհի վրա իր ձիավորների խումբերով հանդիպեց Մեհտի-խանին, և նրան գիշերով մտցնելով Շուշի բերդը, ուղղակի տարավ նրա հոր պալատը, որի մեջ այդ ժամանակ բնակվում էր Մամադ-բեկը։

Մամադ-բեկը իրան արդեն բերդի տերը համարելով, ընդունեց Մեհտի-խանին իբրև մի հյուր։ Բայց Մելիք-Ռուստամը առանց ժամանակ կորցնելու, հայերից պահապաններ դրեց նրա տան վրա, և կալանավորեց Մամադ-բեկին։

Այդ միևնույն Մելիք-Ռուստամը, որը նույն տարվա մեջ Իբրահիմ-խանին առաջնորդելով, պաշարեց Գանձակի բերդը և Մելիք-Մեջլումին սպանել տվեց,— այժմ նույն մարդը, Մամադ-բեկին կալանավորելով, և Իբրահիմ-խանի որդուն պաշտպանելով, կրկին հաստատեց Ղարաբաղի բռնակալների իշխանությունը, մի այնպիսի ճգնաժամի ժամանակ, որ խիստ հարմար միջոցներ կային ոչնչացնելու նրանց...

Երբ ամեն ինչ խաղաղացած էր Շուշի բերդում, Իբրահիմ-խանը վերադարձավ Բալաքանից։ Մամադ-բեկը այդ ժամանակ բանտից փախավ, գնաց Շամախու Մուստաֆա-խանի մոտ։ Այնտեղից երկու աչքերը կուրացրած, կրկին հետ բերեցին փախստականին։

Ավելորդ չէր լինի մի երկու խոսք ասել, թե ի՞նչ եղավ արքայազն Սաֆարալի-բեկը։

Աղա-Մամադ-խանի սպանումից հետո պարսից գահը ժառանգեց Ֆաթալի-շահը։

Իբրահիմ-խանը, ցույց տալու համար, թե սպանությունը կատարվել է ոչ միայն առանց իր կամքի, այլ հակառակ իր կամքի, վատությամբ կալանավորեց նրան և ուղարկեց Պարսկաստան։ Այս-

տեղ մեջ ենք բերում աշխարհաբար թարգմանությունը այն տողերի, որ քաղում ենք վերոհիշյալ անտիպ պատմությունից։

«Բռնելով ողորմելի պատանու ձեռքից, տվեցին մարդախանձ և գիշատիչ գազանների ձեռքը։ Այդ կատաղիները կանչեցին նույն ժամում մի պայտառ[1] արհեստավոր, պատվիրեցին նրան կտրել և կազմել մի նոր օրինակով պայտ, որ վշտակիր պատանու ոտների չափին համեմատ լիներ։ Նա փութաց անմիջապես կատարելու նրանց պատվերը։ Հետո նրա ոտները մերկացնելով, և ամեն կողմից երկաթե կապանքներով պնդացնելով, դրեցին մահացու պայտերը նրա ոտների տակ, և սրածայր մեխելով գամեցին։ Առվակի նման վազում էր հորդահոս արյունը տանջվողի վերքերից և ներկում էր այն տեղը։ Հետո շղթաներով կապեցին նրա ձեռքերը, ոտները, նաև պարանոցը, և վեր առնելով, տարան Տավրեժ քաղաքը։ Այնտեղ կանգնացրին նրան ատյանում դատավորի առջև և բազմատեսակ հարցաքննություններից հետո, մահվան դատապարտեցին, հրամայելով, որ չարաչար կերպով տանջեն նրան, և անդամ-անդամ կտրատեն, հետո թողնեն գազաններին ու թռչուններին ուտելու համար։ Դատավորի հրամանի համեմատ, արյունարբու դահիճները խստագույն չարչարանքներով տանում էին նրան կատարման տեղը։ Այդ միջոցին մահապարտը բաց արեց իր բերանը, սկսեց անարգել Մուհամեդի աղանդը, և խոստովանվեց թե ինչպես ինքը հավատում էր քրիստոնյաների կրոնին։ Երբ որ լսեցին նրա հայհոյությունները, կատաղի գազանների նման հարձակվեցան նրա վրա, և ամեն մարդ իր սրի ծայրը ներկում էր նրա արյունով։ Այսպես տանջելով, հասցրին նրան մահապարտների տեղը, քաղաքից դուրս։ Այնտեղ անտանելի չարչարանքներ տալով, մաս-մաս կտրատեցին նրա մարմինը, և թողեցին այնտեղ, որ արքունի հրամանի համեմատ թռչունների ու գազանների կերակուր դառնա։

Որովհետև հայերը վաղուց գիտեին նրա քրիստոնյայի զավակ լինելը, նաև Քրիստոսի հավատալը, այդ պատճառով մեծ աղաչանքով խնդրում էին, որ նահատակի մարմինը տան իրանց թաղելու համար։ Ասեցին նախարարները. թույլ տվեցեք, որ հայերը իրանց անարգ օրենքի համեմատ թաղեն։ Որովհետև ավելի վատթար էին համարում հայոց թաղումը, քան գազանների կերակուր լինելը»։

[1] Պայտառ նշ. պայտ կամ նալ շինող։

Շարունակության մեջ նկարագրված է, թե ինչպես գիշերը լույս ծագեց նրա գերեզմանից և այլն։

Բայց ինչ որ ճշմարիտ է, այն է, որ այդ սենեկապետը առանձին համակրություն ուներ դեպի հայերը, նա Մելիք-Մեջլումի լավ բարեկամն էր, և մելիքը նրա միջնորդությամբն էր ազդում Աղա-Մամադ-շահի վրա։

## XXXV

Մենք համարյա մոռացության տվեցինք, թե ի՞նչ եղավ Տիզակի իշխան Մելիք-Ավանյան Մելիք-Բախտամը, որը իբրև քաղաքական հանցավոր աքսորված էր Պարսկաստանի Արդավիլ բերդում (տե՛ս գլ. XXI)։

Այն օրից անցել էր ամբողջ տասն տարի, այդ հերոսը դեռ մաշվում էր հեռավոր բանտարկության մեջ։

Երբ Աղա-Մամադ-խանը վերջին անգամ արշավանք գործեց Ղարաբաղի կողմերը և Շուշի բերդում սպանվեցավ (1797), նա գալու ժամանակ անցավ Արդավիլի բերդաքաղաքով։ Այստեղ գտնվում է այն երևելի մեչիդը, որի մեջ զետեղված են Շեյխ-Սեֆիի և մյուս Սեֆեվի թագավորների շիրիմները։ Պարսից նոր թագավորների սովորության համեմատ, Աղա-Մամադ-խանը, որպես ուխտավոր, այցելություն գործեց արքաների գերեզմաններին։ Այդ ծեսը կատարելուց հետո, նա պետք է այցելություն գործեր բերդի բանտարկյալների մոտ, ում որ արժանի էր, ներումն շնորհելու համար։

Այդ բերդում պահվում էին նշանավոր քաղաքական հանցավորները միայն։ Աղա-Մամադ-խանը նրանց շատերին ներումն շնորհեց, որոնց թվում և Մելիք-Բախտամին, մանավանդ երբ իմացավ, որ նա Մելիք-Ավան-խանի թոռն է, և նրա նախնիքը Պարսկաստանին մեծ ծառայություններ են արել։

Շահը առաջարկեց Մելիք-Բախտամին իր հետ գնալ Ղարաբաղ և այնտեղ վարել իր հայրենի իշխանությունը։ Իսկ մելիքը թեև քաջ, պատերազմական մարդ էր, բայց ուներ և իր կրոնական մոլեռանդությունները։ Երկար տարիներ պարսկական աքսորանքի մեջ ապրելով, զուրկ եկեղեցուց, զուրկ պահեցողությունից,— այդ համարում էր նա մի մեծ հանցանք կրոնի և եկեղեցու դեմ։ Այդ պատճառով, փոխանակ Աղա-Մամադ-խանի զորքերի հետ իր հայ-

*թենիքը գնալու, նա ուղղակի դիմեց էջմիածին իր մեղքերը քավելու համար։*

*էջմիածնից վերադարձավ նա Ղարաբաղ այն ժամանակ, երբ Աղա-Մամադ-խանը Շուշի բերդում սպանված էր և Իբրահիմ-խանը ավելի մեծ վստահությամբ վարում էր տեղային իշխանությունը։*

*Մելիքը գտավ իր հայրենիքը թշվառ վիճակի մեջ. սովը սարսափելի կոտորածներ էր անում և ժողովրդի մեծ մասը ցրիվ էր եկած։ Իսկ ինքը ավելի անբախտ գտնվեցավ։ Իբրահիմ-խանը լսելով նրա գալուստը, սկսեց բարեկամական կեղծ ցույցերով հրապուրել նրան, մինչև իր սեղանի վրա կարողացավ թունավորել նրան*[1]*։*

*Տիզակի տիրապետողների իշխանությունը ամենավտանգավորն էր Իբրահիմ-խանի համար։ Նրանք Պարսկաստանին ավելի մոտ լինելով, ուղղակի հարաբերություններ ունեին պարսից բարձր Դռան հետ։ Մելիք-Բախտամի ազատություն գտնելը Արդավիլի բանտից Աղա-Մամադ-խանի շնորհիվ, և վերջինի սպանվելը Շուշի բերդում, շատ հասկանալի է, որ ավելի կասկածներ Իբրահիմ-խանի երկյուղը Տիզակի տիրապետողներից, և այդ պատճառով, Մելիք-Բախտամին տմարդությամբ ոչնչացնելուց հետո, սկսեց նա որոգայթներ լարել նրա ժառանգների համար։*

*Մելիք-Բախտամին հաջորդեց որդին, Մելիք-Աբասը։*

*Մեր ձեռքում գտնված մի ձեռագիր պատմությունից քաղում ենք հետևյալը Մելիք-Աբասի հատկանիշների մասին.*

*«Նրանց (Մելիք-Ավանյանների) ազգի և սերունդների մեջ տակավին չէր ծնված, արդարև, մի այնպիսի տղամարդ պարթևական, հսկայազոր կերպարանքով և աhագնակերպ հասակով։ Իր քաջագործություններով սկսեց հետզհետե նվաճել նա ոչ միայն իր բոլոր հայրենիքը, այլև մահմեդականների ազգը։ Այդ պատճառով, տարածվելով սփռվեցավ նրա քաջության և անաչառ դատաստանների համբավը, որով պատժում էր հանցավորներին և վնասակար անձինքներին։ Առանց արծաթսիրության և կաշառքի էր կատարում նա իր դատավճիռները. մահապարտներին պատժում էր առանց*

---

[1] *Նրա գերեզմանի արձանագրության մեջ պահպանված է նենգավոր խանի ցած դավաճանության հիշատակը. «Յայսմ տապանի հանգչի մարմին՝ քաջ և արի Մելիք-Բախտամին. սա էր որդի Մելիք-Աթամին. մահ և վախճան պատմեն սորին մահադեղով Իբրահիմ-խանին. և որք հանդիպիք ի տապան սորին, միով բանիւ ողորմի ասէք, ամէն»։*

խնայելու՝ շատերին կախում էր մեծ ճանապարհների վրա կախաղաններից, և շատերին տալիս էր իր ծառաների ձեռքը, որ սրախողխող անեն հասարակության և ավազակ մարդիկների աչքերի առջև, որպեսզի ոչ ոք այնուհետև չվստահանա նույն չարություններ գործելու։ Արդարև, սարսափելով դողում էր ամբողջ գավառը նրանից։ Նրա քաջագործությունների համբավը շատ վաղ հասել էր մեծ բռնավորի (Իբրահիմ-խանի) ականջներին... Բայց նա իր սրտի ոխը ծածկած ուներ, չէր կամենում հանկարծ հայտնել մեր նախարարին (Մելիք-Աբասին), որովհետև նրա նպատակը այն էր, որ դարձնի նրան հայկական դավանությունից մահմեդական դենին...»։

Հետո երկար խոսվում է այն միջոցների մասին, որ Իբրահիմ-խանը գործ դրեց իշխանի հավաքը խափանելու համար։

Իբրահիմ-խանը, արդարև, այժմ փոխել էր իր քաղաքականության եղանակը հայոց մելիքների վերաբերությամբ։ Նա տեսնում էր, որ դավադրությունը, սպանությունը, թույնը և այլ որոգայթները նրանց կյանքի դեմ, չեն հասցնում իր ցանկացած նպատակին։ Սպանված հոր փոխարեն իշխում էր որդին, կամ նրա տոհմակիցներից մեկը։ Վերջ ի վերջո համոզվեցավ, որ փոխանակ թույնի, ավելի լավ էր նրանց ընդունել տալ մահմեդական կրոնը։ Կրոնը փոխելով նրանք ավելի հեշտությամբ կոչնչանային և կխառնվեին թուրքերի հետ։

Առաջին փորձը կատարեց նա Մելիք-Աբասի վրա, բայց նրա բոլոր խորամանկությունները փշրվեցան առաքինի իշխանի հաստատամտության առջև։ Իբրահիմ-խանը մինչև անգամ աշխատեց հրապուրել նրան իր աղջիկների գեղեցկությամբ, բայց երբ նկատեց, որ նրա հավատքը խախտելու հնար չկա, կրկին ձեռք առեց սպանության հնարները...

Մի անգամ Մելիք-Աբասը անձամբ գնացել էր Ցոր գյուղը մի քրեական գործ քննելու համար. գիշերը ստիպվեցավ մնալ և հյուրասիրվեցավ տեղային ավագ քահանայի տանը։ Գիշերը նույն տան վրա հարձակվեցան մի խումբ ձիավորներ, որ պատրաստված էին Իբրահիմ-խանից։ Նրանք գտան մելիքին քնած և անպատրաստ վիճակի մեջ։ Սրերի տակ կտրատեցին նրան։

Սպանվածի մարմինը բերվեցավ իր Տող բերդը։ Նույն ժամում, երբ եկեղեցու մեջ պատարագ էր մատուցվում և պատրաստվում էին թաղման հանդեսը կատարելու, Իբրահիմ-խանի հրամանով կատարվեցավ մի այլ չարագործություն։ Հանկարծ եկեղեցում ներս մտան խանի զինված մարդիկը, աշխատում էին հափշտակել

*հանգուցյալի մարմինը, ասելով, թե նա կենդանության ժամանակ խոստովանվել էր մահմեդական կրոնը, իրավունք չէ նրան քրիստոնեական ծեսերով թաղել։ Զայրացած ժողովուրդը մի կողմից, հանգուցյալի բարեկամները մյուս կողմից, հարձակվեցան խանի մարդիկների վրա, նրանցից շատերին կոտորեցին, ջարդեցին, տեղի ունեցան բավական մեծ թվով սպանություններ։ Խանի մնացած մարդիկը փախչելով, իրանց ջարդվելու մասին լուր տարան Շուշի բերդը։ Այս անգամ զայրացած խանը զորքեր ուղարկեց, բայց մինչև զորքերի հասնելը թաղման խորհուրդը կատարված էր։*

*Նրանք կամեցան գերեզմանից դուրս հանել հանգուցյալի մարմինը։ Այդ հանդգնությունը պատճառ տվեց մի ավելի սարսափելի կռվի հայերի և թուրքերի մեջ։ Բայց որովհետև հայերը անպատրաստ էին և չէին սպասում մինչև այս աստիճան բռնություն խանի կողմից, այս պատճառով հաղթվեցան։ Հանգուցյալի մարմինը դուրս հանեցին իր տոհմային գերեզմանատնից[1] և տարան մահմեդականների գերեզմանատան մեջ թաղեցին։*

*Ի՞նչ նպատակ կար այդ բարբարոսության մեջ։—Այն, որ հետո Իբրահիմ-խանը առիթ ունենա ասելու հանգուցյալի ժառանգներին, թե ձեր հայրը մահմեդականների և մահմեդականության մեջ մեռավ, դուք ևս պետք է ընդունեք նույն կրոնը։ Այդպես էլ եղավ։ Այնուհետև խանը, բավական ուժից ընկած ժառանգներին, սկսեց բացարձակ կերպով կրոնական հալածանքի ենթարկել նրանց։*

*Այդ միջոցներում Ղարաբաղում սովը և ժանտախտը սարսափելի կոտորածներ էին անում։ Գյուղերը հետզհետե դատարկվում էին, ժողովուրդը գաղթում էր։ Այդ ժամանակն էր, որ հանգուցյալ Մելիք-Աբասի որդի Մելիք-Ղահրամանը (որ և կոչվում էր Բաղրբեկ) Տիզակի ժողովրդի մի մասը իր հետ առնելով գաղթեց դեպի Վրաստան։*

*Մելիք-Ավանյան Բաղդադ-Բեկը (Մելիք-Եսայու որդին[2]) մնաց Իբրահիմ-խանի բանտում։ Երկար չարչարանքներ կրելուց հետո, ստիպվեցավ նա իր երկու որդիների հետ, որոնք կոչվում էին Ասլան և Վահան, ընդունել մահմեդականություն։ Դրանց իշխանությունը կարճատև եղավ, որովհետև Բաղդադ-բեկը մի հակառակության համար խեղդամահ եղավ նույն Իբրահիմ-խանի ձեռքով։ Իսկ*

---

*1 Մելիք-Ավանյանների տոհմային գերեզմանատունը գտնվում է Տող բերդի եկեղեցու գավթում։*

*2 Տե՛ս X, XI և հետևյալ գլուխներում։*

*նրա որդի Ասլանը, կամենալով կրկին վերադառնալ դեպի քրիստոնեական կրոնը, նույն խանի մահադեղով սպանվեցավ։ Վահանի վախճանը մեզ հայտնի չէ։*

*Եվ այսպես, Մելիք-Ավանյանների, Տիզակի հզոր տիրապետողների, համարյա ամբողջ սերունդը կամ մահադեղով կամ սպանությունով ոչնչացավ Իբրահիմ-խանի ձեռքով։ Եվ չմոռանանք, որ այդ նշանավոր տոհմի առաջին ներկայացուցիչն էր այն մեծ մարդը, որը Պետրոս Մեծի հետ թղթակցություններ ուներ, որը փառավոր ընդունելություն գտավ Աննա Իվանովնա և Ելիզավետա Պետրովնա կայսրուհիների պալատում, որը ռուսաց կառավարությունից ստացավ գեներալի աստիճան, իսկ Նադիր-շահից խանության աստիճան։— Դա գեներալ Մելիք-Ավան-խանն էր, որի կատարած մեծագործությունների հետ ծանոթացանք մեր պատմության սկզբի գլուխներում։*

*Մելիք-Ավանյանների տոհմի վերջին ներկայացուցիչների մի ճյուղը մահմեդական դարձավ, մյուսը մնաց քրիստոնյա։ Նրանց ընդարձակ կալվածներին, Շուշի բերդի խաների օգնությամբ, տիրեցին մահմեդական ժառանգները, իսկ քրիստոնյա մնացածները զրկվեցան ժառանգությունից*[1]*։ Այդ տոհմի մի այլ ճյուղը, որպես էին՝ իշխան Մելիքովները, իշխան Սումբատովները, Հայրապետյանները, Ռուսաստանում մեծ-մեծ պաշտոնների մեջ մտան, փայլեցին, իսկ հետո ի՞նչ եղան,— մեզ հայտնի չէ։*

## XXXVI

**Սովը, ժանտախտը և Ղարաբաղի գաղթականությունը:** *1795 թվից մինչև 1798 թվի սկիզբը պարբերաբար կատարվեցան մի քանի, մինը մյուսից ավելի կորստաբեր, ավելի փոթորկալի արշավանքներ։ Ղարաբաղը և նրա շրջակա գավառներն անընդհատ պատերազմների, ասպատակության և արյան ասպարեզ դարձան։ Աղա-Մամադ-խանի առաջին արշավանքից հետո տեղի ունեցավ կոմս Զուբովի արշավանքը, հետո Գանձակի պաշարումը, հետո*

---

*[1] Տող բերդում, Մելիք-Ավան-խանի պալատում այժմ բնակվում է մի Ֆարհադ-բեկ անունով թուրք ազնվական, որը պարծանքով հիշում է, թե ինքը Մելիք-Ավանյանների նշանավոր տոհմի ժառանգներիցն է։ Եվ իրավ, նա Բաղդադ-բեկի թոռը և Մելիք-Ասլանի որդին է։ Իսկ Մելիք-Ավանյանների քրիստոնյա մնացած ժառանգները այժմ թշվառ աղքատության մեջ բնակվում են նույն Տող բերդում, թեև ազնվականներ են համարվում։*

Աղա-Մամադ-խանի երկրորդ արշավանքը։ Այդ արյունահեղ կռիվների ժամանակ, որ տևեցին ամբողջ երեք տարի, շինականների կյանքը այն աստիճան անապահով դրության մեջ էր, որ չկարողացան ոչ իր ժամանակին ցանել և ոչ իր ժամանակին հնձել։ Եվ երբ տեղի ունեցավ 1797 թվի սարսափելի երաշտությունը, որ ցամաքացրեց բոլոր բուսականությունը,— այդ ժամանակ եղած ցանքերն էլ իսպառ ոչնչացան։

Կարծես, ինքը բնությունը միաբանվել էր մարդկային գազանությունների հետ Ղարաբաղը բոլորովին ամայի և անապատ դարձնելու համար։ Մարդիկ սպառեցին բոլորը, ինչ որ կարելի էր ուտել, հետո անասունների նման սկսեցին կերակրվել խոտերով և արմատներով։ Դա այն զարհուրելի սովերից մեկն էր, որոնց սարսափելի նկարագրությունները մեծ տեղ են բռնում Հայաստանի պատմության մեջ, լանկթեմուրների և այլ այսպիսի մարդկային հրեշների կատաղի արշավանքներից հետո։

Անկարգ, անսովոր սնունդի պատճառով երկրները ծածկվեցան դիակներով։ Սովից հետո տեղի ունեցավ 1798 թվի ժանտախտը, որը լրացրեց ժողովրդի դժբախտության պակասը։

60 հազար տուն հայ բնակիչներ ունեցող Ղարաբաղը համարյա թե դատարկվեցավ։ Այդ ժամանակ տեղի ունեցավ Սյունյաց աշխարհի մեծ գաղթականությունը։ Սարսափած ժողովուրդը սկսեց ցրիվ գալ, սկսեց թողնել հայրենիքը և հեռանալ դեպի Տաճկաստան, դեպի Պարսկաստան, դեպի Ռուսաստան և դեպի Վրաստան։

Թե ի՞նչ եղան Տաճկաստան, Պարսկաստան և Ռուսաստան գաղթողները,— մենք նրանց մասին խիստ փոքր տեղեկություններ ունենք, բացի դրանից, մեր պատմության նպատակից դուրս է նրանց վրա խոսելը. կխոսենք Վրաստանի գաղթականների մասին։

Ղարաբաղի հայոց գաղթականությունը գլխավոր պատճառը դարձավ Ղարաբաղի հայկական իշխանությունների կործանմանը։ Փանահ-խանը, Իբրահիմ-խանը և այլ դրանց նմանները այնքան չվնասեցին հայոց մելիքություններին, որքան վնասեցին իրանք մելիքները, երբ թողնելով հայրենի հողը, սկսեցին իրանց ժողովրդի հետ օտար հողի վրա ապահովություն որոնել։ Կտրվելով հայրենի աշխարհից, նրանք զրկվեցան ամեն բանից…

Թեև Ղարաբաղի մելիքները այն նախատեսությունն ունեին, որ ամեն անգամ, երբ հայրենիքում կյանքը անտանելի էր դառնում, երբ ստիպված էին լինում գաղթել մի օտար երկիր, նրանք միշտ պահանջել են թե իրանց համար և թե իրանց ժողովրդի հա-

մար առանձին արտոնություններ։ Բայց այդ արտոնական կացությունը մի օտար հողի վրա չէր կարող կատարելապես լրացնել այն կորուստը, որ նրանք պիտի կրեին հայրենիքը թողնելով։

1798 թվի հունվար ամսում վախճանվեցավ վրաց Հերակլ իշխանը, նրան հաջորդեց որդին Գիորգի XII։

Հերակլի մահից հետո իշխանական ընտանիքի թե տղամարդերի և թե կանանց մեջ ծագեցան անհաշտ կռիվներ և անվերջանալի երկպառակություններ։ Ռուսաստանի Հովսեփ արքեպիսկոպոսը, որը վրաց իշխանական գերդաստանի մտերիմ բարեկամներից մեկն էր, շատ աշխատեց միաբանությունը և խաղաղությունը նրանց մեջ վերականգնելու համար։ Բայց նրա բոլոր ջանքերը ցանկացած արդյունքը չունեցան։ Արքեպիսկոպոսը այդ երկպառակությունները վնասակար էր համարում Վրաստանի համար։

1797 և 1798 թվականներում, այսինքն՝ սովի և ժանտախտի ամենասաստիկ ժամանակներում, Վրաստանում խմբվեցավ Ղարաբաղի հայերի ահագին բազմություն։ Այդ միախմբումը հայերի և վրացիների Հովսեփ արքեպիսկոպոսն ավելի նպաստավոր էր համարում իր նպատակների իրագործմանը։ Բայց այդ բոլորը շատ ուշ էր արդեն։ Եթե հարգելի արքեպիսկոպոսը իր անչափ եռանդի և հայրենասիրության հետ փոքր-ինչ լուրջ քաղաքագիտություն ունենար, կարելի է այն սխալանքների մեջ չընկներ, որոնց հանդիպեց նա իր ամբողջ քաղաքական գործունեության ասպարեզում։ Նա սաստիկ շուտ հափշտակվող և հեշտ խաբվող մարդ էր…

Եկատերինա II վախճանվելուց և Պողոս I կայսրի գահակալությունից հետո ռուսաց կառավարության քաղաքական հայացքը Անդրկովկասի քրիստոնյաների վերաբերությամբ բոլորովին փոխվեցավ։ Այժմ ոչ ոք չէր մտածում իրագործելու Պետրոս Մեծի և Եկատերինա II ունեցած նպատակները արևելքի քրիստոնյաների մասին։ Այժմ Վրաստանն ուրիշ ոչինչ չէր, եթե ոչ մի ռուսական նահանգ։

Այդ էր պատճառը, երբ Ղարաբաղի հայոց երկու իշխանները, Մելիք-Շահնազարյան Մելիք-Ջումշուդը և Մելիք-Բեգլարյան Մելիք-Ֆրեյդունը, կամեցան Վրաստանում հաստատ գաղթականներ հիմնել, նրանք վշտացած Հերակլ իշխանի և նրա հաջորդ Գիորգիի վարմունքից, այլևս չկամեցան վերջինի հետ բանակցություններ ունենալ, ուղղակի դիմեցին Ս. Պետերբուրգ Պողոս I կայսրի մոտ։

Վրաստան գաղթած Ղարաբաղի հայերը սկզբում խիստ անմարդասիրաբար ընդունվեցան վրացիների կողմից։ Սովից տանջ-

*ված, աղքատ եկան նրանք այդ երկիրը. շատերը վրացիների դըռները ընկած մուրացկանություն էին անում։ Վրաց իշխանները ստիպում էին նրանց, որ ճորտ գրվեն, որպեսզի փոխարենը կերակրեն նրանց։ Ողորմելիները մի կտոր հացի համար վաճառում էին իրանց զավակներին և ստրկության էին մատնում[1]։ Վրաց ազնվականների այդ անողորմ վարմունքն էր գլխավոր պատճառը, որ ստիպեց հայոց մելիքներին Ս. Պետերբուրգ դիմել։*

*Հայոց մելիքները իրանց հպատակների հետ[2] գաղթել էին մի երկիր, ուր այդ ժամանակ տիրում էր ճորտությունը։ Բայց հայ ժողովուրդը սովորած չէր ճորտության։ Թե Հայաստանի անկախության ժամանակ, թե պարսից և թե օսմանցիների տիրապետության ժամանակներում հայ գյուղացին վայելում էր կատարյալ ազատություն։ Մելիքները ցանկանում էին, որ իրանց ժողովուրդը պահպաներ իր վաղեմի ազատությունը, իսկ իրանք վայելեին նույն իրավունքները, որ միշտ ունեին իրանց հպատակների վերաբերությամբ։ Նրանք պահանջում էին, որ Վրաստանի սահմաններում, որը այդ ժամանակ գտնվում էր ռուսաց հովանավորության ներքո, տային նրանց ազատ հողեր, որպես մշակման սեփականություն, և այդ հողերի վրա նրանք հիմնեին իրանց գաղթարանները, և բնակվեին իրանց վաղեմի օրենքներով ու սովորություններով։*

*Այդ նպատակներով Մելիք-Բեգլարյան Մելիք-Ֆրեյդունը[3] և Մելիք-Շահնազարյան Մելիք-Ջումշուդը գնացին Ս. Պետերբուրգ[4]*

---

*[1] Վրաստանում մինչև վերջին ժամանակները գտնված հայ ճորտերի մեծ մասն այս տեսակ հանգամանքների զոհ պետք է համարել։*

*[2] Վրաստան գաղթեցին գլխավորապես Գյուլիստան և Վարանդա գավառների ժողովուրդը, այսինքն՝ Մելիք-Բեգլարյանների և Մելիք-Շահնազարյանների հպատակները։ Մելիք-Մեջլումի հպատակները (որը արդեն մեռած էր) մնացին Գանձակի գավառում Ջավադ-խանի հովանավորության ներքո։ Իսկ Խաչենի և Տիզակի ժողովուրդը մասամբ մնացին իրանց տեղերում, մասամբ գաղթեցին ուրիշ երկրներ և մասամբ եկան Վրաստան, խառնվեցան վերոհիշյալ երկու մելիքների ժողովրդի հետ։*

*[3] Մելիք-Ֆրեյդունը Մելիք-Աբովի եղբոր՝ Մելիք-Բեգլար II որդին էր (տե՛ս գլ. XVI)։*

*[4] Մելիքների սվիտայի մեջ գտնվում էր և պատանի Ռոստոմը, որը Մելիք-Շահնազարի չորեպանի որդին էր։ Նրա հորը կոչում էին Մեհրաբենց Գյուքի։ Դեռ 14 տարեկան հասակում Ռոստոմը Ղարաբաղից փախչելով գնաց Աստրախան, այնտեղ մի պոլկովոյ մարկիտանտի մոտ աշակերտ դարձավ։ Այդ պարապմունքը միջոց տվեց նրան սովորելու ռուսաց լեզուն։ Երբ մելիքները Աստրախանից անցնում էին Ս. Պետերբուրգ գնալու, պատանի Ռոստոմը խառնըվեցավ նրանց սվիտայի հետ, որը բավական բազմաթիվ էր։ Նրան վեր առին, մտածելով, թե ճանապարհին հարկավոր կլինի, որպես ռուսաց լեզվի թարգման։*

անձամբ աղերսամատույց լինելու կայսրի մոտ իրանց պահանջների մասին։

Մելիքները Ս. Պետերբուրգում արժանավոր ընդունելություն գտան։ Պողոս I կայսրի 1799 թ. 2 հունիսի բարձրագույն հրովարտակով հրամայվեցավ տալ մելիքներին Ղազախի գավառը բնակության համար, և պահպանել իրանց հպատակների վերաբերությամբ միևնույն իրավունքները, որ նրանք վայելում էին իրանց հայրենիքում։ Այդ հրովարտակը գրվեցավ Վարանդայի իշխան Մելիք-Ջումշուդ Մելիք-Շահնազարյանի և Գյուլիստանի իշխան Մելիք-Ֆրեյդուն Մելիք-Բեգլարյանի անունով։ Նույն մելիքներին շնորհվեցան գերազանցության մեդալներ (медали отличия) և նշանակվեցավ մշտական թոշակ. Մելիք-Ջումշուդի համար տարեկան 1400 ռ., նրա որդու համար տարեկան 600 ռ., իսկ Մելիք-Ֆրեյդունի համար 1000 ռ.։

Հիշյալ բարձրագույն հրովարտակի մեջի համեմատ կայսրը նույն թվով առանձին հրովարտակ ուղղեց վրաց իշխան Գիորգիին, բացի դրանից, նույն թվի ապրիլի 16-ից առանձին բարձրագույն հրահանգով հրամայվեցավ ստատսկի սովետնիկ Կովալենսկուն (որը այդ ժամանակ նշանակված էր Վրաստանի մինիստր) հետևյալը.

«Հայոց մելիքները՝ Ջումշուդ և Ֆրեյդուն, որոնք գտնվում են այստեղ (Ս. Պետերբուրգ) և մյուսները, որոնք մնացել են Վրաստանում և Պարսկաստանում (Ղարաբաղում) իրանց այլ հայրենակիցների հետ, դիմեցին նորին կայսերական մեծության հովանավորության ներքո, և ստացան ամենաողորմած թույլտվություն բնակվելու Վրաստանում, այն պայմանով, որ թագավորը (վրաց Գիորգի XII) պետք է տա նրանց հողեր բնակության համար թե իրանց հպատակների հետ և թե Պարսկաստանի այն բնակիչների հետ, որոնք կարող կլինեն հետո դուրս գալ այնտեղից։ Թագավոր կայսրը, ցանկանալով, որ մի այսպիսի քրիստոնյա ժողովուրդը, որքան կարելի է, ծաղկեր Վրաստանում, հենց նույն իսկ երկրի օգուտների համար,— դուք (Կովալենսկին) պետք է աշխատեք, որ

---

Ս. Պետերբուրգը այն աստիճան գրավեց պատանի Ռոստոմին, որ նա այլևս վերադառնալ չցանկացավ։ Մելիք-Ջումշուդը իր հոր ջորեպանի որդուն ազնվականության թուղթ շնորհեց, և նրա խնդրելով պատանի Ռոստոմը մտավ զինվորական դպրոց։ Եվ այդ պատանին էր, որ վերջը դարձավ հռչակավոր իշխան գեներալ Մադաթովը, որը այնքան նշանավոր գործեր կատարեց ռուսաց, լեհական, ֆրանսիական և պարսկական արշավանքների ժամանակ։

թագավորը (Գիորգին) հողերի այնպիսի զիջումներ աներ, որ մելիքների համար ամենաշահավետ պայմաններով լիներ. և որովհետև մի այսպիսի հասարակություն չէ կարող բնակության հաստատ հիմք ունենալ և ընդարձակել իր հառաջադիմությունը, մինչև որ պահպանված չլինեն նրա սովորություններն և կառավարության ձևերը, որոնք հին ժամանակներից հատուկ են եղել նրան,— այդ պատճառով և ցանկալի կլիներ, որ նա (հայոց հասարակությունը) ոչ այլ տեսակ կախումն ունենար Վրաստանից, բայց միայն վասալների տեսակով, վճարելով այնուամենայնիվ թեթև հարկ թագավորին, և բաժանելով նրա հետ այն ամենը, ինչ որ հարկավոր կլիներ թե ծախքերի վերաբերությամբ, և թե մարդիկների գործակցությամբ երկրի պաշտպանության դեպքում»։

Վրաստանն այդ ժամանակ այն աստիճան խռովյալ դրության մեջ էր, որ իշխան Գիորգին խիստ նպաստավոր համարեց հայոց մելիքների և նրանց հպատակների ահագին բազմությամբ վրաց հողի վրա բնակություն հաստատելը։ Մելիքները կարող էին նրան զորավոր դաշնակիցներ լինել։ Կովկասյան լեռնաբնակների հարձակումները մի կողմից, վրաց իշխանական գերդաստանի անդամների երկպառակությունները մյուս կողմից, երկիրը անդադար ալեկոծության մեջ էին պահում։ Գիորգիի եղբայրները, նրա ազգականները ամեն օր նորանոր խռովություններ էին հարուցանում։ Եղբայրներից մեկը, իշխանազն Ալեքսանդրը, հակված էր պարսիկների կողմը և գործում էր հակառակ ռուսների և հակառակ իր եղբոր։

Այդ հանգամանքներն էին պատճառը, որ մելիքների պահանջը կատարվեցավ։ Մելիք-Շահնազարյան Մելիք Ջումշուդը ստացավ Գիորգի իշխանից Լոռիի գավառը իր սահմաններով և Բորչալուի մի մասը, որոնց մեջ նա իր հպատակների հետ բնակություն հաստատեց։ Իսկ Մելիք-Բեգլարյան Մելիք-Ֆրեյդունը ստացավ Բորչալուի մնացած մասը և Աղջա-Կալան։ Իսկ Մելիք-Աբովը (Մելիք-Ֆրեյդունի հորեղբայրը) ստացավ Բոլնիսը իր սահմաններով։ Այնուհետև մելիքները ձեռք բերեցին և ուրիշ հողեր, այն չափով, ինչ չափով որ հետզհետե ավելանում էր նրանց հպատակների թիվը։

## XXXVII

Երբ Ղարաբաղի հայ ժողովրդի մի մասը իրանց մելիքների հետ զետեղվեցան Վրաստանում, այդ ժամանակ Ղարաբաղի երեք

*կաթողիկոսները գտնվում էին զանազան տեղերում։ Նրանցից երկուսը մնացին Ղարաբաղում. Իսրայել կաթողիկոսը նստած էր Ամարասա վանքում, իսկ փոքր Սիմոն կաթողիկոսը՝ Երիցմանկաց վանքում։ Երրորդը, Հասան-Ջալալյան Սարգիս կաթողիկոսը գտնվում էր Ղարաբաղի սահմաններից դրսում, Գանձակ քաղաքում (տե՛ս գլ. XVII)։*

*Բայց մի ճակատագրական դժբախտությամբ, կարծես, անխուսափելի էր դարձել, որ Ղարաբաղի մելիքները ուր և գնային, պետք էր, որ մի եկեղեցական կռիվ չար դևի նման հետևեր նրանց։*

*Հենց նույն տարվա մեջ, երբ մելիքները իրանց ժողովրդի հետ գաղթեցին Վրաստան, Հասան-Ջալալյան Սարգիս կաթողիկոսը, իր եղբորորդի Բաղդասարի հետ (որը արդեն վարդապետ էր ձեռնադրված) և իր այլ ազգականների ու մերձավորների հետ, Գանձակից տեղափոխվեցան Թիֆլիս (1798, 25 մարտի)։ Հերակլ իշխանը սիրով ընդունեց կաթողիկոսին և մեռնելուց առաջ հանձնեց իր ժառանգ Գիորգիին, որը ավելի հարգանք ցույց տվեց իր վեհափառ հյուրին։*

*Թիֆլիսում այդ ժամանակ, որպես Վրաստանի հայոց առաջնորդ, էջմիածնի բարձր հոգևոր իշխանության կողմից նստած էր Հովհաննես արքեպիսկոպոս պոլսեցին, որը հայտնի էր «գեղարդակիր» մականունով։ Դա խիստ գործունյա և բնավորության տեր մի եկեղեցական էր և մեծ ազդեցություն ուներ էջմիածնի վրա։*

*Սարգիս կաթողիկոսի Թիֆլիսում բնակություն հաստատելը, իհարկե, շատ հաճելի չէր կարող լինել «գեղարդակրին», մանավանդ, երբ նկատում էր նա իշխան Գիորգիի համակրությունը դեպի կաթողիկոսը և վերջինի ձգտումները Վրաստանում այդ ժամանակ զետեղված ղարաբաղցի գաղթականների հովիվը լինելու։*

*Պետք է ասած, որ ղարաբաղցի գաղթականների ցանկությունն էլ հենց այդ էր։ Այդ ժողովուրդը սովորած էր էջմիածնից անկախ իր առանձին հոգևոր կառավարությունն ունենալ, որպես էր բազմադարյան Աղվանից կաթողիկոսությունը։ Իսկ Սարգիսը այդ կաթողիկոսության ներկայացուցիչներից մեկն էր։*

*Ղարաբաղի հայերը մի ժամանակ Գանձակի գավառում զետեղվելով, նույն Սարգսին իրանց համար կաթողիկոս օծել տվին։ Այժմ Վրաստան գաղթելով, դարձյալ ցանկանում էին ունենալ իրանց առանձին հոգևոր իշխանությունը, անկախ էջմիածնից, նույն Սարգսի հովվության ներքո։*

*Իշխան Գիորգիի հարաբերություններն այդ ժամանակ էջ-*

միածնի հետ լարված լինելով, նպաստում էր ղարաբաղցոց ցանկության իրագործելուն[1]։

Այդ բոլորը, հայտնի բան է, պիտի հակառակեին «գեղարդակրի», որպես Վրաստանի հայոց առաջնորդի, շահերին մի կողմից, իսկ էջմիածնի իրավասությանը մյուս կողմից։ Այդ էր պատճառը, երբ իշխան Գիորգին առաջարկեց էջմիածնի Ղուկաս կաթողիկոսին, խնդրելով, որ Սարգիս կաթողիկոսը Ղարաբաղի գաղթականների առաջնորդ նշանակվի, Ղուկասը բացարձակապես մերժեց իշխանի խնդիրքը, և այդ առիթ տվեց երկար դժգոհությունների վրաց իշխանի և էջմիածնի մեջ։

Գիորգին Ղուկասի համառությունից վշտացած հայտնեց, եթե իր խնդիրքը չկատարվի, ինքը այնուհետև կարգելե, որ էջմիածնից ոչ մի հոգևորական իրավունք չունենա Վրաստանի սահմաններից անցկենալու և տեղային հայերից հոգևոր տուրք հավաքելու։

Ղուկաս կաթողիկոսը տեսնելով, որ դրանով Վրաստանի հայերը բոլորովին պիտի կտրվեն էջմիածնից, ստիպվեցավ զիջումն անել։ Նա խոստացավ, թե իշխանի ցանկությունը կկատարե, միայն պետք է Սարգիս կաթողիկոսը անձամբ գնա էջմիածին, իր խոնարհությունը հայտնելու և իր պաշտոնը ստանալու համար։

Սարգիս կաթողիկոսը իր եղբորորդի Բաղդասար վարդապետի հետ գնացին էջմիածին։ Թեև այնտեղ խիստ սառն ընդունելություն

[1] Իշխան Գիորգիի հարաբերությունների էջմիածնի հետ լարված լինելու պատճառները, թեև ինքնըստինքյան, շատ հասարակ բաներ էին, բայց կրոնական կետից նայելով, մեծ նշանակություն ունեին։ Ղարաբաղում ժանտախտ հայտնվելու ժամանակ, երբ ժողովուրդը տեղափոխվեցավ Վրաստան, այդ սարսափելի ախտը տարավ իր հետ։ Այդ ժամանակ վրաց Գիորգի իշխանը դիմեց էջմիածին, խնդրելով Ղուկաս կաթողիկոսից, որ ուղարկեն Թիֆլիս Գեղարդը, որը էջմիածնի հրաշագործ սրբություններից մեկն է, և հռչակված է որպես փարատող վարակիչ հիվանդությունների։ Ղուկաս կաթողիկոսը չկատարեց իշխանի խնդիրքը, նախ այն պատճառով, որ ժանտախտը Վաղարշապատում էլ հայտնվել էր և սուրբ Գեղարդի օգնությանը իրանք ավելի կարոտություն ունեին, իսկ երկրորդ պատճառն այն էր, որ վստահություն չուներ վրաց իշխանի վրա, թե կարող էր հիշյալ սրբությունը Վրաստանից կրկին հետ ստանալ։

Երբ Գիորգին սկսեց ավելի և ավելի թախանձել, կաթողիկոսը ստիպված եղավ հիշյալ «գեղարդակիր» Հովհաննես արքեպիսկոպոսի ձեռքով ուղարկել։ Բայց սրբությունը Թիֆլիս հասնելուց և հանդիսավոր թափորներ կատարելուց հետո կալանավորվեցավ։ էջմիածնից քանիցս անգամ խնդրեցին հետ ուղարկել, բայց վրաց իշխանը, միշտ զանազան պատճառներ բերելով, խաբում էր։ Վերջը Հովհաննես արքեպիսկոպոսը Մելիք-Աբովի օգնությամբ մի գիշեր վեր առեց սրբությունը և մի քանի ձիավորների հետ ծածուկ փախավ էջմիածին։ Գուցե այդ դեպքի պատճառով նա ստացավ «գեղարդակիր» մականունը։

գտան, այսուամենայնիվ, Ղուկաս կաթողիկոսը վրաց իշխանի հետ ունեցած վիճաբանությունների վերջ տալու համար, Սարգսին կարգեց Հաղպատու վանքի վանահայր և միևնույն ժամանակ Ղարաբաղի գաղթականների առաջնորդ։ Նույնը հաստատեց իշխան Գիորգին իր երկու հրովարտակներով, որոնցից մեկը ուղղած էր Ղարաբաղի գաղթականների հասարակությանը, իսկ մյուսը՝ իրան Սարգսին։

Բայց էջմիածնում Սարգսից խոստումն առին, որ նա իրավունք չունենա կաթողիկոսական կնիք կամ տիտղոս գործածելու, այլ պետք է կրե արքեպիսկոպոսի աստիճան, և գործածե առաջնորդական կնիք։ Թեև Սարգիսը պահպանեց այդ պայմանները, այնուամենայնիվ, նրա հակառակությունները Թիֆլիսի էջմիածնական ներկայացուցիչների հետ իսպառ չվերջացան։

Սարգսի գործը հազիվ թե փոքր-ինչ կարգի էր դրված, Ղարաբաղից հայտնվեցավ մի նոր կաթողիկոս։ Դա էր Երիցմանկաց վանքի փոքր Սիմոն կաթողիկոսը, որը, Իբրահիմ-խանից նեղվելով, փախավ Թիֆլիս։

Բայց այս անգամ Թիֆլիսի էջմիածնականները նրա հետ ցերեմոնիա չարեցին։ «Շահագեղան» Հովհաննես վարդապետի[1] քթախոտի տուփը, ձեռնածուի արկղիկի նման երկու խորշեր ուներ. մեկից ինքն էր քաշում, մյուսից առաջարկում էր այն անձինքներին, որոնց հարկավոր էր ուղարկել ոգիների աշխարհը։ Սիմոն կաթողիկոսին վիճակվեցավ վերջին խորշի մեջ ածած քթախոտով կազդուրել իր պնչերը։ Նա թունավորվեցավ և թողեց Թիֆլիսը, գնաց Գանձակ։ Մինչև այնտեղ չհասած, կաթողիկոսի մորուքի և գլխի մազերը թափվեցան և Գանձակում վախճանվեցավ։ Դա Երիցմանկաց վանքի վերջին կաթողիկոսն էր։

## XXXVIII

Մեր պատմության նախընթաց գլուխներից մեկում, Ղարաբաղի մինը մյուսին հակաթոռ, բազմաթիվ կաթողիկոսների առիթով նկատեցինք, թե դարերի ընթացքում, ամեն անգամ, երբ ծագել են բուն ազգային կամ ժողովրդական ամենակարևոր խնդիրներ, միև-

[1] Մեզ հայտնի չէ Հովհաննես վարդապետի ով լինելը, կամ ի՞նչու էր կրում նա «շահագեղան» մականունը, որ նշանակում է շահի մոտ գնացող։ Միայն այսքանը հայտնի է, որ նա Եփրեմ կաթողիկոսի ժամանակներում էջմիածնում դեր խաղացող միաբաններից մեկն էր։

*նույն ժամանակ սատանան մեջ է ձգել մի որևիցե եկեղեցական կռիվ, երկպառակություն։ Դա թեև շատ տխուր է, բայց փաստ է։*

*Ռուսները արդեն տիրել էին Վրաստանին և պետք է տիրեին ամբողջ Անդրկովկասին։ Հայերի համար սկսվում էր մի նոր կյանք. պարսկական բռնապետությունը քայքայվում էր և տեղի էր տալիս քրիստոնյա պետության կառավարությանը։ Հայոց մելիքները աշխատում էին պահպանել իրանց վաղեմի իրավունքները այդ նոր պետության հովանավորության ներքո։ Ժողովրդի կյանքը գտնվում էր փոխանցական տագնապի մեջ, հազար ու մեկ կարիքներ կային, հազար ու մեկ հարցեր պիտի վճռվեին,— հենց այդ ժամանակներում էջմիածնում սկսվեցան կաթողիկոսական կռիվները, որ զբաղեցրին հայոց մտքերը այնքան ժամանակ, մինչև ռուսները բոլորովին հաստատվեցան Անդրկովկասում։*

*1799, 27 դեկտեմբերի վախճանվեցավ էջմիածնի Ղուկաս կաթողիկոսը։ Հայրապետական աթոռը ժառանգելու համար հայտնվեցան բազմաթիվ նախանձորդներ, որոնք մինը մյուսին տեղի տալով, կռվի դաշտի վրա մնացին հինգը։ Դրանք էին՝ Ռուսաստանի արքեպիսկոպոս Հովսեփը, Կ. Պոլսի պատրիարք Դանիելը, Աստրախանի եպիսկոպոս Եփրեմը և էնագետցի Դավիթ եպիսկոպոսը, որը սաստիկ խորամանկ մարդ էր և միջոցների ընտրության մեջ ամենևին խտրություն դնել չգիտեր, իսկ հինգերորդն էր Թիֆլիսեցի «բոկոտն» (բոբիկ) կոչված Ստեփան արքեպիսկոպոսը*[1]։

*Ռուսաց կառավարության նպատակն այն էր, որ էջմիածնի հայրապետական աթոռի վրա նստեր մի մարդ, որը նշանավոր ծառայություններ էր մատուցել Ռուսաստանին, մանավանդ նրա արևելյան պատերազմների ժամանակ թե պարսիկների և թե օսմանցիների հետ։ Դա էր մեզ նախածանոթ Արղության Հովսեփ արքեպիսկոպոսը։ Այդ գործունյա, եռանդոտ եկեղեցականը դեռևս պետք էր ռուսաց տիրապետություններն առաջ տանելու համար։ Պարսիկների հետ գործը տակավին վերջացած չէր. Երևանյան նահանգը և ուրիշ շատ խանություններ դեռ մահմեդականների ձեռքումն էին։*

*Ինքը Հովսեփ արքեպիսկոպոսը վաղուց ձգտում էր այդ նպատակին, որ ընդհանուր հայոց կաթողիկոսը դառնա, և նրա մի այդպիսի փառասիրական ձգտումը սաստիկ վայր ձգեց նրա հա-*

---

1 *Համարյա այդ ժամանակից սկսվեցան Դավթի և Դանիելի կռիվները, որոնք էջմիածնի վերջին կաթողիկոսների պատմության մեջ խիստ տխուր, միևնույն ժամանակ բավական ընդարձակ տեղ են բռնում։*

մարումը մտածող հայերի աչքում, երբ նա իր ավելի ընդարձակ և ավելի ազգօգուտ գաղափարները թողնելով, սկսեց հետևել նեղ, եսական շահերին....

Թեև նա էջմիածնում և հայ հասարակության մեջ բազմաթիվ հակառակորդներ ուներ, բայց ռուսաց կառավարության և օսմանցոց Բ. Դռան հաճությունը ստացած, Ռուսաստանից ճանապարհ ընկավ դեպի Անդրկովկաս, որ գնա էջմիածին հայրապետական օծումն ընդունելու համար։ Արքեպիսկոպոսի վարմունքը, որ բոլորովին հակառակ էր հայոց վաղեմի ընտրողական կարգերին, շատ կարելի է, որ մեծ խռովությունների պատճառ տար, եթե ճակատագիրը այլ կերպ չտնօրիներ։ 1801 թ. փետրվարի 10-ին փառավոր հանդեսով մտավ նա Թիֆլիս։ Նա գտավ իր բարեկամ վրաց Գիորգի իշխանին արդեն դրած դագաղի մեջ[1]։ Իշխանի մահը արքեպիսկոպոսին սաստիկ տխրություն պատճառեց։ Նրա հետ մեռան սրբազանի սրտի խիստ մոտ խորին բաղձանքները...

Իշխանի դագաղը դեռ դրված էր Սիոնի մայր եկեղեցում, երբ 1801 փետրվարի 16-ին, նույն եկեղեցում կատարվեցավ Վրաստանի Ռուսաստանի հետ միավորության տոնախմբությունը և կարդացվեցավ Պողոս I կայսրի հրովարտակը, որ ավետում էր այդ միավորությունը։

Այդ ժամանակ Թիֆլիսում գտնվում էր գեներալ-մայոր Լազրևը, որ կարգված էր իբրև Վրաստանի զինվորական իշխանության ներկայացուցիչ։

Կայսրի հրովարտակի ընթերցումից երեք օր հետո կատարվեցավ իշխան Գիորգիի թաղման հանդեսը, որին ներկա էր ինքը Հովսեփ արքեպիսկոպոսը։ Գիորգիի թաղման հետ վրաց իշխանությունը վերջացավ։

Այդ թաղումից հետո ինքը Հովսեփ արքեպիսկոպոսն անկողին մտավ և կարճատև հիվանդությունից հետո վախճանվեցավ, առանց էջմիածինը տեսնելու, առանց կաթողիկոսական օծումն ընդունելու։ Նրա հետ մեռան և հայոց մելիքների մնացած հույսերը...

Նույն տարվա մեջ (1801, 12 մարտի) վախճանվեցավ Պողոս I կայսրը և ռուսաց գահի վրա նստեց Ալեքսանդր I։

Գիորգիի մահից հետո ավելի սաստիկ կերպով հուզվեցավ երկպառակությունը վրաց իշխանազն ժառանգների մեջ։ Գտնվե-

---

1 Գիորգին վախճանվեցավ 1800 թ. դեկտեմբեր ամսում։

ցան նրանց մեջ այնպիսիները, որ սկսեցին բողոք հայտնել Վրաստանի Ռուսաստանի հետ միավորության մասին, սկսեցին գրգռել կովկասյան լեռնաբնակներին և պարսիկներին ռուսների դեմ[1]։

Այդ բողոքողներից ամենանշանավորը և ամենահաստատամիտն էր հանգուցյալ Գիորգիի եղբայր Ալեքսանդրը։ Նրա գործողությունները բավական մեծ տեղ են բռնում այդ ժամանակի պատմության մեջ, բայց մենք համառոտ կերպով մեջ կբերենք այնքանը միայն, որ վերաբերություն ուներ հայոց մելիքների հետ։

Վրաստան գաղթած հայոց մելիքներից ավելի ուժ և նշանակություն ստացավ Մելիք-Բեգլարյան Մելիք-Աբովը։ Նա որպես քաջ և պատերազմասեր էր Ղարաբաղում, նույնը եղավ և Վրաստանում։ Բացի Ղարաբաղից իր հետ բերած հպատակներից, նա իր իշխանության ներքո հետզհետե հավաքում էր և այն գաղթականներին, որոնք Հայաստանի զանազան կողմերից փախչելով, Վրաստանում ապաստան էին գտնում։ Այսպիսով, նա այնքան բազմացրեց իր ժողովրդի թիվը, որ կարող էր ամեն անգամ մի քանի հազար ձիավորներ կռիվի դաշտ դուրս բերել։ Դրանով չբավականանալով, Մելիք-Աբովը աշխատում էր 1000 հայ ընտանիքներ Ախալցխայի վիճակից (որը այդ ժամանակ օսմանցոց իշխանության ներքո էր գտնվում) տեղափոխել Վրաստան իր կալվածների վրա։ Այդ մտքով նա իր ձիավորների խումբերով անդադար արշավանքներ էր գործում, անցնում էր Տաճկաստանի սահմաններից և ամեն անգամ ահագին ավարով հետ էր դառնում։ Շատ անգամ նրա ասպատակները հասնում էին մինչև Էրզրումի պարիսպների մոտ։ Եվ որովհետև այդ բոլորը այն ժամանակ սովորական իրերի կարգում էր, այդ պատճառով Մելիք-Աբովի վստահություններին սահման չէր դրվում։

Մելիք-Աբովն այնքան նշանակություն ստացավ իր քաջ ձիավորների խումբերով, որ երկրի մեջ վաճառականական հարաբերությունները ապահով դրության մեջ պահելու համար և ճանապարհների վրա կարավանների երթևեկությունը ավազակների հարձակումներից անվտանգ պահպանելու համար հանձնվեցավ նրան ֆարվան-բաշիության պաշտոնը։ Այդ պաշտոնի նշանակությունն այն էր, որ նա պիտի պահեր ճանապարհների վրա պահականոցներ, նրա ձիավորները պետք է ուղեկցեին կարավաններին մի իջևանից մինչև մյուսը, որ վտանգ չպատահեր։ Այդ հսկողու-

[1] Այդ ժամանակ տեղի ունեցավ Ավարիայի Օմար-խանի երկրորդ արշավանքը Վրաստանի վրա։

թյան համար Մելիք-Աբովի մարդիկը յուրաքանչյուր բեռնից հարկ էին ստանում 1 ռուբլի, հօգուտ մելիքի, որի տարեկան գումարը հասնում էր 500 թումանի[1], ինչպես խոստովանվում է Մելիք-Աբովը իր նամակներից մեկի մեջ։

Այդ բոլորը նկատելով, վրաց իշխանազն Ալեքսանդրը տեսնում էր Մելիք-Աբովի մեջ մի լավ օգնական իր նպատակները իրագործելու համար։ Դեռ Գիորգիի կենդանության ժամանակներում, նա թափառում էր երբեմն Դաղստանի լեռնաբնակների մեջ, երբեմն Ղազախի և Շամշադինի թարաքամաների մեջ և երբեմն Երևանի կողմերում, և ամեն տեղ գրգռում էր մահմեդականներին ռուսների և իր եղբոր՝ Գիորգիի դեմ։

Նա շատ անգամ թե նամակներով և թե առանձին պատվիրակներ ուղարկելով, դիմում էր Մելիք-Աբովին, առաջարկում էր միանալ իր հետ և ռուսների հակառակ գործել։ Թեև Մելիք-Աբովը, հավատարիմ մնալով այն երդմանը, որ տվել էր ռուսաց կառավարությանը, ամեն անգամ մերժում էր իշխանազն Ալեքսանդրի առաջարկությունները, այսուամենայնիվ, Թիֆլիսի ռուս աստիճանավորները, կասկածելով նրա վրա, Մելիք-Աբովին կալանավորեցին։ Նա մի քանի ամիս մնաց բանտում, մինչև Վրաստանի համար նշանակված մինիստր Կովալենսկին Թիֆլիս գալով (1800) արձակեց նրան։

Մելիք-Աբովը ուներ երեք որդի՝ Ռոստոմ-բեկ, Սայի-բեկ և Մանաս-բեկ։ Դրանցից իր քաջությամբ նշանավոր եղավ Ռոստոմ-բեկը։

## XXXIX

1804 թվին ռուսաց զորքերը իշխան Ցիցիանովի հրամանատարության ներքո մոտեցան Երևանի պարիսպներին, բանակ դրեցին Էջմիածնի մոտ։ Միևնույն ժամանակ պարսկական բազմաթիվ զորքեր, պարսից թագաժառանգ Աբաս-Միրզայի անձնական հրամանատարության ներքո, շտապեցին Երևանը ազատելու և Ցիցիանովի արշավանքների առաջն առնելու։ Պարսից զորապետների

---

[1] 500 թումանը մոտավորապես հավասար է 1500 ռուբլու։ Եթե յուրաքանչյուր բեռնից ստացվում էր 1 ռուբլ., այդ հաշվով ամբողջ տարվա մեջ Վրաստան մտնող և դուրս եկող մթերքների քանակությունը պետք է համարել 1 500 բեռ։ Դա ցույց է տալիս երկրի այն ժամանակվա վաճառականության ամենաստոր աստիճանի վրա կանգնած լինելը։

*թվում գտնվում էր վրաց իշխանազն Ալեքսանդրը մի քանի վրաց ազնվականների հետ։ Դրանք իրանց հետ առնելով մի քանի գունդ պարսկական հեծելազորներ, և միանալով Ղազախի ու Շամշադինի թարաքամաների հետ, և մի կողմից էլ ապստամբեցնելով լեզգիներին, բոլորովին կտրեցին Վրաստանի հաղորդակցությունը Ցիցիանովի բանակի հետ, որը գտնվում էր Երևանի պարիսպների մոտ։*

*Ցիցիանովը, որ կամենում էր պաշարել Երևանը, ինքը պաշարման դրության մեջ մնաց։ Պարսիկները ամեն կողմից շրջապատեցին նրան։ Այդ ժամանակ պակասեց Ցիցիանովի զորքերի պաշարը։ Թեև էջմիածնի վանքը իր հացի ամբարներից մեծ օգնություն մատակարարեց, բայց Ցիցիանովը կարոտություն ուներ և ռազմամթերքի. վառոդը սպառվելու վրա էր. նրան պետք էին ավելի շատ թվով թնդանոթներ։*

*Այդ միջոցին Մելիք-Աբովի որդի Ռոստոմ-բեկը, իր սեփական հեծելազորների խումբով, այլև իր հետ առնելով 500 ռուսաց զինվորներ, երկու անգամ զարմանալի քաջությամբ անցավ պարսիկների միջից և Ցիցիանովի բանակին Թիֆլիսից վառոդ, թնդանոթներ և այլ ռազմամթերք հասցրեց։*

*Երբ նա այդ նպատակով պիտի կատարեր իր երրորդ արշավանքը, Փամբակի ձորում, Ղուրսալու գյուղի մոտ պատահեց պարսից զորքերի։ Նրանց թիվը 800 հոգի էր, գտնվում էին Փիր-Կուլիխան անունով մեկի գլխավորության ներքո։ Այդ միջոցին պարսից զորքերի հետ միացավ վրաց իշխանազն Ալեքսանդրը 3000 ձիավորներով։ Ջնայելով պարսից ուժերի անհամեմատ գերազանցությանը, նրանք ամբողջ երեք օր կանգնած մնացին և չէին վստահանում կռիվ սկսել Ռուստոմ-բեկի փոքրաթիվ խումբի հետ։ Երբ վերջապես սկսվեցավ կռիվը, Ռոստոմ-բեկն ընկած ռուսաց զորքերի առջևը, երկար քաջությամբ պատերազմում էր։ Հանկարծ նրա ձին գնդակահար լինելով, ցած գլորվեցավ։ Ռոստոմ-բեկը նստեց մի այլ ձիու վրա, և կրկին նետվեցավ կռվի մեջ։ Ջնայելով, որ նա արդեն երկու վերք էր ստացել, բայց տակավին շարունակում էր կռվել։ Երբ երրորդ վերք ստացավ աջ ձեռքի վրա, այդ ժամանակ արյունաշաղախ ցած ընկավ։ Նրա ընկնելուց հետո պարսիկները մայոր Կոնդրատևին սպանեցին և ռուսաց բոլոր զինվորներին կոտորեցին։*

*Ռոստոմ-բեկին տարան պարսից թագաժառանգի, Աբաս-Միրզայի, բանակը։*

Վրաց իշխանազն Ալեքսանդրը լավ ծանոթ էր Ռոստոմ-բեկի հետ, ճանաչում էր և նրա հորը՝ Մելիք-Աբովին, որը, ինչպես ցույց տվինք նախընթաց գլխում, մերժեց Ալեքսանդրի առաջարկությունները, երբ նա խնդրում էր միանալ իր հետ, ռուսների հակառակ գործելու համար։ Այժմ համառ մելիքի ավելի ևս համառ որդին, առաջնորդելով ռուսաց զինվորներին, ընկավ թշնամու ձեռքը։ Ալեքսանդրը կամեցավ հոր վրեժը առնել որդուց։ Եվ առաջուց տեղյակ լինելով, թե պարսից թագաժառանգ Աբաս-Միրզան ո՛ր աստիճան ատելություն ունի դեպի Ղարաբաղի մելիքները, որոնք Աղա-Մամադ-խանի սպանման պատճառը դարձան Շուշի բերդում,— այդ մտածությամբ, իբրև մի լավ առարկա Աբաս-Միրզայի վրեժխնդրությանը բավականություն տալու,— Ալեքսանդրը ուղարկեց Ռոստոմ-բեկին Աբաս-Միրզայի մոտ։

Պարսից թագաժառանգը իսկույն սպանել չտվեց նրան, այլ շղթայակապ ուղարկեց Թավրիզ, հրամայելով, որ այնտեղ բանտարկեն և խնամք տանեն նրա վերքերը բժշկելու համար։

Այդ հերոսը երեք ամիս բանտարկված մնաց Թավրիզում։ Միևնույն բանտում կալանավորված էր այդ ժամանակ էջմիածնի ռուսաց կուսակից Դանիել կաթողիկոսը։ Այդ վերջինը հետո Թավրիզից Օհաննես-աղայի երաշխավորությամբ ազատվեցավ։ Բայց Ռոստոմ-բեկը մնաց բանտում այնքան ժամանակ, մինչև Աբաս-Միրզան ռուսներից հաղթված և բարկացած վերադարձավ Թավրիզ։ Նա իսկույն տվեց քաշին դահիճների ձեռքը և հրամայեց գլխատել նրան։ Թավրիզի հայերը մեծ սուգով նրա մարմինը թաղեցին իրանց եկեղեցու բակում գտնված գերեզմանատնում, և սովորեցրին իրանց զավակներին երգել մի երգ, որը ինքը երիտասարդը գրել էր բանտում եղած ժամանակ։ Երևում է, Ղարաբաղի հերոսը որքան հաջողակ էր զենք գործ ածելու մեջ, նույնքան հմուտ էր և բանաստեղծության մեջ։ Այժմ այդ երգը բոլորովին մոռացված է։ Վաղեմի տխուր հիշողությունները կրկին զարթեցնելու համար մենք կդնենք նրա ամբողջ օրինակը.

Մունետիկն ի ձայն բարձր աղաղակէ,
Ծանտ դահիճն սուր ի ձեռին անյագ սրէ,
Վազեր հանգոյն զիմ կենաց թել կտրել խնդրէ,
Ի կախաղան և կամ ի սպանդ,— ո՞ւր զիս տանէ։
Քաղաքս համայն մահմեդական, սատ խուռն գան,
զիմ մահ սգան,

Դառնագին լան զիս Աբովյան՝ քաջ ախոեան։
Մի՞թե չիք ոք աստ քրիստոնեայ, զիս փրկեսցէ
Յայս ամեհի և մահագուժ վայրագ դահճէ։
Նուիրական զենման իմոյ լերուք վկայ։
Սէր հայրենեաց ի թշնամեաց ձեռս մատնեաց,—
ուրախ մեռայց,
Եվ դասեցայց ընդ դյուցազանց իմոց նախնեաց։
Փշրանք մնացեալ եմ սիրելի հայոց ազգի,
Որք գտանիք ի ձեռս պարսից յայս քաղաքի,
Մի՛ մոռասջիք պատմել և զայս յորդւոց յորդի,
Թ՚է քաջն Ռոստոմ վասն հայրենեաց ի սպանդ վարի։
Թ՚էպէտ ցաւիմ զի չմեռանիմ ի մարտ ընդդեմ
թշնամեաց իմ,
Այլ յօժարիմ, զի զոհ լինիմ այսպես վսեմ։
Այս քաջ բազուկք յարեաց պարսից հսկայ հզօրս
Տապաստ արկին ի բազում նուագս հարիւրաւորս.
Ավա՜ղ, կնատ անգութ դահճի եղէ ես որս,
Պատմեսջի՛ք զայս վեհ դիւցացին՝ զառամյալ հօրս
Քաջ նահատակ որդիդ միակ ի ձեռս վայրագ պարսից
էանկ,

Իւր յաղթական մահ դժնդակ էառ պսակ։
Մեծդ յարեաց, արքայորդիդ Աբաս Միրզա,
Սուր ի ձեռին դահիճն հեգ առ ընթեր կայ,
Զիս թշնամիս քոյոյ ազգի պատրաստ ի մահ
Զիա՞րդ կամիս սպանանել՝ շո՛ւտ հրամայեա՛։
Միայն սգամ, զի կապեալ կամ. թե մյուս անգամ
հրացան, սուր իմ
Ի ձեռս ունիմ,— զբազուկս իմ ձեզ ցուցանեմ...

Սիրելի որդու աղետալի վախճանից հետո, նրա ալևոր հայրը, Մելիք-Աբովը, երկար չապրեց։ Ծերունի հերոսի վերջին օրերը անցան ցավերով և տրտմությամբ...

Ահա ինչ է գրում նա Ս. Պետերբուրգ իր 1807 թ. նոյեմբերի 23-ի նամակի[1] մեջ աղա Մինաս Լազարյանին, որին, Հովսեփ

[1] Այդ նամակի հայերեն բնագիրը մեր ձեռքում չունենալով, թարգմանված է ռուսերենից, որ տպված էր պ. Երիցյանի «Кавказская старина» ամսագրի համար 2, դեկտեմբերի ամսի 1872 թվի տետրակում։

արքեպիսկոպոսի վախճանվելուց հետո, ստեպ դիմում էին Ղարաբաղի մելիքները, իրանց զանազան վշտերը հայտնելով.

«Իմ մատուցած մեծ ծառայությունները Ռուսաստանի սուրբ գահին և Շուշիում իմ ցույց տված քաջագործությունները, դեռ Զուբով զորավարի ժամանակից,— բոլորին հայտնի են։ Կարելի է, որ ձեզ ևս անհայտ չէ, թե որպես հալածական արինք և ցրվեցինք երկրի երեսին Աղա-Մամադ-խանի ահարկու զորախումբը։ Այս պատճառով Հերակլ թագավորը, կամենալով մեզ (Ղարաբաղի մելիքներին) իրան օգնական ունենալ, երդումներով և թղթերով հավատացրեց մեզ, որ գայինք նրա մոտ, բնակվեինք նրա տերության մեջ, և համարվեինք հավասար նրա առաջնակարգ թավադների ու կնյազների հետ։ Մենք եկանք։ Իր խոստման համեմատ թագավորը տվեց մեզ Բոլնիսը, իսկ իր պալատում մեզ տեղ նշանակեց իր բոլոր ավագներից բարձր։ Մեր մի այսպիսի դրությունը տևեց Հերակլի և Գիորգիի թագավորության ընթացքում։ Իսկ այժմ մենք զրկված ենք թե հողից, թե կալվածներից և թե հարգանքից. որովհետև ամենքը նեղացնում են մեզ, աշխատում են խլել մեզանից Բոլնիսը և պահանջում են տասներորդ մասը մեր հունձքերից։ Այդ բոլորը այն աստիճան անախորժ է մեզ, որ մենք այսուհետև ամենևին ցանկություն չունենք այլևս բնակվել այստեղ (Բոլնիսում)։ Երբ որ ես շինություններով և բնակիչներով ծաղկեցրի այդ գավառը, մաքրեցի նրան բոլոր թշնամիներից և վայրենիներից,— ապա այնուհետև միայն հայտնվեցան զանազան տերեր, որոնցից մեկը տեր է կանգնում ջրանցքներին, մյուսը աշխատում է սեփականացնել իրան լեռները, երրորդը — հողը... Այդ բոլորից հետո, եթե Բոլնիսի բոլոր քարերը ոսկի դառնալու լինեն, այն ժամանակ ես, հրաժարվելով կհրաժարվենք այդ երկրից։ Ոչ փող մնաց մեր քսակներում և ոչ համբերություն... մեր օրերը անց ենք կացնում ատենական տեղերի դռներում և ոչ մի տեղից օգնություն չենք գտնում...

Այդ բոլորի առիթով ես մատուցի հանուն կայսրի ամենախոնարհաբար խնդիրը, որպեսզի ամենաողորմածաբար թույլ տրվեր մեզ մեր ժողովրդի հետ տեղափոխվել մեր հայրենիքը՝ Ղարաբաղ, ապրելու և բնակություն հաստատելու այնտեղ։ Բոլորը, ինչ որ ես թղթի վրա խոստացել եմ ամենաողորմած թագավորին, միևնույնը այժմյանից երդումով խոստանում եմ կատարել հօգուտ արքունի գանձարանի։

Ո՛րքան մեծ է եղել իմ ծառայությունը իմ ամենաողորմած թագավորին,— այդ մասին դեռ չգիտե բարձր կառավարությունը։ Այլևս ի՞նչ է մնում ինձ անել։ Ունեի ես անդրանիկ որդի — Ռոստոմ-բեկը, իմ ծերության զավակը և իմ նախնյաց ժառանգը, և նրան ևս զոհ բերեցի իմ ամենաողորմած և ինքնակալ կայսրին... Ինչ որ ես գործել եմ և ինչ որ այժմ կատարում եմ, դրանից ավելին ոչ ոք կարող չէ անել։

Ես ունեմ մի կաթիլ արյուն, և այն ամեն րոպե պատրաստ է թափվելու իմ թագավորի անվան համար։ Դրանից ավելի էլ ի՞նչ կարող եմ անել ես։

Իսկապես երևում է մի բան միայն, այն է, որ ես հայ եմ, և այդ պատճառով բոլոր գլխավոր հրամանատարները և զորավարները չարանում են ինձ վրա, իմ կատարած հաղթությունների և քաջագործությունների համար։ Իմ գործողությունների մասին նրանք չեն կամենում տեղեկություններ տալ ուր որ հարկն է, որովհետև ցանկանում են, որ ես հուսահատվեմ և տխրությունից մեռնեմ անհայտության մեջ։ Աստուծո օգնությամբ այդ չի լինի։ Մինչև գերեզման չմտնեմ, տխրությունը և հուսահատությունը չեն կարող վհատեցնել ինձ։ Ընդհակառակն, ես և այսուհետև նպատակ ունեմ կատարելու այնպիսի հաղթություններ, որ զարմացնեին բոլորին։ Իսկ գերեզման կմտնեմ իմ քաջագործությունների և արիությունների ժամանակ. երբեք չեմ մեռնի տկարների ու հիվանդների նման, որոնք հոգի են տալիս անկողնի մեջ»։

Հետո մի առ մի թվելով իր կատարած ծառայությունները Ռուսաստանին, ծերունի հերոսը ավելացնում է.։

«Ես շատ անգամ խնդրել եմ կոմսին (Գուդովիչին), որ թույլ տա մեզ, Մելիք-Ջումշուդի նման տեղափոխվել մեր հայրենիքը՝ Ղարաբաղ։ Բայց նա չհոժարվեցավ, պատասխանելով, որ եթե մենք թողնելու լինենք այդ երկիրը (Վրաստանը), այն ժամանակ Բոլնիսը կոչնչանա, իսկ ախալցխացիները, լեզգիները և այլ վայրենիներն ու ավազակները կոչնչացնեն Թիֆլիսի շրջակա գյուղերը։ Բայց երբ որ մենք ասում ենք. որովհետև Հերակլ թագավորը շնորհել է մեզ Բոլնիսը իր բոլոր հողերով, ջրերով, անտառներով և այլ պատկանելիքներով,— ուրեմն խնդրում ենք ձեզ, որ այդ բոլորը հաստատեք մեր անունով։ Այն ժամանակ կոմսը մեր պահանջներին պատասխանում է, ասելով, ես չեմ կարող ուրիշների կալվածները տալ ձեզ, և դրա նման խոսքեր։ Ես չեմ կամենում ձանձրացնել ձեզ բոլոր մանրամասնություններով...»։

Վերջացնում եմ նամակը, խնդրելով Լազարյանի միջնորդությունը կայսրի մոտ, իր առաջարկած մի քանի պահանջների մասին, որոնց մեջ դառնացած ծերունին առանձին կերպով շեշտում է, որ թույլ տրվի իրան իր հպատակների հետ վերադառնալ Ղարաբաղ։

Մեր ընթերցողներին հայտնի է, որ Պողոս I կայսրի բարձրագույն հրովարտակի համեմատ, վրաց Գիորգի իշխանը իր առանձին հրովարտակներով Բոլնիսի գավառը շնորհեց Մելիք-Աբովին, իսկ Լոռիի գավառը շնորհեց Մելիք-Ջումշուդին, որոնց մեջ նրանք առանձին արտոնություններով գաղթականություն էին հիմնել դեռ Հերակլ իշխանի օրերում (տե՛ս գլ. XXXVI)։ Մելիք-Ջումշուդը, որպես հետո կտեսնենք, նկատելով Գիորգիի մահից հետո Վրաստանում տեղի ունեցած անախորժ հանգամանքները, և մելիքների հարաբերությունների տեղային ռուս պաշտոնակալների հետ աննըպաստ կերպարանք ստանալը, վշտացավ, և վաճառելով Լոռին ռուսաց կառավարությանը, իր հպատակների հետ վերադարձավ Ղարաբաղ։ Նույնը, նույն հանգամանքների պատճառով, կամենում էր անել Մելիք-Աբովը։ Բայց նրան արգելում էին, որովհետև վրացիները այժմ մելիքների մեջ շատ պետքեր չունեին....

Որքան էլ մեծ լիներ Մելիք-Աբովի ցանկությունը իր հայրենիքը տեսնելու, իր ժողովրդի հետ իր նախահարց հողի վրա ապրելու, այսուամենայնիվ, իր բաղձանքին հասնել չկարողացավ նա։

Հետզհետե նրա հարաբերությունները վրաց ազնվականների հետ, Բոլնիսի և այլ կալվածական խնդիրների պատճառով, ավելի և ավելի թշնամական կերպարանք ստացան։ Եվ որպես պատմում են, մի հրավերքի մեջ, Թիֆլիսում, թունավորված լոբին կարճատև հիվանդությունից հետո նրան գերեզման տարավ (1808)։ Նույն հրավերքի մեջ թունավորվելով մեռավ նրա քարտուղարը՝ Միրզա-Խսաբախշը։

Մելիք-Աբովի մահից հետո հաջորդության մասին երկպառակություններ ծագեցան Մելիք-Բեգլարյանների տոհմի մեջ։ Հանգուցյալի անդրանիկ որդին, Ռոստոմ-բեկը, որը մելիքների սովորությամբ պետք է հաջորդեր նրան, որպես տեսանք, Թավրիզում մահվան դատապարտվեցավ։ Նրա մյուս երկու որդիները, Մանաս-բեկը և Սայի-բեկը, դեռ բավական երիտասարդներ էին։ Տոհմի մեջ նշանավոր մնում էր հանգուցյալի եղբորորդի[1] Ֆրեյդունը, որը

[1] Մելիք-Ֆրեյդունը Մելիք-Բեգլար II որդին էր։

շատ խելացի և քաջ տղամարդ էր, և դեռ Մելիք-Աբովի կենդանության ժամանակ հայտնի էր իր արժանավորություններով։ Նա Ղարաբաղի մելիքների կողմից Ս. Պետերբուրգ ուղարկված (1799) պատգամավորներից մեկն էր, որը ներկայացավ Պողոս I կայսրին և արժանացավ նրա ամենաողորմած շնորհներին (տե՛ս գլ. XXXVI)։

Ամենի ցանկությունն այն էր, որ Մելիք-Աբովի հաջորդը լինի Ֆրեյդունը, և նա ընտրվեցավ, բայց նրա իշխանությունը կարճատև եղավ։ Նա գրգռեց իր եղբոր՝ Սամի նախանձը, որը սաստիկ կատաղի մարդ էր։ Մի անգամ տաք վիճաբանության ժամանակ, Սամը հարձակվեցավ Ֆրեյդունի վրա և խենջարով այնպիսի զարկ տվեց նրա գլխին, որ սպանեց հարազատ եղբորը (1808)։ Այդ ցավալի անցքից հետո եղբայրասպանը ատելի դարձավ իր տոհմի մեջ և չհասավ այն փառքին, որին ձգտում էր։ Մելիք-Ֆրեյդունի[1] փոխարեն հաջորդ ընտրվեցավ հանգուցյալ Մելիք-Աբովի որդի Մանաս-բեկը։

Այդ վերջինի ժամանակներում մելիքների նշանակությունը Վրաստանում բավական ընկավ։ Հակառակ Պողոս I կայսրի բարձրագույն շնորհված արտոնությունների, հակառակ այն իրավունքների, որ նրանք վայելում էին Հերակլ և Գիորգի իշխանների օրերից,— այժմ սկսեցին փոքր առ փոքր սահմանափակել նրանց իրավունքները, իսկ հետո աշխատում էին իսպառ ոչնչացնել։

Այդ բոլորի պատճառը էր այն ժամանակվա ռուս կառավարիչների կամայականությունը, որի դեմ սաստիկ բողոքում էին մելիքները, շատ անգամ դիմելով ռուսաց բարձր կառավարությանը։ Երբ Մելիք-Աբովի և Մելիք-Ֆրեյդունի մահից հետո Մանասբեկը դիմեց գլխավոր հրամանատար գեներալ Տորմասովին, խնդրելով, որ հաստատեն իրան ժառանգական տիրապետողի իրավունքներով Բոլնիսի բնակիչների վրա, նրան բոլորովին մերժեցին, պատասխանելով, թե ոչ Բոլնիսը և ոչ այդ գավառի բնակիչները ոչ ոքին չեն պատկանում, բացի թագավորից։ Եվ մինչև անգամ հրամայվեցավ կալանավորել Մանաս-բեկին, պահել Թիֆլիսում խիստ հսկողության ներքո, որ նա Բոլնիսի բնակիչների մեջ այլևս վրդովմունք չհարուցանե։

Հայտնի է, որ Բոլնիսը բնակեցրած էր ղարաբաղցի գաղթականներով, որոնք Մելիք-Բեգլարյանների հպատակներն էին և տե-

1 Մելիք-Ֆրեյդունը թողեց վեց որդի՝ Մելիք-Հովսեփ, Շամիրխան, Դավիթ, որ տեղափոխվեցավ Հնդկաստան, Թալիշ, Թեյմուրազ և Բեգլար III։

*ղափոխված էին նրանց հայրենի Գյուլիստան գավառից։ Այն ևս հայտնի է, որ Բոլնիսը շնորհվեցավ որպես մշտական սեփականություն Մելիք-Բեգլարյաններին իրանց հպատակների հետ բնակվելու համար։ Վրաստանում այդ ժամանակ տիրում էր ճորտատիրության իրավունքը։ Թեև մելիքները Վրաստան գաղթելով, չկամեցան իրանց հպատակների վերաբերությամբ ընդունել ճորտության իրավունքներ, այսուամենայնիվ, նրանք պահպանեցին տիրապետողի և հպատակի իրավունքները, այն ձևերի մեջ, որպես վաղուց սովորական էին Ղարաբաղում։ Երբ այդ իրավունքներից ևս կամենում էին զրկել նրանց, այնուհետև ուրիշ ոչինչ չէր մնում, բայց միայն թողնել Վրաստանը և կրկին տեղափոխվել Ղարաբաղ։*

*Այդ էր պատճառը, որ Մելիք-Բեգլարյանների ժառանգները և նրանց հպատակները, երկու վերջին նշանավոր իշխողների, Մելիք-Աբովի և Մելիք-Ֆրեյդունի մահից հետո սկսեցին հետզհետե թողնել Վրաստանը և տեղափոխվել Ղարաբաղ*[1]*։ Նրանք մնացին Վրաստանում մոտավորապես տասներկու տարի (1797—1809)։ Մելիք-Բեգլարյանների բացակայության ժամանակում նրանց գյուղերը, կալվածները, մի խոսքով, ամբողջ Գյուլիստանի գավառը, որ այդ տոհմի հայրենական ժառանգությունն էր, անցել էր Իբրահիմ-խանի ձեռքը։ Բայց Մելիք-Բեգլարյանները կրկին հետ խլեցին խանից բոլորը և իրանց հայրենի երկրի տերը դարձան*[2]*։*

## XL

*Ղարաբաղի հայոց գաղթականությունը Վրաստանում*[3] *բախտավոր լինել չկարողացավ։ Դրա պատճառները այնքան մթին են, որ այժմ անհարմար կլիներ ամբողջությամբ երևան հանել։ Թե մե-*

---

[1] *Մելիք-Բեգլարյանների տոհմը Ղարաբաղի մյուս տիրապետող մելիքների մեջ կարելի է առաջինը համարել, որ կարողացավ պահպանել մինչև վերջին ժամանակները իր հայրենի ժառանգության եթե ոչ ամբողջը, այլ նրա մեծ մասը։ Այժմ Գյուլիստանի գավառում, այդ տոհմի ներկայացուցիչների ձեռքում մնացել են 18 գյուղեր, որ գտնվում են ավելի քան հարյուր հազար դեսյատին հողի տարածության վրա։ Գյուղերը բոլորը հայաբնակ են, մեկը միայն բնակեցրած է մալականներով։*

[2] *Ժողովրդի ամենափոքր մասը միայն մնաց Վրաստանում, որը գաղթեց 1812 թվին դարձյալ դեպի Ղարաբաղ։*

[3] *Թեև մենք անդադար գործ ենք ածում Վրաստան բառը, բայց այն գավառները, որպես էին Բոլնիսը, Լոռին, Բորչալուն, որ տվել էին հայ գաղթականներին բնակության համար, իսկապես հայկական գավառներ էին։*

*լիքները և թե նրանց ժողովուրդը շատ դժբախտությունների հանդիպեցան։ Ժանտախտը, որի պատճառով նրանք ցիրուցան եղան և եկան Վրաստան, այստեղ ևս հայտնվելով, շատ զոհեր տարավ։*

*Մելիքներից ավելի խելացի գտնվեցավ Մելիք-Շահնազարյան Մելիք-Ջումշուդը։ Հերակլի և Գրիգորիի մահից հետո, զզվելով տեղային անախորժ հանգամանքներից, կամեցավ Լոռին վաճառել և կրկին տեղափոխվել Ղարաբաղ, իր հայրենի երկիրը՝ Վարանդա։*

*Նույն ժամանակվա Վրաստանի լեռնային մասի կառավարիչ կոմս Մուսին-Պուշկինը օգտավետ համարեց գնել Մելիք-Ջումշուդից Լոռին, գնահատելով այդ երկիրը 6000 ռուբլով։ Դրա հակառակ, նույն ժամանակվա գլխավոր հրամանատար իշխան Ցիցիանովը (վրացի) զանազան պատճառներ բերելով, կամենում էր ցույց տալ, որ Լոռին Մելիք-Ջումշուդի սեփականությունը չէ, և վաճառելու իրավունք չունի։ Բայց Ս. Պետերբուրգում արդեն գիտեին իշխան Ցիցիանովի անհամակրությունը դեպի հայոց մելիքները, որը արտահայտել էր նա շատ դեպքերի մեջ[1]։ Այդ էր պատճառը, որ իշխանի կարծիքներին Ս. Պետերբուրգում չհամաձայնվեցան, և ֆինանսական մինիստրի 1805 թ. 22 մայիսի կարգադրությամբ իրավունք տրվեցավ Մելիք-Ջումշուդին Լոռին վաճառելու և տեղային կառավարությանը հրամայվեցավ կալվածագիրը հաստատելու։*

*Իհարկե, եթե մի քանի տարի ևս ուշացնելու լիներ Մելիք-Ջումշուդը, նա ամեն բանից կզրկվեր, որպես Մելիք-Աբովի ժառանգները զրկվեցան Բոլնիսից։ Բայց Լոռին վաճառելուց հետո, նույն տարվա մեջ (1805) Մելիք-Ջումշուդը թողեց Վրաստանը և իր հպատակների հետ տեղափոխվեցավ Ղարաբաղ, իր հայրենի գավառը՝ Վարանդա։*

*Այդ քաջ, միևնույն ժամանակ խելացի պատերազմողը շատ նպաստեց ռուսաց տիրապետության տարածվելուն Անդրկովկա-*

---

*[1] Նույն կոմս Մուսին-Պուշկինը իր 1802 ամի 9 սեպտեմբերի առաջադրությամբ խնդրեց թագավոր կայսրից պարգևատրել Մելիք-Ջումշուդին նրա ռուսաց կառավարությանը ցույց տված ծառայությունների համար ոսկյա թրով։ Իսկ իշ. Ցիցիանովը դրա հակառակ իր 1804 թվի 20 հունվարի զեկուցումով հաղորդեց, որ մի այդպիսի պարգևատրություն հայոց մելիքին կարող էր վիրավորել վրաց իշխաններին, և ամեն մի համեմատություն հայ իշխանների վրաց իշխանների հետ, վերջինների համար վիրավորական պետք է համարել։*

*Իր 1804 30 դեկտեմբերի հաղորդագրության մեջ, ի թիվս այլոց, գրում է իշ. Ցիցիանովը թագավորին. «Իբրահիմ-խանը (Շուշի բերդի) ուներ մինչև 60,000 տուն միայն Ղարաբաղի հայեր, որոնք կառավարվում էին հինգ նշանավոր մելիքներով, որոնցից ոմանք, որպես ես մտածում եմ,* ճիմարաբար *իրանց ծագումը դուրս էին բերում հին Հայաստանի թագավորներից...»։*

սում։ Դեռ 1803 թվի դեկտեմբեր ամսում, երբ իշ. Ցիցիանովը պաշարեց Գանձակը, Մելիք-Ջումշուդը իր սեփական ձիավորներից կազմված հայկական գունդով կանգնած էր այդ բերդի պարիսպների մոտ։ Նրա զորքերի թվում գտնվում էին Թիֆլիսի հայոց առաջնորդ Հովհաննես արքեպիսկոպոսը և Ներսես վարդապետը, որը վերջը հայոց անմոռանալի Ներսես Ե-րդ կաթողիկոսը դարձավ։ Այդ եռանդոտ եկեղեցականը, իր հայրենիքը պարսից լծից ազատելու համար, մասնակցում էր իշ. Ցիցիանովի արշավանքներին, որպես Երկայնաբազուկ-Արղության Հովսեփ արքեպիսկոպոսը մի ժամանակ մասնակցում էր կոմս Զուբովի արշավանքներին։ Բերդի պաշարումը երկար տևեց։ Ջավադ-խանը, որը արդեն ծանոթ է մեր ընթերցողներին, քաջությամբ պաշտպանվում էր։ Վերջը, 1804 3 հունվարի, ռուսաց և հայոց զորքերը, սաստիկ հարձակում գործելով, պարսպի մի մասը խորտակում են և ներս են մտնում։ Բերդի մեջ մի քանի ժամ շարունակվում էր կռիվը և կոտորածը, որը դադարեց այն ժամանակ, երբ Ջավադ-խանը սուրը ձեռքում իր որդիների հետ ընկավ։

Այնուհետև Մելիք-Ջումշուդը մյուս մելիքների հետ իրանց զորքերով մասնակցեցին իշ. Ցիցիանովի շիրվանյան և երևանյան արշավանքներին, և ոչ սակավ ծառայություններ ցույց տվին։

Մելիք-Ջումշուդի խորհրդով և աշխատությամբ Գանձակի բերդը գրավելուց հետո, Շուշի բերդի Իբրահիմ-խանը, Ղարաբաղի մելիքների վաղեմի թշնամին, բոլորովին առանց պատերազմի ընդունեց ռուսաց հպատակությունը (1805)։

Իսկ երբ մի քանի ամսից հետո (1806, 8 փետ.) իշ. Ցիցիանովը սպանվեցավ Բաքվի Հուսեին-Կուլի-խանի դավադրությամբ[1],

[1] Իշխան Ցիցիանովի սպանման մանրամասները հայտնի են Անդրկովկասի պատմության մեջ, բայց մեզ, հայերիս համար, հետաքրքիր է այն, որ Բաքվի ամբողջ հայ հասարակությունը, պետք է ռուսաց գլխավոր հրամանատարի վիճակին ենթարկվեր, եթե մի բարեսիրտ պարսիկ չաղատեր նրանց։ Դեռ Ցիցիանովը Բաքվին չհասած, տեղային հայերը ցույց տվին ռուսներին սաստիկ համակրություն և աջակցություն այդ բերդը տիրելու համար։ Բացի դրանից, մի հայ, որ ավելի մոտ էր Հուսեին-Կուլի-խանին, և տեղյակ նրա չար դիտավորություններին, իր գաղտնի նամակով առաջուց իմացում տվեց իշխանին, որ զգուշանա, որովհետև նրա դեմ դավադրություն կա։ Իշ. Ցիցիանովը նրա նախազգուշության վրա ուշադրություն չդարձրեց և պատժվեցավ։ Այնուհետև խանը կամեցավ պատժել Բաքվի ամբողջ հայ հասարակությանը, նրանց ռուսներին ցույց տված համակրության համար։ Նա խորհրդակցեց քաղաքի մահմեդականների նշանավորների հետ և ստացավ նրանց հավանությունը բոլոր հայերին կոտորելու։ Այդ մտքով խանը հրամայեց հայերին հավաքեցին եկեղեցիների մեջ։ Բայց մի պարսիկ հա-

այդ քաղաքը ներս մտնելու միջոցին,— Նույն ժամանակ, հենց որ ռուսաց զորքերի գլխավոր հրամանատարի մահվան լուրը տարածվեցավ, Անդրկովկասի ամբողջ մահմեդական ժողովրդաբնակությունը մեծ հուզմունքի մեջ ընկավ, համարյա ամեն տեղ սկսեցին ապստամբական ցույցեր անել։

Այդ ժամանակ պարսից զորքերը գտնվում էին Երասխ գետի աջ ափերի վրա, պարսից թագաժառանգ Աբաս-Միրզայի անձնական հրամանատարության ներքո։

Նույն ժամանակ Շուշի բերդի Իբրահիմ-խանը, չնայելով, որ մի քանի ամիս առաջ հպատակության երդում էր տվել ռուսաց կառավարությանը, հենց որ լսեց իշ. Ցիցիանովի մահը, կրկին դավաճանեց իր երդմանը։ Նա գաղտնի կերպով ուղարկեց իր եղբայր Մամադ-Հասան-աղային Աբաս-Միրզայի մոտ, և հայտնելով նրան երկրի թափուր դրությունը ռուսաց զորքերից, այլև մահմեդականների կատաղությունը ռուսների դեմ, հրավիրեց նրան փութով անցնել Երասխը, խոստանալով, թե ինքն էլ կմիանա պարսից զորքերի հետ, և կառաջնորդե նրանց ռուսներին ջարդելու։

Աբաս-Միրզան զորքերի ահագին բազմությամբ անցավ Երասխը և մոտեցավ Շուշի բերդին։ Այնտեղ գտնվում էին մի քանի հարյուր ռուս սալդատներ միայն, փոքրաթիվ կազակների հետ, պոդպոլկովնիկ Լիսանևիչի հրամանի ներքո, որը հայտնի էր տեղացիներին անունով դալի-մայոր, որ նշանակում է գիժ մայոր։

Աբաս-Միրզայի բանակը արդեն դրած էր Շոշի գյուղի[1] մոտ գտնված լեռան բարձրավանդակի վրա և այնտեղից պատրաստվում էր ռմբակոծել Շուշի բերդը։ Այդ միջոցին Իբրահիմ-խանը, իր հետ առնելով իր ընտանիքը, որ բաղկացած էր 24 հոգուց, գիշերով ծածուկ դուրս եկավ բերդից, և կամենում էր դիմել դեպի Աբաս-Միրզայի բանակը։ Ոչ ոք չկարողացավ նկատել այդ, բացի Մելիք-Ջումշուդից, որին առաջուց հայտնի էին խանի դիտավորությունները։ Մելիք-Ջումշուդն այդ ժամանակ իր հեծելախմբով գտնվում էր բերդի մեջ։ Նա անմիջապես իմացում տվեց պոդպոլկովնիկ Լիսանևիչին, և երկուսը միասին, վեր առնելով իրանց հետ

---

չի, որը խոհեմ բարեսիրտ մարդ էր, շտապում է խանի մոտ, և ցույց տալով նրա բարբարոսության վատ հետևանքները, կարողանում է ամոքել նրա բարկությունը և ազատում է հայերի կյանքը։ Այնուհետև Բաքվի հայերը միշտ մեծ հարգանքով և երախտագիտությամբ են վերաբերվել դեպի այդ մարդու տունը։

[1] Շոշի հայաբնակ գյուղը գտնվում էր մոտավորապես երեք վերստ հեռավորության վրա Շուշի բերդից։

մի խումբ ձիավորներ, փութով հետամուտ եղան Իբրահիմ-խանին։ Նրան բռնեցին կես ճանապարհի վրա։ Խնայեցին կնիկներին և երեխաներին միայն, իսկ Իբրահիմ-խանին և նրա հետ եղող բոլոր ազգականներին կոտորեցին[1] (1806, մայիս ամսում)։

Ղարաբաղի հայոց իշխանությունների կործանողը սպանվեցավ։ Մելիք-Ջումշուդը առեց ոչ միայն իր, այլ բոլոր մելիքների վրեժը Իբրահիմ-խանից։ Նրա հայրը, Մելիք-Շահնազարը, բարձրացրեց այդ գազանին, և բոլոր ղարաբաղցիների անեծքի ու նախատինքի առարկան դարձավ։ Իսկ անպիտան հոր պիտանի որդին քավեց հոր մեղքերը... Բայց, արդեն շատ ուշ էր... Իբրահիմ-խանի մահը չէր կարող բժշկել այն վերքերը, որ ստացել էին Ղարաբաղի մելիքները Շուշի բերդի խաներից...

Այս բոլոր ծառայությունների համար Մելիք-Ջումշուդը ստացավ պոլկովնիկի աստիճան։

Ահա ինչ է գրում Մելիք-Ջումշուդը իր 1806 ամի 2 դեկտեմբերի նամակի մեջ. Ս. Պետերբուրգ աղա Մինաս Լազարյանին.

«Թեև դրանից առաջ մի քանի անգամ պատասխանել եմ ձեր նամակներին, բայց որովհետև չգիտեմ, արդյոք հասնո՞ւմ են նրանք ձեր ձեռքը, այդ պատճառով հարկավոր եմ համարում նորից պատասխանել ձեր բոլոր հարցերին։

Նախ, դուք դժգոհ եք այն մասին, թե ինչո՞ւ մեր (մելիքների) անունները չեն հիշվում վրաց կնյազների անունների թվում, որոնք նշանավոր են գտնվել զանազան կռիվներում։

Այդ առարկայի մասին թեև ես ինքս վշտացած եմ, բայց դարձյալ կասեմ, որ մենք՝ խամսայի մելիքներս, ավելի, քան թե նրանք (վրաց իշխանները) գերազանցել ենք պատերազմների մեջ և պետք է արժանի լինենք ավելի բարձր պարգևների ու շնորհների,— բայց հանգուցյալ իշխան Ցիցիանովի սրտում արմատացած ատելությունը դեպի հայոց ժողովուրդը (թեև Վրաստանում ծնված հայերին նա վրացիներ էր համարում) թույլ չէր տալիս նրան հասցնել ի տեղեկություն ամենաողորմած թագավորի մեր կատարած ամենադժվարին ծառայությունները, և այն քաջությունները, որ մենք ցույց տվինք Գանձակի գրավման ժամանակ, այլև Շիրվանի ու Երևանի արշավանքների միջոցներում։ Այնտեղ իշխանը (Ցիցիանովը) տեսնելով ինձ իմ գեղեցիկ կերպով կազմակերպած զոր-

[1] Իբրահիմ-խանի որդի Մեհտի-խանը հիվանդության պատճառով չկարողացավ հետևել հորը, մնաց Շուշի բերդում և այսպիսով ազատվեցավ կոտորածից։ Ռուսները հետո դրան նշանակեցին Իբրահիմ-խանի տեղը։

քերի հետ, որ ծառայում էին ռուսաց կառավարությանը առանց որևէ շահի (ձրի, առանց ռոճիկ ստանալու), խոստացավ աղերսամատույց լինել ինձ համար կայսրից դրոշակ բերել տալու, որը, կարելի է, ես կստանայի, եթե չպատահեր իշխանի հետ մի այնպիսի դժբախտություն (Բաքվի մեջ սպանվելը)։

Իշխան Ցիցիանովի մահից հետո, ես գտնվելով այստեղ (Թիֆլիսում) և տեղյակ լինելով պարսիկների բոլոր չար դիտավորություններին,— և որպեսզի կարելի լինի հաստատել Ռուսաստանի տիրապետությունը Ղարաբաղի նոր գրաված երկրի վրա,— գրավոր կերպով բացատրեցի իմ մի քանի խորհրդածությունները գեներալ-մայոր Նեսվետաևին, իսկ ես ինքս անձամբ գնացի Շուշի բերդը և միացա ռուսաց զորքերի հետ։

Երբ որ պարսիկները լսեցին իշխան Ցիցիանովի մահվան լուրը, իսկույն Բաբա-խանի[1] որդի Աբաս-Միրզայի առաջնորդությամբ, նրանց բազմաթիվ զորքերը թափվեցան Ղարաբաղի վրա, և միանալով տեղային թաթարների հետ, կամենում էին կոտորել ռուսաց ամբողջ զորքերը, և այն բոլոր հայերին, որ գտնվում էին բերդում (Շուշում)։ Այդ մտքի հետ համաձայն էր և Շուշիի տիրապետող Իբրահիմ-խանը և այդ պատճառով էլ ստացավ իր արժանավոր պատիժը (սպանվեցավ)։

Միևնույն ժամանակ գեներալ-մայոր Նեսվետաևին հաճո թվեցան իմ գրավոր առաջադրությունները, և նա իմ խորհրդով ուղարկեց տրոիցկի զորագունդը Ղարաբաղ, օգնություն այնտեղ գտնըված ռուսաց զորքերի։ Հիշյալ զորագունդը, Գանձակից անցկենալու միջոցին, առեց իր հետ պոլկովնիկ Կարյագինին նրա զորքերի հետ, և շտապեց մեզ մոտ (Շուշի) օգնություն հասցնելու։ Բայց դեռ ճանապարհի վրա գտնված ժամանակ, նրանք գրեցին ինձ, որ իմ ձիավորների խումբով դուրս գամ նրանց առաջ։ Թողնելով իմ զորքերից բավականաչափ թվով բերդի (Շուշիի) պահպանության համար, ես վեր առի իմ ձիավորների մի մասը և գնացի միացա նրանց հետ, իսկ երեք օրից հետո մենք ամենքս միասին կռվում էինք, և ամենաբարձրյալի օգնությամբ կատարելապես հաղթեցինք մեր թշնամիներին (պարսիկներին) և նրանց հալածեցինք մի այնպիսի արագությամբ, որ (Աբաս-Միրզայի) 20,000-ի չափ հեծելազորքը սարսափելի երկյուղով անցավ Երասխի մյուս կողմը։

Գեներալ-մայոր Նեբոլսինը, միևնույն տրոիցկի զորագունդի

---

[1] Բաբա-խան կամ Բաբա-խան-շահ կոչում էին պարսից Ֆաթալի-շահին։

շեֆը, և պոլկովնիկ Կարյագինը, եգերյան զորագունդի շեֆը, տեսան ինձ կռվելու ժամանակ, տեսան իմ և իմ զորքերի քաջությունները, վերջապես տեսան իմ հավատարմությունը,— որովհետև Հացի պակասության ժամանակ ես մատակարարեցի պաշար ռուսաց զորքերին և ցույց տվի նրանց բազմաթիվ ծառայություններ,— այդ բոլորը խիստ հաճելի թվեցան նրանց, և այդ պատճառով, հաղորդագրելով իմ մատուցած բոլոր ծառայությունների մասին, նրանք խնդրեցին գեներալ-մայոր Նեսվետաևից, որ նա հասցնե ի տեղեկություն մեր ամենաողորմած թագավորին։ Բայց դժբախտաբար, և ինձ անհայտ պատճառներով, նա (Նեսվետաևը) չներկայացրեց։

Իսկ երբ որ ես եկա այստեղ (Թիֆլիս), այն ժամանակ խնդիր մատուցի նորին պայծառափայլության կոմս Ի. Վ. Գուդովիչին, որը, հույս ունեմ, այն սիրո համար, որ ունի դեպի ձեզ և դեպի մեր ժողովուրդը (որին նա խնամք է ցույց տալիս), կվարձատրե ինձ այն ամենի համար, ինչ որ ես մինչև այսօր կատարել եմ, իհարկե, ես զրկված չեմ լինի այդ դեպքում ամենաբարձրյալի օգնությունից և ձեր ողորմածությունից։

Երկրորդ, դուք գրում եք, թե ինչո՞ւ մենք չենք կազմակերպում կանոնավոր զորագունդեր։ Դուք հավատացած եղեք, որ մենք հեշտությամբ կարող էինք անել այդ, և այն ես առանց ուրիշի օգնության, եթե մենք այժմ տեր լինեինք մեր առաջվա հարստության և ժողովրդին, որը, սովի և ժանտախտի պատճառով, ցրիվ եկավ դեպի Շիրվան և Վրաստան։ Իմ հայրը (Մելիք-Շահնազարը) և մեր նախնիքը միշտ պահում էին իրանց մոտ այնպիսի զորագունդեր, որոնց կազմակերպելը դուք ինձանից պահանջում եք։ Բայց այն ժամանակ նրանք տիրում էին ամբողջ Ղարաբաղի վրա, և բոլոր հայերն ու թուրքերը նրանց հպատակներն էին։ Ուրեմն, եթե դուք ցանկանում եք, որ հայոց ժողովուրդը ազատվեր բարբարոսների (թաթարների) բռնակալությունից,— եթե ցանկանում եք, որ բոլորը (գաղթածները) կրկին վերադառնային դեպի իրանց հայրենիքը, պահպանեին կանոնավոր զորագունդեր և լավ ծառայություններ մատուցանեին մեր ամենաողորմած թագավորին,— պետք է որ դուք միջնորդեք, 1-ին, որ հրամայեին մեր ցրիվ եկած ամբողջ ժողովրդին, որոնք գտնվում են Շիրվանում և Վրաստանում, որ նրանք կրկին վերադառնային իրանց հայրենիքը (Ղարաբաղ)։ 2-րդ, որ նրանք ազատ լինեին բոլոր հարկերից և տուրքե-

*րից երեք տարի ժամանակով։ Իսկ 3-րդը այն է, որ մեր հայերը չլինեին Թուրքերի իշխանության ներքո, որովհետև դրանք չեն կարող միշտ հավատարիմ մնալ մեր քրիստոսապսակ Թագավորի կառավարությանը*[1]*, այլ ընդհակառակն, աշխատում են օրըստօրե ուժաթափ անել հայոց ժողովուրդը, որպեսզի դյուրությամբ կարողանան կատարել իրանց չար դիտավորությունները։ 4-րդ, որ նշանակեին մեզ համար մի գումար, որով մենք կարողանայինք պատրաստել հարկավոր եղած զենքերը այն զորագնդների համար, որ պետք է կազմակերպել, որպեսզի, միշտ առանց որևիցե պակասության պատրաստ լինեին պատերազմ գնալու ռուսաց զորքերի հետ։*

*Եթե մեր ամենաողորմած Թագավորը ցույց կտա մեզ այսպիսի գթածություն, այն ժամանակ դրանով նա իրականապես կվերանորոգե հայերի ուժերը և կհարկադրե նրանց ամեն կողմից դիմել Նորին կայսերական մեծության քաղցր հովանավորության ներքո։*

*Ես հարկավոր չեմ համարում այդ մասին երկար ձանձրացնել ձեզ իմ խնդիրքներով, որովհետև դուք հազար անգամ ավելի, քան թե ես, աշխատում եք հայոց ժողովրդի ծաղկելու համար, և գիշեր ու ցերեկ չեք դադարում այդ մասին հոգ տանելուց։ Դրա համար ես հուսով եմ, որ առանց իմ խնդրելու, դուք եռանդով կաշխատեք այդ գործի ի կատար ածելու համար, որով կթողնեք ձեզանից հետո հավիտենական հիշատակ, ձեր մի այսպիսի բարեգործության համար...»։*

*Ստորագրված է Մելիք-Ջումշուդ Մելիք-Շահնազարյան*[2]*.*

---

[1] *Ռուսները Ղարաբաղի մելիքների ջանքերով տիրելով Ղարաբաղին, նույն մելիքների վաղեմի թշնամի Իբրահիմ-խանին թողեցին որպես այդ երկրի գլխավոր կառավարիչ։ Իբրահիմ-խանը դավաճանեց ռուսներին և սպանվեցավ։ Նրա տեղը նշանակեցին դավաճանի մեծ որդի Մեհտի-խանին, ավելի ընդարձակ իրավունքներով. դա ևս ավելի մեծ դավաճանություն գործեց. 1822 թվին Ղարաբաղից փախավ Պարսկաստան և պարսից զորքերի հետ վերադառնալով, սկսեց պատերազմել ռուսների հետ։ Անհասկանալի է, թե նույն ժամանակվա ռուսաց պաշտոնակալները ի՞նչ էին գտնում այդ նենգավոր խաների մեջ, որ նրանց գերադասում էին հայոց մելիքներից, որոնք ամենայն ղոհաբերությամբ անձնատուր էին եղած Ռուսաստանին։*

2 *Թե այս նամակը և թե հետևյալը, որից քաղվածքներ ենք անում, թարգմանված են պ. Երիցյանի* «Кавказская страина» *ամսագրի № 2, 1872 թվի սեպտեմբերից։*

1806 թվին, Ղարաբաղի տիրապետող հինգ մելիքները[1], բոլորը միասին, համարյա միևնույն բովանդակությամբ նամակ են գրում աղա Մինաս Լազարյանին Ս. Պետերբուրգ։ Այդ նամակի մեջ մելիքները դարձյալ արտահայտում են միևնույն գանգատները, թե նրանց մատուցած ծառայությունները ոչ միայն չեն գնահատվում, այլ մինչև անգամ հարկավոր չեն համարում հաղորդել ի տեղեկություն թագավոր կայսրի և այլն։

«Դուք (Լազարյանը) ասում եք, թե ափսոսում եք և միանգամայն զարմանում եք, որ մեր անունները և մեր մատուցած ծառայությունները ոչ մի տեղ չեն հիշատակվում, և թե մեր աշխատությունները իզուր կորչում են։ Այդ հարցին մենք պատասխանում ենք, թե ահա հենց դրա մեջն է կայանում մեր ցավն ու դժբախտությունը. որովհետև մենք մինչև մեր արյան վերջին կաթիլը չենք խնայում մեր անձը ռուսաց հայրենիքի համար և միշտ աշխատում ենք, որ մեր ամենահավատարիմ հպատակության զգացմունքները հասնեին մինչև նորին կայսերական մեծության ամենաողորմած գահը, բայց ի՞նչ օգուտ, որ այդ բոլորը մնում է ծածկված վարագույրի տակ...»։

Հետո իրանց նամակում ի միջի այլոց մելիքները խնդրում են. 1-ին, որ թույլ տրվի նրանց հավաքել իրանց զանազան երկրներում ցրիվ եկած ժողովուրդը Ղարաբաղում, իրանց՝ մելիքների կառավարության ներքո. 2-րդ, որ նրանք ազատ լինեին խանի իշխանությունից և նրանց ժողովուրդը բաժանված լիներ թուրքերից, և խանի փոխարեն նշանակված լիներ մի ռուս ատրիճանավոր. 3-րդ, որ մելիքներին տրվեր, որպես առաջուց խոստացել էին նրանց, նույնպիսի ամենաողորմած արտոնություններ, որպիսին վայելում էր Նախիջևան քաղաքը (Դոնի վրա), այսինքն, նրանց օրենքները և դատարանները հիմնված լինեին իրանց երկրի վաղեմի սովորությունների և ավանդությունների վրա։ Եվ եթե նրանց այսպիսի արտոնություն կտային, մելիքները խոստանում էին կազմել ավելի կանոնավոր զորքեր, օգնելու համար ռուսներին ամեն դեպքերում։ Բացի դրանից, խոստանում էին, որպես հարկ վճարել

---

[1] Այդ նամակին ստորագրել են 1. Վարանդայի տիրապետող պոդպոլկովնիկ Մելիք-Ջումշուդ Մելիք-Շահնազարյան։ 2. Ջրաբերդի տիրապետող Մելիք-Ադամ Մելիք-Մեջլումյան։ 3. Գյուլիստանի տիրապետող Մելիք-Բաղիր (հանգուցյալ Մելիք-Ֆրեյդունի եղբայրը) և Մելիք-Աբով Մելիք-Բեգլարյան։ 4. Խաչենի տիրապետող Մելիք-Ալլահվերդի Մելիք-Միրզախանյան։ 5. Տիզակի տիրապետող Մելիք-Ղահրաման Մելիք-Ավանյան։

ռուսաց կառավարությանը յուրաքանչյուր տարի 4000 չետվերտ հաց և 4000 ոսկի փող։

Այդ նամակից երևում է, որ մելիքներն այժմ իրանց պահանջները բավական չափավորել էին. նրանք այլևս չէին մտածում Ղարաբաղի վաղեմի հայկական իշխանությունները վերականգնելու մասին, այլ պահանջում էին մի տեսակ ինքնավարություն, ռուսաց հովանավորության ներքո, խոստանում էին պահպանել իրանց երկիրը իրանց զորքերով, ամեն տարի վճարելով մի որոշյալ քանակությամբ հարկ։

Մելիքների զորության թուլանալու գլխավոր պատճառը պետք է որոնել նրանց հպատակների գաղթականության մեջ։ Սովը, ժանտախտը և զանազան քաղաքական հանգամանքներ նրանց ցիրուցան արեցին դեպի ամեն կողմեր։ Ամեն տեղ նրանց արեցին փայլուն խոստմունքներ և ամեն տեղ նրանք խաբվեցան իրանց հույսերի մեջ։

Կրկին ի մի վայր գումարել այդ ժողովուրդը, հայրենի հողի վրա, նրանց ոչ միայն թույլ չէին տալիս, այլ մինչև անգամ արգելում էին։ Այդ քաջ ժողովուրդն ավելի հարկավոր էին համարում այն երկրների պահպանության համար, ուր որ զետեղված էին։ Թեև Ղարաբաղի գաղթականների մի մասը Վրաստանից տեղափոխվեցավ իր հայրենիքը, բայց դարձյալ դեռ բավական թվով մնացել էին այնտեղ։ Շամախու գավառը գաղթողներից դեռ ոչ ոք չէր վերադարձել։

Ամենակորստաբերն այն էր, որ գաղթականության պատճառով, Ղարաբաղի հայ ժողովրդի բացակայության ժամանակ, նրանց երկրները, գյուղերը, հողերը մնացին անտեր, դատարկ։ Այդ դեպքից օգուտ քաղելով, Շուշի բերդի Իբրահիմ-խանը և նրա հաջորդ Մեհտի-խանը գրավեցին մելիքների երկրները, և բնակեցրին մահմեդականներով։ Երբ Ղարաբաղի գաղթականների մի մասը կրկին վերադարձավ իր հայրենիքը, մելիքներին մեծ ջանք էր հարկավոր, որ կարողանային խաներից հետ խլել իրանց գյուղերն ու հողերը, և նոր բնակեցրած մահմեդականներին հեռացնելով, նրանց տեղը հաստատեին երկրի վաղեմի բնակիչներին — հայերին։ Ռուսաց նոր տիրապետությունն այդ ժամանակ դեռ այն աստիճան օրորվող դրության մեջ էր, որ ռուսները ոչ միայն ժամանակ չունեին, այլ մինչև անգամ հարկավոր չէին համարում մելիքների և խաների կալվածական վեճերի մեջ մտնել, և այդ էր պատճառը, որ մելիքներից շատերը կորցրին իրանց ընդարձակ կալվածները,

կամ ձեռք բերեցին նրանց մի մասը միայն։ Ինչպես ասում են, խաների «խաթրին» այդ ժամանակ չէին ուզում դիպչել, իսկ հավատարիմ, քրիստոնյա մելիքներին շողոքորթելու հարկ չկար։

## XLI

Մնում է մեզ մի քանի խոսք ասել Գյուլ-Յաթաղ բերդի Մելիք-Ալլահվերդյան Մելիք-Ռուստամի մասին, և մենք շուտով կվերջացնենք Խամսայի մելիքությունների հետ։

Ընթերցողը հիշում է, որ Մելիք-Ռուստամը Խամսայի տիրապետող մելիքների կարգից չէր, այլ Շուշի բերդի մահմեդական խաներին մատուցած ծառայությունների համար մելիքություն ստացավ։ Նա իր զորքերով օգնեց Իբրահիմ-խանին Գանձակի պաշարման ժամանակ և Մելիք-Մեջլումի սպանման պատճառը դարձավ (տե՛ս գլ. XXXIII)։ Նա Աղա-Մամադ-խանի սպանվելուց հետո օգնեց Իբրահիմ-խանին, և վերջինը կրկին Շուշի բերդի տերը դարձավ (տե՛ս գլ. XXXIV)։ Նա ուրիշ շատ ծառայություններ կատարեց Շուշի բերդի բռնակալի օգտին ի վնաս հայոց մելիքների,— այդ բոլորը իրանց տեղերում պատմել ենք։

Ղարաբաղի մելիքների վերջին գաղթականության ժամանակ Մելիք-Ռուստամը իր հայրենիքից չհեռացավ։ Նրա հարաբերությունները Շուշի բերդի Իբրահիմ-խանի հետ այնքան լավ էին, որ նա կարիք չուներ օտար երկրներում ապահովություն որոնելու։ Բայց մյուս կողմից նրան սպառնում էր մի վտանգ, այն էր Գանձակի Ջավադ-խանի վրեժխնդրությունը։

Ջավադ-խանը չէր կարող մոռանալ, որ նա Իբրահիմ-խանի հետ միանալով, պաշարեց իր բերդը, դավաճանությամբ իր աներ Ապրես-աղային մտցրեց բերդի մեջ, տեղային հայերին ապստամբեցրեց իր դեմ, Մելիք-Մեջլումին սպանել տվեց և այլն։

1799 թվին, այսինքն՝ Մելիք-Մեջլումի մահից երեք տարի հետո, Ջավադ-խանը հարմար ժամանակ գտավ Մելիք-Ռուստամից վրեժխնդիր լինելու։ Նա իր զորապետներից մեկի առաջնորդությամբ, որին կոչում էին Մրրղ-Հաջի, որը ավելի հսկա էր, քան թե հասարակ մարդ, բազմաթիվ ասպատակներ է ուղարկում Մելիք-Ռուստամի երկիրը ավերակ դարձնելու և նրան գերի բերելու համար։ Մելիք-Ռուստամը այս լսելով, վեր է առնում իր ձիավորների խումբը, և դուրս է գալիս թշնամու հանդեպ։ Մելիքի հետ է լինում

նրա քաջ նիզակակից տեր-Հարություն քահանան[1]։ Նրանք հանդիպում են թշնամուն Սուլթանի տափ կոչված դաշտում[2]։ Թշնամին մի քանի անգամ ավելի բազմաթիվ է լինում, քան մելիքի զորքերը։ Բայց որովհետև այդ ժամանակվա կռիվների մեջ հակառակ կողմերի բախտը վճռվում էր շատ անգամ առաջնորդող անձինքների մենամարտությամբ, քան թե զորքերի հավաքական պատերազմով, այդ պատճառով Մրրղ-հաջին կայծակի արագությամբ նետվում է Մելիք-Ռուստամի վրա։ Վերջինը ժամանակ չէ տալիս նրան իր մոտ հասնելու և հեռվից հրացանի գնդակով ցած է գլորում նրա ձին, և հսկան մնում է ձիու տակը։ Այդ միջոցին Մելիք-Ռուստամն արծվի արագությամբ վրա է հասնում, թուրը մերկացնում է, պատրաստվում է սպանել նրան։ Բայց հսկան աղաչում է խնայել իր կյանքին, հայտնելով, թե անձնատուր է լինում։ Մելիքը մեծահոգությամբ խղճում է նրան, և իր թուրը պատյանում դնելու միջոցին, ուխտազանց թուրքը, որ թավալված էր նրա ոտների մոտ, տակից հանկարծ արձակում է ատրճանակը և մելիքին մահացու վերք է պատճառում։ Այդ միջոցին վրա է հասնում մելիքի նիզակակից տեր-Հարությունը, գտնում է նրան հոգևարքի մեջ։ Թողնելով նրան նույն դրության մեջ, հարձակվում է Մրրղ-հաջիի վրա և սպանում է նրան։ Բայց ինքն էլ սպանվում է նույն կռվի մեջ, երբ կատաղած մահմեդականները տեսնելով իրանց առաջնորդի դիակը, ավելի սաստկացնում են կռիվը։

Մելիք-Ռուստամի գլուխը կտրում են և տանում Գանձակ, նվիրում են նրա թշնամի Ջավադ-խանին, որից տեղային հայերը խնդրելով առնում են քաջ մարդու գլուխը, և թաղում են իրանց եկեղեցու դռան մոտ։ Իսկ մարմինը թաղվում է իր հայրենի Գյուլ-Յաթաղ բերդի գերեզմանատանը[3]։

Մելիք-Ռուստամը որդի չթողեց[4], այդ պատճառով նրա մահից հետո մելիք եղավ նրա եղբոր՝ Միրզա-բեկի որդի Ռովշանը։

---

[1] Այդ տեր-Հարությունը Աստվածատուր քահանայի որդին էր և նշանավոր Դալի-Մահրասայի (Ավագ վարդապետի) տոհմիցն էր, Ջրաբերդի Մեծ-շեն կոչված գյուղից, ուր մինչև այսօր ապրում են Դալի-Մահրասայի ժառանգները և հայտնի են իրանց քաջությամբ։

[2] Սուլթանի տափը գտնվում է Մարդակերտ գյուղի մոտ, Թարթար գետի աջ ափի մոտ։

[3] Մելիք-Ռուստամի և նրա քաջ նիզակակից տեր-Հարություն քահանայի շիրիմները կից են, դրած են միմյանց մոտ. երկուսի տապանաքարերն էլ կրում են միևնույն թվականը՝ հայոց ՌՄԽԸ (1799)։

[4] Մելիքի մահից չորս ամիս հետո նրա կին Վարթ-խաթունը, ծնեց Բալաբեկին։

*Մելիք-Ռովշանն իր նախորդների նման բարեկամ չմնաց Շուշի բերդի խաներին և մասնակցում էր ռուսաց կռիվներին խաների դեմ։ Գանձակի պաշարման ժամանակ նա իր խումբով գտնվում էր իշ. Ցիցիանովի բանակի մեջ, և քաջությամբ կռվում էր Ջավադխանի դեմ, որի հետ ունեցած թշնամությունը, թե Մելիք-Ռուստամի սպանման պատճառով և թե առաջ, մեր ընթերցողներին հայտնի է։*

*Երբ իշ. Ցիցիանովը գրավեց Գանձակը, Մելիք-Ռովշանը թողեց Ջրաբերդը և իր ընտանիքով տեղափոխվեցավ այդ քաղաքը, վայելում էր իշ. Ցիցիանովի առանձին համակրությունը։*

*Այնուհետև նա շատ ծառայություններ արեց ռուսաց զորքերին, թե նյութապես և թե իր քաջ ձիավորների խումբերով օգնելով նրանց։ Երբ պոլկովնիկ Կարյագինը, Շուշի բերդի մոտ ջարդվելով պարսից բազմաթիվ զորքերից, փախավ և ամրացավ Շահբուլաղի բերդի մեջ[1], այստեղ նրա հրամանատարության ներքո հանձնված պարսից զորքերով, անպատճառ կոչնչանար քաղցածությունից, եթե Մելիք-Ռովշանը նրանց օգնություն չհասցներ։ Նա իր ձիավորների խումբով պատռեց, անցավ պարսից զորքերի միջով, և Կարյագինի զորագնդին ուտեստի պաշար հասցրեց։*

*Այդ բոլորը այն աստիճան հռչակեցին Մելիք-Ռովշանի անունը, որ ռուսները կամենում էին ուղարկել նրան իր ձիավորների հետ դեպի Կարսի կողմերը տաճկաց սահմանների վրա։ Երբ նա պատրաստվել էր գնալու, մի գիշեր Գանձակի կամուրջից անցնելու միջոցին, անհայտ ձեռից հրացանի մի գնդակ արձակվեցավ, և նա մեջքից վերք ստացավ։*

*Մելիք-Ռովշանը ոչ ոքի վրա չէր կարող կասկածել, բացի Մելիք-Մեջլումի որդի փոքր Մելիք-Աթամից, որ այդ ժամանակ Գանձակումն էր գտնվում։ Հին տոհմային թշնամությունը նորից գրգռվեցավ երկու ոխերիմ ընտանիքների մեջ, որոնք, որպես տեսանք մեր պատմության ընթացքում, շատ չարիքներ էին գործել միմյանց դեմ։ Մելիք-Ռովշանը գանգատվեց և Գանձակի ռուս բերդապահը կալանավորեց փոքր Մելիք-Աթամին։ Բայց երբ ոչինչ չհաստատվեցավ, մի քանի օրից հետո Մելիք-Աթամին արձակեցին։ Այդ սաստիկ վիրավորեց Մնլիք-Ռովշանին, և նա բողոքեց ռուսաց բարձր կառավարությանը բերդապահի դեմ։ Վերջինս սաստիկ*

---

*1 Շահ-բուլաղի բերդը մի ամայի բերդ էր այդ ժամանակ, կառուցած Թառնագյուրտի (Տիգրանակերտի) հին ավերակների վրա։ Այդ բերդը շատ մոտ է Շուշի բերդին։*

հանդիմանություն ստացավ և մի քանի օր տնային բանտարկության ենթարկվեցավ։

Բայց երբ իշ. Ցիցիանովը Բաքվի մոտ սպանվեցավ, այնուհետև Մելիք-Բովշանը կորցրեց իր պաշտպանին, և նրա հարաբերությունները Գանձակի բերդապահի հետ հետզհետե թշնամական դարձան։ Մելիք-Բովշանը մտածեց հեռանալ Գանձակից։ Նա իր հայրենիքը՝ Ջրաբերդ, գնալ չկարողացավ, որովհետև Շուշի բերդի Իբրահիմ-խանի հաջորդ Մեհտի-խանի հետ նույնպես լավ հարաբերությունների մեջ չէր։ Կարյագինի անցքի պատճառով, նա հրավիրել էր իր վրա Շուշի բերդի խաների ատելությունը, որոնք թեև ռուսներին առերես հպատակություն էին ցույց տալիս, բայց սրտով կապված էին պարսիկների հետ։

Իր անձնանվեր, բայց չվարձատրված ծառայությունների համար վշտացած, Մելիք-Բովշանը թողեց Գանձակը և գնաց Շաքի Դաշ-բուլաղ գյուղը, որ հիմնել էր մի ժամանակ (տե՛ս գլ. XXVII) նրա հորեղբայր Մելիք-Ռուստամը, և այնտեղ առանձնացավ, իրան առժամանակ հեռու պահելով պատերազմի դաշտից։ Դաշ-բուլաղում դեռ բնակվում էին Մելիք-Ռուստամի Ջրաբերդից տարած հայ գաղթականները։ Մելիք-Բովշանը նրանց իր հպատակության ներքո առեց և խաղաղ կյանք էր վարում։ Այնտեղ մի քանի տարուց հետո վախճանվեցավ նա, այն վերքի պատճառած հիվանդությունից, որ ստացել էր նա Գանձակի կամուրջի վրա։ Նա թողեց մի որդի Ալլահվերդի-բեկ անունով, որը այդ տոհմի մեջ Մելիք-Ալլահվերդի II էր[1], որի հետ այդ տոհմի մելիքությունը վերջացավ։

Խոսելով Կարյագինի անցքի մասին, մենք չենք կարող չհիշել մի քաջ տղամարդի անունը, որը նշանավոր եղավ ռուսաց զանազան կռիվների մեջ։ Դա էր կապապատցի Մելիք-Վանի Աթաբեկյանը։

Թեև Աթաբեկյանները հայոց հին ազնվականների ծագումից էին, բայց Վանիի հայրը, զարգար Թունին (Հարություն) մի հասարակ արհեստավոր էր, պարապվում էր ոսկերչությամբ։ Վանին իր պատանեկության հասակում աշխատում էր հոր արհեստանոցում և նրա լավ օգնականն էր։ Բայց այդ զբաղմունքը շուտով ձանձրացրեց նրան, երբ Ղարաբաղում ամեն րոպե լսվում էր զենքի շառաչյունի ձայնը, որոտում էր պատերազմների աղմուկը,— նրա տոհմային արյունը եռ եկավ, մտածեց թողնել ոսկերչի փուքսն ու մուրճը, վճռեց զենք կրել և նետվել կռվի դաշտը։ Նա առանց

[1] Մելիք-Ալլահվերդի II մնացին երեք որդիներ՝ Միսայել-բեկ, Ղահրաման-բեկ և Մեջլում-բեկ։

իր դիտավորությունը հայտնելու իր ծնողներին, ծածուկ հեռացավ հայրենի տնից։ Մի ժամանակ իմացան, որ Վանին Ջրաբերդի Մելիք-Բուլղանի մոտ ծառայության է մտել, նրա հեծելազորքի խմբերից մեկի գլխավորն է դարձել և կոչվում է Վանի յուզբաշի (հարյուրապետ Վանի)։

1804 թվին Ջրաբերդի բնակիչներից 300 ընտանիք, Իբրահիմ-խանի զաղանությունից ազատվելու համար, գաղթեցին Գանձակ և բնակվեցան այդ քաղաքի շրջակայքում։ Տոթի և անսովոր կլիմայի պատճառով նույն տարվա ամառը այդ գաղթականներից մոտ 500 հոգի մեռան, մնացածները փախան Գանձակի գավառի Ոսկանապատ գյուղը, ուր օդը համեմատաբար ավելի հովասուն էր։

Այդ գաղթականների հետ գտնվում էր և Վանի յուզբաշին։ Գանձակում նա ծանոթացավ պոլկովնիկ Կարյագինի հետ այն ժամանակ, երբ Կարյագինին հրամայված էր Շուշի բերդին օգնության հասնել։ Դա այն ժամանակն էր (1806), երբ պարսից թագաժառանգ Աբաս-Միրզան բազմաթիվ զորքերով պաշարել էր Շուշի բերդը, երբ տեղային Իբրահիմ-խանը, թեև ռուսաց կառավարությանը հպատակության երդում էր տվել, բայց հենց որ Աբաս-Միրզայի զորքերը մոտեցան Շուշի բերդին, նա իր ընտանիքով դիմեց ռուսաց ննդավոր թշնամու՝ Աբաս-Միրզայի բանակը և կես ճանապարհի վրա սպանվեցավ Մելիք-Ջումշուդի և մայոր Լիսանևիչի ձեռքով (տե՛ս գլ. XXXIX)։ Բայց Շուշին դարձյալ պաշարված մնաց Աբաս-Միրզայի բազմաթիվ զորքերով։ Մայոր Լիսանևիչը և Մելիք-Ջումշուդը, փակված բերդի մեջ, ունեին իրանց ձեռքի տակ խիստ աննշան թվով զինվորներ թշնամուն ընդդիմադրելու համար։ Նրանց գլխավորապես օգնում էին բերդի մեջ բնակվող հայերը և դրսից օգնություն էին սպասում։

Օգնությունը պիտի հասցներ պոլկովնիկ Կարյագինը, որը արդեն Գանձակից ճանապարհ էր ընկել և հայ հեծելախմբով նրան առաջնորդում էր Վանի յուզբաշին։ Ռուսաց զորախումբը բաղկացած էր 600 զինվորներից և ունեին 2 թնդանոթներ միայն։ Նրանք Թարթառ գետի մոտ հանդիպեցին պարսից առաջապահ զորքերին, թվով ավելի քան 10,000, որ գտնվում էին Փիր-Ղուլի-խանի հրամանատարության ներքո։ Կռիվը սկսվեցավ հիշյալ գետի ափերի մոտ։ Չնայելով, որ թշնամու զորքը թվով անհամեմատ ավելի էր, քան թե ռուսաց զինվորները և Վանի յուզբաշու հեծելախումբը, այսուամենայնիվ, պարսիկները սկզբում սարսափելի կերպով ջարդվեցան, և իրանց թնդանոթները և այլ ռազմամթերքը թող-

նելով պատերազմի դաշտի վրա, պատրաստվում էին փախչել, երբ նրանց օգնության հասավ ինքը Աբաս-Միրզան ավելի բազմաթիվ զորքերով։ Վանի յուզբաշու հեծելախումբը և ռուսաց զինվորները մի քանի օր քաջությամբ պաշտպանվում էին, բայց ի՞նչ կարող էր անել մի բուռն զորք Աբաս-Միրզայի ահագին բազմության դեմ։ Կարյագինը վերք ստացավ․ նրա զինվորներից կեսը չմնաց, մեծ մասն ընկան կռվի դաշտում, մնացածները ամրացան մերձակա Շահ-բուլաղի ամայի բերդում[1]։

Ռուսաց զորքը բոլորովին կոչնչանար այդ ամայի բերդի մեջ, թե քաղցածությունից և թե թշնամու կրակից, եթե ութն օրվա սարսափելի պաշարումից հետո Վանի յուզբաշին նրանց գիշերով դուրս չբերեր այնտեղից և չազատեր բոլորին, փախցնելով հայոց Մոխրաթաղ գյուղը։ Այստեղ նա իր սեփական ծախքով բավական ժամանակ պահեց և կերակրեց ռուսաց զորքերին, մինչև նրանք նոր օգնություն ստացան, և Աբաս-Միրզայի ահագին զորությունը ցրիվ տալով հալածեցին մինչև Երասխ գետի աջ կողմը։ Այդ կռիվների ժամանակ մեծ քաջություններ գործեցին Մելիք-Ջումշուդը, Մելիք-Ռովշանը և Վանի յուզբաշին։

Այնուհետև Վանի յուզբաշին իր սեփական հեծելախումբով մասնակցում էր ռուսաց զանազան կռիվների մեջ և ամեն տեղ հայտնվում էր իր զարմանալի քաջություններով։ 1812 թվի ձմեռը Աբաս-Միրզան զորքերի ահագին բազմությամբ կրկին անգամ հարձակվեցավ Ղարաբաղի վրա։ Այդ ժամանակ ռուսաց տրոիցկի պոլկի բատալիոնը, մայոր Ժինեի զորապետության ներքո, գտնվում էր Թարթար գետի մոտ, Սուլթան-բուդ կոչված ձմեռանոցում։ Պարսից հեծելազորները Ջաֆար-Ղուլի-խանի[1] առաջնորդությամբ հարձակվում են հիշյալ ձմեռանոցի վրա և ռուսաց ամբողջ բատալիոնը ջարդում են։ Այդ միջոցին Շուշի բերդից օգնություն ուղարկեցին Վանի յուզբաշուն 200 ռուս զինվորներով, 2 թնդանոթներով և իր սեփական հայ ձիավորներով։ Բայց մինչև նրա հասնելը պարսիկները գործը արդեն վերջացրել էին։ Վանի յուզբաշին այդ տեղեկությունը ստացավ կես ճանապարհի վրա, այն ժամանակ, երբ պարսիկները վերադառնում էին կոտորածից և պատահեցան նրան։

---

1 Այդ ժամանակն էր, որ Մելիք-Ռովշանը, ուտեստի պաշար հասցնելով, ազատեց նրանց սովամահ լինելուց, իսկ Մելիք-Ջումշուդը, Շուշի բերդից իր ձիավորների խումբով վրա հասնելով, ազատեց նրանց իսպառ կոտորվելուց։

2 Ջաֆար-Ղուլի-խանը Մամադ-Հասան-աղայի որդին էր, իսկ այդ վերջինը Շուշի բերդի Իբրահիմ-խանի որդին էր։

Նա ստիպվեցավ ամրանալ Շահ-բուլաղի բերդում, որը իսկույն պաշարվեցավ Ջաֆար-Ղուլի-խանի զորքերով։ Մեծ քաջություն էր հարկավոր Վանի յուզբաշուն, որ կարողանար իր փոքրաթիվ զորքերով պատերազմել պարսից ահագին բազմության դեմ, իսկ այդ քաջությունը ունեցավ նա, մի քանի օր շարունակ պատասխանելով թշնամու ամեն կողմից տեղացող կրակներին։

Վերջը թնդանոթների հարվածներից բերդի դռները խորտակվում են, պարսից զորքերը կատաղությամբ ներս են թափվում, բայց մեծ է լինում նրանց զարմանքը, երբ բերդի մեջ ոչ ոքի չեն գտնում։ Վանի յուզբաշին մի օր առաջ իր զորքերը գիշերով դուրս էր բերել բերդից և լեռների վրայով, սարսափելի բարձրավանդակներից տարել էր հայոց Ցարուղ կոչված գյուղը։ Բերդի մեջ թողել էր նա իր մարդիկներից մի քանի հոգի միայն, որոնք թշնամուն խաբելու համար ժամանակ առ ժամանակ պատասխանում էին։ Հենց որ պարսիկները ներս մտան, այդ մարդիկը սատանայի նման աներևութացան։

Իրանց կամավոր զորքերով ռուսաց տիրապետությունը Անդրկովկասում հաստատելու գործին ամենայն անձնանվիրությամբ նպաստող հայոց քաջերից մեկն էր Վանի յուզբաշին։ Երբ 1812 թվին, 20 հոկտեմբերի գեներալ Կոտլարևսկին ջարդեց Աբաս-Միրզայի զորքերը Երասխի աջ ափի վրա, Ասլանդուզի ճակատամարտում, Վանի յուզբաշին իր մարդիկներով կռվում էր պարսից դեմ։ Հետևյալ տարին (1813, 1 հունվարի) Լենքորանի բերդը գրավելու միջոցին, Վանի յուզբաշին նույն գեներալ Կոտլարևսկիի քաջ գործակիցներից մեկն էր։

Բայց հայերը առհասարակ օտարի ծառայության մեջ մի առանձին համեստություն ունեն, մեծ գործեր կատարել, բայց փոքր պահանջներով բավականանալ։

Վանի յուզբաշին իր մատուցած ծառայությունների համար ստացավ ռուսաց կառավարությունից պրապորշչիկի աստիճան, մեդալ և մշտական թոշակ։ Իսկ Շուշի բերդի Մեհտի-խանը (Իբրահիմ-խանի որդին) ընծայեց Վանի յուզբաշուն որպես սեփականություն իր հայրենի Կսապատ գյուղը և շնորհեց մելիքության տիտղոս։ Նա կոչվելու էր այնուհետև Մելիք-Վանի։

Ջրաբերդի հին տիրապետող մելիքների (Մելիք-Իսրայելյանների) վերջին ժառանգները (Մելիք-Աթամ II) տեղափոխված լինելով Գանձակի գավառը, իսկ նոր մելիքների (Մելիք-Ալլահվերդյանների) վերջին ժառանգը (Մելիք-Րոստամը) տեղա-

փոխված լինելով Նուխվա գավառը,— Ջրաբերդը մնացել էր առանց մելիքների կառավարության։ Իր արժանավորություններով Ջրաբերդը կառավարելու և այդ գավառը ժամանակի փոթորիկներից պահպանելու համար ընդունակ էր միայն Մելիք-Վանին, և նա ստացավ Մեհտի-խանից ամբողջ Ջրաբերդի մելիքությունը։

Մելիք-Վանին իր պատերազմական արժանավորությունների հետ ուներ և կառավարչական ընդունակություններ։ Նա ամբողջ 42 տարի խաղաղությամբ վարեց Ջրաբերդի մելիքության պաշտոնը, աշխատեց այդ երկրի ցրված բնակիչներին հետզհետե վերադարձնել իրանց հայրենիքը և ծաղկացրեց երկրագործությունը ու արհեստը։ Նա վախճանվեցավ խորին ծերության մեջ (1854) և նրանից հետո Աթաբեկյանների տոհմը ավելի և ավելի նշանակություն ստացավ Ղարաբաղում[1]։

## XLII

1808 թվին վախճանվեցավ Ղարաբաղի Իսրայել կաթողիկոսը։ Դա այն չարագործն էր, որ մատնեց հայոց մելիքներին, որ Հովհաննես կաթողիկոսին սպանել տվեց և իր դավաճանությամբ Իբրահիմ-խանի սիրելին դարձավ (տե՛ս գլ. XX և XXI)։

Մեզ հայտնի է, որ նույն չարագործից հալածվելով, Հովհաննես կաթողիկոսի եղբայր Հասան-Ջալալյան Սարգիս կաթողիկոսը Ղարաբաղի գաղթականների հետ ապրում էր Վրաստանի Հաղպատա վանքում։ Այնտեղ մնաց նա ամբողջ 14 տարի (տե՛ս գլ. XXXVII)։

Երբ Սարգիս կաթողիկոսը լսեց իր ոխերիմ հակառակորդի՝ Իսրայել կաթողիկոսի մահը, երբ իմացավ, որ Իբրահիմ-խանը, հայերի անհաշտ թշնամին, սպանված է, և երբ տեսավ, որ հայոց մելիքները իրանց հպատակների հետ Վրաստանից տեղափոխվեցան Ղարաբաղ, ինքն ևս մտածեց վերադառնալ Գանձասարի վանքը, և կրկին տիրանալ Աղվանից կաթողիկոսության աթոռին, որից բավական ժամանակ անջատված էր։

Նախ ուղարկեց նա իր եղբորորդի Բաղդասար վարդապետին, որ հետո ինքը գնա։

---

[1] Մելիք-Վանին թողեց չորս որդի՝ Հովսեփ-բեկ, Սարգիս-բեկ, Աթաբեկ (պոլկովնիկ) և Միքայել-բեկ։ Իսկ Մելիք-Վանիի եղբայր Հակոբ-յուզբաշին ուներ մի որդի միայն՝ Ասլան-բեկը, դրանից ծնվեցան՝ Ներսես-բեկ, Մովսես-բեկ և Նիկոլա-բեկ։

1808 թվին, այսինքն՝ հենց նույն տարվա մեջ, երբ Եփրայել կաթողիկոսը վախճանվեցավ, Բաղդասար վարդապետը Թիֆլիսից ճանապարհ ընկավ դեպի Ղարաբաղ[1]։ Նա գտավ Գանձասարի վանքը բոլորովին ամայի դրության մեջ։ Եռանդոտ, գործունյա և ժրաջան վարդապետը կարողացավ փոքր ժամանակում ոչ միայն կարգի դնել վանքը, այլ նրան հաջողվեցավ մասամբ ետ խլել վանքի ընդարձակ կալվածները, որ զանազան թուրք բեկեր կամ հայ աղնըվականներ տիրացել էին։

Երբ Գանձասարի վանքում ամեն ինչ կարգի էր դրված, Սարգիս կաթողիկոսը թողեց Վրաստանը և Հաղպատա վանքից տեղափոխվեցավ Ղարաբաղ (1812)։ Նրա հետ գնացին Ղարաբաղի գաղթականներից նրանք, որ դեռևս մնացել էին Վրաստանում։

Սարգիս կաթողիկոսը Գանձասար տեղափոխվելով, շուտով նրա և էջմիածնի մեջ նոր վիճաբանություններ ծագեցան։ Այդ վիճաբանություններին առիթ տվեց կաթողիկոսի փառասիրական վարմունքը։

Մեր պատմության XXXVII գլխում տեսանք, որ Սարգիս կաթողիկոսը Վրաստանում գտնված ժամանակ, այնտեղից էջմիածին գնալով, խոստումն տվեց, որ այլևս չի պիտի գործածե կաթողիկոսական տիտղոս և կնիք, այլ պիտի բավականանա միայն արքեպիսկոպոսական տիտղոսով ու կնիքով, և դրա համար նրան հանձնեցին Հաղպատա վանքի վանահայրությունը և Վրաստանում գտնված ղարաբաղցի գաղթականների առաջնորդությունը։ Եվ ամբողջ 14 տարի Վրաստանում կառավարում էր իր հոտը որպես արքեպիսկոպոս։ Բայց հենց որ վերադարձավ Ղարաբաղ, կրկին սկսեց իրան Աղվանից կաթողիկոս կոչել և կաթողիկոսական իրավունքներ ի գործ դնել։ Սարգսի այդ վարմունքը, իհարկե, պետք է հուզեր նոր կռիվ նրա և էջմիածնի մեջ։

Էջմիածնից նրան ազդարարեցին, որ պահպանե իր խոստմունքը, բայց նա ոչ միայն ուշադրություն չդարձրեց, այլ դիմելով

---

[1] Բաղդասար վարդապետի հետ Ղարաբաղ գնաց Սարգիս կաթողիկոսի մյուս եղբոր (Գաբրիել-բեկի) որդի Մելիք-Գրիգորը։ Այդ ծանոթության մեջ հարկավոր ենք համարում նկատել և այն, որ Սարգիս կաթողիկոսի ազգականների թվում Վրաստանում գտնվում էր և նրա եղբայր Ալլահ-Ղուլի-բեկը։ Այդ դավաճանը նույն անձնավորությունն է, որ Իբրահիմ-խանի մոտ մատնեց Ղարաբաղի մելիքներին, նրանց ռուսաց կառավարության հետ ունեցած գաղտնի հարաբերությունների համար (տես գլ. XX)։ Վրաստանում նա մի ժամանակ անպատիվ կերպով թափառում էր, մինչև Ղարաբաղի մելիքները վրեժխնդիր եղան նրանից, և գլուխը կտրելով մարմինը անհետացրին...

Իբրահիմ-խանի հաջորդ Մեհտի-խանի պաշտպանությանը, իրան բոլորովին էջմիածնից անկախ հայտնեց։ Այդ երկպառակություն-ները տևեցին երեք տարի, մինչև 1815 թվին էջմիածնի բարձր հոգևոր կառավարությունը, ռուսաց իշխանության ուժով, հարկադրեց Սարգսին հրաժարվել կաթողիկոսության տիտղոսից և տվեց նրան միտրոպոլիտության տիտղոս արքեպիսկոպոսի աստիճանով։ Այնուհետև վերջացավ Աղվանից կաթողիկոսությունը, որ սկսված էր Լուսավորիչի թոռ Գրիգորիսի ժամանակից։

Դեռ իր կենդանության ժամանակ Սարգիս միտրոպոլիտը իր եղբորորդի Բաղդասար վարդապետին ուղարկեց էջմիածին, որ եպիսկոպոս ձեռնադրվի, որպեսզի իր հաջորդը նա լինի։ Որպես Աղվանից կաթողիկոսությունը դարերով շարունակվում էր Հասան-Ջալալյանների տոհմի մեջ, Սարգիսը ցանկանում էր, որ Աղվանից միտրոպոլիտությունը ևս, որը իրանից սկսվեցավ, նույնպես շարունակվեր նույն տոհմի մեջ։

Բաղդասարը էջմիածին գնալով, 1820 թվին Եփրեմ կաթողիկոսի ձեռքով եպիսկոպոս ձեռնադրվեցավ, և վերադառնալով Գանձասարի վանքը, Սարգսի ծերության պատճառով, համարյա ինքն էր կառավարում վիճակի հոգևոր իշխանությունը։

1826 թվին Ղարաբաղը ենթարկվեցավ մի նոր դժբախտության. պարսից թագաժառանգ Աբաս-Միրզան 80,000 հոգով անցավ Երասխը, տիրեց Ղարաբաղին. տեղային մահմեդականները միացան պարսիկների հետ. Շուշիի բերդապահ պոլկովնիկ Ռեուտը, ռուսաց փոքրաթիվ զորքերով մնաց փակված բերդի մեջ։ Աբաս-Միրզան 48 օր պաշարված դրության մեջ պահեց բերդը։ Միևնույն ժամանակ Ֆաթալի-շահի փեսա Ամիր-խան սարդարը և Աբաս-Միրզայի երեք որդի Մահմուդ-Միրզան, զորքերի ահագին բազմությամբ, անցան Գանձակի գավառը, տիրեցին Գանձակի բերդին, և այնտեղից առաջացան մինչև Շամքոր, պատրաստվում էին գնալու, որ Թիֆլիսը տիրեն։ Երկրի քրիստոնյա ազգաբնակությունը գտնվում էր սարսափի և մահվան տագնապի մեջ։

Մեր պատմության հետագա գլուխներում ցույց կտանք, թե որպես հայազգի իշխան գեներալ Մադաթովի փառավոր հաղթություններով պարսիկները ջարդվեցան, և կրկին փախան դեպի Պարսկաստան,— իսկ այժմ կասենք այնքանը միայն, որ վերաբերում է Սարգիս միտրոպոլիտին։

Հայերին սպասում էր ընդհանուր կոտորած։ Սարսափած ժողովուրդը, ամեն ինչ թողած ցրիվ էր եկել, թաքնվել էր լեռների

և անտառների մեջ։ Աբաս-Միրզան, Պարսկաստանի այդ հայրենասեր թագաժառանգը, Ղարաբաղի ռուսաց զորքերով գրավելը վերաբերում էր ոչ այնքան ռուս գինվորների հաղթական սվիններին, որքան հայերի գործակցությանը հօգուտ ռուսների (և իրավ, ռուսները Ղարաբաղը տիրելու համար ամենևին արյուն չէին թափել)։ Այդ էր պատճառը, որ նա կամենում էր պատժել հայերին, որոնք, նրա կարծիքով, դավաճանել էին Պարսկաստանի դարևոր հպատակության դեմ։

Աբաս-Միրզայի բարկությունն ամոքելու համար և հայ ժողովրդին նրա վրեժխնդրությունից ազատելու համար ծերունի Սարգիս միտրոպոլիտը վեր առեց իր հետ Ջրաբերդի իշխող Մելիք-Վանի Աթաբեկյանին և Գյուլիստանի իշխող Մելիք-Հովսեփ II[1], Մելիք-Բեգլարյանին, և երեքը միասին գնացին Աբաս-Միրզայի մոտ։ Պարսից թագաժառանգն ընդունեց նրանց Խան-քենդի գյուղում, որը գտնվում է Շուշի բերդից մի քանի վերստ հեռավորության վրա։

Ծերունի միտրոպոլիտը իր արտասուքով և Աթարբեկյան Մելիք-Վանին իր պերճախոսությամբ կարողացան ոչ միայն ամոքել թագաժառանգի բարկությունը, այլ արժանացան նրա առանձին հարգանքին։ Աբաս-Միրզան շնորհեց նրանց փառավոր «խալաթներ», և հանգստացնելով ճանապարհ դրեց, խոստանալով, թե հայոց ժողովրդին ոչինչ վնաս չի հասցնի, եթե հայերը հավատարիմ կմնան Պարսկաստանին և կդադարեն ռուսներին օգնելուց։

Իհարկե, հայերը չէին կարող չհամակրել ռուսներին, և որպես հետո կտեսնենք, նրանք եղան, որ ամեն հնարներով նպաստեցին իշխան Մադաթովի հաղթություններին Աբաս-Միրզայի դեմ և Ղարաբաղը բոլորովին մաքրեցին պարսից զորքերից։ Այսուամենայնիվ, Սարգիս միտրոպոլիտի և նրա ընկեր երկու մելիքների տեսությունը Աբաս-Միրզայի հետ բավական թանկ նստեց նրանց համար։

Երբ պարսից զորքերը հեռացան Ղարաբաղից, իշխան Մադաթովը նրանց երեքին էլ կալանավորել տվեց։ Ռուսաց անհաշտ թշնամու հետ տեսություն անելը համարվեցավ նրանց համար մի տեսակ դավաճանություն։ Սարգիս միտրոպոլիտին ուղարկեցին Թիֆլիս, այնտեղ բանտարկվեցավ։ Իսկ Աթաբեկյան Մելիք-Վանին և Մելիք-Բեգլարյան Մելիք-Հովսեփին աքսորեցին Բաքու, որ այնտեղից տանեն Սիբիր։

[1] Մելիք-Հովսեփ II հանգուցյալ Մելիք-Ֆրեյդունի երեց որդին էր։

Ութն ամիս թե մելիքները և թե Սարգիս միտրոպոլիտը բանտարկված մնացին։ Վերջը նրանց անմեղությունը հայտնվելով ազատվեցան։

Սարգիս միտրոպոլիտը ազատվեցավ Ներսեսի (վերջը կաթողիկոս) աշխատությամբ։ Բայց այն տանջանքները, որ նա կրեց իր բանտարկության ժամանակ, սաստիկ մաշեցին նրա ծերացած կազմվածքը։ Նա բոլորովին հիվանդ վերադարձավ Թիֆլիսից և նույն հիվանդությունով 1828 թվին վախճանվեցավ։

Սարգսի մահից երկու տարի հետո (1830) Ղարաբաղի մելիքները խնդիրքով դիմեցին էջմիածնի Եփրեմ կաթողիկոսին, որ հանգուցյալի եղբորորդի Բաղդասար եպիսկոպոսը նրա փոխարեն միտրոպոլիտ նշանակվի։ Բաղդասարը կանչվեցավ էջմիածին և նույն տարվա մեջ ստացավ միտրոպոլիտության աստիճան։

Պետք է մի առանձին բախտ համարել, որ այն ժամանակներում, երբ ռուսները տիրեցին Ղարաբաղին և Երևանյան նահանգին, էջմիածնում գտնվում էր Ներսեսի նման մի եկեղեցական, իսկ Գանձասարի վանքում՝ Բաղդասար միտրոպոլիտը։ Այդ երկուսը իրանց գործունեությամբ բավական նման էին միմյանց, այն զանազանությամբ միայն, որ Ներսեսը ուներ քաղաքական իդեալներ, իսկ Բաղդասարը՝ եկեղեցական և վանքային բարեկարգության եռանդ։

Եթե չլիներ Բաղդասար միտրոպոլիտը, այսօր Գանձասարի վանքը և Ղարաբաղի մյուս վանքերը չէին ունենա մի քանի հարյուր հազար դեսյատին տարածությամբ վանքային կալվածներ։

Ղարաբաղի մելիքների և Սարգիս միտրոպոլիտի Վրաստանում գաղթած ժամանակ, Ղարաբաղի վանքապատկան կալվածներն անտեր մնալով, ընկել էին զանազան թուրք բեկերի ձեռքը։ Բաղդասար միտրոպոլիտի մեծ ջանքերին ենք պարտական, որ կարողացավ ազատել և կրկին վանքերի անունով հաստատել, եթե ոչ կորուսած կալվածների ամբողջը, այլ գոնե նրանց մեծ մասը։

Պատմության դեմ չմեղանչելու համար պետք է խոստովանել և այն, որ Բաղդասար միտրոպոլիտը, որպես առհասարակ մեր բոլոր բարձրաստիճան եկեղեցականները, ուներ և իր թույլ կողմերը։ Այն է, որ իր աղքատ ազգականների—Հասան-Ջալալյանների վիճակը ապահովելու համար, նրանց օգտին վանքային կալվածներից փոքրիկ բաժիններ հանեց... Այդ բաժիններից իր մասը ստացավ և միտրոպոլիտի վեզիրը:

Բայց այդ բոլոր թուլությունները, համեմատելով այն մեծ

ծառայությունների հետ, որ նա կատարեց, վանքապատկան կալվածքները կորզելով ղանազան հափշտակիչների ձեռքից,— այդ թուլությունները, կրկնում ենք, պետք է ներելի համարել...»

Ղարաբաղի վանքապատկան կալվածքների վերաբերությամբ ավելի անազնիվ կերպով վարվեցավ Իսրայել կաթողիկոսը, Սարգիս կաթողիկոսի (հետո միտրոպոլիտի) ժամանակակիցը։ Զմոռանանք, որ այդ Իսրայել կաթողիկոսը, Իբրահիմ-խանի սիրելին, հայոց մելիքների մատնիչը, Գանձասարի վանքի Հասան-Ջալալյան կոթողիկոսների տոհմից չէր, այլ Երիցմանկաց վանքի ինքնիշխան և հակաթոռ կաթողիկոսներից մեկն էր։ Թուցե ընթերցողը հիշում է, որ Ղարաբաղի մելիքների և Սարգիս կաթողիկոսի Վրաստան գաղթած ժամանակ, Իբրահիմ-խանի պաշտպանությամբ, այդ Իսրայելն էր վարում Աղվանից կաթողիկոսության իշխանությունը։ Այդ դավաճանը վախճանվեցավ իր ազգականներից մեկի տանը, որի մռայլոտ անունը հիշելու ցանկություն չունենք։ Նույն տան մեջ կաթողիկոսը հավաքած ուներ Ղարաբաղի մի քանի հարուստ վանքերի արծաթեղեն անոթները, սրբությունները և թանկագին զգեստները։ Կաթողիկոսի վախճանվելուց հետո այդ բոլորը մնացին որպես սեփականություն նրա ազգականի։ Դա մի մեծ կորուստ չէր լինի, եթե նույն տան մեջ չմնային և զանազան վանքերի կալվածագրերը։

Եթե Բաղդասար միտրոպոլիտին չհաջողվեցավ ձեռք բերել Ղարաբաղի վանքապատկան բոլոր կալվածքները, դրա գլխավոր պատճառներից մեկն էլ այն էր, որ կալվածագրերը մնացել էին նույն մարդու մոտ, որի տանը վախճանվեցավ Իսրայել կաթողիկոսը։ Այդ պարոնը զանազան զարտուղի և մթին ճանապարհներով կամ ինքը տեր եղավ նույն կալվածքներին և կամ թույլ տվեց, որ թուրքերը տիրեն, ծածուկ նրանցից փողեր ստանալով և վանքային կալվածագրերը ոչնչացնելով, որ իր գողությունը չհայտնվի։

Բաղդասար միտրոպոլիտը սկզբում ուշադրություն դարձրեց Խաչենի գավառում գտնվող և Գանձասարի վանքին պատկանող կալվածները թափել հափշտակողների ձեռքից։ Այդ կալվածները այնքան լայնատարած էին, որ նրանց վրա զետեղված էին 60-ի չափ վանքապատկան գյուղեր, իրանց հարուստ անտառներով, արգավանդ վարելահողերով և արոտատեղիներով։ Բայց նա կարողացավ միայն 30,000 դեսյատինի չափ կրկին սեփականացնել վանքին, իսկ մնացյալ մեծ մասը մնաց վիճելի։

Բաղդասար միտրոպոլիտի աշխատությունների նպատակը վանքապատկան կալվածների վերաբերությամբ այն չէր, որ նա դրանցով ապահովեցներ վանականների և վանքերի գոյությունը, այլ գլխավորապես այն էր, որ նրանք լինեին եկամուտների մըշտական և հաստատուն աղբյուր Ղարաբաղի զանազան տեղերում դպրոցներ հիմնելու համար։

Ինքը, Բաղդասար միտրոպոլիտը, թեև անուս, և որպես ղարաբաղցի, կոշտ-կոպիտ մարդ էր, բայց, որպես ղարաբաղցի, ուներ և բնական խելք, տոկունություն և հեռատեսություն[1]։ Նա ուսում չուներ, բայց սաստիկ ուսումնասեր էր։ Սկզբում հիմնեց նա Գանձասարի վանքում մի դպրոց և Նուխիի կողմերից հրավիրեց ճարտասան և լավ հայկաբան Հովսեփ վարդապետին[2], որպես վարժապետ և նույն դպրոցի կառավարիչ։

1836 թվին Շուշի բերդում հաստատվեցավ վիճակային հոգևոր կառավարության կոնսիստորիա։ Բաղդասար միտրոպոլիտը հրավիրվեցավ էջմիածին, և այնտեղ հավատարմության երդում տալով, կարպեցի Հովհաննես կաթողիկոսից նշանակվեցավ Ղարաբաղի թեմական առաջնորդ (1837)։ Շատ հասկանալի է, որ դրանով Բաղդասարի իրավունքները սահմանափակվեցան։ Մինչև այն օր նա համարվում էր Աղվանից միտրոպոլիտ և ազատ էր իր հոգևոր իշխանության մեջ, բայց կոնսիստորիայի հաստատվելուց հետո նա բոլորովին ենթարկվեցավ էջմիածնի իրավասությանը, որը ոչ սակավ խոչընդոտներ դրեց միտրոպոլիտի ազատ գործունեությանը...

Կոնսիստորիայի հաստատվելուց հետո նա հարկադրվեցավ թողնել Գանձասարի վանքը, Աղվանից բազմադարյան կաթողիկոսարանը, և տեղափոխվեցավ Շուշի բերդը։ Այստեղ սպասում էր միտրոպոլիտի գործունեությանը ընդարձակ ասպարեզ, միևնույն ժամանակ ծանր աշխատանք։

Միտրոպոլիտի առաջին ջանքն եղավ դուրս կորզել Մեհտիխանի Խուրշիտ անունով դստեր և ուրիշ մի քանի թուրք բեկերի

---

[1] Բաղդասար միտրոպոլիտի զվարճախոսությունները, նրա կյանքից ստեղծված անեկդոտները, Ղարաբաղի հայ հասարակության մեջ նույն ժողովրդականությունն են ստացել, որպես Մոլլա-Նասրատտինի առակները։

[2] Այդ Հովսեփ վարդապետը, որը բազմաթիվ հասցրած աշակերտներ և մինչև այսօր լավ անուն է թողել Ղարաբաղում, որպես հետո իմացվեցավ, նա իսկապես եպիսկոպոս է եղել, բայց իր բարձր աստիճանը թաքցնելով, պարպվում էր մանկավարժությամբ իբրև մի հասարակ վարդապետ։

ձեռքից Խոթա վանքի[1] լայնատարած կալվածները, որոնց, միև-նույն հանգամանքների պատճառով, որպես Ղարաբաղի մյուս վանքերի կալվածները, անիրավությամբ տիրել էին։

Այս անգամ միտրոպոլիտի հակառակորդները բավական զորավոր և ազդեցության տեր անձինք էին։ Բայց տոկուն և ամեն դժվարություններից չհուսահատվող Բաղդասարը, մի քանի տարի շարունակ դատ վարեց խանի դստեր և մյուս բեկերի հետ, մինչև կարողացավ վերջապես նրանցից հետ խլել հիշյալ վանքի կալվածները, որոնք մոտ 150,000 դեսյատինի չափ ընդարձակությամբ տարածվում են Թարթար գետի հյուսիսային և հարավային ափերի երկարությամբ և ընդհանուր անունով կոչվում են՝ Դողխու-Քալբաջար, Լևա և Մարջումակ։ Իր դատավորության ծախքերի համար միտրոպոլիտը գործ դրեց մինչև 30,000 ռուբլի, որը այն ժամանակ մեծ գումար էր։

Խոթա վանքի կալվածները, այդ միլիոնների արժեք ունեցող ազգային մեծ հարստությունը, կարելի է մի ամբողջ գավառ համարել։ Նրանց մեջ բացի հրաշալի, կուսական անտառներից, բացի ընդարձակ արոտատեղիներից և լեռներից, բացի լայնատարած և արգավանդ վարելահողերից, զետեղված էին թվով մինչև 100 գյուղեր։ Նրանց լեռների բարձրավանդակների վրա և հովիտներում թափառում էին թվով մինչև 20 զանազան խաշնարած ցեղեր, զանազան անուններով։ Դրանք Խոթա վանքին (այսինքն՝ Ղարաբաղի հոգևոր իշխանությանը) չնչին հարկ էին վճարում, եթե ասեմ որքան,— շատ ծիծաղելի կլիներ...

Բաղդասար միտրոպոլիտը արդարև թողեց ազգի համար մի մեծ հարստություն, բայց նրա անպիտան հաջորդները հետզհետե վատնեցին այդ հարստությունը[2]։

---

1 Խոթա կամ Խութա վանքը գտնվում է վերին Խաչենի մեջ, Թարթար գետի ափի մոտ։ 1214 թվին իր սեփական ծախքով այդ վանքը հիմնեց իշխանուհի Արզու խաթունը Թադեոս առաքյալի անունով։ Չնայելով, որ մի ամենահարուստ լորդի չափ կալվածքներ ունի այդ վանքը, բայց, այսօր մեր ծույլ եկեղեցականների անհոգությունից, նա գտնվում է բոլորովին ամայի դրության մեջ և ծառայում է խաշնարած թուրքերի համար որպես գոմանոց։

2 Մեր 1881 թվի Սյունյաց աշխարհի ճանապարհորդության մեջ, որը դեռևս է լույս ընծայված չէ, մի օր կկարդան Ղարաբաղի վանքապատկան կալվածների թշվառ դրության նկարագիրները ընդհանրապես, իսկ Խոթա վանքի կալվածների բարբարոսաբար վատնումը մասնավորապես։ Իսկ առայժմ այսքան կասենք, որ Բաղդասար միտրոպոլիտի վախճանվելուց հետո, էջմիածնի բարձր հոգևոր իշխանության անհոգությունից, և Ղարաբաղի թեմական առաջնորդների մի քանիսի կաշառակերությունից, Խոթա վանքի կալվածների մի մասը դարձյալ անցավ Մեհ-

Բաղդասար միտրոպոլիտի օգտավետ աշխատությունների թվում կարելի է հիշել նրա 1843 թվին կառուցած հոյակապ առաջնորդարանը, որը Շուշի բերդի փառավոր տներից մեկը կարելի է համարել։ Նույն առաջնորդարանին կից գնեց նա ընդարձակ գետին, որի վրա դիտավորություն ուներ իր արդեն բաց արած հոգևոր դպրոցի համար առանձին շենք կառուցանել, բայց վաղահաս մահը միտրոպոլիտի այդ ձեռնարկությունը թողեց անկատար[1]։

Բաղդասար միտրոպոլիտի աշխատություններից մեկն էլ այն եղավ, որ թուրքերի և ռուսների ձեռքից ազատեց Ամարասա սուրբ Գրիգորիսի վանքը։ Այդ վանքը բավական ժամանակ անտեր մնալով, թուրքերը գրավել էին, և տալով նրան իրանց հասկանալի մի անուն, Աղ-օղլան[2], համարում էին իրանց սրբավայր։ Վանքի շրջակա հողերը և Ամարասա ձորի ամբողջ կալվածները թուրքերի տիրապետության ներքո էին։ Իսկ վանքի ընդարձակ սենյակները և ամբողջ շինությունը, բացի տաճարից, ռուսները ծառայեցնում էին որպես մաքսատուն։

Միտրոպոլիտի աշխատությամբ 1848 թվին, ռուսաց կառավարության հրամանով մաքսատունը տեղափոխվեցավ Երասխի ափի մոտ, Ջաբրայելում, իսկ վանքը իր կալվածներով դարձավ սեփականություն հայոց հոգևոր կառավարության։

Բացի հոգևոր դպրոցից, Բաղդասար միտրոպոլիտը հիմնեց Շուշի բերդում տպարան, որի մամուլները և տառերը գնեց նա Ղարաբաղում այն ժամանակ գտնված գերմանացի միսիոներներից, երբ նրանց ռուսաց կառավարության հրամանով հեռացրին Ղարաբաղից։ Նա բավական նշանավոր գումար ուղարկեց Վենե-

---

տի-խանի Խուրշիտ անունով դստեր ձեռքը, մի մասին տիրեց գեներալ Հասանբեկ Աղալարովը, մի մասը անցավ ուրիշ բեգերի ձեռքը, մի մասը ևս անտեր, անխնամ մնալով, տիրեցին կամ մասնավոր անձինք և կամ արքունի գանձարանը։ Այժմ զուտ անվիճելի կալվածքը Խոթա վանքի տիրապետության ներքո մնացել է մոտ 100,000 դեսյատին, իսկ մնացյալ կեսը վիճելի է, և այդ մի քանի տարի է, որ հոգ[ևոր] կառավարությունը սկսել է նորից դատ վարել, գուցե հետ դարձնե իր կորուստը։

[1] 1872 թվին Սարգիս արքեպիսկոպոս Հասան Ջալալյանը ավարտեց դըպրոցի շենքը և առաջնորդարանի շինությունը ավելի ընդարձակվեց։ Այն օրից այդ տան մեջ զետեղվեցան Շուշիի թեմական դպրոցը, առաջնորդարանը և կոնսիստորիան։

[2] Աղ-օղլան նշանակում է սպիտակ տղա։ Ամարասա վանքում ամփոփված էր Լուսավորչի թոռ Գրիգորիսի մարմինը, որը իր մանկության հասակում կաթողիկոս ձեռնադրվեցավ։ Երևի, հենց դրա համար էլ այլազգիք նրան կոչեցին «սպիտակ տղա»։

տիկի Մխիթարյանների վանքը և բերել տվեց մի-մի օրինակ նրանց բոլոր հրատարակություններից, և կազմեց հոգևոր դպրոցին կից մի հարուստ գրադարան, այնտեղ հավաքելով և Ղարաբաղի վանքերում գտնված նշանավոր գրչագիր մատյանները։ Այդ գրքերը հետզհետե տպագրելու դիտավորություն ուներ իր սեփական տպարանում[1]։

Գուցե այդ գործունյա և եռանդոտ մարդն ավելի մեծ օգուտներ կհասցներ Ղարաբաղին, եթե մի քանի տարի ավելի ևս ապրելու լիներ։ Մաշող հոգացավը, որ ստացել էր նա վերջին ժամանակներում, սկսեց սաստկանալ և 1854 թ. հունիսի 27-ին նրան գերեզման տարավ 79-ամյա հասակում։ Նրա մարմինը թաղվեցավ Գանձասարի վանքի գավթի մեջ, իր երկու հորեղբայրների՝ Հովհաննես կաթողիկոսի և Սարգիս միտրոպոլիտի շիրիմների մոտ[2]։ Նրա մահից հետո Աղվանից միտրոպոլիտությունը բոլորովին վերջացավ։

Բաղդասար միտրոպոլիտից հետո, Հասան-Ջալալյանների տոհմից միայն Սարգիս արքեպիսկոպոսը բավական ժամանակ վարեց Ղարաբաղի թեմական առաջնորդի պաշտոնը. նրա մահից հետո Հասան-Ջալալյաններից այլևս նշանավոր եկեղեցականներ չհայտնվեցան։

Խաչենի Հասան-Ջալալյան վերջին մելիքներից նշանավոր եղավ Բաղդասար միտրոպոլիտի եղբայր Մելիք-Ալլահվերդի II, որը վախճանվեցավ 1827 թվին և նրանից հետո այդ տոհմի մելիքությունը վերջացավ։ Նա թողեց չորս որդի՝ Երեմիա քահանա, Մովսես վարդապետ, Աբրահամ-բեկ և Հովսեփ-բեկ։

## XLIII

1813 թ. հոկտեմբերի 12-ին կայացավ Գյուլիստանի դաշնադրությունը Զեյվա բերդի[3] մոտ, որի զորությամբ պարսից պետությունը թողեց հօգուտ Ռուսաստանի, Ղարաբաղի, Շամախու, Գան-

[1] Այդ հարուստ գրադարանը այժմ համարյա բոլորովին կողոպտված է. բազմաթիվ գրչագիր մատյանները այս և այն անձանց ձեռքն են անցել. մենք գտանք այնտեղ մի գրչագիր Աղվանից պատմություն միայն, որի կես մասը կտրած էին։

[2] Գերեզմանը կրում է հետևյալ տապանագիրը.

«Այս է տապան միտրոպոլիտին՝ Բաղդասարայ մեծի Արհին, կայսերապատկ հովուապետին, տանս Աղուանից հայոց ազգին։ Յազգէ Ջալալ մեծ իշխանին, տեառն արցախական աշխարհին։ Թուին ՌՅԳ. 1854, յուլիս 9։

[3] Զեյվա բերդը Մելիք-Բեգլարյանների բերդն է։

ձակի, Շաքիի, Թալիշի, Բաքվի, Ղուբայի և Դերբենդի խանություններըː

Երևում էր, որ այդ դաշնադրությամբ պիտի վերջանային պարսից կռիվները ռուսաց հետ, և պիտի դադարեին պատերազմասեր Աբաս-Միրզայի անընդհատ հարձակումները ռուսաց նոր գրաված երկրների վրա։ Բայց հաշտությունը երկար չտևեց։ Այդ հաշտությունը Աբաս-Միրզայի կողմից ավելի ժամանակ վաստակելու համար էր, որ Պարսկաստանը կազդուրե իր ուժերը և նորոգված զորությամբ հետ խլե իր կորցրած գավառները։

Վերոհիշյալ խանությունները պահպանելու համար և դեռ չզսպված կովկասյան լեռնաբնակներին նվաճելու համար հարկավոր էր մի մարդ, որ ծանոթ լիներ տեղային պայմանների հետ։

Այդ ժամանակներում իր զարմանալի հաղթություններով արդեն մեծ փայլ և հռչակ էր ստացել հայազգի իշխան գեներալ Մադաթովը, մանավանդ այն կռիվների մեջ, որ Ռուսաստանը ունեցավ Թուրքերի հետ։ Այդ հերոսը համարվում էր ռուսաց քաջ և ընդունակ զորավարներից մեկը, և նրա արևելյան ազգերի սովորություններին և նրանց հետ պատերազմելու եղանակներին ծանոթ լինելը միշտ նպաստում էր նրա անվրեպ հաջողություններին։

Իշխանի այդ հատկություններն ի նկատի առնելով, գեներալ Երմոլովի առաջարկությամբ, երբ այդ վերջինը նշանակվեցավ Անդրկովկասի գլխավոր կառավարիչ, միևնույն ժամանակ, 1816 թվին, բարձրագույն հրամանով իշխան Մադաթովը նշանակվեցավ Անդրկովկասի առանձին զորաբաժնի հրամանատար։

Իսկ 1817 թ. նշանակվեցավ նա Ղարաբաղի, Շաքիի և Շիրվանի խանությունների զինվորական-նահանգային գլխավոր (военно-окружной начальник)։ Նրան հանձնված էր հսկել հիշյալ խանությունների կառավարության և բարեկարգության վրա։

Իշխան Մադաթովը դուրս էր եկել Ղարաբաղից տրեխներով, բայց վերադարձավ իր հայրենիքը գեներալ-լեյտենանտի աստիճանով, կուրծքը զարդարած բազմաթիվ շքանշաններով։ Բոլորը ինչ որ ուներ նա, ստացել էր տոկուն զինվորի և քաջ պատերազմողի աշխատությամբ։ Հայրենիքը ուրախությամբ ողջունեց նրան. բոլոր հայերի սրտերը լցված էին պարծանքով և հպարտությամբ։ Մելիքների ոգևորությանը չափ չկար. բոլորը հույս ունեին, որ իշխանի շնորհիվ կվայելեն իրանց վաղեմի իրավունքները։

Երկու տարի զբաղվեցավ իշխանը կովկասյան լեռնաբնակների հետ ամենադժվարին կռիվներով, և նա պսակեց իր հաղթու-

թյունները ամբողջ հյուսիսային Դաղստանը նվաճելով և տեղային կիսավայրենի, ավազակաբարո ցեղերը հանգստացնելով։

Վերադառնալով Ղարաբաղ, նա սկսեց զբաղվել իր հսկողության հանձնված երեք խանությունների բարեկարգություններով. հիմնեց նրանց մեջ գավառական դատարաններ կամ դիվաններ, և ինքը շատ անգամ ներկա էր գտնվում գործերի քննությանը։

Իսկ Ղարաբաղի կառավարիչը դարձյալ մնացել էր Իբրահիմ-խանի հաջորդ Մեհտի-խանը, որը այդ ժամանակ ռուսներից գեներալի աստիճան էր ստացել և պահպանում էր խաների, թեև սահմանափակված, բայց վաղեմի իրավունքները։ Սահմանափակված ասում ենք նրա համար միայն, որ նրան արգելված էր պատժել, մահվան դատապարտել, իսկ մյուս արտոնությունների վերաբերությամբ, կարելի է ասել, որ նա այժմ ավելի իրավունքներ էր բանեցնում, քան թե ուներ պարսիկ տիրապետության ժամանակներում։ Նա ինքնակամ կերպով հողեր, գյուղեր, կալվածներ էր ընծայում, ում որ ցանկանում էր (իհարկե, ոչ իր սեփականությունից) կամ խլում էր մեկից և մյուսին էր տալիս, մի խոսքով, վարվում էր երկրի հողի և հպատակների հետ իբրև նրանց լիակատար տերը։

Մեհտի-խանի այդ կամայականությունը առաջ եկավ Ղարաբաղի նոր տիրապետող ռուսների սխալ հասկացողությունից առհասարակ խաների նշանակության մասին և նրանց իրավունքների ո՛ր աստիճան տարածվելու մասին։ Ռուսները, որոնք իրանց երկրում տեսել էին ճորտություն, տեսել էին կալվածատերերի անսահման իրավունքները իրանց հողերի և ճորտերի վերաբերությամբ, որոնց մինչև անգամ որսորդական շների հետ էին փոխում,— հասկանալի է, որ ռուսներին չէր կարող օտարոտի երևնալ խանի վարմունքը, մանավանդ, որ արդեն համարում էին նրան իբրև Ղարաբաղի տիրապետող և ժառանգական իշխան (владетельный князь)։

Այդ ժամանակ ռուսները շատ փոքր ծանոթություններ ունեին Պարսկաստանի կառավարչական կարգերի, օրենքների և սովորությունների մասին։ Խանը, եթե ուներ մի գյուղ կամ այլ կալվածք, իբրև հասարակ սեփականատեր, կարող էր վաճառել։ Բայց նա երկրի տերը և թագավորը չէր, որ իրավունք ունենար հասարակաց հողերը բաշխելու, ընծայելու ում որ ցանկանար, կամ հետ խլելու ումից որ ցանկանար։ Կրկնում ենք, որ խանի այդ կամայականությունը առաջ եկավ ռուսաց այն ժամանակվա պաշտոնակալների սխալ հասկացողությունից խաների նշանակության մասին, և

այդ սխալից աշխատեցին օգուտ քաղել խաները։ Այդ կտեսնենք հետո։

Մեր պատմության նպատակից դուրս է և շատ երկար կլիներ բացատրել, թե այն ժամանակ կալվածական կամ հողատիրական (մուլքադարության) որպիսի օրենքներ կամ սովորություններ էին տիրում Պարսկաստանում ընդհանրապես և Ղարաբաղում, իբրև պարսկական մի գավառ, մասնավորապես։ Բայց այսքանը կասենք, որ Ղարաբաղում, ինչպես ամբողջ Պարսկաստանում, հողը համայնքի (էլլիգի) սեփականություն էր, ոչ այն կարգով, որ համայնքը պարտավոր էր յուրաքանչյուր ընտանիքը կազմող անդամների թվի համեմատ հողը բաժանել գյուղացիների մեջ, այլ յուրաքանչյուր գյուղացի իր ձեռքում գտնված հողի տերն էր. նա իրավունք ուներ վաճառելու, գրավ դնելու կամ իր դրացուց ավելին գնելու։ Իսկ միևնույն ժամանակ, յուրաքանչյուր գյուղ ուներ իր գյուղատերը. այդ գյուղատերը կարող էր լինել մի որևիցե մելիք, խան կամ այս և այն վանքը։ Գյուղատերը վայելում էր այն իրավունքը միայն, որ ստանում էր գյուղացիների վարուցանքի կամ առհասարակ մշակության բերքի մի որոշ մասը (չոփբաշի)։ Բայց նա իրավունք չուներ մեկ գյուղացու ձեռքում գտնված հողը խլել և մյուսին տալ և մինչև անգամ, եթե ինքը, գյուղատերը, ցանկանալու լիներ իրան պատկանող գյուղի հողերի վրա վարուցանք անել, գյուղացիները նրան թույլ չէին տա։ Դրա համար գյուղատերը ուներ իր ազատ հողերը, որոնց վրա նա վարուցանք էր անում։

Ամբողջ Ղարաբաղի գյուղատէրութիւնը[1] պատկանում էր կամ հայոց մելիքներին կամ հայոց վանքերին։ Խաները սկզբում ոչ գյուղեր և ոչ մասնավոր կալվածներ չունեին։

Մի քանի փաստեր բավական են այդ իրողությունը ապացուցանելու համար։ Փանահ-խանը, որպես մեր ընթերցողներին հայտնի է, առաջինը եղավ, որ հետզհետե տկարացնելով մելիքների զորությունը, Ղարաբաղի մահմեդական խանության հիմքը դրեց։ Նա Ղարաբաղի ամբողջ գավառում մի տեղ չուներ, որի վրա բերդ հիմներ. Շուշի բերդի տեղը գնեց Վարանդայի իշխան Մելիք-Շահնազարից։ Նա ամբողջ Ղարաբաղում մի կտոր գետին չուներ, որ ծառայեցներ իր տոհմային գերեզմանատան համար, և այդ պատճառով Խաչենի Հասան-Ջալալյան իշխաններից գնեց Աղդամը

---

1 Գյուղատերություն ասելով պետք է հասկանանք մշակության բերքից մի որոշ մասը ստանալու իրավունքը։

(Ասկարանի մոտ), որ մինչև այսօր ծառայում է նրա ժառանգնե-րի համար իբրև տոհմային գերեզմանատուն։

Փանահ-խանի որդի Իբրահիմ-խանը, որը ավելի զորավոր եղավ, քան թե իր հայրը, նույնպես զուրկ էր կալվածներից. Ղարաբաղում հողեր չուներ նա, թեև համարվում էր այդ գավառի իշխող խանը։ Իր ժառանգների և եղբայրների ապրուստը ապահովացնելու համար, Ղարաբաղի սահմաններից դուրս, Բարդայի մահալում, գնեց նա կալվածներ Նուխվա բեկերից։ Այդ բոլորից երևում է, որ խաները ոչ թե երկրի տերն էին, այլ երկրի կառավարիչներն էին, նշանակված պարսից պետությունից։

Երկրի արմատական տերը հայոց հինգ մելիքական տների ներկայացուցիչներն էին, որոնք դարերով, սերունդից սերունդ, ժառանգաբար տիրում էին Ղարաբաղին։

Երբ հայոց մելիքները իրանց հպատակների հետ, որպես ցույց տվեցինք նախընթաց գլուխներում, գաղթեցին Վրաստանի, Շիրվանի և Գանձակի գավառները, այդ ժամանակ նրանց հողերն ու գյուղերը անտեր ու դատարկ մնալով, իրավ է, Իբրահիմ-խանը տիրապետեց, և գաղթածների տեղը լցրեց մահմեդական բնակիչներով։ Բայց երբ, տարիներից հետո, մելիքները իրանց ժողովրդի հետ վերադարձան գաղթականությունից, այդ ժամանակ հեռացրին մահմեդականներին և կրկին տեր եղան իրանց վաղեմի գյուղերին և հողերին։

Բայց, որովհետև գաղթականների մի մասը մնաց օտար երկրներում, և մելիքներից մի քանիսի (որպես էին Ջրաբերդի Մելիք-Իսրայելյանները և Տիզակի Մելիք-Ավանյանները) վերջին ժառանգները բոլորովին ոչնչացան, այդ պատճառով, նրանց հողերը անտեր մնալով, Իբրահիմ-խանը տիրեց, այսինքն, սկսեց ինքն ստանալ մշակության բերքի այն մասը, որ առաջ ստանում էին այն հողերի նախկին տիրապետողները։ Բայց իսկապես Իբրահիմ-խանը միայն վայելող էր, և ոչ թե սեփականատեր իր ընդարձակ նշանակությամբ։ Նա բացի բերքի մի որոշ մասը ստանալուց, ուրիշ իրավունքներ չուներ ոչ հողի և ոչ հողը մշակող գյուղացիների վրա։ Գյուղացիները ազատ հպատակներ էին պետության, իսկ հողը սեփականություն էր գյուղական համայնքի նույն ձևով, որպես ցույց տվինք վերևում։

Իբրահիմ-խանի հաջորդ Մեհտի-խանի ժամանակ հանգամանքները փոխվեցան։ Այդ ժամանակ ռուսները թեև տիրել էին Ղարաբաղին, բայց կալվածական հարցը, և խաների իրավունքնե-

րի չափը դեռևս որոշված չէր։ Թողյալ այդ, ռուսները, որպես վերևում հիշեցինք, խիստ բարձր կարծիք ունեին խաների նշանակության մասին։ Այդ հանգամանքներից օգուտ քաղելով, Մեհտիխանը սկսեց ավելի իրավունքներ բանացնել, քան թե որ ուներ առաջ։

Թե խանը և թե նրա շրջապատողները շատ լավ հասկանում էին, որ իրանց իշխանությունն արդեն անցել էր,— հասկանում էին, թե որքան ժամանակավոր և անհաստատ էր իրանց դրությունը, և այդ պատճառով շտապեցին ժամանակից օգուտ քաղել։

Մեհտի-խանը սկսեց աջ ու ձախ իր մերձավորներին, բարեկամներին, ազգականներին ամբողջ գյուղեր, կալվածներ և հողեր պարգևել։ Նրա կամայականությանը ավելի վստահություն տվողը եղավ ինքը իշխան Մադաթովը, որը իբրև նահանգային-զինվորական գլխավոր, ռուսաց կառավարությունից նշանակված էր խանի գործողությունների վրա հսկելու և նոր գրաված երկրի մեջ կարգ պահպանելու համար։

Իշխան Մադաթովի ծագումը մենք մասնավորապես ցույց տվինք մեր պատմության XXXI գլխի մի ծանոթության մեջ։ Նրա հայրը, Մեհրաբյանց Գյուլբին, հասարակ գյուղացի էր, բնակվում էր Ջանախչի (Ավետարանոց) բերդում, և մի ստոր պաշտոն էր կատարում Վարանդայի տիրապետող Մելիք-Շահնազարյանների տանը։ Նրա մոր եղբայր Պետրոս յուզբաշի Մադաթյանը Մելիք-Շահնազարյան Մելիք-Ջումշուդի տան նազիրն (տնտեսն) էր։ Իշխանը կրեց իր մոր տոհմի ազգանունը, որը փոքր-ինչ պատվավոր էր, և իր Ռոստոմ անունը փոխելով, կոչվեցավ Վալերիան Գրիգորովիչ Մադաթով։

Որպես իր իշխանական տիտղոսը ստացավ նա Ս. Պետերբուրգում Մելիք-Շահնազարյան Մելիք-Ջումշուդի շնորհած վկայականով (տե՛ս գլ. XXXVI), այժմ իր բարձր փառքով իր հայրենիքը, Ղարաբաղ, վերադառնալուց հետո, ցանկացավ նույն Մելիք-Շահնազարյանների, իր բարերարների, հայրենական կալվածքների վրա ինքը կալվածատեր լինել։ Մեհտի-խանը ընծայեց նրան Վարանդայի գավառում 15 գյուղեր իրանց ընդարձակ հողերով, սահմաններով և բնակիչներով։ Այդ գյուղերը Մելիք-Շահնազարյանների դարևոր կալվածներն էին։ Ամբողջ Վարանդան, որպես ընթերցողին հայտնի է, ամենահին ժամանակներից Մելիք-Շահնազարյանների տիրապետության ներքո էր գտնվում։

Հիշյալ 15 գյուղերի թվում գտնվում էր և Ջանախչի (Ավետա-

բանոց) բերդը, որի մեջ գետեղված էին Մելիք-Շահնազարյանների ամրոցները. այնտեղ էին՝ Մելիք-Հուսեին I, Մելիք-Բաղիի և Մելիք Շահնազար II պալատները։ Իշխան Մադաթովը այդ վերջինի պալատը քանդել տվեց և նրա տեղում իր համար մի նոր պալատ հիմնեց։ Երբ նրանից հարցրին, ինչո՞ւ եք քանդել տալիս, նա ծիծաղելով պատասխանեց. «Երբ Մելիք-Շահնազարը այդ պալատը շինել էր տալիս, ես դեռ մանուկ էի. նա ինձ շատ քարեր է կրել տվել այդ պալատի շինվածքի համար. մինչև այսօր էլ այն ցավը զգում եմ մեջքիս վրա...»։

Մեհտի-խանի պարգևագրի բովանդակությունը, որով հիշյալ 15 գյուղերը ընծայվեցան իշխան Մադաթովին, ինքնըստինքյան ցույց է տալիս այդ պարգևագրի ինչ բնավորությամբ հեղինակված լինելը։ Խանը իր պարգևագրի մեջ հայտնում է, որովհետև իշխան Մադաթովի նախնիքը վաղեմի ժամանակներից Ղարաբաղում տիրապետում էին հիշյալ 15 գյուղերին իրանց ընդարձակ սահմաններով, իսկ իշխանի բացակայության ժամանակ այդ կալվածքները խլվեցան (ո՞վքեր խլեցին), ուստի ինքը՝ խանը, այդ գյուղերը կրկին վերադարձնում է իշխանին, որպես իր նախնիքների օրինավոր ժառանգին և այլն։

Իսկ ովքե՞ր էին նրա նախնիքը,— հայտնի է։ Ունե՞ն արդյոք նրանք կալվածներ,— այն ևս հայտնի է...

Թե ո՛ր աստիճան իշխան Մադաթովի մասը գործել էր այդ պարգևագրի խմբագրության մեջ, հայտնի է նրանից, որ իշխանը ստացավ այդ գյուղերն իրանց բնակիչների հետ ճորտության իրավունքներով։ Ճորտությունը թե պարսկական և թե տաճկական Հայաստանում երբեք գոյություն չէ ունեցել։

Իշխանը թեև ծնված էր Ղարաբաղում, բայց իր կրթությունը ստացած լինելով ռուսաց մայրաքաղաքների բարձր ազնվական շրջաններում, նույն ժամանակվա արիստոկրատիայի ոգվով էլ զարգացած էր։ Ռուսաստանում այն ժամանակ ճորտություն կար. իսկ ճորտությունը նրա համար մի անհրաժեշտություն էր. նույնը ցանկացավ մտցնել իրան ընծայված գյուղերի մեջ։

Հասկանալի է, որ մի այսպիսի օտարոտի, միևնույն ժամանակ անմարդասեր նորաձևությունը պիտի գրգռեր նրա դեմ գյուղացիների դժգոհությունը մի կողմից, իսկ Մելիք-Շահնազարյանների ժառանգների բողոքը մյուս կողմից, որովհետև հիշյալ կալվածները նրանց տոհմին էին պատկանում։

Բայց ամենավնասակարն այն էր, որ իշխան Մադաթովի վարմունքը թուլացրեց Ղարաբաղի բոլոր տիրապետող մելիքների ժառանգական իրավունքները և դրա հակառակ բարձրացրեց խանի նշանակությունը։

Երբ որ նա խանի պարգևագրով ընծա ստացավ 15 գյուղեր, շատ հասկանալի է, որ այդ պարգևագիրը վավերական դարձնելու համար, ինքը, իբրև տեղային նահանգային-զինվորական գլխավոր, որ կարգված էր խանի գործողությունների վրա հսկելու համար, ոչ միայն ստիպված էր ճանաչելու խանի մեջ բախշելու և ընծայելու իրավունքը, այլ պիտի աշխատեր այդ իրավունքը ճանաչել տալ և ռուսաց կառավարությանը, որը դեռևս տեղային գործերի հետ լավ ծանոթ չէր։ Մյուս կողմից, նա պիտի աշխատեր ոչնչացնել մելիքների տիրապետական իրավունքները, երկրի տեր և իշխանը ցույց տալով միայն խանին։ Այսպես էլ վարվեց նա։

Դրա հետևանքն այն եղավ, որ Մեհտի-խանը սկսեց Ղարաբաղի բուն, արմատական կալվածատերերին (որպես էին հայոց մելիքները, վանքերը և հայ ժողովուրդը) զրկել և նրանց հողերը աջ և ձախ բաժանել իր ազգականներին և մերձավորներին։ Հայոց մելիքներից այդ ժամանակ նշանավոր մարդիկ չէին մնացել, որ կարողանային խանի զեղծումների մասին բողոքել, տեղեկություններ տալ, ուր որ հարկն էր։ Իսկ իշխան Մադաթովը, որպես ասում են, մատների միջից էր նայում խանի անկարգությունների վրա, և թույլ էր տալիս նրան բախշումներ անել, պարգևներ տալ, որպեսզի իր ստացածը ևս օրինական ձև ստանա, այսինքն՝ խանի մեջ հաստատվի ընծայելու, պարգևելու իրավունքը։

Ով որ ուշի-ուշով քննել է Ղարաբաղի խոշոր կամ մանր կալվածատերերի ձեռքում գտնված թղթերը, անպատճառ նկատած կլինի, որ այդ թղթերը, խիստ մասնավոր բացառությամբ, գրված են Մեհտի-խանի ժամանակներում և վավերացրած են նրա կնիքով։ Իսկ Մեհտի-խանի նախորդների՝ Փանահ-խանի և Իբրահիմ-խանի ժամանակներից, որոնք ավելի զորավոր մարդիկ էին, որոնք մի ժամանակ ամբողջ Ղարաբաղը իրանց իշխանության ներքո ունեին, այդ խաներից տված խիստ հազիվ են գտնվում այնպիսի թղթեր, որ դրանք որևիցե մեկին գյուղ կամ մի մեծ կալվածք ընծայած լինեին։

Այդ առատ բաշխումները կատարվեցան Մեհտի-խանի ժամանակ, երբ ռուսները տիրել էին Ղարաբաղին և երբ իշխան Մադաթովը կարգված էր տեղային նահանգային-զինվորական գլխա-

վոր և նրան հանձնված էր հսկել խանի գործողությունների վրա։
Թե ո՛րպիսի մարդիկ էին ստանում գյուղեր, ընդարձակ կալվածներ, մենք կբերենք մի քանի օրինակներ.
Ֆարաջուլլայ-բեկ, Ռահիմ-բեկ, Իբրահիմ-բեկ և Հասան-բեկ եղբայրները ստացան Մեհտի-խանից 8 գյուղեր։ Դրանց հայրը (Ուղուրլուն) Մեհտի-խանի հոր մոտ դահճի պաշտոն էր կատարում։
Մեհտի-խանի ղաթրչի (ջորեպան) Մուրադի որդիքը՝ Վալի-բեկ և Թայիր-բեկ նույնպես ստացան մի քանի գյուղեր։
Տեղ անունով հայաբնակ գյուղը, որը մի քանի հարյուր տուն բնակիչ ունի, պատկանում էր հայազգի Մելիք-Գեորգին։ Այդ գյուղից մի հասարակ հայ մշակ տարել էին Շուշի բերդի պարիսպների վրա բանեցնելու. որովհետև նրան շատ էին աշխատեցնում, նա բարկությունից մահմեդականություն ընդունեց և կոչվեցավ Ղասմ։ Այդ Ղասմի որդի Ռոստոմ-բեկը դարձավ Մեհտի-խանի տան նազիրը (տնտեսը), իսկ վերջինի որդի Ասատ-բեկը խանից պարգև ստացավ Տեղ գյուղը։
Պատմում են, երբ Մեհտի-խանի եղբորորդի Ջաֆար-Ղուլի-խանը նկատեց, որ նա Ղարաբաղի գյուղերը այսպես առատությամբ բաժան-բաժան է անում, ինքն ևս 12 գյուղերի ցուցակ կազմեց, և որովհետև իր հարաբերությունները իր հորեղբոր հետ լավ չէին, վերոհիշյալ նազիր Ռոստոմ-բեկի միջնորդությամբ ներկայացրեց Մեհտի-խանին, խնդրելով, որ իր անունով հաստատե ցույց տված գյուղերը։ Ռոստոմ-բեկը 12 գյուղերի պարգևագիրը գրել տվեց, և խանի կնիքով վավերացնելով, հանձնեց Ջաֆար-Ղուլի-խանին։ Իսկ այդ վերջինը, մի քանի օրից հետո փոշմանեց, ինչո՞ւ Հայոց Խնածակ գյուղը ևս չէ մտցրել այն ցուցակի մեջ, որովհետև այդ գյուղը Շուշի բերդին բավական մոտ էր և կարելի էր իր համար լավ ամառանոց լինել։ Նա կրկին դիմում է նազիր Ռոստոմ-բեկի միջնորդությանը։ Նազիրը, պարսից սովորության համեմատ, խանի պարգևագիր լուսանցքի (հաշիա) վրա ավելացնում է Խնածակ գյուղի անունը և ներկայացնում է կնքելու։ Բայց Մեհտի-խանը զարմանում է, նա բնավ չէ հիշում, որ մի այդպիսի պարգևագիր տված լիներ իր եղբորորդուն, որին սաստիկ ատում էր։ Նա փոխանակ կնքելու, թուղթը պատռում է և մի կողմ է ձգում։ Բանից դուրս է գալիս, որ սկզբում այդ թուղթը խանին վավերացնել էին տվել այն րոպեների մեջ, երբ նա բնական դրության մեջ չէր գտնվում...

Մեհտի-խանը սովորություն ուներ սաստիկ մեծ քանակությամբ ռոմ գործ ածելու և խիստ հազիվ էր պատահում, որ նա զգաստ դրության մեջ գտնվեր։

Եվ այսպես Մեհտի-խանի ազգականները, ջորեպանները, ախոռապանները և այլ մերձավորները, «բեկ» տիտղոս ստանալով, միևնույն ժամանակ ստացան գյուղեր, ընդարձակ հողեր և այլն։ Իսկ այդ բոլորը խլվեցան հայոց մելիքների սեփականությունից։

Բայց այդ անկարգությունները երկար շարունակվել չէին կարող։ Ամենքը գիտեին, որ ռուսաց կառավարությունը վերջ ի վերջո կհասկանար այդ զեղծումները և խանի կամայականությանը սահման կդներ։

Միևնույն ժամանակ գիտեին և այն, որ մշտական արբեցության մեջ գտնվող Մեհտի-խանը խիստ վատ հիշողություն ուներ. նա իր երեկվա ասած խոսքը, տված թուղթը կարող է այսօր մերժել։ Այդ էր պատճառը, որ խանի դրությունից օգուտ քաղողները աշխատեցին մի կերպով հեռացնել նրան Ղարաբաղից, որպեսզի նրանից ստացած թղթերը պահպանեն իրանց նշանակությունը։

Մեհտի-խանը բավական երկչոտ մարդ էր։ Ամեն կողմից սկըսեցին վախեցնել նրան, թե ռուսները դիտավորություն ունեն նրան սպանել տալու, Սիբիր ուղարկելու և այլն։ Ասում են, թե ինքը իշխան Մադաթովը նույնպես կողմնակի կերպով նպաստում էր խանի անվստահությանը։

1822 թվին Մեհտի-խանը փախավ Պարսկաստան[1]։ Բայց նրա փախուստը ճանապարհ բաց արեց պարսից թագաժառանգ Աբաս-Միրզայի 1826 թվի մի նոր արշավանքին դեպի Ղարաբաղի և Գանձակի կողմերը, որը ռուսներին բավական հոգսեր պատճառեց, և որի ժամանակ հայերը դարձյալ ցույց տվին իրանց անձնանվիրությունը։

## XLIV

1826 թվի ամառը պարսից թագաժառանգ Աբաս-Միրզան 80,000 զինվորներով դարձյալ անցավ Երասխ գետը։ Ֆաթալի-շահի անձնավստահ որդին, որը առաջին փորձն էր արել իր զորքերի մեջ մտցնելու եվրոպական կրթություն, որը նպատակ էր դրել վե-

[1] Պատմում են, որ խանի փախուստը այն աստիճան շտապով կատարվեցավ, որ կնիքը մոռացությամբ թողեց իր քարտուղար Միրզա-Ջամալի մոտ. և խանի բացակայությունից հետո այդ կնիքը երկար ժամանակ գործ էր ածվում...

բականգնելու Պարսկաստանի վաղեմի փառքը, չէր կարող համբերել, որ Պարսկաստանի մի ամենալավ մասը, որպիսին էր Անդրկովկասը, տիրեին ռուսները։

Նրա բանակի մեջ գտնվում էին Ղարաբաղի Մեհտի-խանը, Շաքիի Սելիմ-խանը և Շիրվանի Մուստաֆա-խանը, որոնք առաջ ռուսաց կառավարությանը հպատակության երդում էին տվել, իսկ հետո դավաճանելով, փախել էին Պարսկաստան, և պարսից զորքերի հետ վերադառնալով, աշխատում էին ապստամբեցնել Անդրկովկասի մահմեդականներին ռուսների դեմ։ Նրա զորապետների թվում գտնվում էր և վրաց իշխանազն Ալեքսանդրը մի քանի վրացի ազնվականների հետ, որոնք հուզում էին Ղազախի, Բորչալուի և Շամշադինի թարաքամաններին ռուսների դեմ։

Անցնելով Երասխը և մտնելով Զանգեզուրի մահալը, Աբաս-Միրզան բոլորովին ջարդեց ռուսաց մի բատալիոն, որ գտնվում էր Կորիս գյուղում։ Այստեղից արագությամբ մտավ նա Ղարաբաղի գավառը և տիրեց ամեն տեղ

Ղարաբաղի պահպանության համար ռուսները թողել էին եգերյան զորագնդից 6 ռոտա միայն, պոլկովնիկ Ի. Ա. Ռեուտի հրամանի ներքո, որոնք գտնվում էին Ջանախչի ավանում, որը այդ ժամանակ պատկանում էր իշխան Մադաթովին։ Երբ պարսից զորքերը մոտեցան, պոլկովնիկ Ռեուտը թողեց Ջանախչին, և իր զինվորների հետ փախչելով, հազիվ կարողացավ ամրանալ Շուշի բերդում։

Պարսիկները գրավեցին Ջանախչին և Աբաս-Միրզայի առաջին գործը եղավ հրամայել, որ քանդեն իշխան Մադաթովի պալատը, որը կառուցել էր նույն ավանում։

Նախընթաց գլխում տեսանք, որ իշխան Մադաթովը ստացավ Մեհտի-խանից 15 գյուղեր, որոնց թվում գտնվում էր և Ջանախչին։ Այդ գեղեցիկ ավանը Մելիք-Շահնազարյանների ամրոցն էր. այնտեղ էին գտնվում այդ տոհմի վաղեմի պալատները։ Իշխան-Մադաթովը այդ պալատները քանդել տալով, նրանց ավերակների վրա հիմնեց իր նոր պալատը, որի փառքը երկար վայելել չկարողացավ նա...

Աբաս-Միրզան Ջանախչին ավերակ դարձնելով, անցավ և պաշարեց Շուշի բերդը։ Իր առաջապահ զորքերը իր երեց որդի Մահմադ-Միրզայի և Ամիր-խան սարդարի[1] առաջնորդությամբ

[1] Ամիր-խան-սարդարը Աբաս-Միրզայի հոր՝ Ֆաթալի շահի փեսան էր։

ուղարկեց նա դեպի Գանձակի գավառը, որոնք տիրեցին Գանձակի բերդին, բոլորովին ոչնչացրին մերձակա գերմանական կալոնիաները, առաջացան մինչև Շամքորի գետը, այնտեղից պատրաստվում էին գնալ Թիֆլիսը տիրելու համար։

Ամբողջ անդրկովկասյան քրիստոնյաները գտնվում էին սարսափի մեջ. բոլորը սպասում էին, որ Աղա-Մամադ-խանի բարբարոսությունները պետք է կրկնվեն։ Տեղային մահմեդականությունը մեծ հուզմունքի մեջ էր, բոլորը պատրաստված էին միանալու պարսիկների հետ, ռուսներին ջարդելու համար և պարսկական իշխանությունը կրկին Անդրկովկասում վերականգնելու համար։

Իշխան Մադաթովը այդ ժամանակ գտնվում էր Կովկասյան հանքային ջրերի մոտ, ուր գնացել էր իր առողջությունը կազդուրելու։ Այնտեղ տեղեկություն ստացավ Վրաստանի գլխավոր հրամանատար գեներալ Երմոլովից, թե որպիսի վտանգ էր սպառնում Անդրկովկասին։ Նա մոռացավ իր հիվանդությունը և երկու օրվա մեջ ջրերից հասավ Թիֆլիս։ Անմիջապես (10 օգոստոսի) նրան առաջարկվեցավ ընդունել այն զորքերի հրամանատարությունը, որ պատրաստել էին ուղարկելու պարսիկների դեմ։ Իշխանը մեծ ուրախությամբ ընդունեց, որովհետև վտանգը գլխավորապես իր հայրենիքին էր սպառնում։

Մինչև իշխան Մադաթովի հասնելը, դառնանք դեպի Շուշի բերդը, տեսնենք այնտեղ ինչ էր կատարվում։

Աբաս-Միրզայի բոլոր ջանքերը բերդը տիրելու համար իզուր անցան։ Իզուր նրա մոտ գտնված ֆրանսիացի և իտալացի ինժեներները գործ էին դնում իրանց բոլոր արհեստը։ Բնությունից անառիկ ստեղծված բերդը գրավելու հնար չկար։ Նա ընդդիմացավ 48 օրվա սարսափելի պաշարմանը։

Բայց միայն բերդի բնական ամրությունը չէր, որ նրան պահպանեց թշնամու հարձակումներից։ Նրան պահպանեց գլխավորապես հայերի անձնազոհությունը։

Բացի բերդի մեջ բնակվող հայերից, այնտեղ շրջակա գյուղերից հավաքվել էին բազմաթիվ հայեր։ Այնտեղ կային, որպես վերևում հիշեցինք, 6 ռոտա ռուս զինվորներ միայն, պոլկովնիկ Ռեուտի հրամանի ներքո։ Թե ինչպես էին գործում հայերը, մենք իբրև ապացույց, մեջ կբերենք մի փոքրիկ կտոր իշխան Մադաթովի կենսագրությունից։

«Ոչինչ չէր կարող խռովեցնել մի բուռն ռուսներին, որոնք ընկերաբար միանալով հայերի հետ (դրանք ըստ մեծի մասին իշ-

խան Մադաթովի կալվածներից էին), քաջությամբ պատասխանում էին պաշարված բերդի բոլոր կետերի վրա թշնամու հարձակումներին, որը թվով երեսուն անգամ ավելի էր, քան թե բերդի մեջ գտնված գարնիզոնը, որը չուներ ոչ բավականաչափ ուտելու պաշար և ոչ հրանոթներ, որոնք մնացել էին Ջանախչիի մեջ, 42-րդ եգերյան զորագնդի բնակության տեղում։ Տեսնելով գարնիզոնի այդքան համառ ընդդիմադրությունը, և հույս չունենալով ուժով նվաճելու նրան, Աբաս-Միրզան աշխատում էր տկարացնել նրան գիշերային անընդհատ հարձակումներով և կրակ թափելով... Վերջապես և դրա մեջ հաջողություն չգտնելով, սկսեց զանազան խոստումներով հրապուրել բերդի մեջ գտնված հայերին, աշխատելով համոզել նրանց, որ բաժանվեն ռուսներից։ Բայց և այդ ձեռնարկության մեջ հանդիպեց հայերի կողմից միահոգի և հաստատուն մերժման։ Սահմանագլխի այդ նշանավոր բերդի գրավումը անպատճառ կունենար մեզ (ռուսների) համար չափազանց վատ հետևանքներ. որովհետև, Աբաս-Միրզան տիրելով նրան, այլևս արգելք չէր ունենա կ'անգնեցնել իր արշավանքը, և ուղղակի առաջ կխաղար դեպի Թիֆլիս, ուր կարող էր հասնել, նախքան թե մեր զորքերը ժամանակ կգտնեին միանալու, որ պաշտպանեին այդ քաղաքը։ Շուշիի մեջ կատարված գործողությունները սքանչելի էին։ Գիշերով պատրաստված վառոդի և գնդակների քանակությունը գործ էր ածվում ցերեկով։ Մինչև անգամ (հայոց) կնիկները և մանկահասակ աղջիկները ցույց էին տալիս եռանդ և քաջություն, օգնում էին պաշարվածներին հենց պատնեշների վրա, կռվելու ժամանակ բաժանելով նրանց պատրոններ։ Դեռ մինչև այսօր պատմվում են շատ զրույցներ Շուշիի բնակիչների այդ ժամանակի ինքնազոհությունների մասին...»[1]։

Այդ ինքնազոհության օրինակներից մենք կհիշենք մեկը միայն, որի մեջ փայլում է ղարաբաղցի կնոջ հերոսությունը։

Հենց նույն օրը, երբ Աբաս-Միրզայի զորքերը պաշարում են Շուշի բերդը, մի աղքատ կին իր ամուսնի հետ տարել էին մի պարկ ցորյան ջրաղացը աղալու համար։ Շուշի բերդի ջրաղացները գտնվում են Գարգար գետի ձորի մեջ, Հյունոտ անունով գյուղի մոտ։ Ով որ տեսել է այդ անդնդախոր ձորը, ով որ տեսել է այն նեղ ճանապարհը, որ քարափների կուրծքի վրայով, սարսափելի գահավեժներից բարձրանում է դեպի բերդը, կարող է երևա-

1 «Жизнь генерал-лейтенанта князя Мадатова». Издание второе, Санкт-Петербург, 1863. Երես 115—116.

կայել, թե ո՛րքան քաջություն, ո՛րքան սրտի ամրություն պետք էր մի կնոջ, որ նա կարողացավ այդ ճանապարհով գնալու ժամանակ, ոչ միայն իր անձը ազատել պարսիկ սարվազների ձեռքից, այլ կոտորեց նրանցից շատերին։

Աղքատ կնոջ ամուսինը ալյուրի պարկը շալակած, երկուսը միասին բարձրանում էին քարափներից, հանկարծ վրա են հասնում մի խումբ սարվազներ։ Ամուսին այրը պարկը ցած է գցում և սկսում է փախչել։ Իսկ կինը մնում է, սկսում է քարերով կռվել սարվազների հետ։ Նրան հաջողվում է մեկին ցած գլորել և խլել նրանից հրացանը ու սուրը։ Այնուհետև, մի կողմից պատերազմելով սարվազների հետ, մյուս կողմից՝ ալյուրի պարկը իր ետևից քարշ տալով, նա բարձրանում է դեպի բերդը։ Բերդի միջից հեռվից տեսնում են նրա կռիվը և աղաղակներով քաջալերում են։ Նա ազատում է իր զավակների ապրուստի պաշարը և մինչև բերդը մտնելը սպանում է մի քանի սարվազներ։

Մինչև այսօր ամեն մի շուշեցի չէ մոռացել այդ կնոջ անունը. նրան կոչում էին Խաթայի[1]։

Շուշի բերդը հայերի օգնությամբ ամբողջ 48 օր պաշտպանվեցավ Աբաս-Միրզայի բազմաթիվ զորքերի դեմ։ Այդ սահմանագլխյան բերդը մի հզոր խոչընդոտ էր, մի մեծ արգելք էր նրա արշավանքի առաջադիմությանը դեպի Անդրկովկասի խորքերը։ Եթե Աբաս-Միրզան այստեղ աջողություն գտներ, գործերի դրությունը շատ պիտի դժվարանար ռուսների համար։ Ղարաբաղի Մեհտի-խանը, այդ ռուսներից հարգված և գեներալի աստիճանի հասցրած դավաճանը, արդեն ոտքի էր կանգնեցրել Ղարաբաղի մահմեդական բոլոր խաշնարած, կիսավայրենի ցեղերին ռուսների դեմ։ Բացի Աբաս-Միրզայի կանոնավոր զորքերից, ռուսաց սահմանների մոտ թափառող պարսից բոլոր ավազակ ցեղերը, ինչպես էին շահսևանները, ղարաբաղցիքը, ահագին խումբերով անցել էին Երասխը ավարառության և կողոպուտի նպատակով։

Բայց Շուշին պաշտպանվում էր։

Այդ ժամանակ Աբաս-Միրզայի առաջապահ զորքերը նրա երեց որդի Մահմադ-Միրզայի և Ամիր-խան-սարդարի առաջնորդությամբ, տիրելով Գանձակին, անցել էին մինչև Շամքորի գետը, այնտեղից պատրաստվում էին գնալ Թիֆլիսը գրավելու համար։

Դեռ օգոստոսի 4-ին ռուսաց զորքերը Թիֆլիսից ճանապարհ

---

[1] Պոլկովնիկ Ռեուտի առաջարկությամբ ռուսաց կառավարությունը նշանակեց այդ կնոջ համար ցմահ պենսիա։

էին ընկած թշնամու առաջը առնելու համար։ Իշխան Մադաթովը սկզբում նրանց հետ չէր. նա արագությամբ հետո հասավ իր հրամանատարությանը հանձնված զորքերին Կարմիր-կամուրջի մոտ, և այնտեղից առանց ժամանակ կորցնելու ճանապարհ ընկավ դեպի Գանձակ։

Զագամ գետի մոտ իշխան Մադաթովը հանդիպեց վրաց իշխանազն Ալեքսանդրին, որը 2,000 պարսիկ զորքերով և մի քանի վրացի ազնվականների հետ կամենում էր անցնել դեպի Նուխվա գավառը, լեզգիներին և տեղային մահմեդականներին ապստամբեցնելու ռուսների դեմ։ Իր զորաբաժնից իշխան Մադաթովը առեց փոքրաթիվ ձիավորներ և հարձակվեցավ Ալեքսանդրի վրա։ Կարճատև կռվից հետո վրաց իշխանազնը ստիպվեցավ խույս տալ դեպի Շամքորի լեռները։

Հաջողակ ձեռքով ջարդելով թշնամու առաջապահ գունդերը, իշխան Մադաթովը սեպտեմբերի սկզբներում հասավ Շամքոր գետի մոտ, որի աջ ափի վրա սպասում էր նրան պարսից գլխավոր զորությունը, պատերազմական կարգով։ Նրանց թիվը անցնում էր 10,000-ից, չհաշվելով Ղազախի և Շամշադինի թուրքերին, որոնք ահագին խումբերով միացել էին պարսիկների հետ։ Այդ խառնիճաղանջ բազմությանը առաջնորդում էր Ամիր-խան-սարդարը, որը շահի փեսան և նրա լավ զորապետներից մեկն էր, բացի նրանից, զորապետների թվում գտնվում էր Աբաս-Միրզայի երեք որդին։

Իսկ իշխան Մադաթովը ուներ իր հրամանի ներքո միայն 2 բատալիոն, 2 ռոտա և 4 թնդանոթներ։ Բայց քաջ և փորձված զորավարի անձնավստահությունը փշրեց թշնամու ահագին զորությունը։ Նրա ահարկու անունը, որը արդեն մահմեդականների մեջ առասպելական նշանակություն էր ստացել, բավական էր թըշնամուն սարսափեցնելու համար։ Եվ իշխան Մադաթովը իր պատերազմական ճարպկությունների մեջ գիտեր այնպիսի հնարքներ բանացնել, որ ազդեր արևելքցիների երևակայության վրա։ Որպես Հոմերոսի հերոսները Տրոյան գրավելու համար կազմեցին իրանց ամենհի փայտեղեն երիվարը, այնպես էլ իշխան Մադաթովը սարքեց մի ահագին սայլ, որը, իբրև մի հրեշավոր մեքենա, հանդարտ ընթացքով առաջ էր տանում իր զորքերի առջևից։ Սայլի միջից որոտում էին թնդանոթները, որ կապված էին նրա վրա։ Սարսափած թշնամին կարծում էր, որ այդ վիթխարի հրեշը իր բերանիցն էր հոսում անընդհատ կրակը ու գնդակները։

Պարսիկները չարաչար կերպով ջարդվեցան։ Նրանց գլխավոր

հրամանատարը, Ամիր-խան-սարդարը, սպանված ընկավ կռվի դաշտում։ Աբաս-Միրզայի որդի Մահմեդ-Միրզան առաջինը եղավ, որ փախչելով խույս տվեց պատերազմի դաշտից։ Նրան հետևեցին հաղթված սարվազները, թողնելով Շամքոր գետի ափերի մոտ իրանց բոլոր ռազմամթերքը։

Իշխանը սկսեց հալածել թշնամուն, որ նա Գանձակի մոտ կանգ չառնե տեղային հայերին վնասելու համար։ Սեպտեմբերի 4-ին հասավ նա Գանձակի պարսիպների մոտ։ Քաղաքի հայ հասարակությունը մեծ հանդեսով հանդիպեց նրան, շնորհավորում էր նրա փառավոր հաղթությունը։ Ամբոխը երգում էր նրա անունով արդեն հորինված ժողովրդական երգերը։

Շամքորի հաղթությունը ազատեց Գանձակը թշնամու բարբարոսությունից[1] և փոքր-ինչ հանգստացրեց հուզված մահմեդականներին[2]։ Բայց դեռ ամենագլխավորը մնացել էր. Շուշի բերդը դեռևս գտնվում էր պաշարված դրության մեջ Աբաս-Միրզայի զորքերով, որոնց հետ միացան Շամքորի պարտությունից հետո փախած պարսիկները։

Իշխան Մադաթովը արդեն պատրաստված էր գնալու Շուշին ազատելու համար, հանկարծ հրաման ստացավ գեներալ Պասկեվիչից (որը այդ ժամանակ եկել էր Թիֆլիս), որ Գանձակում սպասե իրան։

11 սեպտեմբերի ինքը Պասկևիչը անձամբ եկավ Գանձակ և ընդունեց բոլոր զորքերի հրամանատարությունը։

«13 սեպտեմբերի, գիշերը, պարսից բանակից հայտնվեցան երկու ճայեր, որոնցից մեկը, իբրև ռուսաց լեզվի թարգման, գտնվում էր Աբաս-Միրզայի մոտ, և մի ժամանակ ծառայել էր իշխան Մադաթովի տանը։ Նրանք թախանձանոք պահանջում էին, որ իրանց թողնեն իշխանի (Մադաթովի) մոտ, և հաղորդեցին նրան, թե պարսիկները, իրանց բոլոր ծանրությունները թողնելով Թարթար գետի մյուս կողմում, արդեն անցան Քուրակ-չայ գետը,

[1] Աբաս-Միրզայի Նազար-Ալի-խան անունով զորապետը, 1,500 մարաղեցի սարվազներով թողված էր Գանձակի բերդի պահպանության համար։ Այդ գազանը պատրաստվել էր կոտորել տալ տեղային հայերին, բայց հենց որ լսեց իշ. Մադաթովի Շամքորի հաղթությունը, շտապով թողեց Գանձակը և փախավ։

[2] Պարսիկները տեղային մահմեդականներին հուզելու համար գործ էին դնում ամեն միջոցներ։ Պարսկաստանի նշանավոր հոգևորականներից մեկը, որը իրան կոչում էր Իմամ-Հուսեին, հավատացնում էր տեղային մահմեդականներին, որ իր աղոթքների զորությամբ ռուսների գնդակները չեն կարող վնասել նրանց։ Իշ. Մադաթովը բռնել տվեց այդ երևելի ֆանատիկոսին և հրամայեց խեղդել։

և առաջ են ընթանում, որ հանկարծակի հարձակում գործեն մեր (ռուսաց) զորքերի վրա։ Իշխան Մադաթովը անհապաղ այդ մասին տեղեկություն տվեց գեներալ-ադյուտանտ Պասկևիչին, որից տրվեցան այդ դեպքի համար բոլոր հարկավոր եղած հրամանները»[1]։

Եվ իրավ, Աբաս-Միրզան Շամքորի պարտությունից հետո իր զորքերի մի մասը թողնելով Շուշի բերդի մոտ, և առնելով իր հետ 15,000 կանոնավոր հետևակներ և 20,000 ձիավորներ, 26 թնդանոթներով, այնքան առաջ էր եկել, որ գտնվում էր 7 վերստ հեռավորության վրա Գանձակ քաղաքից։ Եվ ռուսները նրա շարժման մասին հազիվ թե տեղեկություն կունենային, եթե վերոհիշյալ երկու հայերը, որոնք Աբաս-Միրզայի ծառայության մեջ էին գտնվում, լրտեսի պաշտոն չկատարեին։

Գանձակի մոտ ռուսաց զորքերը բաղկացած էին միայն 6 բատալիոն հետևակներից և երեք պոլկ ձիավորներից, ունեին 24 թընդանոթներ։ Զորքերի այդ անհամեմատ սակավությունը Աբաս-Միրզայի ահագին զորության դեմ կարող էր միայն պաշտպանողական դիրք պահպանել և ոչ հարձակողական, և այսպես էլ վարվելու դիտավորություն ուներ գեներալ Պասկևիչը։ Բայց իշխան Մադաթովը, որ ավելի լավ ծանոթ էր արևելքցիների հետ, համոզեց նրան, որ թշնամուն ժամանակ տալով, նրա զորությունը ավելի կբարդվի, տեղացի մահմեդականները կմիանան նրա հետ, բացի դրանից, հասկացրեց, որ ասիացիների հետ պատերազմելու համար զորքերի թիվը այնքան նշանակություն չունի, որքան համարձակ և վճռական հարձակմունքը։

Վճռեցին կռվել։ Իշխան Մադաթովի պատերազմական տաղանդը, որպես Շամքորի ճակատամարտում, նույնպես և Գանձակի մոտ կատարված կռիվում, ցույց տվեց նրա զինվորական բարձրր արժանավորությունները։

Աբաս-Միրզան հաղթվեցավ։ Պարսիկները այնքան շտապով սկսեցին փախչել, որ պատերազմի դաշտում և ճանապարհների վրա թողեցին իրանց բոլոր ծանրությունները։ Աբաս-Միրզան սեպտեմբերի 15-ին, իսկ նրա ջարդված զորքերը նույն ամսի 17-ին անցան Երասխ գետը։ Իշխան Մադաթովը հալածեց նրանց մինչև պարսից սահմանները։

Թշնամու հեռանալով Շուշի բերդի պաշարումն ինքնըստինքյան լուծվեցավ։ Իշխան Մադաթովը շտապեց այնտեղ բերդի դրու-

---

1 «Жизнь генерал-лейтенанта князя Мадатова». Издание второе. 1863. Երես 116:

թյունը տեսնելու համար։ Մի քանի վերստ հեռավորության վրա, ահագին բազմությամբ նրա առաջ դուրս եկավ պոլկովնիկ Ռեուտը հայոց հոգևորականության հետ։ Մինչև անգամ կանայքը, երեխաները ուրախության աղաղակներով արտահայտում էին իրանց շնորհակալությունը իրանց ազատչին։

Այստեղ իմացավ նա, որ թշնամին ոչ միայն ավերակ էր դարձրել նրա Ջանախչի ամրոցը, այլ բոլորովին ոչնչացրել էր նրա գյուղերից 6-ը։ Ինչ որ կարողացել էին տանել, տարել էին, ինչ որ չէին կարողացել, այրել էին։

Բայց կողոպտված Ղարաբաղը տակավին հուզման մեջ էր։ Մեհտի-խանը դեռևս գրգռում էր մահմեդականներին զանազան անկարգություններ գործելու, հորդորում էր նրանց թողնել Ղարաբաղը, անցնել Երասխի մյուս կողմը, պարսից հողի վրա, և այնտեղից հարձակումներ գործել։

Իշխան Մադաթովը պետք է իրան ցույց տար Ղարաբաղի բնակիչներին, մանավանդ, որ պարսիկները նրա մասին սուտ լուրեր էին տարածել, որ կռվի մեջ սպանված է։

Բայց նա իր ձեռքի տակ զորքեր չուներ, որովհետև նրա հրամանատարության ներքո գտնված զորքերը այդ ժամանակ հանձնըված էին գեներալ Պասկևիչին։ Այդ դեպքում ևս նրան օգնության հասան հլու և հնազանդ հայերը։ Շուտով կազմվեցան կամավորների խմբեր, որոնց իր հետ առնելով, իշխանը սկսեց թռչել դեպի Ղարաբաղի զանազան կողմերը, և ամեն տեղ հանգըցնել Մեհտի-խանի բորբոքած խռովությունները։

Հայերի օգնությամբ իշխանը խաղաղացրեց մահմեդականների խռովությունը։ Նրանց անհավատարմությունը շուտով մոռացվեցավ, մոռացվեցավ և հայերի անձնազոհությունը։ Այդ բավական չէր, իշխանը սկսեց այնուհետև ավելի շողոքորթել, ավելի նշանակություն տալ մահմեդականներին, որպես դաստիարակության մեջ տգետ մայրերը ավելի լրբացնում են չար երեխաներին, նրանց խոստումներ անելով, քաղցրավենիք տալով, որ ձայները կտրեն, անկարգություն չգործեն։ Այսպես էին վարվում մահմեդականների հետ, իսկ հայերի համար ասում էին՝ «դրանք մերն են...»։

## XLV.

Բայց ովքե՞ր էին այն երկու հայերը, որոնք դեռ Գանձակի առաջ թողեցին Աբաս-Միրզայի բանակը, եկան իշխան Մադաթո-

վի մոտ և նրան խիստ նշանավոր տեղեկություններ հաղորդեցին պարսիկների գործողությունների մասին։ Նրանց անունները, կամ ով լինելը մեզ հայտնի չէ։

Մեզ հայտնի է միայն մեկ հայ երիտասարդի անունը, որը այդ միջոցներում թողեց Աբաս-Միրզայի ծառայությունը և եկավ իշխան Մադաթովի մոտ։ Բայց նախքան նրա մասին խոսելը, մենք հարկավոր ենք համարում խիստ համառոտ կերպով ցույց տալ, թե որպիսի հայացք ուներ Աբաս-Միրզան իր հպատակ հայերի վերաբերությամբ և ի՞նչ վիճակի մեջ էին նրա ժամանակ հայերը Պարսկաստանում։

Աբաս-Միրզան, պարսից գահի թագաժառանգը, էր միևնույն ժամանակ Պարսկաստանի մի նշանավոր մասի, Ատրպատականի, փոխարքան։ Ատրպատականը ավելի խիտ բնակեցված էր հայերով և այլ քրիստոնյա ազգերով, որպես էին ասորի նեստորականները։ Ատրպատականը սահմանակից էր պարսկական այն նահանգներին, որ ռուսները մասամբ գրավել էին և մնացածը ցանկություն ունեին գրավելու, Երասխ գետը թողնելով իբրև սահմանագիծ երկու պետությունների մեջ։

Աբաս-Միրզան թեև Նադիրի, Աղա-Մամադ-խանի նման հզոր պատերազմող չէր, բայց խելացի քաղաքագետ էր և երկրի լավ կառավարիչ։ Նա այն տեսակ անձնավորություններից էր, որ գիտեր ամեն տեսակ ուժերից օգուտ քաղել։ Իսկ Պարսկաստանի շինության համար մի մեծ ուժ նա տեսնում էր հայերի մեջ։ Այդ էր պատճառը, որ նա սկսեց հայերին օրըստօրե բարձրացնել, նրանց լայն ասպարեզ և ընդարձակ արտոնություններ շնորհելով։ Նրա ողորմածությունը հայերի վերաբերությամբ համակրում էր և նրա հայրը, բարի և մարդասեր Ֆաթալի-շահը, որի թագավորության ժամանակներում Պարսկաստանի հայերը վայելում էին կատարյալ բախտավորություն։

Որպես Շահ-Աբաս մեծը, մի ժամանակ Պարսկաստանի վաճառականությունը ծաղկեցնելու համար, Սպահանի հայերից առևտրական ընկերություններ էր կազմում և ինքը ևս իր սեփական դրամագլխով մասնակցում էր նրանց առևտրական ձեռնարկությունների մեջ,— այնպես էլ Աբաս-Միրզան ուներ իր հայ վաճառականները, որոնք գործում էին նրա դրամագլխով։

Երկրի հայ ազգաբնակությունը մահմեդական կառավարիչների հարստահարությունից ազատ պահելու համար նա բարձրացրեց հայոց մելիքների նշանակությունը, նրանց ընդարձակ իրա-

վունքներ տալով, նրանց համար ռոճիկներ սահմանելով և այլն։

Ճանաչելով, որ հայ ժողովուրդը սերտ կերպով կապված է իր եկեղեցու և եկեղեցականների հետ, նա սկսեց զսպել ոչ միայն մահմեդականների կրոնական հալածանքը քրիստոնյաների դեմ, այլ աշխատում էր ավելի ուժ և խրախույս տալ քրիստոնեությանը։ Հաճախում էր հայոց եկեղեցին, ներկա էր գտնվում հայոց եկեղեցական հանդեսներին, որ իր օրինակով ցույց տա, թե հայերի կրոնական պաշտամունքները ամենայն հարգանքի արժանի են։ Նրա ժամանակ հայոց եկեղեցիները սկսեցին զանգակ հարկանել, որ առաջ արգելված էր։

Նույն ժամանակվա Ատրպատականի Իսրայել եպիսկոպոսը նրա ամենալավ բարեկամն էր։ Նա հատկացրեց եպիսկոպոսի համար նշանավոր ռոճիկ, բացի դրանից, առաջնորդարանի ծախքերի համար, իբրև մշտական սեփականություն, ընծայեց ընդարձակ կալվածներ, որ նրանց եկամուտներով պահպանվի առաջնորդարանը[1]։

Ատրպատականի հայոց վանքերի գոյությունը ապահովացնելու համար շնորհեց նա, իբրև մշտական սեփականություն, յուրաքանչյուր վանքին գյուղ, իրանց բնակիչներով, հողերով և սահմաններով։ Այդ գյուղերը ազատ թողեց նա արքունի հարկերից, այնպես, որ կառավարության փոխարեն ինքը վանքը իրավունք ուներ ստանալ ոչ միայն մշակության բերքերի մի մասը, այլև արքունի հարկերը[2]։

Թավրիզը Աբաս-Միրզայի աթոռանիստն էր. այդ քաղաքի հայ հասարակության դրությունը բարվոքելու համար ազատեց նրանց ամեն տեսակի հարկերից։ Նույն արտոնությունը Թավրիզեցի հայերը վայելում են մինչև այսօր, իսկ նրանց հարևան մահմեդականները հարկ են վճարում։ Երկար կլիներ մի առ մի

[1] Այդ ժամանակ Ատրպատականի հայոց հոգևոր կառավարության առաջնորդարանը գտնվում էր Սալմաստ գավառի Հավթևան գյուղում, և կալվածները այդ գյուղի հողերիցն էին, որոնք հետզհետե վաճառվեցան հետագա թեմական առաջնորդների ագահությամբ…

[2] Ատրպատականում երեք նշանավոր վանքեր կան. Նախավկայի վանքը, որ գտնվում է Երասխի ափի մոտ Հին-Ջուղայից ոչ այնքան հեռու. Թադեոս առաքյալի վանքը Մագուի գավառում և Բարդուղիմեոս առաքյալի վանքը Աղբակի գավառում։ Այդ վանքերը դեռ պահպանում են Աբաս-Միրզայի շնորհած կալվածները, բայց հոգ. իշխանության անհոգությունից խիստ ողորմելի դրության մեջ։

թվել, թե որքան ողորմած էր նա դեպի հայոց ժողովուրդը և որքան բարձրացրեց նա այդ ժողովրդի դրությունը, նրան ամեն կերպ ապահովություններ շնորհելով։ Բայց այն ևս պետք է նկատել, որ Աբաս-Միրզան այդ բոլորի մեջ ուներ և իր քաղաքական նպատակները։ Նա ամեն հնարներ գործ էր դնում, որ հայերի սրտերը ամուր կերպով կապե Պարսկաստանի հետ և նրանց համակրությունը դեպի ռուսները սառեցնե։ Այսուամենայնիվ, ինչ էլ որ լինեին նրա քաղաքական նպատակները, բայց դարձյալ նրա համակրությունը դեպի հայերը բոլորովին անկեղծ էր[1]։

Աբաս-Միրզան և նրա նախորդները հայերի մեջ գտնում էին ոչ միայն լավ երկրագործի, վաճառականի և արհեստավորի արժանավորություններ, այլ զինվորական տաղանդ և կառավարչական ընդունակություններ ևս։ Նրա ժամանակ, կամ նրանից առաջ հայերից շատերը ոչ միայն զինվորական բարձր աստիճանների հասան, այլ վարում էին ամբողջ նահանգների փոխարքայության պաշտոն, դեր էին խաղում դիպլոմատիայի մեջ, կառավարում էին պետական գանձը և մինչև անգամ իշխում էին շահերի կանանոցներում ներքինիների և ներքինապետների պաշտոնով[2]։

---

[1] Նրա անկեղծությանը կարող է ապացույց լինել այն, որ 1827 և 1828 թվերում Պարսկաստանի հայոց դեպի Անդրկովկաս գաղթականության ժամանակ, որքան աշխատեց նա, որ հայերը չգաղթեն։ Բայց ռուսաց սվինները, Ներսեսը և Լազարյանը, նրա բոլոր ջանքերը թողեցին ապարդյուն և ավելի քան 40 հազար հայեր գաղթեցին դեպի Արարատյան նահանգը և այլ տեղեր։

[2] Պարսկաստանում այդ ժամանակներում ծաղկած հայ ավագների պատմությունը առանձին գրքի կարոտ է. մենք կհիշենք նրանց անունները միայն. 1. Յուսուֆ-խան սփանդիար (մարզպան) Արաղստանի։ 2. Մյուս Յուսուֆ-խան թոփչի-բաշի (թնդանոթաձիգների գլխավոր)։ 3. Մուսա-բեկ թոփչի-բաշի։ 4. Աղա Յաղուբ ներքինապետ շահի։ 5. Աղա-Իբրահիմ ղարաբաղցի, ազդեցության տեր ներքինի Ֆաթալի-շահի կանանոցում։ 6. Մյուս Աղա-Յաղուբ երևանցի, ներքինի և մատակարար Ֆաթալի-շահի կանանոցում։ 7. Բժշկապետ Դավիթ-խան Մկրտչյան նոր ջուղայեցի, Ֆաթալի-շահի և Մահմեդ-շահի ժամանակներում բարձր Դռան բժիշկ։ 8. Խոսրով-խան սալմաստեցի, կառավարիչ Ատրպատականի զանազան գավառների 9. Դավիթ-խան ասպետ և Միրզա-Յուսուֆ-խան Մելիք-Շահնազարյան ղը-Շապուր, առաջինն էր թարգման Ֆաթալի-շահի մոտ և իբրև Պարսկաստանի լիազոր դեսպան ուղարկվեցավ Նապոլեոն I մոտ. երկրորդը առաջինի հորեղբոր որդին էր, Պարսկաստանից դժգոհ լինելով, եկավ Թիֆլիս. հետո գնաց Ս. Պետերբուրգ, այնտեղ վախճանվեցավ։ 10. Ջոհրաբ-խան խանզադար-շահրիար, այսինքն՝ արքունի գանձապետ, դա Ֆաթալի-շահի

Մենք կվեր առնենք Աբաս-Միրզայի մոտ գտնված հայ ծառայողներից մի անձնավորություն միայն, որի գործունեությունը մեր պատմության հետ կապ ունի և գուցե դա լինի այն երկու հայերից մեկը, որ հիշում է իշխան Մադաթովի ռուս կենսագրողը։ Այդ քաջը կոչվում էր Բայինդուրյան կամ Բեհաթուրյան Ասրիբեկ։

---

զանձապետը և նրա փեսան էր։ 11. Մյուս Ջոհրաբ-խան Վարդանյանց՝ արքունի գանձապետ էր Սպահանում. 12. Աղա-Բահրամ ներքինի, ամիր-դիվանխանը, այսինքն՝ պետական դիվանի գլխավորը։ 13. Ջոհրաբ-խան ղուլամ-փիշխդմաթ-բաշի, շահի արքունիքի սենեկապետների գլխավորը։ 14. Յուսուֆ-խան ամիր-թոփխանե՝ պարսից արտիլերիայի գլխավորը, Թիֆլիսեցի, բաղկալ Գելոենց տնից։ 15. Ջոհրաբ-խան ամիր-թոփխան։ 16. Սպանդիար-խան իշխանազն Ամատունի. Թիֆլիսեցի, ղուլամ-փիշ-խդմեթ, շահի սենեկապետ։ 17. Բեժան-խան զորապետ։ 18. Ալլահվերդի-բեկ ղարաբաղցի, Մահմեդ-շահի մոհրդարը՝ այսինքն՝ կնքապահն էր. նրա եղբայրները՝ Մեհտի-խան սարհանգը Բհադրան կոչված գունդի զորապետն էր, իսկ Ըրզա-Կուլի-խանը շահի փիշ-խդմեթ (սենեկապետ) էր։ 19. Աղաջան-խան սարհանգ (գնդապետ)։ 20. Ոսկան Սամուրի սպահանցի, Ֆաթալի-շահի վաճառականը։ 21. Մահտեսի Հովհաննես Ղազարյան Թավրիզեցի՝ Աբաս-Միրզայի վաճառականը. դա ազատեց Դանիել կաթողիկոսին բանտարկությունից։ 22. Մանուչար-խան, որ կրում էր մոհթամեդ-ուդ-դովլե տիտղոսը, նշանակում է նեցուկ պետության։ Դա Էնիկոլոփյանների տնիցն էր, Պարսկաստանում այն աստիճան բարձրացավ, որ մի ժամանակ վարում էր հետևյալ նահանգների փոխարքայության պաշտոնը՝ Ռաշտի, Սպահանի, Լոռստանի, Բակտրիայի, Շուշտերի և Դասֆիչի։ 23. Խոսրով-խան վալի (տիրապետող իշխան), Թիֆլիսեցի էր, Կայթմազյանց տոհմից, չափազանց ուժեղ լինելու պատճառով կոչվում էր և Խոսրով-խան շիր (առյուծ)։ 24. Յադուբ-խան սուլթան (զորապետ)։ 25. Սեթի-խան բուշեռցի, սկզբում ծառայում էր անգլիական դեսպանատանը, հետո պարսից ծառայության մեջ մտավ. դրա որդի Ծատուր-խան սարհանգը (գնդապետ) այժմ Թավրիզի արտաքին գործոց նախարարի պաշտոնեության առաջին թարգմանն է։ 26. Դավութ-խան կամ Ժան-Դավութ-խան զմյուռնացի, ներկա շահի առաջին թարգմանն էր։ 27. Թադեոս-խան կամ Թուրաբ-խան Թավրիզեցի, ջավահիրչի-բաշի, Բ. Դռան ակնագործների (յուվելիրների) գլխավորը։ 28. Կուլամ-Հուսեին-խան սըփանդիար (մարզպան) Արաղստանի, Յուսուֆ-խան սըփանդիարի որդին։ 29. Իսմայիլ-խան Մելիք-Մինսյան Թավրիզեցի, ջահավիրչի-բաշի (Բ. Դռան ակնագործների գլխավոր). 30. Միրզա-Ֆարրուխ Ամիրխանյանց, ղարաբաղցի, նախ Ֆաթալի-շահի մոտ, իսկ հետո Մահմեդ-շահի մոտ քարտուղարի պաշտոն էր կատարում (որդին այժմ հայ-բողոքականների քարոզիչ է Թիֆլիսում)։ 31. Միրզա-Ռոստոմ Էնիկոլոփյանց։ 32. Աղալար-խան Էնիկոլոփյանց, թե առաջինը և թե երկրորդը ծառայում էին Աբաս-Միրզայի մոտ։ 32. Միրզա-Գյուրգին-խան Էնիկոլոփյանց, կուլամփիշ-խդմաթ (սենեկապետ) Աբաս-Միրզայի մոտ։ 34. Յուսուֆ-բեկ Էնիկոլոփյանց, թիկնապահ Աբաս-Միրզայի։ 35. Սուլեյման-խան Էնիկոլոփյանց.

*Մեր պատմության մեջ աշխատել ենք փոքր-ինչ ընդարձակ տեղ տալ ոչ թե նշանավոր տոհմական ազնվականներին, այլ ժողովրդի ստորին ծալքերից հայտնված, ժողովրդի զորությունը և ոգին արտահայտող հերոսներին, որպես էին Դալի-Մահրասան (Ավագ վարդապետը), Թյուլի-Արզումանը, Ջալաղան յուզբաշին, Մելիք-Վանին և դրանց նմանները։ Այդ տեսակ անձնավորություններից մեկն էր Բայինդուրյան Ասրի-բեկը, որը թողնելով Աբաս-*

---

*իբրև երևելի զորավար, դա այն աստիճան բարձրացավ Պարսկաստանում, որ կառավարությունը նրան շնորհեց* սամր-դովլե *տիտղոսը, որ նշանակում է սուր պետության։ Երկար ժամանակ վարեց Շիրազի, Բակտրիայի, Լուրիստանի, Շուշտերի և Դասֆիզի փոխարքայության բարձր պաշտոնը։ Դրա որդիներից մեկը, գեներալ Նարիման-խանը, այժմ պարսից Վիեննայի դեսպանն է, իսկ մյուսը՝ գեներալ Ջհանգիր-խանը այժմյան շահի աջուդան-բաշին (ադյուտանտների գլխավորը) միևնույն ժամանակ ամբողջ Պարսկաստանի արտիլերիայի գլխավորն է։ 36 Դավութ-*խան *սարթիփ (գեներալ) և Ջալ-*խան *սարհանգ (գնդապետ) Սագինյանց, քաջ և նշանավոր զինվորականներ էին։ 37.* Ավագ-խան *Մելիք-Մեհրաբյանց, հին-Նախիջևանցի, ծառայում էր Թավրիզի ռուսաց հյուպատոսարանում, միևնույն ժամանակ տեղային ռուսահպատակ վաճառականների թաջիր-բաշին, այսինքն՝ առևտրական դիվանի գլխավորն էր. իր կատարած նշանավոր գործերով նա մեծ հարգանք և հռչակ ստացավ Պարսկաստանում, և թողեց անմոռանալի հիշատակ, տեղային քրիստոնյաների մեջ, երկու անգամ ազատելով Թավրիզի հայերին մոլեռանդությունից կատաղած մահմեդականների սարսափելի կոտորածից։ Դրա որդին, Սուլեյման-խանը, այժմ Թիֆլիսում արևելյան լեզուների գլխավոր ցենզորի պաշտոն է վարում։ 38.* Միրզա-Յուսուֆ *Ներսեսյանց ղարաբաղցի, քարտուղար շահի դիվանում (դա Մոսկվայի պրոֆեսոր Ներսեսյանի հայրն էր)։ 39.* Ասրի-բեկ *Բրհատուրյանց, Աբաս-Միրզայի մոտ թիկնապահի պաշտոն էր կատարում, դա միևնույն անձնավորությունն էր, որ թողեց պարսից ծառայությունը և եկավ իշխան Մադաթովի մոտ։*

*Բացի զինվորական, քաղաքական, դիվանագիտական ասպարեզներից, բացի շահի Բարձր Դռան մոտ զանազան նշանավոր պաշտոններ վարելուց, հայերը երևելի գտնվեցան և պարսից հոգևորական դասակարգի մեջ, իհարկե, կրոնափոխ լինելուց հետո։ Դրանցից կհիշենք Մոլլա-բաշի (մոլլաների գլխավոր) Միրզա-Աբասի անունը և Հաջի-Մոլլա-Քարիմ Տեր-Գրիգորյանի անունը, որի եղբոր թոռը այժմ Թիֆլիսի Մողնու եկեղեցում քահանա է։*

*Ավելորդ չենք համարում նկատել, որ վերոհիշյալ անձնավորություններից, ոմանք Աղա-Մամադ-խանի Թիֆլիսից և Անդրկովկասի այդ տեղերից տարած, (1795) և ոմանք Աբաս-Միրզայի իշխան Ցիցիանովի հետ ունեցած կռվի ժամանակ (1804) Աբարանից տարած գերիներից են, որոնք իրանց բնական ձիրքերով Պարսկաստանում այնքան առաջ գնացին, որ բարձր պաշտոնների հասան։ Անունների պարսկական ձևով փոփոխությունը թող չխաբեցնե ընթերցողին, իբր թե դրանք միայն մի քանիսի բացառությամբ, մնացած բոլորը պահպանեցին իրանց հայությունը և քրիստոնեական կրոնը։*

Միրզայի ծառայությունը, եկավ իշխան Մադաթովի մոտ և նրա հետ մեծ քաջություններ գործեց։

Ասրի-բեկի նախապապը, Բայինդուր կամ ինչպես պարսիկները կոչում էին Բահաթուրը, դեռ շահ սուլթան Հուսեինի թագավորության ժամանակ Սյունյաց աշխարհից գնաց Պարսկաստան, և պարսից ծառայության մեջ մտնելով, շահի քաջ և նշանավոր զորավարներից մեկը դարձավ։ Հետո Պարսկաստանից զզվելով, եկավ Վրաստան, այստեղ միացավ Դավիթ Բեկի հետ, և գնալով իր հայրենիքը, Սյունյաց ապստամբության պարագլուխներից մեկը դարձավ։ Դա մեր «Դավիթ Բեկ» վեպի հերոսներից մեկը՝ Բայինդուր իշխանն է, որը իրան միշտ պարսից թագավորի «բաթմանղլիճ» է կոչում։

Այդ Բայինդուրի թոռներից մեկն էր Ասրի-բեկը։ Նրա պապի քաջագործությունները ավանդությամբ մնացել էին այդ տոհմի մեջ և Ասրի-բեկը դեռ պատանեկության հասակում, հրապուրվելով իր պապի հիշատակներով, թողեց Ղարաբաղը, գնաց Պարսկաստան իր բախտը փորձելու։ Համարձակ, վայելչահասակ պատանուն հաջողվեցավ մի ձիարշավի ժամանակ Աբաս-Միրզայի ուշադրությունը դարձնել իր վրա, և մտավ պարսից թագաժառանգի ադյուտանտների խումբի մեջ։ Հետո զանազան դժվարին դեպքերում իր ցույց տված քաջություններով նա ավելի և ավելի շնորհ գտավ Աբաս-Միրզայի մոտ։

Ղարաբաղի արշավանքի ժամանակ Ասրի-բեկը գտնվում էր թագաժառանգի թիկնապահների խումբի մեջ։ Այդ միջոցին Աբաս-Միրզան հանձնեց նրան մի վտանգավոր ծառայություն, որը իր ամենամտերիմ պաշտոնյաներին միայն կարող էր հավատալ։ Անդրկովկասյան մահմեդականներին ռուսների դեմ ապստամբեցնելու համար Աբաս-Միրզան գրել էր շրջաբերական թղթեր զանազան խաների, բեկերի և ազդեցություն ունեցող անձինքների անուններով.— այդ թղթերը հանձնեց ճարպիկ Ասրի-բեկին տեղ հասցնելու համար։ Նա մի ընդարձակ շրջան պիտի գործեր Թալիշի, Բաքվի, Դերբենդի, Շիրվանի և Շաքիի գավառներով, իսկ հետո պիտի անցկենար դեպի Դաղստանի կողմերը։ Բայց Ասրի-բեկը, քրիստոնյա ռուսների շահերը գերադասելով պարսիկների շահերից, դավաճանեց իր տիրոջը։ Նա Աբաս-Միրզայի թղթերը փոխանակ իրանց նշանակած տեղը հասցնելու, ուղղակի դիմեց Գանձակ և բոլորը հանձնեց իշխան Մադաթովին։ Թե ո՛ր աստիճան ծանրակշիռ նշանակություն ուներ ռուսների համար մի այդպիսի մատ-

նությունը պատերազմի ժամանակ — ինքնըստինքյան հասկանալի է։ Թողյալ այդ, որպես Աբաս-Միրզայի մերձավորներից մեկը, Ասրի-բեկին հայտնի էին պարսից բանակի բոլոր գաղտնիքները, նրանց թույլ և զորավոր կողմերը, թագաժառանգի դիտավորությունները և այլն,— այդ բոլորը հաղորդեց նա իշխան Մադաթովին այն ժամանակ, երբ պարսից զորքերը գտնվում էին Գանձակից 7 վերստ հեռավորության վրա, իսկ գեներալ Պասկևիչը և իշխան Մադաթովը Գանձակում նստած, ամենևին տեղեկություն չունեին։

Թե որպես վերջացավ Գանձակի մոտի կռիվը, մեր ընթերցողներին հայտնի է։ Այդ հաղթությամբ իշխան Մադաթովը և գեներալ Պասկևիչը ազատեցին ամբողջ Անդրկովկասը։

Իշխան Մադաթովը մեծ խոստումներով ընդունեց Ասրի-բեկին իր թիկնապահների խմբի մեջ։ Պարսից թագաժառանգի սիրելին դարձավ նրա ձեռքում մի լավ գործիք։

## XLVI

Պարսիկներին մշտական սարսափի մեջ պահելու համար հարկավոր համարվեցավ նրանց մի սաստիկ հարված տալ նույնիսկ պարսկական հողի վրա։ Այդ նպատակով 26 թվի դեկտեմբերի սկզբներում իշխան Մադաթովը ստացավ գեներալ Երմոլովից գաղտնի հրահանգ մի արշավանք գործելու դեպի Երասխի մյուս կողմը։

Ձմեռային արշավանքը մի անծանոթ և լավ ճանապարհներից զուրկ երկրում, սաստիկ պիտի դժվարացներ իշխան Մադաթովին ցանկացած հաջողությունը գտնել, եթե նա չունենար իր հետ մի այնպիսի ճարպիկ առաջնորդ, որպիսին էր Ասրի-բեկը։ Այդ երիտասարդը, երկար ժամանակ Պարսկաստանում մնալով, ծանոթ էր պարսից թե երկրի և թե բնակիչների բոլոր դրությունների հետ։

Իշխանը ուներ իր հետ 42-րդ եգերյան զորագնդից մի բատալիոն միայն, նրա մնացած զորքը բաղկացած էր Ղարաբաղի հայ հետևակներից և ձիավորներից։ Դեկտեմբերի 28-ին նա արդեն գտնվում էր Խուդափիրինի կամուրջի մոտ, որը այդ կողմից միակ անցքն է Երասխ գետից։ Այստեղ միացավ նրա հետ պոլկովնիկ Մեսչենկոն իր զորքերով։ Բայց կամուրջից անցկենալ անհնարին էր, պարսիկները նրա կամարներից մի քանիսը խորտակել էին։

Չնայելով սաստիկ ցրտին, զորքը անցավ գետի միջով, ուր ջուրը հասնում էր մինչև նրանց թիկունքը։

Պարսից հողի վրա նրանց ոչ ոք չհանդիպեց և Դիլայուրտի ձորամիջով սկսեցին առաջ գնալ դեպի Սամբուր գետը։ Տարվա այդ ժամանակ, այդ կողմերում, իրանց անասունների հետ, գետնափոր ձմեռանոցներում բնակվում էին զանազան խաշնարած ցեղեր, որպիսիներն էին շահսևանները, շաղաղիները, աջալիբեյիները և այլն։ Դրանք երբեմն ասպատակություններ էին գործում Ղարաբաղի և ռուսաց նոր գրաված մյուս գավառների վրա և ավարառություններ էին անում։ Իշխան Մադաթովի առաջին գործը եղավ պատժել դրանց, ասիացի ավազակների հետ վարվելով ասիական կերպով։ Հարձակվեցավ նրանց ձմեռանոցների վրա, հափշտակեց մինչև 20,000 ոչխար, բազմաթիվ ուղտեր, ձիաներ, տավարներ և այլ իրեղեններ։

Մտնելով Միշկինի գավառը, և օգուտ քաղելով տեղային շահսևանների միամտությունից, իշխանը լուր տարածեց, թե կամենում է այնտեղից անցնել դեպի Թալիշի խանությունը։ Շահսևանները հավատալով, հոժարեցան նրան ճանապարհ տալ իրանց երկրի միջով։ Բայց իշխանը փոխանակ դեպի Թալիշի խանությունը գնալու, հարձակվեցավ խաղաղ շահսևանների ձմեռանոցների վրա, և բարբարոսական կոտորածներից հետո, հափշտակեց նրանցից 2,000 ուղտեր, 10,000 կովեր և եզներ, 60,000 ոչխարներ։

Դեպի ամեն կողմ սարսափ տարածելով, հետո մտավ նա Միշկինի գավառաքաղաքը, Լորի, ուր ներկայացավ նրան տեղային կառավարիչ խանը, խնդրելով խնայել իրանց։ Այստեղ նա երդում ընդունեց մահմեդականների ներկայացուցիչներից, որ հավատարիմ մնան ռուսաց կայսրին, թեև սրի ուժով առած երդումը մի առանձին նշանակություն չուներ։

Թողնելով Լորիի մեջ մի բատալիոն հետևակ և 600 կազակներ, իշխանը մնացած զորքերով սկսեց դիմել դեպի Ահար, որը Ղարաբաղի գլխավոր քաղաքն է։ Ճանապարհին, Նասիր-Աբադ գյուղում, նրա առաջ եկան Ղարադաղի խանի պատգամավորները և հայտնեցին իրանց հնազանդությունը։ Այստեղ հանդիպեցին նրան Ղարադաղի հայոց քահանաները իրանց մելիքների և տանուտերների հետ, որոնք նույնպես հպատակություն հայտնեցին։ Իշխանը պահեց նրանց իր մոտ և հունվարի 6-ին Թնդանոթների որոտմունքով միասին կատարեցին սուրբ ծննդյան և մկրտության տոնի հանդեսը։ Բայց հայերը այդ համակրության համար

սաստիկ պատժվեցան, երբ ռուսաց զորքերը թողեցին պարսից հողերը։

Հունվարի 7-ին իշխանը գտնվում էր Ղարադաղի գլխավոր քաղաքի՝ Ահարի մոտ. 17 վերստ հեռավորության վրա հանդիպեցին նրան քաղաքի ավագները, հայտնելով իրանց հնազանդությունը։ Ահարից նա առաջ չգնաց և նույն ամսի 9-ին կրկին վերադարձավ դեպի Ղարաբաղ։

Այդ արշավանքը կատարվեցավ, որպես վերևում հիշեցինք, տարվա ամենացուրտ և վտանգավոր ժամանակում։ Ռուսաց զորքերը մեծ արգելքների և անհաջողությունների պիտի հանդիպեին, եթե չունենային մի այնպիսի ճարպիկ և քաջ առաջնորդ, որպիսին էր Ասրի-բեկը։

Այդ արշավանքը այն օգուտը ունեցավ, որ իշխանը տարածեց սարսափ բոլոր սահմանակից ցեղերի վրա, բացի դրանից, ծանոթացավ Պարսկաստանի ներքին դրության հետ և իր հավաքած տեղեկությունները հաղորդեց կոմս Դիբիչին, որը այդ ժամանակ գտնվում էր Թիֆլիսում։ Արշավանքը ունեցավ և նյութական օգուտ. նա բերեց իր հետ ահագին ավար և կողոպուտ։ Իր ավարի մի մասը բաժանեց նա հայոց կամավորներին, որոնք ռուսաց կառավարությունից ոչինչ չէին ստանում, իսկ մնացած մասը թողեց ռուսաց զորքերի վայելման համար։ 2,000 ուղտերը գործ էին ածում նոր բորբոքված ռուս-պարսկական պատերազմի ժամանակ ծանրություններ տեղափոխելու։

Ռուս-պարսկական նոր պատերազմը սկսվեցավ 1827 թվի գարունքին։ Դեռ մարտի 17-ին գեներալ Երմոլովը հանձնեց իշխան Մադաթովին մի առանձին զորաբաժնի հրամանատարությունը և հրամայեց պատրաստ լինել գարնանային արշավանքին մասնակցելու համար։ Նրան պատվիրված էր իր զորքերի պակասը լրացնել Ղարաբաղի կամավորներով։ Այդ պատվերը արագությամբ կատարեց նա և կամավորների մեջ հայերը մեծամասնություն էին կազմում։

Դեռ իրան խոստացված զորքերի մեծ մասը չհասած, իշխան Մադաթովը իր կամավորներով և ձեռքի տակ գտնված փոքրաթիվ պատրաստի զորքերով առաջինը եղավ, որ սկսեց հարձակողական գործողություններ դեպի Պարսկաստան։ Ապրիլի 18-ին նա արդեն գտնվում էր Խուդափիրին կամուրջի մոտ։ Այս անգամ գտավ կամուրջը բոլորովին ոչնչացրած պարսիկներից. կամարների սյուներն էին մնացել միայն։ Գարնանային հեղեղների հորդության

պատճառով գետի միջով անցնել անկարելի էր։ Թվով 5,000 պարսիկներ կանգնած էին գետի ափի մոտ։ Նրանց գնդակների տարափի տակ իշխանը հրամայեց կամուրջը պատել տախտակամածով, որի վրայից անցավ զորքը։ Հենց առաջին օրում նրան հաջողվեցավ ցրվել պարսից զորքերը և ոտք դնել պարսից հողի վրա Երասխի աջ կողմում։ Բայց այստեղից առաջ գնալ չկարողացավ նա, հենց այստեղ վերջացավ նրա մասնակցությունը 27 թվականի ռուս-պարսկական պատերազմին։

Ապրիլի 22-ին հանկարծ հրաման ստացավ նա գեներալ Պասկևիչից, որ իր հրամանատարությանը հանձնված զորաբաժինը հանձնե գեներալ-մայոր Պանկրատևին։

Տխուր, սրտաբեկ կերպով վերադարձավ իշխանը Ղարաբաղ։ Այստեղ կանգ չառեց նա, և մինչև անգամ առանց իր կալվածները տեսնելու, հեռվից վերջին անգամ հայացք ձգելով իր հայրենիքի, իր ծննդյան տեղի վրա, հեռացավ, գնաց Թիֆլիս։

Թե ի՞նչ էր իշխան Մադաթովին այսպես անակնկալ կերպով հետ կանչելու պատճառը,— այդ հարցը բացատրվում է միայն զանազան ենթադրություններով և զանազան տարակուսանքներով, որոնք ստուգության կարոտ են։ Այսքանը կասենք, որ նա ամբողջ հինգ ամիս մնաց Թիֆլիսում կատարյալ անգործության մեջ, մինչև վերջապես իրավունք ստացավ գնալու Ս. Պետերբուրգ։

Դեռ ռուս-պարսկական պատերազմը բոլորովին վերջացած չէր, երբ 1828 թ. ապրիլի 14-ին հրատարակվեցավ ռուս-թուրքական պատերազմը։ Իշխան Մադաթովը նշանակվեցավ առանձին զորաբաժնի հրամանատար և Դունայի կողմից գնաց թուրքերի հետ կռվելու։ Այդ արշավանքի մեջ ևս, որպես կարելի էր սպասել նրանից, ամեն կռիվների մեջ հանդիսացավ փառավոր հաղթություններով։ Բայց դեռ պատերազմի վախճանին չհասած, հիվանդացավ և նույն տարվա սեպտեմբերի 4-ին վախճանվեցավ իր բանակի մեջ, Շումլայի պարիսպների մոտ, թշնամու երկրի վրա։ Նրա մարմինը հանդիսավոր կերպով տարվեցավ նույն բերդը, թաղվեցավ սուրբ Գեորգ զորավարի եկեղեցու գավթում[1]։ Նրա թաղման հանդեսին ներկա էին մինչև անգամ նրա թշնամիները, թուրք օֆիցերները, և բազմաթիվ մահմեդականներ, որոնց նա շատ անգամ ամբակոծել էր։

[1] Հետո հանգուցյալի ամուսնի խնդրելով, բարձրագույն հրամանով մարմինը բերվեցավ Ռուսաստան և դրվեցավ Ալեքսանդրա-Նևյան մենաստանի մեջ (Александра-Невская лавра):

«Ճակատագրով վիճակված էր իշխանին հանդիպել իր խաղաղ վախճանին թշնամու երկրի վրա, որը վկա էր եղել նրա հաղթությունների նրա երիտասարդական հասակում, որը տեսել էր նրա փառավոր գործերը նրա այրական հասակում։ Նրա մարտակիցների անկեղծ տրտմությունը և հաղթված թշնամիների խորին հարգանքը հուղարկավորում էին նրան դեպի գերեզման։

Դա խիստ փաղաքշական է. այդ է պարգևը կյանքի աշխատանքների և կռիվների։

Մի հայացք ձգելով նրա անցած ճանապարհի վրա, նրա գործերի, բնավորության և նրա թողած հիշատակների վրա, համարձակ կարելի է հայտնել հետևյալ կարծիքը նրա մասին, թե բնությունը ստեղծել էր նրան միայն պատերազմող լինելու համար։ Ձնայելով կրթության պակասությանը, բայց բնականից ունենալով անհամեմատ լուսավոր խելք և հասկացողություն, ունենալով բնավորության զորություն և հաստատամտություն, նա իր պարզ և սուր ըմբռնողությամբ փոխարինում էր այն հմտությունները, որոնց ուրիշները հազիվ կարողանում են ստանալ արհեստի և գիտության շնորհիվ։ Հայացքների ճշտությունը երբեք չէր սխալեցնում նրան, ոչ պատերազմական դիրքեր ընտրելու ժամանակ և ոչ թշնամու ուժերը և դիրքերը հետազոտելու ժամանակ։ Նրա կշռադատության ձիրքը երբեմն զարմացնում էր մինչև անգամ նրանց, որոնք ճանաչում էին նրան։ Բավական էր հարևանցիորեն հայացք ձգել մի որևիցե անծանոթ երկրի վրա, նա արդեն կատարյալ հասկացողություն կստանար նրա տեղագրական դրության մասին։ Մի քանի անգամ հանդիպելով իր նոր ախոյանին, նա արդեն կչափեր նրա ուժերը։ Երբեք չէր սխալվում նա, երբ նշանակում էր այն կետերը, թե որտեղ պետք է ընդդիմադրել թշնամուն կամ որտեղ պետք էր հարվածել նրան։ Երբ հասնում էր հարձակման վճռական րոպեն, որը նա միշտ սկզբից նախագուշակում էր, գտնում էր նրան միշտ պատրաստ։

Բայց հայացքների և ըմբռնողության ճշտությունը, խելքի և հասկացողության խորությունը գտնվում են շատ զորավարների մեջ և մնում են ապարդյուն։ Նրանք բավական են մի խորհրդատվի համար, բայց բավական չեն մի զինվորական առաջնորդի համար։ Մադաթովը միացնում էր դրանց հետ և ուրիշ ամենանշանավոր հատկություններ. անձնական քաջություն, որը չէր վհատում ոչ մի վտանգի առջև, առցային սառնասրտություն, որը չէր վրդովվում ոչ մի անակնկալ դեպքի ժամանակ, և այն, որ ամե-

նից հաշվացյուտն է,— դա էր նրա բարոյական արիությունը, որը չէ վախենում ոչ մի պատասխանատվությունից։ Վճռելու մեջ խիստ համարձակ էր նա, իսկ իր դիտավորությունները կատարելու մեջ չափազանց շուտափույթ։ Այդ արագությունը, որը մեծ զորություն է պատերազմի գործի մեջ, որը նրա պաշտած հանճարների՝ Նապոլեոնի և Սուվորովի գլխավոր հատկանիշն էր,— էր միևնույն ժամանակ հաստատ երաշխավորություն իշխան Մադաթովի բոլոր ձեռնարկությունների հաջողությանը։

Այդ եզրակացությունները ակամայից ներկայանում են մեր մտքում, երբ քննում ենք իշխան Մադաթովի մշտական հաջողությունները անհամեմատ գերազանց ուժերի դեմ, երբ տեսնում ենք այն նշանավոր հետևանքները, որոնց հասնում էր նա խիստ սահմանափակ միջոցներով, և երբ ի նկատի ենք առնում այն անհամեմատ փոքր կորուստը, որ կրում էին նրա զորքերը ամենափառավոր հաղթությունների մեջ։ Երիտասարդական հասակում իր ուրախ բնավորությամբ գրավեց նա իր ընկերների սերը. իր ստորադրյալների հետ սրտաբաց էր նա, խիստ սաստիկ կարգապահություն պահպանելով հանդերձ, սիրում էր նա իր զինվորներին, միշտ ուներ նրանց մասին ջերմ հոգատարություն, բորբոքում էր նրանց ոգին, իր վարմունքով բարձրացնում էր նրանց բարոյական զորությունը և դրանով ներշնչում էր իր և նրանց մեջ այն փոխադարձ հավատարմությունը, որը տանում է դեպի քաջագործություններ։ Բախտավոր գտնվելով իր բոլոր ձեռնարկությունների մեջ, նա հավատում էր իր բախտին, որը երբեք չէր դավաճանում նրան։ Այդ հավատը դեպի իր աստղը շատ անգամ նկատվել է մեծ զորավարների մեջ։ Հարևանցիորեն դատողները ծաղրում են այդ հավատը, իսկ ավելի փոքր քննողները հարգում են նրան, որովհետև նրա մեջ միանում են մարդու թե ճշմարիտ զորությունը և թե զորության զգացմունքը։ Ավելացնում ենք, որ նա հավատում էր ռուսաց զինվորի ոգուն և նրա համակրությանը դեպի իր գլխավորը, և այդ պատճառով նրա հրամանատարության ներքո զորքը առաջ էր գնում ուրախությամբ, ասելով. «Մենք գիտենք, որ նրա հետ ոչ մի մարդ իզուր չի կորչի»։ Սկսած կապիտանի աստիճանից իշխան Մադաթովը իր քաջությամբ միայն ստացավ այն բոլոր գերազանցությունները, այն բոլոր պատվանշանները, որ ուներ նա։ Այսպես էր խոսում նա ինքը, և այսպես կասեն ամենքը, որոնք ծանոթ են նրա կատարած ծառայությունների հետ։

Նա ապրեց և մեռավ որպես հայրենիքի հավատարիմ որդի,

իր անձնազոհությամբ միշտ նվիրված մնաց իր Թագավորին, մըշտապես հոգ տանելով Ռուսաստանի փառքի համար»[1]։

Մենք՝ մեր կողմից կավելացնենք, որ Ղարաբաղը իրավունք ունի պարծենալու, որ տվեց Ռուսաստանին մի այսպիսի հերոս, բայց ցավում ենք, որ այդ քաջը իր հայրենիքի սերը գրավել չկարողացավ...։

Իշխան Մադաթովը ուղղակի ժառանգ չթողեց։ Մահից հետո նրա իշխանուհի տիկինը եկավ Ղարաբաղ, որ հանգուցյալի ընդարձակ կալվածները բաժանե նրա հեռավոր և մերձավոր ազգականների մեջ, և ինքն էլ իր մասը ստանա։ Բայց ժառանգների և տիկնոջ մեջ անհամաձայնություններ ծագեցին, այդ պատճառով տիկինը վշտացած գնաց Ս. Պետերբուրգ և բոլոր 15 գյուղերը տվեց արքունի գանձարանին, ստացավ մի նշանավոր գումար։ Ժառանգները մնացին առանց բավականություն ստանալու։

---

27 թվի ռուս-պարսկական պատերազմը վերջացավ հօգուտ Ռուսաստանի. Երասխ գետը նշանակվեցավ սահմանագիծ երկու պետությունների մեջ. և այդ գետի ձախ կողմում գտնված բոլոր պարսկական խանությունները մտան ռուսաց տիրապետության ներքո։

Ռուսաստանը դրեց Պարսկաստանի վրա պատերազմական տուգանք, և որ ամենագլխավորն էր, 40,000 հայեր Պարսկաստանից գաղթեցրեց և բնակեցրեց իր նոր գրաված երկրների վրա։

Որպես պարսից խաների, այնպես էլ հայոց մելիքների իշխանությունը վերջացավ։ Այնուհետև հայոց մելիքների ժառանգները այլևս ուրիշ բանի վրա չէին մտածում, աշխատում էին միայն մտնել ռուսաց ծառայությունների մեջ, աստիճան և շքանշաններ ստանալու համար։ Այդ փառասիրական ձգտումը անգիտակցաբար այն օգուտը ունեցավ, որ մելիքների ժառանգները ռուսաց ծառայության մեջ գտնվելով, և ռուսաց օրենքների ու ազդեցության տեր անձինքների հետ ծանոթանալով, կարողացան ձեռք բերել իրանց հայրենական կալվածների մի մասը։

Բայց մի հարց կմնա անվճիռ, թե ինչո՞ւ հայոց տիրապետող մելիքների ժառանգներն ընդունվեցան իբրև տոհմական ազնվականներ և ոչ իբրև իշխանազներ, քանի որ Խամսայի հինգ մելիքությունները կազմող տները իսկապես իշխանական ծագումից էին։

---

[1] «Жизнь генерал-лейтенанта князя Мадатова». Издание второе. С. Петербург, 1863 г. Երես 188—191։

# ՎԵՐՋԱԲԱՆ

*Խամսայի մելիքությունների պատմությունը վերջացավ։ Երբ այդ պատմությունը մաս-մաս լույս էր տեսնում «Մշակի» համարների մեջ, ամեն անգամ, երբ հանդիպում էի ծանոթներիս, նրանց առաջին խոսքը լինում էր՝ «լավ է...», իսկ հետո մի հարց՝ «ո՞րտեղից եք առել այդ տեղեկությունները...»։*

*Այդ հարցի մեջ, որ ստեպ առաջարկում էին ինձ, նշմարվում էր մի տեսակ կասկած, մի տեսակ անվստահություն... Բարեկամներիցս մի քանիսը մինչև անգամ նկատեցին ինձ. «Մի՞թե մենք ունեցել ենք Ղարաբաղում այսպիսի իշխանություններ, եթե կային, ինչո՞ւ մենք չգիտեինք...»։*

*Այդ մարդիկը, որոնք Վանի բևեռագրների վրա դատողություններ են անում, որոնք ջրհեղեղյան անցքերի վրա են խոսում, զարմանալի է, որ իրանց քթի տակ, մեզանից կես դար առաջ կատարված իրողությունների վրա նայում են իբրև առասպել, իբրև ֆանտազիայի ծնունդ։*

*Իմ ընթերցողների կասկածը փարատելու համար ես հարկավոր եմ համարում ցույց տալ այն աղբյուրները, որոնցից քաղել եմ իմ պատմությունը։*

*Դեռ 1881 թվի հուլիս ամսում, նախքան իմ ճանապարհորդությունը դեպի Սյունյաց աշխարհը, «Մշակի» համարներից մեկում ես տպեցի մի հոդված, որի մեջ բացատրում էի իմ ճանապարհորդության նպատակը, այն է՝ հավաքել Ղարաբաղի մելիքների պատմության համար թե գրավոր և թե բերանացի տեղեկություններ,— և հրավիրում էի ձեռնահաս անձինքներին օգնել ինձ իմ ձեռնարկության մեջ, եթե գտնվում էին նրանց մոտ որևիցե պատմական նյութեր։*

*Որպես մեր ամեն այդ տեսակ հրավերքները մնում են ապարդյուն, իմ հրավերքը ևս մի առանձին հետևանքի չհասավ։ Ինձ մնում էր անձամբ գնալ Ղարաբաղ, մտնել ամբոխի մեջ և դիմել այն հարուստ պատմական աղբյուրներին, որը դեռևս թարմ կերպով պահպանված է ժողովրդական ավանդությունների մեջ։*

*Ես անցա Ղարաբաղի հինգ գավառները, որ կազմում էին Խամսայի հինգ մելիքությունների իշխանության տեղերը։*

*Գանձակից գնացի Գյուլիստանի գավառը։ Այստեղ են Մելիք-Բեգլարյանների կալվածները. այստեղ տիրում էին նրանց նախնի-*

քը։ Ղարա-Չինար գյուղում, մի ամբողջ շաբաթ մնալով Մելիք-Բեգլարյան Սերգեյ-բեկ և Ալեքսան-բեկ և Ալեքսան-բեկ եղբայրների տանը, տեղային ծերունիները գնում ու գալիս էին ինձ մոտ, ոգևորված պատմում էին իրանց երկրի մելիքների պատմությունը։ Ես գրում էի։ Հետո սկսեցի ճանապարհորդել Գյուլիստանի զանազան տեղերը, այլևայլ հիշատակարաններ քննելու համար։ Տեսա Մելիք-Բեգլարյանների տոհմային գերեզմանատունը Հոռեկի վանքի մոտ, մի ամայի, անմարդաբնակ տեղում, մթին անտառի մեջ, և դարերով աճած թփերի, մացառների մեջ գտա այդ տոհմի հերոսների մոռացված շիրիմները։ Մեծ դժվարությամբ հաջողվեցավ ինձ կարդալ մամռապատ տապանաքարերի արձանագրությունները, որոնք ժամանակագրական և տոհմագրական կողմից պատմության համար նշանակություն ունեին։ Հենց նույն վանքի մոտ դեռ կանգնած է մի հոյակապ, սյունազարդ ամրոց, բարձր աշտարակներով, բազմաթիվ սենյակներով, որոնց մեջ մի ժամանակ բնակվում էին Մելիք-Բեգլարյանների նախնիքը։ Տեսա և Գյուլիստանի ահռելի բերդը, որ իր կիսավեր դրության մեջ դարձյալ հրաշալի է։ Գյուղերը պտտելով, քննում էի եկեղեցիներում կամ մասնավոր անձինքների մոտ գտնված գրչագիր մատյանների հիշատակարանները, քննում էի եկեղեցիների կամ վանքերի պատերի վրա գտնըված արձանագրությունները։ Գանձասարի վանքի պատի վրա մի ընդարձակ արձանագրություն նվիրված է Մելիք-Բեգլարյանների հիշատակին։

Գյուլիստանից անցա Ջրաբերդի գավառը։ Այստեղ հավաքեցի այն ավանդությունները, որ պահպանված էին Մելիք-Իսրայելյանների մասին։ Գետաշեն գյուղի եկեղեցում գտա մի գեղեցիկ գրչագիր ավետարան[1], արծաթե կազմով, որի հիշատակարանի մեջ արձանագրված էր Մելիք-Իսրայելյանների տոհմագրությունը։ Թարթար գետի հակառակ ընթացքով դեպի վեր բարձրանալով, ամեն քայլում հանդիպում էին Մելիք-Իսրայելյանների հիշատակարանները։ Ես այցելություն գործեցի Եղիշե առաքյալի ամայի վան-

[1] Այդ ավետարանը մի ժամանակ գերի ընկած լինելով Պարսկաստան, Մելիք-Աթամ մեծը թափել է գերությունից, և գրել է տվել նրա վերջին թերթերի վրա իր տոհմի հիշատակարանը։ Այդ գիրքը հայկական արհեստի ամենագեղեցիկ գործերից մեկը կարելի է համարել, արծաթե կազմը այնպիսի հրաշալի քանդակներ ունի, մագաղաթը այնքան նուրբ է, պատկերները այնքան կենդանի են և գրիչը այնքան կանոնավոր է, որ կարող է ամենանշանավոր թանգարանի զարդը լինել։

քին, որ գտնվում է բոլորովին կուսական անտառների խորքում, սարսափելի լեռների բարձրավանդակի վրա։ Դա վանք չէ, այլ վանքերի մի խումբ է։ Ավելի քան ութն տաճարներ կանգնած են միմյանց մոտ, այնքան մերձ, որ մի մարդ հազիվ կարող է նրանց մեջտեղից անցնել։ Այդ տաճարներից մեկի մեջ դրած է Վաչական թագավորի գերեզմանը, իսկ նրա դռան հանդեպ գտա Ջրաբերդի հզոր տիրապետողի՝ Մելիք-Աթամ մեծի փառավոր շիրիմը։ Այդ վանքում տեսա այն աշտարակը, որի մեջ բնակվում էր իմ պատմության հերոսներից մեկը՝ երևելի Դալի-Մահրասան (Ավագ վարդապետը)։ Աշտարակի վերին հարկի միջից այժմ աճել է մի ահագին կաղնի ծառ։ Մատաղիս գյուղից ինձ հետ վեր առած ուղեցույցը, որը այն ահռելի լեռների և անտառների համարձակ որսորդներից մեկն էր, առանց լռելու պատմում էր ինձ Դալի-Մահրասայի գործերը։ Վարդապետ-հերոսի քաջագործությունները արձագանք էին գտել երիտասարդի տպավորվող սրտում։

Ծղիշե առաքյալի վանքից անցա Երիցմանկաց վանքը։ Այդ վանքի մոտ գտնվում է Ջրաբերդ կոչված հռչակավոր ամրոցը, որ և կոչվում է Ջերմուկի բերդ։ Այդ բերդի միջից վտանգի ժամանակ կռվում էին Մելիք-Իսրայելյանները։ Երիցմանկաց վանքում մնացի մի օր։ Ծերունի Տոնի-ապերը, միակ միաբանը այն վանքի, որի մեջ մի ժամանակ կաթողիկոսներ էին նստում, ամբողջ գիշերը պատմում էր ինձ Ջալաղան յուզբաշու և Մելիք-Իսրայելյանների տոհմի զանազան ներկայացուցիչների մասին, և զարմանում էր, որ նրա պատմածներին այնքան նշանակություն էին տալիս, որ գրի էին առնում։

Երիցմանկաց վանքից ոչ այնքան հեռու, Թարթար գետի աջ ափերի մոտ, մի անտառապատ ձորի մեջ գտնվում են ավերակները մի հին քաղաքի, որի տեղը մինչև այսօր կոչվում է «Մայրաքաղաք» կամ «Քղաքատեղ»։ Այստեղ տեսա Մելիք-Աթամ մեծի կիսավեր պալատը, որ իր փոշիների մեջ դարձյալ հրաշալի է։ Իսկ Նոր Մոխրաթաղ գյուղի մոտ, Իննմասանց անապատի հանդեպ տեսա Մելիք-Աթամ մեծի ամրոցը, որ բոլորովին ամբողջությամբ մնացած է։ Դռների ճակատների վրա կան երկար արձանագրություններ, որոնք պատմական նշանակություն ունեն։

Այստեղից ես հատկապես գնացի Մարդակերտ անունով գյուղը, մի մոտ հարյուրամյա ծերունի տեսնելու համար, որի մասին առաջուց լսած էի։ Նրան կոչում են Միրզա-Աարի, հմուտ է հայերեն, պարսկերեն, արաբերեն և թուրքերեն լեզուների գրագիտու-

թյան մեջ. մի ժամանակ թարգմանի պաշտոն է կատարել Շուշի բերդի վերջին իշխողների՝ Իբրահիմ-խանի և Մեհտի-խանի մոտ, իսկ մի ժամանակ ծառայել է նույն բերդում գտնված գերմանացի միսիոնարների մոտ։ Այդ կենդանի պատմագրությունը երկու ամբողջ օր ինձ գրել էր տալիս Ղարաբաղի մելիքների և Շուշիի խաների անցքերը, որոնք նրա հիշողության մեջ խիստ անմոռաց կերպով պահպանված էին։ Զառամյալ ծերունին երեխայի նման ուրախանում էր, որ վերջապես գտնվեցավ մի մարդ, որին հաղորդեց իր սրտին մոտ եղած տեղեկությունները։ Ինքը գրելու անընդունակ էր դարձել. աչքերը չէին տեսնում, իսկ ձեռքերը դողում էին։ Նա տվեց ինձ մի հնամաշ տետրակ (թերթերից պակաս), որի մեջ կային զանազան ժամանակագրական նկատողություններ Ղարաբաղի նշանավոր անցքերի մասին։ Մարդակերտից անցնելով Կուսապատ գյուղը, այստեղ տեղեկություններ հավաքեցի Աթաբեկյանների մասին։ Հետո գնացի Գյուլ-Յաթաղ բերդը, որ պատկանում էր Մելիք-Ալլահվերդյաններին։ Այստեղ տեսա Մելիք-Ռուստամի ամրոցը, տեսա նրանց տոհմային գերեզմանատունը։ Մի քանի օր մնալով բժիշկ Աղասարյանցի տանը, ինձ հաջողվեցավ բավական նյութեր հավաքել Մելիք-Ալլահվերդյանների պատմության համար։

Այստեղից գնացի Խաչեն՝ Հասան-Ջալալյան իշխանների դարևոր բնակավայրը։ Տեսա Գանձասարի հռչակավոր վանքը—Աղվանից կաթողիկոսների վեհարանը, որը վերջին ժամանակներում դարձավ Ղարաբաղի մելիքների գաղտնի ժողովների խորհրդարանը։ Գանձասարի վանքի տաճարի մեջ և նրա շուրջը գտնված գերեզմանատներում ես քննեցի Հասան-Ջալալյան կաթողիկոսների և մելիքների շիրիմները։

Գանձասարի վանքի գյուղում, Վախթանգ-բեկ Հասան-Ջալալյանի տանը գտա մի հնամաշ տետրակ (սկզբի թերթերից պակաս)։ Դա սկսած, բայց չավարտված մի պատմության սևագրությունն է, գրված Բաղդասար միտրոպոլիտի ձեռքով, գլխավորապես Հասան-Ջալալյանների տոհմի վերաբերությամբ։ Առաջին մասը այնքան հետաքրքիր չէ, որովհետև քաղած է մեզ արդեն հայտնի Կաղանկատվացիի և Կիրակոս Գանձակեցու գրքերից։ Իսկ վերջին մասը բովանդակում է իր մեջ հետաքրքիր տեղեկություններ Ղարաբաղի մելիքների, Պետրոս Մեծի և վրաց Վախթանգ իշխանի հետ ունեցած հարաբերությունների մասին, նրանց հարաբերությունների մասին Փանահ-խանի և Իբրահիմ-խանի հետ, վերջինիս կատարած բար-

բարոսությունները Հասան-Ջալալյան Հովհաննես կաթողիկոսի և Ղարաբաղի մելիքների վերաբերությամբ. համառոտ կերպով նկարագրված է Ղարաբաղի մելիքների իրանց հպատակների հետ դեպի Վրաստան գաղթականությունը և այնտեղից վերադարձը և այլն։ Պատմությունը հասցրած է մինչև 1808 թվականը, այսինքն՝ մինչև այն ժամանակը, երբ Բաղդասար միտրոպոլիտը հայ գաղթականների հետ ինքը վերադարձավ Վրաստանից։ Տետրակի մեջ տեղ-տեղ ջնջված է և միևնույն գրչով հետո ուղղված է։ Լուսանցքների վրա ժամանակ առ ժամանակ հավելվածքներ են արել, գրիչը նույնն է, բայց մելանի գույները զանազանվում են։ Ինչպես հիշեցի, այդ տետրակը սևագրություն է միայն, ցանկալի կլիներ, եթե դրա ամբողջը և սրբագրվածը գտնվեր։ Հեղինակը անցքերի ժամանակակիցը լինելով, նրա գրվածը ավելի արժանահավատ պետք է համարել։

Խաչենում տեսա Հասան-Ջալալի բերդը, որ այժմ կոչվում է Թարխանա (Խոխանա) բերդ, տեսա այդ բերդի ստորոտում իշխանի պալատի ավերակները, որ կոչվում են «դարպասներ»—տեսա հրաշալի Կաչաղակաբերդը, այցելություն գործեցի սուրբ Հակոբա վանքին, վերջապես տեսա մի պատմական ժողովուրդ, որ ճանաչում է այդ հիշատակարանները և հազարավոր բաներ է խոսում նրանց մասին։

Խաչեն գետի ընթացքով ցած իջնելով և թեքվելով դեպի Խընձիրստան գյուղը, տեղեկություններ հավաքեցի Մելիք-Միրզախանյանների մասին։ Այստեղ մնացի միայն մեկ օր, որովհետև սաստիկ վատ ընդունելություն գտա։ Ինձ առհասարակ չէր հաջողվում այն տեղերում, ուր գտնվում էին մելիքների ժառանգներ, և մանավանդ երբ նրանց տոհմի պատմության մեջ կային արատավոր կետեր։ Մելիք-Միրզախանյանների պատմությունը շատ մաքուր չէ։

Այստեղից անցա Շուշի բերդը։ Իջևանելով տեղային առաջնորդարանում, ինձ հաջողեցավ քննել հոգևոր կոնսիստորիայի արխիվը։ Ոչինչ չգտա։ Բոլոր հին դոկումենտները, որոնք կարող էին հին Ղարաբաղի պատմության վրա փոքրիշատե լույս ձգել, ինչպես ասում էին, զանազան ժամանակներում գողացել էին։ Այստեղ ես ծանոթացա ծերունի Հաթամի հետ, որը մի ժամանակ Բաղդասար միտրոպոլիտի կանցլերն է եղել։ Նա տվեց ինձ բավական մանրամասն և ընդարձակ տեղեկություններ Ղարաբաղի կաթողիկոսների, մելիքների և խաների մասին։ Հարգելի ծերունին

իր պատմությունները այնքան հաճախ անգամ կրկնել էր, որ «Հայր մեր»-ի նման անգիր սերտած էր։

Շուշիում Գրիգոր-բեկ Հասան-Ջալալյանը հանձնեց ինձ մի հարուստ հավաքածու զանազան ֆիրմանների, հրովարտակների, պաշտոնական թղթերի, որ շնորհված են եղել պարսից շահերից և օսմանցոց տիրապետողներից Ղարաբաղի կաթողիկոսներին ու մելիքներին։ Այդ հավաքածուի մեջ գտնվում է Հասան-Ջալալյան տոհմի ամբողջ ճյուղագրությունը ժամանակագրական կարգով. բացի դրանից, հավաքված են օրինակները այն արձանագրությունների, որ մնացել են քարերի վրա և որ վերաբերում են այդ տոհմին։ Հավաքածուն կազմել է Բաղդասար միտրոպոլիտը և յուրաքանչյուր թղթի թարգմանության տակ իր ձեռքով ստորագրել է «ուղիղ է ընդ նախագաղափարին»։ Թե որ աստիճան տիրապետում էր Բաղդասար միտրոպոլիտը պարսկերեն, թուրքերեն, ռուսերեն և վրացերեն լեզուներին, որ կարողանար այդ լեզուներով գրված թղթերի թարգմանությունը համեմատել բնագրի հետ,— այդ մեզ հայտնի չէ, միայն այսքանը կասենք, որ թարգմանությունը սաստիկ անպիտան է, մանավանդ աշխարհաբար թարգմանվածները. շատ տեղերում ոչինչ չէ հասկացվում։ Բաղդասար միտրոպոլիտը մեծ սխալ է գործել, որ պատմության համար այդ թանկագին հավաքածուի բնագրերի օրինակները չէ դրել թարգմանությունների հետ։

Շուշիում բավական տեղեկություններ հավաքելով այդ բերդի վաղեմի իշխողների՝ Փանահ-խանի, Իբրահիմ-խանի և Մեհտիխանի մասին, ես անցա Վարանդայի գավառը, Մելիք-Շահնազարյանների տիրապետության երկիրը։ Երկու օր մնացի Ջանախչի կամ Ավետարանոց բերդում, ուր բնակվում էին Մելիք-Շահնազարյանները, ուր մինչև այսօր տեսնվում են նրանց ամրոցների ավերակները, ուր դրած են այդ տոհմի նշանավոր ներկայացուցիչների շիրիմները։ Այստեղ ամեն մի ծերունի դեռևս չէ մոռացել, թե ինչե՞ր են կատարվել այդ բերդում, գիտե այդ բերդի իշխողների յուրաքանչյուրի կատարած գործը։

Ցույց տալու համար, թե մեր գավառներում ո՛րպիսի արգելքների և մինչև անգամ անախորժությունների կարող է հանդիպել մի ուղևոր, որ ուսումնական նպատակներով ճանապարհորդություն է անում, ես մեջ կբերեմ մի դեպք, որ տեղի ունեցավ Ջանախչի բերդում։

Այստեղ գալու ժամանակ Շուշվա հոգևոր իշխանության հաջորդը ինձ տվել էր տեղային կոնսիստորիայի անդամ քահանաներից մեկին, իբրև առաջնորդ, որ ցանկացած տեղերը ման ածե ինձ և գյուղացիներին հասկացնե իմ ճանապարհորդության նպատակը։ Բացի դրանից, գերապատիվ հաջորդը ինձ պատիվ էր արել, տալով իր սեփական ձին նստելու համար։ (Հաջորդի ձին էլ մեծ նշանակություն ունի գյուղացիների աչքում)։ Չնայելով այդ բոլոր նախապատրաստություններին, Ջանախչի բերդում հազիվ կարողացա ազատվել մի մեծ սկանդալից։ Հյուրասիրվելով տեղային քահանաներից մեկի տանը, խնդրեցի ինձ մոտ կանչել մի քանի ծերունիներ, որոնք կարողանային ինձ բաներ պատմել Մելիք-Շահնազարյանների մասին։ Շատերը ներկայացան։ Նրանք խոսում էին, ես հարկավոր համարած տեղեկությունները նշանակում էի իմ նկատողության գրքույկի մեջ։ Հանկարծ հայհոյանքներով ներս թափվեցան մի խումբ մարդիկ և պատմողներին բռնությամբ դուրս քաշեցին սենյակից, կամենում էին ծեծել նրանց։ Ես շվարած մնացի։ Ինձ հետ եկած քահանան հազիվ կարողացավ հանգըստացնել նրանց։ Բանից դուրս եկավ, որ այդ մարդիկը Մելիք-Շահնազարյանների տոհմից էին և նրանց շատ հաճելի չէր, որ իրանց նախնիքների պատմությունը գրվեր։

Առհասարակ ժողովուրդը սաստիկ վախենում է գրչից. հենց որ նրա աչքի առջև մի բան գրում ես, նա սարսափում է։ Ինձ շատ անգամ առաջարկում էին այսպիսի հարցեր. «Աղա, դրանից խո մեզ վնաս չի՞ լինի...»։ Ի՞նչ անե խեղճ ժողովուրդը, նա ամեն գրությունների վրա նայում է պաշտոնական կետից։ Օրինակ, եթե մի գյուղատնտես, կամենալով ուսումնասիրել երկրի բեղմնավորության չափը, հարցնելու լինի գյուղացուց, թե քո ցանքը հարյուրին որքա՞ն արդյունք է բերում,— նա իսկույն կսկսե ստել, մտածելով, թե կամենում են հարկերը ավելացնել։ Այսպես-էլ, երբ կամենում ես հարցնել մելիքների տոհմին պատկանող այս և այն անձնավորության մասին, իսկույն սկսում են մտածել, չլինի՞ թե նոր քննություններ պիտի սարքեն. չլինի՞ թե հողերի, ազնվականության մասին էլի նոր բան կա...։ Այդ մարդիկը միշտ գործ են ունեցել ստորին պաշտոնյաների հետ, իսկ ուսումնասեր գիտնականը, պատմաբանը նրանց չի հանդիպել։

Վարանդայից անցա Տիզակի գավառը, գնացի Տող բերդը։ Այս բերդում իշխում էին Մելիք-Ավանյանները։ Տեսա նրանց տոհմային գերեզմանատունը, տեսա Մելիք-Եգանի կիսավեր պալատը,

ւոլի մեջ բնակվում է մի մահմեդական բեկ, որը այդ տոհմի կրոնափոխ եղած ժառանգներից մեկն է։

Այստեղ ինձ հաջողվեցավ ձեռք բերել երկու բավական հաստ հատորների մեջ ամփոփված զանազան պատմական գրվածքներ։ Այդ աշխատության հեղինակն է Գտիչ վանքի վանահայր Առաքել վարդապետ Կոստանդյանցը։ Եթե մեր բոլոր վանքերի ծույլ, հացկատակ վարդապետները հետևեին Առաքել վարդապետի օրինակին, և իրանց շրջապատող ժողովրդի ու պատմական տեղերի ավանդությունները հավաքելով գրեին, դրանով ավելի մեծ ծառայություն արած կլինեին մեր գրականությանը, քան թե իրանց աղոթքներով։

Առաքել վարդապետը, իրավ է, իր պատմության մեջ ժամանակագրական կարգ չէ պահպանել, նյութերը իրանց տեսակի համեմատ չէ դասավորել, և նրա աշխատությունն ավելի մի անկապ հավաքածու է, քան թե պատմություն, այսուամենայնիվ նրա գրքերը բովանդակում են իրանց մեջ թեև անմշակ, բայց բավական առատ նյութեր պատմության համար։ Երկու հատորները բաղկացած են 75 ընդարձակ գլուխներից և 428 երեսներից։

Նրա նյութերի մեծ մասը կարող էր ծառայել հայոց այսմավուրքին, քան թե պատմության. օրինակ, հանդիպում են դրանց նման շատ գլուխներ. «Պատմութիւն հրաշից ուրումն աղքատի», «Յաղագս մարդակերպ հարսնաքար անուանեալ վիմին», «Յաղագս հրաշագործ Ջուղալու խաչին», «Յաղագս ուրումն ագահ վաճառականի, թէ որպես եղև այր կատարեալ ի ձեռն սատանայի» — և այսպիսի գլուխների մեջ հանկարծ «Պատմութիւն Լանկթամուրայ» — մի բոլորովին անհայտ կտոր Լանկ-Թեյմուրի արշավանքներից։

Առաքել վարդապետի երկու հատորների մեջ կան և այնպիսի գլուխներ, որ կարող են ծառայել իբրև աղբյուր Ղարաբաղի մելիքների պատմության համար։ Այդ տեսակ գլուխներից բավական ընդարձակ տեղ է բռնում Տիզակի Մելիք-Ավանյանների մանրամասն պատմությունը, սկսյալ Մելիք-Եգանից մինչև այդ տոհմի վերջին ժառանգները։ Հետո Վարանդայի Մելիք-Շահնազար II պատմությունը, նրա հարաբերությունները Շուշի բերդի խաների հետ։ Աղա-Մամադ-խանի վերջին արշավանքը, նրա սպանվելը Շուշի բերդում. Ղարաբաղի սովը և ժանտախտը Աղա-Մամադ-խանի արշավանքներից հետո, ժողովրդի ցրիվ գալը դեպի զանազան կողմեր։ Կան և այնպիսի գլուխներ, որ նվիրված են ռուսաց

զանազան գեներալների արշավանքներին դեպի Ղարաբաղի կողմերը. դրանց մեջ հետաքրքիր են՝ իշխան Մադաթովի ճակատամարտը Շամքոր գետի և Գանձակի բերդի մոտ, գեներալ Կոտլյարևսկու Լենքորանի և Ասլանդուզի կռիվները. իշխան Ցիցիանովի արշավանքները,— այդ բոլորը թեև իրանց բովանդակության կողմից շատ հետաքրքիր են, բայց ժամանակագրական կարգով դասավորված չեն։ Գրքերի մեջ պատահում են զանազան հին ձեռագրերից արտագրած հիշատակարաններ, նշանավոր անձինքների շիրիմների տապանագրեր, Ղարաբաղի այլևայլ վայրերի մասին ժողովրդի մեջ մնացած ավանդություններ և այլն։ Իսկ որ ամենից հետաքրքիրն է, դա է մի ժամանակագրական ցուցակ Ղարաբաղի նշանավոր անցքերի մասին, սկսյալ 1721 թվականից մինչև 1813 թվականը։ Այդ ժամանակագրությունը, հեղինակի ասելով, դուրս է բերել նա մի ձեռագիր Մաշտոցից, որը գրված է եղել տեր-Գասպար քահանայի ձեռքով։

Ինձ հետ առնելով Առաքել վարդապետի գրքերը, հեռացա Տող բերդից, մի օր այնտեղ մնալուց հետո։ Այստեղից գնացի Ամարասա վանքը, իսկ հետո վերադարձա կրկին Շուշի բերդը։

Եվ այսպես ես անցա Ղարաբաղի բոլոր հինգ գավառները— Գյուլիստան, Ջրաբերդ, Խաչեն, Վարանդա և Տիզակ, որոնք մի ժամանակ կազմում էին Խամսայի հինգ մելիքությունները։ Այդ ճանապարհորդությունը տևեց երկու ամիս։ Որքան կարող էի, թե բերանացի և թե գրավոր տեղեկություններ հավաքեցի մելիքների պատմության մասին։ Միևնույն անցքը ես պատմել էի տալիս զանազան անձինքների, համեմատում էի միմյանց հետ, ստուգում էի, հետո նշանակում էի իմ գրքի մեջ։

Հայտնի բան է, միայն ժողովրդական ավանդությունների վրա հիմնվելով, շատ դժվար կլիներ կազմել մի քանի դարերի շարունակ պատմությունը։ Ժողովուրդը շատ անգամ շփոթում է անցքերը. մեկի գործողությունը մյուսին է վերաբերում, և ամենադժվարինն այն է, որ ժամանակագրական և տոհմագրական ճշտություններ չէ պահպանում, պատմական իրողությունները տեղափոխում է կամ շատ առաջ և կամ շատ հետո։ Բացի դրանից, ժողովուրդը ունի իր լեգենդները, իր իդեալները, իր սիրած հերոսները, որոնց ընծայում է նա այնպիսի մեծագործություններ, որոնք նրանց կատարածը չէին կարող լինել։ Օրինակ, ինձ շատ անգամ պատահում էր նկատել, որ միևնույն պատմական իրողությունը ամեն մի գավառի ավանդությունների մեջ ընծայում էին նույն

գավառի մի հայտնի հերոսին, քանի որ այդ անձնավորությունը չէր կարող այն գործը կատարած լինել, որովհետև կամ այն ժամանակ նա դեռ ծնված չէր կամ վաղուց մեռած էր։ Բայց պատմական փաստը դարձյալ մնում է իբրև իրողություն, միայն հարկավոր է նրա կատարող տերը գտնել։

Այդ բոլոր խառնաշփոթությունները ստուգելու համար, և անցքերը, գործողությունները ու գործողները պատմական ճիշտ ձևի մեջ դասավորելու համար, ես օգուտ եմ քաղել գրավոր աղբյուրներից, որ ցույց կտամ հետո։ Իսկ որտեղ պակասել են ինձ գրավոր աղբյուրները, ես հիմնվել եմ ավանդությունների վրա։

Պետք է ասած, որ ավանդությունները Խամսայի մելիքների պատմության ամենահարուստ մասն են կազմում։ Ավանդությունների հետ ես վարվել եմ նույն կերպով, ինչպես որ վարվում է բնագետը մի հնադարյան անծանոթ կենդանու ոսկորների կույտի հետ։ Ընդհանուր կենդանաբանական օրենքներով նա գիտե խառնըված ոսկորների կտորները ջոկել միմյանցից. ամեն մի մասը իր պատշաճավոր տեղը դնել, և այսպիսով կազմել մի ամբողջ կմախք։ Թուցե անդամներից մի քանիսը կպակասեն, բայց բնագետը դարձյալ կարող է գաղափար ստանալ, թե իր գյուտը կենդանիների ո՛ր տեսակին էր պատկանում։

Իբրև գրավոր աղբյուրներ, ես ի նկատի եմ ունեցել հետևյալ ձեռագիր, դեռևս չտպված աշխատությունները.

1. Բաղդասար միտրոպոլիտի ժամանակագրությունը, որ գտա ես Գանձասար գյուղում և որի մասին վերևում տեղեկություններ տվի։

2. Բաղդասար միտրոպոլիտի հրովարտակների, ֆիրմանների, կալվածագրերի, արձանագրությունների և զանազան պաշտոնական թղթերի հավաքածուն, որ գտա ես Շուշի բերդում և որի մասին վերևում տեղեկություններ տվի։

3. Առաքել վարդապետ Կոստանյանցի երկու հատոր հավաքածուն, որ գտա ես Տող բերդում և որի մասին վերևում տեղեկություն տվի։

4. Երկու տետրակներ, բաղկացած 84 երեսներից, քաղվածք է արած Միրզա-Ադիգոզալի պարսկերեն պատմությունից։ Այդ տետրակների մեջ բովանդակվում են հետևյալ գլուխները. I. «Որպիսութիւնք խանացն Գանձակայ». II. «Որպիսութիւնք խանացն Ղարաբաղու».— այդ գլխի մեջ խոսվում է Ղարաբաղի խաների ծագման մասին, Փանահ-խանի հետզհետե զորանալու մասին, թե որ-

պես այդ խանը միանալով Վարանդայի իշխան Մելիք-Շահնազարի հետ, հիմնեց Շուշի բերդը և նրա հետ միասին սկսեցին պատերազմել Խամսայի մյուս մելիքների և Շիրվանի խանի դեմ։ Նույն գլխի մեջ պատմվում է Փանահ-խանի հիմնած Բայաթ և Շահբուլաղ բերդերի մասին, որ կործանեցին հայոց մելիքները։ III. «Համառոտ պատմութիւն Խամսայի հինգ մելիքութիւնների».— այդ գլխի մեջ խոսվում է (Տիզակի) Մելիք-Եգանի, Վարանդայի Մելիք-Շահնազարյանների, Խաչենի Հասան-Ջալալյանների, Ջրաբերդի Մելիք-Աթամի և Մելիք-Ալլահղուլու և Թալիշի (Գյուլիստանի) Մելիք-Բեգլարյանների մասին։ IV. «Հանգամանք Փանահ-խանին ընդ Խամսա մելիքաց»— այդ գլխի մեջ խոսվում է Փանահ-խանի կռիվների մասին հայոց մելիքների հետ։ V. «Հիմնարկութիւն Շուշի բերդին»— այդ գլխի մեջ ավելի պարզ երևում է Մելիք-Շահնազարի գործակցությունը Փանահ-խանի հետ ի վնաս Ղարաբաղի մյուս մելիքների։ VI. «Կալանաւորութիւն Քերիմ-խանին, Քազմ-խանին, Հեյդար-Ղուլի-խանին և ազատութիւն նոցա ի հաջի Չալապէն»— այդ գլխի մեջ խոսվում է վրաց Հերակլ իշխանի նենգավոր արշավանքի մասին դեպի Ղարաբաղի կողմերը և նրա պարտության մասին Հաջի Չելեբիից։ VII. «Գալուստ ավշար Ֆաթալի-խանին ուրմեցվո ի վերայ Ղարաբաղոյ և պատերազմ նորա»— այդ գլխի մեջ խոսվում է, թե որպես հայոց մելիքները միանալով Ֆաթալի-խանի հետ, սկսեցին կռվել Փանահ-խանի հետ և ստիպեցին նրան իր որդի Իբրահիմ-աղային (հետո Իբրահիմ-խան) պատանդ տալ, որին Ֆաթալի-խանը տարավ Պարսկաստան։ Հետո Փանահ-խանի իր որդու ազատության համար Պարսկաստան գնալը, այնտեղ մեռնելը և Իբրահիմ-խանի վերադարձը Ղարաբաղ, որպես այդ երկրի պարսից կառավարությունից նշանակված կառավարիչ։ VIII. «Որպիսութիւնք Իբրահիմ-խանին».— այդ գլխի մեջ պատմվում է Իբրահիմ-խանի զորանալու մասին, Աղա-Մամատխանի առաջին արշավանքի մասին, որը Շուշի բերդը պաշարելով և չկարողանալով գրավել, Մելիք-Մեջլումի և Ջավադ-խանի առաջնորդությամբ գնաց Թիֆլիսը ավերակ դարձրեց. կոմս Զուբովի արշավանքը, Իբրահիմ-խանի և ուրիշ մի քանի խաների ռուսաց հպատակություն ընդունելը. Ավարիայի Օմար-խանի ասպատակությունը Վրաստանում. Հերակլի մահը և վրաց իշխանական գերդաստանի երկպառակությունները։ IX «Յաղագս կրկնակի գալստեան Աղա-Մամատ-խանի ի վերայ Ղարաբաղայ և գնալոյ Իբրահիմ-խանին ի Բալաքիան».— այդ գլխի մեջ պատմվում է Աղա-Մա-

մատ-շահի Շուշի բերդում սպանվելու մանրամասնությունները։ Հետևյալ գլուխներում պատմվում է վրաց Հերակլ իշխանի մահը, Գիորգիի հաջորդելը, Ավարիայի Օմար-խանի երկրորդ արշավանքը դեպի Վրաստան, գեներալ Լազրովի հաղթությունը նրա դեմ. գեներալ Ցիցիանովի արշավանքը և այլն։ Միրզա-Ադիգոզալի պատմությունից քաղած վերոհիշյալ երկու տետրակները ես ստացել եմ Ղարաբաղի հոգ[ևոր] իշխանության հաջորդ Կարապետ վարդապետ Այվազյանցից։

5. Սարգիս արքեպիսկոպոս Ջալալյանցի «Պատմութիւն աշխարհի Աղվանից» կոչված անտիպ գրքույկը։ Այդ գրքույկը, որ Ղարաբաղի մելիքների պատմությանն է վերաբերում, և հեղինակը չգիտենք ինչու է նրան Աղվանից պատմություն կոչում, բովանդակում է իր մեջ հետևյալ գլուխները. «Ավան յուզբաշի»— «Յաղագս գալստեան տաճկաց ի Ղարաբաղ», «Գաղթումն Ավանայ ի Ռուսաստան», «Վերաբնակութիւն մէլիք-Եսայիայ ի Սյունեաց յԱրցախ», «Յաղագս մէլիք-Եգանայ և գործոց նորա», «Յաղագս պատերազմին խանին Փանահայ ընդ մէլիք-Եգանա։—Դարձյալ վասն պատերազմին խանին Փանահա ընդ մէլիք-Եգանայ», «Յաղագս մէլիքութեան Եսայա և յաղագս պատերազմի նորին», «Պատերազմ խանին Ղարաբաղայ, որ է մասն Փայտակարանի, ընդ մէլիք-Եսայիայ», «Տեղեկութիւն ի վերայ ազգին մէլիք-Շահնազարայ», «Յաղագս պաշարելոյ մէլիքաց զբերդն Ավետարանոց», «Յաղագս միաբանելոյ մէլիք-Շահնազարայ ընդ խանին Փանահայ և յաղագս պատերազմին Հաջի-Ջալաբիայ», «Վասն հաստատութեան մէլիք-Միրզախանայ հայկազնւոյ ի թվին հայոց ՌՄԴ», «Յաղագս պատերազմին Ջալաբիայ ընդ արքային վրաց Թամրազայ», «Վասն պատերազմի խանին Ուրմվոյ աւշար Ֆաթալի կոչեցելոյ ընդ խանին Փանահայ ի թվին ՌՄԺ», «Յաղագս պատերազմին խանին Փանահայ ընդ մէլիք-Ադամա ի թուին ՌՄԳ», «Դարձեալ պատերազմին խանին Փանահայ ընդ մէլիք-Ադամա», «Ծագումն ազգին մէլիք-Յովսեփայ տիրապետողին նահանգին Իգիրմիդորդու (Գյուլիստանի), որ ի հնումն Դիւթական», «Գաղթումն մէլիք-Աթամայ և մէլիք-Յովսեփայ ի Գանձակ», «Յաղագս վերստին մարտի Իբրայիմ-խանին ընդ մէլիքաց հայոց», «Մահ խանին Շահվերդվոյ և գաղթումն Մխիթարայ քալանթարին», «Դարձ մէլիքաց ի հայրենիս», «Յաղագս դիմելոյ մէլիքաց հայոց առանձին գրութեամբ առ կայսրուհին ռուսաց Եկատերինէ», «Դաշնագիր մէլիքաց», «Մահ Յովհաննէս կաթողիկոսին Հասան-

*Ջալալեանց», «Յաղագս պատճառաց հակառակ աթոռոցն Գանձասարայ», «Յաղագս գաղթելոյ մէլիք-Մեջլումայ և մէլիք-Աբովայ», «Գալուստ Սարգիս միտրոպօլիտին ի Ղարաբաղայ ի Գանձակ», «Արշավանք մէլիքաց հայոց», «Հարցումն Արզումանայ լումեմնէ ախունդէ», «Յաղագս դարձի մէլիք-Աբովայ ի Ղարաբաղ», «Գալուստ Աղա-Մամատ-խանին և Ղարաբաղ», «Գալուստ Աղա-Մամատ-շահին ի Վիրս», «Յաղագս գալստեան Զուբովայ յաշխարհն Աղուանից», «Դարձ Զուբովայ ի Ռուսաստան», «Պաշարումն քաղաքին Գանձակայ և մահ մէլիք-Մեջլումայ», «Դարձ Աղա-Մամատ-շահին ի Ղարաբաղ և մահ նորա», «Դարձ մէլիք-Աբովայ ի Բոլնխաէ հանդերձ բնակչօք», «Յաղագս մեծ սովուն Արցախու և յաղագս գնալոյ մէլիք-Ջումշուդայ առ կայսրն ռուսաց»—ընդամենը 39 գլուխ։ Մնացյալ 8 գլուխները վերաբերում են ռուսաց զանազան գեներալների արշավանքներին։ Գրքույկը բաղկացած է 124 երեսներից։ Սարգիս արքեպիսկոպոսը, թեև ինքը չէ հայտնում, բայց իր պատմությունը կազմելու ժամանակ մեծ մասամբ օգուտ է քաղել վերև հիշած Միրզա-Ադիգոզալի պարսկերեն պատմությունից,— իսկ մնացյալ մասը հավաքել է ավանդություններից։ Անցքերը ժամանակագրական կարգով չեն դասավորված. տեղ-տեղ հանդիպում են տոհմագրական սխալներ, որդին իր հոր հայրն է դառնում, իսկ հարազատ եղբայրը հորեղբայր և այլն։ Ժամանակագրական թվականներ համարյա թե չկան։ Այն տեղերում, որ քաղել է Միրզա Ադիգոզալի պատմությունից, գործ է ածում հիջրեթի թվականները, որոնց շատերը չեն համապատասխանում իրանց ժամանակին։ Ինչպես Ղարաբաղի մելիքների պատմությունը նա «Պատմութիւն աշխարհին Աղուանից» է կոչում, այնպես էլ աշխարհագրական զանազան տեղերի անունները գործ է ածում հին պատմական ձևով, որոնց շատերը չեն համապատասխանում այժմյան տեղերին։ Զարմանալու է, որ Մելիք-Մեջլումին և Մելիք-Աբովին Հայկ կամ Արամ չէ կոչում։ Ես միայն աչքի առաջ եմ ունեցել Սարգիս արքեպիսկոպոսի գրքույկը, բայց նրան չեմ հետևել։ Այդ գրքույկը ես ստացա պոլկովնիկ Հ. Դ. Լազրովից։*

*6. Մի այլ տետրակ 16 մեծ երեսներից բաղկացած, կրում է այսպիսի վերնագիր՝* «Ծագումն Ղարաբաղու մելիքների» *Սար. Վ. Ջալալյանցի, բովանդակում է իր մեջ միայն 4 գլուխներ։ I. «Ծագումն ազգին մէլիք-Աթամայ տիրապետողին նահանգին Ջարաբերդու» II. «Ծագումն ազգին մէլիք-Յովսեփայ տիրապետողին*

նահանգին Իգիրմիդորդու, որ ի հնում Դիւթական», III. «Ծագումն ազգան մէլիք-Եգանայ տիրապետողին նահանգին Տիզակու», IV. «Ծագումն ազգին մէլիք-Շահնազարայ տիրապետողին Վարանդու»։ Ստորագրված է. «Համառոտեալ զայս ի պատմութեանց (՞) յինեն հորինելոց. Սարգիս վարդապետ Ջալալեանց»։ Այդ փոքրիկ տետրակն ավելի ամփոփ է և ավելի խղճմտանքով մշակված է, քան Ջալալյանի վերև հիշած ընդարձակ պատմությունը։ Այդ փոքրիկ տետրակը ես ստացա պ. Սեդրակ Տեր-Առաքելյանից։

7. Հին գրչագիր մատյանների հիշատակարաններից քաղած Ղարաբաղի մելիքների վերաբերությամբ արձանագրություններ.— եկեղեցիների, վանքերի, մելիքների ամրոցների, նրանց տոհմային շիրիմների վրա գրված արձանագրություններ,— մելիքների ժառանգների կամ մասնավոր անձինքների ձեռքում գտնված հրովարտակների, ֆիրմանների, կալվածագրերի և այլ պաշտոնական թղթերի օրինակներ,— մելիքների անունով կաթողիկոսների կոնդակների և օրհնության թղթերի պատճեններ,— հիշյալ դոկումենտները, որքան հաջողել է ինձ հավաքել իմ ճանապարհորդության ժամանակ, ծառայել են ինձ որպես գլխավոր աղբյուր ժամանակագրության և մելիքների տոհմային ճյուղագրության համար։

Մինչև այստեղ հիշած աղբյուրները դեռևս տպագրությամբ լույս չտեսած, ձեռագրերի մեջ մնացածներն էին. այժմ դառնանք դեպի այն աղբյուրները, որոնք արդեն տպված են։

1) Չամչեան Հ. Միքայէլ վարդապետ։ Պատմութիւն հայոց ի սկզբանէ աշխարհի մինչև ցամ տեառն 1784. հատոր III։ Վենետիկ, 1786.

2) Առաքել Դավրիժեցի: Պատմութիւն սակս դիպուածոց Հայաստանեայց և ևս գավառին Արարատոյ և մասին Գողթան գավառի, սկսյալ ի թվույն հայոց 1054 մինչև յաւարտ պատմագրութեանս (1601—1666) այլ և ի յիշումն ածեալ մասնաւորաբար աստի և անտի։ Ամստելօդամ (Ամստերդամ) 1659.

3) Հասան-Ջալալեանց Եսայի կաթողիկոս Աղուանից։ Պատմութիւն կամ հիշատակ ինչ ինչ անցից՝ դիպելոց յաշխարհին Աղուանից ի թուականին հայոց 1160, իսկ ի թուականին տյառն մերո փրկչին Յիսուսի 1711։ Շուշի, 1839։ Այդ փոքրիկ գրքույկը ինչպես երևում է, համառոտություն է, քաղած մի ընդարձակ պատմությունից, որի իսկականը, եթե գտնվեր, մեծ գանձ կարե-

լի էր համարել մեր նոր ժամանակների պատմության համար։ Հեղինակը, Աղվանից Եսայի կաթողիկոսը, ինքը լինելով Ղարաբաղի մելիքների ապստամբության (1700—1728) գլխավոր պարագլուխներից մեկը, գրել է իր ժամանակի անցքերի մանրամասն պատմությունը։

4) **Դավիթ-բէգ.** Պատմութիւն Դաւիթ բէգին և պատերազմաց հայոց խափանու որք եղեն ընդդէմ Թուրքաց ի մերում ժամանակի, այն է յամի տյառն 1722 և հայոց 1171։ Վաղարշապատ, 1871։ Այդ հետաքրքիր պատմության հեղինակը մինչև այսօր մնում է անհայտ. ձեռքից ձեռք անցնելով, հեղինակի անունը եղծվեցավ։ Ես այժմ անտեղի եմ համարում խոսել այդ մասին, միայն կհիշեցնեմ հայկական առածը. «գողը գողից գողացավ, աստված տեսավ, զարմացավ...»

5) **Աբրահամ կաթողիկոս** կրետացի։ Պատմութիւն անցիցն իւրոց և Նադիր-շահին պարսից։ Վաղարշապատ, 1870։

6) **Գիլանենց Պետրոս դի-Սարգիս:** Ժամանակագրութիւն 1722—1723։ Հայերեն բնագիրը, որ տպված է եղել «Կռունկ Հայոց Աշխարհին» ամսագրի 1863 թվի տետրակներում, ձեռքի տակ չունենալով, ես աչքի առաջ եմ ունեցել այդ ժամանակագրության Ք. Պատկանյանի ռուսերեն թարգմանությունը։ Ս. Պետերբուրգ, 1870։

7) **Արղությանց-Երկայնաբազուկ Հովսեփ** արքեպիսկոպոս։ «Ղարաբաղի ժառանգական տիրապետողների, որ կոչվում են **մելիքներ**, Ռուսաստան դեսպաններ ուղարկելու ստիպողական պատճառները և նրանց խնդիրքը նորին կայսերական մեծության Պետրոս Մեծից»։ Այդ հետաքրքիր պատմական գրությունը շարադրված է Ռուսաստանի հայոց վիճակավոր առաջնորդ Արղության-Երկայնաբազուկ Հովսեփ արքեպիսկոպոսի աշխատությամբ և գեներալ ֆելդմարշալ իշխան Գրիգորի Ալեքսանդրովիչ Պոտեմկինի միջնորդությամբ 1790 թվին ներկայացրած է Եկատերինա II կայսրուհուն։ Այդ գրության հայերեն թարգմանությունը, Պետրոս Մեծի, Եկատերինա II և Պողոս I Ղարաբ. մելիք. շնորհված հրովարտակների հետ տպվեցավ 1858 թվի Մանդինյանցի «Մեղու Հայաստանի» №№ 4, 5 համարներում, իսկ ռուսերեն բնագիրը կարելի է գտնել «Собрание актов, относящихся к обозрению истории армянского народа», ч. I, с. 165—201 и ч. II, с. 52—62. **Այլև** Сев. Архив, 1823, т. 6. № 10, с. 233։ Նույն Հովսեփ արքեպիսկոպոսի նույն թվով (1790, 23 հունվարի) կազմած մի այլ

գրություն այսպիսի վերնագրով՝ «Հայոց տիրապետող իշխաններ կամ Ղարաբաղի մելիքների մասին, նրանց անունները և տիրած երկիրները։ Շուշվա Իբրահիմ-խանի Շուշին գրավելու պատճառները»։ Այդ գրությունը, որ նույնպես իշխան Պոտեմկինի միջնորդությամբ ներկայացվեցավ Եկատերինա II կայսրուհուն, բովանդակում է իր մեջ Խամսայի հինգ տիրապետող մելիքների անունները, նրանց համառոտ պատմությունը ու հարաբերությունները Փանահ-խանի ու Իբրահիմ-խանի հետ։ Ռուսերեն բնագիրը տըպված է նույնպես «Собрание актов, относящихся к обозрению истории армянского народа», ч. II, с. 52—62. Պետք է ասած, որ հիշյալ ակտերի հավաքածուից ես քաղել եմ Ղարաբաղի կաթողիկոսների և մելիքների ռուսաց կառավարության հետ ունեցած հարաբերությունների այլևայլ մանրամասները, սկսյալ 1701—1801 թվականը։

8) Երիցյան Ա. Դ. «Карабагские мелики в Грузии с 1800 по 1808 годы». Кав. Стар., 1872, № 2. Իր պատմական հոդվածը կազմելու համար հեղինակը օգուտ է քաղել այն տեղեկություններից, որ բովանդակվում են 1—3 հատորների մեջ «Актов Кав. Археогр. Ком.» և աչքի առաջ է ունեցել ուրիշ մի քանի աղբյուրներ։ Պ. Երիցյանի ամսագրի նույն համարում զետեղված են Հովսեփ արքեպիսկոպոսի և Ղարաբաղի մելիքների մի շարք խիստ հետաքրքիր նամակների ռուսերեն թարգմանությունները։

Ես ձեռքի տակ եմ ունեցել նաև հետևյալ գրքերը. «Закавказье от 1803—1806 года. Н Дубровина, С. Петербург, 1866. «Жизнь генерал-лейтенанта князя Мадатова», издание второе, С. Петербург, 1863. «Материалы для истории Кавказа», П. Г. Буткова. 3 ч. С. Петербург, 1869. Պետք է խոստովանել, որ ցանկանալով իմ աշխատությանը տալ, որքան կարելի է, հայոց տոհմային պատմության ձև, ես շատ դեպքերում գերադասել եմ այն նյութերը, որ հաջողվել է ինձ գտնել հայոց թե գրավոր և թե բերանացի ավանդությունների մեջ և այս պատճառով ռոսաց աղբյուրների վրա նայել եմ որպես օժանդակող նյութերի վրա։

Եթե «Խամսայի մելիքությունների» առաջին հատորը ընդունելություն գտավ ընթերցող հասարակությունից և տպված գրքերը վաճառվեցան, այն ժամանակ ես կտպեմ մի երկրորդ հատոր, որպես հավելվածք առաջին հատորի։ Այդ վերջին հատորի մեջ զետեղված կլինեն այն բոլոր նյութերը, որոնք ծառայել են ինձ իբրև աղբյուր առաջին հատորը կազմելու համար։ Բովանդակությունը կլինի հե-

տևյալ կարգով. զանազան անձինքների զանազան ժամանակներում Ղարաբաղի կաթողիկոսների, մելիքների մասին գրած և անտիպ մնացած պատմական աշխատություններ. մեր պարբերական հրատարակությունների կամ այլևայլ գրքերի մեջ ցրված հոդվածները Ղարաբաղի մելիքների մասին. ռուսաց ակտերի մեջ գտնված տեղեկությունները Ղարաբաղի մելիքների մասին. որպիսի են Կովկասյան հնագրության մասնաժողովի ակտերը (Акты Кав. Археогр. Ком.) Մոսկվայում տպված Հավաքածու ակտերի, որ վերաբերում են հայոց ազգի պատմության հետազոտությանը (Собрание актов, относящихся к обозрению истории армянского народа). ռուսաց պատմագիրների՝ Սոլովևի, Բուտկովի, Դուբրովինի, Հ. Արարատսկիի (հայ) և այլոց գրքերի մեջ գտնված տեղեկությունները Ղարաբաղի մելիքների մասին. այլև պարսից պատմագրության մեջ հայոց մելիքների մասին գտնված տեղեկությունները. ռուսաց կայսրների, պարսից շահերի, վրաց իշխանների և զանազան խաների Ղարաբաղի կաթողիկոսներին ու մելիքներին շնորհած անվանական հրովարտակների, ֆիրմանների օրինակները. մելիքների տոհմերի վերաբերությամբ գտնված արձանագրությունների օրինակները՝ եկեղեցիների, վանքերի, շիրիմների քարերի վրա, գրքերի հիշատակարանների մեջ. մելիքների տոհմային ճյուղագրության աղյուսակները։ Այդ բոլորը տպված կլինեն իմ սեփական բացատրություններով և ծանոթություններով։

Այդ գիրքը կազմելու համար ես ձեռքի տակ ունեմ բավական պատրաստի նյութեր։ Անտարակույս, ուրիշների մոտ գուցե գտնըվում են և այնպիսի թղթեր, որոնք ինձ հայտնի չեն, որոնք ավելի լույս կարող էին ձգել մելիքների դարու պատմության վրա։ Եվ որովհետև մի լիակատար, ճոխ հավաքածու կազմելը ավելի ընդհանրության օգնությանը կարոտություն ունի, այդ մտքով ես հրավիրում եմ օգնել ինձ, նրանով միայն, որ յուրաքանչյուր ոք, եթե գտնվում էր նրա մոտ մի որևիցե նյութ, որ կարող էր ծառայել իմ նպատակին, ուղարկեր ինձ իմ հավաքածուի մեջ զետեղելու համար։ Ես չեմ պահանջում թղթերի իսկականները, եթե այդ հնարավոր չէր, ինձ թող ուղարկեն ճիշտ պատճեններ, միայն թե այդ պատճենները պետք է վավերացրած լինեն, որ համեմատ են իսկականի հետ։ Վավերացնել կարելի է կամ տեղային ուսուցչական խմբի մոտ, որտեղ կան թեմական դպրոցներ կամ տեղային կոնսիստորիայում, եթե կընդունեն։

Ես ավելի շատ բան եմ սպասում մեր գավառական վարժապետներից, որոնք թե միջոցներ և թե պատրաստականություն ունեն պատմական նյութեր հավաքելու։ Իբրև օրինակ, ես կհիշեմ մի վարժապետի անուն. պարոնը Շուշվա հոգևոր դպրոցի ուսուցիչ է՝ Խոջամիրյանցը։ Նա իրան նպատակ է դրել ամեն տեղ պատահած գրչագիր մատյանների հիշատակարանները արտագրելու, այլև հավաքելու այն բերանացի ավանդությունները, որոնք ժողովրդի մեջ պահպանված են զանազան ավերակների, բերդերի, ժայռերի, բլուրների և այլ վայրերի մասին։ Ես Շուշիում եղած ժամանակ պարոնը տվեց ինձ իր հետաքրքիր հավաքածուն։ Մի ավետարանի հիշատակարանում կարելի է գտնել հայոց մի նշանավոր իշխանական տան շարունակությունը, որը պատմության համար կորած էր։ Այսպիսի շատ գյուտեր կարող են պատահել, միայն թե հետախուզողներ լինեին։

Ի դեպ է հիշել, որ Խամսայի մելիքությունների պատմությունը գրելու ժամանակ ինձ ավելի նվազ օգնեցին նույնիսկ մելիքների ժառանգները, որոնց ավելի պիտի հետաքրքրեր իրանց նախահարց պատմությունը։ Նրանք կարող էին ուղարկել ինձ իրանց տոհմային դոկումենտների օրինակները, բայց, բացի մի քանիսից, մյուսները ուշադրություն անգամ չդարձրին կամ երկյուղ կրեցին...

Ես մասամբ իրավացի եմ գտնում այդ երկյուղը։ Մելիքների ժառանգներից ոմանք աղքատ, աննշան մարդիկ են, բայց իրանց ձեռքում պահում են նշանավոր թղթեր։ Շատ անգամ պատահել է, որ ավելի ճարպիկները նրանց խաբել են, թղթերը առել են կամ գողացել են, և իրանց ազգանունը փոխելով, նրանց ազգանունը կրելով, ազնվական են դարձել, տիրացել են նրանց թե հողերին և թե տիտղոսին... Բայց մի պատմագրից այս տեսակ կասկածներ ունենալ, կարծեմ, շատ ծիծաղելի կլիներ, երբ նրա խնդրածը միայն թղթերի պատճենն է, և ոչ թե իսկականը։

Կան և այնպիսիները, որ մերժում են բոլորովին տգիտությունից։ Նրանց համար ոչինչ այնքան արժեք չէ ստանում, որպես մի հին թղթի կտոր, որ ընկած է լինում նրանց տան փոշիների մեջ և իրանք էլ չգիտեն նրա նշանակությունը։ Բայց հենց որ պկսում ես այդ թղթի կտորին նշանակություն տալ, պահանջել, իսկույն ծագում է նրանց գլխում մի այսպիսի միտք. «դրանում մի բան կա» (անպատճառ փողի բան) և թաքցնում են թղթի կտորը։ Այդպիսի շատ դեպքեր պատահեցան ինձ իմ ճանապարհորդության ժամանակ։

Ինչո՞ւ ենք զարմանում ռամկի վրա։ Ես կարող եմ ցույց տալ ուսյալ, զարգացած մարդիկ, որոնք լավ հասկանում են, թե ինչ է պատմությունը, և որոնք խոստացել էին ինձ տալ իրանց մոտ գտնված այս և այն թղթերը, բայց վերջը չկատարեցին իրանց խոստմունքը։ Ինչո՞ւ,—միայն նախանձից։ Որովհետև իրանք այնքան պատրաստականություն չունեն, որ կարողանան իրանց ձեռքի տակ եղած նյութից օգուտ քաղել, իսկ ուրիշներին ևս թույլ չեն տալիս օգուտ քաղելու։ Իսկ եթե նույն թղթերը նրանց երեխաները իրանց աչքերի առջև պատառոտելու լինեն, ես հավատացած եմ, որ ամենևին ցավ չեն զգա. միայն կնայեն և կզվարճանան իրանց զավակների խաղի վրա։

Թե այսպես և թե այնպես, մենք ունենք մի պատմություն, որը դեռևս ուսումնասիրված չէ, որը դեռևս գրված չէ. դա է մելիքների տիրապետության ժամանակների պատմությունը։ Հայաստանը զանազան դարեշրջաններում, կորցնելով իր թագավորությունը, ունեցավ կուսակալների, մարզպանների, ոստիկանների, կուրապաղատների դարերը։ Իսկ վերջին ժամանակներում—մելիքների դարերը։ Այդ դարերի պատմությունը պետք է ներկայացնե մեր նոր պատմությունը:

Մեր նախնի գրողները ավելի փութաջան գտնվեցան մեզանից։ Նրանք թողեցին մեզ իրանց ժամանակների պատմությունները։ Իսկ մենք, տասնիններորդ դարու զավակներս, ի՞նչ պիտի թողնենք մեր ապագա սերունդին։ Մի ամբողջ պատմություն կորչում է, անհետանում է, իսկ մենք դրա վրա ուշադրություն չենք դարձնում։

Հայտնի գրողներից մեկը ասում է. «քրքրիր մի ազգի հնությունները և մի գիշերվա մեջ կզարթնի նրա հոգին...»։ Պատմությունը այդ ազդեցությունը ունի ազգերի և ժողովուրդների համար։ Պատմությունը մի վարդապետարան է, մի դասարան է, որի մեջ ապագա սերունդը կրթվում է, զգուշանալով իր նախահարց սխալներից և հետևելով նրանց լավ գործերի օրինակին։

Կրկնում եմ, մենք ունենք մի պատմություն, որը կորչելու, անհետանալու վրա է։ Խամսայի մելիքությունների պատմությունը գրելը միայն մի փորձ էր, ցույց տալու համար, թե ունենք նոր ժամանակների պատմություն, որի վրա ուշադրություն չենք դարձնում։ Թե որքան հաջողվեցավ ինձ այդ փորձը,— դա ուրիշ բան է, բայց կարծում եմ, որ ես կարողացա ապացուցանել, թե կա պատմություն։

Իբրև փորձ, ես վեր առի մի գավառ միայն—Ղարաբաղը, և գրեցի այդ գավառում եղած հայկական հինգ իշխանությունների պատմությունը, հասցրի մինչև ռուսաց տիրապետության ժամանակները։ Բայց մելիքություններ Անդրկովկասում եղել են բոլոր հայաբնակ գավառներում։ Միայն Երևանի նահանգում կային յոթն նշանավոր մելիքություններ, որոնց ներկայացուցիչները, Մուղանի դաշտում, Աբրահամ կաթողիկոսի հետ, ներկա գտնվեցան Նադիր-շահի թագադրության հանդեսին։ Մելիք-Աղամալյանները, Գեղամ-յանները, Լոռիս-Մելիքյանները, Արղությանները և այլ իշխանական հին տներ հայտնի էին և ռուսաց տիրապետության սկզբի տարիներում։

Ես չեմ խոսում Շիրվանի, Շաքիի, Դերբենդի և Բաքվի գավառների մասին, որովհետև այդ կողմերում չեմ եղել, այդ երկրների մելիքությունների մասին շատ փոքր տեղեկություններ ունեմ։ Բայց իմ անցյալ տարվա ճանապարհորդության ժամանակ, բացի Ղարաբաղից, ես պտտեցի Գանձակի, Զանգեզուրի, Սիսիանի, Բարգյուշատի, Ջավնդուրի, Ղափանի, Մեղրիի և Օրդուբադի վիճակներում, անցա Հին-Նախիջևանի կողմերը և այնտեղից գնացի Պարսկաստան։ Հիշյալ երկրներում կային հզոր մելիքություններ, որոնք 1722 թվի ապստամբության ժամանակ մասնակցում էին Դավիթ-բեկի Ղարաբաղի մելիքների կռիվներին։ Օրինակ, Զանգեզուրի վիճակում հայտնի էին Մելիք-Հայկազյանները[1], Սիսիանի մեջ (Տաթևի կողմերում) հայտնի էին Օրբելյանները, Բարգյուշատի մեջ՝ Մելիք-Ֆրանգյուլը, Ջավնդուրի մեջ՝ Թորոս իշխանը, Ղափանի մեջ՝ Մելիք-Փարսադանյանները, Մեղրիի կողմերում՝ Շահումյանները, Օրդուբադի կողմերում՝ Մելիք-Մուսան և այլն։

Որքան կարող էի, որքան իմ ժամանակը և միջոցները ներում էին, ես տեղեկություններ հավաքեցի վերոհիշյալ մելիքությունների մասին, բայց այդ տեղեկությունները դեռ այնքան թերի են, որ հազիվ թե կարելի կլիներ նրանց մասին մի ամբողջ բան գրել։ Այդ մթության մեջ մնացած իշխանությունները ի լույս ածելու համար, պետք է սպասել մինչև նյութերի քանակությունը բավականաչափ հավաքվեր, որ կարելի լիներ պատմություն գրելու ձեռնարկել։

Ավելորդ չեմ համարում հիշել, որ իմ ճանապարհորդությունից

---

[1] Շահ-Աբաս մեծի Մելիք-Հայկազին շնորհած մի ֆիրմանի մեջ տալիս է նրան սադրնիշին տիտղոսը, որ նշանակում է թագավորի մոտ առաջին տեղում նստող, գահերեց։

դեպի Թիֆլիս վերադառնալու ժամանակ, գնացի էջմիածնի վանքը։ Ես մեծ հույսեր ունեի, որ ընդհանուր հայոց Մայր Աթոռի արխիվում կգտնեի շատ թղթեր, որոնք նյութ կտային մեր նոր ժամանակների պատմությանը։ Մանավանդ, դեռ 1858 թվին Մանդինյանցի «Մեղուի» № 15-ում կարդացել էին Սանահինի վանքի գրադարանի մոտ 100 նշանավոր գրչագիր մատյանների թվում հետևյալ գրքերի անունները, որոնք ինձ շատ հարկավոր էին՝ «Պատմութիւն Դավիթ-բէգի», «Տետրակ պատմութեան խանիցն Ղարաբաղու, թարգմանեալ պարսից լեզուէ», «Պատմութիւն Ղազի-Մոլլայի յԱբրահամ քահանայէ», «Պատմութիւն Մանուէլ վարդապետի անցիցն էջմիածնի 1801 ամէ ց1835-ն», «Վերլուծութիւն յԱրիստակէս վարդապետէ և հին նշանագիրք հայոց»։ Այդ պատմական գրքերը, ինչպես մյուս մոտ 100 հատոր նշանավոր գրչագրերի մեծ մասը Սանահնի վանքից այժմ անհետացել են. ես հույս ունեի, գոնե իմ ցանկացած գրքերը գտնել էջմիածնի մատենադարանում։ Բացի դրանցից, «Մեղուի» նույն տարվա 11 համարում կարդացել էի Մխիթարյան Աբել վարդապետի (հետո եպիսկոպոսի) 11 հատոր զանազան անտիպ աշխատությունների ցուցակը, որոնց թվում գտնվում էր «Պատմութիւն հայոց ի 1761 թվականէ ց1857, շարունակութիւն Չամչյան պատմութեան»։ Աբել եպիսկոպոսը ներկա դարու էջմիածնի միաբանների մեջ, Կարապետ վարդապետ Շահնազարյանից հետո, միակ եկեղեցականն էր, որ իր անձը նվիրել էր գրականության։ Նա բանաստեղծ և լավ պատմաբան էր։ Մի ժամանակ Պարսկաստանի հայոց թեմական առաջնորդ լինելով, մի ամբողջ ձմեռ ապրում էր նա իմ տան մեջ, շատ անգամ գիշերները կարդում էր ինձ իր հետաքրքիր պատմությունը։ Միայն նա, էջմիածնում երկար ժամանակներ ապրած լինելով, այդ վանքի բոլոր գաղտնիքներին տեղյակ լինելով, կարող էր գրել մի այդպիսի պատմություն, որը իսկապես Չամչյանի շարունակությունը կարելի էր համարել։ Բայց ո՞ւր մնաց նրա աշխատությունը.— ինչպես հալածվեցավ հեղինակը, այնպես էլ հալածվեցավ նրա գիրքը... Այդ բազմարդյուն և բազմաշխատ գրողին թույլ չտվեցին մինչև անգամ իր հոգին ավանդել էջմիածնի պարիսպների մեջ։ Նա քաղցածությունից մեռավ իր ծառայի տանը, դառն չքավորության մեջ։ Իսկ նրա պատմության գիրքը և ուրիշ շատ անտիպ մնացած աշխատությունները մի քանի հարյուր ռուբլու կաշառքով անցան մեկի ձեռքը, ուր այժմ կամ մոխիր են դարձել, կամ երբեք դուրս բերելու հնար չկա...

Եվ այսպես, էջմիածնի մատենադարանում իմ նպատակներին համապատասխանող ոչինչ չգտա։ Ես հույս ունեի գոնե արխիվում գտնել զանազան պաշտոնական թղթեր, որոնք կծառայեին իբրև նյութ պատմության համար։ Բայց իմ բարեկամ եպիսկոպոսներից երեքը, որոնք լավ գիտեին, թե էջմիածնի արխիվում ինչ է մնացել, հայտնեցին թե իզուր կանցներ իմ աշխատանքը, որովհետև ոչինչ գտնել չէի կարող։ Ես չզարմացա և հավատացի։ Մի վանքում, ուր մի կաթողիկոս իր նախորդների հիշատակը ոչնչացնելու համար փութերով այրել է տալիս նրանց ժամանակներից մնացած պաշտոնական թղթերը,— այլևս ի՞նչ կարելի է գտնել արխիվում։ Իսկ այդ բարբարոսությունը կատարվել է մի քանի կաթողիկոսների փոխվելու ժամանակներում։

Հայտնի է, որ ռուսաց կառավարությունը մի ժամանակ արտոնություն էր տված էջմիածնի կաթողիկոսներին քննելու զանազան ազնվական տոհմերի ծագումը. և կաթողիկոսները, եթե իրավացի էին գտնում նրանց ազնվականությունը, շնորհված կոնդակները ընդունվում էին իբրև հաստատ վկայականներ։ Երբ կաթողիկոսները այդ տեսակ վկայականներ էին տալիս, հարկավ, քննության գործերը պետք է մնային էջմիածնի դիվանում։ Իսկ այդ գործերը այժմ կարող էին պատմության նյութ տալ, եթե պահված լինեին։

Ինչևիցե, մի այնպիսի ձեռնարկություն, որպիսին է հավաքել և կազմել Անդրկովկասի նախքան ռուսաց տիրապետությունը եղած մելիքների, տիրապետող իշխանների և զանազան նշանավոր անձինքների պատմությունը,— դա մի մարդու գործ չէ. դա մի ամբողջ խմբի և մի ընկերության գործ է։ Բայց որովհետև մեզանում եսականությունը այն աստիճան տիրած է, որ խմբեր չեն կազմվում, իսկ ընկերություններից մի օրինավոր բան սպասելը հիմարություն կլիներ, այդ տխուր երևույթները ի նկատի առնելով, ավելի նպատակահարմար կլիներ միջոցներ տալ մասնավոր, ձեռնահաս անձինքներին գործելու։ Եվ փորձը մեր բոլոր ազգային հիմնարկությունների մեջ ցույց է տալիս, որ մասնավոր անձինք ավելի գործ են կատարում, քան թե ամբողջ ընկերություններ։

Խամսայի մելիքությունների պատմությունը գրելով, ես կամեցա ցույց տալ, որ մենք ունենք մի պատմություն, որը արդեն սկսել է մոռացվել, կորչել, անհետանալ,— և իմ ծանոթներին անդադար խոսում էի, թե հարկավոր է այդ պատմությունը ժամանակի հոսանքից ազատել, քանի որ դեռ ավանդությունները թարմ են,

քանի որ մնացած գրավոր նյութերը բոլորովին չեն ոչնչացած զանազան անհայտ անկյուններում։ Եվ գլխավորապես իմ և մի քանի բարեկամներիս հորդորմունքն էր պատճառ, որ այս տարի ծագեց դեպի Սյունյաց աշխարհը ճանապարհորդներ ուղարկելու միտքը գիտնական հետազոտությունների նպատակով։ Միտքը գեղեցիկ էր և նպատակը օգտավետ։ Սյունյաց աշխարհը, ուր կատարվել են այնքան նշանավոր գործեր, ուր մինչև վերջին ժամանակները պահպանվել էին հայկական իշխանությունները, ուր ճանապարհորդը ամեն մի քայլում հանդիպում է հոյակապ հնությունների, պատմական վաղեմի արձանների,— արդարև, Սյունյաց աշխարհը առանձին ուսումնասիրության կարոտ է։ Մի քանի բարեմիտ անձինք ձեռնարկեցին ստորագրությամբ մի գումար հավաքելու այդ գիտնական արշավանքի ծախքերը հոգալու համար։ Հարցը սկըսվեցավ քննվել մինչև անգամ մեր մամուլի մեջ։ Մամուլի մեջ էլ մեռավ։

Դեռ գումարը չհավաքած, որ հայտնի լիներ, թե նրա քանակության համեմատ ի՞նչ գործ կարելի էր կատարել, սկսեցին վիճել պարապմունքների տեսակի և մարդիկների ընտրության վրա (իհարկե, յուրաքանչյուրը աշխատելով, որ իր մարդը ներս խրե և երևակայական գումարից նրան մի բաժին հանե)։ Դա միևնույն պարզամտությունն է, որ դեռ երեխան չծնված, դեռ աղջիկ կամ տղա լինելը չհայտնված, վիճում են այն բանի վրա, թե ի՞նչ անուն պետք է տալ երեխային։

Վիճում էին, թե ի՞նչ անուն պետք է տալ այդ գիտնական արշավանքին, այսինքն՝ նա ինչո՞վ պետք է զբաղվի։ Մեկը ասում էր, թե պետք է քարեղեն և բրոնզե դարեշրջանները քննել, պետք է այրերը և գերեզմանների մեջ մտնել, տեսնելու համար, թե Նոյ նահապետից առաջ ի՞նչ ազգեր են անցել Սյունյաց աշխարհի վրայով։ (Կարծես մենք շատ ենք իմանում, թե մի հարյուր կամ երկու հարյուր տարի առաջ ի՞նչ անցքեր են կատարվել այնտեղ, իսկ հիմա հարկավոր է միայն ցըրհեղեղյան դարերը քննել)։ Մյուսը ասում էր, թե երկիրը պետք է բնագիտական, հանքաբանական, աշխարհագրական և չգիտեմ այլևս ինչական կետերից պետք է ուսումնասիրել։ (Կարծես կառավարությունը, ահագին գումարներ գործ դնելով, չի արել այդ բաները և չէ շարունակում անել, թողել է, որ մենք մեր մի քանի կոպեկներով երկիրը հազար ու մեկ տեսակետից ուսումնասիրենք։) Մեկ ուրիշը առաջարկում էր՝ ծերունի, ալեզարդ Ալիշանին, որը իր սենյակի դռնից դուրս գալ

չէ կարողանում, անպատճառ բերել տալ, դնել պատգարակի մեջ, Ղարաբաղի լեռների վրա ման ածել, որ քարերի արձանագրությունները կարդա: (Կարծես հայր Ալիշանը իր գեղեցիկ գիրքը կազմելու համար ինքը անձամբ եկավ, Շիրակի գավառում ճանապարհորդեց և արձանագրությունները հավաքեց): Մխիթարյանները իրանց միլիոնների հարստությամբ մեր օգնության կարոտություն չունեն, նրանք եթե հարկավոր համարեն, կարող են իրանց երիտասարդ աբեղաներից մեկին Հայաստանի ամեն կողմերը ուղարկել և ծերունի Ալիշանին երբեք չեն անհանգստացնի: Առաջարկվում էր և մի լուսանկար ուղարկել ավերակների պատկերները հանելու համար: (Կարծեմ լուսանկարի էլ մի մեծ պետք չկար. դա առևտրական մի գործ է. դրա համար հարկավոր չէր ոչ օժանդակություն հավաքել, և ոչ գումար կազմել: Եթե Բարկանովը և Ֆիլիպովիչը հասկանան, որ հայերը այն աստիճան գժված են իրանց հայրենիքի ավերակների լուսանկարներով, որ 5 ռուբլ. արժեք ունեցող պատկերները գնում են 20 ռուբլով, անպատճառ իրանց աշակերտներից մեկին կուղարկեն և Հայաստանի բոլոր ավերակների պատկերները հանել կտան, գուցե ավելի լավ, քան թե հանգուցյալ Արտյուրի աշակերտի լուսանկարները): Ինչևիցե, էլ ո՞ւր իմ խոսքս երկարացնեմ, կա՛րճ կասեմ. գիտության, արհեստի, ճարտարության մեջ ոչ մի ճյուղ չէր մնում, որ կամենում էին այդ ողորմելի ուսումնական արշավանքի վզին փաթըթել,— այնքան փաթըթեցին, որ խեղդվեցավ...

Մեզանում նրա՛ համար ամեն օգտավետ առաջարկություններ, ամեն գեղեցիկ մտքեր շատ անգամ մնում են անկատար, որ կամ ոչինչ չենք շինում, իսկ եթե կամենում ենք մի գործ կատարել, ցանկանում ենք անպատճառ ամեն ինչ միանգամից կատարել, քանի որ այդ «ամեն ինչի» հարյուրերորդ մասը իրագործելու համար ոչ միջոցներ ունենք և ոչ պատրաստականություն: Մենք գործը փոքրից սկսելու սովոր չենք: Գոնե օտարներից օրինակ առնենք: Կան ընկերություններ, որ միմիայն իրանց նպատակ են դրել ժողովրդական առակները, առածները, հեքիաթները, նախապաշարմունքների, սնոտիապաշտությունների նկարագիրները հավաքելու: Բայց այս տեսակ ընկերություններ երբեք չեն զբաղվի նույն ժողովրդի բնակած երկիրը բնագիտական, աշխարհագրական կամ գիտության այլ կետերից ուսումնասիրելու. դրանք կարող են մի ուրիշ ընկերության պարապմունք լինել:

Ես դարձյալ կկրկնեմ միևնույն միտքը, որ վերևում հիշեցի. մեզանում ընկերությունները կազմվում են ոչ թե գործ կատարելու համար, այլ գործը սպանելու համար։ Իսկ մասնավոր մարդիկ իրանց եռանդով, անձնանվիրությամբ, տոկունությամբ ավելի են գործում, ավելի արդյունք են ցույց տալիս, քան թե մի ամբողջ ընկերություն։

Ինձ համար ավելի մեծ նշանակություն ունի մի երիտասարդ Նավասարդյանցի աշխատությունը, որը աղքատ, ամեն միջոցներից զուրկ, բայց սիրտը լի եռանդով դերվիշի նման ոտքով ման է գալիս հայոց գյուղերը, մտնում է ժողովրդի ամեն ծալքերի մեջ, հեքիաթներ է հավաքում և մեր զավակներին ընթերցանության տետրակներ է տալիս։ Բայց ի՞նչ է շինում հայոց գրքերի տպագրական ընկերությունը,—ոչ ոք չգիտե։

Այդ բոլորը ինձ ակամայից ասել տվին մի քանի տխուր հանգամանքներ, որոնց վրա երկար խոսելը ավելի հեռու կտաներ։ Բայց ինչ որ ճշմարիտ է, այն է, որ մեզանում մեծ պետք է զգացվում մեր երկիրը, մեր ժողովուրդը, մեր անցյալը և ներկան ուսումնասիրելու։

Աշխատության բաժանության սկզբունքի վրա հիմնվելով, ես մյուս բաժինները թողնում եմ ավելի ընդունակներին, ավելի կարող անձինքներին։ Իսկ ես ընտրել եմ մի մաս միայն, այն է՝ գրել Անդրկովկասում վերջին դարերում ապրող հայոց իշխանների և մելիքների պատմությունը, և երջանիկ կհամարեմ ինձ, եթե կհաջողվի այդ ձեռնարկության մեջ մի փոքրիկ ծառայություն անել մեր գրականությանը։

# «ԳԱՂՏՆԻՔ ՂԱՐԱԲԱՂԻ»

Հեղինակություն Ապրեսի Բեկնազարյանց, թարգմանություն Մակար վարդապետի Բարխուդարյանց: Տպված է Առաքել աղա Մատուրյանցի ծախքով, Ս. Պետերբուրգում, ներկա ամի:

## Ա.

*Վերջապես լույս տեսավ հոդվածիս վերնագիրը կրող գիրքը, որ դեռ չհրատարակված այնքան աղմուկ բարձրացրեց մեր գրականության մեջ։ Այդ աղմուկը ծագեց առավելապես այն մթին, տարօրինակ երևույթից, որի մեջ պարածածկված, այդ գիրքը պիտի ներկայանար հայ հասարակությանը։ Այդ էր պատճառը, որ լրագիրներից ոմանք խոսեցին ի նպաստ և ոմանք աննպաստ։*

*Կանխահաս քննադատությունը թողեց հարցը անվճիռ։ Իսկ այժմ երկպառակության խնձորը դրած է հասարակաց սեղանի վրա, նրան կարելի է ամեն կողմից քննել։*

*«Գաղտնիք Ղարաբաղին», իրավ որ, թաքցրած ունի յուր մեջ մի մեծ գաղտնիք, բայց այդ գաղտնիքը ոչ թե Ղարաբաղի գաղտնիքն է, այլ այդ գրքի իբր թե թարգմանիչ Մակար վարդապետի գաղտնիքն է։ Իմ հոդվածի նպատակը կլինի՝ քննել գլխավորապես վերջին գաղտնիքը։*

*Ահա ինչ է ասում Մակար վարդապետը յուր առաջաբանի մեջ. (Ես քաղում եմ նրա համառոտ բովանդակությունը միայն)։*

*1881 թվի մարտի 5-ին Մակար վարդապետը միայնակ նստած է լինում յուր սենյակում, (ծառան բացակա էր) հանկարծ դուռը բացվում է, ներս է մտնում մի գրեթե* «հարյուրամյա ծերունի», *մուրացկանի հագուստով։ Նա փաթթած թաշկինակների միջից*

հանում է մի ձեռագիր գիրք, հանձնում է հայր սուրբին, ասելով որ այդ գրքի մեջ կան «թե շատ վտանգավոր գաղտնիքներ և թե Ղարաբաղի պատմության համար անգին գանձեր»։ Եվ հասարակությանը ավելի հասկանալի դարձնելու համար, ծերունին խնդրում է, որ վարդապետը այդ աշխատությունը «թարգմանե», գրաբարից աշխարհաբարի վերածե, և «երկու տարի» սպասելուց հետո, տպագրել տալ։

Վարդապետի բոլոր ջանքը, այդ խորհրդավոր ծերունու ով լինելու մասին՝ մնում է ապարդյուն, որովհետև նա, որպես հանկարծակի մտնում է հայր սուրբի սենյակը, այնպես էլ հեռանում է, միայն հայտնելով, թե «իմ անունը և ազգանունը կիմանաք ձեռագրից»։

Այդ ծպտյալ ծերունին «Գաղտնիքի» հեղինակ Ապրես Բեկնազարյանցն է եղել։ Թե հետո ո՞ւր գնաց նա, ի՞նչ եղավ, որտե՞ղ կորավ,— այդ մասին լռում է հայր սուրբը։ Բայց նրա «կտակը» ճշտությամբ կատարում է. գիրքը թարգմանում է, իսկ գրաբար բնագիրը, դժբախտաբար, կորցնում է...

Այդ դժբախտությունը պատահում է 1884 թվին, օգոստոսի 30-ին, կնշանակե՝ գիրքը ստանալուց ուղիղ երեք տարի, 3 ամիս և 25 օր հետո։

Դժբախտությունը պատահում է հետևյալ կերպով. վարդապետը, քարքարոտ Շուշի փողոցների դարուփոսերով, «երեկոյան մութի» ժամանակ իր բնակարանի իրերը տեղափոխում է մի այլ բնակարան։ Ճանապարհին բեռնակրի անզգուշությունից «ծրարի» միջից գրքի թանկագին բնագիրն ընկնում, կորչում է, իսկ թարգմանությունը, բարեբախտաբար մնում է...

Եթե գրքի բնագիրն անհետացած չլիներ, դարձյալ կարելի էր փոքրիշատե հավատալ այդ բոլոր առեղծվածային հանելուկներին։ Բայց բնագրի կորուստն ինքնըստինքյան, առաջ է բերում ամեն մի ուշադիր ընթերցողի մտքում մի խոշոր կասկած. արդյոք այդ գիրքը չէ՞ գրել ինքը Մակար վարդապետը, արդյոք այդ բոլորը չէ՞ հնարել նա՝ յուր աշխատությունն ավելի հետաքրքրական դարձնելու համար։

Փաստերը ավելի կասկածանքի կողմն են թեքվում։

Արդարև, եթե «Գաղտնիք Ղարաբաղին» լիներ մի հին, հարազատ գրվածք, նա այդ երկրի պատմության համար կարող էր մի հարստություն համարվել։ Բայց նոր գրվածքը, այն էլ պատմագրության մեջ, հին արձանագրության անունով տալ հասարակու-

թյանը, դա նույնն է, որպես մեկը կեղծ թղթադրամներ, կամ կեղծ վկայականներ է խարդախում։

Ի՞նչ իրավունքով Մակար վարդապետը թարգմանեց իրեն հանձնված գիրքը։ Եթե այդ աշխատությունը ուներ մի արժանի նշանակություն, նա կարող էր ունենալ միայն յուր հին ձևի մեջ, յուր հին լեզվով։ Բավական չէ, որ Մակար վարդապետը յուր առաջաբանի մեջ ասում է, իբր թե հանձնող ծերունին խնդրեց թարգմանել գիրքը…

Ի՞նչ կասեն մեզանից ամեն մեկին, որ կամենալով հարստահարել Խորենացու անունը, գրենք մի գիրք լի առասպելներով, և ասենք դա Խորենացու պատմության երկրորդ հատորն է։— Ո՞ւր է բնագիրը,— կհարցնեն մեզանից։— Բնագիրը կորցրինք, միայն աշխարհաբար թարգմանությունը մնաց մեր ձեռքում… Ո՞վ կհավատար մեզ։

Մակար վարդապետի վարմունքը շատ չէ զանազանվում այդ օրինակից։

1881 թվին ես ճանապարհորդում էի Ղարաբաղում տեղային մելիքների պատմության համար նյութեր հավաքելու։ Սեպտեմբեր ամսի 10-ին գնացի Շուշի, իջևանեցի առաջնորդարանում, թեմի հաջորդ. արժ. Կարապետ վարդապետ (այժմ եպիսկոպոս) Այվազյանի մոտ։ Իմ ճանապարհորդության նպատակը իմ բոլոր ծանոթներին հայտնի լինելով, յուրաքանչյուրը աշխատում էր օգնել ինձ։ Մեկը բերանացի ավանդություններ էր հաղորդում, մյուսը բերում էր մի որևէ ձեռագիր, որ պատմական նշանակություն ուներ։ Այնպես, որ Շուշիում ինձ հաջողվեցավ հավաքել բավական պաշար։

Ես մնացի այդ քաղաքում ամբողջ երկու շաբաթ։ Այն ժամանակ Մակար վարդապետը համարյա ամեն օր իմ մոտ էր լինում։ Երբեմն Կարապետ հայր սուրբի և իմ հետ ճաշում էր, երբեմն մեզ մոտ թեյ էր խմում։ Մեր խոսակցության առարկան ըստ մեծի մասին Ղարաբաղի մելիքները և նրանց գործերն էին։ Ինքը Մակար վարդապետը աշխատում էր ինձ նյութեր մատակարարել, երբեմն ամբողջ օրով այս կողմ և այն կողմ էր գնում՝ նյութեր որոնելու։

Այդ ժամանակ «Գաղտնիք Ղարաբաղի» բնագիրը պետք է Մակար վարդապետի մոտ լիներ, որովհետև որպես ինքը հայտնում է յուր առաջաբանի մեջ, այդ գիրքը նա ստացել էր խորհրդավոր ծերունուց 1881 թվի մայիսի 5-ին, իսկ ես գտնվում էի Շուշիում նույն թվի սեպտեմբերի 10-ին։ Ուրեմն իմ այնտեղ լինելուց 4 ամիս 5 օր առաջ ստացած պետք է լիներ այդ գիրքը։

Ինչո՞ւ Մակար վարդապետը, որ ամեն ջանք գործ էր դնում ինձ նյութեր մատակարարելու, բայց յուր մոտ գտնված մի ամենահետաքրքիր հնություն, ինչպես էր «Գաղտնիք Ղարաբաղի» բնագիրը, ցույց չտվեց ոչ ինձ, ոչ Կարապետ հայր սուրբին։

Շատ հասկանալի է, եթե մի այսպիսի հնություն գոյություն ունենար, նա չէր թաքցնի ինձանից,—չէր թաքցնի և այն պարոններից, որ այդ ժամանակ Շուշիումն էին, և որոնք հետաքրքրված էին Ղարաբաղի պատմությունով։ Այն ժամանակ Շուշիումն էին պպ. Ղազարոս Աղայանցը, Տիգրան Նազարյանցը («Աղբյուրի» խմբագիրը) և մի ամբողջ վարժապետական խումբ, որի մեջ էր Մակար վարդապետը, և խիստ հաճախ հանդիպում էինք միմյանց։

Մակար վարդապետը կարող է ասել. ես այն ժամանակ թաքցրրի, որպեսզի ինքս օգուտ քաղեի։— Դարձյալ կարող էր օգուտ քաղել, ո՞վ ուժով կխլեր նրա ձեռքից։

Այդ ինքնըստինքյան խիստ ծանր կասկած է ձգում գրքի գոյության վրա, որ Մակար վարդապետը այդ աշխատությունը խորհրրդավոր ծերունիից ստանալուց, մինչև նրա բնագրի կորցնելը, 3 տարի, 3 ամիս և 25 օր պահում է յուր մոտ, և իր բարեկամներից ու ծանոթներից ոչ մեկին ցույց չէ տալիս, որ գոնե վկա լինեին, թե մի այսպիսի ձեռագիր տեսել են նրա մոտ։

Տարակույս չկա, երբ մի մարդ մի այսպիսի երևելի գյուտ է անում, և նրան հաջողվում է ձեռք բերել մի երկհատոր հին աշխատություն, որ բովանդակում է յուր մեջ մի երկրի պատմական գաղտնիքները.— նա ոչ միայն կթաքցնե այդ աշխատությունը (որ հետո կորցնե), այլ կհրատարակե լրագիրներում ի գիտություն հասարակության։ Մակար վարդապետը այդ ևս չի արել, ամեն ինչ ծածկել է մթության մեջ։

Իսկ Մակար վարդապետը պարտավոր էր հրապարակ հանել իր երևելի գյուտը։ Եթե ճշմարիտ են նրա այն խոսքերը, որ նա ասում է յուր առաջաբանի մեջ, թե խորհրդավոր ծերունին հանձնելով նրան այդ գիրքը, «կտակեց» տպագրել տալ,— ուրեմն նրա կտակը ճշտությամբ կատարելու համար նա հրապարակավ պետք է դիմեր հասարակությանը և օժանդակության խնդրեր, որովհետև ինքը աղքատ մարդ էր։ Եվ ես համոզված եմ, որ Թիֆլիսի տպագրական ընկերությունը կամ ամեն մի կարողություն ունեցող հայ չէր խնայի մի այդպիսի նշանավոր հնության տպագրության ծախքը յուր գրպանից վճարել, մանավանդ որ, պատմական աշխատությունների համար հանգուցյալ Իզմիրյանցի թողած գումարից պրեմիաներ կան նշանակված։

*Ուրեմն ինչո՞վ բացատրել Մակար վարդապետի 3 տարի, 3 ամիս և 25 օրվա լռությունը։*

*Ես այս ևս կվերաբերեի հայր սուրբի վերին աստիճանի ծածկամտությանը. եթե նա դրան-նրան նամակներով դիմած չլիներ, որ տպագրեն յուր աշխատությունը,— կրկնում եմ յուր աշխատու*թյունը *և ոչ թե երևակայական Ապրես Բեկնազարյանցի։*

*Մի այսպիսի նամակ Մակար վարդապետը գրել է և ինձ, որով խնդրում էր, որ ես նրա աշխատությունը «Մշակի» մեջ տպել տամ։*

*Այդ նամակները կ'պատառեն «Գաղտնիքի» վարագույրը և Մակար վարդապետի վարմունքը կ'մերկացնեն հասարակության առջև*[1]*։*

*Ինչպես երևում է, Մակար վարդապետը սկզբում նպատակ չի ունեցել այսպիսի վարմունք թույլ տալ իրան, որի օրինակը մինչև այսօր ամենևին չէ տեսնվել մեր գրականության մեջ։ Նրան կամ խելքից հանել են ուրիշները, կամ մոլորության մեջ է ձգել յուր շահասիրությունը։ Թե այսպես, թե այնպես,—հանցանքը կատարված է։ Նա այժմ մի դատապարտյալ է գրական քննադատության ատյանի առջև։*

*Ես իմ հոդվածի շարունակության մեջ ցույց կտամ, թե նա ինչպես է կազմել «Գաղտնիք Ղարաբաղի»-ն։ Այդ գիրքը գրելուց հետո հեղինակի փառասիրությունը դրդել է նրան տպագրված տեսնել յուր աշխատությունը։ Դիմել է զանազան անձանց և ոչ մի տեղից օժանդակություն չի գտել։ Հետո մտածել է՝ յուր անունը մի կողմ դնելով, յուր աշխատությունը պսակել մի երևակայական հեղինակի անունով, իբրև մի գրվածք, որ մի քանի հարյուր տարվա հնություն ունի, և բովանդակում է յուր մեջ* «ամենավտանգավոր գաղտնիքներ» *և* «ամենահարուստ պատմական գանձեր» *և այլն։— Այդ հրապույրներով, մտածել է նա, մի բարեսիրտ մարդ գտնել, որ տպագրության ծախքը հոգա, բացի դրանից, գիրքը հետաքրքրական դարձնել, որ լավ ծախվի։*

---

[1] *Որովհետև դրանով պետք է մերկանա գրականական մի մեծ խարդախություն, որ եթե անլուծելի մնա, կարող է ապագայում գայթակղության մի քար դառնալ մեր պատմագրության մեջ,—այդ ի նկատի ունենալով, ես վստահանում եմ հրապարակավ պարտք դնել այն բոլոր պարոնների վրա, որոնք Մակար վարդապետից նամակներ են ստացել ամբողջապես հրատարակեն, իսկ եթե նամակները չեն պահել, գոնե հրատարակեն նրանց բովանդակությունը։ Իսկ ես յուր ժամանակին կհրատարակեմ իմ ձեռքում եղածները։*

*Բարեսիրտ մարդը գտնվեցավ,—Բաքուի մեծ. Առաքել աղա Ծատուրյանցը, որ իրեն հատուկ առատաձեռնությամբ 800 ռուբլի նվիրեց գրքի հրատարակության համար։*

*Կրկնում եմ, վերջին միտքը Մակար վարդապետի մեջ ծագել է շատ ուշ։ Այդ երևում է այն հանգամանքից, որ երբ հայր սուրբը յուր մեջ վճռել է՝ յուր աշխատությունը մի ավելի հրապուրիչ հեղինակի անունով ներկայացնել, այդ միջոցին ստիպված է եղել փոփոխել յուր առաջին առաջաբանը և գրել այն նոր առաջաբանը, որ այժմ գրած է «Գաղտնիքի» սկզբում, և որի մեջ նկարագրված է խորհրդավոր ծերունու ամբողջ առասպելը։ Առաջաբանի փոխելու մասին, յուր ծանոթության մեջ, այսպես է արդարացնում իրան հայր սուրբը. «Մենք մեր նախկին առաջաբանությունը չէինք փոխիլ, եթե կորուսված չլիներ «Գաղտնիք Ղարաբաղի» բնագիրն։ Բնագրի կորստից ցավոք սրտի ստիպյալ փոխեցինք մեր նախկին առաջաբանությունը»։*

*Մի այլ հետաքրքրական փաստ։*

*Հայր սուրբ «Գաղտնիք Ղարաբաղի»-ի բնագիրը, որպես ինքն է ասում, կորցրել է 1884 թվի օգոստոսին։ Իսկ այդ գիրքը ցենզորից թույլտվություն է ստացել 1885 թվի դեկտեմբերի 31-ին։ Ուրեմն մինչև ցենզորից թույլտվություն ստանալը, արդեն 16 ամիս առաջ բնագիրը կորած էր։ Այլևս ի՞նչ հարկ կար, որ նա ստիպված լիներ՝ բնագիրը կորցնելու պատճառով առաջաբանը փոխել։ Եթե բնագրի կորուստը պատահած լիներ ցենզորից թույլտվություն ստանալուց հետո, այդ թերևս հասկանալի է, կարելի էր ընդունել, որ առաջաբանը փոխեց, որպեսզի բնագրի կորստյան մասին բացատրություններ տա։*

*Հիշյալ երկու միմյանց հակառակ առաջաբանները շատ բան պիտի պարզեն, և այդ շատ հեշտ է ստուգել։ Տպագրական օրենքով թե առաջին և թե վերջին առաջաբանի օրինակները պետք է մնացած լինեն Ս. Պետերբուրգի Ի. Ն. Սկորոխոդովի տպարանում, որտեղ տպվել է «Գաղտնիք Ղարաբաղ»-ին։ Եվ ես կաշխատեմ նոանց պատճենները ձեռք բերել*[1]*։*

---

[1] *Մակար վարդապետը մի օրինակ ևս յուր աշխատության ուղարկած է եղել Մոսկվա հանգուցյալ Հակոբ քահանա Սուրենյանցին յուր հրատարակելիք «Նոր հանդեսի» մեջ տպելու համար։ Այդ ամսագրի նախապատրաստական ժողովներում, արժանապատիվ հոր տանը կարդացվում էր և Մակար վարդապետի աշխատությունը։ Մի քանի ուսանողներ, որ ներկա են եղել այդ ժողովներին, ինձ պատմեցին, Մակար վարդապետի առաջին առաջաբանի բովանդակությունը,*

Եթե «Գաղտնիք Ղարաբաղի»-ն լիներ մի վեպ կամ այլ աշխատություն, չարժեր նրա վրա ուշադրություն անգամ դարձնել։ Նա այն աստիճան անշնորհք կերպով կազմված է, որ ինքն իրան կմեռներ։ Բայց այդ գիրքը մի պատմական հիշատակարան է։ Պատմագրից, այն էլ հին պատմագրից, այնքան գրական մեծ արժանավորություններ չէ պահանջվում, որքան փաստերի ճշտություն։ Իսկ կեղծ փաստերը միշտ կարող են մոլորեցնել։ Այդ ի նկատի առնելով, եթե այժմվանից չմերկացվի «Գաղտնիք Ղարաբաղի»-ի խարդախությունը, կանցնեն տարիներ, գործը կմոռացվի, և այդ գիրքը կմնա մեր գրականության մեջ, որպես մի անհարազատ վկայական, որ շատերին կգայթակղեցնե։

## Բ

Իմ նկատողությունները կարող են ոմանք լոկ ենթադրություններ համարել, եթե չդիմենք նույնիսկ «Գաղտնիք»-ին, քննելով նրան, արդյոք այդ գիրքը կրո՞ւմ է յուր վրա հնության դրոշմը, ցո՞ւյց է տալիս մի նշույլ անգամ հին գրվածքի, թե նա մի նոր աշխատություն է, միայն հին անվան տակ ծածկված, որպես դրամանենգը յուր նոր շինած դրամը անթիքայի անունով է վաճառում, որպեսզի ավելի շահ ստանա։

Իմ հետազոտության մեջ ես պետք է շոշափեմ գլխավորապես հետևյալ կետերը.

1) «Գաղտնիք»-ի հեղինակները՝ հայր և որդի Բեկնազարյանները— իրակա՞ն անձնավորություններ են, թե մտացածին։

2) «Գաղտնիք»-ի հյուսվածքը, լեզուն, գաղափարները, նկարագրությունները արտահայտու՞մ են արդյոք իրանց ժամանակի հատկանիշները։

3) Ի՞նչ աղբյուրներից է կազմվել այդ գիրքը։ Կարելի՞ է վավերական համարել այն բոլոր թղթակցությունները, որ զետեղված են այդ գրքի մեջ։ Արդյոք «Գաղտնիք»-ը տալի՞ս է մեզ յուր խոստացած «ամենավտանգավոր գաղտնիքները» և այն պատմական

---

պատմեցին և այն, որ այդ աշխատությունը առաջ այն ծավալը չուներ, որ այժմ ունի, այլ բաղկացած էր մի քանի փոքրիկ տետրակներից միայն։ Այդպես էլ պետք է լիներ, որովհետև որպես ես սիրտի ցույց տամ, Մակար վարդապետը հետո է ստվարացրել այդ գիրքը և նրան երկու հատոր դարձրել։ (Մեծ դոք. Սուրեն Սուրենյանցի ուշադրությունն եմ դարձնում այս և նախընթաց ծանոթության վրա)։

«անգին գանձերը», որ մինչև այսօր հայտնի չեն եղել մեր գրականության մեջ։

4) Պատմական սխալներ, որ չի պիտի աներ ժամանակակից գրողը։ «Գաղտնիք»-ի գործող անձիքը։

5) Հրեշավոր չափազանցություններ, որ զուրկ են պատմական ճշմարտությունից։

6) Ի՞նչ անստուգություններ կարող են առաջ գալ պատմության մեջ, եթե ընդունվի այդ գիրքը իբրև հարազատ մի գրվածք։

7) Մի քանի խոսք այն անձանց նկատմամբ, որոնք ոչ միայն ներելի են համարում Մակար վարդապետի վարմունքը, այլև մինչև անգամ ջատագովում են։

Սկսենք «Գաղտնիք»-ի հեղինակներից։

Դրանք երկու հոգի են. հայրը՝ Աբրահամ Բեկնազարյանցը և որդին՝ Ապրես Բեկնազարյանցը։

Թե հայրը և թե որդին, որ ամեն չնչին անցքերի մասին թվականներ են դնում, բայց իրենց ծննդյան թվականը չեն նշանակում, որպեսզի հայտնի լիներ, թե ո՞ր դարում էին ապրում այդ մի զույգ մատենագիրները և որքա՞ն ապրեցին, որ ամեն ինչ գրում են իբրև ականատեսներ, իբրև ժամանակակիցներ, և մանավանդ համարյա բոլոր անցքերի մեջ՝ իբրև անմիջական գործիչներ։

Թեև այդ տարօրինակ հեղինակների ծննդյան թվականները մնում են որպես գաղտնիք «Գաղտնիք»-ի մեջ, բայց անգիտակցաբար բաց են թողնված գրքի մեջ այնպիսի հիշատակություններ, որոնցով շատ հեշտ է գտնել՝ նրանց ծննդյան եթե ոչ ճիշտ թվականները, գոնե ավելի հավանականը։ «Գաղտնիք»-ի հենց առաջին գլխի սկզբում (եր. 17) որդի Բեկնազարյանցը յուր հոր մասին ասում է.

«Հայրս— Բեկնազարյանց Աբրահամն— Ներսես կաթողիկոսին մոտ յուր ուսմունքը ավարտած, նրա մոտ երկար ժամանակ մնացած և Ղարաբաղի հոգևոր և մարմնավոր կյանքի վերաբերյալ պատմություններ ընդօրինակած էր։ Այս այն Ներսեսն էր, որ նախ Երից-Մանկաց վանքի կաթողիկոսն էր և հետո եղած էր Գանձասարի կաթողիկոսը։ Գանձասարը Աղվանից մայր աթոռն էր, իսկ Երից-Մանկաց վանքն սորա հակաթոռն»։

Այդ յուր տեղումը ես ցույց կտամ, որ հիշյալ Ներսեսը երբեք Ղարաբաղի պատմությամբ չէ զբաղվել և Ղարաբաղի պատմություն չէ գրել, որ նրա աշակերտ Աբրահամ Բեկնազարյանցը ընդօրինակած լիներ յուր «Գաղտնիք»-ը կազմելու համար,— այլ,

ընդհակառակն, Ղարաբաղի պատմությունը գրել է և մեզ թողել է Գանձասարի Ջալալյան Եսայի կաթողիկոսը, որի հակառակորդն է Ներսեսը։—Այժմ մեզ համար հետաքրքիր է գիտենալ այսքանը միայն, թե ո՞ր թվականներում էր ապրում այդ Ներսեսը, որպեսզի նրա համեմատ գտնենք նրա աշակերտ Աբրահամ Բեկնազարյանցի ծննդյան տարեթիվը։

Ներսեսը Երից-Մանկաց վանքում[1] հակաթոռ կաթողիկոս ձեռնադրվեցավ ընդդեմ Գանձասարի Ջալալյան Եսայի կաթողիկոսի և նրա կենդանության ժամանակ, հայոց 1155 թվի, իսկ փրկչական 1705-ին[2]։

Ով որ գիտե այդ Ներսեսի պատմությունը, թե որքան զբաղված էր նա յուր անընդհատ կռիվներով մի կողմից, Գանձասարի Ջալալյան Եսայի կաթողիկոսի հետ, որին ներհակ հակառակորդ էր, կաթողիկոս էր դարձել, մյուս կողմից՝ Էջմիածնի Աղեքսանդր կաթողիկոսի և նրա հաջորդների հետ, մինչև Սիմոն կաթողիկոսը, որոնցից բանադրվեցավ նա իբրև ըմբոստ և ապստամբ[3], կրկնում եմ, ով որ գիտե այդ Ներսեսի պատմությունը, որ բացի հիշյալ կռիվներից, նա զբաղված էր և զանազան քաղաքական հարցերով,—ով որ գիտե այդ բոլորը, կարող է համոզված լինել, որ նա

---

[1] Երից-Մանկաց վանքը գտնվում է Թարթար գետի ձախ կողմում, մի անտառապատ ձորի մեջ, հինգ թե վեց վերստաչափ հեռավորության վրա Ջրաբերդ ամրոցից։ Իսկ Գանձասարի վանքը, որ Աղվանից կաթողիկոսների աթոռատեղին է, գտնվում է Ղարաբաղի Խաչեն գավառում, Խաչեն գետի ձախ կողմում, մի լեռան վրա։

[2] Այդ Ներսեսը նույնպես հակաթոռ, Սիմոն կաթողիկոսի ազգականն էր, որ հիմնեց Երից-Մանկաց վանքը, և նրա տոհմից մի քանի հակաթոռ կաթողիկոսներ նստեցին հիշյալ վանքում, որոնք ոչ սակավ խռովություններ հարուցին իրանց ժամանակում և Ղարաբաղի կործանման պատճառ դարձան։ Ներսեսի գործերի հետ ծանոթանալու համար խորհուրդ ենք տալիս կարդալ հետևյալ աշխատությունները. «Խամսայի մելիքությունները» եր. 34, 44, 51, 52, 111, 114, 116։ «Ջամբռ» եր. 81—86։ Ներսես կաթողիկոսի անունը գտնում ենք և Եկատերինա I կայսրուհու 1726 թվի 22 փետրվարի հրովարտակի մեջ, ի թիվս Եսայի կաթողիկոսի, Եգան Իշխանի, (Տիզակի մելիք Եգանի) և Ավան յուզբաշու անունների, որոնք այդ ժամանակ քաղաքական հարաբերություններ ունեին ռուսաց արքունիքի հետ։

[3] Աղվանից ապստամբները թե Գանձասարում և թե այլ տեղերում, որ հետո հայտնվեցան, ամենքը կախումն ունեին Էջմիածնից, ավանդական սովորության համեմատ, որ այդ երկրի առաջին կաթողիկոսը՝ Գրիգորիս Լուսավորչի աթոռն էր։ Առանց Էջմիածնի, առանց մայր աթոռը, թույլտվության ձեռնադրվողները համարվում էին ապստամբ։

յուր կաթողիկոսության օրերում մի րոպե անգամ ժամանակ չէր ունենա պարապելու Աբրահամ Բեկնազարյանցի կրթությամբ։ Բացի դրանցից, ibրև կաթողիկոս նրա բարձր աստիճանը չէր ների, մի որևիցե խոնածախցի հասարակ շինականի՝ Աբրահամ Բեկնազարյանցի վարժապետությամբ պարապելու

Եթե ընդունենք, որ Աբրահամ Բեկնազարյանցը, ինչպես վերևում հիշված է, այդ Ներսեսի մոտ աշակերտություն է արել, ուսումը ավարտել է, և նրա մոտ «երկար ժամանակ» մնացել է,— այդ կարող էր լինել Ներսեսի թե կաթողիկոսությունից և թե եպիսկոպոսությունից առաջ, այսինքն՝ նրա աբեղայության ժամանակ։

Իսկ եթե ընդունենք և այն, որ Աբրահամ Բեկնազարյանցը Ներսեսի մոտ յուր ուսումը ավարտելուց հետո այնքան զարգացած էր, որ պատմություններ էր ընդօրինակում յուր «Գաղտնիք»-ը կազմելու համար,— այդ ժամանակ նա անպատճառ պետք է գոնե 30 տարեկան լիներ։ Ուրեմն նա պետք է ծնված լիներ 1675 թվին, այսինքն՝ յուր վարժապետի կաթողիկոս ձեռնադրվելուց 30 տարի առաջ։ Այդ 30 տարին ես այդպես եմ բաժանում. մի որևէ վանք մտնելու համար՝ վանական կանոններով պատանու երեսի մազերը պետք է դուրս եկած լինեն. եթե Աբրահամ Բեկնազարյանցը 18 կամ 20 տարեկան էր, երբ մտավ Երից-Մանկաց վանքը, մի 10 կամ 12 տարի էլ հարկավոր էր, որ նա այնքան ուսում առներ, զարգանար, որ պատմություն գրեր, մանավանդ այն ժամանակ, որ մարդիկ իրենց ամբողջ կյանքը նվիրում էին ուսման և ոչինչ չէին սովորում։

Այժմ Աբրահամ Բեկնազարյանցի ծննդյան թվականը մեր ձեռքում ունենք։ Նա ծնվել է 1675 թվին։ Որոնենք, թե որ թվին մեռավ նա։

Հոր գրած պատմությունը շարունակող որդին— Ապրես Բեկնազարյանցը, որ թվականների սիրահար է, յուր հոր մահվան տարեթիվը չէ դնում «Գաղտնիք»-ի մեջ, այլ դնում է միայն ամսաթիվը, հոկտեմբերի 10-ին (եր. 390)։ Այդ ևս մի գաղտնիք է...

Բայց նա մոռանում է, որ յուր հայրը 1828 ամի սեպտեմբերի 20-ին հիվանդության անկողնում, ստանում է մի նամակ Ղարաբաղի Բաղդասար միտրոպոլիտից և պատվիրում է որդուն պատասխանը գրել (եր. 387)։ Եթե նույն տարվա մեջ մեռած լինի նա, ուրեմն ապրել է ամբողջ 153 տարի (1675—1828)։ Ինչո՞ւ է տվել Մակար վարդապետը յուր երևակայական պատմագրին այդքան երկար կյանք,— այդ շատ հետաքրքիր է գիտենալ։ Որովհետև եթե

Աբրահամ Բեկնազարյանցը 153 տարի չապրեր, չէր կարող ականատես լինել այն բոլոր անցքերին, որ գրել է «Գաղտնիք»-ի մեջ։ Այդ 153 տարվա շրջանակի մեջ ամփոփվում է Ղարաբաղի մելիքների ամբողջ պատմությունը, սկսյալ Պետրոս Մեծի օրերից մինչև 1828 թվի վերջին ռուս-պարսկական պատերազմը, երբ Ղարաբաղի մելիքները դադարում են ռուսաց արշավանքներին մասնակցել և երբ Աբրահամ Բեկնազարյանցը հարկավոր չէ համարում ավելի ապրել— մեռնում է... և պատմությունը գոցվում է...

Ոչ սակավ հետաքրքիր է որդու՝ Ապրես Բեկնազարյանցի, կյանքի երկարությունը։ Մակար վարդապետը պարգևել է նրան այնքան տարիներ, որ հասցրել է մինչև իր ժամանակը, 1881 թվականը, որպեսզի նա միջոց ունենա «Գաղտնիք»-ը յուր ձեռքով հանձնել հայր սուրբին։ Այդ թվականից հետո անհետացրել է խեղճին...

Որդի Բեկնազարյանցի ծննդյան տարեթիվը գտնելու համար դարձյալ պետք է այլ փաստերի դիմել. որոշ հիշատակություն չկա գրքի մեջ։

1795 թվին տեսնում ենք նրան՝ յուր ուսումը իրանց գյուղի քահանայի մոտ ավարտած, Եղիշեն և քերականությունը սովորած, մի աշխույժ և անվախ պատանի, գտնվում է յուր հոր քաջերի թվում, որ կռվում էին Աղա-Մամադ-խանի զորքերի հետ, երբ նա պաշարել էր Շուշի բերդը (եր. 16—37)։

Եթե նա այդ ժամանակ 20 տարեկան լիներ, ուրեմն ծնվել է 1775 թվին։ Մինչև 1881 թիվը այդ մարդը դեռ կենդանի էր։ (Գուցե այժմ էլ կենդանի է)։ Այդ թվականում հայտնվեցավ նա Մակար վարդապետի մոտ և յուր ձեռքով հանձնեց նրան «Գաղտնիք»-ը։ Ուրեմն ապրել է նա 106 տարի, դարձյալ մի պատկառելի հասակ։ Այդ հասակում 15 հազար ոսկի յուր հագուստի ծալքերի մեջ կարած և «Գաղտնիք»-ը նրանց թվում, յուր ցնցոտիների մեջ թաքցրած, մուրացկանի կերպարանքով ցուպը ձեռին, ոտով, 39 տարի ճանապարհորդել[1] է ամբողջ Տաճկական Հայաստանը,

[1] Յուր ճանապարհորդական նկարագրությունների մեջ, մի տեղում (եր. 398) Ապրես Բեկնազարյանցը ասում է. «Պետք չէ մոռանալ, որ շատ վանքերում, քաղաքներում և գյուղերում զիս Սավրի գեղացի խաչագող կարծելով՝ ցուրտ կերպով էին ընդունում և հյուրընկալում»... Զարմանալի նմանություն կա «Գաղտնիք»-ի հերոսների և «Խաչագողի հիշատակարանի» տիպերի մեջ։ Իմ հոդվածի շարունակության մեջ ես առիթ կունենամ այդ նմանությունը ցույց տալու։ Դա ինքնըստինքյան մի պարզ ապացույց է «Գաղտնիք»-ի շինծու և մտացածին լինելուն։ Ոչ Աբրահամ Բեկնազարյանցը և ոչ դրա որդի Ապրես

անցել է Պարսկաստանը, մինչև եկել է Ղարաբաղ և Մակար վարդապետին գտել է խորհրդավոր գիրքը նրան հանձնելու համար։ Զարմանալի է, որ ոչ մի Թուրք կամ քուրդ նրան չի հանդիպել, եթե «Գաղտնիք»-ը չհափշտակեին, ոսկիներին կարծեմ չէին խնայի (եր. 394—398)։

Այժմ «Գաղտնիք»-ի երկու հեղինակների՝ հոր և որդու կյանքի տարիները մեր ձեռքում ունենք։

Հայրը ապրել է 153 տարի։

Որդին 106 տարի։

Երկուսը միասին՝ 259 տարի։ Ուղիղ երկու և կես դարից 9 տարի ավել։ Լավ է հաշվել Մակար վարդապետը։ Եթե հիշյալ թվանշանները երևակայական չլինեին, կարելի էր ընդունել, որ հայր և որդի Բեկնազարյանները հայոց մելիքների բոլոր գործողություններին վկա, ականատես և ժամանակակից են եղել, և ամեն ինչ տեսնելով են գրել, և այսպիսով կազմել են այն հրաշալի գիրքը, որը բովանդակում է յուր մեջ հայոց պատմության համար «թանկագին գանձեր» և այլն։ Պետք չէ մոռանալ և այն, որ այդ մի զույգ պատմագրները ոչ միայն ականատես են եղել անցքերին, այլ իրանք անմիջական և գլխավոր դեր են կատարել բոլոր գործողությունների մեջ։ Մասնակցել են մելիքների պատերազմներին, մասնակցել են նրանց գաղտնի հարաբերություններին և դեսպանախոսություններին օտար պետությունների հետ, մի խոսքով, ոչինչ չէ կատարվել առանց նրանց մասնակցության և գիտության։

Թողնենք այդ հրեշավոր երկու և կես դարերը, որ մի պարզ ապացույց են «Գաղտնիք»-ի հեղինակների երևակայության ծնունդ լինելուն,— և ընդունենք, թե իրավ եղել են մի զույգ հայր և որդի, որոնք 259 տարի ապրել են, ամեն ինչ տեսել են և հիշյալ գիրքը գրել են։ Այժմ դիմենք նույնիսկ «Գաղտնիք»-ին, արդյոք կարո՞ղ էր այդ գիրքը 1881 թվին հասած լինել Մակար վարդապետի ձեռքը։

---

Բեկնազարյանցը չէին կարող կարդացած լինել «Խաչագողի հիշատակարանը», որ հետևեին նրան։ Այդ Մակար վարդապետը միայն կարող էր կարդալ և, նրանցից օգուտ քաղելով պատմական անձնավորությունների փոխարեն, զանազան խաբեբա և խարդախ քավոր պետրոսներ ստեղծել։ 15.000 ոսկի յուր հետ ունենալուց հետո, ի՞նչ հարկ կար մուրացկանի կերպարանքի մեջ մտնել։ Այդ խաչագողներն են միայն անում։ 15.000 ոսկիով կարելի էր փառավոր կերպով ճանապարհորդություններ անել։

«Գաղտնիք»-ը կազմելու ժամանակ ինչպես երևում է, Մակար վարդապետը յուր միտքը բավական հոգնեցրել է, որքան կարելի է ծածկել յուր վարմունքը,— բայց նրա անզգուշությունը նրանումն է եղել, որ որտեղ հարկավոր էր թվականներ և թվանշաններ դնել, նա չէ դրել, իսկ որտեղ հարկավոր չէր, նա առատությամբ դրել է, առանց մտածելու, որ այդ թվականները և թվանշանները կարող են մատնել իրան։

Յուր առաջաբանի մեջ Մակար վարդապետը ասում է 1881 թվին, մայիսի 5-ին Ապրես Բեկնազարյանցը մուրացկանի կերպարանքով հայտնվեցավ նրա մոտ և «Գաղտնիք»-ը հանձնեց նրան։ Տեսնենք Ապրես Բեկնազարյանցը կարո՞ղ էր հիշյալ թվին Մակար վարդապետին տեսած լինել։

Ապրես Բեկնազարյանցը «Գաղտնիք»-ի վերջաբանի մեջ (394—398) ասում է, որ գտնվելով պարսից ծառայության մեջ, երկար ժամանակ դիտավորություն ուներ թողնել Պարսկաստանը, վերջապես 1838 թվին հաջողվում է նրան ուխտավորի անունով դուրս գալ Թավրիզից և ուղևորվել դեպի Երուսաղեմ։ Այնտեղ մտնում է սուրբ Հակոբյան վանքի հայ միաբանության կարգը և ընդունում է նրանց հագուստի և մորուքի ձևը (˝)։ Այդ վանքում մնում է նա ամբողջ 9 տարի։ Հետո ս. պատրիարքի օրհնությունը առնելով, 1846 թվին թողնում է այդ վանքը և հեռանում է Երուսաղեմից։ Այնուհետև, որպեսզի թեթև լինի յուր փողերը, ոսկիների փոխարկելով, 15.000 ոսկի կարում է ցնցոտիների մեջ, և մուրացկանի կերպարանքով սկսում է զանազան երկրներում ճանապարհորդություններ անել։ Որտեղ ասեք լինում է նա։ Այդ վերջին ճանապարհորդությունները տևում են 39 տարի, մինչև գալիս հասնում է Ղարաբաղ, և յուր հայրենական Խնածախ գյուղում մնում է 10 օր միայն։

Այժմ հաշվենք։

1838 թվին նա թողել է Պարսկաստանը։

9 տարի մնացել է Երուսաղեմում։

39 տարի ճանապարհորդություններ է արել։

Եթե այդ բոլորը ի մի գումարենք կստանանք ներկա 1886 թվականը, որի մեջ ապրում ենք։ Ուրեմն այս տարի Ապրես Բեկնազարյանցը պետք է հանձնած լիներ Մակար վարդապետին յուր «Գաղտնիք»-ը և ոչ թե 1881 թվին, երբ նա Ղարաբաղում չէր կարող գտնվել։

Այդ հաշվով պարզվում է այն ամբողջ առասպելը, որ Մակար վարդապետը հնարել է, թե 1881 թվին ստացավ «Գաղտնիք»-ը, թարգմանեց, հետո բնագիրը կորցրեց և այլն,— դրանցից և ոչ մեկը չէր կարող պատահել, որովհետև ներկա թվականից առաջ հիշյալ գիրքը նրա ձեռքը հասնել չէր կարող։

Այդ բոլորից այն եզրակացությանն ենք հասնում, որ «Գաղտնիք»-ի մի զույգ հեղինակները—հայր և որդի Բեկնազարյանները— երևակայական անձնավորություններ են, թե այդ գիրքը Մակար վարդապետի խարդախած աշխատությունն է, և թե Մակար վարդապետը այդ գրքի առաջաբանի մեջ, ի դեմս Ապրես Բեկնազարյանցի, նկարագրել է միայն յուր ատանդական կյանքը Տաճկական Հայաստանում և յուր 9 տարի մնալը Երուսաղեմի վանքի միաբանության մեջ և այլն։

Առհասարակ «Գաղտնիք»-ի մեջ նշանակված թվականների մեծ մասը, անցքերի և փաստերի հետ համեմատելով, ցույց են տալիս խիստ խոշոր հակասություններ, որոնք պարզ կերպով երևան են հանում այն անհերքելի ճշմարտությունը, որ եթե հեղինակը գոյություն ունենար և ժամանակակից անձն լիներ, այն տեսակ սխալներ չէր անի։

Ես դեռ չեմ վերջացրել «Գաղտնիք»-ի մի զույգ հեղինակների հետ— հայր և որդի Բեկնազարյանների հետ։ Դրանց պետք է ամեն կողմից քննել, որովհետև դրանց գոյության հետ սերտ կապ ունի «Գաղտնիք»-ի հարազատության կամ անհարազատության խնդիրը։ Հենց մի անգամ ապացուցվեցավ, որ Բեկնազարյանները երևակայական անձնավորություններ են—խակույն ինքնըստինքյան փուլ կգա ամբողջ «Գաղտնիքը»-ը և կապացուցվի, որ այդ գիրքը նույնպես մի երևակայական աշխատություն է, մի անհայտ հեղինակի գրած։

Ինչո՞ւ։

Նախքան այդ հարցին ուղղակի պատասխանելը, պետք է որոշել, թե ի՞նչ տեսակ աշխատություն է «Գաղտնիք»-ը։

«Գաղտնիք»-ը վեպ չէ, պատմություն ևս չէ։ «Գաղտնիք»-ը մի հիշատակարան է, որի մեջ խառն և անկարգ կերպով պատմըվում են զանազան պատմական անցքեր։ Անցքերի պատմողները— Բեկնազարյանները—կամ անմիջական կերպով ինքը գործում է անցքերի մեջ, կամ, եթե ինքը ներկա չէ, մյուս գործիչների հետ

սերտ կապեր ունի և նրանցից ստանում է հարկավոր տեղեկությունները։ Եվ այսպիսով, հիշատակարանի մեջ գործող անձը դառնում է, միևնույն ժամանակ, նրա գրողը, նրա հեղինակը։

Պատահում են շատ վեպեր, և իմ վեպերից մի քանիսը այդ ձևով է գրված, որ ամբողջ վեպը սկզբից մինչև վերջը պատմում է գործող անձինքներից մեկը։ Բայց այստեղ հեղինակը հայտնի է։ Նա միայն յուր խոսքը յուր ստեղծած տիպի բերանն է դնում, և յուր վիպասանության վերաբերությամբ՝ բոլոր պատասխանատվությունը յուր վրա է առնում։

Բայց Մակար վարդապետը հրաժարվում է իրան «Գաղտնիք»-ի հեղինակ ճանաչել։ Մնում են Բեկնազարյանները, որոնք թե անձամբ խառն են կատարված անցքերի մեջ և թե իրենց հիշատակարանի մեջ գրում են նույն անցքերը։ Եվ այսպես անցքերի ճշտության պատասխանատվությունը մնում է վերջինների վրա։ Ուրեմն, եթե հայտնվեն փաստերի մեջ զեղծումներ և խոշոր զեղծումներ,— պետք է ընդունել երկուսից մեկը, կամ Բեկնազարյանները ստախոսներ են և իրենց երևակայության ցնորքները տալիս են մեզ իբրև զուտ պատմական փաստեր, կամ նրանք բանաստեղծական անձնավորություններ են, այլ մի անհայտ հեղինակ գրել է այդ հիշատակարանը և Բեկնազարյանների անունով նույն զեղծումներն է անում,— աղավաղում է պատմությունը։

Վերջին դեպքում, «Գաղտնիք»-ը կկորցնե յուր հարազատությունը և կդառնա մի անհայտի կեղծ աշխատությունն։ Թո՛ղ լինի այդ անհայտը Մակար վարդապետը, կամ մի ուրիշը,—միևնույն է։

Ահա ինչու ասում էի ես, թե երբ մի անգամ ապացուցվեցավ, որ Բեկնազարյանները երևակայական անձնավորություններ են,— իսկույն փուլ կգա և կփշրվի ամբողջ «Գաղտնիք»-ը։

Դիմենք փաստերին։

«Գաղտնիք»-ի մեջ գտնում ենք անթիվ գաղտնի թղթակցություններ կամ ամբողջապես, կամ նրանց բովանդակությունը։ Այս տեսակ գաղտնի թղթակցությունները թե պետությունների և թե մասնավոր բարձր պաշտոնակալների հարաբերության մեջ, սկզբում խստիվ պահվում են դիվաններում, քանի դեռ գործողությունները չեն վերջացած։ Իսկ գործողությունները վերջանալուց հետո, նրանք դառնում են հնադարանների (արխիվների) սեփականություն։ Ապագայում, շատ հեռավոր ապագայում, նրանցից սակավներին է վիճակվում պատմության նյութ դառնալ։

Բայց «Գաղտնիք»-ի մեջ հակառակն ենք տեսնում։ Դեռ այդ գաղտնի թղթակցությունների մելանը չչորացած նրանք մտնում են «Գաղտնիք»-ի մեջ։ Ո՞րտեղից, ի՞նչպես, ո՞ր սատանան է բերում,— մարդ դժվարանում է հասկանալ։ Այժմ տեսնենք արդյոք հայր և որդի Բեկնազարյանները ի՞նչ պաշտոն էին կատարում պարսից թագավորների արքունիքում, որ նրանց մատչելի էին այն բոլոր դիվանական գաղտնիքները և այն բոլոր գաղտնի թղթակցությունները, որ նրանք անմիջապես ներմուծում էին իրանց հորինած գրքի մեջ։

Սկսենք որդուց—Ապրես Բեկնազարյանից։

1795 թվին, սեպտեմբեր ամսում, Աղա-Մամադ շահը ավերակ է դարձնում Թիֆլիսը և 12.000 գերիների բազմությամբ[1] սկսում է չվել դեպի Պարսկաստան։ Նա Ղարաբաղից իր հետ է տանում թե հայր և թե որդի Բեկնազարյաններին (եր. 172)։ Հենց բանակի մեջ, ճանապարհին գնալու ժամանակ, շահը վարժապետ է կարգում, որ պատանի Ապրեսին պարսկերեն սովորեցնե։ Բավական մեծ հոգացողություն պետք է համարել շահի կողմից...

> «Պարսից վարժապետս Շուշու բանակատեղից սկսած շահի ստիպմամբ աշխատում էր ինձ ուսուցանել պարսկերեն խոսել, գրել և կարդալ... Սկսա հաճախ կարդալ Կյուլստան դասագիրքս և ձանձրացած ժամանակներս ընդօրինակել։ Եվ ահա այսպիսի շարունակությամբ ունակությունս օր քան զօր զորացավ... և առաջադիմեցի իմ ձեռնարկության մեջ։ Որքա՜ն ուրախանում էր իմ բարերար շահն, երբ իր հետ խոսակցում էի պարսկերեն և արտագրում էի գեղեցիկ. վասն որոյ շահն հրամայեց յուր դիվանապետին, որ հետզհետե ինձ օրինակել տա արքունիքի հրովարտակներ, շրջաբերականներ և գաղտնի նամակներ, որպեսզի այս մասնաճյուղը մշակելով ապագայում ես լինեի իբր գաղտնի նամակագիր» (եր. 221)։

Այդ բոլորը խիստ հետաքրքիր է։

Թողնենք այն, որ շահի «գաղտնի նամակագիրը» մասնագիտաբար չէ պատրաստվում, և նրանցից այնքան խորին դպրություն չէ պահանջվում, որքան բարոյական հատկություններ, այն է՝ հա-

[1] «Խամսայի մելիքությունները», եր. 183—187։
«История войны и владычества русских на Кавказе». Н. Дубровина. т. III, 38—49.

վատարմություն և ծածկապահություն, իսկ այդ հատկությունները շահը պատանի Բեկնավարյանի մեջ նախագուշակել չէր կարող։ Թողնենք և այն, որ Աղա-Մամադ-շահը, այնքան միամիտ մարդ չէր, որ յուր ճռովարտակները, շրջաբերականները և գաղտնի նամակները տար պատանի Բեկնազարյանի ձեռքը, որ նա իբր վարժություն կամ գեղագրության օրինակներ գործ ածեր։ Որովհետև եթե նա կարող էր հավատալ մի անփորձ պատանու, բայց երբեք չէր հավատա նրա վարժապետ մոլլային։ Թողնենք և այն, թե ի՞նչ էր գտել Աղա-Մամադ-շահը մի խնածախցի հասարակ գյուղացու որդու մեջ, որ նրա վրա առանձին ուշադրություն էր դարձնում, քանի որ նրա Թիֆլիսից տարած 12.000 գերիների թվում կային շատ հայ և վրացի ազնվականների որդիներ։ Այդ բոլորը թողնում եմ ես, այլ կարևոր եմ համարում ընթերցողի ուշադրությունը դարձնել միայն ա՛յն կետի վրա, արդյոք կարո՞ղ էր պատանի Բեկնազարյանը Շուշիից մինչև Թեհրան գնալու ժամանակ, ճանապարհին այնքան պարսկերեն սովորել, որ շահին հիացներ յուր պարսկերենով և սկսեր հրովարտակներ, շրջաբերականներ և գաղտնի նամակներ ընդօրինակել։

Այդ կետը ես ուշադրության արժան եմ համարում,— ահա ինչ պատճառով։

Դա է կազմում «Գաղտնիք»-ի հիմքը, այստեղից են բխում այն անթիվ պաշտոնական գաղտնի նամակները, շրջաբերականները և այլն, որ այդ գրքի մեջ բավական մեծ տեղ են բռնում։ Պատանի Բեկնազարյանն ընդօրինակում է նրանց իբրև աշակերտ, և միևնույն ժամանակ զետեղում է «Գաղտնիք»-ի մեջ իբրև պատմագիր...

Հաշվենք թե պատանի Բեկնավարյանը որքա՞ն ժամանակ մնաց շահի պալատում, մինչև այդ կատարելության հասավ։ (Ներքևում կտեսնենք, որ նա ապրում էր շահի պալատում)։

1795 թվի սեպտեմբեր ամսի վերջերում Աղա-Մամադ-շահը վերադարձավ Թիֆլիսի արշավանքից։ Յուր ծանր բանակի դանդաղ ընթացքով, մինչև հիշյալ թվականի վերջը նա հազիվ Թեհրան կհասներ։ Յուր աթոռանիստ քաղաքում երկար չմնաց. նա անմիջապես սկսեց մի նոր արշավանք դեպի Խորասան[1]։ (Այդ կտեսնենք հետևյալ գլխում)։ Իսկ Խորասանից 1797 թվի գարուն-

[1] «Պատմութիւն Պարսից» Մեսրովպայ Դ. Թաղիադեանց, հատոր Ա. տպ. ի Կալկաթա, 1846, եր. 214։

քին ուղղակի արշավեց կրկին դեպի Անդրկովկաս, առանց պատերազմի գրավեց Շուշի բերդը և նույն բերդում սպանվեցավ յուր երկու սենեկապետներից[1]։

Այդ հաշվից երևում է, որ Աղա-Մամադ-շահն ամենևին ժամանակ չէր կարող ունենալ զբաղվելու պատանի Բեկնազարյանի կրթությունով։ Որովհետև Աղա-Մամադ-շահի Թիֆլիսի արշավանքից Պարսկաստան վերադառնալը, Խորասանի արշավանքը կատարելը և այնտեղից կրկին Շուշի գնալը և սպանվելը տևեց ընդամենը մեկ և կես տարի (այսինքն՝ 1795 թվի սեպտեմբեր ամսից, մինչև 1797 թվի ամառը), և այդ մեկ ու կես տարվա ընթացքում նա զբաղված էր անընդհատ պատերազմներով, և Թեհրանում չմնաց նա, որ յուր հրովարտակները, շրջաբերականները և պաշտոնական գաղտնի նամակները տար պատանի Բեկնազարյանին ընդօրինակելու և այլն[2]։

Եթե մինչև անգամ ընդունենք, որ շահի բացակայության ժամանակ պատանի Բեկնազարյանը բնակվում էր նրա պալատում, դարձյալ վերևում ցույց տված հաշվով (ի բացառյալ ճանապարհորդության վրա անցած ամիսները) մեկ տարուց ավել այնտեղ բնակվել չէր կարող։ Որովհետև Աղա-Մամադ-շահի սպանվելուց հետո, ոչ ոք նրան պալատում չէր պահի։ Այդ մեկ տարվա ընթացքում տեսեք որքա՞ն բաներ սովորեց նա։ Պարսկերենի մեջ այնքան կատարելագործվեցավ, որ մինչև անգամ հրովարտակներ ու շրջաբերականներ էր ընդօրինակում և նրանցից «Գաղտնիք»-ի համար օգուտներ էր քաղում, այլև սովորեց նա մի ուրիշ լեզու— ֆրանսերեն։

«Հաջողեցա գաղիերեն ևս ուսանել Յակովբ անուն մի հայ-կաթոլիկ վարդապետից, որը Ուրմի քաղաքի կառավա-

[1] «Խամսայի մելիքությունները». եր. 204—209. «История войны и владычества русских на Кавказе. Н. Дубровина. т. III 209.
«Պատմութիւն Պարսից» Մեսրովպայ Դ. Թաղիադեանց, հատ. Ա., եր. 216։

[2] Ով որ փոքրիշատե ծանոթ է պարսից լեզվի, և մանավանդ նրա գրության ձևերի հետ, որը սովորելու համար տասնյակ տարիներ են վատնվում, կհասկանա վերոհիշյալ տողերի տարօրինակությունը։ Պարսից տառերի և գրության ձևը փոխելու խնդիրը այժմ մի մեծ մանկավարժական հարց է դարձել Պարսկաստանում։ Այդ հարցը առաջին անգամ բարձրացրեց հայ ազգի Միրզա-Մելքում խանը,—պարսից Դռան Լոնդոնի լիազոր դեսպանը։ Այժմ նա պարսկերենի համար մի նոր ձևով տառեր է հնարել և «Գյուլիստանը» նույն տառերով տպագրել է տվել Լոնդոնում։ Եթե ընդունելություն գտնի հարգելի պարսագետի աշխատությունը, պարսից մանկավարժությունը մեծ դյուրություններ կգտնի։

րությունն շահին ղրկած էր պատժելու,— շարունակում է պատանի Բեկնազարյանը (եր. 229)։—Ամբաստագիրն սաստիկ բողոքում էր թե սույն վարդապետն դուն գործած էր մի քանի թուլահավատ հայեր կաթոլիկություն դարձնել, յուր խռովահույզ գրգռիչ, հեղափոխական և գաղտնի քարոզներով տեղույն քրիստոնյա ժողովրդյան և տիրող կառավարության մեջ խռովություններ հարուցանել և ժողովուրդը պարսից դեմ ապստամբեցնել (ինչո՞ւ)։ Շահն ավելի զբաղված լինելով քաղաքական և պատերազմական գործերով՝ ժամանակ չունեցավ կամ պատժել և կամ քննությամբ արդարացնելով ազատել, վասն որոյ բանտարկյալ մնացած էր, որի մոտ հաճախում էի ուսանելու»։

Այդ ասացվածքների մեջ որքան տողեր կան, այնքան էլ սխալներ կան։ Ուրմի քաղաքում երբեք հայ կաթոլիկ համայնք-կություն, կամ հայ կաթոլիկ վարդապետներ չեն եղել և այժմ նույնպես չկան։ Երբեք հայ կաթոլիկ վարդապետները քաղաքական ձգտումներով Պարսկաստան չեն մտել, որովհետև նրանք քաղաքական շահեր չունեն։ Ուրմիում եղել է, այժմ նույնպես կա ասորի-կաթոլիկ համայնքություն, բայց նրանց կրոնավորները ոչ թե հայեր են, այլ եվրոպացիք լազարիստների կարգից։ Երևի «Գաղտնիք»-ի հեղինակը, ինքը Պարսկաստանում ապրելով, այնքան չի ուսումնասիրել երկիրը, որ Ուրմին շփոթել է Սպահանի հետ, որտեղ իրավ կա հայ-կաթոլիկ համայնքություն։— Թողնենք այդ, մեզ համար հետաքրքիր կետը պատանի Բեկնազարյանի ֆրանսերեն սովորելն էր բանտարկյալ վարդապետի մոտ, մի տարվա ընթացքում, այն էլ պարսկական դժոխային բանտում, որի դռները ոչ մի օտար մարդու առջև չեն բացվում։

Այժմ տեսնենք, թե ինչպես էր ապրում պատանի Բեկնազարյանը շահի պալատում։

«Շահի պալատում ամենից սիրականն ես էի։ Շահի երկու քույրերն, վրացի և պարսիկ աղախիններն սիրում էին զիս անհագ սիրով, փայփայում և գգվում։ Չեմ կարող չհիշել մի գլխավոր պարագա, այս է, միմյանցից թաքուն հայ կաթոլիկ վարժապետս (բանտում) քարոզում էր ինձ ընդունել Փափի գերիշխանությունը, պարսիկ վարժապետս՝ Մահմեդի լույս կրոնը և ս. Ալու իմամությունը, և վրացի աղախիններն՝ հունադավանությունը և վրացիությունը։ Թեև

հորից կանխավ խրատված էր բնավ այո՛ կամ ո՛չ չպատասխանելու՝ սակայն խոստովանում եմ մեղքս, ինչպես տղայական տաք արյան հատուկ է՝ վարդապետին պատասխանեցի.—«Ավելի լավ կլիներ դու հայ մեռնեիր, քան թե փափականության մեջ ապրեիր». պարսիկ վարժապետիս.—«Դու ինձ պարտավոր ես պարսկերեն ուսուցանել և ոչ կրոնափոխություն, իսկ վրացի Թոմաս և Էլիզա ադախիններիս.— «Դուք ավելի լավ կանեիք, ձեր շահամոլ և դյուրափոփոխ ազգականներին մահմեդականությունից արգիլել, քան ինձ վրացիություն ընդունել տալու ճգնիլ» (էր. 229—230)։

Այդ բոլոր միամիտ խոսակցությունները փոքրիշատե հավանական կարող էին լինել, եթե Աղա-Մամադ-շահը կանանոց ունենար։ Դժբախտաբար նա ներքինի էր և զուրկ պարսից շահերի կանանոց ունենալու բավականությունից։ Դեռ տղայության հասակում Ադլ-շահի հրամանով ներքինացրին նրան և պահվում էր նույն շահի արքունիքում, որ գտնվում էր Թավրիզ քաղաքում։ Իսկ երբ Զենդ-Քարիմ-խանի զորավարը, Շըխալի-խանը, սպանել տվեց նրա հորը՝ Մամադ-Հուսեին-խանին, և նրա որդիներից շատերին կոտորել տվեց Աստարապատում, այդ կոտորածից ազատվեցավ Աղա-Մամադ-խանը, որովհետև գտնվում էր Ադլ-շահի մոտ[1]։

Ադլ-շահի թագավորությունը տևեց 6 ամիս միայն։ Այնուհետև զորացավ Զենդ-Քարիմ-խանը։ Դա Աղա-Մամադ-խանին բերել տվեց Շիրազ և պահում էր յուր կանանոցում, իբրև պատանդ։ Այդ կանանոցից փախավ նա և Ղաջարյան թագավորության սկիզբը դրեց[2]։

Աղա-Մամադ-շահը ինչպես կանանոց չուներ, նույնպես տանը մնացած երկու քույրեր չուներ, որ սիրեին Ապրես Բեկնազարյանին։ Նա միայն մի հորաքույր ուներ, որի վրա ամուսնացավ Զենդ-Քարիմ-խանը, նրա հորը սպանել տալուց հետո[3]։

---

1 «Պատմութիւն Պարսից» Մ. Դ. Թաղիադեանցի, Ա. հատ., եր. 216։ Պատմութիւն Նոր Ջուղայու «Հարություն Տեր Հովհանեանցի», տպված ի Նոր Ջուղա 1881 ամի, Ա. հատ., եր. 291։

2 «Պատմութիւն Պարսից» Մ. Դ. Թաղիադեանցի, Ա. հատ., եր. 206, «Պատմություն Նոր Ջուղայու», Ա. հատ., եր. 279—280։ «Խամսայի մելիքությունները», եր. 176։

3 «Նամեյի խոսրովան» («Գիրք թագավորաց»), աշխատություն Ջալալ-Միրզայի որդւոյ Ֆաթալի շահի, Գ. հատ., եր. 412։ Տպված է Թեհրանում 1871 ամի։

Այստեղ ծիծաղելի է այն կետը, որ Ապերս Բեկնազարյանը, ապրելով Աղա-Մամադ-շահի պալատում և ծանոթ լինելով նրա բոլոր գաղտնիքների հետ, այնուամենայնիվ չգիտե ամենահասարակ անցքերը, նրա տոհմային պատմությունը։— Նա չգիտե, որ Աղա-Մամադ-շահի հայրը, Մամադ-Հուսեին-խանը մոտ 40 տարի առաջ սպանված էր (1795 թ.[1]), իսկ նրա մայրը նույնպես վաղուց վախճանված էր։ Ուրեմն երկու քույրերը ով պիտի ծներ Աղա-Մամադ-շահի համար, որ տիրեին Ապրես Բեկնազարյանին...

Եթե ընդունենք անգամ, որ պարսից այդ ներքինի թագավորը կանանոց ուներ, բայց դարձյալ խիստ տարապայման կլիներ ընդունել, որ Ապրես Բեկնազարյանը ապրում էր նրա պալատում և նրա կանանոցի հետ հարաբերություններ ուներ։ Ապրես Բեկնազարյանը այդ ժամանակ անպատճառ 20 տարեկան կլիներ, իսկ այդ հասակում նրան կանանոցը ներս չէին թողնի. մանավանդ, որ նա քրիստոնյա էր և նրա ներկայությունը, ըստ պարսից կրոնքի, կարող էր ամեն ինչ պղծել մահմեդական ընտանիքում, և ավելի, մոլեռանդ Աղա-Մամադ-շահի ընտանիքում։

Զարմանալին այն է, Աղա-Մամադ-շահը, որ Թիֆլիսից տարած 12.000 գերիներից մեծ մասը զանազան հրապույրների կամ մտրակի ուժով մահմեդական դարձրեց, բայց Ապրես Բեկնազարյանի կրոնին չդիպավ։ Եվ նրան ոչ միայն որպես քրիստոնյա սնուցանում էր յուր պալատում, այլ մինչև անգամ նպաստում էր նրա մեջ հայրենական կրոնի պահպանելուն։

> «Ինչպես իմ բարերար շահն կարգադրած էր,— գրում է Ապրես Բեկնազարյանը,— ես ամեն շաբաթ երեկոյան և կյուրակի առավոտյան և կեսօրին, մեր եկեղեցին էի գնում, աղոթում և ուզած ժամանակս հաղորդվում և վերադառնում» (եր. 229)։

Նա մինչև անգամ շահի պալատում շարունակում էր հայերենով պարապել։

> «Բարձիթողի արած չէի և հայերենս, այլ ինչպես կանխավ պատվիրած էր ինձ հայրս՝ գիշերներն առանձնացած ժամանակներս կարգաւ կարդում էի Ս. Ավետարանս իբրև կրոնագիրք, Եղիշես՝ իբրև պատմագրություն ուսուցանող գիրք և Նարեկս՝ իբրև աղոթագիրք» (եր. 222)։

[1] Չամչյանի «Պատմութիւն հայոց», Գ. հատ., եր. 859։

*Այդ բոլորը գուցե լավ կլիներ մի վեպի մեջ, բայց ոչ թե պատմության մեջ։ Երևում է, որ միամիտ Ապրես Բեկնազարյանը ոչ Աղա-Մամադ-շահին է տեսել, որ գիտենար, թե ինչե՞ր կատարվեցան այդ պալատում։ Եթե նա այնտեղ եղած լիներ, անպատճառ կտեսներ ուրիշ շատ հայ պատանիներ, որոնք Եղիշեն և Նարեկը ամեն գիշեր կարդում էին։ Նա կտեսներ Մանուչար խանին[1], Խոսրով խանին[2], Գիորգի խանին[3], և ուրիշ շատերին, որոնց ոչ միայն մահմեդականացրել էին, այլև* ներքինիացրել *էին... Առանց ներքինի դարձնելու և առանց մահմեդական դարձնելու պարսից շահերը ոչ մի օտար մարդու թույլ չէին տալիս բնակվելու իրենց պալատում...*

*Ով որ փոքրիշատե ուսումնասիրել է Աղա-Մամադ-շահին, հարկավ ծանոթ կլինի նրա վերին աստիճանի կրոնական մոլեռանդության հետ։ Նա մինչև անգամ բուն Պարսկաստանի, որի թագավորն էր ինքը, մի նահանգից հայ գերիներ էր տանում դեպի մյուսը՝ մահմեդականացնելու նպատակով[4]։ Իսկ նրա Թիֆլիսից տարած ահագին գերեվարության հետքերն անգամ չեն մնացել Պարսկաստանում։*

*Բայց ի՞նչ է ասում այս գերիների մասին Ապրես Բեկնազարյանը.*

---

[1] *Մանուչար խանը Թիֆլիսի Էնիկոլոփյանների տոհմիցն էր։*

[2] *Խոսրով խանը Թիֆլիսի Տեր-Սամուելի որդին էր։ Ղայթմազյան տոհմից։*

[3] *Գիորգի խանը Մանուչար խանի ազգականն էր, նույնպես Թիֆլիսեցի։*

*Այդ երեք անձանց մասին, որ բարձր պաշտոնների և աստիճանների հասան Պարսկաստանում, կխոսվի հետևյալ գլխում։*

[4] *1785 թվի հուլիս ամսի 23-ին Աղա-Մամադ շահը գերի վարեց Սպահանի նահանգի Փերիա կոչված գավառի հայ բնակիչներից շատերին, որոնք Շահ-Աբաս մեծի Պարսկաստան տարած գաղթականներից էին։ («Պատմություն Նոր-Ջուղայու», Ա. հատ., եր. 342—343)։*

*Հետևյալ տարին (1786 թ.) Աղա-Մամադ-շահը մի նոր արշավանք կատարեց դեպի Սպահանի կողմերը։ Այս անգամ Փերիա գավառի հայ բնակիչները երկյուղից ամրացան լեռներում, իսկ շահը հրամայեց իր զորքերին ավարի առնել նրանց անտեր մնացած գյուղերը։ («Պատմ. Նոր Ջուղայու», Ա. հատ., եր. 347)։*

*1787 թվին դարձյալ արշավեց Աղա-Մամադ-շահը դեպի Սպահանի կողմերը և այս անգամ գերի վարեց հայոց Բուրվարի կոչված գավառի բնակիչներից շատերին, որոնք նույնպես Շահ-Աբաս մեծի տարած հայ գաղթականներից էին։ Այդ գերիներին Աղա-Մամադ շահը բնակեցրեց Թեհրանի շրջակա գավառներում և գլխավորապես Սավայում։ Մեծ մասը բռնությամբ մահմեդականացրին։ («Պատմ. Նոր Ջուղայու», Ա. հատ., եր. 348—349)։*

«Պարսկաստան փոխադրած հայ և վրացի գերիներն բնակություն հաստատած էին Թավրիզում, սորա շրջականերում և փոքր մասամբ Թեհրանում։ Վրացիք զգալի կերպով պարսկանում էին մահմեդական կրոնը ընդունելով, իսկ հայք ընդհակառակը պահպանում էին յուրյանց կրոնը եկեղեցիներ շինելով և երեխայք քահանայից ձեռոք ուսուցանելով» (եր. 229)։

Այդ խոսքերից խունկի հոտ է բուրում... Երևում է, որ գրողը մի հոգևորական է... Չի ցանկացել, որ հայերը կորչեին Պարսկաստանում։

Եթե Ապրես Բեկնազարյանը Պարսկաստանը տեսած լիներ, և Աղա-Մամադ-շահի գերիների հետ այնտեղ գնացած լիներ, հենց այդ փոքրիկ հատվածի մեջ այնքան սխալներ չէր անի, որը ես այժմ պիտի ցույց տամ։

Ինչպես վերևում հիշեցի, Աղա-Մամադ-շահի տարած թե հայ և թե վրացի գերիների հետքեր չեն մնացել Պարսկաստանում, Մահմեդականությունը բոլորին կլանեց։ (Իհարկե, իմ խոսքը մի քանի գերծ մնացած անհատների մասին չէ)։ Սխալ է այն, որ Աղա-Մամադ-շահը բնակեցրեց նրանց Թավրիզում, նրա շրջակա գյուղերում և մասամբ Թեհրանում։ 12.000 գերին փոքր բան չէ. եթե այդ քաղաքներում բնակեցված լիներ, չէին կորչի, որովհետև հնուց հայ ազգաբնակություն կար։

Թավրիզի հայ ազգաբնակությունը բաղկացած է գլխավորապես երկու տարրերից՝ բնիկներից և Ղարադաղի գաղթականներից, որոնք մինչև այսօր պահպանել են իրենց բարբառը և, թե սովորույթներով և թե պարապմունքներով՝ բոլորովին որոշվում են մյուսներից։ Եթե այդ քաղաքում բնակեցրած լինեին Թիֆլիսի գերիներին, այսօր կտեսնեինք նրանց, մանավանդ, որ խմբերով տարված գաղթականները միշտ առանձին թաղեր են կազմում և այդ թաղերը իրենց անունով են կոչում։ Ինչպես Շահ-Աբասի Սպահան տարած գերիները բաժանված են զանազան թաղերի, և երբեք չուղայեցին չխառնվեցավ երևանցու հետ, կամ երևանցին՝ դաշտեցու (Ներքինազուլեցու) հետ։

Իսկ Թավրիզի շրջակայքում, որ ցույց է տալիս Բեկնազարյանը, ոչ միայն Թիֆլիսեցոց գյուղեր չկան, այլ մինչև անգամ մահմեդականների՝ Թուրքաց կամ պարսից գյուղեր չկան։ Թավրիզի շուրջը անապատ է, իսկ գյուղերը բավական հեռու են։ Հայոց երեք

գյուղեր կան միայն, մի օրվա ճանապարհի հեռավորության վրա, որոնց բնակիչները ոչ թե թիֆլիսեցիներ են, այլ բնիկներ կամ ղարադաղցիք։ Թեհրանում նույնպես թիֆլիսեցի գաղթականներ չեն եղել և այժմ չկան։

Ուրեմն ի՞նչ եղան Աղա-Մամադ-շահի տարած գերիները։

Աղա-Մամադ-շահը նրանց մի մասը բնակեցրեց Մազանդարանում, որ յուր հայրենական երկիրն էր, մի մասը բնակեցրեց Կասպից ծովի հարավային գավառներում, մնացածներին ցրիվ տվեց Պարսկաստանի զանազան խորքերում, հեռու քրիստոնյա ազգաբնակություններից, որպեսզի հեշտ լիներ նրանց մահմեդականացնելը։

Այդ գլխում հիշված բոլոր օրինակներից, որ ես քաղել եմ «Գաղտնիք»-ից, ինքըստինքյան ծագում է մի հարց, մի՞թե Ակոբես Բեկնազարյանը, որ այնքան մերձավոր էր Աղա-Մամադ-շահին, որ նրա պալատում էր ապրում, որ անձամբ ականատես և ներկա էր յուր ժամանակի անցքերին,—մի՞թե նա այսքան սխալներ կաներ, եթե իրոք մի այսպիսի անձնավորություն գոյություն ունենար։

Այս սխալները Մակար վարդապետի սխալներն են։ Եթե նա փոքրիշատե ծանոթ լիներ պարսից կարգերի և սովորությունների հետ, եթե նա լավ ուսումնասիրած լիներ այդ ժամանակներում կատարված անցքերը, իհարկե իր ստեղծած պատմագրին մոլորությունների մեջ չէր գցի։

Հետևյալ գլխում ես ցույց կտամ ավելի խոշոր սխալներ Հայր Բեկնազարյանի գործունեության մասին Պարսկաստանում, իսկ այժմ չեմ կարող առանց նկատողության թողնել մի մեծ հակասություն, որ խպառ ոչնչացնում է «Գաղտնիք»-ի մի զույգ հեղինակների գոյությունը և ցույց է տալիս, որ նրանց գրածները երևակայական առակաբանություն է, և ավելի ոչինչ։

Վերևում տեսանք, թե Բեկնազարյանները որտեղ բնակեցրին Աղա-Մամադ-շահի Պարսկաստան տարած հայ և վրացի գերիներին,—Թավրիզ քաղաքում, նրա շրջակա գյուղերում և Թեհրանում։

Բայց երևում է, որ «Գաղտնիք»-ի մի զույգ հեղինակները սաստիկ մոռացկոտ են, գրքի մի տեղում գրածը, մյուս երեսում մոռանում են և նրա հակառակն են գրում։ Նրանք «Գաղտնիք»-ի 169 երեսում Աղա-Մամադ-շահի վերառած հայ և վրացի գերինե-

րին, հենց առաջին իջևանից, Սողանլուխից, Մելիք-Մեջլումի[1] միջնորդությամբ, վերադարձնում են կրկին իրենց տեղը—Թիֆլիս, իսկ հետո 229 երեսում, բնակեցնում են միևնույն գերիներին Պարսկաստանի Թավրիզ քաղաքում, նրա շրջակա գյուղերում, Թեհրանում և այլն։ Այլև ի՞նչ գերիներ կմնային այդ տեղերում բնակեցնելու համար, քանի որ բոլորին վերադարձրել էր շահը։

Ահա «Գաղտնիք»-ի խոսքերը.

> «Սողանլու կոչված տեղից, Մելիք-Մեջլումի միջնորդությամբ գերիներից Տփղիս վերադարձան տասն և երկու հազար վրացի և հայ գերվածներ՝ հանդերձ բոլոր եկեղեցիական անոթներով և զարդերով» (եր. 169)։

Գերիների թիվը ընդամենը 12 հազար էր։ Այդ թիվը առնված է «Խամսայի մելիքություններից», որի մեջ նույնպես 12.000 է նշանակված (եր. 185)։ Իսկ Դուբրովինը նրանց թիվը ավելի պակաս է դնում՝ 10.000։ («Ист. войны и владычества русских на Кавказе», т. III, стр. 42).

Այս տեսակ հակասություններ անում են այն հեղինակները, որոնցից մեկը, հայր Բեկնազարյանը—Աղա-Մամադ-շահի զորապետն է և անձամբ մասնակցել է նույն արշավանքին, իսկ մյուսը՝ որդի Բեկնազարյանը ապրել է շահի պալատում և գրել է ժամանակի պատմությունը...

Դ

Այժմ տեսնենք հայր Բեկնազարյանի—Աբրահամի— գործունեությունը Պարսկաստանում։ Քննելով նրան, մենք քննած կլինենք «Գատնիք»-ը։

Պետք չէ մոռանալ, որ Աղա-Մամադ-շահը, Թիֆլիսը ավերակ դարձնելուց հետո, երբ վերադառնում էր Պարսկաստան, հայր և որդի Բեկնազարյաններին տարավ յուր հետ։

> «Շահն հայտնեց մելիքին (Մելիք-Մեջլումին), որ ինքն ստիպված էր փութալ Պարսկաստան և յուր հետ տանել և հայրս և զիս»—այսինքն՝ հայր և որդի Բեկնազարյաններին (եր. 171)։

---

[1] Մելիք-Մեջլումը Ղարաբաղի Ջրաբերդ գավառակի մելիքն էր, որ վիրավորված լինելով վրաց Հերակլ թագավորից, առաջնորդեց Աղա-Մամադ-շահին Թիֆլիսի արշավանքի ժամանակ։

«Երբ Թավրիզ հասանք[1],—շարունակում է որդի Բեկնազարյանը,—Հայրս շահից զորավար կարգվեցավ և 10.000 սարվազ առնելով գնաց Հերաթի և Ղանդահարի ապստամբությունները զսպելու... Իսկ շահն հաղթական փառքով մտավ Թեհրան, ուր պարսից աթոռանիստ քաղաքն էր»[2]։

«Հայրս վերադարձավ և պատմեց հետևյալը.

«Սիրելի Ապրես, խպառ նվաճեցինք Հերաթի և Ղանդահարի ապստամբությունները։ Տեղական ապստամբ խաներն սպանվեցան և հաջորդեցին շահի հրամանով նոցա որդիքն։ Շահն բավական մնաց իմ այս ծառայությամբ» (եր. 222)։

Նա կարծում է, որ Հերաթը և Ղանդահարը առանձին-առանձին երկրներ են, չգիտե, որ երկուսն էլ Աղվանստանի քաղաքներն են։ Այդ թողնենք։

Հետաքրքրականն այն է, թե ո՛րքան շուտ են կատարվում «Գաղտնիք»-ի մեջ գործերը։ Հայրը գնաց, այն էլ 10.000 սարվազով (հետևակ զինվոր), հզոր Աղվանստանի ապստամբությունները նվաճեց, տիրող խաներին սպանեց, նրանց որդիներին հաջորդ կարգեց, շահի շնորհակալությունն ստացավ և եկավ սիրելի Ապրեսին պատմեց—և այդ բոլորը կատարվում է մի քանի րոպեում։

«Գաղտնիք»-ի համար որպես շատ օրինակներ կտեսնենք աշխարհագրական տարածությունների և ժամանակների տարբերություններ չկան։ Մարդիկ օդի մեջ են շրջում. մի վայրկյան կտեսնեք նրանց Թավրիզում, իսկ մի վայրկյանից հետո Հնդկաստանում։ Մինչև Բեկնազարյանցը կգնար Աղվանստանի ապստամբությունները կնվաճեր և վերադառնար, շահին արդեն սպանված կգտներ, և այլևս նրա շնորհակալությունը չէր կարող ստանալ, որովհետև հիշյալ արշավանքից հետո շահը ապրեց մեկ և կես տարի միայն։ Այդ տեսանք նախորդ գլխում։

Բայց հարցը դրանում չէ։ Մեզ համար հետաքրքրականն այն է, արդյոք տեղի ունեցե՞լ է մի այսպիսի արշավանք։

---

1 «Գաղտնիք»-ը լիքն է անթիվ աշխարհագրական սխալներով։ 172—173 երեսներում ասված է, որ թե իրանք՝ Բեկնազարյանները, և թե շահը անցան Երասխը Խուդափիրինի կամրջով։ Եթե այստեղից անցած լինեին, Թավրիզը չէին տեսնի։

2 Պարսից աթոռանիստ քաղաքը Թեհրանո՞ւմն էր, թե Թեհրանն էր աթոռանիստ քաղաքը,—հայտնի չէ։ Բեկնազարյանը չգիտե, որ պարսից աթոռանիստ քաղաքը Սպահանն էր, իսկ Աղա-Մամադ-շահը և գլխավորապես նրա հաջորդները դարձրին Թեհրանը նոր մայրաքաղաք։

*Այդ հարցը պարզելու համար ես հարկավոր եմ համարում բերել «Խամսայի մելիքություններից» մի քանի քաղվածքներ միևնույն արշավանքի մասին և զուգահեռաբար դնել «Գաղտնիք»-ի պատմածների հետ։*

*Որովհետև Աղա-Մամադ-խանը իր հաղթությունով (Թիֆ. վերաբերությամբ) առավել պարտական էր Մելիք-Մեջլումին, ճանապարհին հենց առաջին իջևանում (Սողանլուխում) հրամայեց իր զորապետներին, որ ավարից նրա մարդիկների համար բաժին հանեն, ասելով.— «Քրիստոնյային պատկանածը քրիստոնյային տվեցեք»։ Մելիք-Մեջլումի ձիավորները իրենց յափունջիները տարածեցին գետնի վրա, և պարսից զորքերը որքան խաչեր,*

*«Սողանլու կոչված տեղից, մելիք Մեջլումի միջնորդությամբ գերիներից Տփխիս վերադարձան տասն և երկու հազար վրացի և հայ գերվածներ*[1] ճանդերձ բոլոր եկեղեցական անոթներով և զարդերով» *(«Գաղտնիք», եր. 169)։*

*«Շահն նվիրեց Մելիք-Մեջլումին մի* առյուծադրոշմ շքանշան[2], *երկու ջորաբեռն* ջխտանոց[3] *ար-*

[1] *Պարզ երևում է, որ «Գաղտնիք»-ը քաղել է «Խամսայի մելիքություններից», միայն ավելացնելով, թե եկեղեցական իրեղենների հետ, Մելիք-Մեջլումի միջնորդությամբ. Աղ-Մամադ-շահը վերադարձրեց նաև յուր վեր առած 12.000 հայ և վրացի գերիները։ Այդ հավելվածը «Գաղտնիք»-ի ամենախոշոր հակասություններից մեկն է, որովհետև նույն գրքի եր. 229 ասված է, որ շահը նրանց տարավ յուր հետ և բնակեցրեց Թավրիզ քաղաքում, նրա շրջակա գյուղերում և Թեհրանում։ Այդ ես ցույց տվի նախորդ գլխում։*

[2] *Ես առիթ կունենամ ուրիշ տեղերում ևս ցույց տալու, որ «Գաղտնիք»-ի պատմական մասը ամբողջապես առնված է «Խամսայի մելիքություններից»։ Եվ ինչպես այդ քաղվածքի մեջ երևում է, ինչ փոփոխություններ, որ արել է «Գաղտնիք»-ի հեղինակը, դրանք կամ խոշոր սխալներ են, կամ փաստերի աղավաղումներ։ Այդ և հետագա ծանոթության օրինակներ բավական կլինեն իմ կարծիքը ապացուցելու համար։ Աղա-Մամադ-խանի օրերում* առյուծադրոշմ շքանշանը *դեռ գործածական չէր և մինչև անգամ իրավունք չուներ տալու, որովհետև այդ միջոցին նա դեռ հասարակ խան էր, ճանաչված չէր իբրև թագավոր։ Առյուծադրոշմ շքանշանը գործածական դարձավ նրա հաջորդների՝ Ֆաթալի-շահի, Մամադ-շահի և մանավանդ պարսից ներկա շահի օրերում։*

[3] «Ջխտանոցը», *«Գաղտնիք»-ի ծանոթության մեջ բացատրված է «վրաց թագավորների կտրած միաձույլ 40 կոպեկանոց դրամ։ Վրաց թագավորների և ոչ մեկի ժամանակ այդ դրամը չկար։ Երբ վրաց վերջին թագավորը՝ Գիորգին մահվան անկողնի մեջ էր, այդ միջոցին նրա Ս. Պետերբուրգ ուղարկած պատգամավորները, ի թիվս այլ պայմանների, առաջարկում էին ռուսաց արքունիքին և դրամ հատանելու իրավունք ունենալ։ Այդ առաջարկությունը չիրագործվեցավ.*

*եկեղեցական անոթներ և զգեստներ կողոպտել էին Թիֆլիսի եկեղեցիներից, բոլորը Թափեցին նրանց յափունչիների վրա։ Մելիք Մեջլումը այդ բոլորը ետ ուղարկեց Թիֆլիս» («Խամսայի մելիքությունները», եր. 186)։*

*«Շահը շնորհեց Մելիք Մեջլումին այդ երեք արտոնությունները. 1. երբ և կամենա, կարող է անարգել կերպով ևլևմուտ գործել իր մոտ. 2. ինչ որ խնդրելու լինի, նրա կամքը կկատարվի, արքունի գանձարանը նրա տրամադրության ներքո կլինի» («Խամսայի մելիքությունները», եր. 186)։*

*ծաթ և երկու քսակ ոսկի... նույն չափով և Ջավադ խանին» («Գաղտնիք», եր. 171)։*

*«Բայց առաջինն (Մելիք-Մեջլումն) չընդունեց (դրամները), բոլոր* **Ճըռերի**[1], *Շուշու Իբրահիմ խանի և նրա կուսակիցների ջնջումը գերադաս համարելով, քան թե այդ դրամը, միայն ընդունեց շքանշանը, պատճառելով, թե ինքն բավական կլիներ միայն* **Ճըռերի** *ջնջելովն և այն։ Շահն ինքն անձամբ (այսինքն, որ շահն*

---

*որովհետև Գիորգին շուտով վախճանվեցավ և նրա վրաց թագավորությունը վերջացավ։*(«История войны и владычества русских на Кавказе». Н. Дубровина, т. III, 335—351).

*Հիշյալ դրամը թեև վրաց տառեր է կրում, բայց ռուսաց փող է և Թիֆլիսում հատանել սկսեցին 1805 թվին մինչև 1837 թվականը, այսինքն՝ սկսյալ այն ժամանակից, երբ վրաց թագավորությունը բոլորովին վերջացած էր և Վրաստանը միացած էր Ռուսաստանի հետ։ Իսկ Աղա-Մամադ-շահի արշավանքը և նրա Թիֆլիսը ավերակ դարձնելը տեղի ունեցավ ոչ թե Գիորգիի օրերում, այլ նրա նախորդ Հերակլի օրերում, երբ այդ դրամները ամենևին գոյություն չունեին։ Ուրեմն, որտեղի՞ց լցրեց շահը յուր ջորիների բեռները հիշյալ դրամներով... Ավելորդ չեմ համարում հիշել և այն, որ վրաց վերջին թագավորների ժամանակ, Թիֆլիսում եղած դրամահատության տունը, որ գտնվում էր իշխան Բեհբությանների ձեռքում,—դա պարսից հիմնարկություն էր և պարսից դրամներ էին կտրում, որովհետև Վրաստանը իբրև պարսկական մի ավատական նահանգ իրավունք չուներ յուր սեփական դրոշմով դրամ հատանելու։ Այդ պարսից դրամները և այսօր կարելի է տեսնել Թիֆլիսի հնավաճառների կամ սառաֆների մոտ։*

[1] *«Ճըռ» բառը, որ խիստ հաճախ գործ է ածվում «Գաղտնիք»-ի մեջ և ամեն բոպե անտանելի կերպով ականջ է ծակում, Մակար վարդապետը յուր ծանոթության մեջ թարգմանում է՝ «վայրենի, անպատուաստ պտղատու ծառ», իսկ փոխաբերական մտքով «կեղծ, շինծու, անհարազատ»։ Բայց «ճըռ» կամ ավելի ճիշտ ուղղագրությամբ ջրո, թուրքերեն բառ է* **ջըռամF** *բայի արմատից կազմըված և նշանակում է* **ճեղFված** *կամ* **ճեռձված**: *Այսպես կոչում էին Ղարաբաղի այն մելիքներին, որ բաժանված էին հարազատ մելիքների միաբանությունից և միացած էին նրանց թշնամի Թուրք խաների հետ, որոնք բռնությամբ տիրապետել էին Շուշին և Ղարաբաղի մի մասը։*

«Բայց Մելիք-Մեջլումը այն աստիճանի հպարտ և անշահասեր մարդ էր, որ շահից ուրիշ ոչինչ չպահանջեց, միայն Թիֆլիսը ավերակ դարձնելուց հետո խնդրեց նրա օգնությունը Շուշի բերդը նույնպես կործանել, Իբրահիմ խանին ոչնչացնել և ավելի հաստատություն տալ Ղարաբաղի մելիքների իշխանությանը»։ («Խամսայի մելիքություններ», եր. 186)։

«Շահը հոժարեցավ ուղղակի գնալ Ղարաբաղ Շուշին գրավելու և Մելիք-Մեջլումի ցանկությունները կատարելու համար։ Բայց դժբախտաբար այդ միջոցներում Ղանդահարի և Հերաթի կողմերում խռովություններ ծագեցան և նա ստիպվեցավ շտապել Պարսկաստան ապստամբությունները զսպելու համար» («Խամսայի մել.», եր. 187)։

«Նա (շահն) հայտնեց Ջավադ խանին և Մելիք-Մեջլումին սպասել, խոստանալով, որ շուտով կվերադառնա»։ («Խամս. մել.», եր. 187)։

«Ջավադ խանը Մելիք-Մեջլումի հետ գնացին Գանձակ, իսկ շահը ուրիշ ճանապարհով դիմեց դեպի Պարսկաստան»։ («Խամս. մել.», եր. 187)։

անձամբ մասնակցեր նրանց ջնջման գործին)։ («Գաղտնիք», եր. 172)։

«Եվ մինչդեռ հայ զորականաց սրտերը լցված ուրախությամբ և շահի տված խոստմամբ անհամբերությամբ սպասում էին Շուշի—հանկարծ շահն մի նամակ ստացավ Պարսկաստանից, որն հայտնում էր շահին, թե զորավոր ապստամբություններ երևան ելած էին Ղանդահարի և Հերաթի կողմերում։ Հարկ էր փութալ ի Պարսկաստան»։ («Գաղտնիք», եր. 170)։

«Շահն հայտնեց Մելիքին (Մելիք-Մեջլումին), որ ինքն ստիպված էր փութալ ի Պարսկաստան... և խոստացավ առաջիկա գարնան կրկին գալ գրավել Շուշին և կատարել յուր խոստումները»։ («Գաղտնիք», եր. 171)։

«Շահն շնորհակալությամբ հանդերձ հրաժարական ողջույն տալով Մելիքին (Մելիք-Մեջլումին) և Ջավադ խանին հեռացավ Գանձակից»։ («Գաղտնիք», եր. 172)։

Վերևում գրած մի շարք զուգահեռական համեմատություններից պարզ երևում է, որ կամ «Խամսայի մելիքությունների» հեղինակը—ես—գողացել է «Գաղտնիք»-ից կամ «Գաղտնիք»-ի հեղինակը՝ Աբրահամ Բեկնազարյանը, գողացել է «Խամսայի մելիքություններից»։

Ես «Գաղտնիք»-ից գողանալ չէի կարող, որովհետև երբ Աբրահամ Բեկնազարյանը գրում էր հիշյալ տողերը (1795 թ.), ոչ թե ես ծնված չէի, այլ իմ հայրն անգամ ծնված չէր։ Բացի դրանից, «Խամսայի մելիքությունները» լույս է տեսել 1882 թվին, իսկ «Գաղտնիք»-ը այս տարի—1886 թվին։ Առաջինը երկրորդից օգուտ քաղել չէր կարող։

Բայց պետք է խոստովանել, որ Աբրահամ Բեկնազարյանը նույնպես չէր կարող օգուտ քաղել «Խամսայի մելիքություններից», որովհետև նա մեռել է այդ գրքի լույս տեսնելուց 58 տարի առաջ—1828 թվին։

Ուրեմն ո՞վ է գողը…

Գողն ինքն իրան կգտնվի… բայց ես ավելորդ չեմ համարում հիշել մի զրույց։ Մի մարդից փողեր գողացան, նա ծիծաղելով ասաց— թո՛ղ տանե, շատ խեր չի տեսնի, նրանց միջում մեկը ղալբ (կեղծ) էր…

Նույնը կրկնում եմ և ես։ «Խամսայի մելիքություններից» առնված քաղվածքների մեջ մի խոշոր պատմական սխալ կա և այդ սխալը նույնությամբ մտել է «Գաղտնիք»-ի մեջ։ Այն կտորը, թե Աղա-Մամադ-շահը թողեց Շուշի բերդը գրավելու մտադրությունը և շտապեց Պարսկաստան՝ Ղանդահարի և Հերաթի ապստամբությունները զսպելու համար,— դա բոլորովին սխալ էր, այսպիսի ապստամբություններ ոչ տեղի են ունեցել, և ոչ էլ Աղա-Մամադ-շահը գնացել է նրանց զսպելու։

Թե ի՞նչն է սխալեցրել ինձ, այդ ես գիտեմ, և իմ սխալը ինքս ուղղում եմ։

Բայց ինչ որ ներելի կարող է լինել ինձ, որ գրել եմ «Խամսայի մելիքությունները» հիշյալ անցքից 87 տարի հետո,— այն չէ կարող ներելի լիներ Աբրահամ Բեկնազարյանին, որ ոչ միայն գրում է հիշյալ երևակայական արշավանքի պատմությունը, այլ ինքը Աղա-Մամադ-շահից զորապետ կարգվելով 10.000 սարվազով գնում է Աղվանստան Ղանդահարի և Հերաթի ապստամբությունները նվաճում է, և տեղային խաներին կոտորում է, նրանց որդիներին հաջորդ է կարգում և այսպիսով, խաղաղացնում է մի ամբողջ երկիր (եր. 221—222)։

(Հիշյալ արշավանքի մասին «Գաղտնիք»-ից առած վկայությունները դրեցինք այս գլխի սկզբում, նորից կրկնել ավելորդ ենք համարում)։

Բայց ինչո՞վ բացատրել այդ հանելուկը։

Ահա ինչով. Մակար վարդապետը ցանկացել է յուր սանըծած պատմագիրներին—հայր և որդի Բեկնազարյաններին—ուղարկել Պարսկաստան, որ նրանք աղբյուրի հենց մաքուր ակնից քաղեն բոլոր տեղեկությունները և արձանագրեն «Գաղտնիք»-ի մեջ։ Այդ նպատակով նա որդի Բեկնազարյանին մտցրել է Աղա-Մամադ-շահի պալատը։ Այնտեղ նա պարսկերեն է սովորում, շահի գաղտնի նամակները, հրովարտակները, շրջաբերականներն է ընդօրինակում և, միևնույն ժամանակ, նրանց օրինակները մտցնում է «Գաղտնիք»-ի մեջ։ (Այդ տեսանք Գ-րդ գլխում)։ Մնում է հայր Բեկնազարյանը։ Մակար վարդապետը մտածել է դրա համար ևս մի նպատակահարմար պաշտոն գտնել։ Եվ կարգել է նրան զորապետ Աղա-Մամադ-շահի մոտ, որպեսզի նրա բոլոր զինվորական գործողությունների գաղտնիքները իմանա և նույնպես մտցնե «Գաղտնիք»-ի մեջ։ Բայց նրան պետք է մի որևէ գործ տալ, որի մեջ հայտնվի, նշանակություն ստանա։ Մակար վարդապետը «Խամսայի մելիքությունների» մեջ կարդացել է, թե ինչ որ Հերաթի և Ղանդահարի ապստամբություններ են եղել։ Եվ այդ զուտ ոսկու տեղ ընդունելով, իսկույն օգուտ է քաղել և Աբրահամ Բեկնազարյանին ուղարկել է Աղվանիստան, որ նույն ապստամբությունները զսպող հերոսը դառնա։

Այժմ, կարծեմ պարզ է, թե ո՞վ է գողը...

Եթե ուրիշ ոչինչ չլիներ, Աղվանստանի երևակայական արշավանքն միայն բավական էր ցույց տալու «Գաղտնիք»-ի կեղծությունը։

Աղա-Մամադ-շահը այնքան զբաղված էր բուն Պարսկաստանի ներքին գործերով, և դեռևս այնքան շատ գործ ուներ տեղային խաների հետ, մինչև կարողանար բոլորին նվաճեր և ի մի ձուլել ամբողջ Պարսկաստանը, որ նա Պարսկաստանի սահմաններից դուրս աշխարհակալություններ անելու ոչ ժամանակ ուներ և ոչ ցանկություն։

Աղա-Մամադ-շահի օրերում Աղվանիստանը նույնքան և գուցե ավելի զորեղ մի իշխանություն էր, որքան Պարսկաստանը, և ամենևին կախում չուներ վերջինից, որ Աղա-Մամադ-շահը ստիպված լիներ կամ ինքը գնալ, կամ Աբրահամ Բեկնազարյանին ուղարկել՝ տեղային ապստամբությունները զսպելու։

Դեռ շատ ժամանակ չէր անցել այն օրից (ընդ. 68 տարի), որ սեֆևիների գահի վրա, Սպահանում, նստում էին աղվանները։ Նադիր-շահի հզոր ձեռքը միայն կարողացավ մաքրել Պարսկա-

տանը աղվաններից։ Այլապես ի՞նչ հարկ կար, որ Աղա-Մամադ-շահը իր զգույշ ձեռքը մխեր օձերի բույնի մեջ...

Բայց մի անցք շտապեցրեց Աղա-Մամադ-շահին, Թիֆլիսի ավերումից հետո թողնել Շուշի բերդը և շտապել Պարսկաստան։

Այդ անցքը ոչ թե Ղանդահարի և Հերաթի ապստամբություններն էին, այլ Բուխարայի թաթարների հարձակումները Աղա-Մամադ-շահի նոր հիմնած պետության սահմանների վրա։ Եթե Մակար վարդապետը գիտենար այդ, տարակույս չկա, որ նա Աբրահամ Բեկնազարյանին այլևս Աղվանիստան չէր ուղարկի, այլ Բուխարա կուղարկեր թաթարներին զսպելու համար։

Թաթարներին պատժելու նպատակով սկսված արշավանքը՝ Աղա-Մամադ շահը սքողեց Խորասանի ուխտագնացության պատրվակով։ Այդ պատրվակի ներքո թաքնված էր մի այլ նպատակ ևս, այն է՝ ձեռք բերել Նադիր-շահի գանձերը, որ դեռևս մնացել էին նրա ժառանգների մոտ։

Այդ էր պատճառը, որ Թիֆլիսից Պարսկաստան վերադառնալուց հետո, նա անմիջապես դիմեց դեպի Խորասան։

Դեռ կենդանի էր կուրացյալ Շահ-Ռուխը՝ Նադիր-շահի թոռը, երբ Աղա-Մամադ-շահը հասավ Խորասանի սրբազան քաղաքը, Մաշհադ, դժբախտ թագավորը դիմավորեց նրան և, նրա ձեռքից բռնելով, տարավ իմամի սրբավայրը։ Այստեղ Աղա-Մամադ-շահը յուր աղոթքը կատարելուց հետո, սկսեց Շահ-Ռուխից պահանջել Նադիր-շահի գանձերը։ Ծերունի թագավորի բոլոր աղաչանքներն ապարդյուն եղան՝ ամոքելու Աղա-Մամադ-շահի ագահությունը։ Նա սկսեց սարսափելի չարչարանքներով տանջել նրան։ Յուր անգթությունը այն աստիճանի հասցրեց, որ դրեց Շահ-Ռուխի գլխին մի պսակաձև շրջանակ և նրա մեջը հալած արճիճ լցնել տվեց։ Այսպիսով ստացավ նա այն խոշոր հակինթը[1], որ մի ժամանակ զարդարում էր Ովրանգզեբայի թագի ճակատը, և որը բերել էր Նադիր-շահը Հնդկաստանից։ Յուր կրած տանջանքներից մեռավ Շահ-Ռուխը և նրա հետ հանգավ ավշարների թագավորության վերջին շառավիղը[2]։

Խորասանից Աղա-Մամադ-շահը պատրաստվում էր գնալ Բուխարա թաթարներին պատժելու, երբ լսեց, որ ռուսները նոր զորքեր են ուղարկել Անդրկովկաս։ Այնտեղից ուղղակի դիմեց

---

[1] Այդ նշանավոր հակինթը մինչև այսօր պահվում է պարսից արքունիքում և, որքան հիշում եմ, կոչվում է «դուրրի-դարիա»—ծովի ծով։

[2] «Պատմություն Պարսից», Մ. Դ. Թաղիադեանցի, Ա. հատ., եր. 214—215։

Շուշի, առանց պատերազմի գրավեց, և այնտեղ սպանվեցավ յուր երկու սպասավորներից (1797 թ.)։

Եվ այսպես Աբրահամ Բեկնազարյանի գործունեությունը Պարսկաստանում սկսվում է մի առասպելից—այն է՝ Աղվանիստանի արշավանքից, որ բնավ պատմական հիմք չունի։ Աղա-Մամադ-շահի օրերում մի այսպիսի արշավանք տեղի չի ունեցել։

Աղվանիստանի արշավանքը տեղի է ունեցել ոչ թե Աղա-Մամադ-շահի օրերում, որ նրա հերոսը երևակայական Աբրահամ Բեկնազարյանը լիներ, այլ նրա հաջորդ Ֆաթալի-շահի օրերում։ Այդ ժամանակ Աղվանիստանի թագավոր Զաման շահը յուր ասպատակություններով սարսափի մեջ էր դրել ամբողջ Հնդկաստանը։ Հնդկական թագավորները, մինը մյուսից հետո, ընկնում էին նրա զորության առջև։ Եվ որովհետև Զաման շահի տիրապետությունները սաստիկ վնասում էին անգլիացիների շահերին Հնդկաստանում, այդ պատճառով անգլիական քաղաքագիտությունը հաջողեցրեց Թեհրանում Ֆաթալի-շահին յուր զորքերով շարժել դեպի Աղվանիստանի սահմանները, որպեսզի Զաման շահը ստիպված լինի թողնել Հնդկաստանը և վերադառնա յուր երկիրը պաշտպանելու պարսիկներից։ Այդ արշավանքը կատարելու համար, մի քանի տարի շարունակ, Ֆաթալի-շահը ստանում էր անգլիացիներից օրեկան 1000 թուման ոսկի[1]։

Ո՞ւր մնաց Աբրահամ Բեկնազարյանը, որ մինչև անգամ չգիտե, որ յուր 10.000 սարվազով նվաճած Աղվանիստանի տիրապետողները հասարակ խաներ չէին, այլ սարսափելի Զաման շահն էր։

Ֆաթալի-շահի օրերում Բեկնազարյանները դարձյալ շարունակում են մնալ պարսից ծառայության մեջ, բայց թե ինչ է նրանց պաշտոնը,—այդ մասին որոշ հիշատակություններ չկան «Գաղտնիք»-ի մեջ, միայն մի տեղում կարդում ենք հետևյալ մթին խոսքերը.

> «Ֆաթալի շահը յուր նախորդի պես սիրեց զիս (որդի Բեկնազարյանին) և հայրս (հայր Բեկնազարյանին)։ Վերջինս (հայր Բեկնազարյանը), թեև բազմիցս թախանձանոք ազատության (՞) հրաման խնդրեց առաջինից (Ֆաթալի-խանից) հայրենիք վերադառնալու, սակայն անկարելի եղավ զայն ստանալը, քանզի Աբաս Միրզան (թագաժառանգը)

[1] «Պատմություն Պարսից», Մ. Դ. Թաղիադեանցի. Ա. հատոր, եր. 222։

միշտ առարկում էր պատճառաբանելով (ես շատ հարկավորություններ ունեմ քո (հայր Բեկնազարյանի) ներկայության իմ Ղարաբաղում գործ դնելու նպատակներիս համար, իսկ շահական դիվանն քո որդի Ալլահվերդու (Ապրես Բեկնազարյանի) ներկայության, գաղտնի նամակներ գրելու և խորհրդապահության համար» (էր. 245)։

«Գաղտնիք»-ի գլխավոր հեղինակը—Ապրես Բեկնազարյանը, արդեն սկսեց մահմեդական անունով Ալլահվերդի կոչվել։ Այդ անունը պետք է մտքումը պահել, որովհետև դրա մասին կխոսվի հետո։

Իսկ վերևի մթին տողերը պարզելու համար, ավելորդ չէր լինի հիշեցնել ընթերցողին իմ հետազոտության Գ-րդ գլխի մի քանի տեղերը։

Մենք տեսանք, որ Բեկնազարյաններին բերեց Պարսկաստան Աղա-Մամադ-շահը։ Մենք տեսանք, որ որդի Բեկնազարյանցի պարսկերեն սովորելը հիշյալ շահի պալատում տևեց մի տարի միայն։ Իսկ նրա ֆրանսերեն սովորելը բանտարկյալ հայ-կաթոլիկ վարդապետից՝ նույնքան ժամանակ։ Մենք ապացուցեցինք և այն, որ այդ բոլորը առակաբանություն է, որովհետև Ապրես Բեկնազարյանը ոչ շահի պալատում է եղել և ոչ պարսկերեն կամ ֆրանսերեն է սովորել։

Սպանվում է Աղա-Մամադ-շահը և գահակալում է Ֆաթալի շահը։

Այժմ Ֆաթալի-շահի դիվանը կարոտություն ունի՝ մի տարվա մեջ պարսկերեն և ֆրանսերեն սովորած մի քանամյա պատանու—Ապրես Բեկնազարյանին... (Մակար վարդապետը միշտ մոռանում է նրա հասակը)։ Շահական դիվանը հարկավորություն ունի նրա ներկայությանը՝ «գաղտնի նամակներ գրելու և խորհրդապահության համար»... Եվ այդ խոսքերը ո՞վ է ասում,—Աբաս Միրզան՝ Պարսկաստանի երևելի թագաժառանգը, որ յուր խորին քաղաքագիտությամբ մատների վրա է խաղացնում յուր ժամանակի թե ռուսաց և թե եվրոպացոց ներկայացուցիչներին, և որի դռանը այդ ժամանակ վխտում էին ոչ միայն երկրի ամենատաղանդավոր պարսիկ դպիրները, այլ շատ նշանավոր հայ և եվրոպացի ծառայողներ։

Բայց ի՞նչն է ստիպել Մակար վարդապետին այս տեսակ երեխայական միամտությամբ՝ յուր քանամյա Ապրես Բեկնազարյանին մտցնել «շահական դիվանի» մեջ և պարսից թագավո-

րի բոլոր գաղտնիքները նրա ձեռքը տալ,—այդ հարցին կպատասխանի ինքը Ապրես Բեկնազարյանը։

Բերելով մի շարք նամակներ, որ Ֆաթալի-շահը ստացել է զանազան տեղերից, նա ավելացնում է.

> «Ցանկալի էր մեզ բոլոր նամակները նույնությամբ արտագրել այստեղ («Գաղտնիք»-ի մեջ), բայց այդ բոլորովին անկարելի էր, վասնզի հարկ էր հատորներ կազմել մեծաթիվ քանակությամբ։ Դիվանական թղթոց կարգադրությունն, գաղտնի նամակաց պատասխաններն, ներքին շրջաբերականների գրությունները և արտաքին հարաբերական թղթակցությունները հափշտակում էին մեր ժամանակի ամենամեծ մասը։ Ահա պատճառներն, որոնց ստիպյալ մենք համառոտում ենք հաճախ թղթակցությունները, բայց ոչ սակավ։ Թողնում ենք հիշեցնել այն կասկածելի երկյուղը, որ պաշարում էր զմեզ այսպիսի գաղտնի նամակները (որքա՞ն գործ է ածում գաղտնի բառը «Գաղտնիք»-ի մեջ), մանավանդ պարսկերենը արտագրելու կամ համառոտագրելու ժամանակ («Գաղտնիք»-ի մեջ մտցնելու համար)։ Եթե հայտնվեր մեր այդ գաղտնի ձեռնարկությունն Պարսից կառավարության՝ մահվան վտանգն պատրաստ էր մեզ համար նույն րոպեին» (եր. 275)։

Կարդալով այս տողերը, մարդ չգիտե՝ ծիծաղե՞ թե զարմանա։ Մի՞թե Ֆաթալի-շահը վեզիրներ-վեքիլներ և այլ պաշտոնակատարներ չէ ունեցել, որ յուր կառավարության բոլոր թե ներքին և թե արտաքին գործերը հանձնել է մի որևէ Ապրես Բեկնազարյանի ձեռքը։

Ֆաթալի-շահի օրերից շատ ժամանակ չի անցել. եթե մի այսպիսի անձնավորություն գոյություն ունենար, հարկավ չէր մոռացվիլ ոչ ժողովրդի հիշողությունից և ոչ պատմությունից։ Բավական է կարդալ «Խամսայի մելիքությունների» 347—357 երեսները, այնտեղ կարելի է գտնել Ֆաթալի-շահի և նրա հաջորդների օրերում, Պարսկաստանում հայտնի եղած, բոլոր հայազգի պաշտոնակալների անունները, որ երեսունից անցնում է։ Այդ անունների ցանկում ոչ Ապրես Բեկնազարյանի և ոչ նրա հոր անունը կա։

Եվ, վերջապես ինչպե՞ս եղավ, որ այդ մի զույգ հայր և որդի Բեկնազարյանները, որոնք պարսից երեք թագավորների՝ Աղա-Մամադ-շահի, Ֆաթալի-շահի, Մամադ-շահի և մի թագաժառան-

գի՝ Աբաս-Միրզայի մոտ այնքան մեծամեծ պաշտոններ էին վարում, և այդ թագավորների ամենասիրելիներն էին, բայց ոչ մի աստիճան և ոչ մի տիտղոս չստացան։ Հայր Բեկնազարյանը ծառայում է 33 տարի (1795—1828), իսկ որդի Բեկնազարյանը 43 տարի (1795—1838), բայց երկուսից և ոչ մեկը որևէ աստիճան չէ ստանում։ Պարսից թագավորները տիտղոսներ և աստիճաններ շնորհելու մեջ ժլատ չեն, այլ ընդհակառակն, շատ առատաձեռն են։ Հիշյալ թագավորների օրերում հայերը ստացան խիստ փայլուն և խիստ փառավոր տիտղոսներ, ստացան և բարձր աստիճաններ։ Ես կհիշեմ մի քանիսի անուններն միայն։

**Մանուչար-խանը** *ստացավ* **«մոհթամեդ դովլե»** *տիտղոսը, որ նշանակում է նեցուկ կամ սյուն պետության։ Դա Աղա-Մամադշահի Թիֆլիսից տարած գերիներից էր, էնիկոլոփյանների տոհմից։ Պարսկաստանում այն աստիճանի բարձրացավ, որ Ֆաթալի-շահի օրերում վարում էր Կասպից ծովի հարավային նահանգների՝ Գիլանի, Մազանդարանի փոխարքայության պաշտոնը։ Իսկ Մամադ-շահի օրերում Սպահանի և ամբողջ պարսկական Արաբիստանի փոխարքան դարձավ։ Ռուսաց թագավորը ուղարկեց նրան մի թանկագին, ակնակուռ դաշույն։ Եվ մինչդեռ ռուսաց Պարսկաստանի լիազոր դեսպանը՝ կոմս Մեդդեմը, պատրաստվում էր այդ ընծան մատուցանել, նա արդեն մեռած էր (1847 թ.)*[1]։

**Խոսրով խանը** *ստացավ* **«վալի»** *տիտղոսը, որ նշանակում է տիրապետող, իշխան, յուր չափազանց ուժեղության պատճառով, նա կոչվում էր և «շիր», որ նշանակում է առյուծ։ Դա նույնպես Աղա Մամադ-շահի Թիֆլիսից տարած գերիներիցն էր, տեր Սամուելի որդին, Ղայթմազյանց տոհմից։ 1838 թվին կարգվեցավ փոխարքա Ֆարսիստանի և խաղաղացրեց Սպահանի խռովությունները, որ տեղի ունեցան Ֆաթալի-շահի վախճանվելուց հետո*[2]։

**Սուլեյման-խանը** *նույնպես էնիկոլոփյանների տոհմից էր, ստացավ* **«սամը-դովլե»** *տիտղոսը, որ նշանակում է սուր պետության։ Դա մի նշանավոր զորավար էր, երկար ժամանակ վարեց*

---

[1] «Խամսայի մելիքություններ», եր. 351, «Պատմություն Պարսից», Մ. Դ. Թաղիադյանցի, հատ. Ա., եր. 213, 214, 261, 278։ «Պատմություն Նոր Ջուղայի», հատ. Ա., եր. 437—444։

[2] «Խամսայի մելիքություններ», եր. 351։ «Պատմութիւն Պարսից», Մ. Դ. Թաղիադյանցի, հատ. Ա., եր. 213—214։ «Պատմություն Նոր Ջուղայի» հատ. Ա., եր. 432—437։

Շիրազի, Բակտրիայի, Լուրիստանի, Շուշթերի և Դասֆուլի փոխարքայության պաշտոնները[1]։

Այլևս չեմ հիշում Յուսուֆ խան «ըսփահդիար»-ին (մարզպան), որ Արաբստանի կուսակալն էր և Զոհրապ խան «խազնեադար-շահրիար»-ին, որ Ֆաթալի-շահի փեսան և նրա պետական գանձարանի կառավարիչն էր։ Չեմ հիշում և մի քանի տասնյակ այլ հայերի անուններ, որ մեծամեծ պաշտոններ էին վարում և զանազան տիտղոսներ էին կրում,—բայց կհիշեմ մեկին, որ Ամիր դիվանխանա տիտղոսն էր կրում, որ նշանակում է՝ պետական դիվանի գլխավոր կամ պետը։ Դա էր Աղա-Բահրամ Ներքինին, որ մահմեդականացած հայ էր։ Ահա դա էր «շահական դիվանի» գլխավորը[2] և ոչ թե երևակայական Ապրես Բեկնազարյանը, որին Մակար վարդապետը զոռով մտցրել է շահի դիվանի մեջ, որպեսզի այնտեղից «Գաղտնիք»-ի համար գաղտնիքներ ժողովե...

Թե հայր և թե որդի Բեկնազարյանները այն աստիճան տգետ են Պարսկաստանի վերաբերությամբ և այն աստիճանի անծանոթ են իրենց ժամանակի անցքերի և անձիքների հետ, որ իրանք իրանց մատնում են, որ այդ մարդիկը Պարսկաստանը բնավ չեն տեսել։

Բեկնազարյանները հիշեցնում են այն հայտնի ստախոսին, որ հիացած պատմում է յուր բարեկամին, թե որպիսի զարմանալի մժղուկներ, փոքրիկ պողոճներ և թիթեռներ տեսավ մուզեոնում։ Իսկ երբ բարեկամը նրանից հարցրեց, դու տեսա՞ր այնտեղ փղին։ Նա պատասխանեց—«մի՞թե նա այնտեղ էր»։

Բեկնազարյանները նույնպես մժղուկներին տեսնում են Պարսկաստանում, իսկ այն հսկա հայ փղերին, որ իրենց հզոր ուսերի վրա էին տանում Պարսկաստանի կառավարության ծանրությունները,—դրանց չեն տեսնում։

Նրանք գիտեն, որ Աղա-Մամադ-շահի կանանոցում երկու վրացի աղախիններ կային, մեկի անունը Էլիզա էր, մյուսինը՝ Թամարա (եր. 230)։ Նրանք գիտեն, որ Աբաս Միրզան մի վրաց լրտես ուներ, անունը Սուլի էր, գիտեն, որ այդ Սուլին կրոնը փոխել էր, «Քյապա ուխտի էր գնացած և Քեալպալայի Հայտար էր»

1 «Խամսայի մելիքություններ», եր. 353։ «Պատմություն Նոր Ջուղայի», հատ. Ա, եր. 446։

2 «Խամսայի մելիքություններ», եր. 349։

կոչված» (եր. 247)[1]։ Նրանք գիտեն և այն, որ Ղարաբաղից Պարսկաստան փոխադրված հայ գերյաց մեջ երևելի եղան հադրութեցի Հովսեփ Ներսիսյանցը և Փառուխ Ամիրխանյանցը, որոնք Աբաս Միրզայի հոգատարությամբ ստացան լավ կրթություն և պարսկերեն ուսում և մտան շահական դիվանատունն գրագրության պաշտոնով։ Սոքա հետզհետե այնպես կատարելագործեցին այդ մասնաճյուղը (՞), մինչև անգամ ստացան «Միրզա» տիտղոսը[2], որոնք կոչվեցան Միրզա Յուսուֆ և Միրզա Ֆարուխ (եր. 391)։ Այդ բոլորը գիտեն Բեկնազարյանները, որովհետև ամեն մի ղարաբաղցի գիտե, թե ո՛վ է Միրզա Ֆարուխը, կամ ո՛վ է Միրզա Յուսուֆը, գիտե մինչև անգամ Մակար վարդապետը, բայց այն անձիքը, որ իսկապես փառավոր տիտղոսներ ստացան, նրանց մասին տեղեկություն չունի Մակար վարդապետը, և այդ պատճառով նրանց անունները չեն մտնում «Գաղտնիք»-ի մեջ։ Ինչ որ Մակար վարդապետը չգիտե, այն չգիտեն և «Գաղտնիք»-ի մի զույգ հեղինակները...

Դիմենք փաստերին։

Վերևում արդեն հիշեցինք թե Բեկնազարյանների օրերում ինչ նշանավոր հայազգիներ կային Պարսկաստանում, և ինչ բարձր պաշտոններ էին վարում։ Եթե իսկապես Բեկնազարյանները նույնպիսի բարձր պաշտոններ էին վարում պարսից շահերի դռանը, որպիսին իրանք ցույց են տալիս «Գաղտնիք»-ի մեջ, այդ դեպքում շատ տարօրինակ պետք է համարել, որ նրանք մյուս հայազգի ծառայողների հետ հարաբերություններ չունենային և նրանց

---

1 Այս տեսակ երևակայական անունները հեշտ է ստեղծել։ Բայց Բեկնազարյանները մի քանի տասնյակ տարիներ Պարսկաստանում ապրելով և պարսկական կրթություն ստանալով, դարձյալ չգիտեն, որ Քյաբա գնացող ուխտավորները «Քալբալայի» են կոչվում, որովհետև Քյաբան Մեքքայի սրբավայրն է, այնտեղ գնացող ուխտավորները կոչվում են «ճաջի», իսկ «Քալբալայի» կոչվում են Բաղդադի ուխտավորները, որտեղ դրված են նահատակված իմամների շիրիմները։

2 Ամենահասարակ տեղեկությունների մեջ անգամ Բեկնազարյանները ցույց են տալիս իրենց խորին տգիտությունը։ Պարսից լեզվում «միրզա» բառը տիտղոս չէ, երբ նա անվան սկզբումն է դրվում, ասելով Միրզա-Ֆարուխ, հասկացվում է գրագիր Ֆարուխ. այսպես կոչվում են ամենահասարակ գրագիրները։ Բայց «միրզա» բառը տիտղոս է դառնում, երբ անվան վերջումն է դրվում, օրինակ Աբաս Միրզա, որ նշանակում է Աբաս իշխան։ Պարսից բոլոր արքայազները այս տիտղոսով են կոչվում, օրինակ Ջալալ միրզա, Ֆերուզ միրզա, Մելիք-Ղասում միրզա և այլն։

մասին մի որևէ հիշատակություն չանեին իրանց պատմության մեջ։ Առիթներ շատ կային և այդ առիթները ես ցույց կտամ։

Ապրես Բեկնազարյանը յուր մի քանի ամիսների մեջ սովորած պարսկերենով դառնում է Ֆաթալի-շահի դիվանի ոչ միայն ներքին գործերի ատենադպիրը կամ քարտուղարը, այլև նրա «արտաքին հարաբերական թղթակցությունների» խորհրդականն և թարգմանն է դառնում (եր. 275)։ Դրա համար պետք է գիտենալ եվրոպական լեզուներ։ Եվ որովհետև պարսից արտաքին հարաբերությունների մեջ ընդունված լեզուն ֆրանսերենն է, նա այդ լեզուն դարձյալ մի քանի ամիսներում սովորում է բանտարկյալ հայ-կաթոլիկ վարդապետից հենց բանտի մեջ... (եր. 299)։

Բայց Ֆաթալի-շահի պալատում այդ պաշտոնը կատարում էր ոչ թե Ապրես Բեկնազարյանը, այլ մի ուրիշ նշանավոր հայազգի, մի կատարյալ եվրոպական կրթություն ստացած դիվանապետ, որ Դռան առաջին թարգմանը և միևնույն ժամանակ, թագավորի արտաքին գործերի խորհրդականն էր։ Դա էր Դավիթ խան մելիք Շահնազարյան դե-Շապուրը, որը Նապոլեոն առաջինի օրերում Ֆաթալի-շահի կողմից ուղարկվեցավ Փարիզ, իբրև լիազոր դեսպան[1]։

Դրան չեն ճանաչում Բեկնազարյանները։

Վախճանվում է Ֆաթալի-շահը և գահակալում է Մամադ-շահը։ Այդ մասին հինգ տող միայն նվիրված է երկհատոր «Գաղտնիք»-ի մեջ, այն էլ լի սխալներով։

> «1834 թվին վախճանվեցավ Ֆաթալի շահն և հանդիսով թաղվեցավ շահերի հատուկ դամբարանում[2]։ Գահակալության կարգն թեև Մահմադ-Միրզային չէր պատկանում (ինչո՞ւ), սակայն հաջողեցավ գահն բարձրանալ, որ և կոչվեցավ Մամադ շահ» (եր. 390)։

---

1 «Պատմություն Պարսից», Մ. Դ. Թաղիադյանցի, հատ. Ա, եր. 223։ «Խամսայի մելիքությունները», եր. 349։

2 Ֆաթալի-շահը յուր մայրաքաղաքում, այն է՝ Թեհրանում չվախճանվեցավ, այլ վախճանվեցավ Սպահանում, ուր գնացել էր տեղային խռովությունները խաղաղացնելու։ Նրա վախճանվելուց հետո Պարսկաստանում այնպիսի խռովություններ ծագեցան, որ ոչ ոք ժամանակ չուներ հանդիսավոր թաղման մասին մտածելու։ Հանգուցյալի մարմինը մի քանի օր թաքցրին, հետո տարան թաղեցին Ղում կոչված փոքրիկ քաղաքում, Մասումայի մզկիթում։ Մեսրոպ Թաղիադյանցը, որ այդ ժամանակ Սպահանում էր գտնվում, յուր «Պատմություն պարսից», Ա. հատոր, եր. 232, 233, 235, ասում է. «Այլ ես զարմանամ արդարև զի ի բազմութիւնե անտի թոշակավոր դենպետաց և մոլլայից Ասպահանա չգտավ, որ կարդայր զֆաթա («հոգվոց»), կամ զդամբարականն ի վերա սորին (Ֆաթալի շահի)»։

*Օրինավոր ժառանգը հենց Մամադ-Միրզան էր, այսինքն՝ թագաժառանգ Աբաս-Միրզայի որդին, նախ՝ այն պատճառով, որ հանգուցյալ Ֆաթալի-շահը յուր կտակի մեջ նրան էր նշանակել գահակալ, երկրորդ, որ Պարսկաստանի թե ռուսաց և թե անգլիացոց ներկայացուցիչները նրան էին ճանաչում իբրև օրինավոր ժառանգ և ամեն կերպով աշխատում էին, որ հանգուցյալ թագավորի կտակը կատարված լինի։*

*Բայց «Գաղտնիք»-ի հեղինակը չգիտե, թե այդ ժամանակ գահակալության առթիվ ինչ խռովություններ ծագեցան Պարսկաստանում։ Եթե իրավ, նա մի որևէ պաշտոն էր վարում Ֆաթալի-շահի դռանը, այդ խռովությունները պետք է հետաքրքրեին նրան, մանավանդ այն պատճառով, որ հայ պաշտոնակալները այդ միջոցին մեծ դեր կատարեցին։*

*Ֆաթալի-շահը բազմացնելով յուր կանանց թիվը, բազմացրեց միևնույն ժամանակ յուր որդիների թիվը։ Դեռևս իր կենդանության ժամանակ նրանց Պարսկաստանի զանազան նահանգների փոխարքաներ կարգեց։ Երբ վախճանվեցավ, որդիներից յուրաքանչյուրը աշխատում էր թափուր մնացած գահի ժառանգը ինքը լինել։ Մի քանիսը իրենց կառավարության ներքո գտնվող նահանգներում իրանց թագավոր հրատարակեցին։ Միաժամանակ զանազան թագավորների անկարգություններից, երկիրը ընկավ կատարյալ անիշխանությունների մեջ։ Ներքին կռիվները, երկպառակությունը հուզման մեջ էին պահել ամբողջ Պարսկաստանը։ Ամեն կողմում տիրում էր արյունահեղություն և ապստամբություն։ Ամեն մի ժառանգ աշխատում էր կաշառքով և խոստումներով իրան թագավոր ճանաչել տալ։ Թեհրանում Ալի-շահ-Միրզան բաց արեց հոր հարուստ գանձերը և մի օրվա մեջ երկու միլիոն թուման բաժանեց զանազան ազդեցություն ունեցող անձիքների, որ իրան թագավոր ճանաչեն։ Պարսից ավագանին, Ռամազանի տոնին, հագցրեց նրան արքայական ծիրանին, նստեցրեց գահը և թագավոր հրատարակեց[1]։*

*Այդ անկարգությունների միջոցին օրինավոր թագաժառանգը, Մամադ-Միրզան գտնվում էր Թավրիզում, որտեղ վարում էր Ատրպատականի փոխարքայության պաշտոնը։ Ռուսաց և անգլիացոց քաղաքականությունը սաստիկ մաքառման մեջ էր, յուրաքանչյուրը աշխատում էր, որ յուր միջամտությամբ և ջանքերով թագաժառանգին գահ բարձրացնե, որ նրան պարտավորեցնե։*

---

[1] «Պատմություն պարսից», Մ. Դ. Թաղիադյանցի, հատ. Ա, եր. 231—257։

*Բայց Թեհրանում գահի վրա արդեն բազմած էր Ալի-շահ-Միրզան։*

*Թագաժառանգին Թեհրան տանելու և ինքնակոչ թագավորին այնտեղից վանելու համար, ոչ բավական զինվորական ուժ կար և ոչ նյութական կարողություն։ Արքունի գանձարանը գրավել էր Ալի-շահ-Միրզան և իր կեղծ գիրքը պահպանելու համար շռայլաբար վատնում էր։*

*Պարսկաստանի ռուսաց դեսպանը՝ կոմս Սիմոնովիչը և անգլիացոց դեսպանը՝ սըր Ջոն Կամբըլ, այդ միջոցին Թավրիզումն էին գտնվում, թագաժառանգի մոտ։ Ռուսաց դեսպանը կամեցավ Անդրկովկասից 7000 զինվոր բերել տալ թագաժառանգին Թեհրան տանելու համար։ Բայց անգլիական ներկայացուցիչը խափանեց այդ ձեռնարկությունը։ Ատրպատականի պարսկական զորքերը շարժելու համար միջոցներ չկային։ Այդ ծախքը յուր վրա առեց անգլիական դեսպանը, այն պայմանով, որ պարսից զորքերի ընդհանուր հրամանատարը լինի մի անգլիացի զինվորական։ Առաջարկությունն ընդունվեցավ։ Պասմորը հրամանատար կարգվեցավ, իսկ սըր Հենրի Արթուր և Շի նշանակվեցան զորապետներ։ Այդ պատրաստությամբ թագաժառանգը Թավրիզից ճանապարհ ընկավ դեպի Թեհրան։ Նրա հետ էին ռուսաց և անգլիական դեսպանները։ Դեռ երեք օրվա ճանապարհ մնում էր, մինչև կհասնեին պարսից աթոռանիստ քաղաքը, առաջինը, որ Թեհրանից յուր զորքերով դուրս եկավ թագաժառանգի առջև և ընդունեց նրան,—էր հայազգի խոսրով խանի՝ «շիրը»—առյուծը։ Հետո Ռաշտից յուր հեծելազորքով վրա հասավ «Մոհթամեդ-դովլան»—պետության նեցուկը։ Դա էր հայազգի Մանուչար խանը, որ յուր անբավ հարստությունը—80.000 թուման դրեց թագաժառանգի առջև, որովհետև նա իր սկզբնական ծախքերի համար անգամ բավական փող չուներ։*

*Թեև Ալի-շահ-Միրզան 20.000 զինվորներից բաղկացած մի զորախումբ ուղարկեց ընդդիմադրելու յուր ախոյանին, բայց նրանք տեսնելով թագաժառանգի անհարկու զորությունը, առանց պատերազմի անձնատուր եղան։ Նոր թագավորը խոստացավ ներել յուր հակառակորդներին։ Այդ ժամանակ անձնատուր եղավ և Ալի-շահ-Միրզան։ Նա ցած իջավ գահից և այն թագը, որ բռնությամբ հափշտակել էր ցանկանում, յուր ձեռքով տարավ դրեց արքունի գանձարանը, և խոնարհեցավ ճակատագրի առջև[1]...*

[1] *«Պատմություն պարսից», Մ. Դ. Թաղիադյանցի, Ա հատ., եր. 246—257։*

Այդ բոլորը կատարվեցավ, բայց «Գաղտնիք»-ի հեղինակը, որ անձամբ նոր Թագավորի մոտ էր, ոչինչ չտեսավ, ոչինչ չիմացավ... Նա չտեսավ և այն, որ հիշյալ խռովությունների միջոցում, հայազգի գեներալ Դավիթ խան Սագինյանի քաջությունը և թընդանոթները միայն կարողացան պահպանել Սպահանը մի սոսկալի ապստամբությունից, որին ոչ միայն պիտի զոհ գնային տեղային հայերը, այլ Պարսկաստանը պիտի ենթարկվեր մի այլ Թագավորի բռնապետությանը՝ հանգուցյալ Ֆաթալի-շահի որդիներից, որին շատ դժվար պիտի լիներ հեռացնել յուր գահից[1]։

Ահա ինչու վերևում ես ասացի, թե առիթներ շատ կային, որ Բեկնազարյանները խոսեին իրենց ժամանակում Պարսկաստանում գտնված նշանավոր հայազգի պաշտոնակալների մասին, որոնք այնքան մեծամեծ գործեր կատարեցին, որոնք ոչ սակավ նպաստեցին ազատելու տատանվող պետությունը յուր ահեղ կործանումից։ Եվ եթե Բեկնազարյանները լռում են, այդ արդեն պարզ ապացույց է, որ նրանք ոչ Պարսկաստանում են եղել, և ոչ պարսից Թագավորների մոտ որևէ պաշտոն են կատարել։ Որովհետև նրանք բոլորովին մանր և չնչին բաների վրա ուշադրություն են դարձնում, իսկ պատմական խոշոր երևույթները չեն տեսնում։ Մուզեոն այցելող ստախոսի նման՝ մժղուկներին տեսնում են, իսկ փղերին չեն նկատում...

Մի այլ փաստ, որի մեջ երևում է Բեկնազարյանների կատարյալ տգիտությունը Պարսկաստանի վերաբերությամբ։

Հայր Բեկնազարյանը հիվանդանում է։— Ո՞րտեղ։— Թավրիզում։ Ձմռանանք այդ։ Որդի Բեկնազարյանը այսպես է գրում յուր հոր հիվանդության մասին.

«Հայրս երկու ամսից ի վեր հիվանդ էր ընկողմանած անկողնում։ Հիվանդությունն ջերմի ամենասաստիկ տեսակիցն էր, այսուամենայնիվ շահի բժիշկներն հուսադրում էին, որ կառողջանա։ Թե որքան խնամք տարավ բարեխնամ Ֆաթալի-շահն հորս առողջության համար անկարելի է մի ըստ միոջէ նկարագրել այստեղ» (եր. 383)։

Հիշյալ ասացվածների մեջ նկատողության արժանի երկու կետ կա, առաջինը արդյո՞ք կարող էին շահի բժիշկները այցելել հիվանդին, երկրորդ, կարո՞ղ էր բարեխնամ Ֆաթալի-շահը հոգ տանել հիվանդին։ Ոչ առաջինը կարելի էր և ոչ երկրորդը։ Ինչո՞ւ,

---

1 «Պատմություն պարսից», Մ. Դ. Թաղիադյանցի, հատ. Ա., եր. 232—265։

որովհետև հիվանդը դրված էր Թավրիզում, իսկ թե շահը և թե նրա բժիշկները կենում էին Թեհրանում։

«Գաղտնիք»-ի մեջ միշտ շփոթում են Թավրիզը Թեհրանի հետ, պարսից շահերի մոտ ապրող Բեկնազարյանները չգիտեն, որ Թավրիզը պարսից աթոռանիստ քաղաք չէր, որ Ֆաթալի-շահը այնտեղ լիներ և խնամք տաներ հիվանդին։ Գոնե Բեկնազարյանները գիտենային թե ո՞վ էր այդ շահի բժիշկը։

Թե Ֆաթալի-շահի օրերում և թե նրա հաջորդ Մամադ-շահի օրերում պարսից Դռան արքունի բժիշկը հայազգի Դավիթ խան Մկրտչյան Կարպեցին էր, ասպետ և նշանակիր արեգական և առյուծո[1]։ Գոնե հիշեին այդ նշանավոր մարդու անունը, որ բացի բժշկությունից պարսից Դռան ազդեցություն ունեցող անձիքներից մեկն էր։

Վերջապես, հայր Բեկնազարյանը վախճանվում է (1828 թ.) և նրա մարմինը հանդիսավոր կերպով թաղվում է Թավրիզի հայոց եկեղեցու գավիթում։ Որդին այսպես է նկարագրում հոր թաղման հանդեսը.

«Ես չեմ կարող նկարագրել այստեղ այն դառն վշտերը և անփարատելի ցավերը, զորս պատճառեց ինձ հորս մահը։ Բայց այսուամենայնիվ սակավ մխիթարություն չզգացի հուղարկավորության հանդեսի փառավորությամբն, որը կարգադրած էր բարեխնամ Աբաս Միրզան (պարսից թագաժառանգը)։ Հուղարկավորության հանդեսն կատարվեցավ զինվորական կարգաւ, որ ներկա էին շատ բարձր զինվորականք, ինքը Աբաս-Միրզան և բոլոր հայ ժողովուրդը (հայ հոգևորականներ չկան)։ Հորս մարմինը ամփոփվեցավ Թավրիզի հայոց եկեղեցվո գավիթում, կից Մելիք-Աբովյան մելիք ժառանգ Ռուստամ բեկի գերեզմանին» (եր. 390)։

Թողնենք այն, որ պարսից կրոնի տրամադրությամբ թաղումը նկատվում է իբրև մի հոգևոր խորհուրդ և նրա վրա զինվորական հանդեսներ չեն կատարում։ Թողնենք և այն, որ Աբաս-Միրզան, պարսից թագաժառանգը, որ ավելի մեծ ազդեցություն ուներ, քան թե թագավորը, որքան և հայասեր լիներ, բայց դարձյալ իրան թույլ չէր տա Աբրահամ Բեկնազարյանի թաղման հանդեսին ներկա լինել։—Նկատենք միայն այն, թե ինչ մի տարա-

---

[1] Խամսայի մելիքություններ», եր. 348։ «Պատմություն պարսից», Մ. Դ. Թաղիադեանցի, հատ. Ա., եր. 250։

բախտ ժամանակ էր 1828 թվականը Պարսկաստանի համար, արդյոք Աբաս-Միրզան ժամանակ ունե՞ր Աբրահամ Բեկնազարյանի թաղման հանդեսներով զբաղվելու, երբ նույնիսկ Պարսկաստանը մահվան տագնապների մեջ էր, երբ նույնիսկ Պարսկաստանը մոտ էր յուր գերեզմանին...

Այդ այն ժամանակն էր, որ Աբաս-Միրզայի սիրելի զորքերը խորտակվել էին Պասկևիչի առջև, իսկ ռուսաց հաղթական զորքերը գրավել էին Ատրպատականի հայաբնակ գավառները։ Այդ այն ժամանակն էր, որ Թավրիզը, Աբաս-Միրզայի աթոռանիստ քաղաքը, նույնպես գրավված էր ռուսաց զորքերով։ Այդ այն ժամանակն էր, որ դուխուրղանյան և ապա Թուրքմանչայի դաշնագրություններից հետո, Աբաս-Միրզայի և Պասկևիչի մեջ, Պարսկաստանը կորցնում էր յուր անդրկովկասյան գավառները, Երասխը դառնում էր սահմանագիծ, և պարսկաստանը ենթարկված էր քսան միլիոն ղրուան պատերազմական տուգանքի։ Եվ վերջապես, այդ այն ժամանակն էր, որ Պարսկաստանը կորցնելով յուր ամենաբարեբեր երկրները, կորցնում էր միևնույն ժամանակ յուր ժողովրդի մի արդյունավոր մասը—հայերին։ Ղազարոս Լազարյանը ամենայն փութաջանությամբ Պարսկաստանի հայ գաղթականների ստվար խմբերը անց էր կացնում դեպի Երասխի մյուս կողմը, ռուսաց հողի վրա, և հայերի գաղթականությունը ավելի հոգսեր էր պատճառում Աբաս-Միրզային, քան թե պարսկական երկրների կորուստը։ Այդ խառնաշփոթ տագնապալի ժամանակներում, որ տևեց երկու տարի (1827—1828), ծիծաղելի և ավելի քան ծիծաղելի կլիներ մտածել, թե Ցաթալի-շահը զբաղված էր մի որևէ Աբրահամ Բեկնազարյանի հիվանդությունով, իսկ Աբաս-Միրզան՝ նրա թաղման հանդեսով... քանի որ նրանք շա՛տ և շա՛տ ուրիշ վերքեր ունեին դարմանելու...

Ես Թավրիզը շատ անգամ եմ տեսել, իսկ վերջին ժամանակներում, երկու տարի շարունակ, տեղային հայոց դպրոցում վարժապետության պաշտոն էի վարում։ Եկեղեցին կից էր դպրոցին։ Շատ անգամ հետաքրքրվել եմ այդ եկեղեցու գավթում դրած գերեզմաններով, որոնց թվում գտնվում է և իմ հարազատը... Այնտեղ ես գտա Մեսրոպ Թաղիադյանցի կնոջ գերեզմանը՝ յուր մարմարիոնի շիրիմով և անբախտ բանաստեղծի սրտառուչ տապանագրով։ Այստեղ դրած են և շատ եվրոպացիների գերեզմաններ, զանազան ազգություններից, որոնք առանձին գերեզմանատուն չունենալով, եկեղեցու գավթումն են թաղված։ Բայց Աբրահամ Բեկ-

նազարյանի գերեզման չկա այնտեղ, եթե լիներ մի այնպիսի նշանավոր անձի գերեզման չէր մոռացվի։

Համարյա միևնույն ժամանակներում, երբ հայր և որդի Բեկնազարյանները Պարսկաստանումն էին, այնտեղ էր և Մեսրոպ Թաղիադյանցը, նախ Թավրիզում, հետո գնաց Սպահան, իսկ այնտեղից Հնդկաստան։ Յուր «Պատմություն Պարսից» կոչված գրքի մեջ Թաղիադյանցը խոսում է պարսից վերջին թագավորների ծառայության մեջ հայտնի եղած նշանավոր հայազգի պաշտոնակալների մասին։ Ինչպե՞ս զանցառություն կտար Թաղիադյանցը Բեկնազարյանների նման երևելիներին, որոնք ինչպես ցույց է տալիս «Գաղտնիք»-ը, աղա-Մամադ-շահի, Ֆաթալի-շահի, Աբաս-Միրզայի և Մամադ-շահի—այդ երեք թագավորների և մի թագաժառանգի ոչ միայն սիրելիներն էին, այլ նրանց կառավարության ամենագաղտնի թելերը իրենց ձեռքում ունեին։

Ես ինքս իբրև պարսկաստանցի, հետամուտ եմ եղել հավաքելու Պարսկաստանում հայազգի պաշտոնակալների կենսագրությունները։ Բայց Բեկնազարյանների անվանը երբեք չեմ հանդիպել։ Եթե այդ անձիքը գոյություն ունենային, իրենց բարձր դիրքով, անկարելի է, որ բոլորովին անհետ լինեին և ոչ մի հիշատակ չթողնեին Պարսկաստանում։

Նույնիսկ «Գաղտնիք»-ի մեջ Բեկնազարյանները պատած են մի տեսակ անթափանցիկ մռայլով, և պարզ չի երևում, թե այդ մարդիկը ի՞նչ պաշտոն էին վարում պարսից թագավորների Դռանը։ Հայրը զինվորական է։ Բայց զինվորականները, ինչպես ամեն պետության մեջ, նույնպես և Պարսկաստանում, զանազան աստիճաններ ունեին։ Արդյոք հայր Բեկնազարյանը սուլթան էր, յավար էր, սարհանգ էր, սարթիփ էր, միրփանջ էր, սըփահ-սալար էր,—ի՞նչ էր, դրանք են պարսից զինվորական աստիճանները։ Նա մինչև անգամ խանության տիտղոս չունի։ Բայց հանկարծ տեսնում ենք նրան 10.000 զինվորների հրամանատար... Որդի Բեկնազարյանը պարսից շահերի «գաղտնի նամակագիր է»: Ի՞նչ է նշանակում գաղտնի նամակագիրը։ Այս տեսակ պաշտոն չկա պարսից թագավորների արքունիքում։ Ինչպես ամեն թագավոր, նույնպես և պարսից թագավորը ունի զանազան կոչումներով և զանազան բաժանմունքներով վեզիրներ (մինիստրություններ) և յուրաքանչյուրի պարապմունքը որոշված է։ Իսկ Ապրես Բեկնազարյանը միշտ մնում է Ապրես, ոչ մի տիտղոս չէ ստանում, բայց միևնույն ժա-

մանակ, կառավարում է պարսից թագավորների ամբողջ պետական բարձր դիվանը...

Ինչո՞ւ Մակար վարդապետը չի կամեցել յուր ստեղծած Բեկնազարյաններին մի որևէ տիտղոս տալ։

Շատ պարզ է թե ինչու։ Եթե, օրինակ, Մակար վարդապետը կոչեր Աբրահամ Բեկնազարյանին՝ «Իբրահիմ-խան-սարթիփ»—գեներալ-Աբրահամ-խան,—իսկ նրա որդի Ապրես Բեկնազարյանին՝ պարսկական անունով՝ «Աֆրիս-խան-ամիր-դիվանխանայիազամ», այսինքն՝ Ապրես խան-պետ—բարձր-դիվանի (ոչպես և համարում է նրան Մակար վարդապետը),—այդ դեպքում Բեկնազարյանները շատ կխոշորանային և աչքի կընկնեին, այնուհետև դժվար կլիներ նրանց թաքցնել։ Իսկ Մակար վարդապետը կամեցել է երկու նպատակի միանգամից հասնել, մի կողմից աշխատել է Բեկնազարյաններին այնպիսի երևակայական պաշտոնների մեջ մտցնել, որ կարողանան «Գաղտնիք»-ի համար նյութեր մատակարարել, իսկ մյուս կողմից՝ աշխատել է նրանց պահել փոքրության մեջ, որ հետո հեշտ լիներ կորցնել նրանց, որ հետքերը չերևնան, ոչպեսզի անկարելի լինի ստուգել, արդյոք այդպիսի անձնավորություններ գոյություն ունեցե՞լ են, թե ոչ։

Չնայելով Մակար վարդապետի բոլոր նախազգուշություններին, «Գաղտնիք»-ի մեջ անգիտակցաբար սպրդած են այնպիսի հիշատակություններ, որոնք ոչ միայն երևան են հանում Բեկնազարյանների ով կամ ինչ պաշտոնի տեր մարդիկ լինելը, այլ, միևնույն ժամանակ առաջ են բերում անթիվ հակասություններ այն բոլոր փաստերի նկատմամբ, որոնց վրա հիմնված է «Գաղտնիք»-ը և որոնք այդ գրքի բովանդակությունն են կազմում։

Ժամանակ է լուծելու «Գաղտնիք»-ի գաղտնիքը և ցույց տալու այդ գրքի երևակայական հեղինակների ով լինելը։

Մակար վարդապետը ցանկացել է, որ «Գաղտնիք»-ի մի զույգ հեղինակները բնիկ ղարաբաղցիներ լինեն։ Նա որոնել է «Խամսայի մելիքությունների» 347—357 երեսներում նշանակված Պարսկաստանի հայազգի պաշտոնակալների ցուցակը։ Նրանց թվում գտել է երկու ղարաբաղցիների անուններ։ Դրանցից մեկը մի ներքինի է Ֆաթալի-շահի կանանոցում, Աղա-Իբրահիմ անունով, իսկ մյուսը՝ Մամադ-շահի կնքապահն է, Ալլահվերդի-բեկ անունով։ Երկուսն էլ քրիստոնեությունն ուրացած և մահմեդականություն ընդունած հայեր են։

Բայց Մակար վարդապետը յուր վրա վստահ լինելով, թե

նրանց կրոնափոխությունը կարող է ծածկել և յուր նպատակներին ծառայեցնել,— մեկին՝ Աղա-Իբրահիմ-ներքինիին, անվան մոտավորության համար դարձրել է Աբրահամ Բեկնազարյան, իսկ մյուսին՝ Ալլահվերդի-բեկին՝դարձրել է նրա որդի Ապրես Բեկնազարյան։ Մեկը «Գաղտնիք»-ի սկսողն է, իսկ մյուսը նրա շարունակողը և վերջացնողը։

Բերենք «Գաղտնիք»-ի վկայությունը։

> «Մի օր հայրս ներկայացավ շահին,— գրում է որդի Բեկնազարյանը,— և հրաժեշտ տվավ զինվորական ծառայությունից, պատճառաբանելով թե ինքն արդեն ծերացած էր և պետք ուներ հանգստանալու։ Ցաթալի-շահն նախ շնորհակալություն հայտնեց հորս, սորա պարսից մատուցած ծառայությունների համար, ապա նշանակեց ցմահ բավարար թոշակ և ապա սույն խոսքերով ներքինապետություն հանձնեց հորս։ «Հաճախ անկարգություններ են ծագում մեր անպիտան ներքինաց և կանանց մեջ, վասն որոյ մենք ցանկանում ենք քեզ նման մի ազնիվ մարդ ներքինապետ ունենալ, որով կդադարին ամեն անկարգություն և խռովություն։ Մեր օրինաց նկատմամբ ներքինապետությունն մեծ և պատվավոր պաշտոն է, քանզի շահական ներքին պատվո հսկողությունն է և հավատարմապահությունն։ Նույնպես մեր օրենքն արգիլում է վստահել այդ պաշտոնն չներքինացած մարդո, բայց որովհետև ժամանակն արդեն զձեզ ներքինացրած է, մենք այնպես կհռչակենք, որ մենք նախ զձեզ ներքինացնել տված և ապա զձեզ հանձնած ենք այս պաշտոնը» (եր. 309)։

Այդ քաղվածքի մեջ երկու նկատողության արժանի կետ կա. առաջինը, որ Մակար վարդապետը թաքցնում է Աբրահամ Բեկնազարյանի մահմեդականություն ընդունելը և դրա վրայով լռությամբ է անցնում, երկրորդ, որ թաքցնում է նրա ներքինիանալն, այսինքն՝ խզվիլն։ Առանց այդ երկու պայմանների, որ օրենքի նշանակություն ունին պարսից պալատում, անկարելի է ներքինի կամ ներքինապետ լինել և շահի պալատը մտնել, որքան և ծեր լիներ մի մարդ։

Բայց Մակար վարդապետը ստիպում է Ցաթալի-շահին, հակառակ յուր կրոնի և պարսից արքունի ավանդական օրենքների, մի խոշոր սուտ հրատարակել. «Մենք այնպես կհռչակենք, որ մենք նախ զձեզ ներքինացնել տված և ապա զձեզ հանձնած ենք այս

պաշտոնը...»։ Որքան և ցանկանար Ֆաթալի-շահը, չէր կարող այդ սուտը հռչակել, որովհետև ներքինացնելու ծեսը գաղտնի չէ կատարվում, այլ կատարվում է հանդիսավոր կերպով բժիշկների և վկաների ներկայությամբ։ Բայց Մակար վարդապետի միամտության ծիծաղելի կողմը այն է, թե ի՛նչ կարողություն ուներ հզոր Ֆաթալի-շահը, որ իրան թույլ տար այդ տեսակ աչքակապություններ անել մի որևիցե Աբրահամ Բեկնազարյանի վերաբերությամբ, այն Ֆաթալի-շահը, որի հարուստ կանանոցը լցված էր ուրիշ ավելի նշանավոր հայազգի ներքինիներով և ներքինապետներով, որոնց ոչ միայն խզել էին տված,—այլ մահմեդականացրել էին։ Բավական է միայն ցույց տալ նախորդ գլխում հիշված Մանուչար խանին, որ նույնպես մի ժամանակ ներքինապետ էր Ֆաթալի-շահի կանանոցում,— Խոսրով խանին, որ նույնպես ներքինապետ էր Ֆաթալի-շահի կանանոցում[1]։

Ներքինիներ և ներքինապետներ էին նաև Աղա-Յաղուբը, մյուս Աղա-Յաղուբ երևանցին և Աղա-Բահրամը[2]։ Այդ դժբախտները ամենքը մահմեդականացրած հայեր էին...

Ֆաթալի-շահը ուներ երեք հարյուրի չափ կանայք և հազարից ավելի պալատական նաժիշտներ և հարճեր։ Այդ բազմությունը կառավարելու համար, իհարկե պետք էր ներքինիների և ներքինապետների մի ստվար պաշտոնեություն և նրանցից շատերը հայեր էին, կամ Աղա-Մամադ-շահի տարած գերիներից և կամ այն գերիներից, որ տարվեցան ռուս-պարսկական վերջին պատերազմներում, Ֆաթալի-շահի ժամանակ։ Գերին պարսկական օրենքներով անհատ չէ, այլ իր է։ Տերը կարող է նրա հետ ամեն կերպ վարվել։ Այդ է պատճառը, որ շատերին ներքինացրին։

---

1 Թե Մանուչար-խանը և թե Խոսրով-խանը, թեև պետական խոշոր պաշտոնակալներ էին, և երկուսն էլ ունեին անբավ հարստություն, բայց հայության համար կորած մարդիկ էին։ Մանուչար-խանի հարստությունը զանազան պարսիկների կոկորդն անցավ, և մեռնելուց հետո նրա մարմինը տարվեցավ Ղում քաղաքը, թաղվեցավ Մուսումայի հռչակավոր մզկիթում, որտեղ դրված էր և Ֆաթալի-շահի շիրիմը։ Հանգուցյալ քեռորդի իշխան Միրզա-Դավիթ-խան Մելիքյանը մի փառավոր մատուռ կանգնեցրեց նրա գերեզմանի վրա, և մշտական թոշակով կարգեց այնտեղ աղոթող մոլլաներ, որ միշտ Ղորան կարդային. («Պատմություն Նոր Ջուղայի», հատ. Ա, եր. 437—444), իսկ մյուսը՝ Խոսրով խանը, որ վախճանվեցավ 1857 թվին, յուր բոլոր հարստությունը և Գիլանում գնած գյուղերն ու կալվածները կտակեց պարսից ներկա շահին («Պատ. Նոր Ջուղայի», եր. 432—437։

2 «Խամսայի մելիքությունները», եր. 348—349։

Ֆաթալի-շահի Աղա-Իբրահիմ ներքինին—«Գաղտնիք»-ի Աբրահամ Բեկնազարյանը—Աղա-Մամադ-շահի Ղարաբաղից տարած գերիներից էր։ Եվ նրան խզել էին ոչ թե ծերության հասակում, այլ մանկության հասակում։

Պարսկաստանում ներքինացնելը կատարվում է երկու նպատակով. մեկը՝ քաղաքական նպատակով, որ նա ժառանգներ չթողնի, ինչպես օրինակ, Աղա-Մամադ-շահը ներքինիացրած էր,— մյուսը՝ հարեմական նպատակով։ Թե առաջինը և թե երկրորդը կատարվում են մանկության հասակում, երբ մանուկը տակավին անչափահաս է։

Եվ այդ ընդունված սովորությունների համեմատ տարակույս չկա, որ Աբրահամ Բեկնազարյանը պետք է ներքինի դառնար նույն հասակում, որ փոքր առ փոքր վարժվելով կանանոցի կարգերի հետ ծանոթանալով, այնքան մեծանար, որ վերջը մինչև ներքինապետի աստիճանը բարձրանար։

Այն հանգամանքը,— այսինքն Աբրահամ Բեկնազարյանի մանկությունից Ֆաթալի-շահի կանանոցը մտնելը և այնտեղ ներքինի լինելը միանգամայն ոչնչացնում է «Գաղտնիք»-ի ամբողջ շինվածքը և խպառ հերքում է այն բոլոր երևակայական սխրագործությունները, որ այս գրքում կապված են Ա. Բեկնազարյանի անձնավորության հետ։

Ինչու՞։

Նրա համար, որ Ֆաթալի-շահի կանանոցի Աղա-Իբրահիմը մի հայտնի անձնավորություն է։ Նա, ինչպես վերևում հիշեցի, Աղա-Մամադ-շահի Ղարաբաղից 1795 թվին տարած գերիներից էր։ Այդ թվականում նա դեռ 10—15 տարեկան մանուկ էր։ Հետո ներքինի դարձավ։ Այժմ «Գաղտնիք»-ից բերած վկայությունից հաստատվում է, որ Աբրահամ Բեկնազարյանը և հիշյալ Աղա-Իբրահիմ ներքինին միևնույն անձնավորություններն են։ Եթե այսպես է, ուրեմն ինչպե՞ս կարող էր նա 1680 թվականներում աշակերտած լինել Գանձասարի Ներսես կաթողիկոսի մոտ և «Գաղտնիք»-ի համար պատմական նյութեր ընդօրինակել։ Ախր 1795 թվականի և 1680-ական թվականների մեջ 115 տարվա տարբերություն կա։ Եթե այդ 15 տարին տանք Աբրահամ Բեկնազարյանի հասակին, երբ նա Ղարաբաղից գերի տարվեցավ Պարսկաստան,— 100 տարին բոլորովին բաց է մնում, և այդ 100 տարվա ընթացքում դեռ չծնված Բեկնազարյանի գործերը, որոնք ընդարձակ տեղ են բռնում «Գաղտնիք»-ի մեջ, ինքնըստինքյան ջնջվում են, ինքնըս-

տինքյան ոչնչանում են և դրանք մնում են միայն իբրև Մակար վարդապետի երևակայության ողորմելի արգասիք...

Կրկնում եմ, Աբրահամ Բեկնազարյանի և Ֆաթալի-շահի կանանոցի Աղա-Իբրահիմ ներքինի միևնույն անձնավորություններ լինելը միանգամայն տակնուվրա է անում «Գաղտնիք»-ի ամբողջ շինվածքը և նրա ամբողջ բովանդակությունը դարձնում է բոլորովին կեղծ և առասպելական հորինվածք։ Ես զարմանում եմ, թե ինչպես Մակար վարդապետը չէ նկատել, և իրան թույլ է տվել մի այսպիսի անհամեմատ խոշոր հակասություն։

Աղա-Իբրահիմ ներքինին մանկությունից Պարսկաստան տարած, կրոնը փոխած, մի մոլեռանդ մահմեդական էր, թեև ծագումով հայ։ Նա իրան բոլորովին հեռու էր պահում հայերից, և մեռավ մահմեդականության մեջ, մարմինը տարվեցավ Քալբալա։

Իսկ Աբրահամ Բեկնազարյանը «Գաղտնիք»-ի մեջ ներկայացնում է իբրև մի քաջ հերոս, որ պատերազմում է յուր հայրենիքի փրկության համար, որ աշխատում է վերականգնել Ղարաբաղի ընկած մելիքությունները, որ գրում է ժամանակի պատմությունը, որպեսզի իբրև խրատ թողնե ապագա սերունդներին,— և հանկարծ դուրս է գալիս, որ այդ երևելի ազգասերը ուրիշ ոչ ոք չէ, եթե ոչ մի թշվառ մահմեդականացրած ներքինի Ֆաթալի-շահի կանանոցում, որի համար ոչ հայոց ազգ կա, ոչ հայոց հայրենիք...

Մակար վարդապետը այնքան մոռանում է իրան, որ այդ մահմեդական ներքինիի մարմինը տանում է թաղել տալիս Թավրիզի հայոց եկեղեցու գավթում և մինչև անգամ Աբաս-Միրզային, Պարսկաստանի թագաժառանգին, հրավիրում է թաղման հանդեսին ներկա լինել... Ո՞վ թույլ կտար։ Մի հայ, որ կրոնը փոխել է, եթե տեսնելիս լինեն նրան մի այլ հայի հետ խոսելիս, կամ հայի տունը մտնելիս, խակույն մահմեդականները կքարկոծեն, ուր մնաց, որ նրա մարմինը թույլ տային հայոց եկեղեցու գավթում թաղելու։

Այդ բոլորը՝ թե Աբրահամ Բեկնազարյանին Ֆաթալի-շահի կանանոցում իբրև քրիստոնյա պահելը և թե նրա մարմինը հայոց եկեղեցու գավթում թաղել տալը,— ես վերաբերում եմ Մակար վարդապետի, որպես կրոնավորի, քրիստոնեական ջերմեռանդությանը, բայց այդ տեսակ ջերմեռանդություններ պատմության համար ոչինչ նշանակություն չունեն։

Նույն ջերմեռանդությունը Մակար վարդապետը գործ է դնում և Աբրահամ Բեկնազարյանի որդի Ապրեսի վերաբերությամբ և

նրան Երուսաղեմ է ուղարկում... բայց իսկույն կտեսնենք, որ նրա մարմինը նույնպես յուր հոր նման թաղվեցավ Քալբալայում։

Ապրես Բեկնազարյանը, «Գաղտնիք»-ի շարունակողը և վերջացնող հեղինակը, և յուր աշխատությունը 1881 թվին Մակար վարդապետին հանձնող հեղինակը, հանկարծ միևնույն գրքում ներկայանում է Ալլահվերդի կամ Ալլահվերդի-բեկ անունով։

«Զմոռանամ ասել, որ հայրս կոչվում էր Իբրահիմ-Աղա, իսկ ես կոչվում էի Միրզա-Ալլահվերդի, սակայն հաճախ գործածական էր և իմ նախկին «Ալլահվերդի-բեկ» անունը» (եր. 312)։

Ո՞րտեղից ստացավ նա այդ մահմեդական անունը և ինչո՞ւ։ Այդ հարցին կպատասխանե ինքը, Ապրես Բեկնազարյանը.

«Իսկույն (Աղա-Մամադ-շահն) զիս որդեգրելով, ասաց.— «Սիրուն և անմեղ փոքրիկ, դու այդ մանկական հասակում ցանկացած ես շահը տեսնել։ Աղա-Մամադ-շահն այնքան ապաշնորհ չի լինիր, որ քո այդ ազնիվ փափագն ըստ արժանավոյն գնահատել չգիտենա։ Դու այսուհետև Աղա-Մամադ-շահի հոգեկիր որդին ես, բայց այն պայմանաւ, որ դու անխախտ պահես քո պապենական հավատը և լեզուն»։ Հետո իմ Ապրես անունը «Ալլահվերդի» փոխեց, իբր թե ինքն ներքինի և անզավակ գոլով՝ աստված պարգևեց իրեն մի որդի Աստվածատուր անվամբ»[1] (եր. 136)։

Մակար վարդապետը այնպես թեթև կերպով է վերաբերվում պատմական փաստերին, կարծելով թե ինչպես ինքը ցանկանում է, այնպես էլ կարող է լինել։

Աղա-Մամադ-շահը, պարսից ներկա Ղաջարյան տոհմի թագավորության հիմնադիրը, որովհետև ինքը զավակ չունի, որդեգրում է մի խնածախցի հայ տղայի, որ յուր գահի ժառանգը լինի,— այն էլ այն պայմանով, որ նա «անխախտ պահե յուր պապենական հավատը և լեզուն»... Պարսից գահի վրա քրիստոնյա թագավոր... Այդ տեսակ երազների վրա մտածելն անգամ հիմարություն կլիներ։

Աղա-Մամադ-շահը, իրավ է զավակ չուներ, բայց նա արդեն

---

[1] Ալլահվերդի թուրքերեն նշանակում է Աստվածատուր։ Աղա-Մամադ-շահը պարսկերեն էր խոսում, նա թուրքերեն չգիտեր, եթե ցանկանար Աստվածատուր անվանը հոմանիշ մի անուն տալ Ապրես Բեկնազարյանին, նրան Խուդա-դատ կկոչեր և ոչ Ալլահվերդի։

որդեգրել էր յուր եղբոր որդի Բաբա-խանին, որ նրանից հետո թագավոր դարձավ Ֆաթալի-շահի անունով։ Այլևս ի՞նչ պետք ուներ Ապրես Բեկնազարյանին...

Բայց չնայելով Աղա-Մամադ-շահի ցանկությանը (կամենում եմ ասել Մակար վարդապետի ցանկությանը), փոքրիկ Ապրեսը անխախտ չպահեց յուր «պապենական հավատը և լեզուն»։ Այն օրից, որ տրվեցավ նրան Ալլահվերդի անունը, հենց այն օրից ծլպատություն ընդունեց...

Մակար վարդապետը յուր Ալլահվերդի-բեկին նույնացրել է «Խամսայի մելիքությունների» (350 եր.) Ալլահվերդի-բեկի հետ, օգուտ քաղելով միայն այն հանգամանքից, որ երկուսն էլ ղարաբաղցի հայեր են։ Ի՞նչու։

Նրա համար, որ «Խամսայի մելիքությունների» Ալլահվերդի-բեկը Մամադ-շահի «մոհրդարն» է, այսինքն՝ կնքապահն է, շահի դիվանից որքան հրովարտակներ դուրս գալու լինեն, նա պետք է կարդա, արքայական կնիքով կնքե, հետո թագավորի ստորագրությանը ներկայացնե։ Իսկ մի այսպիսի մարդ Մակար վարդապետին պետք էր, որ նույն հրովարտակների «գաղտնիք»-ը մտցնե «Գաղտնիք»-ի մեջ...

Հարցնող լինի, թե ի՞նչ գաղտնիքներ դուրս բերեց Ալլահվերդի-բեկը շահի դիվանից, որոնք մեզ հայտնի չէին մինչև «Գաղտնիք»-ի լույս տեսնելը։ Այդ թողնենք։

Միայն կարևոր ենք համարում նկատել, որ այն բոլոր ջանքերով, որով Մակար վարդապետը աշխատել է յուր Ալլահվերդի-բեկին զանազան ոլոր-մոլոր ճանապարհներով մտցնել շահի դիվանի մեջ,— դրանից ոչ միայն որևէ իրական օգուտ չէ քաղել, այլ իրան դրել է անխուսափելի հակասությունների մեջ։

Ահա ինչու։

Մամադ-շահի կնքապահ Ալլահվերդի-բեկը մանկությունից Պարսկաստան տարած և մահմեդականությունն ընդունած մի գերի էր։ Նա ուրացել էր որպես հայությունը, նույնպես և հայոց կրոնը։ Նա հայերեն գրել-կարդալ անգամ չգիտեր։ Ուրեմն, ի՞նչպես հեղինակեց «Գաղտնիք»-ը։

Եվ վերջապես, նա ապրեց որպես մի մոլեռանդ մահմեդական, հոգով և սրտով, և մեռավ, որպես մահմեդական։ 1847 թվին նրա մարմինը տարվեցավ Քարբալա և թաղվեցավ իմամների սուրբ հողի մեջ։

Եվ ահա նոր հրաշք։

Նույն Ալահվերդի-բեկն («Գաղտնիք»-ի հեղինակ Ասլան-բեկ) Քալբալայից հարություն է առնում, 43 տարի ճանապարհորդություններ է անում, այցելում է Հայաստանի բոլոր վանքերին (եր. 394—395), յուր մեղքերը քավում է և հետո, 1881 թվին գալիս է Շուշի, մուրացկանի կերպարանքով ներկայանում է Մակար վարդապետին, և «Գաղտնիք»-ը հանձնում է հայր սուրբին...

Ե

Այն բազմաթիվ փաստերը, որ առաջ բերվեցան նախընթաց գլուխներում, կարծեմ բավական պետք է համարվեն ապացուցելու համար, որ «Գաղտնիք»-ի մի զույգ հեղինակները—հայր և որդի Բեկնազարյանները— բոլորովին երևակայական անձնավորություններ են, և թե այդ գիրքը Մակար վարդապետի աշխատությունն է, որի վրա մի հին դրոշմ դնելու նպատակով, կնքել է Բեկնազարյանների անունով։

Այժմ պետք է նայել «Գաղտնիք»-ի վրա որպես Մակար վարդապետի հեղինակության վրա։

Որպես մի պատմական աշխատություն, հարկավոր է նախ որոշել, թե ի՞նչ մասներից է կազմված «Գաղտնիք»-ը։ Այդ հազիվ թե կարելի կլիներ, որովհետև գրքի մեջ բաժանմունքներ չկան։ Հեղինակը ինչ որ գտել է, ինչ որ երևակայել է, ի տեղի և անտեղի կարկատել է միմյանց հետ, առանց դասավորության և առանց կարգի։ Այսպիսով, առաջ է եկել մի բաբելական խառնաշփոթություն, այն անցքերի և շատախոսությունների մթին քաոսը, որ ընթերցողին մոլորության մեջ է դնում, թե որտեղից է սկսվում այդ գիրքը և որտեղ է վերջանում։ Այսուամենայնիվ որպեսզի հնար լինի փոքրիշատե պարզ գաղափար տալ «Գաղտնիք»-ի բովանդակության մասին, կարելի է նրան մոտավորապես այսպես բաժանել.

1. Մի պատկեր, որ ներկայացնում է Շուշի բերդի պաշարումը Աղա-Մամադ-շահից։

2. Ժամանակագրական հիշատակարան զանազան պատմական անցքերի։

3. Պաշտոնական թղթակցություններ, պայմանագրեր և այլն Ֆկսենք պատկերից։

Բայց նախ հարկավոր է ծանոթացնել մի քանի պարագաների հետ, որպեսզի հասկանալի լինեն պատկերի մանրամասները։

Շուշի բերդից երկու ժամ հեռավորության վրա գտնվում է Խնածախ բերդը։ Մակար վարդապետը այդ գյուղացի է։ Նա ջանքացել է անմահացնել յուր ծննդավայրը և նրան Ղարաբաղի մելիքների պատմության մեջ մի փայլուն դեր տալ։ Բայց, դժբախտաբար, Խնածախը թե յուր դիրքով և թե յուր սև անցյալով այն հարմարությունները չէ ունեցել, որ Մակար վարդապետի փափագներին լիակատար բավականություն տար։ Իսկ այդ բնավ չի հուսահատեցրել հայր սուրբին։ Նա գյուղի դիրքը կարողացել է ամրացնել. նրա շուրջը անմատչելի լեռներ է ստեղծել և այդ լեռները պատել է կաղնիների խիտ անտառով։ Նույն լեռների մեջ զետեղել է մի ընդարձակ այր, որ կոչվում է «Ծակ-քար» և որը վտանգի ժամանակ կարող է պատսպարել յուր մեջ մի քանի հարյուր հոգի[1]։ Գյուղը արդեն պատերազմական բոլոր հարմարությունները ստացավ, բայց ի՞նչ անել գյուղացիների անցյալի հետ։

Թե Խնածախը և թե նրա մերձակա Բալլուջա գյուղը՝ երկուսն էլ Շուշի բերդի Իբրահիմ-խանի կալվածներն են—այն Իբրահիմ-խանի, որ Ղարաբաղի մելիքությունների կործանման պատճառը դարձավ, և որը դեռ շարունակում է պատերազմել մելիքների հետ։ Եվ այդ երկու գյուղերում զետեղված են այն բոլոր փախստականները, որոնք դավաճանել են հայոց մելիքներին և անցել են նրանց թշնամի Իբրահիմ-խանի կողմը։ Հիմա ի՞նչպես անել, որ մի կողմից կարելի լինի ծածկել դավաճանության արատը, որ դրած է հիշյալ գյուղացիների վրա, իսկ մյուս կողմից՝ նրանից հայրենիքի պաշտպանության համար հերոսներ ստեղծել։

Մակար վարդապետի հնարագիտության տաղանդը այդ դեպքում ես անճար չէ մնացել, նա հորինել է մի դաշնագիր հիշյալ գյուղացիների և Իբրահիմ-խանի մեջ։ Ես կբերեմ այդ դաշնագրի հետաքրքիր հոդվածները, որովհետև դրա նման են «Գաղտնիք»-ի մեջ արձանագրած բոլոր դաշնագրերը.

> Ա. «Ջրաբերդից Խաչեն տեղափոխվող «քաջերին» տան գլուխ վճարեց Իբրահիմ-խանը երեք հարյուր թուման, իբրև նոր շինության ծախք և հնոց կարասիները նորերի մեջ փոխադրելու վարձ»։

Բ. Հոդվածը որոշում է երկու գյուղերի սահմանները, հողերի տարածությունը, որ տալիս է Իբրահիմ-խանը «քաջերին» իբրև մշտական սեփականություն որդվոց որդի։

---

[1] Այդ այրը ես տեսել եմ, նրա մեջ երեք թե չորս հոգուց ավելի մարդիկ չեն կարող պատսպարվել։

Գ. «Ոչ Իբրահիմ-խանը իրավունք ունի «քաչերից» և սրա հետագաներից պահանջել տուրք կամ գլխահարկ և կամ տասնորդ, ոչ այս խանի հետագաներն, եթե կլինեն...»։

(Ղարաբաղի տիրապետողը հույս չունի, որ ինքը հետագաներ կունենա և այդ գրում է պայմանի մեջ...)։

Դ. «Ոչ ոք իրավունք կունենա պահանջել այս «քաչերից» ոչ զորք և ոչ զորադրամ»։

Ե. «Միայն թե այդ «քաչերն» բնավ չմասնակցեն մեմելիքների պատերազմներին և զինեին ընդդեմ խանին» (եր. 117—118)։

Այդ «քաչերը» իբրև թե Ջրաբերդի Մելիք-Ադամի զինվորներն են եղել և խանը նրանց կաշառելով գաղթեցրել է Ջրաբերդից[1]։ Իսկ Ջրաբերդի իշխող Մելիք-Ադամը հաճություն է տալիս նրանց տեղափոխությանը, հավատացած լինելով, որ «քաչերը» դարձյալ յուր օգտին կծառայեն։ «Քաչերը» ևս իրենց կողմից հանձն են առնում այդ երկերեսանի դերը, մի կողմից խաբել միամիտ Իբրահիմ-խանին (շա՜տ միամիտ էր...) և վայելել նրա առատ բարիքները, իսկ մյուս կողմից, նպաստել հայոց մելիքների շահերին և այլն (եր. 118)։

Բանը շինվեցավ։

Ղարաբաղի մելիքությունները ոչնչացնող Իբրահիմ-խանը, որ գոռոզությամբ մի կողմից եղջյուր էր ածում ռուսաց զորության դեմ, մյուս կողմից՝ պարսից շահերի դեմ,— այն ասպետն տկարանում է մի քանի գյուղացիների առջև, և այն ասպետն հիմարանում է, որ Մակար վարդապետի շնորհիվ մի այսպիսի պայման է կապում «քաչերի» հետ։ Ինչ կարոտություն ուներ նա

1 Գոնե Նոր Խնածախ անունը պետք է փոքրիշատե զսպեր Մակար վարդապետի վստահությունը՝ պատմությունը այսպես համարձակ կերպով ջնջելու մեջ։ Եթե այդ գյուղը Նոր Խնածախ է, ուրեմն այն եղել է և հին Խնածախ։ Որպես ղարաբաղցի, անկարելի է, որ Մակար վարդապետին հայտնի չլիներ, որ հին Խնածախը գտնվում է Զանգեզուրի գավառում, որ և կոչվում է Քշտաղի Խնածախ, և որը Մելիք-Հայկազյանների գյուղն էր։ Այստեղից գաղթեցին Մակար վարդապետի հայրենակիցները և հիմնեցին Նոր Խնածախը, պահպանելով իրենց գյուղի նախկին անունը։ Ուրեմն, ի՞նչպես կարող էին լինել նրանք Ջրաբերդի գավառի գաղթածներ, կամ այդ գավառի տիրապետող Մելիք-Ադամի զինվորներ։ Թե Ղարաբաղում, թե Ղափանում և թե Սիսիանում շատ կան նույնանուն գյուղեր, որ զանազան պատմական հանգամանքների պատճառով մեկ գավառից գաղթել են դեպի մյուսը, նոր գյուղ են հիմնել և իրենց հին գյուղի անունով են կոչել։

մի քանի Թափառական գյուղացիների մեջ, երբ այդ ժամանակ նա ամբողջ Ղարաբաղի տերն և իշխանն էր համարվում։ Եվ երբ Ղարաբաղի նախկին տիրապետող մելիքները, չկարողանալով տանել նրա բարբարոսությունները, արդեն իրանց ժողովրդով սկսել էին գաղթել դեպի օտար երկրներ (եր. 115—116)։

Հետաքրքիրն այն է, որ տվյալ պայմանագիրը գրվում և վավերանում է միևնույն տարվա մեջ (1770 թ. մայիսի 10-ին), երբ այդ մի բուռն «fաչերը» կոտորում են Իբրահիմ-խանի զորքերը և նրան յուր կուսակից հայ մելիքների հետ փախցնում են Շուշի բերդը... (համեմատեցեք 65 և 119 երեսները)։

Վերջապես, «fաչերը» ստանում են Իբրահիմ-խանի խոստացած փողերը, հիմնում են Խնածախ և Բալլուջա գյուղերը։ Առաջինի մեջ բնակություն են հաստատում 50 ընտանիքներ, իսկ երկրորդի մեջ՝ 70 ընտանիքներ։ Ընդամենը՝ 120 ընտանիք։

Հաշվենք, թե որքան ծախսեց Իբրահիմ-խանը այդ 120 ընտանիքը գաղթեցնելու համար։

Յուրաքանչյուր ընտանիքին տվեց 300 թուման պարսից ոսկի։ Ուրեմն, 120 ընտանիք ստացավ 36.000 ոսկի։ Եթե այդ գումարը վերածենք ռուսաց ռուբլու (յուրաքանչյուր ոսկին $3\frac{1}{2}$ ռուբլի հաշվելով), կստանանք 126.000 ռուբլի։ Այդ գումարով կարելի էր այն ժամանակ (1770 թվին) ամբողջ Ղարաբաղը գնել։

Ցույց տալու համար Մակար վարդապետի թվանշանների ֆանտաստիկան շռայլությունը, ավելորդ չէր լինի մեջ բերել մի փաստ, թե որքան սուղ էր փողը այդ ժամանակներում։

Հիշյալ երկու գյուղերի հիմնվելուց 58 տարի հետո (1882 թվին), երբ համեմատաբար դրամի ավելի առատություն պետք է լիներ, ռուսաց կառավարությունը Պարսկաստանից դեպի Անդրկովկաս գաղթեցրած 8249[1] հայ ընտանիքների վրա, Ղազարոս Լազարյանի ձեռքով ծախսեց ընդամենը 14.000 ոսկի և 400 ռուբլի միայն, և այդ գումարը կոմս Պասկևիչը չափազանց էր գտնում[2]։ Ռուսաց կառավարության այդ ժամանակվա դրամական միջոցները հայտնի էին։ Միայն 20 միլիոն կռան պատերազմական տու-

---

1 Մակար վարդապետը Պարսկաստանից տեղափոխված հայ գաղթականների թիվը դնում է 26.000 գերդաստան (եր. 382)։ Դարձյալ փավստոսյան չափազանցություն...

2 Տե՛ս Ղազարոս Լազարյանի 1829 ամի 24 դեկտեմբերի զեկուցումը, որ մատուցած է կոմս Պասկևիչին, «Նկարագիր գաղթականության հայոց Պարսկաստանե ի Ռուսաստան», եր. 94։ Տպված է Մոսկվայում, 1832 ամի։

գանք դրեց Պարսկաստանի վրա, երբ տեղափոխում էր այդ գաղթականները։ Եվ այդ գումարի մի մասը արդեն ստացել էր։ Ընդհանուր առմամբ 14.000 ոսկին շատ էր գտնում 8249 ընտանիքի տեղափոխության համար, այն էլ Պարսկաստանից Անդրկովկաս։ Որքա՜ն հեռավորություն։ Իսկ Իբրահիմ-խանը յուր բոլոր չքավորությամբ, Ջրաբերդից մինչև Խաչեն (մի օրվա ճանապարհ) 120 ընտանիք գաղթեցնելու համար ծախսում է 36.000 պարսկական ոսկի,— 126.000 ռուբլի․․ Ստախոսությունը, եթե փոքր-ինչ չափավոր լիներ, այդքան զզվելի չէր լինի։

Երբ Իբրահիմ-խանը մտավ ռուսաց հպատակության ներքո, Քուրակ-չայի դաշնագրից հետո, իշ. Ցիցիանովի հետ (1805 թիվ), նա խոստացավ ամբողջ Ղարաբաղից իբրև հարկ վճարել ռուսներին 8000 ոսկի միայն։ Վերջը այդ գումարը վճարել չկարողացավ, խոստացավ ձիաներ տալ, այն էլ տալ չկարողացավ։ Իսկ 1770 թվին որտեղի՞ց ուներ Իբրահիմ-խանը այնքան ոսկիներ, որ տար Մակար վարդապետի հայրենակիցներին և ինչո՞ւ համար...

Թե այսպես, թե այնպես Խնածախը հիմնվում է։ Այդ գյուղը որպես վերևում հիշեցի, թե Մակար վարդապետի և թե «Գաղտնիքի» հեղինակ հայր և որդի Բեկնազարյանների ծննդավայրն է։

Խնածախի հիմնվելուց 25 տարի հետո (1795 թիվ) Աղա-Մամադ-շահը պաշարում է Շուշի բերդը, որը հիշյալ գյուղից 2 ժամվա հեռավորության վրա է։ Այդ միջոցին դուրս են գալիս մի խումբ խնածախցի «ճաչեր» և հրաշքներ են գործում։ Հետաքրքիր են այդ «ճաչերի» անունները։ Այդ պատճառով ես ավելորդ չեմ համարում անունները մի առ մի հիշել, որովհետև հենց անունների մեջ է նրանց քաջության նշանաբանը։

1. Խումբի գլխավորը, նույն ինքը «Գաղտնիք»-ի հեղինակ Աբրահամ Բեկնազարյանն է։ Նա կոչվում է Ազրայել-Իբրահիմ[1], հետո յուր անհամեմատ քաջագործությունների համար կոչվեցավ

---

[1] Բոլոր անունների և մականունների մեջ Մակար վարդապետը միայն 19 անուն է բացատրում, բայց ես չհետևեցի նրա բացատրություններին, որովհետև ինքն էլ չգիտե յուր հնարած մականունների իսկական նշանակությունը։

Ես բոլոր անունների ուղղագրությունը թողեցի նույն ձևով, որպես գրել է Մակար վարդապետը։ Հայր սուրբը Տաճկաստանում ստացած լինելով յուր կրթությունը և երկար ժամանակ այնտեղ մնալով, գործ է ածում Տաճկաստանի հայերի ուղղագրությունը բ-ի տեղ պ, դ-ի տեղ տ, ջ-ի տեղ ճ, են։ Դա արդեն պարզ նշան է, որ «Գաղտնիք»-ը գրել է Մակար վարդապետը և ոչ Բեկնազարյանները, որոնք հարկավ տաճկահայոց սխալ հնչյուններին կամ ուղղագրությանը չէին հետևի։

*հրաշագործ Աղրայել (եր. 162)։ Աղրայել կոչվում է արաբացոց հոգեառ հրեշտակը։ Դա անգութ, կտրող ու ոչնչացնող մի ուժ է։ Գոնե յուր անվան վերաբերությամբ պետք էր, որ «Գաղտնիք»-ի հեղինակը փոքր-ինչ համեստ լիներ։*

2. **«Գյուլ-Ուհան»**, *նշանակում է Գայլ Օհան։ Դա այն հատկությունները ունի, որ աչքերը գայլի նման գիշերվա մութի մեջ տեսնում են, գայլի նման ոռնում է և յուր ընկերներին զանազան ազդարարություններ է անում, իսկ կռիվների միջոցին գայլի նման լափում է թշնամուն (եր. 63)։*

3. **Ասլան-Մանուչար**, *նշանակում է Առյուծ-Մանուչար։ «Սա ունի առյուծի հատուկ վեհանձնություն, աներկյուղ սիրտ, լայնալանջ կուրծք, աննահանջելի հարձակումն, անդիմադրելի ուժգնություն, չափազանց ուժ» և այլն (եր. 66, 67)։*

4. **«Շիր-Նասիր»**, *նշանակում է առյուծ-Նասիր։*

5. **«Պեպյուռ-Մախմուր»**, *«բաբր»—պարսկերեն նշանակում է վագր, իսկ Մախմուր անուն է։*

*Ուշադրություն դարձրեք երկուսից մինչև 5-րդ մականունների վրա,— գայլ, առյուծ և վագր—գազաններից առնված են ամենակատաղիները։*

6. **«Օշափ-Բաղդասար»**, *նշանակում է վիշապ Բաղդասար։ Վիշապների նման նա սարսափ է ձգում թշնամիների վրա և վիշապների նման կլանում է նրանց բազմությունը (եր. 66)։*

7. **«Աժդահա-Անտրի»**, *նշանակում է Աժդահակ կամ Վիշապ-Անդրեաս։ «Այս բարձրահասակ, հաղթանդամ, ուժեղ և արիասիրտ տղամարդը» վիշապի կլանող հատկությունները ունի, թշնամու ամբողջ գունդերը վիշապի նման անհետացնում է (եր. 67)։*

8. **«Շահմար-Ղաւալ»**: *Շահմար նշանակում է օձերի թագավոր. հեքիաթների մեջ այդ հրեշը յուր հայացքով անգամ թունավորել կարող է։ Իսկ «ղաւալ» անուն է, թեև թմբուկ բառի նշանակությունն ևս ունի (եր. 70)։*

*Ուշադրություն դարձրեք 6-ից մինչև 8-րդ նույնանշան երեք մականունների վրա, որոնք հսկա օձեր կամ օձերի թագավորներ են ներկայացնում։*

9. **«Փիլ-Առուշան»**, *նշանակում է փիղ-Ռովշան։— Ռովշան պարսկական անուն է։ «Փիղ» մականունը ստացել է այդ հսկան յուր փղային ուժի պատճառով (եր. 70)։*

10. **«Նեառ-Եղիազար»**:—*«Նառ» պարսկերեն արու է նշանակում։ «Նառ» կոչվում են և արու ուղտերը, իսկ ժողովրդի հասկա-*

ցողությամբ այդ բառը չափազանց ուժեղության նշանակություն ունի։

Ուշադրություն դարձրեք 9-ից մինչև 10-րդ մականունների վրա, խոտաճարակներից ընտրված են ամենահզորագույնները,— փիղը և ուղտը, միայն գոմեշը մոռացված է...

11. «Կեծակ-Վանի», նշանակում է Կայծակ Հովհաննես։ Դա կայծակի նման շանթահարում է թշնամու գունդերը և յուր ծանր թրի մի հարվածով թշնամիների գլուխները երկու հավասար մասերի է բաժանում, ոչ ավել, ոչ պակաս (եր. 63)։

12. «Կարկաուտ-Սմաեն» նշանակում է Կարկուտ-Սիմոն։ Դա այն աստիճանի արագաշարժ է, որ յուր հրացանի գնդակները կարկուտի նման թափում է թշնամու վրա (եր. 67)։

Ուշադրություն դարձրեք 11 և 12-րդ մականունների վրա, երկընքի երկու պատուհաններն էլ բաց չեն թողնված—կայծակը և կարկուտը։

13. «Տեռվ-Գեասպար», նշանակում է Դև Կասպար։ Դևերը թե պարսից և թե հայոց առասպելների մեջ վիթխարի հսկաներ կամ քաջեր են։ «Գաղտնիք»-ի «Տեռվ-Գասպարը» ունի հաղթանդամ կազմվածք, սամսոնական ուժ, առյուծական սիրտ, պողպատյա բազուկներ, ևն (եր. 64)։

14. «Նեառոատէռվ-Աթա», նշանակում է Հայր-Նեառադև։ Դա հեքիաթների մեջ պատմած դևերի կամ հրեշների յոթնագլխյան թագավորն է։ Իսկական անունը Սահակ է։ «Սա ունի պարթևական հասակ, արտաքո կարգի ուժ, աներկյուղ սիրտ» և այլն (եր. 68)։ Դա հետո կոչվեցավ «Քաչաճաղթ-Տրդատ» (եր. 278)։

15. «Ազճավուր-Ուճան». «Ազնավուր» պարսից այքաժար բառի աղավաղվածը պետք է լինի, որ նշանակում է հրեշավոր, այլանդակ, ճիվաղ։ Իսկ «Ուհան» Հովհաննես անունն է։ Այդ անունը ստանում է նա Երասխ գետի ափերի մոտ կատարած զարմանալի հաղթությունների պատճառով (եր. 65, 66)։

Ուշադրություն դարձրեք 13-ից մինչև 15-րդ մականունների վրա, բոլոր նշանավոր առասպելաբանական հրեշները չեն մոռացված։

16. «Քյալլակեոզ-Առստամ», «Քալլագոզ» նշանակում է գագաթի վրա մի հատիկ աչք ունեցող։ Դա Թուրքերի առասպելների մեջ համապատասխանում է Հոմերոսի Պոլյուփեմեոս անուն կիկլոպին, որ ճակատի վրա մի հատիկ աչք ուներ և կերակրվում էր

մարդկային մսով։ Իսկ Առստամ Ֆրիդովսու Ռոստամ հերոսի աղավաղված անունն է։

17. «Փենչուան-Սագի», նշանակում է հսկա Սարգիս։ Ուշադրություն դարձրեք 16-ից մինչև 17-րդ մականունների վրա, հըսկաների և ճիվաղների անուններն էս բաց չեն թողնված։

18. «Քյարվանղռան-Բրուտ», քարվանղռան, նշանակում է քարավան կոտորող, ավազակ, հուղկահար։ Դա արհեստով բրուտ է, իսկական անունը Թյունի (Հարություն) է։ «Սա ունի պարթևական հասակ, տրդատյան ուժ և ահարկու տեսք»։ Մի անգամ բոլորովին միայնակ կոտորեց նա Իբրահիմ-խանի 150 զինյալ թուրքերին, որ քարավանի պատրվակով ուղարկել էր խանը նրան սպանելու։ Եվ երևակայեցեք Բրուտը առանց զենքի կատարեց այդ մեծ կոտորածը, որովհետև այդ միջոցին գնացել էր նա Կուր գետից ձուկ որսալու (եր. 64)։

19. «Թուլի-Արզուման»,—«թուլի» նշ. ավազակ, հուղկահար, ասպատակող։

20. «Բասար-կեչեր-Գյափի»—«Բասար-գեչար» թուրքերեն նշանակում է կոխ տվող և անցնող,— իսկ Գյափի՝ կրճատված Գաբրիել անունն է։

21. «Չափար-Սարասար» նշանակում է կկոտորե գլխից ցըղլուխ, այսինքն՝ ծայրեիծայր։ Դա թշնամու որ կողմի վրա և հարձակվում է ծայրիծայր կոտորում է։ Իսկ թշնամու հարձակումները սանձահարելու պատճառով կոչվում է նաև «Ջլով», որ նշանակում է սանձ (եր. 6, 65)։

Ուշադրություն դարձրեք 18-ից մինչև 20-րդ մականունների վրա, բոլորը նույն իմաստն ունեցող ավազակների ու ասպատակների անուններ են։

22. «Քյանդխուտա-Խաչատուր», նշանակում է տանուտեր Խաչատուր։

23. «Ջարպազան. Յուղուրլու», նշանակում է Բախտավորթնդանոթ։ Դա թնդանոթի նման ամբակոծում է թշնամու գունդերը, յուր ամբողջ կյանքում միշտ հաղթել է և երբեք չի հաղթվել. այդ պատճառով և վայելում էր և «Քաջահաղթ» մականունը (եր. 67, 68)։

24. «Սենկիար-Ասրի», նշանակում է Պատնեշ-Իսրայել։ Ինչպես պատնեշը պատերազմի ժամանակ մի զորավոր թումբ կամ ամբարտակ է թշնամու առջև, նույնպես է և այդ Իսրայելը։

*Ուշադրություն դարձրեք 23 և 24-րդ մականունների վրա,— մեկը թնդանոթ է, մյուսը պատնեշ այդ թնդանոթի դեմ...*

25. «Ուզուն-ղլինջ-սայի», *Ուզուն ղլիճ թուրքերեն նշանակում է երկայնասուր, այսինքն՝ երկար սուր կրող։ Իսկ սայի աղավաղված Սայի անունն է։*

26. «Պատման-ղլինջ-Մարտի», *«Բաթման» թուրքերեն մի ծանրություն է, որ կարծես հավասար պետք է լինի ռուսաց ½ պուդին։ Իսկ Բաթման-ղլիճ նշանակում է մի բաթմանի ծանրությամբ սուր կրող։ «Մարտի» կրճատված Մարտիրոս անունն է։*

27. «Պատման-թոփուզ-Թեոս», *նշանակում է մի բաթմանի ծանրությամբ լախտ կրող Թադեոս։*

28. «Թոփուզ-աշղ-Ղարա». *«Թոփուզ» նշանակում է գլխին գնդաձև գլխարկ ունեցող լախտ, որ հին ժամանակներում գործ էին ածում որպես զենք, իսկ «աշղ-ղարա», նշան. սև աշուղ։ Դա մի երգիչ էր, որ յուր նվագարանը ցած էր դրել, վեր է առել զենքեր, սկսել է հայրենիքը պաշտպանել (եր. 69)։*

*Ուշադրություն դարձրեք 25-ից մինչև 28-րդ մականունների վրա, որոնք արտահայտում են զենքերի և զինակիրների տարօրինակ վիթխարիությունը։*

29. «Անճաղբ-Ղազար», *հասկանալի է։*

30. «Անգութ-Խաչի», *հասկանալի է, Խաչի Խաչատուր անվան կրճատվածն է։*

31. «Քաշալ-Մոսի», *նշ. քասոտ Մովսես։*

*Երբ որ քաշալ կա, անպատճառ քոսակն էլ պետք է լինի...*

32. «Քոսակ-Գյուգի», *նշ. քոսակ Գրիգոր։ Թե քաշալները և թե քոսակները ժողովրդի հասկացողությամբ խորամանկ, հնարագետ, նենգավոր և ճարպիկ են լինում։*

33. Գիժ-Միքի», *նշ. գիժ Միքայել։ Պատերազմող անձանց վերաբերությամբ «գիժ» մականունը ունի վայրագության նշանակություն, ինչպես մեր Հայկ դյուցազունի հետ պատերազմող տիտաններին «խոլ»՝ այսինքն՝ խենթ անունն է տալիս պատմությունը։*

34. «Դելի-Մահրասա», *նշ. գիժ-վարդապետ։ Բայց «դալի» բառը հեքիաթների մեջ տարապայման քաջի նշանակություն ևս ունի։ «Դալի»-ներ կոչվում էին Քորօղլու թիկնապահներն ևս։*

35. «Դելի-Բեշիշ», *նշ. գիժ-քահանա։*

36. «Պեյ-Ճամալ», *պել բառը հայ ռամկի լեզվում նույն միտքըն ունի, որպես «դալի» բառը թուրքերի մեջ, նշանակում է գիժ,*

խոլ, վայրագ, տարապայման քաջ։ Արդյոք այդ «Պելը» սեմեական բերի առասպելական Բելը կամ Նըրովթը չէ, որ մնացել է մեր ժողովրդի մեջ։— Ճամալ՝ ավելի ճիշտ Ջամալ թուրքաց անուն է, որ գործ են ածում հայերը։ Բայց այդ Պել-Ճամալը մի զարմանալի տիպ է «Գաղտնիք»-ի մեջ։ Մակար վարդապետը տվել է նրան մի երկրորդ անուն ևս—«Արագահաս-Սուրբ-Սարգիս» (եր. 278)։

Ուշադրություն դարձրեք 33-ից մինչև 36-րդ մականունների վրա, բոլորը գժեր ու խենթեր են... ոչ մի խելացի չկա այդ չորս անունների մեջ...

37. «Տեռնմազ-Բելլու», նշանակում է մեջքը կամ թիկունքը ետ չդարձնող։ Այսպես կոչվում է նա այն պատճառով, որ երբեք առանց հաղթության ետ չէ դառնում կռվի դաշտից (եր. 68)։

38. «Պարխամազ-Օսեփ», նշանակում է բաց չթողնող Հովսեփ։ Այդ անունը ստացել է նա, որովհետև մի անգամ յուր ձեռքը ընկած թշնամուն բաց չի թողնի, կոչնչացնե և առավելապես սիրում է կոտորել թշնամու զորապետներին (եր. 69)։

39. «Պողպատ», իբրև մարդու անուն, նշանակում է պողպատյա կամ երկաթյա կազմվածք ունեցող, զենքերից անխոցելի։

40. «Քյարփեթյուն-Տետե»,—«քալփաթին», նշ. է աքցան կամ ունելի,— հյուսների կամ դարբինների այն գործիքը, որով մեխ են դուրս քաշում կամ շիկացած երկաթ են բռնում։ «Տետե» ինձ հայտնի չէ, թե որ անվան կրճատվածն է։

41. «Պոխմախ-Սափարի»— «թոխմախ» կոչվում է այն գործիքը, որով պարսիկները ջարդում են հանցավորների գլուխները. դա ահագին երկաթյա մուրճ է, դարբինների մուրճի կամ կռանի նման։

42. «Զնդան-Ավքանդիլ»— «զնդան» կամ ավելի ուղիղ «սընդան», կոչվում է դարբինների սալը, որի վրա երկաթ են կռում։ Իսկ ժողովրդի լեզվում փոխաբերական իմաստով ամրություն է նշանակում։

Ուշադրություն դարձրեք 40-ից մինչև 42-րդ մականունների վրա, որ ներկայացնում են դարբինների երեք անբաժան գործիքները, միայն փուքսը մոռացված է։

43. «Կաբե-Զաքի», նշ. Կաքավ Զաքարիա։ Դա սուրհանդակի կամ փայակի պաշտոն է կատարում, այսպես կոչվում է յուր շափազանց արագընթացության պատճառով։

44. «Ղարա-խան-Յուզբաշի», նշ. Սև խան հարյուրապետ։

45. «Ալբեթյուն-Բատի», ճիշտ ուղղագրությամբ «Ալբեթյուն»

չէ, այլ «Աֆլաթուն» է։ Դա արաբացոց Պլատոնն է, մի հռչակավոր բժիշկ և փիլիսոփա։ Բայց արևելյան ազգերի մեջ, նույնպես և հայոց մեջ փոխաբերական իմաստով «աֆլաթուն» բառը հնարագետ, ամեն բանի ճարն ու դարմանը գտնող մարդու նշանակություն ունի։ «Բատի» Բաղդասար անվան կրճատվածն է։

Այդ բոլոր այլանդակ մականունների մեջ միայն սատանան էր պակաս, այն էլ չէ մոռացել Մակար վարդապետը,—ահա՛ և սատանան։

46. «Շեյթան-Թյունի», նշ. սատանա Հարություն։ Դա ուրիշ անուններ էլ ունի. «այր Աստուծոյ», «Ամբակում մարգարե» ևն։ Շեյթան-Թյունին «Գաղտնիք»-ի նույն տիպն է, ինչ որ քավոր Պետրոսը «Խաչագողի հիշատակարանի» մեջ, ամեն ձև ու կերպարանք ընդունում է, ամեն լեզուներով խոսում է, ամեն տեղ մըտնում է, առանց ճանաչված լինելու։ Դա մի քամելոն է, որ ամեն րոպե մի նոր տեսք է ստանում։

Մակար վարդապետի վառ երևակայությունը միայն կարող էր այսպես հրեշավոր մականուններ ստեղծել։ «Գաղտնիք»-ը լի է այս տեսակ մականուններով։ Օրինակ, «Քորօղլի-քեշիշ» (քորօղլի-քահանա), որ հետո կոչվեցավ «Վարդան Մամիկոնյան» (եր. 278), «Քաչալ Սագի», «Քեռհլան-Սագի» (եր. 103), որ նշանակում է սիգապանծ Նժույգ Սարգիս, «Տոյտաղ-Քյասի» (եր. 104), որ նշանակում է վայրենի սագ-Կասպար, «Ճեյրան Ծատուր» (եր. 118), որ նշանակում է եղջերու Աստվածատուր։

Հոգևորականներն անգամ առանց այս տեսակ մականունների չեն, օրինակ, «Արծիվ-Թադեոս-եպիսկոպոս» (եր. 56), «Ալբեթյուն վարդապետ» (եր. 56), «Ասլան-Մահրասա-Մեսրոպ վարդապետ» (եր. 57), «Օղլան-քեշիշ» (եր. 133), այսինքն՝ տղամարդ քահանա, «Քորօղլի-քեշիշ» և այլն, և այլն։ Եթե ժամանակ ունենայի «Գաղտնիք»-ի բոլոր ծալքերը քրքրելու, գուցե հարյուրներով կգտնեի այս տեսակ անուններ, բայց ինչ որ գտա, դասավորեցի և նկատողություններով մատնանիշ արեցի այս անբնական արհեստականության վրա, որով կազմված են այդ անունները, և որոնք պարզ ցույց են տալիս իրանց պատմական անգոյությունը։

Մի խոսքով, բացի այդ անուններից, որ Մակար վարդապետը առել է «Խամսայի մելիքություններից», մնացյալ համարյա բոլոր անունները այս տեսակ ուռած-փքված մականուններով կեղծյալ անուններն են, որոնք ամենևին պատմական գոյություն չեն ունեցել։

*Հետաքրքիր են այդ զանազան «կայծակների», «կարկուտնե-րի», «փիշապների» և «դևերի» զորախմբերի անունները.*

*«Աղրայելի» («Գաղտնիք»-ի հեղինակ Աբրահամ Բեկնազար-յանի) զորախումբը կոչվում է* «Արագահաս Սուրբ Սարգիս»[1]:

*«Քորօղլի-քեշիշի» (Քորօղլի-տերտերի) զորախումբը կոչվում է «Հրեղեն Թուր»։*

*«Խուդադատ-բեկը» կոչվում է «Սուրբ-Գևորգ»[2], իսկ յուր զո-րախումբը կոչվում է* «Ջուր–Տո–Քշի», *որ նշ. է սաստիկ հորդած հեղեղ, որ ամեն ինչ քշում տանում է։*

*«Վանի-Յուզբաշին» կոչվում է «Հայկ Դյուցազն», իսկ յուր զորախումբն կոչվում է* «Զարապատիժ–Դժոխք»:

*«Նեառատէօվի» զորախումբը կոչվում է* «Հրեղեն Կեծակ»:

*Մակար վարդապետը այն աստիճան հափշտակված է եղել այդ անուններով, որ միևնույն երեսի վրա (եր. 278) «Քորօղլու» անու-նը երկու անգամ է կրկնում, և ամեն անգամին նրա զորախմբին զանազան անուններ է տալիս. նախ «Հրեղեն-Թուր», իսկ երկու տողից հետո՝ «Ծեփի-Անցկաց», որ նշ. զարկիր անցիր։*

*Մակար վարդապետը միայն մոռացել է այդ զորախմբի դրո-շակները նկարագրել։ Իհարկե նրանք էլ զանազան հրեշների և ճիվաղների նշաններով կլինեն զարդարված։*

*Ղարաբաղի մելիքները երբեք կանոնավոր զորք չեն ունեցել, որ նրանց զորքերը զանազան գունդերի բաժանված լինեին, և այդ գունդերը զանազան անուններ ունենային։ Նրանց ժամանակում*

---

*[1] (2) Թե սուրբ Սարգիսը և թե սուրբ Գևորգը ժողովրդի ավանդությունների մեջ, ամեն վտանգի ժամանակ, նեղյալներին օգնության են հասնում, այդ պատճառով սուրբ Սարգիսը կրում է «Արագահաս» մականունը, իսկ սուրբ Գևորգը «զորավոր»։*

*[2] Երբ «Գաղտնիք»-ի մեջ մտնում են իսկապես պատմական անձնավորություններ, որոնց ժառանգներն ներկայումս էլ գոյություն ունեն, և մանավանդ, երբ այդ ժառանգները որևէ նշանակություն ունեցող մարդիկ են,— այդ դեպքում հեղինակի շողոքորթությունները ոչ չափ ունեն և ոչ սահման։ Վանի յուզբաշին, որ հետո եղավ Մելիք-Վանի, պատմական անձնավորություն է։ Նրա մասին խոսվել է «Խամսայի մելիքությունների» մեջ (եր. 285—299)։ Նրա մասին խոսում էր Դուբրովինը (*«Ист. войн. и влад. рус. на Кавказе.», т. IV, ст. *451, 452)։ Մելիք-Վանիի թոռները այժմյան Աթաբեկյաններն են, որոնց ամեն օր տեսնում ենք։ Հարցրեք նրանցից որին որ կամենում եք, թե ձեր պապը որևիցե ժամանակ կոչվե՞լ է «Հայկ Դյուցազն» կամ նա ունեցե՞լ է մի հզոր կազմակերպված զորախումբ, որ կոչվում էր* «Զարապատիժ–դժոխք»: *Ես հավատացած եմ, որ ամեն մի Աթաբեկյան խիստ կուշտ ծիծաղելուց հետո, կասե ձեզ. «Այդ ո՞վ է հնարել, մեր պապը երբեք այս տեսակ բաներ չէ ունեցել...»։*

ամեն մի ղարաբաղցի զինվոր էր։ Երբ թշնամին մոտենում էր, մելիքը բարձրանում էր յուր տան կտուրի վրա, ձայն էր տալիս և նույն րոպեում յուրաքանչյուր գյուղացի առնում էր զենքերը, նըստում էր ձին և հետևում էր մելիքին։

Ճշմարիտ է, ժողովուրդը յուր հասկացողության համեմատ, յուր հերոսներին մականուններ է տալիս։ Բայց այն տեսակ հերոսներ, որ իրանց գործողություններով սաստիկ ազդում են ժողովրդի երևակայության վրա, պաշտելի են դառնում և ժողովըրդից մականուններ են ստանում,— այս տեսակները դարերի ընթացքում հայտնվում են մի կամ երկու հատ միայն։ Հայոց ամբողջ պատմության մեջ Հայկ-Դյուցազն, Վահագն Վիշապաքաղ, Տորք-Անգեղ, Հովհան-Քոչ, Գայլ-Վահան, Աշոտ-Երկաթ, Աշոտ-Մսակեր, Գող-Վասիլ, Առյուծ-Խաչիկ, դրանք այնպիսի հերոսներ են, որոնց նմանները ուրիշ դարեր չեն ծնել։ Դրանց անվան հետ ժողովուրդը կապել է յուր զգացմունքը, յուր երգերը և յուր առասպելաքանական էպոսը։

Բայց «Գաղտնիք»-ի մեջ հանկարծ և միաժամանակ բուսնում են 60—70 հերոսներ, որոնցից և ոչ մեկը առանց մականունի չէ։ Դա պատմական խակություն չէ, դա մի անբնական վիժմունք է, միայն Մակար վարդապետի գլխից։ Որովհետև մարդկային պատմությունն ունի յուր անխախտ օրենքները, յուր հղիությունը և յուր ծնունդը։

Զարմանալին այն է, որ հիշյալ 60—70 հերոսներից, ամբողջ 50-ը Մակար վարդապետի գյուղացիներն են Խնածախից,—մի գյուղից, որը ընդամենը 50 ընտանիքից է բաղկացած։ Յուրաքանչյուր ընտանիք ծնել է մի-մի «Կայծակ» և մի-մի «Կարկուտ», մի-մի «Վիշապ» և այլն։ Եվ դրանք հասարակ մարդիկ չեն, այլ ամենքը Ղարաբաղի մելիքների մոտ «հարյուրապետի», «հազարապետի», «զորավարի» պաշտոն են վարում։ Կարծես ամբողջ Խնածախը մի զինվորական դասակարգ լիներ, և զորապետությունը միայն այդ գյուղացիների արտոնական ժառանգությունը լիներ։ Որտե՞ղ կորան նրանց սերունդները։ Եթե զորապետներ էին, հարկավ և՛ ազնվականներ էին, և՛ կալվածատերներ էին։ Բայց ամբողջ Խնածախը ոչ մի ազնվական չունի, ոչ մի կալվածատեր չունի։ Ամենքը Իբրահիմ-խանի հասարակ գյուղացիներն են և նրանց հողերն են մշակում։

Ինձ հայտնի են փաստեր, որ շատերը այնքան ճարպիկ, այնքան նախանձախնդիր են գտնվել ազնվականություն ժառանգելու,

որ բոլորովին գռեհիկ գյուղացիներ, անհայտ ծագումից, ձեռք բերելով մի որևէ վկայական, իրենց տոհմը կապել են այս և այն մելիքի կամ բեկի տոհմի հետ, կրելով նրանց ազգանունները։ Եթե Խնածախի ամբողջ 50 ազնվատոհմ ընտանիքների սերունդները բոլորովին ջնջվեին (որ անկարելի բան է), դարձյալ կգըտնըվեին մարդիկ, որ իրենց ժառանգ կհայտնեին, և նրանց տոհմանունները կպահպանեին։ Բայց հիշյալ 50 ազնվական հերոսների և ոչ մեկի ժառանգներն են մնացել թե Խնածախում և թե մի այլ ուրեք։ Իսկ ժամանակները դեռևս այնքան չեն անցել, որ կարող լինեին իսպառ կլանել և անհայտացնել նրանց։ Եվ վերջապես, ի՞նչ եղան այդ «Վիշապների» և «Վիշապազունների» կալվածքները։ Ղարաբաղի մելիքներից և նրանց մոտ ծառայող «Յուզբաշիներից»[1] չկար մեկը, որ գյուղեր, անտառներ, ընդարձակ կալվածներ չունենար։ Եվ այսօր նրանց սերունդներից շատերը վայելում են հայրական ժառանգությունը։ Իսկ Մակար վարդապետի ստեղծած 60—70 հերոսները, որոնք ամենքը զորապետներ և զորավարներ էին, մնում են առանց որևէ ժառանգության[2]։

Մելիքների տիրապետության դարերում, այնքան պատերազմական փայլուն գործողությունների մեջ, անկարելի էր, որ Ղարաբաղը նույնպես չունենար յուր հերոսները, որոնց սիրեր ժողովուրդը, որոնց յուր հատուկ տիտղոսը տար ժողովուրդը։ Դրանց թիվը շատ չէ, երեք հոգի է միայն—Դալի-Մահրասանը, Թյուլի-Արզումանը և Ջալաղան-Յուզբաշին։ Առաջին երկուսի անունները Մակար վարդապետը առել է «Խամսայի մելիքություններից» և մտցրել է յուր յոթանասնից անունների մեջ, իսկ վերջինը չի հիշվում։

Ժողովրդական հերոսները ժողովրդի ավանդությունների մեջ,

---

1 Ղարաբաղի մելիքները միայն մեկ զինվորական աստիճան են ունեցել և այդ «յուզբաշի» (հարյուրապետ) աստիճանն է, թեև «յուզբաշին» կարող էր հարյուրից ավելի պատերազմողներ ունենալ յուր ձեռքի տակ։ Բայց Մակար վարդապետը ստեղծել է «հազարապետներ» և այլ զանազան աստիճաններ։

2 Մակար վարդապետը յուր ծանոթությունների մեջ (եր. 63, 64, 65, 68) անդադար կրկնում է հինգ հասարակ անուններ՝ Բեկլուենց, Եւրուզլուենց, Ջլաենց, Աթոնց, Գյուլ-Օհան,— և խիստ միամիտ կերպով ավելացնում է. «Այս մականուններից շատերն ցարդ մնացած են Խնածախում... իսկ ոմանք չեն հիշում, քանզի ժամանակի երկարությունը (ընդամենը 50—60 տարի) ջնջած է հասարակության միջից»։ Հայր սուրբը չգիտեր, որ իր ստեղծած հսկա անձնավորություններն շատ խոշոր հիշատակություններ պետք է թողած լինեին՝ իրենց պատմական գոյությունը ապացուցանելու համար։

ոչ թե մեռնում են, այլ դարերի ընթացքում հետզհետե աճում են, մեծանում են, և մինչև անգամ, ինչ որ նրանց ժամանակներում և նրանց ձեռքով չէ կատարված,— ժողովուրդը հատկացնում է նրանց։ Օրինակ, վեր առնենք Քորօղլին։ Սկսյալ Թիֆլիսից մինչև Երևան և Երևանից մինչև Հին-Բայազետ և այստեղից մինչև Կարին, ո՛ր լեռան գագաթին մի ավերակ կտեսնեք, ձեզ կասեն «դա Քորօղլու բերդն է», թեև նրանցից և ոչ մեկը Քորօղլու բերդը չի եղել։ Վրաստանում ամեն մի ավերակ հատկացնում են Թամար թագուհուն։ Շուշի բերդի ստորոտում, քարաժայռի մեջ, կա մի ընդարձակ այր՝ զանազան ամրություններով, իսկ նրա հանդեպ, նույնպես քարաժայռի ճակատին, կա մի երկրորդ այր, դարձյալ ամրացած պարիսպներով և բուրգերով։ Առաջինը հատկացնում են Սյունյաց հերոս Դավիթ-Բեկին, իսկ երկրորդը՝ Գուգարաց հերոս Ավան-Յուզբաշուն, թեև երկուսն էլ այս կողմերում ամրոցներ չեն ունեցել։

Ժողովուրդը յուր հերոսներին ավելի է տալիս, քան թե նրանք ունեցել են։ Իսկ ինչ որ իսկապես ունեցել են,— այն պահում է յուր հիշողության մեջ անմոռաց։

Ես, իհարկե, չեմ խոսում Ղարաբաղի մելիքների մասին, որոնց բերդերը, ամրոցները և պալատների ավերակները մինչև այսօր մնում են։ Իմ խոսքը ժողովրդական հերոսների մասին է։ Ղարաբաղի պատմության մեջ որպես վերևում հիշեցի, միայն երեք անձնավորություններ կան, որոնց անունների հետ կապված են ժողովրդի ամենասրտագին ավանդությունները։ Դրանք են Դալի-Մահրասան[1], Թյուլի-Արզումանը[2] և Չալաղան-Յուզբաշին[3]։ Ես տեսել եմ այն աշտարակը Եղիշա Առաքելո վանքի մոտ, որի մեջ

1 Դալի-Մահրասա նշանակում է խենթ վարդապետ, դա Եղիշե Առաքյալի վանքի վանահայրն էր, որը գտնվում էր Թարթառ գետի ձախ կողմում։ Նրա իսկական անունը Ավագ վարդապետ էր։ Մելիքների ժամանակ յուր զարմանալի քաջագործություններով՝ այդ հարուստ վարդապետը անմոռաց անուն թողեց։ Տե՛ս «Խամսայի մելիքությունները», եր. 80—91, 135, 155, 157, 201, 202, 230, 348։

2 Թյուլի-Արզուման, նշանակում է Ավազակ Արզուման։ Դա Ջրաբերդի Մելիք-Ադամի և նրա որդի Մելիք-Մեջլումի քաջերից մեկն էր, որին հանձնում էին ամենահանդուգն և ամենավտանգավոր ձեռնարկություններ։ «Խամ. մելիքություններ», եր. 83—91, 134—198։

3 Չալաղան-Յուզբաշի. նշ. հափշտակող կամ ասպատակող հարյուրապետ։ Այդ անունը ստացավ նա մեծամեծ հարվածների և ավարառությունների պատճառով, որ կատարեց Ղարաբաղի թշնամիների վերաբերությամբ։ «Խամսայի մելիքություններ», եր. 83, 86, 348։

բնակվում էր Դալի-Մահրասան և որի բարձրությունից սարսափ էր տարածում Ղարաբաղի թշնամիների վրա։ Ես տեսել եմ Թյուլի-Արզումանի ամրոցը՝ Երից-Մանկաց վանքի հանդեպ, Թըրղի գետի ափի մոտ, այն սոսկալի մթին խոռոմների մեջ, ուր և այժմ նայողը զարհուրում է։ Ես տեսել եմ նույնպես Ջալաղան-Յուզբաշու ամրոցի ավերակները Թարթարի վրա, այն անտառապատ թավուտների մեջ, ուր բույն էր դրել այն հափշտակող գիշակերը[1]։ Ամեն մի գյուղացի մատով ցույց է տալիս այդ տեղերը և նրանց մասին պատմում է շատ և շատ զարմանալի բաներ... Իսկ այդ անմոռանալի անձնավորությունները «Գաղտնիք»-ի մեջ շատ աննշան դեր են կատարում։ Որի ընդհակառակն, Մակար վարդապետի հսկաները հրաշքներ են գործում, բայց ոչ մի շոշափելի հիշատակ չեն թողնում...

Մակար վարդապետը ամբողջ Ղարաբաղում կարող էր ցույց տալ մի բերդ, մի ամրոց, և վերջապես մի ավերակ շենք, որոնց հիշատակը կապված լիներ յուր հերոսների անունների հետ։ Նրա Ազրայելը («Գաղտնիք»-ի հեղինակ Աբրահամ Բեկնազարյանը) յուր հրամանի ներքո ուներ 5000 կանոնավոր զորք և 3000 անկանոն զորք (եր. 94), բայց ոչ մի ամրոց կամ բերդ ուներ։ Ղարաբաղի մելիքներից և ոչ մեկը ունեցել է այդքան զորք[2], բայց ամենքը բերդեր և ամրոցներ ունեին։ Մի տանձենի միայն Խնածախ գյուղում պահպանում էր Բեկնազարյանների անունը, այն ևս Մակար վարդապետը Թուրքերի ձեռքով կտրել է տալիս և յուր հերոսների անունները իսպառ անհետացնում է (եր. 398)...

Այդ բոլորից հետո շատ պարզ է, որ Մակար վարդապետի 60—70 հերոսները իրենց այլանդակ և հրեշավոր մականուններով, որոնց ներկայացնում է նա «Գաղտնիք»-ի մեջ իբրև պատմական անձնավորություններ,— ամենը միասին վերառած, երբեք պատմական գոյություն չեն ունեցել։ Նրանք մինչև անգամ ժողովրդի ավանդությունների մեջ առասպելաբանական գոյություն չունեն։

1 Ջալաղան նշանակում է ցին կամ ուրուր կոչված գիշակեր թռչուն։

2 Մակար վարդապետը փավստոսյան չափազանցությամբ զարմանալի շատ զորքեր է տալիս յուր հերոսների ձեռքը։ Երբ Պետրոս Մեծը պիտի գար Գանձակ, կայսրին դիմավորելու և իրենց ուժը ներկայացնելու համար, Ղարաբաղի բոլոր մելիքները միասին կարողացան դուրս բերել Կոչկար գետի մոտ 12.000 զորք միայն։ «Պատմություն Աղվանից», տպված է Շուշի, 1839 ամ. եր. 58։

Նրանք հայր սուրբի վառ երևակայության ծնունդն են և ավելի ոչինչ...»

Հետևյալ գլխում ցույց կտանք այն պատկերը, որի մեջ գործում են այդ հերոսները։

Գ

Այժմ ներկայացնենք այն պատկերը, որի մեջ նկարագրված է Շուշի բերդի պաշարումը Աղա-Մամադ-շահից։

1795 թվին Աղա-Մամադ-շահը 60.000 (՞) զորքերով պաշարում է Շուշի բերդը։ Բերդում ամրացրած է Իբրահիմ-խանը, որ իրան թե այդ բերդի և թե Ղարաբաղի իշխանն էր համարում։ Շրջակա հայոց գյուղերի բնակիչները վաղօրոք փախել և մտել են բերդը։ Այնտեղ պատսպարված են նաև Մակար վարդապետի հերոսների ընտանիքները— Խնածախցիք։ Տները մնացել են դատարկ։

Խնածախցի «քաջերը», թվով 20 հոգի, ալյուր են կրում դեպի բերդը, որպեսզի պաշարյալները առանց պաշարի չմնան։ Դրանք նույն «կայծակներն», «կարկուտները», «վիշապներն» և զանազան հսկաներն են, որոնց հետ ծանոթացանք նախորդ գլխում։ (Այստեղ Մակար վարդապետը մոռացել է յուր հերոսների իսկական նշանակությունը և, նրանց հասարակ գյուղացիների տեղ դնելով, ալյուր է կրել տալիս, մինչդեռ նրանց յուրաքանչյուրը մի քանի հազար զինվորների հրամանատար էր)։

Հանկարծ 20 հոգի խնածախցի ալյուր տանողներին պատահում են Աղա-Մամադ-շահի սարվազները (զինվորները)։ Այդ միջոցին խնածախցիների հետ միանում են 60 բալլուջացիներ, որոնք նույնպես ալյուր են տանում բերդը։ Մակար վարդապետի «քաջերի» թիվը դառնում է 80 հոգի։

Խնածախցի քաջերի թվում գտնվում է և «Ազրայելը»՝ Մակար վարդապետի ստեղծած հոգեհան հրեշտակը,— այսպես էր կոչվում «Գաղտնիք»-ի հեղինակ Աբրահամ Բեկնազարյանը։ Հոր հետ լինում է և որդին՝ Ապրես Բեկնազարյանը,— «Գաղտնիք»-ի երկրորդ հեղինակը։ Ազրայելը, տեսնելով շահի սարվազներին, որ ուղիղ դիմում են դեպի Խնածախ, հասկանում է նրանց դիտավորությունը և պատրաստվում է մյուս «քաջերի» հետ պաշտպանել գյուղը։

Շահի զորքերին առաջնորդում էր հայազգի գնդապետ Հովհաննես Մելիք-Հայկազյանը, որ ուներ յուր հրամանի ներքո «2000 կանոնավոր և 2000 անկանոն սարվազներ» (երբ սարվազներ էին, անկանոն չէին կարող լինել)։ Նրանց հետ միացած էին 3000 ձիավորներ երկու «հազարապետների» գլխավորությամբ, որոնց մեկի անունը Սուլեյման էր, իսկ մյուսի անունը՝ Իսամամաղ։ Եվ այսպես, թշնամու ամբողջ զորությունը բաղկացած էր 7000 հետևակ և ձիավոր զինվորներից։ Այդ ահագին բազմությունը գալիս էր երկու դատարկ գյուղեր ոչնչացնելու— Խնածախը և Բալլուջան, որոնց բնակիչները փախել, մտել էին Շուշի բերդը։

Բայց 80 հոգի այլուր տանողները մնացել էին բերդի դրսում։ Դրանք հանդիպում են շահի զորքերին։ Կռիվը սկսվում է հենց Խնածախի մոտ։ Մի քանի ժամվա մեջ երեք անգամ ճակատամարտ է լինում, և ամեն անգամ շահի զորքերը տերևների նման թոթափվում են այդ մի բուռն «քաջերից», թողնելով պատերազմի դաշտում դիակների ահագին բազմություն։

Սուլեյման և Իստամաղ «հազարապետները» սպանվում են և նրանց հրամանատարության ներքո գտնված 3000 ձիավորներից մի հատ էլ չի մնում,—հայոց «քաջերը» բոլորին ամբողջապես կոտորում են (եր. 37)։ Իսկ հետևակ սարվազներից կոտորում են 2671 հոգի, որոնց թվում կային 1 հազարապետ և 8 հիսնապետ (եր. 34)։ Եվ այսպես, թշնամուց սպանվածների ամբողջ թիվը լինում է 5671 հոգի։

Իսկ հայոց «քաջերից» սպանվում են 2 հոգի միայն...

Հաղթությունը մնում է 80 հոգի այլուր տանողների կողմը...»

Այդ սարսափելի ստախոսությունից հետո «Գաղտնիք»-ի հեղինակ Աբրահամ Բեկնազարյանը, որ ինքը անձամբ մասնակցում էր կռվին, դեռևս երես ունի ասելու. «Սպանվածների քանակությունն թերևս չափազանցություն կերևի ընթերցողաց, բայց մենք ճշմարտությամբ գրեցինք» (եր. 34)։

Եթե Աղա-Մամադ-շահի զորքերը ամբողջապես ոտները կապած հավերից բաղկացած լինեին, դարձյալ անկարելի էր մի քանի ժամվա մեջ 5671 հավ կոտորել։

Բայց այդ մի քանի ժամվա մեջ Մակար վարդապետի «քաջերը» ուրիշ գործեր ևս կատարեցին։ Նախ՝ բոլոր 5671 սպանվածների դիակները թաղեցին հողի տակ, և իրանց հաղթությունը հավերժացնելու համար, նրանց վրա բարձր հողաբլուրներ կանգնեցրին։ Հետո Սուլեյման հազարապետի ընկած տեղի անունը կոչե-

ցին «Սուլեյման խութ», իսկ Ռստամաղ հազարապետի ընկած տեղի անունը կոչեցին «Ռստամաղի ձոր»։ Բայց այն տեղը, ուր թշնամուն կենդանի այրել էին, կոչեցին «Կոռուտ», որ մահմեդականաց գերեզմանատուն է նշանակում (եր. 35, 37)։

Այդ հիշեցնում է Զենոբի և նրա պատմությունը շարունակողի պատմությունը, որ ամեն մի կռվից հետո, դեպքերի համեմատ, տեղերին անուններ են տալիս։

Երբ ամեն ինչ վերջացած էր, Գյուլ-Օհանը գայլի նման ոռնում է, և բոլոր «քաջերը» խաղաղ և հանգիստ նստում են բաց օդի մեջ ճաշելու (եր. 38)։ Հետաքրքիր է, թե ո՞վ պատրաստեց նրանց համար այդ ճաշը։ Ամբողջ Խնածախը այրված էր, իսկ «քաջերի» ընտանիքները գտնվում էին Շուշի բերդում։ Բայց բանը դրանում չէ, երևի, երկնքից իջավ ճաշը,—բանը նրանումն է, որ ճաշելուց հետո, նոր կնքված «Կոռուտի» մոտ՝ անմիջապես կազմվեցավ «քաջերի խորհուրդը», որ Կ. Պոլսի այժմեական երեսփոխական ժողովի ճիշտ ձևը և համանման կազմակերպությունն ուներ։ Այդ ժողովի մասին ես կխոսեմ հետո, բայց տեսնենք ի՞նչ եղան շահի մնացած զորքերը, ի՞նչ եղավ գնդապետ Մելիք-Հայկազյանը։ Այդ զորապետը կարծես եկել էր նրա համար միայն, որ ձեռքերը ծալած կանգնե և ամենայն սառնասրտությամբ ականատես լինի, թե ինչպես մի բուռն գյուղացիներ կոտորում են յուր հրամանատարությանը հանձնած զորքերը, որ հետո գնա և յուր թագավորին խաբար տանե, որի 60.000 զինվորներից բաղկացած բանակը դրած էր մի քանի քայլ հեռավորության վրա։

(Ավելորդ չեմ համարում հիշեցնել, որ Խնածախ գյուղը Շուշի բերդից 2 ժամվա հեռավորություն ունի, իսկ բերդը այդ միջոցին պաշարված էր Աղա-Մամադ-շահի զորքերով։ Այստեղ 80 գյուղացիներ կոտորում էին շահի զորքերը, իսկ այնտեղ 60.000 զինվորներից բաղկացած բանակում հրացանների ձայնը չէին լսում, որ գոնե օգնության հասնեին։ Իսկ շահի զորապետները այնքան հիմարացան, որ մի մարդ էլ չուղարկեցին բանակը օգնություն խնդրելու, և իզուր տեղը 5671 զինվոր կոտորել տվին...»)։

Կրկնում եմ, ի՞նչ եղավ գնդապետ Մելիք-Հայկազյանը։

Կռվի սաստիկ ջերմության միջոցին՝ պատահեց մի միջանկյալ դեպք. առանց որևէ ստիպողական պատճառի, չնայելով, որ հաղթությունը յուր կողմն էր, Խնածախի «քաջերի» հրամանատար Աբրահամ Բեկնազարյանը («Գաղտնիք»-ի հեղինակը) յուր զեն-

քերը դրեց Մելիք-Հայկազյանի ոտքերի տակ և անձնատուր եղավ։ Վերջինը ամենայն ազնվությամբ նրա զենքերը հետ տվեց և խիկույն բարեկամացան, սկսեցին միմյանց քաղցր խոսքերով ողջագուրել։ Իսկ նրանց աչքերի առջև խնածախցիները դեռ շարունակում էին կոտորել շահի զորքերը։ Մելիք-Հայկազյանը այն ասատիճան հափշտակված էր հայր և որդի Բեկնազարյաններով, որ կարծես արբեցած լիներ նրանց սիրով, և ամենևին չէր նկատում, թե ինչպես են կոտորում յուր զորքերը։ Նա այնքան բարի գտնըվեցավ, որ որպեսզի փոքրիկ Ապրես Բեկնազարյանը չվախենա այլանդակված դիակներից, առեց պատանին և նրա հոր հետ մեկուսացավ դեպի մի այլ կողմ։ Իսկ խնածախցիք շարունակում էին կոտորել (եր. 24, 25)։

Այդ միջոցին հայտնվում են երկու սուրհանդակներ և բերում են երկու նամակներ։ Մեկը՝ շահը ուղարկել է գնդապետ Մելիք-Հայկազյանին, մյուսը՝ Մելիք-Մեջլումը, որ նույնպես շահի բանակում էր գտնվում, ուղարկել էր Աբրահամ Բեկնազարյանին։

Շահը գրում էր յուր նամակի մեջ, թե Սուլեյման և Իստամազ «հազարապետները» խաբել են իրան։ (Դրանք նույն անձիքներն են, որ իրանց 3000 ձիավորների հետ սպանվեցան խնածախցի «քաջերից»)։ Թե այդ մարդիկը Իբրահիմ-խանի գործիքներն են եղել, և նրա թելադրությամբ ուղարկված են եղել յուր բանակը, որպեսզի առերես շահին բարեկամ ձևանալով, կարողանան յուր (շահի) ձեռքով Խնածախ և Բալլուջա գյուղերը ոչնչացնել տալ։ Թե այդ մարդիկ դիմեցին իրան, հավատացնելով, որ խնածախցիք և բալլուջացիք շահի թշնամիներն են և Իբրահիմ-խանի բարեկամները։ Այդ պատճառով ինքը (շահը) նրանց «հազարապետության» (՞) աստիճան շնորհելով իրանց 3000 ձիավորներով կարգեց իբրև առաջնորդ գնդապետ Մելիք-Հայկազյանին, որ գնան հիշյալ գյուղերը ոչնչացնելու և այլն։

(Եթե Մելիք-Հայկազյանը մի այսպիսի հրահանգ էր ստացած, այդ ամբողջ պատմությունը պետք է առաջուց գիտենար, ի՞նչ հարկ կար, որ շահը նորից գրեր նրան, այն էլ մի քանի քայլ հեռավորությունից, երբ ավելի հեշտ էր մի աստիճանավոր ուղարկել և հրամայել նրան, թե հետ դարձեք)։

Շահը յուր երկար նամակը վերջացնում էր, պատվիրելով Մելիք-Հայկազյանին, որ Սուլեյմանին և Իստամազին կենդանի յուր մոտ բերե պատժելու համար, իսկ հիշյալ գյուղերին ամենափոքր վնաս անգամ չպատճառե։

Մելիք-Մեջլումի նամակը նույն միտքն էր հայտնում շահի խաբված լինելու մասին, հետո շարունակում էր մի երկար պատմություն Ղարաբաղի հարազատ և անհարազատ մելիքների մասին, Ղարաբաղի հարազատ և անհարազատ կաթողիկոսների մասին, շահի խոստումների մասին վաղեմի մելիքությունները վերականգնելու և այլն։ Վերջը հրավիրում է Աբրահամ Բեկնազարյանին, որ յուր հետ առնելով խնածախցի և բալլուջացի «քաջերին», դիմե շահի բանակը, խորհուրդ տալով, թե ավելի նպատակահարմար էր ծառայել շահին և սպասել նրա խոստումներին և այլն։

«Հայրս,—շարունակում է որդի Բեկնազարյանը,—խնդրեց շահի նամակի հայերեն պատճենը. գնդապետն հայերեն թարգմանեց և հայրս մատիտով գրեց թղթի վրա։ Մելիք-Հայկազյանն զարմանք հայտնեց հորս նախապատրաստության վրա, որն կրում էր միշտ յուր վրա թանաքաման, թուղթ և գրիչ» (եր. 32)։

Այսօր անգամ Խնածախ գյուղում անկարելի է մի հատ մատիտ գտնել։ Իսկ Աբրահամ Բեկնազարյանը գործ էր ածում մատիտը գիտե՞ք երբ,—1795 թվին, մեզանից 90 տարի առաջ, երբ Անդրկովկասում մատիտի անունն անգամ չէին լսել։ Եվ հետաքրքիրն այն է, որ կռվի միջոցին, «Գաղտնիք»-ի հեղինակը զենքերի հետ կրում էր յուր վրա թուղթ, թանաքաման և գրիչ... Այս բոլոր նախապատրաստությունները տարակույս չկա, որ «Գաղտնիք»-ի համար էին, և հենց այդ նպատակով Աբ. Բեկնազարյանը խնդրեց շահի նամակի հայերեն թարգմանությունը։ Եվ շահի միամիտ գնդապետը յուր թագավորի պաշտոնական նամակի պատճենը հանձնեց «Գաղտնիք»-ի հեղինակին, հենց նույն րոպեում, երբ խնածախցիք նրա աչքերի առջև դեռ շարունակում էին կոտորել յուր զորքերը։ Կարծես, դա նրա համար միայն եկած լիներ, որ «Գաղտնիք»-ին մի նոր նյութ մատակարարեր...

Իսկ Աբրահամ Բեկնազարյանը ոտքի վրա գրում էր Մելիք-Մեջլումից ստացած նամակի պատասխանը։ Երբ վերջացրեց, սուրհանդակին ճանապարհ դրեց։

Խնածախցիք դեռ կոտորում էին...

Աբրահամ Բեկնազարյանը յուր որդուն, փոքրիկ Ասլանին հանձնում է գնդապետի պահպանությունը, իսկ ինքը աճապարում է դեպի անտառի կողմը, որտեղ կռիվը նորից բորբոքվել էր։ Շա-

հի բարեսիրտ գնդապետը մնում է այնտեղ և այժմ դայակի պաշտոն է կատարում... (եր. 33)։

Այդ բոլորը շատ հասկանալի է, սպիտակ թելով կարկատած զառանցություններ են, մի այնպիսի մարդու գլխից ծագած, որ ինչպես երևում է, յուր կյանքում ոչ պատերազմ է տեսել և ոչ գիտե պատերազմող մարդու պարտավորությունները։ Մելիք-Հայկազյանը յուր թագավորին դավաճանած կլիներ, եթե թույլ տար, որ յուր հրամանատարության հանձնած զորքերը կոտորեին, իսկ ինքը զբաղվեր թարգմանություններով կամ յուր ախոյանի որդուն պահպանելով...

Բայց բանը դրանում չէ, ես ավելորդ չեմ համարում ցույց տալ այն ծիծաղելի ինտրիգը (բանսարկությունը), որ Մակար վարդապետի նկարած պատկերի հյուսվածքն է կազմում։

Երևակայեցեք, Խնածախ և Բալլուջա գյուղերը, որպես նախորդ գլխում տեսանք, Իբրահիմ-խանի սեփական կալվածներն էին։ Եթե այդ գյուղացիները անհավատարիմ հայտնվեցան, Իբրահիմ-խանը, որ այսօր պարսից ահարկու թագավորին յուր 60.000 զորքերով պահել էր յուր անմատչելի բերդի պարսիսպների մոտ[1],— միևնույն Իբրահիմ-խանը չէր կարող մի հարվածով ոչնչացնել հիշյալ գյուղերը, որոնց երկուսը միասին միայն 120 ընտանիքից էին բաղկացած։ Այն բարբարոսը, որ Ղարաբաղի վաղեմի մելիքությունները ոչնչացրեց և նոր, իրան հավատարիմ մելիքություններ ստեղծեց,—այն երևելի խորամանկը, որ Ղարաբաղի հարազատ կաթողիկոսությունը ոչնչացրեց և նոր, իրան հավատարիմ կաթողիկոսություն ստեղծեց։—Մի՞թե չէր կարող առաջուց պատժել յուր գյուղացիներին, երբ հայտնվեցավ նրանց անհավատարմությունը։ Իսկ այսօր, երբ թշնամին յուր ահարկու զորությամբ պաշարել է նրա բերդը, մի այսպիսի տագնապի ժամանակ, Իբրահիմ-խանը, ամեն հոգսեր թողած, յուր գյուղացիներին պատժելու մասին է մտածում,—այն գյուղացիներին, որոնց ընտանիքները պատսպարված են յուր բերդում, իսկ տղամարդիկը այլուր և պաշար են կրում յուր բերդը... Եվ պատժել ինչպե՞ս։— Խստամազին և Սուլեյմանին 3000 ձիավորներով ուղարկելով պարսից բանակը, որ շահին խաբեն և նրանից ևս զորքեր առնելով, գնան դատարկացած Խնածախը և Բալլուջան ոչնչացնելու...

Կարծես 3000 ձիավորը բավական չէր...

---

1 Այս անգամին Աղա-Մամադ շահը չկարողացավ գրավել շահի բերդը։

*Մակար վարդապետը որքան և հսկաներ ստեղծած լիներ յուր խնամախցիներից, բայց դարձյալ այդ բոլորը շատ և շատ ծիծաղելի է։*

*Եվ, վերջապես Աղա-Մամադ-շահը, որ այնքան զորություններ էր կործանել Պարսկաստանում,— նրա համար ի՞նչ նշանակություն ունեին երկու չնչին գյուղերի բարեկամությունը կամ թշնամությունն, որ նրանց վրա առանձին ուշադրություն դարձներ, և յուր գնդապետներին և հազարապետներին 7000 զինվորներով ուղարկեր այդ դատարակ գյուղերը ոչնչացնելու։*

*Բայց Մակար վարդապետը այնքան քաջ գտնվեցավ, որ յուր դրացի 80 հսկաների ձեռքով բոլորին կոտորել տվեց։*

*Այժմ տեսնենք հսկաների ժողովը, որ տեղի ունեցավ այդ կոտորածից հետո, բաց օդի ներքո, սպանվածների թարմ գերեզմանների մոտ, որի անունը արդեն կոչել էին «Կոռուտ»։*

> *«Ճաշից հետո կազմվեցավ ժողով։ Նախագահ ընտրվեցավ Քյանդխուտա Խաչատուրն, որն առաջարկեց ժողովին. «Մի քանի ստիպողական և ամենակարևոր խնդիրներ կան ժողով լուծելիք, ճըռ-խանությունն և ճըռ-մելիքությունն[1] ոչնչացնելու խնդիր, հարազատ մելիքությունն և հարազատ կաթողիկոսությունն վերականգնելու խնդիր, մեր ընտանյաց կյանքի ապահովության խնդիր, մեր ծառայությունը վարձատրելու խնդիր, մեր կենաց խնդիր, շահի և Մելիք-Մեջլումի հրավերը ընդունելու կամ մերժելու խնդիր։ Ահա այս խնդիրները պետք է լուծել կարգավ վիճաբանելով, ինչպես մինչև ցարդ զորապետական խորհուրդներով լուծված են այնպիսի ծանր խնդիրներ։ Միայն, խնդրեմ ամեն ոք ձեզնից պիտի խոսի ազատորեն, կարծիք հայտնե պաղարյունությամբ, հեռատեսությամբ և նուրբ կշռադատությամբ» (եր. 38)։*

*Առաջինը խոսում է «Գաղտնիք»-ի հեղինակ Աբրահամ Բեկնազարյանը մի երկար ճառով, որ սկսում է այդ խոսքերով.*

> *«Ղարաբաղի ճըռ-խանությունը և ճըռ-մելիքությունը, եթե մենք մեր ձեռքով ոչնչացնենք՝ (դոնքիշոտությանը նայեցեք), շատ հեռու է. (ինչո՞ւ մինչև այսօր թողեցիք) իսկ եթե պար-*

1 Ճըռ-խանություն *կոչում է հեղինակը Իբրահիմ խանի իշխանությունը, որ բռնությամբ տիրապետել էր Ղարաբաղը։ Իսկ* Ճըռ-մելիքություն *կոչում է Իբրահիմ խանի կուսակից մելիքությունները, որոնք բաժանված էին Ղարաբաղի հարազատ մելիքների միաբանությունից։*

սից շահերի կամ այլոց հուսով թողնենք՝ ծանրակշիռ և դըժվարալուծ խնդիր է»...

Պարսից շահը 60.000 զորքով պաշարել է Ղարաբաղի խանի բերդը և չէր կարողանում ներս մտնել, իսկ Աբրահամ Բեկնազարյանը շատ հեշտ է համարում յուր 80 հոգուց բաղկացած խումբով ոչնչացնել նրա խանությունը...

Յուր ճառի շարունակության մեջ «Գաղտնիք»-ի հեղինակը պատմաբանորեն բացատրում է պարսից վերջին թագավորների աննպաստ վերաբերմունքը Ղարաբաղի հայոց մելիքների վերաբերությամբ և, վերջ ի վերջո այն եզրակացությանն է հասնում, թե շատ չի պիտի հավատալ Աղա-Մամադ-շահի խոստումներին, թե նա կվերականգնե Ղարաբաղի ընկած մելիքությունները և այլն։

Հետո սկսում են այդ հարցի վրա վիճել, բայց ամենը հերթով են խոսում, առանց մինը մյուսին խանգարելու և ամեն հռետոր զոռ է տալիս յուր լեզվի ուսած, փքված պերճախոսությանը։

«Գաղտնիք»-ի հեղինակը պատասխանում է մի այլ ճառով, որի մեջ բացատրում է Ղարաբաղի մելիքների հարաբերություններր ռուսաց հետ, սկսյալ Պետրոս Մեծից, և հասցնում է մինչև յուր ժամանակը[1]։

Հռետորները դարձյալ սկսում են վիճել, դարձյալ զոռ են տալիս իրենց պերճախոսությանը, բայց կարգով, առանց մինը մյուսին ընդմիջելու, և ավելի կարգով, քան թե Կ. Պոլսի այժմյան երեսփոխանական ժողովը։

Հետաքրքիրն այն է, որ ժողովի բոլոր վիճաբանություններն արձանագրվում են։

«Խորհրդականաց խոսքերն նույնությամբ գրվեցան. թերևս ապագա սերնդոց օգտակար կլինեն» (եր. 54)։

«Որոշվեցավ, որ Ոշապ Բաղդասարն (Վիշապ Բաղդասարը), Զարպազանն, Քիարփեթյունն (Քալբաթինը), Փեհլուանն (Հսկան), Ալբեթյուն (Աֆլաթունը), Պողպատն և Ջափարն (կոտորողը) այլուրները տանեին, Շուշում թողնեին, և գալով մեզ միանային բանակատեղում» (եր. 55)։

«Գաղտնիք»-ի հեղինակը մյուսների հետ միասին գնում են Աղա-Մամադ-շահի բանակը միանալու պարսիկների հետ և կռվելու պաշարված բերդի դեմ, որի մեջ պատսպարված էին նրանց

1 Թե առաջին և թե երկրորդ ճառի բովանդակությունն ամբողջապես առնըված է «Խամսայի մելիքություններից»։

քնտանիքները։ Նրանք ամենափոքր երկյուղ անգամ չեն կրում, որ Իբրահիմ-խանը նրանց զավակներին, կանանցը դնել կտա նույն գնդակների դեմ, որ նրանք կարձակեն յուր բերդի վրա։

Տեսնո՞ւմ եք, այդ էջերով Իբրահիմ-խանի համար ալյուր սանող գյուղացիները, ոչ միայն հրաշագործ պատերազմողներ են, այլ, միևնույն ժամանակ, ուսյալ, կրթյալ, խորին քաղաքագետ և պառլամենտական անձիք են։ Նրանք պատմություն գիտեն, նրանք գիտեն անցյալը համեմատել ներկայի հետ, նրանց յուրաքանչյուրին ծանոթ են իրանց ժամանակի բոլոր պետությունների միջազգային հարաբերությունները, երևի լրագրներ ևս կարդում են...

Մակար վարդապետը, պատմության, ժամանակների, սովորույթների ու կարգերի հետ այնպես է խաղում, ինչպես յուր «տեր ողորմյայի» հատիկների հետ, կարծելով թե որ կողմն և ուզե, կարող է դարձնել։ Թուրքիո հայոց ազգային սահմանադրությունը հիմնվեցավ 1860 թվականին։ Բայց Մակար վարդապետը 1795 թվին նույն սահմանադրական վարչությունը տեղափոխում է,. գիտե՞ք որտեղ, յուր ծննդավայր Խնածախ գյուղը...

Ոչ միայն Խնածախի գռեհիկ գյուղացիները, որոնց հասկացողության և աշխարհայեցողության հորիզոնը իրանց գյուղի սահմանից հեռու չէր տարածվում, այլ նույնիսկ Ղարաբաղի նշանավոր մելիքները, որ իսկապես հոյակապ անձնավորություններ էին,—երբեք այս տեսակ ժողովներ չեն ունեցել։ Երբ Ղարաբաղի մելիքները խորհուրդ էին կազմում, հավաքվում էին մեկի տանը, նստում էին թոնրի մոտ, մի կողմում դրած էր լինում գինին, օջախի վրա ծխում էր խորոված, մի կողմում լաց էր լինում անհանգիստ երեխան, հարսն ու աղջիկը ոտքի վրա սպասավորություն էին անում, տանտիկինը շերեփը ձեռին կերակուր էր ածում,—և երկրի իշխողները ուտում էին և նահապետական պարզությամբ խորհում էին իրանց երկրի չարն ու բարին։

Վերջապես Մակար վարդապետի «քաջերը» մոտենում են շահի բանակին։ Ընդունելությունը կատարվում է հանդիսավոր կերպով. թե «քաջերի» խումբից և թե բանակից հնչեցնում են փողեր, «ինչպես իր հնուց սովորություն էր պարսից»[1], Մելիք-Մեջլու-

[1] Մակար-վարդապետը լսել է, որ երբ հայոց դաշնակից զորքերը մոտենում են պարսից բանակին, երկու կողմից ևս փողեր են հնչեցնում, որը միմյանց ողջունելու նշան էր։ Բայց այդ սովորությունը շատ հին էր, կատարվում էր հայոց թագավորների և նախարարների ժամանակներում։ Իսկ մելիքների իշխանության ժամանակներում դադարած էր։

մը, Ջավադ-խանը և մի «պատվավոր անձն» շահի կողմից դիմավորում են նրանց (եր. 135)։

Մելիք-Մեջլումը, որ վայելում է շահի առանձին հարգանքը[1], ներկայացնում է «քաջերին» և «հականե-հանվանե» գովաբանում է, թե նրանց մատուցած ծառայությունները, թե հավատարմությունը և թե նրանց կատարած քաջությունները (եր. 136)։

Շահը պատասխանում է մի ճառով, որի մեջ հատկապես շեշտում է հայոց մատուցած վաղեմի ծառայությունների վրա, և վերջացնում այդ խոսքերով։

«Անվարձ չեն մնալու և ձեր քաջությունները և ծառայությունները» (եր. 136)։

Ո՞ր քաջությունները, ո՞ր ծառայությունները։

Այն ծառայությունները, որ այդ «քաջերը» մի քանի ժամ առաջ կոտորեցին նույն շահի 5671 զորքերը...

Եվ շահը իսկույն վարձատրեց «Գաղտնիք»-ի հեղինակ Աբրահամ Բեկնազարյանին, որ «քաջերի» հրամանատարն էր և որին շահը «Հրաշագործ-Ազրայել»[2] էր կոչում (եր. 162)։ «Ծակ-քարի» մոտ կատարած քաջագործության համար (որտեղ ընկան շահի զորքերը) շնորհեց մի ադամանդազարդ շքանշան, բայց «Հրաշագործ-Ազրայելը» քաղաքավարությամբ մերժեց, պատճառաբանելով, որ շահը ավելի լավ կանե, եթե կատարե յուր խոստումները-

---

[1] Մելիք-Մեջլումը Ղարաբաղի Ջրաբերդ կոչված գավառակի մելիքն էր, որ միացած էր Աղա-Մամադ-շահի արշավանքին և առաջնորդեց նրան Թիֆլիսի կործանման ժամանակ։ «Գաղտնիք»-ի մեջ հիշվում է այն արտոնությունները, որ շահը շնորհած էր Մելիք-Մեջլումին։ Իբրև մի նոր փաստ, թե ինչպես «Գաղտնիք»-ը բառ առ բառ քաղում է «Խամսայի մելիքություններից»։ Ես կբերեմ միևնույն խոսքերը.

Շահը շնորհեց մելիք-Մեջլումին այդ երեք արտոնությունները».

1. «Երբ և կամենա կարող է անարգել կերպով ել և մուտ գործել յուր մոտ»։

2. «Ինչ որ խնդրելու լինի նրա կամքը կկատարվի»։

3. «Արքունիքի գանձարանը նրա տրամադրության ներքո կլինի»։

«Խամս. մելիքություններ», եր. 186։

«Շահը Մելիք-Մեջլումին շնորհեց հետևյալ արտոնությունները»։

Ա. «Մելիք-Մեջլումն ամեն ժամանակ իրավունք ունի ազատ ելումուտ գործել շահի մոտ առանց արգելքի»։

Բ. «Ի՞նչ խնդիր առաջարկելու լինի՝ շահի կողմից կկատարվի անպատճառ»։

Գ. «Շահական գանձարանն հանձնած է մելիքին ըստ պահանջման հարկին ծախսել պիտոյից համար»...

«Գաղտնիք», եր. 138։

[2] «Հրաշագործ-Ազրայիլ» նշանակում է «Հրաշագործ հոգեհան հրեշտակ»։

*րը Ղարաբաղի ընդհանուր մելիքությունների վերաբերությամբ (եր. 149)։*

*Այնուամենայնիվ, շահը, որովհետև ներքինի էր, զավակ չուներ, որդեգրեց «Հրաշագործ-Աղրայելի» որդի Ապրես Բեկնազարյանին («Գաղտնիք»-ի երկրորդ հեղինակին) և նրա անունը Ալլահվերդի (Աստվածատուր) կոչեց, որովհետև աստված նրան մի զավակ պարգևեց (եր. 136)։ Այդ մասին խոսվեցավ Դ-րդ գլխում։ Իսկ նրա հորը շնորհեց զորավարության աստիճան և պահեց յուր մոտ (եր. 170, 171, 172, 222)։ Այստեղից է սկսվում հայր և որդի Բեկնազարյանների երևակայական ծառայությունները պարսից երեք թագավորների մոտ, որի մասին խոսվեցավ նախորդ գլուխներում։*

*Պետք է ուղեղի սաստիկ հիվանդություն ունենալ այս տեսակ ցնորքներն իբրև պատմություն ներկայացնելու համար։ Չկա մեկը պարսից վերջին թագավորների մեջ, որ Աղա-Մամադ-շահի նման սիրելիս լիներ յուր զինվորներին։ Եվ չկա մեկը, որ նրա նման վրեժխնդիր և ոխակալ լիներ։ Նա պատրաստ կլիներ ամբողջ հայոց ազգը ջնջել յուր զինվորներից մեկի մի կաթիլ արյան համար։ Իսկ նրա զորքերին և զորապետներին կոտորում են, նա փոխանակ վրեժխնդիր լինելու, այս տեսակ վարձատրություններ է անում...*

*Ահա՛ այն պատկերը, որ նկարելու համար Մակար վարդապետը սպառել է յուր հանճարի բոլոր զորությունը,— ահա՛ այն փայլուն գոհարը, որ զարդարում է «Գաղտնիք»-ի ճակատը։*

## Է

*Նախորդ երկու գլխում ծանոթացանք այն պատկերի հետ, որ «Գաղտնիք»-ի զարդն էր կազմում,—ծանոթացանք և այն հերոսների հետ, որոնց Մակար վարդապետը ներկայացնում է իբրև նորագյուտ պատմական անձնավորություններ։*

*Հայ սուրբը սկզբում գրել է այդ պատկերը միայն, բայց ոչ իբրև պատմություն, այլ իբրև մի փոքրիկ վեպիկ։*

*Հայ սուրբը ինքը խնածախցի գոլով, այդ գյուղն ընտրել է իբրև ասպարեզ յուր վեպիկի մեջ կատարած գործողությունների։ Եվ այդ շատ բնական է։ Մեր բոլոր փոքրիշատե հայտնի վիպասանները գյուղացիներ են եղել։ Յուրաքանչյուրը յուր վեպերի նյութը առել է յուր հայրենական գյուղից։ Աբովյանցը անմահաց-*

րեց Քանաքեռը։ Աղայանցը նկարեց Խաչենը։ Պռոշյանցը ծանոթացրեց մեզ Աշտարակի հետ։ Իսկ մեր նվաստությունը յուր մի քանի վեպերի նյութը առել՝ է յուր հայրենական բնագավառ Սալմաստից։

Հենց առաջին անգամ, երբ վիպասանը սկսում է գրել, նրան ներկայանում է յուր մանկության ծննդավայրը, որ ավելի մոտ էր նրա սրտին, որ ավելի ծանոթ էր նրան։

Մակար վարդապետին ևս շատ բնական էր, յուր վեպիկի նյութը առնել Խնածախից։ Այսպես էլ արել է նա։ Եվ այդ է այն տարօրինակ երևույթի պատճառը, որ նրա բոլոր հերոսները, որոնց թիվը քառասունից անցնում է, այդ գյուղիցն են ծնվում։

Նրա նկարած պատկերը, ինչպես երևում է «Գաղտնիք»-ից, սկզբում դրած է եղել խիստ նեղ շրջանակի մեջ։ Նա ներկայացնում էր Շուշի բերդի պաշարումը Աղա-Մամադ-շահից, խնածախցիների քաջագործությունները, Աղա-Մամադ-շահի երկրորդ արշավանքը և նույն բերդում սպանվելը։ Այդքանը միայն։

Եթե Մակար վարդապետը բավականանար այդ պատկերով միայն և նրան նույն ձևով ներկայացներ ընթերցող հասարակությանը, գուցե նրան կասեին վատ նկարիչ է և ավելի ոչինչ։ Բայց յուր վերջին վարմունքով՝ ենթարկել է իրեն մի այնպիսի պատասխանատվության, որ շատ ծանր պետք է լինի նրա համար…

Հայր սուրբը, ինչպես երևում է «Գաղտնիք»-ից, հրապուրվել է և իր ձեռնարկության մեջ շատ առաջ է գնացել։ Նա սկսել է ընդարձակել յուր պատկերը։ Եվ նույն հերոսներին, որ նա ստեղծել էր միայն այդ պատկերի մեջ գործելու համար,— նույն հերոսներին մտցրել է այն բոլոր պատերազմների և քաղաքական հարաբերությունների մեջ, որ կատարվեցան Անդրկովկասում, ըսկըսյալ այն օրից, երբ ռուսները առաջին անգամ ոտք դրեցին այդ երկրի վրա, մինչև նրանց կատարելապես տիրապետելը։

Վերջին վարմունքը շատ հասկանալի է՝ Մակար վարդապետին պետք է դներ խիստ անելանելի դրության մեջ։ Նա յուր հերոսներին վիպական անձնավորություններից դարձրեց պատմական անձնավորություններ։ Այլ խոսքով, նա ստեղծել է մի պատմություն,— այն ևս կեղծ պատմություն։

Ինչպե՞ս պաշտպանել այդ կեղծությունը։

Միակ ելքը այն էր, որ Մակար վարդապետը ձեռքերը լվանար, մի կողմ քաշվեր, և բոլոր մեղքը ձգեր Բեկնազարյանների

վրա, նրանց ցույց տալու իբրև հեղինակ «Գաղտնիք»-ի։ Այդպես էլ արել է նա։

Այսուամենայնիվ Մակար վարդապետը ցանկացել է, որ «Գաղտնիք»-ը ոչ միայն պատմական արժեք ունենար, այլ նա երևան հաներ այնպիսի «վտանգավոր գաղտնիքներ» և պատմության համար այնպիսի «թանկագին գանձեր», որոնք բոլորովին անհայտ էին մինչև այդ գրքի լույս տեսնելը։

Որքան մեծ է այդ խոստումնքը, նույնքան դժվարին է նրա կատարելը։ Որտեղի՞ց գտնել «թանկագին գանձերը»։

Որպեսզի գործից մաքուր դուրս գա, Մակար վարդապետը իրան թույլ է տվել այն վարմունքը, որ սովորաբար գործ են դնում կրկեսների կառավարիչները։ Հայտաթղթերի վրա խոստանում են աներևակայելի ներկայացումներ։ Մեծ փափագով հավաքվում է հասարակությունը, և հանկարծ մեկը դուրս է գալիս և խոնարհաբար ազդարարում է հարգելի հասարակությանը, թե այսինչ ձեռնածուի կամ այնինչ խեղկատակի հիվանդության պատճառով խոստացած ներկայացումը հետաձգվում է, իսկ նրա փոխարեն տրվում է մի ուրիշը...

Նույնը արել է և Մակար վարդապետը։

«Գաղտնիք»-ի 89, 90, 91, 92 երեսներում հիշվում են յոթ բոլորովին անհայտ պատմագիրների անուններ, յոթն հրաշելյաց խորհրդավոր թվով։ Այդ յոթանց խումբը հայտնվում է միևնույն դարում և գրում է 15 հատոր պատմություններ Ղարաբաղի վերաբերությամբ։ Ահա այն հարուստ գանձարանը, ահա այն անսպառ աղբյուրները, որոնցից օգուտ քաղելով «Գաղտնիք»-ի հեղինակը պետք է մատակարարեր մեզ յուր խոստացած «անգին գանձերը»:

Հետաքրքիր են այդ պատմագիրների և նրանց հեղինակների անունները.

Ա. Երեմիա (Հասան-Ջալալյան) կաթողիկոս Գանձասարա վանքի գրել է.

1) «Պատմություն կաթողիկոսացն Աղուանից»։

2) «Ծագումն թագավորացն Աղուանից»։

3) «Ծագումն Ջալալյան տոհմի ի Վախթանգ թագավորազնէ», որ իբր թե Ջալալյան Գրիգորիս և Եղիա վարդապետների պատմության շարունակությունն է եղել[1]։

1 Գրիգորիս և Եղիա վարդապետները վախճանվել են Երեմիա կաթողիկոսի վախճանվելուց 462 տարի առաջ (1238 թ.) և նրանք ոչ մի պատմություն չեն թո-

*4) «Ժամանակագրություն անցից»։ Որ Ղարաբաղում կատարված, քաղաքական և եկեղեցիական պատմությունն է, որի մեջ կարգով գրված են եղել բոլոր մելիքների գործերը*[1]*։*

Բ. Եղիա վարդապետ Հասան-Ջալալյան[2] .

*1) «Արշավանք Թաթարաց և պատերազմ ի Կաշաղակաբերդին»։*

Գ. Եսայի (Հասան-Ջալալյան) կաթողիկոս Գանձասարա վանքի.

*1) «Ծագումն և պատմություն Մելիք-Հայկազյանց Մելիք-Եսայի, իշխողին Ջրաբերդի»։*

*2) «Ծագումն և պատմություն Մելիք-Աբովի առաջնոյ, իշխողին Կյուլստան գավառի»։*

*3) «Հարաբերություն հայոց ընդ ռուսաց», որի մեջ ժամանակագրական կարգով զետեղված են եղել սկսյալ 1727 թվականից*[3]*, հայոց կաթողիկոսների և մելիքների ռուսաց կառավարության հետ ունեցած հարաբերությանց պաշտոնական թղթերի օրինակները։ Նույն պատմության մեջ յուրաքանչյուր նոր գահակալող կաթողիկոս շարունակել է գրել յուր ժամանակի գործերը, նույնպես ժամանակագրական կարգով։*

Դ. Մովսես վարդապետ *միաբան Գանձասարա վանքի.*

*1) «Վանորայք Արցախի և կալուածք նոցա»։ Այդ պատմության մեջ նշանակված են եղել Ղարաբաղի բոլոր վանքերի անունները, նրանց արձանագրությունները, նրանց կալվածքների տարածությունը իրանց սահմաններով, նվիրողների անունները, նրանց կալվածագրերը, թագավորների հրովարտակների օրինակ-*

---

*ղել, որ շարունակած լիներ Երեմիա կաթողիկոսը։ Կիրակոս Գանձակեցին յուր պատմության մեջ (եր. 159) հիշում է այդ երկու վարդապետների անունները, բայց ոչ իբրև պատմագիրների, այլ իբրև սրբակրոն աբեղաների։ Եթե նրանք պատմություն գրած լինեին, անկարելի էր, որ չգիտենար Գանձակեցին։ Տե՛ս պատմություն Կիրակոս Գանձակեցվո, տպված Մոսկվայում, 1858 ամի։*

[1] *Երեմիա կաթողիկոս Հասան-Ջալալյանը ինչպես կարող էր գրել բոլոր մելիքների գործերը, քանի որ նա վախճանվեցավ 1700 թվականին, իսկ մելիքները գործում էին մինչև 1830 թվականները։ Վեհափառը հո չէ՞ր կարող երկնքում պատմագրությամբ պարապվել։*

[2] *Կարդա առաջին ծանոթությունը։*

[3] *Ահա՛ մի նոր պատմագիր ևս, որ երկնքումն է գրում։ Եսայի կաթողիկոս Հասան-Ջալալյանը վախճանվեցավ 1726 թվին, ի՞նչպես կարող էր գրել նա սկսյալ 1727 թվից հայոց մելիքների ռուսաց հետ ունեցած հարաբերությանց գործերը։*

ները, որ հաստատում էին այդ կալվածքները իբրև սեփականություն և այլն։

Ե. Վարդան վարդապետ վանահայր Գտիչ վանքի.

1) «Պատմություն մելիքաց Դիզակի և Վարանդի»։

2) «Դյուցազնական քաջագործությունը մելիքաց»։

3) «Ծագումն Փանահ ճըռ-խանի և ճըռ-Մելիք-Միրզախանի»։

4) «Իսրայել ճըռ կաթողիկոս և գործք յուր»։

Զ. Եղիա վարդապետ միաբան Ամարասայ վանքի.

1) «Սահմանք հայ մելիքաց»։ Որի մեջ գրված է եղել Ղարաբաղի մելիքների տիրած երկրների սահմանները, բերդերի թիվը և նրանց նկարագրությունները, ժողովրդի որքանությունը, գյուղերի անունները և բնակչաց թիվը, զորքերի քանակությունը և այլն։

Է. Ղևոնդ վարդապետ, վանահայր Ղևոնդեանց անապատի.

1) «Մելիք-Շահնազար Երրորդ»։ Որի մեջ գրված է եղել Մելիք-Շահնազարյանների տոհմի ծագումը և նրանց ժառանգների գործերը։

Տեսնո՞ւմ եք որքա՜ն առատություն... Ղարաբաղը որքա՜ն հարուստ է եղել իր պատմագիրներով և պատմություններով։ Եվ ի՜նչ բախտավոր պատմագիրներ, նրանք խմբով հայտնվում են միևնույն դարում, և իրանց գրքերի մեջ մի բան չեն թողնում, որի վրա ուշադրություն չդարձնեին,— մինչև անգամ վիճակագրություն...

Իսկ «Գաղտնիք»-ի հեղինակը օգուտ քաղե՞ց այդ գանձերից։

Դժբախտաբար,— ո՛չ։

Ինչո՞ւ։

Ահա ինչու։

«Բայց հարազատ մելիքները բոլոր ձեռագրերը և թղթերը արդեն կանխավ երեք մասն բաժանած և թաքցրած էին, յորոց առաջին մասը թաքցրած էին Գանձասարի և Խութա վանքի մեջտեղում, մի քարայրում և բերանը ամրացրած քարուկիր պատով և անհայտացրած. երկրորդ մասը Ջրաբերդի մի ստորերկրյա և անհայտ քարայրում, իսկ երրորդը Կյուլստան գավառի Հոռեկա վանքի մոտերում» (եր. 89)։

Ի՞նչ հարկ կար այդ անմեղ պատմությունները այդպես զանազան տեղերում երեք գերեզմանների մեջ թաղելու։

Այդ հարկը այդպես է բացատրում «Գաղտնիք»-ի հեղինակը.

«Երեք մասը բաժանելու պատճառն այն է, որ ոչ միայն ճըռ-խանն (Իբրահիմ-խանն) հետազոտում էր ոչնչացնել

այդ ձեռագրերը, այլև Մելիք-Շահնազար Գ-ն և ճըռ-մելիք Միրզախանն (Իբրահիմ-խանի կուսակիցները), քանզի այդ ձեռագրերում անաչառապես պատմագրված էին բոլոր ճռերի (անհարազատների) արարքը» (եր. 89)։

Ծիծաղելի՜ է։ Ղարաբաղի մելիքները իրանց ամրոցներով և անմատչելի բերդերով, իրանց անթիվ զորքերով ինչպե՞ս էին պահպանում մի ամբողջ երկիր, երբ նրանք անզոր էին 15 հատ գիրք պահելու։ Կամ այդ գրքերը մելիքների մոտ ի՞նչ էին շինում։ Եվ եթե նրանք այնքան հմուտ մարդիկ էին, որ հասկանում էին այդ գրքերի նշանակությունը, ինչո՞ւ երբ գաղթեցին դեպի Գանձակի և Վրաստանի կողմերը, չտարան գրքերը իրենց հետ, այլ թաղեցին գետնի տակ, որ փտեն։ Եվ վերջապես, մի՞թե այդ գրքերը մի-մի օրինակներ էին, որ թաղվելով գետնի տակ, մոռացվեցան և բոլորովին անհայտացան։

Դժբախտաբար մի-մի օրինակներ էին։ Ահա ինչ է ասում այդ մասին «Գաղտնիք»-ի հեղինակը.

«Հարկ է ասել, որ այս ձեռագիր գրքերն տակավին ընդօրինակված և ժողովրդի մեջ ցրված չեն (չէին), այլ հավաքված են (էին) Գանձասարի հնադարանում, քանզի թե Մելիք-Շահնազար Գ-ն և թե Իսրայել ճըռ-կաթողիկոսն հետամուտ եղած են (էին) բազմիցս անհայտացնել այդ ձեռագրերը։ Այս միջոցին դիմած են սոքա, որպեսզի եթե հնար է, յուրյանց մահից հետո պատմության մեջ չմնային յուրյանց վատ արարքներն, և ապագա սերունդներից ծածկեին յուրյանց ամոթը ու նախատինքը։ (Կարծես ամբողջ 15 գրքերը միայն Մելիք-Շահնազարի և Իսրայել կաթողիկոսի գործերի մասին գրած լինեին)։ Այսպես հետամուտ եղած էին ոչնչացնել այդ ձեռագրերը և բոլոր ճըռերն։ Ահա ձեռագրերը թաքցնելու պատճառներն» (եր. 91, 92)[1]։

---

1 Որպեսզի ցույց տա, թե իրավ թաքցրած են եղել պատմության գրքերը, Մակար վարդապետը յուր ծանոթության մեջ (եր. 89), ասում են թե նրանց մի մասը գտավ Բաղդասար միտրոպոլիտը, որոնց թվում գտնվում էր Եսայի կաթողիկոսի հեղինակած «Պատմութիւն Աղվանից» գիրքը և ուրիշ շատ ձեռագրեր, որք անհայտացած են Շուշու առաջնորդարանից Բաղդասար սրբազանից հետո։ (Որքա՞ն սիրում է Մակար վարդապետը գրքերի այդ անխնա կոտորածը։ Նրա մոտ ամեն ձեռագիր աշխատություն անհայտանում է... (Ճշմարիտ է, Բաղդասար միտրոպոլիտի օրերում մի Թուրք հովիվ լեռների ծերպերի մեջ գտել էր մի քանի եկեղեցական գրքեր, և սրբազանը նրան մի եզն տալով առել էր այդ գրքերը։

Այդ բոլորը Մակար վարդապետի թեքով կպցրած պատճառաբանություններն են...

Այսինչ ձեռնածուի և այնինչ խեղկատակի հիվանդության պատճառով ներկայացումը հետաձգվում է...

Բայց Մակար վարդապետի երևակայական պատմագիրները իրանց երևակայական պատմություններով, ոչ միայն հիվանդանում են, այլ գետնի տակ թաղվելով,— մեռնում են...

Ուրեմն, այլևս ի՞նչ մեղավոր է «Գաղտնիք»-ի հեղինակը, որ նա չկարողացավ իր խոստացած պատմական «անգին գանձերը» մեզ ավանդել, երբ այն բոլոր գրքերը, որ պետք է ծառայեին նրան իբրև աղբյուր, այդպես տարաբախտ կերպով ոչնչացան... և նրա ձեռքը չհասան...

Ամեն ինչ մտածել է Մակար վարդապետը «Գաղտնիք»-ի կեղծությունը ծածկելու համար, բայց մի բան է մոռացել։

«Գաղտնիք»-ի հեղինակ Աբրահամ Բեկնազարյանը («Հրաշագործ Ազրայելը»—Հոգեհան հրեշտակը) հո գիտեր հիշյալ գրքերի թաքցրած տեղերը։ Նա յուր ձեռքի տակ ուներ 7000 զինվորներ և 70—80 հսկաներ։ Իբրահիմ-խանը և նրա կռասակից ճրռ-մելիքներն» տերևի նման դողում էին նրա երկյուղից։ Նա ինքը Ղարաբաղի պատմությունն էր գրում։ Այդ գրքերը նրան շատ հարկավոր էին։ Ինչո՞ւ մի օր չվեր առեց յուր «վիշապներին», յուր

---

Բայց նրանց թվում ոչ Եսայի կաթողիկոսի «Աղվանից պատմությունը» կար և ոչ Ղարաբաղի վերաբերությամբ մի այլ պատմական աշխատություն։ Թե ո՞ր թվականին գտավ Բաղդասար միտրոպոլիտը Եսայի կաթողիկոսի «Աղվանից պատմությունը»— այդ մասին լռում է Մակար վարդապետը, և նրա լռության պատճառը կհասկացվի հետո։ Միայն այսքանը հայտնի է նրա խոսքերից, որ սրբազանը գտավ հիշյալ պատմությունը, երբ արդեն եպիսկոպոս էր և Ղարաբաղի միտրոպոլիտ։ Բաղդասարը եպիսկոպոս ձեռնադրվեցավ Եփրեմ կաթողիկոսից 1820 թ., իսկ Ղարաբաղի միտրոպոլիտ կարգվեցավ նույն կաթողիկոսից 1830 թվին։ Ուրեմն Մակար վարդապետի խոսքով, այդ թվականից հետո պետք է գտած լիներ միտրոպոլիտը Եսայի կաթողիկոսի «Աղվանից պատմությունը»։ Իսկ իմ գրասեղանի պահարանում այսօր կարելի է տեսնել Բաղդասար միտրոպոլիտի իսկական ձեռքով գրված քաղվածքները Եսայի կաթողիկոսի պատմությունից և այդ պատմության շարունակությունը, որ նա արել է այն ժամանակ, երբ ինքը տակավին վարդապետ էր, և յուր հորեղբայր Սարգիս վարդապետի հետ գտնվում էր Հաղպատա վանքում։ Ուրեմն այդ գրքի հետ ծանոթ էր նա նախքան 1820 թվականները, և ոչ Մակար վարդապետի հնարած գյուտից հետո։

Այդ ծանոթությունը չպիտի մոռանալ, որովհետև դա կբացատրի «Գաղտնիք»-ի հեղինակի մի քանի խարդախությունները, որ կտեսնենք հետո։

«առյուծներին» և յուր «կայծակներին» և չգնաց այդ գանձերը դուրս հանելու և թողեց, որ անհայտության մեջ ոչնչանային...

Դիցուք թե «Գաղտնիք»-ի հեղինակը չմտածեց այդ մասին։ Բայց նա ինքը Մաթուսաղայի տարիքն ուներ, ապրել էր համարյա երկու դար, ամեն ինչ յուր աչքով տեսել էր և ամեն գործողությունների մեջ անձամբ մասնակցել էր, և բացի դրանից, նա ինքը Գանձասարի Ներսես կաթողիկոսի մոտ անհայտ նյութեր էր ընդօրինակում յուր «Գաղտնիք»-ի համար (եր. 15)։ Այդ նյութերը ի՞նչ եղան, որ չմտան «Գաղտնիք»-ի մեջ։

Նրանց հետ էլ դժբախտություն պատահեց...

Երբ «Գաղտնիք»-ի հեղինակը հիվանդ դրված էր մահվան անկողնու մեջ, յուր որդի Ապրես Բեկնազարյանին շատ խրատներ տալուց հետո, հանձնեց նրան թանկագին ավանդը, որ նա արձանագրեր «Գաղտնիք»-ի մեջ։

Այդ խորհրդավոր րոպեն հետևյալ կերպով է նկարագրում որդի Բեկնազարյանը.

«Հետո յուր արխալուղի պինդ կարած ծոցաչեբի կարերը քանդելով հանեց մի կարմիր ծրար և զայն ինձ հանձնելով ասաց.

Եվ դու, սիրելի իմ որդյակ Ապրես, ա՛ռ այս ծրարը, դորա մեջ են Մեծին Պետրոսի Ղարաբաղի հարազատ մելիքներին գրած, Եկատերինե Բ կայսրուհուն, Աղվանից կաթողիկոսին և մելիքներին ուղղված պայմանաթղթոց պատճենները, և սոցա առ նոցա գաղտնի գրած պայմանաթղթոց պատասխանի ընդօրինակությունները, Արղության Հովսեփ եպիսկոպոսին, Աշտարակեցի Ներսես եպիսկոպոսին, Մինաս-Աղա Լազարյանցին, Մադաթովին, Մելիք-Վանուն, մեծ Երմալովին, Ներսես եպիսկոպոսի ձեռով հայերեն գրել տված և ինձ ղրկած ամենածածուկ և վտանգավոր նամակներն։ Այս բոլոր թղթակցությունները, որք վերաբերվում են ռուսաց հայոց հետ կապած պայմանաց և գաղտնի ճարաբերությանց՝ ժամանակագրական կարգաւ զետեղիր քո «Գաղտնիք Ղարաբաղի» պատմության մեջ, որովք թե հետաքրքիր կլինի ընթերցողաց քո պատմությունդ և թե չեն կորչիր, ինչպես կորած են Ղարաբաղի ձեռագիր պատմությունները։ (Նրանք, որ դու ինքդ թաղեցիր գետնի տակ...) Որքա՜ն լույս կսփռեն ապագա հայ պատմության ինչպես «Գաղտնիք Ղարա-

*բաղին», նույնպես այդ նամակներն։ Բայց զգուշացիր, որ քո ձեռագիր պատմության գլխին էլ փորձանք չպատահի» (եր. 388)։*

*Փորձանքը պատահեց... Մակար վարդապետը «Գաղտնիք»-ի բնագիրը կորցրեց...*

*Իսկ ի՞նչ եղան այն «ամենածածուկ» և «վտանգավոր» նամակները, ի՞նչ եղան այն գաղտնի հարաբերության պայմանագրերը, որ ամփոփված էին «կարմիր ծրարի» մեջ։*

*«Կարմիր ծրարի» հետ էլ փորձանք էր պատահել...*

> *«Երբ բացի այն ծրարը,— շարունակում է որդի Բեկնազարյանը,— որ նամակների ընդօրինակությունը զետեղեի այստեղ («Գաղտնիք»-ի մեջ), աստվա՜ծ իմ, ի՞նչ տեսա։ Տեսա, որ մի տառ անգամ մնացած չէր թղթոց վրա։ Թղթերն քրտինքներից փտած և հաճախակի շարժումներից տրորված և տառերն բոլորովին անհայտացած էին, քանզի գիշեր և ցերեկ հայրս միշտ յուր վրա էր կրում այդ ծրարը (ուրեմն արխալուղով էր քնում) և ինձանից անգամ զգուշությամբ պահում։ Լալով այրեցի ակամա այդ անօգուտ թղթերը հանդերձ ծրարովն» (եր. 390)։*

*Շա՜տ ապրի Աբրես Բեկնազարյանը, որ այդ հոգսից էլ ազատեց Մակար վարդապետին...*

*Տեսնո՞ւմ եք «Գաղտնիք»-ի հեղինակը ինչպես ճարպիկ կերպով դուրս պրծավ յուր խոստացած պատմական թանկագին գանձերը մեզ մատակարարելու պարտավորությունից...*

*Պարսից երեք թագավորների մոտ ամենաբարձր պաշտոններ կատարող Աբրահամ Բեկնազարյանը, 10.000 զորքերի հրամանատար Աբրահամ Բեկնազարյանը, Ֆաթալի-շահի ներքինապետ Աբրահամ Բեկնազարյանը՝ մի արկղիկ անգամ չէ ունեցել այդ գանձերը պահելու համար... Եվ ակսյալ Պետրոս Մեծի օրերից, հայոց և ռուսաց 127 տարվա (1701—1828) հարաբերության թղթակցությունները պահում էր յուր* արխալուղի *ծոցի գրպանում... մի փոքրիկ կարմիր ծրարի մեջ...*

*Եթե Մակար վարդապետը տեսած լիներ այդ խոշոր հատորները, որ տպված են ռուսաց լեզվով և բովանդակում են իրանց մեջ հայոց և ռուսաց հարաբերությունների ոչ թե ամբողջ թղթակցությունները, այլ նրանց ցուցակները միայն, և որ կոչվում են* «Собрание актов, относящихся к обозрению истории армян-

ского народа»—այդ տեսնելուց հետո կարծեմ Մակար վարդապետը մի փոքր պիտի կարմրեր, մտածելով, որ թղթերի այդ ամբողջ արխիվը անկարելի էր ծոցի գրպանում պահել...

Հարկավոր է կրկին վերադառնալ դեպի վերևում հիշված 7 պատմագրները և դեպի նրանց թվով 15 գրավոր վաստակները, որոնք այնպիսի տարաբախտ վիճակի ենթարկվեցան,— ասում եմ հարկավոր է այն նպատակով, որ դրանով պետք է բացատրվի «Գաղտնիք»-ի հեղինակի մի նոր օչինչբազություն։ Ուրիշ ավելի հարմար բառ հազիվ թե կարելի է գտնել մի ննդավոր վարմունք արտահայտելու համար։

Այն բոլոր նախամտածումները,—15 պատմական մատյանների զանազան տեղերում թաքցնելը և անհայտացնելը,— նրանց միայն մի-մի օրինակ լինելը,—այդ գրքերի Բաղդասար միտրոպոլիտի ջանքերով գտնված օրինակների դարձյալ անհայտանալը Շուշիի առաջնորդարանի գրադարանից,— Աբրահամ Բեկնազարյանի գրպանում մնացած թղթերի ոչնչանալը,— այդ բոլորը կրկնում եմ, սկսյալ 15 պատմագրների թաղումից, մինչև «Գաղտնիք»-ի բնագրի թաղումը, որ կատարվեցավ Մակար վարդապետի ձեռքով,— այո՛, այդ բոլորն ինքնըստինքյան, ծագեցնում է մի միտք, մի խորին տարակուսանք. տեր աստված, ի՞նչ մի ճակատագրական անեծք կար այդ դժբախտ գրավոր վաստակների վրա, որ այսպես ցավալի կերպով դատապարտվում են կորստյան, որ այսպես ոչնչանում և անհետանում են...

Այդ խնդիրը պարզելու համար, նախ՝ պետք է պարզել այն հարցը, արդյոք հիշյալ 15 մատյանները և նրանց 7 պատմագրների խումբը որևէ ժամանակ գոյություն ունեցե՞լ է, թե՞ ոչ։

7 պատմագիրների մեջ միայն երկու անուններ կան, որ մեզ բավական հայտնի են։ Մնացած հինգը ես թողնում եմ Մակար վարդապետին ապացուցանել, արդյոք որևէ ժամանակ գոյություն ունեցե՞լ են, կամ պատմություն գրե՞լ են, թե ոչ։

Մեզ հայտնի անունները դրանք են.

1) Երեմիա կաթողիկոս Հասան-Ջալալյան, գահակալ Գանձասարա վանքի, օծվեցավ 1675 թվին, վախճանվեցավ 1700 թվին։

2) Եսայի կաթողիկոս Հասան-Ջալալյան, գահակալ Գանձասարա վանքի, օծվեցավ 1701 թվին, վախճանվեցավ 1726 թվին։

Վերջինը առաջինի եղբոր որդին էր։

Առաջինը՝ Երեմիա կաթողիկոսը, արդյոք գրե՞լ է պատմու-

թյուն թե չէ գրել, հայտնի չէ։ Նրա գրավոր վաստակներից մեր ձեռքը ոչինչ չէ հասել։ Այդ ես թողնում եմ Մակար վարդապետին պարզաբանել։

Երկրորդը՝ Եսայի կաթողիկոսը, իրավ է, գրել է պատմություն։ Յուր աշխատությունը սկսել է նա 1036 թվականից և հասցրել է մինչև 1711 թվականը[1]։

Դա միևնույն արժանահիշատակ անձնավորությունն է, որ Ղարաբաղի մելիքների Պետրոս Մեծի հետ ունեցած քաղաքական հարաբերությունների մեջ խիստ եռանդուն դեր էր կատարում։ 1722 թվին դա էր, որ Ղարաբաղի հայոց զորքերով, վրաց Վախտանգ թագավորի հետ, Գանձակի մոտ սպասում էին Պետրոս Մեծի գալըստյանը։ Իսկ երբ Պետրոս Մեծը զանազան հանգամանքների պատճառով վերադարձավ Դերբենդից,— դարձյալ դա էր, որ 1724 թվին, գնաց Ռուսաստան և անձամբ տեսնվեցավ կայսրի հետ։ Վերադարձին օծեց նա Աստրախանի հայ գաղթականների կառուցած մայր եկեղեցին։ Յուր վերջին գործողությունները գրեց նա առանձին գրքույկով, որը հիշատակարանի ձև ունի։

Մակար վարդապետի ստեղծած մյուս 6 պատմաբաններին, հանդերձ իրանց ստվար մատենագրությամբ, մենք կզիջենք հայր սուրբին, եթե գոնե Եսայի կաթողիկոսի աշխատություններից մի բան առած և մեզ հաղորդած լիներ։

Բայց ի՞նչ է ստիպել նրան այսպես անխնա կերպով ոչնչացնել յուր ստեղծած պատմագիրներին։

Շատ հասկանալի է, թե ի՛նչը։—Որպեսզի «Գաղտնիք»-ից շատ բան չպահանջվի։ Որպեսզի չասեն, լա՜վ, այդ բոլորը ինչ որ կա «Գաղտնիք»-ի մեջ, մեզ համար գաղտնիք չէր, նախքան այդ գրքի լույս տեսնելը,— ուրեմն «Գաղտնիք»-ը ի՞նչ գաղտնիքներ երևան հանեց, ո՞ւր մնացին նրա խոստացած «թանկագին գանձերը... նրա խոստացած «ամենավտանգավոր գաղտնիքները»... Որպեսզի Մակար վարդապետը իրավունք ունենա ասելու, թե այդ բոլորը կային և կլինեին, բայց ի՞նչ արած, որ պատմության 15 գրքեր անհայտացան, գետնի տակ թաղվելով, իսկ ինչ որ պահվել

---

[1] Եսայի կաթողիկոսի լիակատար պատմությունը մեր ձեռքը չէ հասել. Նրա խիստ կրճատած համառությունը Բաղդասար միտրոպոլիտը 1839 թվին տպագրել տվեց Շուշի քաղաքում հետևյալ վերնագրով՝ «Պատմություն կամ հիշատակ ինչ-ինչ անցից՝ դիպելոց յաշխարհին Աղուանից, համառոտագրեալ ի սրբազնակատար կաթողիկոսեն Աղուանից ի տեր Եսայ-Հասան-Ջալալեանց, ի թվականին հայոց ՌՃԿ, իսկ ի թվականի տեառն մերոյ փրկչին Յիսուսի 1711»։

էր Աբրահամ Բեկնազարյանի արխալուղի ջիբում,— այն էլ մեր մեղքից փտեց, ոչնչացավ...

Պրծա՜վ, գնաց...

Մակար վարդապետը իրան մատնած կլիներ, եթե մի որևիցե հայտնի աղբյուր ցույց տար յուր աշխատության, այն աղբյուրները ուղղակի կերպով պետք է հակառակեին այն բոլոր առասպելաբանություններին, այն բոլոր անների աղավաղումներին, որ նա արել է «Գաղտնիք»-ի մեջ։ Այդ է պատճառը, որ նա հիշում է այնպիսի երևակայական պատմաբանների և պատմությունների անուններ, որոնք երբեք գոյություն չեն ունեցել, և որոնց հետ անկարելի կլիներ համեմատություններ անել կամ ստուգել «Գաղտնիք»-ի առակաբանությունները։

Մակար վարդապետի վարմունքը նմանում է կաքավների վարմունքին, որոնք որսորդից փախչելու միջոցին՝ իրենց գլուխները թաղում են ձյունի մեջ և անշարժ կանգնում են, կարծելով, թե իրանք որսորդին չեն տեսնում, որսորդն էլ նրանց չի տեսնի։

Կրիտիկայի հալածանքից ազատվելու համար Մակար վարդապետը աշխատել է երևակայությամբ բոլոր պատմագիրներին թաղել զանազան տեղերում, որպեսզի կատարված խարդախությունները ծածկվեն։ Բայց նա մոռացել է, որ դեռևս կան և մնացել են շատ աղբյուրներ, որոնք կարող են երևան հանել նրա յուրաքանչյուր տողի կեղծությունը։

Եվ այսպես, «Գաղտնիք»-ի պատմական մասը, ոչ մի նոր և մեզ անհայտ աղբյուր չունի։ Այդ մասը առնված է «Խամսայի մելիքություններից», այն զանազանությամբ միայն, ինչ որ փոփոխել է Մակար վարդապետը և ինչ որ ավելացրել կամ պակասացրել է դրանք կամայական զեղծումներ և անխիղճ մեղանչումներ են ճըշմարիտ պատմության դեմ։ Ես կարող էի համեմատություններով ցույց տալ այդ, բայց իմ հոդվածը առանց դրան էլ շատ երկարացավ։ Բավական է հիշել այդքանը միայն, որ հայր սուրբը յուր ստեղծած 70—80 հերոսներին, որոնց հետ ծանոթացանք նախընթաց գլուխներում, զոռով մտցրել է այն բոլոր նշանավոր անցքերի և գործողությունների մեջ, որոնք կատարվել են Ղարաբաղի պատմական կյանքում։ Ամեն տեղ վխտում են այդ զանազան «կայծակներն» ու «կարկուտները», ամեն տեղ կան այդ զանազան «վիշապներն» ու «դևերը» և ամեն քաջություն, ամեն սքանչելիք նրանց ձեռքով է կատարվում։ Մակար վարդապետը այն աստիճան ան-

խիղճ է գտնվել, որ խլել է Ղարաբաղի բոլոր մելիքների փառքը և հատկացրել է յուր դրացի գյուղացիներին։

«Դաղտնիք»-ը չկարդացողների համար ես մի օրինակով կբացատրեմ այդ։

Մեզանից ամեն մեկին հայտնի է Խորենացու պատմության բովանդակությունը։ Երևակայեցեք մի այսպիսի բան. հանկարծ մեկը 6-րդ կամ 7-րդ դարում դուրս է գալիս դիցուք Տարոնի Հացիկ գյուղից, և յուր դրացի գյուղացիներից ստեղծում է մի խումբ հերոսներ, և առանց ուշադրություն դարձնելու ժամանակագրության վրա, յուր ստեղծած հերոսների ձեռքով կատարել է տալիս այն բոլոր գործողությունները, ինչ որ կատարել են Արշակունի թագավորները կամ նրանց նախարարները իրանց ամբողջ պատմական կյանքում։ Մի այսպիսի վարմունք շատ հեշտ է մի խելագար պատմագրի համար, որովհետև նա Խորենացու գիրքը աչքի առջև ունի, պատմական փաստերը հայտնի են, միայն հարկավոր է փոխել անձնավորությանց անունները, օրինակ, Տիգրանի, Արտաշեսի, Արշակի և մյուս թագավորների անվանց տեղ դնել յուր ստեղծած հերոսների անունները, և ամենայն չափազանցությամբ նրանց կատարել տալ առաջինների գործերը։ Դրանից, շատ հասկանալի է, պետք է առաջ գան աններելի անախրոնիզմներ,—ժամանակագրական վրիպումներ,—որովհետև միևնույն անձնավորությունը չէր կարող կատարած լինել թե Տիգրան Բ-ի և թե Արշակ Բ-ի գործերը, որոնք միմյանցից մի քանի դար հեռավորություն ունեին։ Այդ ոչինչ։ Խելագար պատմագիրը ձգձգում է յուր հերոսների հասակը և նրանց մի քանի դար կյանք է տալիս։

Նույնպես վարվել է Մակար վարդապետը։

Նրա բոլոր հերոսները չեն մեռնում, դարավոր կյանք ունեն։ Նրանք ներկա են Ղարաբաղի մելիքների բոլոր գործողությունների մեջ, սկզբից մինչև վերջը։

Նա առել է «Խամսայի մելիքություններից» պատմական փաստերը և, փոփոխելով, չափազանց ձև տալով, կատարել է տվել յուր խնածախցիներին։ Այնպես որ, «Գաղտնիք»-ի մեջ Ղարաբաղի իսկական մելիքները և նրանց յուզբաշիները ոչ միայն սաստիկ նսեմանում են, այլ բոլորովին անհայտանում են։ Մարդը չգիտե, թե ո՞ւր էին և ի՞նչ էին շինում մելիքները, երբ խնածախցիք հրաշքներ էին գործում։ Ամեն անցքերի մեջ միայն նրանք են երևում, սկսյալ Ս. Պետերբուրգից մինչև Թեհրան և Թեհրանից մինչև Թավրիզ և Թիֆլիս... Ամեն տեղ տարածված են նրանք և բոլոր

գործողությունների ու հարաբերությունների կապերը նրանց ձեռքումն է... Դրանք, մինչև անգամ նստում են թագավորների, թագավորազների և պետական բարձր անձիքների մոտ, նրանց հետ վիճում են, նրանց հանդիմանական խոսքեր են ասում և նրանց հետ դաշնակցական պայմաններ են կապում...»

Ես Մակար վարդապետի 70—80 հերոսներին մեծ զիջումներով իրան կնվիրեի, եթե գոնե մեկի անունը նա ցույց տար մի որևէ պատմության մեջ։ Ղարաբաղի մասին շատերն են գրել, բայց ոչ մեկի մեջ Մակար վարդապետի «Զարբազանների» և «Վիշապների» անուններ չեն երևում։

Եվ վերջապես այդ հսկաները, ինչպես վերևում հիշեցի, դարավոր կյանք ունեին, ապրեցին 1700 թվականներից մինչև 1840-ական թվականները[1], և վերջին թվականներից կենդանի Ղարաբաղում հազարավոր մարդիկ կան։ Ինչպե՞ս եղավ, որ հսկաներից ոչ մեկին չտեսան...

«Գաղտնիք»-ի պատմական մասը այսպես աղավաղված է։

Մնում է մի քանի խոսք ասել այն անթիվ թղթակցությունների մասին, որոնցով լի է այդ գիրքը։

Թղթակցությունները «Գաղտնիք»-ի ամենածիծաղելի կողմն են ներկայացնում։ Ս. Պետերբուրգի և Թեհրանի դիվաններից որքան պաշտոնական թղթեր են գրվում, որոնց խորհուրդը պետք է գաղտնի պահվեր, բոլորի կամ բովանդակությունը, կամ ամբողջ օրինակները մնում են «Գաղտնիք»-ի մեջ։ Ռուս կամ պարսիկ պաշտոնակալները ինչ թղթեր են գրում իրանց կառավարություններին,— նրանց օրինակները դարձյալ մտնում են «Գաղտնիք»-ի մեջ։ Հայոց կաթողիկոսների, եպիսկոպոսների, մելիքների և այն բոլոր անձանց, որոնք քաղաքական որևէ դեր են խաղում, թղթակցությունները դարձյալ ընդարձակ տեղ են բռնում այդ գրքում։ Անդրկովկասի խաները ծածուկ նամակներ են գրում պարսից թագավորներին,— նրանց պատճենններն էս կան այստեղ։— Մի խոսքով չէ կատարվում ոչ գաղտնի գրավոր հարաբերություն, որ «Գաղտնիք»-ից ծածուկ մնար։ Ամեն տեղ «Շեյթաններ» (սատանաներ), ամեն տեղ «Դևեր» (դևեր) կան և խաբարը իսկույն տանում են...

Մարդ զարմանում է, թե որքան հեշտացրել է Մակար վարդապետը այդ ժամանակների հաղորդակցությունները։ Երբ էջմիած-

[1] Ես 1840-ական թվականներն եմ վերառնում, որովհետև այդ ժամանակ է գրվում «Գաղտնիք»-ը։

նի կաթողիկոսին ոչ թե ամիսներ, այլ տարիներ էին հարկավոր մի նամակ Վաղարշապատից Գանձասարա վանքը հասցնելու համար,— ընդհակառակն, «Գաղտնիք»-ի մեջ ամեն մի նամակ Ս. Պետերբուրգից կամ Մոսկվայից թռչում է մի քանի րոպեում և հասնում է Թեհրան կամ Թավրիզ։ Կարծես աղավնիները կտուցներով բռնած, օդի միջով են տանում։

Այդ օդասլաց աղավնիները Մակար վարդապետի «Շեյթանթունի»-ներն, «Կաքե-Ջաքի»-ները և զանազան «Լրտես-Սուլի»-ներն են, որոնք աներևույթ ուրվականների նման տարածվում են ամեն կողմերում և ամեն տեղերից տեղեկություններ են հաղորդում։ Իսկ այս բոլոր տեղեկությունների շտեմարանը և կենտրոնը «Գաղտնիք»-ի հեղինակն է և յուր գիրքը։

Այդ բոլորը կարդալով այնպիսի տպավորություն է գործում թե խաբեբաների մի ամբողջ հասարակություն միաբանված են մի հրեշավոր կեղծություն ստեղծելու համար։

Ինչպե՞ս են խմբագրվում այդ կեղծ թղթակցությունները։

Շատ հեշտ կերպով։

Ժամանակների և կառավարությունների պատմական հարաբերությունները հայտնի են, և նրանց համեմատ նամակներ են գրվում։

Օրինակ, ռուսները տիրել են Անդրկովկասի մի մասը։ Այդ, իհարկե, հաճելի չէր կարող լիներ պարսիկ թագավորին, որը իրան այդ երկրի տերն էր համարում։ Պարսից թագավորը դիտավորություն ունի պատերազմել ռուսների հետ և հետ խլել կորցրած երկըրները։ Առաջ, քան պատերազմի հայտնելը, պարսից թագաժառանգը, Աբաս-Միրզան—աշխատում է Անդրկովկասի խաներին և Դաղստանի լեռնաբնակներին նախապատրաստել կամ ապըստամբեցնել ռուսների դեմ։ Նրանց ծածուկ հրահանգներ կամ շըրջաբերականներ է ուղարկում։ Այդ դեպքում ի՞նչ կգրե Աբաս-Միրզան յուր կրոնակիցներին։ Շատ հասկանալի է, թե ինչ կգրե։

Բայց որքան էլ հարմարեցված լինեին այդ թղթղակցություննե-րի բովանդակությունը կատարված անցքերի և հանգամանքների հետ, այնուամենայնիվ, նրանց ձևը, լեզուն, ոճը, շարադրությունը իսկույն ցույց են տալիս Մակար վարդապետի բոբիկությունը դիվանական հմտությունների մեջ, որը պակասում է նրան՝ կեղծը իսկականին նմանեցնելու համար։ Հասարակ լրտեսը թագավորին ուղղակի նամակներ է գրում, այն էլ մի այնպիսի անփույթ ձևով, որը ընկերը ընկերին չի համարձակվիլ գրել։ Մի՞թե հասարակ

մահկանացուներ կարող են պարսից թագավորին նամակներ գրել։ Նրան միայն կարելի է խնդիրքով դիմել, շարելով հազար ու մեկ փայլուն տիտղոսներ, որ կապված են նրա բարձր անվան հետ։ Այդ ձևերը, այդ տիտղոսները, իհարկե, չէր կարող գիտենալ Մակար վարդապետը, որը, ինչպես երևում է, յուր կյանքում ոչ մի պաշտոնական գրություն չէ կարդացել։

«Գաղտնիք»-ի մեջ զետեղված բոլոր թղթակցությունները կեղծ են։ Կե՛ղծ են նախ այն պատճառով, որ այնքան թղթակցություններ, որոնք կառավարությունների և մասնավոր բարձր պաշտոնականների գաղտնի հարաբերությանց արդյունք են,— չէին կարող անմիջապես «Գաղտնիք»-ի հեղինակի ձեռքը հասնել։ Ո՞վ էր նա և ի՞նչ էր նա, որ բոլոր հակառակ կողմերի խորհրդապահը և արխիվը լիներ։ Երկրորդ, այդ թղթակցությունների թե խմբագրությունը և թե մատակարարությունը կատարվում է այնպիսի անձանց ձեռքով, որոնք երբեք գոյություն չեն ունեցել։ Դրանք որպես ցույց տվինք Մակար վարդապետի ստեղծած մարդիկ են։ Եթե այդ անձնավորությունները գոյություն չեն ունեցել, բոլորովին տրամաբանական կլիներ մտածել, որ նրանց գործողությունների ևս չէին կարող գոյություն ունենալ։ Ինչպե՞ս կարող է մեկը նամակներ գրել, կամ նամակներ տեղ հասցնել, երբ նրա եսը հավասար է զրոյի։ Կարելի է մեկի կողմից նամակներ շարադրել, իսկ այդ լինում է վեպերի մեջ և ոչ թե պատմության մեջ։

«Գաղտնիք»-ի բազմաթիվ թղթակցությունների մեջ միայն երկու նամակ կա, որ իսկական են։ Դրանցից մեկը Մելիք-Ջումշուդ Մելիք-Շահնազարյանի նամակն է, որ գրված է 1806 թ. դեկ. 2-ին Շուշի քաղաքում (եր. 286—291), իսկ մյուսը՝ Գյուլիստանի Մելիք-Աբովի նամակն է, որ գրված է 1807 թ. նոյեմ. 23-ին Թիֆլիսում (եր. 292—296)։ Թե առաջին և թե երկրորդ նամակը ուղղված են Աբաս-Մինաս Լազարյանի հասցեին Ս. Պետերբուրգ։

Արդյոք ինչպե՞ս են մտել այդ նամակները «Գաղտնիք»-ի մեջ — այդ գաղտնիքը ես թողնում եմ լուծե պ. Երիցյանը, որովհետև նույն նամակների ռուսերեն թարգմանությունը տպված է նրա «Кавказская старина» ամսագրի մեջ, 1872 ամի, № 2։

Արդյոք պ. Երիցյանը երկնքում բաժանորդներ ունե՞ր կամ «Գաղտնիք»-ի հեղինակ Աբրահամ Բեկնազարյանը ստանու՞մ էր նրա ամսագիրը մյուս կյանքում...

Է

«Գաղտնիք»-ի մեջ ինչ որ ավելի հետաքրքիր է, ինչ որ իսկապես կարող է պատմական արժեք ունենալ,— դա է մելիքների տոհմային ազգաբանությունը։

Ղարաբաղի մելիքությունները ներկայացնող հինգ իշխանական տների ազգաբանությունը, հանդերձ իրանց մանրամասն ճյուղագրության, զետեղված են «Գաղտնիք»-ի մեջ (եր. 180—208)։

Կարդալով այդ ճյուղագրությունները, մարդ զարմանում է, թե «Գաղտնիք»-ի հեղինակը որտեղի՞ց և ի՞նչ աղբյուրներից առել է անունների այն երկար շարքը, որոնց սկիզբը կապվում է Աղվանից ամենահին թագավորների հետ, իսկ վերջը հասնում է մինչև մեր ժամանակները։

«Գաղտնիք»-ին նայելով, Ղարաբաղի բոլոր մելիքական տները թագավորական ծագումից են, և բոլորն էլ միևնույն տոհմից։

Այդ ճյուղագրություններին նախանձախնդիր և ջերմ փափագով որոնող է եղել Ղարաբաղի միտրոպոլիտ Բաղդասար եպիսկոպոս Հասան-Ջալալյանը։ 1828 թվին, սեպտեմբերի 20-ին նորին սրբազանությունը մի նամակով դիմում է «Գաղտնիք»-ի հեղինակ Աբրահամ Բեկնազարյանին և, ի միջի այլոց հայտնում է.

> «...Ես մտադիր եմ տպագրել տալ Ղարաբաղի և Աղվանից բոլոր պատմությունները և հրապարակավ տալ աշխարհին Ղարաբաղի հարազատ մելիքների ծագումը, որի առաջին օղակն սկիզբն առած է Առանից (Աղվանից առաջին իշխանից) և վերջին օղակն հասած է մեր օրերն։ Բայց որովհետև դու երկար ժամանակ արտագրած ես այդ բոլոր պատմությունները Գանձասարի Ներսես կաթողիկոսի մոտ, որովհետև քո գիտությամբ թաքցրած են այդ անգին գանձերը (ընթերցողներին հայտնի երեք տեղերում) և որովհետև այժմ իմ ձեռքում չունի այդ ձեռագիրները՝ վասն որո դիմում եմ քեզ։ Լուսահոգի Սարգիս կաթողիկոսն[1] վախճանվելու ժամանակ ինձ պատվիրեց փութով տպագրել տալ այն ձեռագիր պատմությունները. երբ հարցրի, թե ո՞ւր են այդ ձեռագիրներն,— նա պատասխանեց.— «Այդ գրքերը երեք տեղերում թաքցրած են... Աճապարիր Ազրայելի («Գաղտնիք»-ի հեղի-

[1] Սարգիս կաթողիկոսն Սարգիս միտրոպոլիտի ազգականն էր, նույնպես Հասան-Ջալալյան տոհմից, վախճանվեցավ 1828 թվին և նրա հետ վերջացավ Աղվանից կաթողիկոսությունը։

նակի) մոտ ղրկել Փիլ-Առուշանը և տեղեկանալով հանել տալ այդ ձեռագիր պատմությունները, որպեսզի չոչնչանան հողի կերակուր լինելով...»։ Արդ, սիրելի Բեկնազարյան, եթե դու անկարող կլինես փութով Ղարաբաղ, մեզ մոտ գալ՝ գոնե նամակաբերիս ձեռնով գրիր ինձ այն ձեռագրերի թաքստյան երեք տեղերը, բայց հականե հանվանե և մերձակա նշաններով և գտնելը դյուրացնող առարկաները մատնանիշ անելով» (եր. 386, 387)։

«Գաղտնիք»-ի հեղինակը այդ նամակը ստանում է այն ժամանակ, երբ արդեն հիվանդ էր և նույն հիվանդությամբ վախճանվեցավ նա։

Բայց չնայելով, որ նա գիտեր ձեռագրերի թաքստյան տեղերը, այսուամենայնիվ, պատվիրեց որդուն, Ապրես Բեկնազարյանին, պատասխանել մի այսպիսի անորոշ ձևով.

«Իմ մահից հետո Փիլ-Առուշանի ձեռոք գրիր Բաղդասար սրբազանին, որ ես ականատես եղած չեմ այն ձեռագրերի թաղած տեղերին, այլ միայն հաճախակի լսած եմ Մելիք-Մեժլումից, Մելիք-Աբովից, Պարխամազ-Հովսեփից, Տեր-Մահրասայից և Տեռնմազ-Պելլուից, որ գրերի առաջին մասն թաղած է Գանձասարի և Խութա վանքի միջև մի քարայրում, որի մուտքն փակված է քարուկիր պատով, երկրորդ մասն Ջրաբերդի մելիքարանի (՞) տակ, իսկ երրորդ՝ Հոռեկա վանքի մոտերում» (արի ու գտիր). (եր. 389)։

Այդ երկու նամակներից երևում է, որ մինչև 1828 թվականի սեպտեմբերի 20-ը, ոչ Բաղդասար միտրոպոլիտը և ոչ էլ «Գաղտնիք»-ի հեղինակ Աբրահամ Բեկնազարյանը չեն տեսել թաղած պատմագրերը և նրանցից օգուտ չեն քաղել։

Այդ երկու նամակներից երևում է և այն, որ Բաղդասար միտրոպոլիտի գլխավոր նպատակը՝ թաղած ձեռագրերը գտնելու վերաբերությամբ, կայանում էր առավելապես նրանում, նախ որ տպագրել տա, որպեսզի գրականության սեփականություն դառնան, երկրորդ, ինչպես ինքը գրում է, որ կարողանա «հրապարակավ ցույց տալ աշխարհին Ղարաբաղի հարազատ մելիքների ծագումն, որի առաջին օղակն սկիզբն առած է Առանից և վերջին օղակն հասած է մեր օրերը»։

Ապացուցանել Ղարաբաղի մելիքների վաղեմի հնադարյան ծագումը, որ նրանք շառավիղում են Աղվանից առաջին թագավոր Առանից—այդ խնդիրը Բաղդասար միտրոպոլիտի հետաքրքրու-

*թյան համար ոչ միայն պատմական նշանակություն ուներ, այլ առավել գործնական նշանակություն ուներ։ Ինչո՞ւ։*

*Ռուսները նոր են տիրել Ղարաբաղը։ Ազնվականների և ժառանգությունների որոշելու խնդիր էր ծագել։ Թուրք խաները և թուրք բեկերը, մի կողմից, հայոց բեկերը և հայոց մելիքները մյուս կողմից, սաստիկ մաքառում են միմյանց հետ։ Յուրաքանչյուրը աշխատում է յուր տոհմային գերազանցությունը և յուր իրավունքները ապացուցանել նոր տիրող կառավարության առջև[1]։ Այդ բոլորը ստիպում էր Բաղդասար միտրոպոլիտին ավելի հիմնավոր տեղեկություններ ունենալ մելիքների ծագման մասին, մանավանդ այն պատճառով, որ այդ ժամանակ թե Բաղդասար միտրոպոլիտի, որպես Աղվանից բարձր հոգևոր ներկայացուցչի, և թե էջմիածնի կաթողիկոսի տված վկայությունները հայոց ազնվականների ծագման մասին՝ կառավարությունը ընդունում էր իբրև վավերական վկայական։*

*Բայց ի՞նչ ենք տեսնում։*

*Հենց միևնույն տարվա մեջ, երբ Բաղդասար միտրոպոլիտը յուր առաջարկություններով դիմում է «Գաղտնիք»-ի հեղինակին, այդ գիրքը արդեն գրված և վերջացված էր, և նրա մեջ կարգով արձանագրված կային Ղարաբաղի բոլոր հինգ տիրապետող մելիքների թե ազգաբանությունը և թե նրանց ծագման ճյուղագրությունները, ճիշտ նույն ձևով, որպես պահանջում էր Բաղդասար միտրոպոլիտը,— այսինքն՝ սկսյալ Աղվանից առաջին թագավոր Առանից և հասցրած մինչև Բաղդասար միտրոպոլիտի օրերը։ Բոլորը պատրաստ էր։ Եվ «Գաղտնիք»-ի հեղինակին մի այլ ավելի բարեհաջող առիթ չէր կարող ներկայանալ, քան թե այն, որ առաջարկում էր Բաղդասար միտրոպոլիտը։ Սրբազանը թե տպարան ուներ և թե միջոցներ նրա պատմությունը տպագրելու համար։ Բայց «Գաղտնիք»-ի հեղինակը յուր պատմության մասին լռում է (երևի նա Մակար վարդապետի համար էր պահում...) և փոխանակ յուր ձեռքում ունեցած արդեն պատրաստի պատմությունը սրբազանին ուղարկելու, նրան ցույց է տալիս գետնի տակ թաղված երևակայական պատմությունների երևակայական տեղերը...*

---

*[1] Հենց այդ ժամանակներում Միրզա-Ջամալը և Միրզա-Ադիգեոզալը գրեցին Շուշի նորաբուսիկ խանի պատմությունը, որոնց ծագման սկիզբը հասցրին մինչև Սամար-Ղանդի թագավորները, իսկ Բաքուի Միրզա-Մուհամմեդ-խանի որդի Աբասղուլի բեկը գրեց Շիրուանի խաները և Դաղստանի տիրապետողների պատմությունը։*

Այդ այդպես։

Իսկ մյուս կողմից՝ գտնում ենք նույն ազգաբանությունները, նույն ճյուղագրությունները, նույն ձևով կազմված Բաղդասար միտրոպոլիտի աշխատությունների մեջ։ Եվ ե՞րբ — շատ տարիներ առաջ, քան նրա նամակով «Գաղտնիք»-ի հեղինակին դիմելը։ Եթե նրա մոտ կար այդ, այլևս ի՞նչ կարիք ուներ Բեկնազարյանին դիմելու։

Ահա՛ մի հանելուկ ևս, որ լուծելու համար պետք է նախ կարդալ երկուսի համեմատությունները։

Ես դնում եմ առաջ Բաղդասար միտրոպոլիտի կազմած Աղվանից թագավորների, Աղվանից իշխանների և Հասան-Ջալալյանների տոհմի ազգաբանությունը, իսկ հետո նույն ազգաբանությունը, որ տպված է «Գաղտնիք»-ի մեջ։

Ազգաբանութիւն և ծննդաբանութիւն ազգին Հասան-Ջալալեանց հանեալ և հավաքեալ ի պատմութեանցն Հայոց և Աղուանից և ի յարձանագրեաց ի խաչքարաց և ի տապանաքարաց, եղելոց ի վանսն Գանձասարայ և ի շրջակայ նորին վանորայս և տեղիս հանդերձ թուաբանութեամբ, զորս համառօտ շարահիւսեցի ես Բաղդասար միտրոպոլիտ Աղուանից Հայոց որդի Դանիել-բեկ իշխանի և թոռն Մելիք-բեկ իշխանի Հասան-Ջալալեանց նախկին տերանցն երկրին Արցախոյ գավառին Խաչենոյ, յաղագս տեղեկութեան ներկայ և ապագայ սերնդոց, տոհմայնոց և ազգականաց իմոց։

Գրեցաւ ի ՌՄՂԸ թուին Հայոց և ի 1849 ամի տեառն[1]։

---

Ի ծննդոց Հայկազանց կարգեցաւ՝

1. Առան նախագահ Աղուանից։

Իսկ որք ըստ կարգի կացին թագաւորք տանս Աղուանից ի մեծ ազգէն Արշակունեաց՝ անուանք են այսոքիկ՝

2. Վաչական քաջ Ա.

3. Վաչէ Ա.

4. Ուռնայր.

5. Վաչական Բ.

6. Մրհաւան. Ջ ?

7. Սատոյ.

8. Ասայ.
9. Եսուաղեն։
10. Վաչէ Բ.
11. Վաչական Գ. բարեպաշտ։

5

Ի նոյն պատմութեան (Կաղանկատուացւոյ) 3 պրակն է և 22 գլուխն այսպէս է գրեալ.— Ստուգութեամբ այսպէս ծանեաք սակս Հայկազանց խնամաւորել Միհրական տոհմին և պատուաստութեամբս այսուիկ առի զոյգ ունել զպետութիւն արևելեաց կողմացն Աղուանից։ Անուանք արքայիցն, որոց վերագոյն գրեցան ի քաջէն Վաչականայ մինչև ցբարեպաշտոն Վաչական՝ տասն թաքաւորք լեալ, յորոց ըստ թուոյ աւուրց տարւոյն եկեղեցիս միայն (ինքն) բարեպաշտն Վաչական շինեաց յարևելս։ Եվ զկնի մահու նորա սկսաւ նուազիլ ազգն այն։

6

Եվ Միհրարնն, որ ի Սասանեան տոհմէն էր եկեալ ի պարսից հաստատեցավ ի Նախարարութիւն ի վերայ աշխարհինս Աղուանից, և անուանք նոցա որդի ի հօրէ առնելով, են այսոքիկ՝ Միհր, Արմայել, Վարդ, քաջն Վարդան, որ հավատացեալ ի Քրիստոս, և որ շինողն Գարդմանայ բերդին։ Վարդան ծնանի Վարդ, Վարդ ծնանի զՎարազ Գրիգոր առաջին իշխանն Աղուանից։ Գրիգոր ծնաւ զչորս որդիս՝ Վարազ Բերոժ, Ջուանշիր, Եղուտ Խոսրով և Վարազման։ Եվ ի սոցանէ յերեց որդւոյն շարելով ըստ կարգին անուանքն բերցուք ի յայտ առ Հայկազեանս, և այլք կացցեն։

7

Եվ են այսոքիկ՝ Վարազ Բերոժ, Վարազ Տրդատ, Վարդան, Ներսեհ դժնդակ, Ներսեհի որդի Գագիկ, Գագիկայ որդի Ստեփաննոս և Ապրսամիկ քոյր իւր։ Զայս Վարազ Տրդատ և որդի նորա և եղբօր որդի նորա Ստեփաննոս, Ներսեհ Փիլիպեան՝ ազգակիցն նորա սպան ի միում ժամու ի խորաձորն, որ կոչի Դատոյի վանք։

[1] Ես թողնում եմ 1, 2, 3, 4-րդ մասը, որ հեղինակը զանազան պատմագիրների վրա հիմնվելով, գրում է իբրև ներածություն։

Ապա յայն աղէտիցն զառն զգացեալ արիութիւն կնոջն սպանելոյ՝ առեալ զմնացեալ դուստր իւր Սպրամ՝ գիշերահէն դաժանելի ուղեվորութեամբ՝ մատանէ ի բերդն Խաչենոյ, և բարուրս խորհեալ տան իւրում՝ ամուսնացուցանէ զՍպրամ ընդ Ատրներսեհի՝ Սահլի որդւոյ, որ էր ի տոհմէն Հայկայ և տէր Սիւնեաց, որոյ բռնազբօսութեամբ կալեալ էր զգաւառն Գեղամայ. և որդին իւր Ատրներսեհ հանդիպեցաւ կնոջ զգաստի, որբ երկյուղածք յԱստուծոյ և բարեպաշտք զիւրյանցն ցուցանէին զկեանս և աշխարհի քաղցունք։

8

Ատրներսեհ իշխանն շինէ զբերդն Հանդու (Հանդաբերդ) և զապարանս իւր եդեալ ի գյուղն որ կոչի Վայունիք, ուր և բաղանիքն արքունական են և բերդն այն (այժմ կոչի Ջերմուկի ղալա, իսկ գյուղն Քաղաքատեղ ի գավառին Ջրաբերդու)։ Եվ Ատրներսեհ իշխանն ընդ այլ իշխանաց Հայոց տարան յերկիրն Պարսից յերեքհարյուր և երեք թուին Հայոց յ854 ամի տեառն։ Եվ կալով նորա ընդ ամս բազումս, տիկին Սպրամ առաւել հաճախէր ի բարեգործութիւնս, և մեծածախ տենչմամբ շինէ զՆորավանս ամենապայծառ զարդուք՝ ի գավառին Սոտէից ի նահանգին Գեղարքունւոյ։

9

Ատրներսեհ իշխանն իսկոյն գայր՝ զերծեալ ի կողմանցն Տաճկաց, և ի խաղաղութեամբ ի առ ժամայն լուծանէ զկեանս։ Ատրներսեհ ծնանի զԳրիգոր և զԱպուսեթ։ Գրիգոր իշխանն շինէ զբերդն Հաւքախաղացին ի գաւառին Խաչենոյ, և զայն կողմն ձգէ զձեռս իւր իշխանութեան՝ յերեք հարիւր քառասուն թուին Հայոց՝ յ891 ամի տեառն։ (Եւ բերդն Հաւքախաղացին այժմ կոչի Սաղսաղանոււ Ղալայ, և հեռի է ի Գանձասարու վանից և ի Խօխանաբերդէն ութն ժամու ճանապարհաւ)։

10

Գրիգոր իշխանն Ատրներսեհեան ծնանի զհինգ որդիս՝ Ապուսալի, Ատրներսեհ Բ., Սահակ Սևադայ, Սմբատ և Վասակ։ Երէց որդի Գրիգոր իշխանին՝ Ապուսալի իշխանն Աղուանից հայկազնի՝ սպանաւ յիւրմէ հարազատեն Սմբատայ յերեքհարիւր քառասուն և

վեց թուին Հայոց յ897 ամի տեառն, և եղև այն սուգ մեծ իւրայ-
նոցն զարմից։ Եվ եղբայր նորա Ատրներսեհ թագաւորեաց ի վե-
րայ Աղուանից յ359 թուին Հայոց յ910 ամի տեառն։

11

Իսկ երրորդ որդի իշխանին (Գրիգորի) Սահակ Սևադայն եղև
երևելի և մեծ իշխան քաջ և յաջողակ՝ առհասարակ տիրեաց Գարդ-
մանայ գաւառին (որ ի նահանգին Գանձակայ) և Քաւսայ և Փառ-
նայ[1] գաւառաց, այլև աւագակապետաց Ջորագետոյ և Արցախոյ
բովանդակ եղև իշխան և տիրապետող։ Եվ խնդրող իսկ գրագի-
տութեան՝ և դպրոցս ի տան իւրում կարգեաց. ընդ որում և բազ-
մաջան հնարիւք թագաւորն հայոց Սմբատ մարտուցեալ՝ ոչինչ
կարաց ստերիւրել զնա ի կամս իւր։ Եվ զկնի մահուան Սմբատայ
թագաւորին հայոց։ Աշոտ որդի նորին թագաւորեաց ի վերայ հա-
յոց և վասն քաջագործութեան նորա Աշոտ Երկաթ կոչիւր. և այս
Աշոտ թագաւորն հայոց էառ ի կնութիւն իւր դդուստր Սահակ Սե-
վադայ հզօր և մեծ իշխանին Աղուանից և Արցախայ յ371 ամի
թուին հայոց և յ922 ամի տեառն։

12

Սահակ Սևադայ մեծ իշխանն Աղուանից ծնանի զԳրիգոր Բ.
և զԴաւիթ։ Գրիգոր Բ. իշխանն ծնանի զՍևադայ Բ., որ իշխանիկ
կոչիւր և զԱտրներսեհ Գ.։ Իսկ Սևադայն Բ. ծնանի զչորս որդիս՝
Յովհաննէս, Գրիգոր Գ., Փիլիպպոս և Ատրներսեհ Դ.։ Իսկ զերէց
որդին իշխանիկ (Սևադայ Բ-ի) զՅովհաննէս, որ և Սենեքերիմ կո-
չեցավ, ընտրեաց աջն բարձրելոյն՝ կոչելով զնա ի թագաւորու-
թիւն, և զվաղնջուց խափանեալ թագաւորութիւն տերն ամենակալ
ի ձեռն սորա նորոգեաց, զոր և թագաւորն պարսից մեծամեծ զար-
դուք պատուէ և տայ նմա զթագ հօր իւրոյ զնորին երիվարն[2]։ Իսկ
Փիլիպպոս թագաւորեաց ի վերայ Աղուանից ի Նժ թուին հայոց,
յ961 ամի տեառն։ Փիլիպպոս ծնանի Գրիգոր Դ., Գրիգոր Դ. ծնա-
նի զՍակառ, որ Վախտանգ կոչիւր, Սակառ Վախտանգ ծնանի
զՎախտանգ Բ., Վախտանգ Բ. ծնանի զՀասան։

[1] Այդ երկու գավառների անունները շատ տեղերում, գրչագրերի վրիպում-
ներով միախառնելով գրում են ի միասին Կոստիփառնա։

[2] Մինչև այստեղ հեղինակը հետևել է Կաղանկատուցու պատմությանը։

13

Հասան իշխանն Սակառ-Վախտանգեան եղև երևելի և մեծ իշխան և էառ ի կնութիւն իւր զՄամայ զդուստր Կիւրիկէ թագաւորին հայոց Բագրատունւոյ ի հինգհարիւր և ութսուն թուին հայոց ի 1131 ամի տեառն։ Հասան իշխանն ծնանի զՎախտանգ Գ., զՎասակ Սմբատ, զԳրիգոր և զայլս։ Վախտանգ Գ. իշխանն Հասանեան եղև երևելի իշխան և էառ ի կնութիւն զխորիշահ դուստր Սարգիս իշխանին և քոյր Զաքարիա և Իվանէի մեծամեծ իշխանացն հայոց, և ծնանի զՀասան-Ջալալ, զԶաքարիայ, զԻվանէ, զԴօլի և զՄարիամ։

14

Ջալալ-Հասան որդի Վախտանգայ Գ. և թոռն Հասանայ եղև երևելի և մեծ իշխան ի ՈՂԲ թուին հայոց և ի 1243 ամի տեառն, և էառ ի կնութիւն իւր զՄամքան թոռն Սենեքերիմ թագաւորին Սիւնեաց՝ զդուստր Գրիգոր իշխանին Սիւնեաց։ Ջալալ-Հասան ծնանի զԱթաբէկ և զԻվանէ և զդստերս երիս՝ Ռուզան, Նանայ և Մինա-Խաթուն։ Ռուզան եղև կին Բուղայի որդւոյ Ջարմաղան խանին թաթարաց, Նանայ եղև կին Ումեկ հայոց իշխանին Տփխիսեցւոյ, և ի ծնանի զՎախտանգ, Վախտանգ ծնանի զԱրղութ, Արղութ ծնանի զՄեհրապ։ Մեհրապ ծնանի զՇահնշէն։ Եվ զկնի մահուան Ջալալ-Հասան իշխանին, Մինա-Խաթուն եղև կին Տարսայիճ իշխանին Սիւնեաց, և ծնանի զդուստր Ջալալ և զդուստր Ափսայ (Ասփայ), ի Չի ամին հայոց և ի 1271 ամի տեառն։

15

Աթաբեկ որդի Ջալալ-Հասանայ եղև երևելի ի ՉԾԵ թուին հայոց, ի 1306 ամի տեառն, ծնանի զՋալալ Բ., որ Պարոն կոչիւր, և զԻվանէ, Իւանէ ծնանի զՎախտանգ Դ., Վախտանգ Դ. ծնանի զԱթաբակ Բ., Աթաբակ Բ. ծնանի զԱյտին և զԽիմշէ։ Պարոն Ջալալն Բ. երեց որդի Աթաբեկին ծնանի զՅովհաննէս Ա. կաթողիկոսն, զՊարոն Աղբաստ, զՊարոն Պաստամ, զՄէժլիս, զԱմիր Հասան և զտէր Վարդան։ Յովհաննէս Կաթողիկոսն վախճանեցաւ ՋԺԹ թուին հայոց, ի 1470 ամի տեառն։

16

Պարոն-Աղբաստ որդի Պարոն-Ջալալ իշխանին ծնանի զՊարոն Սայտուն, Պարոն-Սայտուն ծնանի զԱրիստակէս կաթողիկոս, զՀատիր-Մէլիք, զՎէլիջան բէկ Ա., զՄէզլիք։— Արիստակէս կաթողիկոսն վախճանեցաւ ի ՋՀԵ թուին հայոց, ի 1521 ամի տեառն։

17

Հատիր-մէլիք իշխանն, որդի Պարոն-Սայտունին, ծնանի զՍարգիս Ա. կաթողիկոս և զՄեհրաբ-բէկ։— Սարգիս կաթողիկոսն վախճանեցաւ ՋՂԵ թուին հայոց ի 1546 ամի տեառն։— Մեհրաբ-բէկ որդի Հատիր-Մէլիք իշխանին՝ ծնանի զԳրիգոր Ա. կաթողիկոս, զՋալալ-բէկ Գ. և զԲաղդասար-բէկ Ա։— Գրիգոր կաթողիկոսն վախճանեցաւ ի ՌԻԲ թուին հայոց, ի 1573 ամի տեառն։

18

Բաղդասար-բէկ որդի Մեհրաբ-բէկին ծնանի զԴաւիթ կաթողիկոսն և զԴաւիթ-բեկ։— Դաւիթ կաթողիկոսն վախճանեցաւ ի ՌԻԳ թուին հայոց, ի 1574 ամի տեառն. Դաւիթ-բէկ՝ որդի Բաղդասար-բէկին՝ ծնանի զՅովհաննէս Բ. կաթողիկոս և զՄուշբէհ-բէկն։— Յովհաննէս Բ. կաթողիկոսն վախճանեցաւ ի ՌՀ թուին հայոց և ի 1621 ամի տեառն։

19

Ջալալ-բէկ Գ. որդի Մեհրապ-բէկին՝ ծնանի զՎելիջան-բէկ Բ. և զԱղաբէկ։ Այս Ջալալ-բէկ եղև երևելի և մեծ իշխան ի ՌԼԵ թուին հայոց, ի 1586 ամի տեառն, հանդերձ երկու եղբորորդւովքն իւր և ընդ այլ իշխանաց հայոց և Աղուանից գնացին ի տեսութիւն առաջին և մեծ Շահ-Աբաս արքային պարսից և ի նմանէ յոյժ պատուեցան խիլայիւք, նաև Ջալալ-բէկն ի նոյն Շահ-Աբաս արքայէ էառ զֆէրման յանուն իւր եղբորորդի Յովհաննէս, Բ., կաթողիկոսին Աղուանից և դարձաւ ուրախութեամբ ի տուն իւր։ Վէլիջան բէկ Բ. որդի Ջալալ-բեկին Գ. ծնանի զԳրիգոր Բ. կաթողիկոսն վախճանեցաւ ի ՌՃԲ թուին հայոց, ի 1853 ամի տեառն։

20

Բաղդասար-բէկ Բ. որդի Վէլիջան-բէկին Բ-րդի և թոռն Ջալալ-բէկին Գ-րդի ծնանի զԵրեմիայ կաթողիկոս, Արիստակէս եպիսկոպոս զՎէլիջան բէկ Գ. և զՄուլքի-բէկ։ Երեմիայ կաթողիկոսն վախճանեցաւ ի ՌՃԽԹ թուին հայոց և ի 1700 ամի տեառն։ Վէլիջան-բեկ Գ. ծնանի զԵսայի կաթողիկոս և զՅովհաննէս։ Եսայի կաթողիկոսն վախճանեցաւ և ՌՃՀԵ թուին հայոց և ի 1726 ամի տեառն։

21

Մուլքի-բէկ որդի Բաղդասար բէկին Բ-րդ ծնանի զՄէլիք-Գրիգոր և զՄէլիք-Ալլահվերդի Ա.։ Մէլիք-Գրիգորն զիւր մելիքական իշխանութիւն ետ իւր եղբօր Մէլիք-Ալլահվերդւոյն ի վերայ խաչենոյ գավառին, և ինքն հրաժարեցաւ յիւր մարմնաւոր իշխանութենէն և օծաւ վարդապետ և եղև առաջնորդ սրբոյն վանիցն Գանձասարու ի ժամանակս տիրապետութեանց օսմանցւոց և Նադիր-շահի պարսից արքային, յորոց ֆէրմանսն յայտնի գրեալ երևի, որ առ մեզ գտանին։ Գրիգոր վարդապետ վախճանեցաւ ի ՌՃՂԷ թուին հայոց և ի 1748 ամի տեառն։

22

Յորդւոյ Մուլքի-բէկին՝ ի Մէլիք-Ալլահվերդւոյն խաչենոյ ծնանի եպիսկոպոս և Մէլիք-բէկ Ա., իսկ Մէլիք-բէկ իշխանն ծնանի զՅովհաննէս Գ. կաթողիկոս և զՍարգիս Բ. կաթողիկոս։ Յովհաննէս կաթողիկոսն վախճանեցաւ ի ՌՄԼԵ թուին հայոց և ի 1786 ամի տեառն։ Սարգիս կաթողիկոսն վախճանեցաւ ի ՌՄՀԷ թուին հայոց և ի 1828 ամի տեառն։— Եւ միւս վեց որդիք նոյն Մէլիք-բէկ իշխանին են սոքա՝ Գաբրիէլ-բէկ, Դանիէլ-բէկ, Միսայէլ-բէկ, Իսրայէլ-բէկ, Ջալալ-բէկ, Դ., և Ալլահղուլի-բէկ։

Ա. Գաբրիէլ-բէկն ծնանի զԵրեմիա եպիսկոպոս և զԳրիգոր-բէկ։ Գրիգոր-բէկն ծնանի զՋալալ-բէկ Ե. և զդուստր Խորիշահ։ Ջալալ-բէկ Ե. ծնանի զՍարգիս-բէկ և զՄինա-Խաթուն դուստրն։ Բ. Միսայէլ-բէկն ծնանի զԱպրես-բէկ և զԱսլան-բէկ։ Ապրես-բէկն ծնանի զԱթա-բէկ Գ., զԳրիգոր-բէկ և զՋաւատ-բէկ։ Աթա-բէկն ծնանի զՄովսէս և զայլս։ Գրիգոր-բէկն ծնանի զԻվանէ և զայլս։

*Դ. Ջալալ-բէկն ծնանի զԱթաբակ, զՌուստամ-բէկ և զԽուրշահ դուստր։ Ռուստամ-բէկն ծնանի զԵսայի և զայլս, որք գտանին ի Բոլնիս։*

*Ե. Ալլահղուլի-բէկն ծնանի զՌուշան-բէկ և զՋհանգիր-բէկ։ Ռուշան-բէկն ծնանի զերիս որդիս, որք գտանին ի Բոլնիս։*

## 23

*Վեցերորդ որդի Մէլիք-բէկ իշխանին՝ Դանիէլ-բէկն ծնանի* զԲաղդասար միտրոպոլիտ *և զՄէլիք-Ալլահվէրդին Բ. Խաչենոյ գաւառին։ Մէլիք-Ալլահվերդին Բ. ծնանի զԵրեմիայի քահանայ, զՄովսես վարդապետն, զԱբրահամ-բէկն և զՅովսէփ-բէկն։ Մէլիք-Ալլահվէրդին վախճանեցաւ ի 1276 թուին հայոց և 1827 ամի տեառն։ Եւ Մովսես վարդապետն վախճանեցաւ ի ՌՄՂԸ թուին հայոց և ի 1849 ամի տեառն։*

*Երեմիայ քահանայն ծնանի զվեց որդիս, որք են՝ Վախտանգ, Ջալալ, Շամիր...*

*Աբրահամ-բէկն ծնանի զՄէլիք-բէկ և զԱլլահվերդի-բէկ։*

*Յովսէփ-բէկն ծնանի զՎէլիջան-բէկ և զԴանիել-բէկն։*

## 24

*Այլ և յառաջին Մէլիք-բէկ իշխանեն Հասան-Ջալալեանց, որպես ի վերոյ գրեալ եմ և սոքանեն կենդանիք արուականքն ի սերընդոց և ի տոհմականաց Հասան-Ջալալյանց։*

*Բնագրի վրա յուր իսկական ձեռքով ստորագրել է*

*Միտրոպոլիտ Բաղդասար Հասան-Ջալալյանց։*

## Թագավորք Աղվանից

*Ա. Առան Սիսական, Հայոց Վաղարշակ թագավորից հաստատված.*

*Բ. Քաջն Վաչական Ա. Արշակունի ազգից.*

*Գ. Վաչե Ա.*

*Դ. Ուռնայր.*

*Ե. Վաչական Բ.*

*Զ. Միհրավան.*

*Է. Սատո.*

Ը. Ասա։

Թ. Արովաղեն կամ Եովաղէն.

Ժ. Վաչե Բ., որ հիմնում է Պարտավ քաղաքը (?)։

ԺԱ. Վաչական Գ. բարեպաշտ։

### Սասանեան հեթանոս նախարարք

Ա. Միրհանից ծնվում և իշխում է

Բ. Արմայելն Արմայելից

Գ. Վարդն Վարդից

Դ. Քաջն Վարդանն, որն ընդունում է քրիստոնեական հավատը և մկրտվում Աղուանից Վիրո կաթողիկոսի ձեռով և հիմնում Կովկաս սարի տակ մի ավան և յուր անվամբ կոչում Վարդաշեն (?)։ Վարդանով կրկին շարունակվում է քրիստոնյա նախարարության շղթան։

### Քրիստոնյա նախարարք.

Ա. Քաջն Վարդանից ծնվում և նախագահում է

Բ. Վարդ Ա. սորանից

Գ. Վարազ-Գրիգոր Ա., որից

Դ. Վարդ Բ. (?), որից

Ե. Վարազ-Գրիգոր., Բ., որից ծնվում են Վարազ-Պերոժ, Ջիվանշիր, Եղուտ-Խոսրով և Վարազման...

Զ. Ջիվանշիրին հաջորդում է յուր եղբայր

Է. Վարազ-Պերոժն, որից ծնում և տեղակալում է.

Ը. Վարազ-Տրդատ, որից

Թ. Վարդան Գ., որից

Ժ. Ներսեհ Դժնդակ..., որից

ԺԱ. Գագիկն, որից

ԺԲ. Ստեփաննոս, որ Վարազ Տրդատի հետ սպանվում է Ներսեհ Դժնդակից Դատի վանուց ձորում, ահա այս է «Դժնդակ» կոչվելու պատճառն։ Գագկա կինն ունենալով միայն Ապրամ անվամբ մի դուստր՝ գիշերով փախչում է Խաչենի բերդն (Կաչաղակաբերդ (?) և այդ դուստրը ամուսնացնում Բագրատունի (?) Սմբատ իշխանի (?) Թոռան Ատրներսեհի հետ։

ԺԳ. Ատրներսեհն շինում է Հանդաբերդը և յուր պալատը հաստատում Վերին Խաչենում ջերմուկների կողմում. Սորա անդրանիկն։

ԺԴ. Գրիգոր Ա. շինում է Հավքախաղաց բերդը և յուր իշխանությունը ավելի զորացնում այդ անառիկ բերդով, որից ծնվում և հաջորդում է...

ԺԵ. Սահակ-Սևադա, որ քաջ տղամարդ լինելով տիրում է Գարդման, Քավոռ և Փառնա գավառներին և սկսում է տարածել սոցա մեջ գիր, դպրություն և ուսում: Սահակ Սևադայից...

ԺԶ. Գրիգոր Բ., որ Գուշատակ ևս է կոչվում, որից

ԺԷ. Փիլիպպոս (?), որից

ԺԸ. Սևադա Ա. (?), իսկ սորանից Հովհաննես (?), որ Սենեքերիմ ևս է կոչվում: Վերջինս յուր բնական հանճարով, ռազմագետական տաղանդով և կառավարչական խորագիտությամբ, հաջողում է պարսից կառավարության միջոցավ ձեռք բերել Աղվանից թագավորությունը և թագը, որ վաղուց մեռած էր:

Ա. Սենեքերիմ (?) թագավորից ծնվում և իշխում է՝

Բ. Գրիգոր (?) թագավորն, որով կրկին մեռնում է Աղվանից թագավորությունն: Գրիգոր թագավորից ծնվում են երեք որդիք՝ Վախտանգ թագավորազն, Սմբատ թագավորազն (?) և Վասակ թագավորազն (?):

## Ծագումն իշխանաց և մելիքաց Ջալալյան տոհմին.

Ա. Վախտանգ թագավորազնին տեղակալում է յուր անդրանիկն

Բ. Հասան-Մեծն, որն ծնված էր քուրդ իշխանի Արզու դստերից, Հասան-Մեծին տեղակալում է

Գ. Վախտանգ Սակարն (?), որն ամուսնացած էր քուրդ իշխանին Սարգիս որդու Խորիշահ դստեր հետ.

Վախտանգ Սակարից (?) ծնվում է

Դ. Ջալալ-Դոլա Հասան, որն ամուսնացած է Մեծ Սյունյաց Տարսայիճ (?) իշխանի Մամքան դստեր հետ, որից ծնվում և հաջորդում է

Ե. Աթաբեկ Ա, որից

Զ. Պարոն Ջալալյան, որից

Է. Աթաբեկ Բ-ն (?), որից

Ը. Այտին բեկն (?), սորա փոքր եղբայր

Թ. Աղբաստն (?), որից

Ժ. Հատիր մելիքն (?), որից

ԺԱ. Մեհրամ բեկն (?), որից

ԺԲ. Ջալալ-բեկն, որից

ԺԳ. Վելիջան բեկ Ա., որից

ԺԴ. Բաղդասար բեկն, որից

ԺԵ. Վելիջան բեկ Բ., որից

ԺԶ. Մուլքի բեկն (?), որից

ԺԷ. Մելիք Գրիգորն, որին հաջորդում է փոքր եղբայրն

ԺԸ. Մելիք-Ալլահվերդին

ԺԹ. Մելիք-բեկ Մելիք-Գրիգորյան (?)

Ի. Դանիել-բեկ, որից ծնվում է Բաղդասար վարդապետը։

Այդ երկու համեմատություններից պարզ երևում է, թե որքա՜ն վարպետ է Մակար վարդապետը ուրիշի ապրանքը սեփականել իրան, և, որպեսզի հրապարակի վրա չճանաչվի, գույնը փոխել է և այնպես վաճառել։

Այդ երկու համեմատություններից երևում է և այն, որ Բաղդասար միտրոպոլիտի կազմած ազգաբանությունը ավելի հարուստ է յուր մանրամասնություններով, ավելի լիակատար է, իսկ «Գաղտնիք»-ի հեղինակինը միայն համառոտ քաղվածք է նրանից, այն ևս սխալներով[1]։

Այդ սխալները առաջ են եկել նրանից, որ Մակար վարդապետը գրելու ժամանակ աչքի առաջ չէ ունեցել Բաղդասար միտրոպոլիտի հորինած լիակատար ազգաբանությունը, որը դեռ ոչ մի տեղ տպված չէ, այլ օգուտ է քաղել Սարգիս եպիսկոպոս Ջալալյանի քաղվածքից, որ նույն սխալներով տպված է նրա ճանապարհորդության մեջ[2]։

Իսկ այդ դեպքում ևս կատարվում է այն բազմաթիվ հրաշքներից մեկը, որոնցով այնքան հարուստ է «Գաղտնիք»-ը։

Այդ գրքի հեղինակը վախճանվում է 1828 թվին։

Իսկ Բաղդասար միտրոպոլիտը յուր ազգաբանությունը հորինել է 1849 թվին։ Կնշանակե «Գաղտնիք»-ի հեղինակի մահից 21 տարի հետո։

Ուրեմն, կամ պետք է ընդունել, որ «Գաղտնիք»-ի հեղինակը յուր մեռնելուց 21 տարի անցնելուց հետո հարություն է առել և օգուտ է քաղել Բաղդասար միտրոպոլիտի կազմած ազգաբանությունից, կամ մի ուրիշը գողացել է այդ աշխատությունը, գույնը փոխել է և Բեկնազարյանների անունով հրապարակ է հանել։

Այդ վճիռը թողնում եմ ընթերցողների դատաստանին։

---

1 Սխալները մենք նշանակեցինք հարցական նշաններով։

2 «Ճանապարհորդություն ի Մեծն Հայաստան», մասն Բ., եր. 352, 354։

Բայց ես խոստացա ցույց տալ մի «օյինբազություն...»:

Եթե Բաղդասար միտրոպոլիտը ուներ այդ ազգաբանությունը, ուրեմն ինչո՞ւ էր նա յուր նամակով դիմում «Գաղտնիք»-ի հեղինակին և նրանից խնդրում միևնույնը։ Այդ ի՞նչ էր նշանակում։

Ահա՛ ինչ է նշանակում. գուցե մի օր, ո՞վ է իմանում, Բաղդասար միտրոպոլիտը գերեզմանից կբարձրանա և գտնելով «Գաղտնիք»-ի մեջ յուր աշխատությունը, կբռնե Մակար վարդապետի օձիքից և նրան կասե.

— Այդ իմ աշխատությունն, այդ ո՞վ է գողացել։

Այն ժամանակ Մակար վարդապետն իրավունք կունենա նրան պատասխանելու.

— Սրբազան, քո աշխատությունը որտեղի՞ց կարող էր լինել. եթե դու ունեիր այդ աշխատությունը, այլևս 1828 թվին ինչո՞ւ էիր դիմում Աբրահամ Բեկնազարյանին և նրանից խնդրում...

Եվ Մակար վարդապետը ամենայն վստահությամբ ցույց կտար սրբազանի նամակը։

— Այդ նամակը կե՞ղծ է...— կպատասխանե սրբազանը։— Ես այդ աշխատությունը ունեի ոչ թե 1828 թվին, այլ նրանից շատ առաջ, 1800 թվականներում, երբ դեռ վարդապետ էի և Հաղպատա վանքում նստած աշխատում էի[1]։

Այսքանը բավական համարելով մենք գուցե մի ուրիշ ժամանակ կրկին կվերադառնանք Մակար վարդապետի կազմած մյուս տիրապետող մելիքների տոհմային ազգաբանությանը, որոնց մեջ երևում է հայր սուրբի վերին աստիճանի անբարեխղճությունը։ Այդ մյուս ազգաբանությունները կամ լցված են մի շարք երևակայական անուններով, կամ մելիքների տոհմերը խառնված են միմյանց հետ և կամ եղբայրը եղբոր հայրն է դառնում, իսկ հայրը՝ թոռ, բոլոր ճյուղագրությունների մեջ տիրում է մի գիծ միայն, այն ևս ուղիղ գիծ, որդի ի հորե. այլ շառավիղներ չկան։

Երբ «Արձագանքի» մեջ տպվում էր իմ հետազոտությունը, իմ բարեկամներից յուրաքանչյուրը միևնույն հարցն էր կրկնում. «Մի՞թե արժե մի այդպիսի հիմարության մասին այդքան գրել»։

---

[1] Բաղդասար միտրոպոլիտի աշխատությունները թե յուր իսկական ձեռքով գրած սևագրությունները, որ նա հորինել է Հաղպատա վանքում, և թե մաքուր արտագրած օրինակները, որ կազմել է հետո, ցանկացողները կարող են տեսնել մեզ մոտ։

Եթե միայն հիմարություն լիներ, ես ոչինչ չէի գրի, բայց խարդախությունը, այն էլ գրական խարդախությունը, պետք չէ, որ մնա անպատիժ։

«Գաղտնիք»-ը դեռ լույս չտեսած դարձրեց յուր վրա կրիտիկայի ուշադրությունը և ոչ մի աշխատություն մեզանում այնքան խոսել չտվեց յուր մասին, որպես այդ գիրքը։ Դա շատ բնական էր։ «Գիժը մի քար նետեց փոսը, հարյուր խելոքներ հավաքվեցան, չկարողացան դուրս հանել»։ Դեռևս շատ խելոքներ պիտի տանջվեն «Գաղտնիք»-ի նենգավոր գաղտնիքները երևան հանելու։

Ամեն կեղծության վրա շատ են նայում, շատ են հետաքրքրքրվում։ Իսկ «Գաղտնիք»-ը, հակառակ յուր արդար վրդովմունքով գայրացած հարվածողների, ունեցավ և պաշտպաններ։

Իմ խոսքը, իհարկե, այն հացկատակ կրիտիկոսների մասին չէ, որոնք շողոքորթության բուրվառը ձեռքում բռնած, մի բաժակ օղիի համար միշտ պատրաստ են խնկարկել ամեն մի կեղտոտություն, ամեն մի անբարոյականություն։ Իմ խոսքը ավելի կրթված, զարգացած և, մինչև անգամ, բարձր ուսում ստացած պարոնների մասին է, որոնք ավելի լուրջ կերպով պետք է վերաբերվեին դեպի մի գրական խարդախություն, որի օրինակը մինչև այսօր չի տեսնըվել։

«Գաղտնիք»-ի հեղինակը, հարստահարելով ուրիշների աշխատանքը, ճարպկություն ունեցավ հարստահարելու և այնպիսի հարգելի անձանց անունները, որոնք հազիվ թե հանձն կառնեին վկա լինել մի խաբեբա գործի։

Վերջացնում եմ հոդվածս, ավելացնելով, որ իմ հետազոտությունների մեջ՝ ես հասա հետևյալ եզրակացություններին.

1. «Գաղտնիք»-ի մի զույգ պատրվակյալ հեղինակները—հայր և որդի Բեկնազարյանները—երևակայական անձնավորություններ են։ Նրանք երբեք գոյություն չեն ունեցել ոչ իբրև մատենագիրներ և ոչ իբրև անհատներ։

2. «Գաղտնիք»-ը Մակար Վարդապետի աշխատությունն է։ Միայն յուր գիրքը ավելի հրապուրիչ դարձնելու համար, կամեցել է մագաղաթի վրա ներկայացնել և նրան մի հին, վաղեմի գրվածքի ձև տալ։ Հետևապես «Գաղտնիք»-ի բնագրի գրաբար լեզվով գրված լինելը, Մակար վարդապետի թարգմանելը, հետո բնագիրը կորցնելը,— այս բոլորը պետք է հայր սուրբի հնարած ստեղծաբանությունը համարել։

3. Այդ գիրքը իբրև մի պատմական աշխատություն ոչ մի նոր

աղբյուր չունի և չէ ցույց տալիս։ Նա օգուտ չէ քաղել մինչև անգամ ժողովրդական ավանդություններից։ Նա չէ բովանդակում յուր մեջ որևէ պատմական փաստ, որ մեր գրականության մեջ նոր լինեի։ Իսկ ինչ որ նոր է,— այդ Մակար վարդապետի առակախոսություններն են միայն։

4. Բուն պատմական անձնավորությունները — Ղարաբաղի իսկական մելիքները — իրանց գործերով և քաջություններով՝ կորչում, անհետանում են այդ գրքի մեջ։ Իսկ դրանց փոխարեն դըրվում են Մակար վարդապետի ստեղծած հերոսները, որոնք երբեք գոյություն չեն ունեցել։

5. «Գաղտնիք»-ի լեզուն, ոճը, շարադրությունը մեր տասնութերորդ դարու գրվածքների ոչ պարզությունը ունի և ոչ բնավորությունը։ Նրա մեջ հաճախ հանդիպում են այնպիսի բառեր և այնպիսի դարձվածքներ, որ մեր նոր գրականության արդյունքն են։

6. «Գաղտնիք»-ի գաղափարները, նկրտումները և պատմական երևույթների բացատրությունները՝ ամբողջապես առնված են «Խամսայի մելիքություններից»։ Եվ այդ ապացույց է մի կողմից նրա հեղինակի կույր հետևողությունը, իսկ մյուս կողմից՝ երևան է հանում նրա կեղծությունը։ Մեր հին ժամանակների պատմաբանները գրում էին բոլորովին կրավորական կերպով, առանց կրիտիկաբար վերաբերվելու փաստերին։ Քննադատական պատմությունը նոր ժամանակների գործ է։

7. Իբրև մի պատմական անհարազատ աշխատանք, այդ գիրքը զուրկ է ամեն հավատարմությունից։ Նրա մեջ փաստերը կամայական կերպով աղավաղված են։ Ամբողջ գրքի մեջ գործում է մի խարդախ գրչի արհեստականություն միայն։ Նրա մեջ չէ երևում ժամանակի մարդը յուր բնական բարքով, վարքով և սովորություններով։ Նրա մեջ երևում են այլանդակ հրեշներ և հեքիաթների հերոսներ միայն։

8. «Գաղտնիք»-ը մի գրական նենգավոր ավազակություն է։ Նրա մեջ մտցրած են այլոց աշխատությունները, առանց հեղինակների անունները հիշելու։ Բայց գողության հետքերը կորցնելու համար իսկական հեղինակների փոխարեն հիշվում են այնպիսի անուններ, որոնք կամ երբեք գոյություն չեն ունեցել կամ ոչինչ չեն գրել։

9. «Գաղտնիք»-ը ոչ միայն գրականական որևէ արժեք չունի այլ մինչև անգամ վնասակար է։ Անհմուտ ընթերցողին նա կարող է մոլորեցնել, և սուտը, կեղծը, անհավատալին ճշմարտի տեղ մա-

տակարարել։ Այդ գրքի հորինվածքի մեջ այնքան չի պետք զարմանալ հեղինակի տգիտության վրա, որքան նրա անպատկառ հանդգնության վրա, որով նա վստահություն է ունեցել կարծելու, թե յուր աններելի վարմունքը գաղտնի կմնա «Գաղտնիք»-ի մեջ։ Մի այլ ավելի հարմար անուն հազիվ թե կարելի էր գտնել…

10. Այդ բոլորից հետո «Գաղտնիք»-ի վարագույրի հետևում ծածկված հեղինակին մնում է, իբրև կրոնավորի, իբրև կրոնուսույցի, իբրև ճշմարտության և բարոյականության քարոզչի, ձեռքը դնել սրտին, երեսը դարձնել դեպի ընթերցող հասարակությունը և, «Հրաժարիմք ի խաբեութենէ» ասել, և յուր հայոց գրականության ասպարեզում նետած գայթակղության քարը մեջտեղից վերցնել…

## 1857

### 1. [ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՎԵՏԻՍՅԱՆԻՆ]

[1857 թ. նոյեմբեր-դեկտեմբեր]

*Սրտակի՛ց եղբայր,*

*Ընկալա սիրալիր նամակդ ի 19-ն հոկտմ. ամսո, որում սպասեի մեծավ անձկությամբ։ Հիրավի շատ ուրախ եղե գիտելով Ձեր անվանիս Կ. Պոլիս հասնելն և Բեբեքի ուսումնարանն մտնելն։ Նաև ընթերցա նույն դպրոցի բարեկարգությունները և ուսանելի առարկայից պեսպիսությունները։ Ահա՛ սիրելի, ա՛յս էր իմ ու Ձեր նպատակն, որ սույնպիսի գիտություններից ստանայիք ուսումն, հօգուտ ազգի և հայրենյաց։*

*Այո՛, Հովհաննես, երբեք մի մոռացիր հայրենիք, և այն ալիքներն սպիտակացյալ ծեր Արարատն, որ ծածկած յուր գլուխն թուխ ամպերու քողովն, անմխիթար սգո մեջ է խղճալի որդվոցն համար, որոց մեծ մասն տարանջատյալ գնացին պանդուխտ երկիրներ, զանազան տերությանց գերի եղան, իսկ մնացյալքն յուր մայրական գրկումն նույնպես խղճության մեջ, զրկված նախնի բարեվայելչությունից... Միշտ միտքդ բեր նաև հայրենակցացդ ողորմելի վիճակն, նոցա անքաղաքավարի բարոյականությունն, որք մինչ ցայն աստիճան պատված են տգիտության խավարի մեջ, մինչ հազիվ թե կարողացել են պահպանել յուրյանց* հայ *և* քրիստոնյա *անուններ, իսկ ո՛չ նոցա էական մասունքն։ Մանավանդ՝ գիտե՞ք ի՛նչ դժոխմբեր ներգործություն ունի այժմ Ռուսիո կայսրությունն յուր հայ բնակչաց վրա. որո դիտավորությունն կորցնել է համայն Արամյան որդիքն Հայաստանից։ Մինչև անգամ խորհում են մին-*

կերպով վերջացնեն հայոց կաթողիկոսական Տեղակալությունն. զի ազգն անհովիվ թողլով դյուրին եղանակավ կարողանան որսալ և գայոց ճարակ առնել։

Այս հանգամանքներս հարաժամ միտք բերելով կհուսամ վառ կպահեք Ձեր սրտի մեջն այն ազգասիրական անշեջ հուրն, որով և կկարողանաք հալել ձմռացյալ ոգվոց սառնամանիքն և լինել ճրագ լուսատու Հայաստանի խավար տան մեջ։

. . . . . . . . . . . . .

Պատվելի Գեորգ Խաչատուրյան Թոխատացվո խնդիրն շատ ուրախ սրտիվ կկատարեի, բայց միայն Հ. Քնարներու համար որոշակի կանոններ դրված չեն, այլ մի քանի նորահաս հայ ուսումնականներ (որոնցմե շատերն Ձեզ ծանոթ են) մին փոքր գումար սահմանած են, որով պիտի տպագրվեն ազգային երգեր, թե հին և թե նոր. նաև այն երգերն, որ ազգային երգիչներն (աշղներն են) կամ տաճկաց կամ պարսից լեզուավ ասած են, պիտի թարգմանվին հայ աշխարհաբառավ և տպագրվին։ Իսկ եթե հավատարիմ և ծանոթ անձն պատահեց յուրաքանչյուր տեսակիցն 20 հատ կուղարկիմ Կ. Պոլիս. դուք ընծայեցեք Ձեր ու մեր սիրելիներուն։

. . . . . . . . . . . . .

Զույգ հայ պապադավան վարդապետներեն, որք եկած էին Վիեննայից Սալմաստ, Հ. Ամբրոսիոսն, լսելով, Թեհրանում պարսից շահիցն հրամանագիր ստացած է Սալմաստում Սավրա գյուղի մեջ վարժարան հաստատելու հայոց մանկանց համար։ Իսկ մյուսն, Հ. Մովսեսն, որ կբնակեր Խորոյվի, մին քանի մոլորյալ անձինք մտցրել է Հռովմա փարախն. որոց մոլորվիլն դեռ գաղտնի է։ Հայր Ամբրոսիոսի Սամարկանդ գնալն հայոց հին գրյանց համար չի հաջողեցավ. ճանապարհի երկյուղն (բարբա[illegible]ս թուրքմաններից) պատճառ լինելով։

. . . . . . . . . . . . .

Խնդրեմք փույթ ի փույթ մեզ հետ նամակացի խոսակցություն ունենաք. նաև մին հետաքրքրական լուր պատահելու լինի (թե՛ ուսումնական մասին և թե՛ քաղաքական մասին) մեզ գրեք։ Հույս ունիմ մայիս ամսուն ես ևս Պոլիս գտնվելու լինիմ, առևտրական մասին. այն ժամանակն միմյանց տեսնելով կխոսիմք երես առ երես՝ երկարորեն՝ ամենայն առարկայից վերա։ Եվ շատ կարելի է, որ Կարապետ եղբայրս ալ բերեմ հետս այնտեղ մին պատշաճավոր ուսումնարան հանձնելու։

Այնտեղ ուրիշ մասնավոր ուսումնարանաց հանգամանքներն

*ինձ գրեցին, պատճառն՝ որ կամենում եմ եղբայրս Հիմէկվանից պատրաստեմ նույն ուսումնարանանց մեջ մտնելու. զի Կ. Պոլիս գնալուց հետո այլևս դժվարություն չկրե, նախապատրաստ գոլով ուղղակի ընդունվի։ Ողջ լերուք։*

*Մերս ջերմեռանդ սերն կհիշեք Ձեր ու մեր սիրելյաց։*

*Մնամ Ձեր քաղցր տեսության անձկալի մտերիմ եղբայր Ձեր,*

Հակոբ Միրզայան։

# 1858

## 2. [ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՎԵՏԻՍՅԱՆԻՆ]

Ի 1858—20 ապրիլ ի Սալմաստ նահանգի Փիաջիկ գեղջ

*Սրտակից եղբայր,*

*Հովհաննես Ավետիսյան.*

*Շնորհալիր նամակդ ընկալա ապրիլ ամսո 15-ին, որուն անձկալի սրտիվ փափագում էի, և հասու լինելով այժմյան վիճակիդ և պարագաներուդ, հիրավի՛, բազում հրճվանք լեցվավ սիրտս։ Ձեր նամակիցն երևում է, որ դեռ երկմտության մեջ եք։ Եվ ծնողացդ վճռին սպասելով՝ չեք գիտում՝ արդյոք դեպի ո՛ր կողմն ուղղեք Ձեր մտաց ղեկն հասնելու նպատակի նավահանգստին։ Սիրելի՛դ իմ, այն ժամանակն արժան էր Ձեզ ծնողացդ կամացն ունկնդիր լինել, երբ նոցա խաղաղ գերդաստանին մեջ կյանք էիք վարում, բայց այժմ ո՞ւր եք դուք ու Բուզանդիոն, և ո՞ւր Աքուլյաց երկիրն։ Հայաստանի ծնողաց կամքն (որպես և փորձած եմ) այն է, որ յուրանց որդիքն երբեք աչքերու առջևիցն չի հեռացնին. զի միշտ տեսնելով նրանց սրտներու ուրախություն չսպառի։ Եվ այնպես՝ ըստ նախնյաց սովորության թե լավ և թե վատ կյանք վարեն։*

*Նաև այն դիտավորությունները, որ այժմեն ուղղած եք մըտքներուդ մեջ, ինձ բավական անհարմար է երևում։ Այսինքն՝ Բեբեքի դպրոցեն Մալթա գնալն. այնտեղից Լոնդրայի համալսարանն և այնուհետև Փարիսու Հայոց ճեմարանն, նորանից հետո աստված գիտե որտեղ։ Սիրելիդ իմ, որչափ է մարդուս կյանքն։ Այսչափ տեղերում շրջշրջելն համարյա կսպառե մարդկային կենաց մեծ մասն. ուրեմն ի՞նչ ժամանակ պիտի գործի դնեք Ձեր հավաքած*

գիտությունների ազգի օգտին համար.— այրության աշունացյալ սահմանո՞ւմն՝ իզուր։ Մեղուն՝ զանազան ծաղիկներից նյութ հավաքելով ապա կդառնա յուր փեթակն՝ մեղր շինելու։ Իսկ եթե նա միշտ նյութ հավաքելով պարապվի, ե՞րբ պիտի յուր քաղցր պարգևն ընծայե մեզ։ Բնականից դուրս բան է։ Գերմանիայի ուսման ագահ ստուդենտներու վիճակն արդեն նախածանոթ է Ձեզ.— այն ինչ մին համալսարանում յուրյանց ուսանելի արհեստն կվերջացնեն. ահա գրքերն շալակած սկսում են գնալ դեպի մյուս համալսարանն։ Այնտեղից ևս դեպի մյուսն գնալով ու մյուս, մյուս, մյուս ասելով, կտեսնես մեր պատվելի ստուդենտն սպիտակ ալիքներով, զանազան տկարություններ ստացած նոր աշխարհ կմտնե. ինքն անպիտան մեզ համար ու աշխարհն իսկ իրա համար...

Իմաստության անպարունակելի օվգինոսն դժվարին է փոքրիկ գլխի մեջ ամփոփել. լավ ևս է, մին արժանավոր արհեստի մեջ կատարելագործվել և նորանով այս շուտ անց կյանքն անցուցանել հօգուտ ազգի և հայրենյաց։

Իսկ այդ ամերիկացվոց վարժարաններն՝ Պոլսում, Մալթայում և կամ այլ տեղերում հույժ անհարմար են մեր հայազգի պատանիներուն համար. պատճառն՝ ամերիկացիք այն դիտավորությամբ են հիմնած այդ ուսումնարաններն, որ զանազան ազգաց որդիքն նորանցում կրթվելով յուրյանց սեփական ազգակցական որսալու պատճառ լինին. նաև ուսանելի առարկաներն, նույն նպատակավ սահմանված են իբրև գաղտնի մեքենա մոլորության։

Այս միջոցներումս մին նորջուղայեցի չափահաս տիրացու եկավ Ուրմիոյ միսիոներուն մոտ, որ և միտք ուներ անգլիարեն ուսանելու։ Մին ժամանակ Հնդկաստանում ամերիկացի քարոզիչներուն քով մնացած է, ստանալով նորանցմե պրոթեստանդական ոգի։ Տեղվույս քարոզիչներն նրան ևս առաջարկեցին Պոլսո Բեբեքի դպրոցն։ Դուք ևս շուտով կտեսնեք նրան։ Բայց հայկաբանության մեջ բավականին հմտություն ունի, որն երևում է նորա ինձ Ուրմիուց գրած նամակիցն։ Երբ որ այնտեղ եկավ աշխատեցեք մըտքից հանելու և մին այլ հայոց ուսումնարանում աշխատեցնելու. որովհետև նորա վախճանն վտանգավոր կարող է լինել ազգի համար։

Շնորհակալ եմ զի ազգին վերայօք մին քանի ուրախալի լուրեր գրած էիք։ Բայց սիրելիդ իմ, թեպետև զանազան կողմերից միշտ ազգի հառաջադիմության համար բարի ավետիքներ լսելով առժամանակ հանգչում է սրտիս տխրության հուրն, այլ մյուս

անգամ հայելով Ատրպատականի հայոց ողորմելի վիճակին, տառապանքներն կրկին պաշարում են զիս։ Պարսկահայք մահահրավեր քնով ննջած են տգիտության խավարի սեավ քողին տակ, և չկա այն ազգասեր ոգին, որ կարողանա զարթուցանել նրանց խորին թմրությունից։ Պարսկաստանի վիճակավոր առաջնորդն, փոխանակ մին օգնություն անելու, ինքն մեծամեծ չարյաց պատճառ լինում է։ Ես շատ զարմանում եմ, որ այդպիսի անհոգ հոգևորականներու իշխանության ենթադրյալ ժողովուրդներն ինչպես մինչև ցայժմ չեն կորցրած յուրյանց ազգությունն. մանավանդ Պարսկաստանում, այլազգաց տերության մեջ։ Այդ կարի անլուծանելի խնդիր եղած է իմ մտքին։

Ոհ, Հովհաննես եղբայր. սկսյալ այն ժամանակից, որ Հայաստանն կորցրավ յուր երջանիկ սուրբ հայրերն, հայոց հոգևորականներն սկսած են հետզհետե դեպի ներքին աստիճանն դիմել. փչացնելով յուրյանց բարոյականության և սրբազան պաշտոնի ճշմարիտ հատկություններն։ Որն քաջ կտեսնես ստորագրյալ նկարագրությունիցն։ Թեպետև շատ ուսումնականներ ազգի պակասությունն այլոց չի հայտնելու համար մինչև ցայժմ ծածկած են թողել։

Միտքդ բեր Հայաստանի անթիվ վանքերն, մենաստաններն, անապատներն, նաև նույն սբ. Էջմիածինն և նոցա մեջ լեցված անհամար կրոնավորներն, որովք կարի վես սրտով պարծենում է հայոց ազգն։ Ի՞նչ օգուտ ունին այժմ այս աստուծո տաճարներն.— ուրիշ մին օգուտ չունին, եթե ոչ բնակարան եղած են մոլի, հեշտասեր, ծույլ անձանց, որք ընդունելով կրոնավոր անունն, ազգն հովվելու պաշտոն ստանալով, թողած են յուրյանց հոտն անտերունչ, անօգնական գայլոց ժանիքներումն՝ ինքյանք առանձնացեալ են վանքերու սենյակներումն այնու հույժ դյուրին միջոց գտանելով՝ ազգն կողոպտելու և յուրյանց անպիտան կյանքն վարելու։ Ա՜հ, որպես երբեմն խարազանավ արտաքսելով տեր ի տաճարից ապականիչ դպիրներն և փարիսեցիներն, ասում էր զայրագին — «Իմ տունս աղոթքի տուն պիտի կոչվի, բայց դուք արեցիք այր ավազակաց»։— Երանի թե յուր աստվածային նախախնամությամբն ևս արտաքսեր մեր Հայաստանի սբ. տաճարներից ապականիչ վարդապետներն։ Նաև մտածիր, թե որչափ մեծ արդյունք բաշխում են ջերմեռանդ հայք յուրյանց ազգային ուխտատեղիներուն, որոնք եթե հավաքվելու լինին առանձին տեսչությամբ շատ ազգօգուտ գործառնություններ կլինին նորանցո՛վ. իսկ

*բոլորն վարդապետներու որկրամոլությամբն սպառվում են։ Եվ այս է գլխավոր պատճառն զի Հայոց Հոգևորականն վախճանելուց հետո մին մեծ վաճառականից ավելի փող է թողվում. որտեղի՞ց է — բոլորն ազգից կողոպտած են։*

*Ինչևիցե, Հայոց Հոգևորականներու չարիքներն այնչափ շատ են, որ ամենևին արժան ևս չէ հիշել կամ գրչի տակ գցել։*

*Հատուկ բարև ունիմ ձեր ու մեր սիրելիներուն։*

*(Ներեցեք, պատվելի ԻսաՀակն շտապ դուրս գալու Համար վռազ գրեցի. այս միջոցներումս կրկին նամակ կու ստանանք, նորանում մին քանի արժանավոր լուրեր կու Հաղորդեմք)։*

*Մնամ Ձեր քաղցր տեսության անձկալի մտերիմ եղբայր, Ձեր՝*

Հակոբ Միրզայան:

## 3. [ՄԿՐՏԻՉ ԽՐԻՄՅԱՆԻՆ]

1858 թ., [մայիս—հունիս, Սալմաստ]

*Հայրենասեր Հայր,*

*Արդեն շատ ամիսներու դյուրահոլով շրջանն լրացավ. մինչ Ձեր նամակին սպասելով՝ սրտներուս անձկությունն օրըստավուր կբազմանա։ Հիրավի շատ հետաքրքրական լուր է՝ գիտեք արդյոք ոբպիսի սաստիկ զորությամբ նորությունը կմարտնչի հնության հետը։ Ի սկզբանե անտի այս երկու նախանձավոր թշնամիներն յուրաքանչյուրն առանձին խումբ որոշած մարտ կմղեն, այլ առաջինն միշտ հաղթող գտնվելու է։*

*Մարդկային բնությունն մին առանձին գաղտնի Հարաբերություն ունենալով տիեզերական Համաշխարհական բնության հետ, միանգամայն և նորանցից յուր կախումն ունի։ Զննելով տեսնում եմք. քառահոլով եղանակներուն հետ, երբ բնությունն տկարում և մեռնում է. դարձյալ առողջանալով Հարություն է առնում. ընդնմին և մարդկային սրտի եռանդն, ոգվո աշխույժն և մարմնո Հատկությունն նույն ձևերն ընդունում են։ Զարմանալի Հեղափոխություններ տեսնելու է՝ ոչ թե մին դարվո միջոցումն, այլ ընդհանուր դարերու սահմաններումն. ուր ծեր Կռոնոսն հիանալի պատկերացուցանե յուր ներգործություններն, որպես Համենայն տիեզերական բնության վերա, նույնպես և առհասարակ բոլոր մարդկային ազգին վերա։*

Այժմեան Եվրոպիո լուսավոր ազգաց իմաստության, քաղաքականության և զանազան արվեստաբանության այդչափ զարմանում եմք. եթե փոքր-ինչ անցյալ ժամանակին հայելու լինիմք, կտեսնեմք նրանց թշվառ բարբարոսական վիճակն։ Հայաստանն առաջագույն սկսավ ընդունել բնության բարի ձիրքերն. բայց ի՞նչ օգուտ, կատարելության չի հասավ, այլ հետզհետե նվազեցավ։ Այն ժամանակն, որ Եվրոպիո զանազան բարբարոս ազգերն՝ մինչ պատերազմներու մեջ շփոթված կատաղաբար միմյանց արյունն էին թափում, Հայաստանի ուշիմ որդիքը Աթինայի մեջ՝ Աթինաս Պալլասա ուսումն էին սովորում։ Բայց ինչո՞ւ համար նոքա յուրյանց բարբարոսական վիճակից այժմյան լուսավորությանն հասան. հայաստանյանք յուրյանց պայծառափայլ լուսավոր աստիճանից՝ օրըստավուր աղոտացան. կորցնելով ըստ մեծի մասին ազգությունն, կրոնն և հայրենիքն։ Այդ մասին թեպետ բազումք այլ և այլ պատճառներ հառաջ բերում են, իսկ նվաստս՝ տկար կարեացս չափ, Հայաստանի հոգևորականաց անհոգությունը համարում եմ սորա միմիայն էական պատճառն։ (Բայց ներողություն կխնդրեմք հառաջագույն չլինի, թե իմ դատողություններն Ձեր սրտին դիպչողական պատճառ լինին. ըստ որում դուք ևս հոգևորական դասակարգեն լինելով՝ գուցե մեր գրվածքներովն նեղանաք։ Այլ Ձեր ազգասեր ոգին և բարի նպատակն՝ որպես ընդհանուր ազգին, նույնպես և մեզ քաջահայտ է։ Հուսամ զի ճշմարտությանն ևս ընտրող լինեք և մեր տկար դատողությանն ներեք)։

Հայաստանն արդեն քրիստոնեական ժամանակումն կորսնցուց յուր վեհափառ թագավորներն. այնուհետև ազգի պահպանությունն ընկավ հոգևոր կառավարության տակ։ Բայց ափսո՜ս. զի որպես առաջնույն կործանման պատճառն նախանձն, երկպառակությունն եղավ, նույնպես և հետնույն օրըստավուր տկարանալուն պատճառն՝ նույն սադայելի ոգին եղավ։ Փառասիրությունն տիրեց ամենեցուն, վանքերն մեկ-մեկ դղյակներ դարձան. մեր պատվելի խաղաղություն ամենեցուն ասողներն առանձնացան նոցա մեջ։ Հիրավի, եթե մի այլ հարմար տեղի գտանեին յուրյանց հանգիստ, ծույլ, անպիտան կյանքն դյուրությամբ անցուցանելու՝ վանքերն ալ թող կուտային։ Բայց ո՞ւստի կարող էին գտանել այնպիսի տեղը, ուր որ ազգն ջերմեռանդ ոգով թափում է յուր ողորմության բարիքներն։ Թեպետ յուր հովիվներն՝ զինքն

անտերունչ՝ գաղանաց ժանիքներումն թողած՝ ինքեանք հեռացել են. բայց նա (ազգն) միշտ յուր սրտին մեջ պահպանում է յուր ապերախտ կրոնավորաց հարգն։

Եվրոպացիք որչափ ավելի ջանք են տանում ուսումնարաններն բազմացուցանելու և տպագրությունն առաջ տանելու՝ Հայաստանի վարդապետներն այնչափ հերքում են։ Այս երկուսս միայն պատճառ լինելով հասարակաց լուսավորությանն, եթե Հայաստանի մեջ ևս գործի դրվեն՝ կարող են մեր այսքան հայր սուրբերու հարգությանն փոքր-ինչ պակասություն բերել։ «Որովհետև երբ այժմյան նախապաշարյալ հնասեր ծերերն վերջացնեն և ազգին մեջ գիտնական անձինք գտնվեցան, այլևս չեն թողուլ կրոնավորներն վանքերու, անապատներու սենյակներումն փափկանալ, այլ նոցա սեփական պաշտոնն հասկացնել տալով, կստիպեին ըստ արժանվույն ժողովրդյան համար հոգ տանիլ», ինչպես նախնի սուրբն Սահակ, սուրբն Մեսրովբ և այլն անձնանվեր սուրբ հարք, աշխատում էին ազգին մտաց լուսավորության համար. և քարոզությամբ սուրբն գրոց առաքինություն հաստատում էին նրանց սրտին մեջ։

Ազգին սերը, մանավանդ եվրոպացոց օրինակներն, մեծ հորդոր եղավ Ձեզ հառաջ տանելու հայրենյացդ մեջ այն ամենահարկավոր ձեռնարկությունը, որն ծնանիլ ունի շատ պիտանի օգուտներ։ Բայց իբրև նոր բան և թշնամի հնության հետ՝ մեծ ջանք, մեծ դժվարություն կպահանջե՝ ըստ ամենայն մասին։ Որո համար ամենայն բանից առավել հարկավոր է համբերություն։ Դժվարին է մին տպավորություն իսպառ ջնջել և այլովն փոխարինել. իսկ համբերություն պետք է, մինչ ժամանակն ինքնին ի կատար ածել ժամանակն է պսակող ամեն բարի նպատակներու։

Խոհեմությունն միանգամայն դատավոր ընտրելով, նայելու է ամեն կողմերից, որ թե՛ ներկայի համար և թե՛ ապառնո համար մին արգելք չհասնի, որ Ձեր նպատակի խանգարմանն պատճառ կարող է լինել, շուտով նորա դեմն առնելու է ամենայն զգուշությամբ։ Եվ անհուսահատությամբ կամաց-կամաց հառաջ տանելու է գործն։

Հակոբ Միրզայան

Մելիք Հակոբյանց

# 1 8 6 0

## 4. [ՀՈՎՀԱՆՆԵՍ ՔԱԹԱՆՅԱՆԻՆ]

15-ին հունվարի 1860, Փիաչիկ. Սալմաստ

*Հոգեկից բարեկամ*

*Հ. Բ. Քաթանյանց.*

*Կարդա իմ այս դուզնաքյա գործը, որ անցյալ տարու ճանապարհորդությանս պտուղներիցն է, եթե հաճելի կթվի քեզ, կարող ես ուղարկել Մոսկվա, պարոն հրատարակչին «Հյուսիսափայլի», որ թե արժս կդատե, թող տպել տա յուր օրագրի տետրակներից մինի մեջ։ Խնդրեմ 1860 թվականում հրատարակելի «Հյուսիսափայլից» ուղարկեք ինձ մի օրինակ։ Հատուկ, անցյալ տարի մեծ հաճություն ստացա այդ եվրոպական բանագիտությամբ գրած ու խոսուն տետրակներից։ Երկար ժամանակ փափագում էի տեսանելու մի այդպիսի օրագրի հրատարակություն, որի մեջ ճշմարտությամբ պատկերանային հայոց ազգի վերքը և նոցա բժշկության համար գործադրելի հնարները։ Տա աստված ընդ երկար տևել «Հյուսիսափայլին» հօգուտ մեր հայրենիքի։*

Ձեր Հակոբ Մելիք-Հակոբյանց։

# 1 8 6 8

## 5. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

1868, 1 հունվարի, Փայաչիկ

*Անգին բարեկամ պարոն Ավագ Գևորգյան Աֆթանդիլ!*

*Քրիստոնյաների ընդունած տարեթիվը փոխեց յուր մի* ցիֆրը, *և այդ թվաբանական նշանագրի փոփոխության պատճառով, այսօր հազարավոր քաղաքներ, միլիոնավոր տներ, լցված ուրախությամբ, անհամար ձայներ կոչում են — «Շնորհավոր Նոր տարի»։*

*Բայց, անգին բարեկամ, ես չեմ սիրում հաղորդ լինել հասա-*

րակաց անխորհուրդ ուրախություններին, ուրեմն ներեցեք, որ միևնույն քաղաքավարությամբ չեմ բարևում Ձեզ։ Մանավանդ այս րոպեիս իմ սիրտը չէ զգում ոչինչ ուրախություն, այլ ընդհակառակն, մի անտանելի ցավ վրդովում է ինձ. և մի աներևույթ ձայն մեղմիկ շշնջում է իմ ականջիս— «Եղբայր, մի տարի ևս գնաց քո կյանքից...»։

Ասել է, թե մի քանի քայլերով մոտեցանք գերեզմանին։

Այս գիշեր (դեկտեմբերի վերջին գիշերն էր այդ) ես, նստած միայնակ իմ անձնական սենյակիս մեջ, խորասույզ եղած խառն մտածմունքներում, հանկարծ լսեցի անսովոր դղրդմունք, և միևնույն վայրկյանում հրացան գործիքների որոտը թնդացուցին իմ սենյակիս մելամաղձական լռությունը։ Դուրս գնացի. հա՜յ, հո՜յ, աղաղակ, հայհոյանք, անեծք, լսելի էին լինում գյուղական խրճիթների կտուրների վերա։ Այդ բաբելոնյան կատաղի խառնաձայնությունը տիրեց մի քանի ժամ։ Ես կարծեցի, թե գյուղացիք այդ ըսպառնալիքներով հալածում էին սատանային, որ այնքան հնուց բույն էր դրել նոցա խրճիթների մեջ։ Բայց ինձ ասացին, թե հայերը յուրյանց սովորական ավանդությամբ հալածում են հին տարին։

— Ինչո՞ւ,— հարցնում եմ ես առաջին հանդիպող գյուղացիին։

— Նորա համար, որ,— պատասխանում է ռամիկը յուր խըռպոտ ձայնով.— այդ հին տարին խիստ չար տարի էր, նա չբաշխեց մեզ ոչինչ բախտ. թող կորչի գնա հավիտենական կորստյան մեջ։

— Բայց Նոր տարին, կարծո՞ւմ եք, բերում է ձեզ մի նոր բա՞խտ, մի նոր օ՞ր,— կրկնում եմ իմ հարցը։

— Այո։—Պատասխանեց ռամիկը ինքնաբավական հաստատամտությամբ և հեռացավ։

Կարճելով իմ խոսակցությունը մոլեռանդ ռամկի հետ, դառնում եմ դեպ քեզ, իմ անգին բարեկամ, քանի՜-քանի՜ հազարավոր այդպիսի դեկտեմբերներ յուրյանց հրացաններով արտաքսել են հայոց ռամիկները, քանի՜-քանի՜ նոր տարիք սիրով և ուրախությամբ ընդունել են նոքա։ Բայց նոցանից և ոչ մինը չէ բերել նոցա համար մի նոր բախտ։

Արդարև, հոլովական տարիքը ոչինչ չեն ներգործում հայերի տխուր և տրտում վիճակի վերա։ Պատճառն, որ թեպետ բնության նախասահմանյալ օրենքներին համաձայն տարիքը փոփոխվում են — գնում է հինը, գալիս է նորը. բայց հայերը, անդարտ կենալով յուրյանց գերեզմանական անշարժության մեջ, երբեք չեն մտա-

ծում փոխել յուրյանց մեռելային դրությունը։ Հայերը յուրյանց կյանքը չեն համաձայնեցնում տարիների ընթացքի հետ, և ժամանակի պիտույքների հետ։ Հայերի համար թե անցյալը, թե ներկան, և թե ապառնին ունեն միևնույն կորստաբեր նշանակությունը։ Միով բանիվ, հայերի համար չկա «Նոր տարի»։

Չկամենալով ավելի տխուր գծեր տալ Ձեր զգացողությանը, վերջացնում եմ իմ խորհրդածությունը նոր տարվո մասին. և շտապում եմ հայտնել իմ ուրախությունը, որ պատճառեց Ձեր վերջին նամակը, երբ կարդացի, թե կրկին անգամ ընդունելություն եք գտել հեռագրատան մեջ։ Այդ ծառայությունը, միտ դնելով Պարսկաստանի անկարգ կառավարությանը, թեպետ մին նշանավոր բան չէ, բայց կարող էր դա ազատել ձեզ այն վտանգավոր ախտեն, որ կոչվում է դատարկություն:

Քանքարավոր Մ. Նալբանդյանցի ցավալի կյանքը և նորա ազավոր մահը նկարագրող լրագիրը անհամբերությամբ սպասում են ստանալ, որ և անհապաղ ետ կդարձուցանեմ։

Իմ աչքերս այժմ բոլորովին առողջ դրության մեջ են։ «Խլվըլիկի» մասին տակավին մին վճռական որոշումն արած չեմ. այլև դուք չգրեցիք, արդյոք մի բան այն մասին խոսեցա՞ք հարգի Տիգրան Աղայի հետ։

Վերջին լուրերը խ... խ... մասին խիստ տարակուսական են։ Սուլթանի կառավարությունը օրեցօր սահմանափակվում է, ստանալով խիստ ճնշյալ և կաշկանդյալ դրություն, և հանապազօրյա թշնամական հարաբերությունքը, հանկարծ կբռնկին մի ազդու հեղափոխության բոցերը...

Բեկի եղբորը՝ Բաղտասարին նշանեցին Մահտեսի Հարություն Վարդանյանի աղջիկը։ Ուրեմն նորա Թավրիզում հարս անելու միտքը մնաց անկատար։

Ձեր՝ Հակոբ Մ. Մելիք-Հակոբյան

## 6. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

1868, 20 հունվարի, Փայաջուկ

Ազնիվ բարեկամ,

Պարոն Ավագ Գևորգյան,

Իմ հորեղբոր որդի Շահպասի ձեռամբ ստացա Ձեր նամակը հունվարի 1-ից գրված, մի քանի հատ «Մասիսի» թերթերից, և

*մի հատ ներկա տարվա օրացույց, որ կացուցանում եք Ձեր առ ինձ սիրո հիշատակարանը։*

*Բայց ի՞նչ անհամեմատություն... որքա՛ն չնչին գնով գնահատում եք Դուք սերը,—սերը, որո հիշատակի համար կանգնված մետալյա, մարմարյա արձանքը, ահագին որձաքարյա կոթողները, գրանիտյա սյուները, գեղեցիկ մավզոլեոնքը,— բոլորը մաշվում, փչանում են, և չեն դիմանում կորստաբեր ժամանակի հարվածներին։ Ես ցավում եմ, Ձեր սիրո հիշատակարանը հանդիսացնում է մի փոքրիկ գիրք,— մի հատ օրացույց, որ տարին լրանալուց հետո կորուսանում է իր նշանակությունը և պիտի մի կողմ ձգվի...*

*Ներեցեք մի փոքր երգիծաբանության։*

*Այս ղասիտով ստացա Ձեր մի քանի տող գրությունը, մի քանի հատ «Մասիս» թերթերից, այլև «Ծաղիկ» կիսամսագիրը, որո մեջ կարդացի պարոն Մ. Նալբանդյանցի մահը։ Այս հատվածը այնքան գոհացուցիչ չէր, ազգային այդ թանկագին Ջոհի ցավալի մահը նկարագրելու համար՝ հռչակավոր Հյուգոյի գրիչն պետք է, և Ապովյանի վառված, կրակված սիրտն։ Մի՞թե այդքան կարճ պետք է խոսիլ այն տղամարդի մասին, որ այնքան երկար և սրրտաշարժ ոճով խոսացել է մեր ազգային պիտույքների մասին։*

*«Ծաղիկն» այս գրով կստանաք։ Մի՛ մոռացեք իմ շնորհակալությունը պարոն Ելիկեզելյանցին հիշելու, իր կիսամսագիրն մեզ ուղարկելն ընդունելու մասին։*

*Դուք գրած էիք, թե պարոն Նալբանդյանցի լուսանկար պատկերը հիշյալ պարոնի մոտ տեսած եք. բայց ի՞նչ եղավ Ձեր Պոլսուց գրել տված հանգուցելո պատկերն։ Արժանապես Մոսիո Թովմասի խոստմունքներն հավիտենականության կարոտություն ունեն. բե՛ր այնքան համբերություն։ Լավ է, որ Դուք Ձեր այժմյան ծանոթ պարոն Ելիկեզելյանի միջնորդությամբ բերել տաք իմ և Ձեր խնդրած պատկերներն։*

*Թավրիզի նոր լուրեր մի՛ խնայեցեք ինձ հաղորդելու։ Այստեղից Ձեր հետաքրքրությունն գրավող նոր գրելիք չունեմ, առայժմ մնաք բարյավ։*

*Որպես իմս՝* Հակոբ Մ. Մելիք-Հակոբյան

# 7. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

Ի 1868, 24 օգոստոս, Թիֆլիս

Ազնիվ բարեկամ,

Պարոն Ավագ Ավթանդիլ.

Ես այժմ Թիֆլիսում եմ, դուք այդ վաղուց լսած կլինիք, բայց ի՜նչ Թիֆլիս... ո՛չ այնպես երևում է ինձ այժմ այդ զեխ ու շռայլ քաղաքը, որպես տեսել էի նորան տասն տարի առաջ. այժմ ինձ այստեղ ամեն մի առարկա, ամեն մի իրողություն հրապուրում է և հիացնում է... Դուք, գիտեմ, Ձեր մեծամիտ անփութությամբ կասեք. ի՞նչ հաճոյական մի բան պիտի լինի, մի կիսաասիական և կիսաեվրոպական քաղաքում, որպիսի է կովկասյան Թիֆլիսը։ Ի՞նչ եք ուզում, սիրուն հավերժահարսո՞ւնք... անմահ հուրինե՞ր, կախարդական զբոսանքնե՞ր, գեղեցիկ, ծառազարդ ճեմելիքներով... միով բանիվ, ամեն ինչ, որ կարող են գրավել մեր խելքը, մեր միտքը ու մեր սիրտը, դուք կտեսանեք այստեղ։

Դոքա ցնորական բաներ են։

Բայց ես ունեմ այժմ մի նախանձելի շրջանակ այստեղի ուսումնական և կարի աշխույժ երիտասարդներից։ Իմ «Խլվլիկը» զարմանալի ընդունելություն գտավ տեղի ընթերցող հասարակութենեն. քանի՜-քանի՜ գիշերներ եղել են առանձին-առանձին ժողովներ նորա ընթերցանության համար։

Նազարյանցեն նամակներ եմ ստանում, նա պահանջել էր իմ գիրքը Մոսկվա ուղարկելու, որ տպվի յուր «Լապտեր Հայաստանի» օրագրի մեջ, որ միտք ունի այս տարի ի լույս ընծայել։ Բայց քանի օր տակավին կուշացնիմ նորա ուղարկելը, պատճառ, շատերը ցանկանում են կարդալ։

Մեր առևտրական գործի և ընկերական հաշիվների մասին, որո համար այստեղ եկած էինք, տակավին պիտի ուշանամք, որովհետև, անիրավ Զաքարիան, զանազան չարահոգի և մեզի թըշնամի անձանց թելադրությամբ չկամի յուր գործն մեզ հետ խաղաղությամբ վերջացնել։

Միմիայն խնդրեմ, այս խորհուրդն շուտով տեղեկանալով, առանց ուշացնելու, հեռագրով մեզ լուր տաք. այսինքն, տեղիցս գրված էր նաի բուլվու-զարին, որ Բաբա Հարությունյանին Սալմաստից մուհասիլով բերել տալով Թավրիզ բանտում պահել տար. արդյոք բերել տվա՞ծ է, թե ոչ։

*Արժանապատիվ Մոսիո Թովմասին, և նորա ընկեր պարկեշտափայլ Աննա խանումին մեր կողմից սիրո ողջույն կնվիրեք։*

*Մի մոռացեք և աղա Հեթումի քեփն հարցնելու։*

*Փեսա Սոլոմոնն, փառք աստծո, կատարյալ առողջության մեջ է։*

*Ձեր՝ Հակոբ Մ. Մելիք-Հակոբյան.*

# 1 8 6 9

## 8. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

Ի 1869 ամի, 22 մարտի, Թաբրիզ

*Ազնիվ պարոն!*

*Ավելորդ եմ համարում իմ գործերի այժմյան վիճակից ձեզ օրևիցե տեղեկություն տալ, մտածելով, այն իրողությունքն, որ այնքան անտանելի են ինձ, չցավեցնել նոցանով մի վաղեմի բարեկամի սիրտ։*

*Բայց զարմանալի է, երբ մարդկային կյանքի մի տարրը շեղվում է յուր բնական կարգից, արդեն դժբախտության մրրիկը կատաղաբար սկսում է ամեն կողմից փոթորկել... ազգականք, բարեկամք, ընկերք և ծանոթք բոլորն հեռանում են նորանից... բայց մարդը, այդ դժոխմբեր դրության մեջ ոչինչ հույս, ոչինչ մխիթարություն և ապավեն չէ գտանում յուրյան, բացի այն միակ անեբեվույթ* էակը, *որո վերա դրվում է անճարների հույսը։*

*Արդարև, ես մի մեծ պատերազմ եմ պատերազմում բախտի անհաջողության հետ, բայց միևնույն ժամանակ իմ սիրտս և իմ խղճմտանքս այնպես անդորր և հանգիստ են որպես առաջ։ Ես միշտ մխիթարություն եմ գտանում իմ տեսած, լսած և կարդացած հազարավոր օրինակների մեջ, երբ բախտի անհաստատ ճախարակի շրջանը երբեմն մինչև աստղերը բարձրացնում է մարդը, իսկ երբեմն մինչև անդունդը ի խոր գլորում։*

*Կամք նախախնամության օրհնյալ եղիցի. կվարվիմք բախտի հեղափոխությանց հետ, միշտ ակներև ունելով, որ աշխարհս անցավոր մի բան է։*

*Պարո՛ն, բավականին զգալի է ինձ իմ խղճի խայթը, երբ կամենում եմ գրել ձեզ այն, որ մինչև այսօր, իբրև ձեզ միշտ կարեկից բարեկամ, չեմ կամեցել ասել։ Բայց իմ դրության այժմյան կարիքը ստիպում է... դուք կտաք աղա Երիմյայրին ինձանից քանի տարի առաջ ձեր ստացած* քսան *թումանը, որը փոխարեն ես այստեղ ստացա այդ պարոնից։*

*Հուսով եմ, որ դուք կկատարեք ձեր բարեկամական սրբազան պարտքը, իմ այժմյան կարոտության մեջ փոխարինելով այն լավությունը, որն որ ես արած եմ ձեզ այն ժամանակ, երբ դուք ևս ինձ նման զգում էիք արծաթի կարոտություն։*

*Ձեր՝* Հակոբ Մ. Մելիք-Հակոբյան

# 1 8 7 2

## 9. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

**Ի 1872 ամի, 4 օգոստոսի, Թիփլիս**

*Հարգի պ. Ավագ Ավթանդիլոֆ!*

*«Մշակի» 30-րդ համարի մեջ կտեսնեք ձեր վերջին նամակը տպված, որ գրված էր Պարսկաստանի միսիոնարների առիթով։ Խմբագրությունը միշտ սիրով կընդուներ տպել այդպիսի նամակներ, եթե դուք կշարունակեք ուղարկել։ Լրագրության համար խիստ թանկագին են ճիշտ, առօրյա տեղեկություններ, անցքեր, որք կարող էին հետաքրքրություն շարժել։ Ձեր վերջին նամակը զուրկ չէր այդ հատկություններից։*

*Մի քանի փոփոխություններ, որ եղած են ձեր նամակի մեջ, ցույց կտան «Մշակի» հայացքը և նորա ուղղությունը։ Հուսով եմ, այսուհետև կհարմարեցնեք ձեր նամակները այս լրագրի ուղղությանը, որ ստիպված չլինի նա յուր կողմից փոփոխություններ անել։*

*Ձեր առաջին նամակները ես անհարմար համարեցի տպել տալ, ճշմարիտն ասած, ինձ ցանկալի չէր, որ դուք այդպիսի նամակներով գրականական հանդես դուրս գաք։ Ձեր լեզուն բավա-*

կանին մշակված է, դուք ավելի շատ ծանոթ եք Պարսկաստանին, դուք կարող եք գրել ավելի լավ նամակներ։

Թեև հեգնական և պարսավաբանական ոճը ձեզ շատ հաջող-վում է, և այդ նամակները այդ մասին ունեին յուրյանց գեղեցիկ կողմերը, բայց մի այդպիսի ոճով գրվում են կյանքից առած փոք-րիկ պատկերներ, վեպիկներ, և ո՛չ նամակագրություններ։

«Մշակի» խմբագրությունը միշտ ստանում է Թավրիզից զա-նազան թղթակցություններ, պարոն նամակագիրքը կարծես միմիայն Թավրիզով են զբաղված, կարծես Պարսկաստանի այլ քաղաքնե-րում ոչինչ չեն պատահում։ Պարսկաստանը լի է առօրյա հետա-քրքրական անցքերով, որո մասին ոչ մի պարբերական հրատա-րակություն չէ խոսում։

Ինչե՞ր չեն լինում դիվանխանաներում, ի՞նչեր չեն լինում շարիաթխանաներում, ի՞նչեր չեն գործում նահանգների հաքիմ-ներն, մուլքադարներն և ի՞նչեր չէ անում վերջապես մեր Ատրպա-տականի հոգևոր կառավարությունը։ Այն բոլոր անկարգություն-ներն, որ պատահում են այս տեղերում, միշտ առատ նյութեր կա-րող են լինել լրագրության համար։

Դուք եղել եք Թեհրանում, Ղազվինում, և տեսել եք Պարս-կաստանի զանազան քաղաքներ, դուք կարող եք շատ նյութեր հա-ղորդել մեզ։ «Մշակի» խմբագրությունը միշտ պատրաստ է ամե-նայն ուրախությամբ տպել, այլև վարձատրել ձեր աշխատությու-նը մի օրինակ ձրի ուղարկելով ձեզ։

Եվ ձեր մի այդպիսի աշխատասիրությունն մի այլ պատճա-ռավ ևս կվարձատրվի, երբ դուք կծանոթվիք հայոց ընթերցող հասարակությանը, և երբ այս կողմերը գալու լինիք, շուտով կա-րող եք ձեզ որևիցե պաշտոն գտանել։

Ուշադրությամբ կարդացեք «Մշակի» № 31 Ղարադաղու նա-մակը, այդպիսի պարունակություն ունեցող նամակներ միշտ հե-տաքրքրությամբ կկարդացվին։ Թեև նա ամենևին Պարսկաստա-նից չէ գրված, այսուամենայնիվ, ճիշտ տեղեկություններ է տալիս այդ գավառի վիճակից։

Ինձ շատ ցանկալի էր գիտենալ մեր վաղեմի բարեկամ Մո-սիո Թովմասի և նորա ընտանիքի առողջությունը։ Ձեզանից շնոր-հակալ կլինիմ, եթե հաղորդեք նոցա մասին մի քանի տեղեկու-թյուն։ Ես մինչև մահ չեմ կարող մոռանալ այդ պատվելի գեր-դաստանի ազնիվ հյուրասիրությունը։

Այլև գրեցեք ինձ, թե ի՞նչ եք շինում այժմ դուք, և ձեր նպատակները ի՞նչ է ձեր ապագայի մասին։

Աղա Երեմիայից ոչինչ լուր չունեմ, չգիտեմ այդ պարոնը ինչո՞վ է պարապվում այժմ։

Դուք կարդացած կլինիք «Մշակի» մեջ «Մելիքզադե» ստորագրությամբ մի պատմական հոդված վրաց թագավորազնի, վալիի Պարսկաստանի կյանքից, ես դարձյալ պատրաստում եմ մի հոդված վալիի մասին, խնդրեմ իմ եղբայրական ողջույնը մատուցանելով Աննա խանումին, ասեք, եթե նորան հայտնի էին որևիցե անցքեր վալիի կամ նորա հետ Պարսկաստան եկած թավադների մասին, հաղորդել մեզ։

Այլև գրեցեք, թե «Մշակը» որպես ազդեցություն է ունենում տեղիդ ընթերցողների վերա, համակրում են, թե ո՛չ։

Ձեր՝ Հ. Մելիք-Հակոբյան.

Միրզա-Մելքոմ խանի մասին ոչինչ չեն գրում, թե նա ի՛նչ նորություններ արեց, կամ անելու միտք ունի Պարսկաստանի քաղաքական կյանքում։ Ձեր վերջին նամակը միսիոնարների մասին գրված ամենևին չէր կարդացվում թանաքի և թղթի անպիտանության պատճառավ։

## 1873

## 10. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

Ի 1873 ամի, 17 մարտի, Թիֆլիս քաղաք

Ազնիվ բարեկամ պարոն Ավագ!

Ձեր նամակներն բոլորն ստացած եմ, այսքան ժամանակ չպատասխանելուս պատճառը իմ առ ժամանակյա մարմնական տկարությունն էր։ Իմ Թիֆլիսեն դուրս գալս առժամանակ ետ ընկավ, չեմ կարող ճշտությամբ ասել, թե ե՞րբ կարող եմ հեռանալ այստեղից, որովհետև զանազան հանգամանքներ ստիպում են դեռևս սպասել։

«Մշակի» համարներն կուղարկվին ձեր գրած հասցեներով։ Զարմանում եմ փոստայում ամեն մի համարի մասին 15 կոպ. պահանջելու համար։ Այդ մի մեծ արգելք կարող էր լինել «Մշակի» Պարսկաստանում տարածվելուն։

«Մեղուի» 7-րդ համարում կարդացի Խ. Գրիգորյանի նամակը. ես չեմ ճանաչում ո՞վ է այդ հիմարը։ «Մեղուի» խմբագրության անդամներից մեկը ինձ ասաց, թե նա իր նամակի մեջ զանազան անձնական հայհոյանքներ էր գրած իմ և էսպիոնի դեմ. միայն նոքա դուրս էին ձգել նրա նամակից։ Հարկավոր է մի լավ տաք շիշ այդ անասունին։

Ձեր երկու նամակներն պարոն Արծրունու անվամբ կարդացի, համարներն կուղարկվեն յուրյանց հասցեներով, միայն երրորդ և չորրորդ համարներն սպառված են։

Պարոն Արծրունին տվեց ինձ, և կարդացի պարոն Առաքելյանի նամակը, որո մեջ նա խոստանում է այսուհետև «Մշակին» նյութեր հաղորդել. նա հիշում է և իր թարգմանությունների մասին։ Թարգմանական գրվածքները «Մշակը» չի տպագրում, եթե նոքա հասարակական նշանակություն չունեին և կամ մասնավորապես հայերին չէին վերաբերում։ Թեհրանի «Իրան» լրագրի հետաքրքրական տեղերից թարգմանություններ ավելի նշանակություն կունենան, որովհետև այդ լրագիրը Թիֆլիսում չէ ստացվում, բացի մի համարից, որ պարսից հյուպատոսարանը միշտ գաղտնի է պահում։

Այսուհետև ձեր նամակները կարող եք ուղղակի իմ անունով գրել։ Հաղորդեցե՛ք, խնդրեմ, պարոն Կ. Շերմազանյանը Թավրիզումն է, թե գնացել է Թեհրան։ Որովհետև նա ինձ ասաց, թե երկար չպետք է մնա այնտեղ։

Պարոն Մելիքազարյանցը ինձ պատմեց հաքիմ Սահաբի աղջրկա Ղարաբաղում մարդի տալը. շատ ցավում եմ այդ թաքրիդյան հավերժահարսի անբախտության մասին։ Ես զարմանում եմ, թե ինչու նորա ծնողքը այդպես անխոհեմաբար վարվեցան։

Ձեր՝ Հ. Մ. Մելիք-Հակոբյան.

Եթե ժամանակ ունենաք ղարադաղցոց լեզվով մի փոքրիկ ծիծաղաշարժ պատկեր գրեցեք։

## 1 8 7 4

## 11. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

1874, 14 հունվարի, Թիֆլիս

*Պարոն Ավագ Ավթանդիլոֆ!*

*Պարոն Աստվածատուր Ղարաբեկովի նամակները չտպվեցան, որովհետև խմբագրատունը անմիջապես հեռագիր ստացավ հեղինակից չտպագրելու համար, և համաձայն ձեր գրության ետ ուղարկեցինք։*

*Խմբագրությունը չէ ստացել ոչ մի նամակ էսպիոնից, Թաբրիզում առաջնորդի դեմ եղած խռովությունների մասին։ Նույն պարունակությամբ ստացվել էր միայն մի նամակ «Թաբրիզեցի» ստորագրությամբ, որը տպվեցավ ներկա տարվա «Մշակի» առաջին համարում։*

*Ձեր խնդրած «Մշակի» թերթերը կուղարկվեն յուրյանց հասցեներով։*

Հ. Մ. Մելիք-Հակոբյան

*Պ. Ասրի Միքայելյանի որդուն պատկանած թերթերը ուղարկվել են աղա Արզուման Նազարբեկյանի անունով։*

## 12. [ՌԱՖԱՅԵԼ ՊԱՏԿԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 1874, 9 օգոստոսի

*Ազնիվ բարեկամ.*

*Այս փոստայով ուղարկեցի Ձեր անվամբ մի կապոց, որ պարունակում է յուր մեջ* fսան *օրինակ (1 և 2-րդ հատոր) Րաֆֆիի «Փունջ» կոչված բանաստեղծական և վիպասանական աշխատությունններից։ Հուսով ենք, նեղություն հանձն կառնեք այդ գրքերը Ձեր կողմերում տարածելու և գոյացած արժաթը կդարձնեք Թիֆլիս «Մշակի» խմբագրատանը պ. Գրիգոր Արծրունու անունով։*

*Ցանկալի է հեղինակին լսել Ձեր կարծիքը յուր աշխատությունների մասին թե առանձին նամակով և թե տպագրությամբ։ Հուսով եմ, Դուք չեք զլանալու այդ Ձեր բարեկամից։*

*Մեր դրությունը նույնն է որպես տեսած եք, տակավին չենք հաշտված անողոք բախտի հետ...: Ձեր ինձ Գերմանիա գնալու հորդորը մի սաստիկ բաղձանք է թողած սրտիս մեջ, բայց ի՞նչ միջոցներով հասնիլ այդ նպատակին, այդ անորոշ է:*

*Պարոն Արծրունին առողջ է, բարևում է Ձեզ, միայն խեղճը անդադար աշխատությունից կմախք է դարձել:*

*«Մեղվականների» ատելությունը դեպի «Մշակը» ու նորա աշխատակիցները օրըստօրե ավելի տգեղ կերպարանք է ստանում: Ցավալի է, որ գործող երիտասարդությունը այդպիսի ոխակալ հարաբերության մեջ է գտնվում...*

*Ձեր ազգակիցը պ. Ք. Պատկանյանը այստեղ է, բայց դեռ երեսը տեսած չենք: Ես զարմանում եմ, այդ պարոնը մոտ տարիներումս երկու անգամ Թիֆլիսում գտնվեցավ, բայց միշտ յուրյան թաքուստի մեջ պահեց:*

*Այժմ պատրաստում եմ «Փունջի» 3-րդ հատորը տպագրության համար. այդ աշխատությունը եթե ոչ նյութապես, բայց բարոյապես մխիթարում է մեր կյանքի դառնությունը:*

*Եթե գրքերից ավելի ծախվելու լինի, հայտնեցեք կրկին ուղարկել:*

*Ձեզ միշտ հարգող* Հ. Մելիք-Հակոբյան

**Մեր հասցեն:—**
Тифлис, редакция газеты «Мшак»
Акопу Мелик-Акопяну.

## 13. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻՆ]

**1 դեկտեմ., 1874, Թիֆլիս**

*Պատվելի բարեկամ*
*Հ. Կարապետյան,*

*Դուք հեռացաք այստեղից առանց ինձ հետ տեսնվելու, փույթ չէ՛, ես այդ վերաբերում եմ որևիցե դիպվածքի. բայց թե դուք բոլորովին զլացաք ձեր ինձ արած խոստմունքները, ես այդ ներել չեմ կարող:*

*Հիշո՞ւմ եք, թե ինչեր խոստացաք ինձ.— միշտ անպակաս անել ձեր նամակագրությունը և հաղորդել տեղային դրությունը*

*թե դպրոցի, թե նորա վարչության և թե այլ հասարակական երևույթների մասին։ Հուսով, եմ որ դուք այնքան մոռացկոտ չեք և ո՛չ այնքան ծույլ, որ չկատարեք ձեր խոստմունքը։*

*Ձեր հոգաբարձուներից մինը՝ պ. Ա. Ղարաբեկովն քանի շաբաթ առաջ անցել էր Թիֆլիսից դեպի Եվրոպա, ցավում եմ, որ նորան տեսնել չկարողացա, որովհետև մինչև իմ լսելս նորա մասին, հեռացել էր այստեղից։ Բայց մի պարոնից, որ նորա հետ տեսնված էր, իմացա, որ պ. Ղարաբեկովն գոհ էր ձեր մասին, այդ խիստ ուրախություն պատճառեց ինձ։*

*Հետաքրքրական է գիտենալ, թե որպես է վարում յուր պաշտոնը ձեր ընկերը. արդյոք նա արդարացրուց այն նախագուշակությունները, որ լինում էին նորա մասին, թե փոքրիշատե ուղղվել է... Գրեցեք, խնդրեմ, թե ի՞նչպես եք տեսնում տեղային առաջնորդին կամ ձեր տեսչին. գրեցեք, ո՞վ է այժմ գլխավոր դերը խաղում այնտեղի հասարակական գործերում։*

*Ես զբաղված եմ իմ գրքի III հատորի պատրաստությունով. գալոց տարվա հունվարից տպագրությունը կսկսվի։ Այդ աշխատությունը չափից դուրս զբաղեցրել է ինձ այժմ։*

*Գալոց տարի «Մշակի» հրատարակությունը կշարունակվի նույն պրոգրամայով. մի օրինակ կուղարկեմ տեղային դպրոցի անունով, դուք նա կկարդաք։*

*Իմ անունով նամակներ կարող եք տալ պ. Մելիք-Ազարյանցի ընկեր մահտեսի Սիմոնին, նա կհասցնե ինձ։*

*Ցանկանում եմ ձեզ բախտ և հաջողություն։*

Հ. Մելիք-Հակոբյանց

## 1875

### 14. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻՆ]

20 հունվարի, 1875, Թիֆլիս

*Սիրելի բարեկամ*

*Հ. Կարապետյանց,*

*Ձեր նամակներն ստացած եմ, ցավում եմ, որ Թավրիզում Ձեր նպատակներն արգելքների են հանդիպում. մի անզարգացած*

հասարակության մեջ, ուր տիրում է կիրքը և խավար նախապաշարմունքը, այլ կերպ լինել կարող չէր։ Այդպիսի հանգամանքներում միշտ համբերությունը և հաստատ կամքը հաղթող են հանդիսանում. ուրախ եմ, որ դրանք Ձեր մեջ կգտնվեն։

Այդ վաղեմի ճշմարտություն է՝ թե «ոսկին գետնի վրա չի մնա», կհանդիպի նրան մի ճանաչող, որ վեր կբարձրացնե։ Մի՛ հուսահատվեցեք, արդարև, շատ անգամ կեղծավոր շողոքորթողներն ավելի են աչքի ընկնում և համեստ աշխատողները անհայտության մեջ են մնում. իսկ դրանք ժամանակավոր բաներ են. խաբեությունը վաղ թե ուշ, վերջապես մի օր կմերկանա...

Ես թե ձեր պատվին և թե իմ պատվին ընդդեմ համարեցի պպ. Ասրուն և Սարգսին նամակ գրելն. միայն խնդրեցի պ. Մելիք-Ազարյանցին, նա գրեց աղա Արզումանին և մահտեսի Սիմոնին, որ ձեզ պաշտպանեն։ Պետք է ուշադրություն չդարձնել այնպիսի անձանց չարախոսություններին. «Շունը կհաչի, բայց քարվանը կանցնի»։

Ես դեռ վաղ եմ համարում հայտնել ձեզ իմ դիտավորությունս Թավրիզի մասին, միայն այսքանը կասեմ, որ ներկա տարվա հուլիս ամսին այնտեղ կլինեմ. շատ բաներ ուրիշ ձև և ընթացք կստանան...

Կարդացի ձեր ուսումնարանի պրոգրաման, չափից դուրս անկարգ է. ցավում եմ, որ հոգաբարձությունը յուր պայմանով այդպես անիրավացի կերպով կապված է տեսչի հետ. այդ եզուիտը բավականին խորամանկ կերպով սանձահարել է նրանց...

Գրեցեք, որքան ձեզ հայտնի է, թե ի՞նչ էին գլխավոր շարժառիթները, որ չուզեցին ես տեղվույդ ուսումնարանում մտնեի. ինձ շատ հետաքրքրական է այդ գիտենալ։ Այլև հայտնեցեք, առաջնորդի ձայնը որքան ուժ ունի ուսումնարանի կառավարության մեջ, կամ հոգաբարձուներից որի՞ն ավելի են նախապատվում։

Պ. Սարգիսը վայրահաչ է, բայց պ. Ասրին այնքան վատ մարդ չէ, որպես դուք նկարագրում եք, եթե նրան կարողանաք հաճոյանալ, նա այնպես հո չէ, որ զրկե ձեզ վարձատրությունից. նա յուր հաշիվների մեջ ճիշտ է. միայն մի փոքր պետք է նրա փառասիրությանը խունկ ծխել. այդպիսի հիմարները սիրում են այդ։

Մի նախանձեցեք Մուշեղյանցի փառքին. «ամեն ինչ ոսկի չէ, ինչ որ փայլում է». խաբեությունը երբեք տևողական լինել կարող չէ. սիրամարգի փետուրներով զարդարված ագռավը դարձյալ կմր-

*նա ագռավ... Այստեղ մեղավոր է կույր հասարակությունը, որ ընդունակ չէ որոշել արժանավորը անարժանից...*

*Զգիտեմ ինչո՞ւ առաջնորդը չպատասխանեց իմ նամակին. մի՞թե նա այնքան մեծամտություն ունի. մի՞թե նա չգիտե նրա փառքի ղեկը մասնավորապես իմ ձեռքումն է և կարող եմ հակառակ կողմը դարձնել... Այդպիսի մարդերին պետք է զգալ տալ իրանց ոչնչությունը... Այս միջոցներում որքան գանգատանաց թղթեր ստացավ մեր խմբագրությունը նորին սրբազնությունից. բայց ես չթողեցի տպագրվելին խնայելով նրա պատվին, միայն մինը տըպվեցավ։*

*Շարունակեցեք Ձեր նամակագրությունը, ես պատրաստ եմ միշտ պատասխանել, չխնայելով իմ օգնականությունը, որքան կարելի էր։*

*Ձեր բարին միշտ ցանկացող՝*

Հ. Մելիք-Հակոբյանց

*Հ. Գ. Իմ գրքերը, եթե Ձեզ դժվարություն է պատճառում, հանձնեցեք մեր ագենտին, թող նա սպասե մինչև իմ նորոգ կարգադրությունը, ժամանակ չունեցա առանձին նամակ գրել պարոնին։*

## 15. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻՆ]

**Ի 1875, 24 մարտի, Թիֆլիս**

*Սիրելի բարեկամ*

*պարոն Հ. Կարապետյան,*

*Պարոն Հ. Ղազարյանի ձեռքով ուղարկած նամակը ստացա, որի մեջ ամենախելոք տեղն այն է, որ գրում եք, թե Դավրեժի սրբազան առաջնորդը ինձանից դժգոհ է այն պատճառով, որ ես թույլ եմ տվել «Մշակի» մեջ տպվել է նրա պատվին դիպչող մի նամակ, և կամ, որպես թե նույն նամակը իմ հեղինակությունն է և այլն։*

*Սրբազան առաջնորդին ներելի է այսպիսի ծուռ ու սխալ գաղափար կազմել մի մարդու մասին, որին չէ ճանաչում, և մանավանդ, որպես երևում է, յուր կյանքում որևիցե լրագրի խմբա-*

գրության կանոններին տեղյակ չէ։ Բայց դուք, պ. Կարապետյան, իբրև Թիֆլիսում եղած մարդ և «Մշակի» խմբագրության պայմաններին շատ ու քիչ ծանոթ, դուք կարող էիք ցրել առաջնորդի սխալ կարծիքը իմ մասին։

«Մշակ» լրագիրը ունի խմբագրություն, մոտ տասն մարդիկներից կազմված, ամեն շաբաթ չորեքշաբթի գիշերներում լինում են խմբագրական ժողովներ, ուր կարդացվում են տպվելիք նյութերը, և ժողովի բազմության ձայնով կամ ընդունվում են, կամ հերքվում են և կամ փոփոխության են ենթարկվում։ Ժողովի մեջ մի ձայնը բազմության դեմ ոչինչ նշանակություն չունի. ուրեմն ես որքան էլ ցանկանայի, իրավունք չունեի ասել ժողովին, որ նամակը չտպվի, երբ նա ընդհանուր հավանությամբ ընդունվեցավ։ Բայց ես իմ կողմից այսքանը կարողացա անել, որ համոզեցի ժողովին՝ ջնջել նամակից մի քանի տեղեր, որոնք չափազանց հարձակողական էին և ուղղակի անձնավորության էին դիպչում. որպես երևում էր, նամակը սաստիկ կրքով էր գրված և բավականին հմուտ գրչի գործ էր։

Նամակների վերաբերությամբ յուրաքանչյուր խմբագրության պայմանն այն է, որ նա առանց խտրություն դնելու կտպե ամեն մի նամակ, միայն թե յուր ուղղությանը դեմ չլիներ, և միշտ պատրաստ է խմբագրությունը հակառակ կողմի հերքումը նույնպես տպագրելու։ Այսպես էլ պատահեցավ սրբազանի մասին տպված նամակի հետ և տպվեցավ նրա հերքումը։ Կնշանակե, խմբագրությունն այստեղ անաչառ է, նա անձնական կիրք կամ թշնամություն չունի դեպի այս կամ այն անձը։

Իսկ ինչ որ վերաբերում է այն բանին, որ նամակը իմ հեղինակությունն է, բոլորովին երեխա պետք է լինել և այսպես մտածել։ Նամակի իսկականը դեռ մնում է խմբագրատան մեջ, եթե սրբազանին ցանկալի կլիներ դատ բաց անել իմ կամ «Մշակի» խմբագրի հետ, նա կհամոզվեր, որ յուր կարծիքը սխալ է. որովհետև բուն հեղինակը այն ժամանակ յուրյան չի թաքցնի, որ Դավրեժում և առաջնորդարանից ոչ այնքան հեռու բնակվում է։

Եթե ես Անդրեաս սրբազանի հետ որևիցե ոխակալություն ունենայի, ինձ ամենևին չէր թաքցնիլ մի ստոր ստորագրությամբ նամակի քողով, որ այնպես հրապարակ դուրս գայի. իմ դրոշակը հայտնի է և բացարձակ։ Բացի դրանից, ոխակալությունը գրական ասպարիզում ոչինչ նշանակություն չունի, իմ կողմից շատ ստո-

րություն կլիներ այսպիսի առիթներով մի մարդու պատվին արատ քսել։

Իսկ ինչ որ վերաբերում է այն բանին, որ գուցե ես վշտացած լինեմ սրբազանից այնտեղի դպրոցի վարժապետության համար։ Այս բոլորովին տղայական մտածմունք է, որովհետև Դավրեժի դպրոցում վարժապետությունը մի այնքան նախանձելի բան չէ, որ ես նրա չհաջողվելու համար ափսոսայի։ Ո՞վ եղավ պատճառը, թե Կիրակոսը և թե Մարտիրոսը.— ինձ համար միևնույն է, ես ոչ մեկի դեմ ոխ կամ թշնամություն չունիմ։ Միայն ես կդատապարտեմ հայերի կուրությունը, որ նրանք ընդունակ չեն իրանց հասարակական գործերը օրինավոր կերպով կառավարելու և լավն վատից ջոկել...

Դուք ինքներդ գիտեք, թե որքան մեծ զոհաբերություն կլիներ իմ կողմից մի այնպիսի ստոր պաշտոնը ընդունելը, բայց ես հոժարվեցա նրա համար միայն, որ մի փոքր ես ծառայեմ հայրենիքիս, որին ավելի պարտական եմ իմ գոյությամբ։

Եթե կհանդիպեք սրբազանին, իմ կողմից ասացեք, թե հասարակական գործիչները այսպիսի չնչին բաներից չեն խրտնում, չեն հուսահատվում. պետք է ունենալ կամքի և համոզմունքի հաստատություն և ազգային գործը հառաջ տանել։ Եթե մարդ սպասե, որ բոլոր աշխարհը նրան լավ ասե, որ ինքը մի բան շինե, այդ խիստ սնոտի և կոշտ փառասիրություն է։ Բայց ընդհակառակն, մարդկության բարեկամներն միշտ հալածվել են, միշտ պախարակվել են, նրանք անցել են փուշերով լի ուղին և հետո ստացել են հաղթության պսակը։ Անտեղի գովությունը և շողոքորթությունը, մինչև անգամ վնասակար է, թուլացնում է մարդու մեջ ճշմարիտ եռանդը և արգելում է նրան յուր աշխատանքով մի բանին հասնել։ Գրականության մեջ պախարակվում են եկեղեցական անձինք, որք ավելի բարձր աստիճանի վերա են կանգնած, քան թե Անդրեաս սրբազանը, այսուամենայնիվ, աշխարհը ճանաչում է նրանց որպես օրինավոր մարդիկ։ Նույնպես գրականության մեջ ամենայն գովեստներ են շռայլում մի այլ եկեղեցականին, բայց երբեք չեն կարողանում սրբել նրանից անազնվության մուրը, նա մնում է միշտ կեղտոտ մարդ։ Ուրեմն գործն է, որ արտահայտում է մարդու արժանավորությունը, ոչ թե տպված տառը...

Հ. Մ. Մելիք-Հակոբյան

## 16. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻՆ]

22 մայիսի, 1875, Թիֆլիս

*Սիրելի բարեկամ*
*Հ. Կարապետյանց,*

*Ձեր 10 մայիսից գրված նամակն ստացա, որի մեջ նկարագրում եք տեղվույդ ուսումնարանի ոչ այնքան նախանձելի դրությունը։ Որպես երևում է ձեր նամակից, դպրոցի մեջ ծագած անախորժությունների պատճառը եղել է գլխավորապես գանահարությունը (ծեծը), որ հարուցել է ծնողքների դժգոհությունը ձեր դեմ, և ուրիշ կերպ լինել կարող չէր, որովհետև ծեծը ավելի զգալի բան լինելով, շուտ էլ հայտնվում է, մինչդեռ մյուս անկարգությունները շատ անգամ մնում են թաքուն։*

*Ճշմարիտն ասած, շատ տխուր տպավորություն գործեց ձեր նամակն ինձ վերա, և մանավանդ, դորանից առաջ ստացած նամակը դարձյալ նույն միտքն էր արտահայտում։ Եվ այս բոլորը վերաբերում են այն իրողությանը, որ ձեզանում ուսուցչական ժողովներ չկան, որոնց մեջ վարժապետների ընդհանուր համաձայնությամբ որոշվեին նրանց պարտականությունները և իրավունքները. դպրոցի* դիսցիպլինան *կախված է մնում յուրաքանչյուր վարժապետի կամայականությունից, ով ինչպես ուզում է՝ «յուր էշը քշում է»... Այդպիսի հանգամանքներում մի օրինավոր վարժապետի խղճմտաբար գործ դրած ջանքը կկորցնե յուր նշանակությունը դպրոցի ընդհանուր անկարգության մեջ։*

*Ծեծի զորությամբ ստիպել աշակերտին սովորել յուր դասերը,— դա վարժապետի անհմտության գլխավոր նշաններից մեկն է, որովհետև դա ցույց է տալիս՝ թե որքան անընդունակ է վարժապետը ներշնչելու աշակերտի մեջ սեր, պատիվ և համակրություն դեպի յուր անձը։ Աշակերտը, երբ որ պատվում է վարժապետին, սիրում է նրան, նա միշտ կպատրաստե յուր դասերը ուսուցչի դժգոհությանը առիթ չտալու համար։ Իսկ երբ վարժապետը գործ է դնում յուր ֆիզիկական կոպիտ ուժը,— նշանակում է նա դեռ չէ գրավել աշակերտի ակնածությունը դեպի ինքը։*

*Ես մի մասնավոր նամակից ևս իմացա գանգատներ ձեր մասին, և չեմ կարողացել հասկանալ, թե ինչպես է եղել, որ Մ. Մ-ցի նման ավանակին հաջողվել է գրավել հասարակության համակրությունը, իսկ ձեզ՝ ոչ։ Այդ իրողությունը, որպես անկեղծ բարե-*

*կամ, ասում եմ ձեզ, որ աններելի է ձեր կողմից։ Իհարկե, այս դեպքում մեծ դեր է խաղում ժողովրդի նախապաշարմունքը և նրա կոշտ ընտրողությունը, որ կարող չէ որոշել լավը վատից, այսուամենայնիվ, դուք պետք է գործ դնեիք բոլոր ձեր եռանդը պատերազմել ամեն արգելքների հետ և հառաջ տանել ձեր գործը,— դա է քաջությունը։ Բայց ձեր նամակից երևում է՝ բոլորովին հուսահատված եք։*

*Ես ներկա ամսի վերջին, գուցե մի քանի օր հետո, ճանապարհ կընկնեմ դեպի Թավրիզ. եթե դուք նպատակ կունենաք այնտեղ մնալու, ես կարող եմ այնպես տնօրինել, որ դուք մնայիք ձեր պաշտոնում, և հույս ունիմ, որ այնուհետև դպրոցի բարեկարգությունը ուրիշ կերպարանք կստանա, և այժմյան բաբելոնյան խառնակությունը կանհետանա։ Որպես ինձ երևում է, դպրոցի անկարգությունը բոլորովին ուրիշ արմատից է ծագում. նախ և առաջ պետք է այնտեղ մաքրել։*

*Ձեր այստեղ գալն այնքան նպատակավոր չէ. բայց Թավրիզում մի քանի տարի վարժապետությամբ պարապվելը ապագա ունի, դորանով ինքներդ կպատրաստվեք, թողյալ այդ, փոքրիշատե նյութապես կապահովեք ձեզ։ Թիֆլիսի մեջ մասնավոր դասերը խիստ անհաստատ արդյունքի աղբյուրներ են. ոչինչ բախտավոր վախճանի հասցնել կարող չեն. մենք տեսնում ենք այս գործով պարապվողների վիճակը,— թշվառություն, ավելի ոչինչ։*

*Ավելորդ եմ համարում ամեն ինչ գրել այժմ, հույս ունեմ, որ հունիսի 15-ին կտեսնվենք Թավրիզում և կխոսենք ինչ որ հարկն է։*

*Ձեր բարին ցանկացող՝*

Հ. Մելիք-Հակոբյան

## 17. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻՆ]

21 հուլիսի, 1875, Սալմաստ

*Պարոն Հ. Կարապետյան.*

*սիրելի բարեկամ,*

*Ձեր նամակը դեղորայքի հետ ստացա, շնորհակալ եմ ձեր հոգատարության համար։ Ձեր պաշտոնի մեջ մնալու և պայմանի նորոգվելու մասին ես աներկմիտ էի, ուրախ եմ, որ նույնը կատարվեցավ առանց տարաձայնության։*

Պարոն Ասրուց կստանաք իմ սնդուկի բանալին, նրանով բաց կանեք սնդուկը, որ թողած եմ պ. Ցեներջյանի տանը, այնտեղ թղթերի երեսին դրած կգտնեք մի փոքրիկ դաֆթար, որո մեջ գրըված է «Փունջ» գրքի վաճառումը, զանազան քաղաքներ ուղարկվելը, այն դաֆթարի մեջ պետք է մնացած լինի կաթողիկոսի նամակը.— եթե գտնեք, տվեք ղասիտը բերե. իսկ բանալին հանձնեցեք պ. Ցեներջյանին։

Սրբ. առաջնորդն արդեն 5 օր է, որ Սալմաստ եկած է, բայց տակավին տեսած չեմ, այսօր գնալու եմ տեսության, նա բնակվում է Հաֆթուան կոչված գյուղումը, որը մեր գյուղից մեկ մղոն հեռավորություն ունի։

Դուք գրած էիք մի քանի զոհվների վայրիվերո խոսակցության մասին. եղբայր, շատերի սրտին ծանր քար եղան մեր (իմ և քո) Դավրեժի դպրոցում մտնելը. թող խոսեն որքան պետք է իրանց, «պտուղը ցույց կտա գործի արդարությունը»։

Իմ հիվանդությունը այժմ փոքր-ինչ լավ է, բայց շատ վախենում եմ դեպի Դավրեժ վերադառնալու ժամանակ կրկին չնորոգվի. որովհետև այստեղ գալու միջոցին շատ վնասվեցա... Եթե բժիշկը հարկավոր կհամարե բալզամ կապլի կոչված դեղը ընդունելը, ուղարկեցեք մի փոքր։ Ներկա ամսույս վերջին ճանապարհ եմ ընկնելու դեպի Դավրեժ, միայն շատ երկյուղ եմ կրում հիվանդությանս սաստկանալու մասին։ Հաղորդեցեք ինձ այդ մասին ձեր բարի խորհուրդը։

Ես խիստ տխուր եմ անցուցանում այստեղ, շատ փոշմանեցա, որ մի քանի օր ևս չսպասեցի, մինչև դուք Ձեր քննությունները վերջացնեիք ձեզ վեր առնեի ինձ հետ։

Մուշեղյանցը մնալո՞ւ է, թե գնաց. այդ մասին ինձ իմացում տվեք։

Ձեր՝ Հ. Մելիք-Հակոբյանց

## 18. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻՆ]

Սալմաստ, 1875, 28 հուլիսի

Պարոն Համբարձում Կարապետյան.
սիրելի բարեկամ,

Ձեր նամակը ստացա. հույս ունիմ օգոստոսի 3-ի հանդեսի ժամանակ Դավրեժում գտնվիլ, որովհետև ամսույս 30-ին այստե-

ղից պետք է ճանապարհ ընկնիմ։ Իմ այստեղ ուշանալու գլխավոր պատճառն սրբազանն էր. որովհետև մի քանի գործերում նա կարոտ էր իմ օգնությանը, ցանկանում էր յուր մոտ լինեմ։

Ձեր պայմանի համար մի շտապեցեք, եթե տակավին կապած չեք. ես կգամ, որպես կարգն է այնպես կտնօրինեմք։

Իմ առողջությունս լավ է, եթե ճանապարհին չնորոգվի, բոլորովին հոգ չունեմ։

Ես ինքս հասկանում եմ, թե դպրոցի համար նոր պրոգրամա պետք է կազմել, նոր կարգադրություններ անել, և այդ մասին շտապում եմ մի քանի օրով առաջ գտնվել Դավրեժում։ Հուսով եմ, ամեն ինչ կերթա յուր կարգով։

Սրբազանի հետ Ձեր անձնավորության վերա շատ խոսակցություններ եղան, կլսեք ինձանից, երբ աստուծով այդտեղ կհասնեմ։

Իրանի աշխարհագրության մասին առանձին հրահանգներ չկան, որտեղից կարելի լիներ լիակատար նյութեր քաղել. բայց ես բավականին ծանոթ եմ Իրանին. մնացյալ տեղեկությունները կարելի է հավաքել այնտեղում։ Այդ հանգամանքների համար այժմ խոսել ավելորդ էր. մենք այնտեղում մեր տանը մի մասնաժողով կունենանք և մեր մեջ կկարգադրենք, թե որպես հարկավոր է գործել։

Նամակիս պատասխանը մի՛ գրեցեք, պատճառ, չի հասնի։

Ձեր բարին ցանկացող՝
Հ. Մելիք-Հակոբյանց

1 8 7 6

## 19. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԱՌԱՔԵԼՅԱՆԻՆ]

10 հունվարի, 1876 ամի, Թավրիզ քաղաքում

Մեծապատիվ
պարոն Հ. Առաքելյան,

Ես հետաձգեցի Ձեր նամակի պատասխանը, պատճառն այն էր, որ չգիտեի ինչ միջոցով հասցնել Ձեզ, որպեսզի ուրիշի ձեռքը չանցնի, մանավանդ այդ մասին նախազգուշություն էիք արած։

Ձեր դեպի ինձ ունեցած համակրությունը որն այնպես անկեղծաբար արտահայտվում է Ձեր նամակից, խիստ քաջալերական է։ Արդարև, եթե որևիցե համազգացություն կարող էի գտանել ես իմ այժմյան ընտրած ասպարեզում, այդ հուսալի է այն սրտերից միայն, որոնք կենդանի և թարմ են, որոնք խավարած չեն սև նախապաշարմունքներից։ Ուրախ եմ, որ մի այդպիսի սիրտ գտանում եմ Ձեր մեջ։

Հայրենիքում ընտրած Ձեր նոր պարապմունքը գովելի է։ Փոխանորդ լինել հայր Խորենի գործունեության և աշխատակցել նորա «Հայկական աշխարհին» ես գտնում եմ Ձեր կողմից որպես մի ազնիվ ցանկություն. դորանով Դուք մասամբ օգնած կլինեիք այդ եռանդոտ աշխատողի գործին, որն որքան հոգատար և անձնանվեր է դեպի հասարակաց բարին, այնքան հալածված և ճընշված է...

Բայց ցավում եմ, որ համաձայն Ձեր առաջարկության չէի կարող նույնը անել և ես, որովհետև ես ոչ միայն խոստացած եմ պ. Արծրունուն, քանի ապրում է «Մշակը» աշխատակից լինել նորա հրատարակությանը, այլ պարտավոր ևս եմ, ըստ որում այս լրագրի սկզբնավորության հիմքը դնողներից մեկն էլ ես եմ, այս պատճառով բարոյական պարտավորություն ունեմ հոգ տանել նորա գոյությունը պահպանելու և օրըստօրե զարգանալու մասին։ Իսկ վարձատրության համար որ առաջարկած էիք Ձեր վերջին նամակում, ավելորդ է պատասխանել, որովհետև իմ հրաժարվելս շահասիրության հետ ոչինչ կապ չունի և ես նյութական հաշիվներ ի նկատի չունեմ։

«Մշակի» № 38 Պարսկաստանի հայոց վիճակագրական տեղեկությունների մասին, որպես գրում եք, կասկած է ծնվել Ձեր մեջ, մի գուցե նոքա քաղված լինեին Գրիգորիս եպիսկոպոսի Ձեր անունով գրված, բայց դիպվածով իմ ձեռն ընկած նամակից...։ Այդ մասին Ձեր կասկածանքը անտեղի էր, քանի դուք կարդացած պետք է լինեիք, որ նույն հոդվածում առանձին ծանոթությամբ ես հայտնած եմ վիճակագրական թվանշանների ինչ աղբյուրից քաղելը։ Իսկ ինչ որ վերաբերում է մյուս տեղեկություններին, բավական էր մտածել, որ ես Պարսկաստանումն եմ ապրում։

Այժմ դառնանք դեպի մեր ներքին գործերը. քաղաքիս ազգային դպրոցը այնքան նախանձելի դրության մեջ չի գտնվում, որքան փափագելի էր։ Եթե չկամենայինք ուրիշների նման խիստ մասնավոր և աննշան երևույթներով հրապուրվել, պետք է պարզ

խոստովանվել, թե դեռ երկար ժամանակ պետք է, մինչև նա մի բարեկարգ վիճակի վերածվի, իսկ նորա ներկա դրությունը տանում է դեպի օրըստօրեական անկումն։ Պատճառը մի քանի հակառակ տարրերի միմյանց հետ անմիաբանությունն է, որը հայոց կյանքի մեջ դժբախտաբար նոր բան չէ...

Մեր այս քաղաքը եկած օրից ջանք գործադրեցինք դորանորան համոզելով, որ մի օրիորդաց դպրոցի հիմքը դրվի, համարյա մեծ մասամբ հաջողվեցավ, իսկ երբ գործը յուր վախճանին մոտենալու վերա էր, անձնական կրքերը մեջ մտան, և հասարակաց գործը երեսի վերա մնաց։ Ես չեմ ուզում մատնացույց անել խռովարարները, որովհետև դուք բավականին ճանաչում եք տեղվույս ժողովուրդը... բայց մեր խոսքերը հուսահատական ձայներ չեն. մենք դարձյալ կաշխատենք, դարձյալ կգործենք, եթե չի հաջողվի, գոնյա մեր խիղճը հանգիստ կլինի, թե ինչ որ պետք էր անելու, արեցինք։

Ընթերցարանի գործը վատ չէ գնում, որովհետև այնտեղ գործում է ժողովրդի ավելի թարմ մասը, նորա, արդարև, փոքրաթիվ երիտասարդությունը, թեև նա, իր զարգացման աստիճանին նայելով դեռ շատ ինչ սովորելու կարոտություն ունի։ Դոցա գլխավոր թերությունը ինքնահավանությունը և յուրյանց գիտցածից բավականությունն է, որ խիստ վատ նշան է անգործունեության։

Ընդունեցեք մեր բարեկամության խորին հավաստիքը, որով մնամ

Ձեզ միշտ հարգող՝

Հ. Մելիք-Հակոբյան.

## 20. [ԱՐԱՄՅԱՆ ԴՊՐՈՑԻ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹՅԱՆԸ]

19 մարտի 1876 ամի

Դավրիժո Ազգային դպրոցի հոգաբարձությանը

Հ. Մելիք-Հակոբյանից

խոնարհաբար պատասխան

Ստացա 6 մարտի ներկա ամի հոգաբարձության կողմից ինձ ուղղած ազդարարությունը, որով հոգաբարձությունը բարեհաճել է ընդունել ինձ և առաջիկա 1877 թվականի համար ուսուցիչ յուր

հսկողությանը հանձնված դպրոցում, ու ցանկանում է Հոգաբարձությունը կանխապես գիտենալ իմ հաճությունը, թե ես կամեի շարունակել իմ պաշտոնը նույն դաշինքով, թե ոչ։

Անկարող լինելով այժմ իմ վերջին և վճռական պատասխանը տալ, ես թողնում եմ պատասխանել առաջիկա զատկից հետո։ Իսկ եթե Հոգաբարձությունը համբերել կարող չէ մինչև այն ժամանակ, նա ազատ է յուր ընտրողության մեջ յուր պարտուպատշաճ տնօրենությունները անելու։

Հ. Մելիք-Հակոբյան

## 21. [ՓԻԼԻՊՊՈՍ ՎԱՐԴԱՆՅԱՆԻՆ]

20 մարտի, 1876, Դավրեժ

Մեծապատիվ

Պարոն Փ. Վարդանյան,

Ստացա Ձեր նամակը, որով հայտնում եք, թե Ձեր խմբագրությամբ հրատարակվելու է Պետերբուրգում մի ամսագիր «Լումա» անունով, և հրավիրում եք ինձ ևս աշխատակից լինել Ձեր ամսագրին։ Ձեր առաջարկությունը ընդունում եմ ամենայն սիրով, որովհետև Ռուսաստանում մի օրինավոր ամսագրի հրատարակությունն խիստ վաղուց իմ բաղձանքների առարկան է եղել։ Ես այժմ շատ ուրախ եմ, որ նույնը կատարվելու է, և այնպիսի անձանց գործակցությամբ, որոց անունները երաշխավորում են գործի լիակատար օգտավետությունը։

Իմ աշխատակցությունը կլինի կանոնավոր և հարատև. ես ունիմ արդեն բավականին պատրաստի պաշար, որ կնվիրեմ «Լումայի» հրատարակությանը։ Չգիտեմ, «Լուման» որպիսի դիրք և բովանդակություն կունենա, հավանական է, որ նա կլինի ավելի մեծադիր և բազմաթերթյա և ո՛չ որպես մինչև այսօր եղածները։ Որպես և լիներ, ես խոստանում եմ յուրաքանչյուր ամսի 20-ից մինչև 30—50 երես բաղկացնող գրվածքներ ուղարկել Ձեզ։ Ես արդեն տվել եմ արտագրելու մի ամբողջ վիպասանական աշխատություն, որ կարող է մի քանի ամիսների նյութ դառնալ։

Իսկ ինչ որ վերաբերում է իմ աշխատության վարձատրությանը, ես ավելորդ եմ համարում այժմեն Ձեզ հետ սակարկություն անել, այդ թողնում եմ, մինչև Դուք կստանայիք և կծանոթանայիք իմ Ձեզ ուղարկած նյութերի հետ։

Անհամբերությամբ սպասում եմ «Լումայի» պրոգրամն ստանալուն, իսկ այնքանը, որ Դուք Ձեր նամակով հայտնած էիք Ձեր ամսագրի ուղղության և նորա նպատակի մասին, բավականին գոհացուցիչ է. ցանկալի էր, որ «Լուման» լիներ հայկական շահերը պաշտպանող, նորա օգտին ծառայող, ազնիվ հայի սրտից բխած մի նվեր մեր գրականության չքավոր գանձանակին, որի համար կմնամ Ձեզ միշտ հարգող

Հ. Մելիք-Հակոբյանց

## 22. [ՓԻԼԻՊՊՈՍ ՎԱՐԴԱՆՅԱՆԻՆ]

19 հունիսի, 1876 ամի, Դավրեժ քաղաք

Մեծապատիվ Պարոն

Ձեր ապրիլի 3-ին, որպես և մայիսի 23-ի նամակները ստացած եմ, բայց պատասխանը ուշացնելն իմ կողմից մի ուրիշ պատճառ չունի բացի ծուլությունից։ Իմ հոժարությունն «Լումային» աշխատակցելու վերաբերությամբ նույնն է, որպես առաջին նամակովս հայտնած եմ։ Եվ եթե մինչև այսօր հետաձգեցի որևիցե գրավոր բան ուղարկել Ձեզ, պատճառն այն էր, որ չհաճեցա բավականանալ փոքրիկ հոդվածներով, այլ ցանկացա մի այնպիսի աշխատություն ուղարկել «Լումային», որ մի քանի ամիսների պաշար կարողանա լինել։ Այս մտքով ես տվեցի արտագրել երկու հատորներից բաղկացած մի պատրաստի գործ, որ կոչվում է «Խաչագողի հիշատակարան»։ Բայց գրագրի դանդաղկոտությունն հետաձգեց ուղարկելը։

Բայց մինչև «Խաչագողի»[1] Ձեր ձեռք հասնելը հարկավոր եմ համարում նորա պարունակությունը համառոտ կերպով հայտնել։ Այս աշխատությունը յուր ամբողջությամբ նվիրված է հայոց մշակ դասին և պատկերացնում է, թե որպիսի տեղային և հասարակական հանգամանքներ ստիպում են նրանց թողնել հայրենիքը և պանդխտության մեջ բախտ որոնել։ Նյութը առնված է Պարսկաս-

---

[1] «Խաչագողներ» կոչվում են այն հանրածանոթ մոլաշրջիկ հայերը, որոնք թափառում են աշխարհի մի ծայրից դեպի մյուսը և զարմանալի ճարպկություններով փող են որսում։ Այս երևելի խաբեբաների հասարակությունը Պարսկաստանում կազմում է համարյա մի առանձին դաս։

տանի և ասիական Տաճկաստանի հայերի կյանքից՝ թե ինչպես նրանք օտար երկրներում, պանդխտության մեջ մաշվում են, անհետանում են, առանց կրկին յուրյանց ընտանիքը վերադառնալու բախտն ունենալու։

Հիշյալ աշխատության գլխավոր հերոսն է մի երևելի խաչագող, և որովհետև նա ամեն տեղ, ամեն երկիր անցնում է և յուր հիշատակարանի մեջ նկարագրում է ամեն տեղ տեսած հայ պանդուխտների թշվառ վիճակը։ Մի խոսքով, «Խաչագողի» մեջ ընթերցողը կարող է տեսնել հայի կեցության պատկերը մահմեդական Ասիայում և նրանից դուրս, օտար երկրներում, որոնց մեջ նա թափառում է որպես համալ, մշակ կամ բախտախնդիր խաբեբա։

Այս աշխատությունը իմ մի քանի ճանապարհորդությունների և երկար ժամանակյա մտածության արդյունքն է. նա գրված է հիշատակարանի ձևով և խառն է զանազան ռոմանական և վիպական անցքերով, որոնց բոլորը ներքին կապ ունին։

Առաջին հատորի արտագրված օրինակը արդեն պատրաստ է, երկրորդը շուտով կպատրաստվի, որովհետև քանի օրից հետո մեր դպրոցի արձակուրդը կսկսվի, այնուհետև ազատ ժամեր շատ կունենամ աշխատելու։

Ձեր դժգոհությունը «Մշակի» հարձակման մասին դեռ լույս չտեսած «Լումայի» վերա՝ բոլորովին իրավացի է, բայց նորա հարձակումն ես չեմ վերաբերում պ. խմբագրի նախանձին կամ նորա անձնական կրքերին դեպի Ձեզ, որովհետև պ. Արծրունուց Ձեր մասին միշտ համակրական խոսքեր եմ լսել, եթե այժմ նա յուր կարծիքը փոխել է, այդ չգիտեմ։ Բայց կնքել մի դեռ չծնված ամսագիր «կղերական» անունով,— դա հառաջ է եկել պ. Արծրունու այն ջղային-ղառանցական բոպեից, որ շատ անգամ նորա հետ հանդիպում է և յուր թերթի մեջ մեծամեծ սխալներ է գործել տալիս...

Բայց Ձեզ թո՛ղ չվհատեցնեն այսպիսի խայթերն, եթե գործելու եռանդ ունիք, որովհետև ազնիվ նպատակը և տոկուն աշխատությունը, թեև ուշ, վերջապես կպսակվին արդյունավոր արգասիքով։

Ձեր գործունեությունը անկեղծ սրտով համակրող

Հ. Մելիք-Հակոբյան

## 23. [ՓԻԼԻՊՊՈՍ ՎԱՐԴԱՆՅԱՆԻՆ]

6 նոյեմբ., 1876 ամի, Դավրեժ

*Մեծ. պ. Փ. Վարդանյան*

*Հոկտեմ. 29-ին Ձեր հասցեով ուղարկած եմ «Խաչագողի» առաջին մասը, բաղկացած 475 երեսներից, բայց տակավին մի քանի գլուխներ պակաս են մնացած, մինչև առաջին մասը լրանա. գրագիրն հասցնել չկարողացավ և ես էլ տեսնելով, որ մոտենում է հունվարը, շտապեցի ուղարկել, որքան պատրաստ էր։ Մնացած մի քանի գլուխները Դուք կստանաք նոր տարուց առաջ։*

*Բայց այնքանը, որ ուղարկել եմ, ունի յուր մեջ ամբողջություն և Դուք կարդալով, կարող կլինիք ծանոթանալ այս աշխատության նպատակի և նրա ո՛ր աստիճան հասարակական նշանակություն ունենալու հետ։*

*«Խաչագողը»՝ իմ Վանա, Բաղեշի, Մուշի և Արզրումի կողմերի ճանապարհորդության արդյունքն է, որ գրել եմ 1872—73 և 74 թվականներում, երբ Թիֆլիզումն էի բնակվում, ուր տեղային լրագրության և երիտասարդության մեջ դեռ նոր էր սկսվել արծարծվիլ Տաճկաստանի հայոց խնդիրը։ Իսկ գործերի այժմյան դրությունը, երբ արևելյան հարցը նորից բորբոք ստացավ, խրախույս տվեց ինձ ի լույս ածել քանի տարի առաջ գրած աշխատությունս, որ տաճկահայոց այժմյան պահանջներին, որպես պիտի տեսնեք, համապատասխանում է, և կարող է լույս ձգել այն մթին խնդիրների վերա, որ շատերի երևակայության առարկա են դարձել։*

*Թե ո՛րքան ինձ հաջողվել է, այդ ընթերցողներին ենք թողնում դատել. բայց իմ կարծիքով, «Խաչագողի» մեջ, եթե ոչ բոլորովին, գոնյա մեծ մասամբ լուծվել է Տաճկաստանի և Պարսկաստանի հայոց խնդիրը։ Նրանց կյանքի տխուր նկարագրությունների մեջ ընթերցողը կտեսնի, թե ո՛ր աստիճան ցնորական է այն անձանց մտածությունները, որ դեռ չճանաչած մի երկիր և մի ժողովուրդ, նրա համար օդեղեն ամրոցներ են կառուցանում...*

*«Խաչագողի» առաջին մասի անցքերը կատարվում են Հայաստանում, այսինքն՝ Վասպուրականի, Տարոնի և Ատրպատականի մեջ, իսկ կենտրոնը Վան քաղաքն է։ Այս մասի մեջ նկարագրված է հայի ներքին կյանքը հայրենի հողի վերա։ Բայց երկրորդ մասի անցքերն կատարվում են Հայաստանից դուրս Փոքր Ասիայում, Ռուսաստանում, Հնդկաստանում, իսկ կենտրոնն*

Կ. Պոլիսն։ Այս մասի մեջ նկարագրված է հայի գաղթական կյանքը պանդխտության մեջ։

Երկրորդ մասը յուր բովանդակությամբ ավելի հետաքրքրական է. Նրա մեջ այլ և այլ երկրների բազմազանության հետ հայի կյանքը միշտ նոր ձև և նոր կերպարանք է ստանում։ Բայց գործի վիպական թելը ոչ մի տեղում չի կտրվում, բոլոր անցքերը շարժվում են և պտույտվում են նրա բոլորտիքը։ Երկրորդ մասն յուր ծավալով առաջինի չափ է և գրված ու պատրաստ է, միայն արտագրության կարոտություն ունի։

Խոստովանում եմ, որ մի այսպիսի մեծ աշխատությունը ավելի կատարելագործելու համար, ես կարոտ էի ճանապարհորդությունների, և ավելի ընդարձակ ճանապարհորդությունների, բայց դա հազիվ կարող էր հնարավոր լինել մի գրողի, որ ստիպված է օրեկան հացի համար մտածել...

Ես այժմ ևս մեծ փափագ ունիմ նորից ճանապարհորդել ասիական Տաճկաստանում և գոնյա վեց ամիս Կ. Պոլսում մնալ, լավ հետազոտելու համար տեղային ժողովրդների և մանավանդ հայերի կյանքը և վճռել եմ, եթե մի կողմից օգնություն չգտնեմ, դերվիշի պես կգնամ և այնպես ման կգամ...

Կ. Պոլսի հայ երիտասարդությունն անտարբեր է դեպի Տաճկաստանի հայոց ներքին կյանքը և դեպի նրա պահանջները։ Կ. Պոլսի հայ երիտասարդը այնքան տեղեկություն ունի Փոքր Ասիայի մասին, որքան Չինաստանի մասին և չի էլ հետաքրքրվում, թե ինչպես են ապրում այնտեղ հայերը։

Իմ կարծիքով, «Լուման» մի առանձին պարտավորություն պետք է հանձն առնի, որքան կարելի է խորին և բազմակողմանի կերպով հետազոտել տաճկահայոց կյանքը, ցույց տալ նրանց պետքերը և միևնույն ժամանակ զգացնել Կ. Պոլսի շաղակրատ «հոսոսներին», թե ինչ բանի վրա պետք է մտածել և ինչ գործել։

«Մշակը» որքան էլ յուր թերությունները ունենար, որքան էլ ծայրահեղությունների դիմեր նա, և որքան էլ կրքեր խաղային նրա մեջ,— դարձյալ նա ունի յուր արժանավորությունը այն կողմից, որ յուր գոյություն ստանալու առաջին օրից միշտ զբաղվել է Տաճկաստանի հայերի հարցերով, միշտ գրգիռ է տվել նրանց թմրությանը։ Դա ամեն հայ լրագրության և օրագրության պարտավորությունների գլխավորն պետք է լինի։

Ձեր վերջին նամակները բոլորը անկորուստ ստացել եմ։ Օգոստոսի 2-ի նամակում հայտնում եք, թե կցանկանայիք ինձ-

*նից ստանալ և այնպիսի հոդվածներ, որպես «Փորձի» մեջ տպված «Պարսկաստանը»։ Ես պատրաստ եմ ամեն կերպով ծառայել «Լումային», բայց մի բան, որ դժվարացնում է ինձ, դա է իմ չափից դուրս զբաղված լինելը։ Դպրոցը շատ ժամանակ է խլում, որովհետև դասերը շարունակվում են և կեսօրից հետո և ընթերցարանի տեսչությունը ինձ վրա լինելով, պետք է ստեպ հաճախել այնտեղ։ Մնում է աշխատել գիշերներով, այն ևս շատ անգամ ազատ չեմ լինում կամ աշակերտների շարադրությունները եմ ուղղում, կամ նրանց համար հայոց պատմությունից դասեր եմ գրում( որովհետև դասագրքեր չունին) և կամ այնքան հոգնած եմ լինում, որ ոչինչ չեմ կարողանում գրել։*

*Մանավանդ այս տարի հարց եղավ 5-րդ դասատուն բաց անել. դպրոցն այնքան միջոցներ չունի նոր վարժապետներ հրավիրելու, մենք մի քանի վարժապետներով ձրի հանձն առինք նրա դասատվությունը, այսպիսով ազատ ժամերս բոլորովին կորան։*

*Եթե ես գիտենայի, որ «Լուման» ինձ այնքան կարող էր վարձատրել, որ ապրուստի կարոտություն չունենայի, այն ժամանակ ես դպրոցի մեջ դասերիս թիվը կպակասեցնեի և աշխատելու ավելի ժամանակ կգտնեի։ Մանավանդ արձակուրդներին կարող կլինեի փոքր ճանապարհորդություններ անել և նյութեր հավաքել։*

*Ինձ դեռ հայտնի չէ, թե ինչ ծավալ կունենա «Լուման». եթե նա կլինի «Հյուսիսափայլի» դիրքով, այն ժամանակ «Խաչագողի» պես մի աշխատություն հազիվ թե նրա մեջ տպագրվելու հարմարություն կունենա։ Դա կլիներ նույնը, որպես «Սև լեռան մարդը» «Արևելյան Մամուլի» մեջ, որը հավատացած են, ոչ ոք չէ կարդում։*

*Ցանկալի էր, որ «Լուման» եթե ոչ «Փորձի» չափ, գոնյա նրա կես ծավալն ունենար, այն ժամանակ նպատակավոր կլիներ։ Թեև այսպես լինելուց հետո պետք էր բարձր գին նշանակել, բայց հոգ չէ, որովհետև մեր հասարակության մեջ մի որոշ թիվ ընթերցողներ կան, որոնք թանկ ու աժանությանը չեն նայում, այլ ստանում են մի հայոց հրատարակություն, որովհետև կարդալու պետք են զգում։ Իսկ նրանց, որ հեռու են այս կարևորությունից, եթե ձրի էլ տալու լինի, չեն կարդա, գուցե «խաթրի համար» կառնեն։*

*Ես այդ փորձով գիտեմ. «Մշակի» գինը, երբ որ 7 ռուբլի էր առաջին տարիներում, ուներ 600—650 բաժանորդ, բայց երբ որ 7 ռուբլուց 5 ռուբլու իջուցինք գինը այն հույսով, որ բաժանորդների թիվը կավելանա, դարձյալ նույնը մնաց։ Այնուհետև համոզված*

վինք, եթե 3 ռուբլու իջեցնեինք «Մշակի» գինը, դարձյալ նույն բաժանորդները կմնային։ Այդ նրանից է, որ կարդացողների թիվը պակաս է, և ոչ թե լրագրերն իրանց թանկության պատճառով անմատչելի են։ Ռուսաստանում, իմ կարծիքով, մի օրինավոր ամսագիր կարող է մոտ 1000 բաժանորդ ունենալ, միայն առաջին տարում պետք է տարածվի լավ գործակալների ձեռքով։ Ամսագիրն ավելի շատ կտարածվի, քան թե լրագիրը, որովհետև բանասիրական մասը ամսագրի ավելի հարուստ է ու մեր ժողովուրդը սիրում է այդ կարդալ և յուր որդիներին, թոռներին թողնել կարդալու։

Ինձ բոլորովին զարմացնում է պ. Պալասանյանի առաջարկությունը «Լումայի» և «Փորձի» միացնելու մասին։ Ես էլ մի այսպիսի բան իմացած էի։ Այս նպատակը, իմ կարծիքով, հառաջ եկած պիտի լինի երկու շարժառիթներից. առաջին, գուցե մտածել են, թե երկու ամսագիրներ շատ են Ռուսաստանի համար և չեն կարող այնքան բաժանորդներ գտնել, որ իրանց գոյությունը պահպանել կարողանան, երկրորդ՝ մտածել են, թե մեզանում այնքան գրողներ չկան, որ կարողանան երկուսին ևս նյութեր հասցնել։ Բայց իմ կարծիքով, թե՛ առաջին և թե՛ երկրորդ կարծիքն անհիմն են։ Նախ, «Լուման» և «Փորձը» մինը մյուսին վնասել չեն կարող, որովհետև տարբեր նշանակություններ ունին. իսկ ինչ որ վերաբերում է գրողներին, ես այսքանը կասեմ, որ մի օրինավոր ամսագիր ինքն կարող է տաղանդներ հարուցանել և հանգած հանճարներին բորբոք տալ։ Որպես «Հյուսիսափայլի» հետ հայտնվեցան շատ գրողներ, որոնք առաջ կարծես չկային։ Նույնպես «Մեղուն» և «Մշակը» ստեղծեցին շատ գրողներ։

Ես առայժմ Ձեր ուղարկած «Խաչագողի» առաջին մասի վարձատրության համար այսքանը հարկավոր եմ համարում ծանուցանել Ձեզ. եթե իմ աշխատությունը ընդունելություն կգտնի «Լումայի» մեջ տպվելու, այն ժամանակ Դուք որպես գրավական կանխիկ պետք է ուղարկեք ինձ 500 ռուբլի արծաթ։ Ես ստիպված կլինիմ այնուհետև դպրոցի մեջ սակավացնել դասերիս թիվը, որպեսզի կարողանամ հարատև և անընդհատ կերպով աշխատակցել «Լումային»։ Այնուհետև, երբ մի մասը կտպվի, հայտնի կլինի, թե քանի թերթերից է բաղկանում Ձեզ ուղարկած նյութը, և նրա համեմատ մնացյալ փողը կվճարեք, յուրաքանչյուր թերթն (16 երես) 25 ռ. արծաթ հաշվելով։ Թեև իմ ստացած վարձը մասամբ միայն կարող է լրացնել այն ծախսը, որ ես արել եմ ճանապարհորդության մեջ հիշյալ աշխատության նյութերը հավաքելու համար,

*բայց փույթ չէ, ես ի նկատի ունիմ «Լումայի» ապագա հառաջադիմությունը։*

*Եթե հիշյալ պայմաններն ընդունելի կլինին Ձեր կողմից, իմ նշանակած գումարը (500 ռուբ.) կուղարկեք Թիֆլիս պարոն Աղեքսանդր Մելիք-Ազարյանցի անունով, նա կհասցնե ինձ։ Իսկ եթե ոչ, գիրքը կդարձնեք Թիֆլիս նույն պարոնի անունով։*

*Ձեզ միշտ անձնանվեր՝*

Հ. Մելիք–Հակոբյան

*Հ. Գ. Ուրախությամբ կարդացի Ձեր նամակում, թե մեծ. Սանասարյանցը բարեհաճել է զանազան իրեղեններ ուղարկել Դավրեժի ազգային դպրոցին։ Ցանկալի էր, որ սույն իրեղենները լինեին այնպիսի բաներ, որոնց դպրոցը շատ կարոտություն ունի, օրինակ. զանազան պատկերներ սրբազան պատմության անցքերից առած, պատկերներ կենդանաբանության, տնկաբանության վերաբերյալ և զանազան տեսարաններ ներկայացնող պատկերներ։ Որովհետև մեր աշակերտները բոլորովին փակ ընտանիքի շրջաններում ապրած լինելով, համարյա ոչինչ առարկայի վրա գաղափար չունին։ Նաև շատ հարկավոր է աղքատ աշակերտներին բաժանելու համար հետևյալները. գրելու թուղթ, մատիտներ, գրիչներ իրանց կոթերով, գեղեցիկ կազմած փոքրիկ գրքեր ֆրանսերեն կամ հայերեն լեզվով՝ պարգևաբաշխության համար, կաղամարներ և մի քանի կտոր սպունգ գրատախտակները սրբելու համար, այստեղ ամենևին չէ գտնվում։*

*Ուրիշ թանկագին ուսումնական առարկաներ, որպիսին են՝ ֆիզիկայի և քիմիայի վերաբերյալ գործիքներ դեռ պետք չեն, որովհետև այս առարկաները չեն ավանդվում։ Քարտեզներ և երկրագունդ ունինք, միայն փոքրիկ ատլասներ պետք են աշակերտներին բաժանելու համար, կամ ֆրանսերեն կամ ռուսերեն լեզվով, մեկ տարրական ուսումնարանի ուրիշ պիտույքները ձեզ ավելի հայտնի են։*

*Բայց եթե մեծ. Սանասարյանցը ուղարկեր մի փոքրիշատե նշանավոր գումար փող, այն ժամանակ պարսից թագաժառանգը, որ քաղաքումս է բնակվում, իմացում կտար շահին նորա բարեգործությունը Պարսկաստանի մի ուսումնարանի վերաբերությամբ և փոխարենը մեծ. Սանասարյանցը կստանար մի փառավոր շքանշան հանդերձ արքունական ֆիրմանով։ Այս խոսքերը ես կատա-*

կի համար չեմ գրում, այլ մեր դպրոցի հոգաբարձուների ասածն եմ կրկնում ձեզ, և անիրագործելի չէ։

Աբգարի աշխատությամբ մի քանի ամիս առաջ Թիֆլիսից հավաքվել էր 1000 ռուբլի մեր դպրոցի համար, որ արդեն ստացված է։

Հ. Մ.

## 24. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

3 նոյեմբեր, 1877, Ագուլիս

Ազնիվ բարեկամ

Պարոն Ա. Ավթանդիլյան,

Ներողություն եմ խնդրում այսպես անագան Ձեզ նամակ գրելուս համար, որի պատճառը իմ ծուլության մեջ պետք է որոնել։ Եթե ո՛չ, ես միշտ եղել եմ բարեկամներիս հետ մտերիմ, և մանավանդ Դուք բոլորովին արդարացրել եք իմ վստահությունը։

Գիտեմ, Ձեզ ցանկալի կլինի լսել իմ Պարսկաստանից դուրս գալեն հետո վարած թափառական կյանքը, ուրեմն գրեմ։— Դեռ Թիֆլիս չհասած բարեկամներիս հայտնի էին այն բոլոր անիրավ անցքերը, որ անցան ինձ հետ Թավրիզում. ամենը համարում էին ինձ կորած... այս պատճառավ իմ անակնկալ հայտնվիլը Թիֆլիսում բոլորին զարմացք պատճառեց։ Բոլորն նայում էին ինձ վերա, որպես մի Ղազարոսի վերա, որ նոր էր վերադարձել գերեզմանից...

Թիֆլիսում ես մնացի մի ամբողջ ամիս, այս մի ամիսը անցավ որպես մի քանի րոպե. ամեն տեղ սեր և համակրություն էր ստանում ծանոթներից։ «Փորձի» խմբագրության մեջ արդեն բացվել էր ինձ համար մի տեղ. որովհետև պարոն Աղայանցը գնացած լինելով Երևան, նրա պաշտոնը կատարող չկար, բացի դրանից, Ներսեսյան դպրոցում դասեր առաջարկեցին։ Բայց ես չկամեցա Թիֆլիսում մնալ, երբ Ագուլիսի հոգաբարձությունից հրավեր ստացա։ Ինձ վաղուց սիրելի էր հեռու մնալ քաղաքի աղմկալի կյանքից և գյուղական պարզ ու խաղաղ մի անկյունի մեջ ապրել։ Ագուլիսը իմ այս ցանկությանը համապատասխանում էր։ Այստեղ կարող եմ փոքր-ինչ շունչ քաշել և հանգստանալ անցյալ հոգնածությունից...

Երևակայեցե՛ք Ձեզ Սալմաստի Խոսրովիան, Ագուլիսը մի այն-

ալիսի տեղ է, միայն դորա լեռնային դիրքը բացառություն է կազմում, որ ավելի նպաստում է օդի բարելավությանը։ Բոլոր տները կորած են այգիների և պարտեզների մեջ. փողոցներով հոսում են սառն և մաքուր աղբյուրներ։ Ես կենում եմ Թոմա առաքելո Հոյակապ վանքումը. երեք սենյակ ունեմ բոլոր պատրաստի պարագաներով հանդերձ. կացարանիս լուսամուտները երկու կողմից ևս նայում են ծառազարդ պարտեզների վերա։ Վանքի գավիթումն է նաև տղայոց դպրոցը. այստեղ է կենում և վանահայրը,— հայր Սուրենյան վարդապետը, որն միանգամայն թե՛ փոխ-առաջնորդ է, թե՛ տեղվույս երկսեռ դպրոցների տեսուչն է, այլև դասեր ունի աշխարհագրությունից և ընդհանուր պատմությունից։

Հայր Սուրենյանը մի երիտասարդ կրոնավոր է, որ վարդապետական վեղարի ներքո պահպանել է ուսանողի և գիտնականի մաքուր բնավորությունը. շատ եռանդոտ և ազնիվ մարդ է։ Ես և նա թեև առանձին սենյակներում ենք ապրում, բայց մեր խոհանոցը ընկերովի է, միասին ենք ճաշում և ընթրիք առնում։

Ես ընդունել եմ տղայոց և օրիորդաց դպրոցների բարձր դասարանաց հայոց լեզվի և հայոց պատմության դասերը. շաբաթական 24 դաս ունեմ։ Դասերը սկսվում են առավոտյան 8 ժամին և շարունակվում են մինչև կես օրից անցած երկու ժամը. այնուհետև ամեն ուսուցիչ ազատ է, թեև աշակերտներն և աշակերտուհիք դարձյալ հավաքվում են, բայց առանձին վերակացուների հսկողության ներքո սերտողությամբ են պարապվում։

Եվ այսպես, ես ամեն օր կեսօրից հետո ազատ ժամեր ունիմ իմ առանձին գրավոր աշխատություններով զբաղվելու, որոց մեջ գտնում եմ իմ գլխավոր մխիթարությունը։ Թողյալ այդ, տեղվույս հասարակությունը բավականին համակրական է. չնայելով որ գյուղում են ապրում, բայց բոլորովին կրթյալ քաղաքացու կյանք են վարում. նրանց ընկերությունը ոչ սակավ զվարճություն է պատճառում ինձ։ Գլխավորն այն է, որ բավական խաղաղասեր և ազնիվ մարդիկ են։

Եթե չեմ սխալվում, Դուք այժմ ամուսին եք։ Ձեր նշանդրեքը չտեսա, Ձեր հարսանիքից նույնպես զուրկ մնացի. ինձ մնում է միայն բարեմաղթել Ձեզ բախտավորություն և խաղաղ ընտանեկան կյանք։

Չգիտեմ, դուք այժմ ի՞նչ գործով եք զբաղված, և եթե տեղային դպրոցումն եք, նույնպես չգիտեմ, թե ովքե՞ր են Ձեր պաշտոնակիցներն.— ցանկալի էր ինձ այդ մասին տեղեկություն ունե-

նալ, և մանավանդ դպրոցի այժմյան դրությունը ինձ շատ հետաքրքրում է։ Աշխատեցեք, եղբայր, խնամք տանել դպրոցի բարվոքմանը, ոչ միայն իբրև վարժապետ, այլ որպես ազնիվ հայ, որ ճանաչում է, թե ինչ կարևորություն ունի ազգային դաստիարակությունը։ Խավարասերների խոչընդոտներն թող չվհատեցնեն Ձեզ.— խավարասերն ամեն տեղ լուսո դեմ պատերազմում է, բայց ճշմարիտ ազգասերի եռանդը թուլացնել չէ կարողանում։

Չգիտեմ, ինչպես վերջացան ինձանից հետո տեղվույդ խռովությունները. մի քանի տեղեկություններ ինձ գրած էին, բայց լիակատար բավականություն չտվեցին իմ հարցասիրությանը։ Կցանկանայի, որ խռովարարները մինչև այժմ հանգստացած լինեին իրանց չար կրքերից, որ պատիվ չէ բերում Թավրիզի հասարակությանը. և մանավանդ կործանման անդունդ է բացում ամենի առջև...

Ես ներում եմ և աշխատում եմ մոռանալ այն բոլոր անիրավությունքը, որով վարվեցան ինձ հետ իմ թշնամիքը. և քրիստոնեական անհիշաչարությամբ ցանկանում եմ, որ աստված հեռու պահեր այդ ողորմելիներին իրանց մոլորությունից... Հուդան միայն հավիտենական դատապարտությունը վարձ ստացավ իր գործի համար,— այսպես են և բոլոր մատնիչներն...

Ողջունեցեք իմ կողմից Բարդուղիմեոս հայր սուրբին և տեր Մեսրոպ հորը. մի մոռացեք և իմ խոնարհությունը հիշել աղա Երեմիային, աղա Ներսեսին և մեծապատիվ Սոլոմոն խանին։

Ձեր՝ Հ. Մելիք-Հակոբյան

Իմ ճասցեն.
В Верхний Акулис, учителю
Акопу Мелик-Акопяну

## 25. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 10 դեկտեմբերի, 1879 ամի

Մեծապատիվ
Պարոն Մելքոն Փանեանց,

Թող ներվի ինձ, որ առանց Ձեզ հետ ծանոթ լինելու, ես վստահացա ձանձրացնել Ձեզ իմ հանձնարարություններով։ Բայց Դուք հասարակաց բարեկամ եք, և մանավանդ այն անձերի, որոնք

գործում են կրթության և գրականության ասպարեզում։ Այդ Դուք ապացուցեցիք Ձեր բարեկամությամբը հանգուցյալ Նազարյանցի հետ։

Ես Ձեր մասին շատ եմ լսել Ձեր հայրենակիցներից, որոնց հետ բախտ եմ ունեցել ծանոթանալու, և իմ քաղած տեղեկություն-ները երաշխավորում են, որ Դուք «Կայծերի» հրատարակության գործի մեջ կլինեք նույնքան բարի, որպես եղել եք ամեն մի ազգա-յին և հասարակական գործերում։ Սեղմում եմ Ձեր բարեկամական ձեռքը։

Հ. Մելիք-Հակոբյանց

## 26. [ԳԵՎՈՐԳ ՎԵՀԱՊԵՏՅԱՆԻՆ]

[10] դեկտեմբերի, 1879 ամի

Սրբազան հայր,

Կյանքի տխուր հանգամանքները ինձ ձգեցին գրականական ասպարեզի վրա, և ես ինձ բախտավոր եմ զգում, որ կարող էի մի փոքրիկ օգուտ բերել ազգիս և այն հասարակությանը, որի մեջ ապրում եմ։ Ես խպառ թողեցի Պարսկաստանը և այժմ ընտանի-քովս զետեղված եմ Թիֆլիսում։ Պարապվում եմ «Մշակ» լրագրի խմբագրատան մեջ, և եթե կհաջողվի, նպատակ ունիմ յուրաքան-չյուր տարի իմ հեղինակություններից տպագրել մի կամ երկու գիրք։

«Կայծերի» ստորագրության թերթը ես Ձեզ ուղարկեցի ոչ մի-այն դրդված մեր վաղեմի բարեկամական զգացմունքից, այլ այն համոզմունքից, որ Դուք միշտ հանդիսացել եք որպես կրթության և լուսավորության օժանդակիչ։ Հավատացած եմ, որ իմ հույսը չի խաբում ինձ։

Ձերդ սրբազնությանը միշտ անձնանվեր՝

Հ. Մելիք-Հակոբյան

## 27. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

29 դեկտեմբերի, 1879 ամ., Թիֆլիս

*Սիրելի բարեկամ,*

*Պարոն Ա. Ավթանդիլյան,*

*Վաղուց է, որ առիթ չեմ ունեցել Ձեզ նամակ գրելու. Պարսկաստանի հետ հարաբերությունները կտրելով, ես անզգալի կերպով մոռացա բարեկամներիս։ Բայց պետք է մոռանալ տխուր անցյալը։ Ես կցանկանայի, որ Դուք շարունակեիք Ձեր թղթակցությունները ինձ հետ, որպես մեկը իմ հին բարեկամներից։ Ինձ հետաքրքրում է Ձեր այժմյան վիճակը. արդյոք ի՞նչպես է ընթանում Ձեր ընտանեկան կյանքը. ունի՞ք զավակներ, և ի՞նչպես են անցնում Ձեր օրերը։*

*Կյանքի ալիքների մեջ տատանվող իմ նավը այժմ, կարծես թե, հասել է իր նավահանգստին. երկար թափառելեն հետո, երկար անախորժություններ կրելեն հետո, վերջապես Թիֆլիսում դադար գտա։ Տացե աստված, որ մի նոր փոթորիկ չբարձրանար, որն ինձ գրեթե վիճակված է...*

*Այժմ ես իմ աշխարհի մեջն եմ գտնվում, որ վաղուց փափագելի էր. գրավոր աշխատանքը միշտ եղել է իմ կյանքի նպատակը, և գոհ եմ, որ այդ աշխատանքով կարողանում եմ մի կողմից՝ իմ ապրուստը հայթայթել, մյուս կողմից՝ իմ մտքերը տարածել։ Օրեկան երկու ժամ պարապմունք ունիմ «Մշակի» խմբագրատան մեջ, այնուհետև ազատ եմ և զբաղվում եմ մասնավոր հեղինակություններով։ Դուք արդեն «Մշակի» մեջ կարդացած կլինեք, որ առաջիկա տարվանից կսկսվի տպվել իմ մի վեպը «Կայծեր» անունով։ Այստեղ և գավառներում զանազան պարոններ ստորագրություն են հավաքում տպագրության համար։ Առաջին անգամն է, որ մեր հասարակությունը սկսում է համակրել և նպաստել գրականությանը։ Դա ուրախալի երևույթ է։*

*«Կայծերը» նույն աշխատությունն է, որի մի մասը Դուք հանձն առաք արտագրել, բայց վերջին ժամանակներում ես շատ փոփոխություններ արեցի։ Ցավում եմ, որ զանազան տխուր հանգամանքների պատճառով, Թավրիզից հեռանալու ժամանակ, ես միջոց չունեցա վարձատրելու Ձեր աշխատությունը։ Դուք կստանաք 20 օրինակ այդ գրքից, երբ դուրս կգա մամուլի տակից։ Բայց որքան հիշում եմ, նրա մի կտորը մնացած պետք է լինի Ձեզ մոտ, որովհետև թղթերիս մեջ չէ երևում։ Խնդրում եմ որևիցե եկվորի*

ձեռքով ուղարկել։ Դուք զգույշ մարդ եք, չեմ կարծում, որ կորցրած կամ ոչնչացրած լինեք։

Շարունակեցեք Ձեր թղթակցությունները «Մշակին», Ձեր նամակները հետաքրքիր են։ Խիզանյանը այստեղ տարածել էր, թե Թավրիզու նամակները ինքն էր գրում. այդ հսկայական սուտ պարկը աշխատել էր պարծենալ դրանով. մենք, իհարկե, չհայտնեցինք թե ով է գրում։ Թավրիզից լավ ձայներ են լսվում, երևի մի շարժում կա,— օրիորդաց դպրոց, թատրոն և այլն։ Բայց ես չեմ կարող երևակայել, թե ինչպես ներկայացումներ են տալիս, այնպիսի անպատրաստ մարդիկ, որ իրանց կյանքում թատրոն չեն տեսել։

Խնդրեմ այս ծրարով Ձեզ ուղարկված նամակները հավատարիմ մարդու միջոցով հասցնել Վան քաղաքը։

Սեղմում եմ Ձեր ձեռքը՝ Հ. Մելիք-Հակոբյան

Իմ հասցեն.
Тифлис. Редакция «Мшак»,
А. Мелик-Акопяну

Հ. Գ. Եթե Թիֆլիս եկողներ շուտով չպատահին, խնդրեմ, հիշյալ տոպրակը ուղարկել փոստայով, որի համար կտանաք 1 ռուբլու մարկա։

Հ. Մ.

1 8 8 0

## 28. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

12 փետրվարի, 1880 ամ., Թիֆլիս

Սիրելի բարեկամ
Ա. Ավթանդիլով.

Իմ Ձեզ մոտ թողած տետրակը Ձեր երկու նամակների հետ ստացած եմ. Թավրիզի ընթերցարանի համար ոչ ոք ստորագրված չէ, այդ պատճառով «Մշակը» չէ ուղարկվում։ Պ. Ավետիս Տեր-Օհանյանը մի անգամ ինձ ասաց, թե կգա և կգրվե, բայց չեկավ, գուցե մոռացած կլինի։ Արտասահմանի բոլոր քաղաքները, այն-

պես էլ Թավրիզ, «Մշակը» ուղարկվում է շաբաթը երկու անգամ անխափան. զարմանում եմ, թե ինչու ճշտությամբ չէ ստացվում։

Ուրախ եմ, որ տեղվույդ թատրոնական ներկայացումները հաջող են գնում. որպես նոր բան՝ թատրոնը այնտեղ շատերին կարող է հետաքրքրել, և այդ գործը կարելի է այն աստիճան ընդարձակել, որ վերջը, բացի բարեգործական նպատակների ծառայելուց, ապրուստի և շահի աղբյուր դառնա դերասանների համար։ Այդ պատճառով վատ չէր լինի, եթե բեմական ձիրք ունեցող երիտասարդներից մի քանի հոգի գային Թիֆլիս և մտնելով այստեղի թատրոնական խմբի մեջ, վարժվեին և կատարելագործեին իրանց տաղանդը։

Թավրիզի դպրոցի համար Կ. Պոլսից տեսուչ հրավիրելը ես բոլորովին ապարդյուն եմ համարում. պոլսեցիք, որքան ինձ հայտնի է, շատ փոքր տեղեկություն ունին նոր մանկավարժական գիտությունից. նրանց դպրոցները դեռ կառավարվում են հին սիստեմայով, և կարելի է ասել, որ ամբողջ Կ. Պոլսի մեջ մի բարեկարգ դպրոց չկա, ոչ թե բարձր, այլ միջին կամ տարրական դպրոց։ Վերջին պատերազմից հետո Թիֆլիս շատ են գալիս Կ. Պոլսից ուսում ստացած երիտասարդներ, որոնք զանազան ընկերությունների ներկայացուցիչներ են, և ամբողջ օրերով «Մշակի» խմբագրատանը վեր ընկած են լինում ու ես նրանցից շատ եմ հարցրել Կ. Պոլսի դպրոցների դրության և տեղային մանկավարժների մասին և իմ ստացած տեղեկությունները միշտ անմխիթար են եղել։ Պոլսեցոց հայությունին մի նայեք, նրանք շատ ետ են մնացել կրթության գործի մեջ։

Թավրիզեցիք ավելի խելոքություն արած կլինեին, եթե իրանց դպրոցները իրանց մարդիկներով կառավարեին։ Ռուսաստանից նույնպես դժվար է մի օրինավոր մարդ հրավիրելը, որովհետև մեծ ռոճիկ կպահանջեն, իսկ փոքր ռոճիկով եկողները նրանց նման կլինեն, որոնց արդեն տեսել եք։ Այդ բոլորից հետո անհնարին է Թավրիզի դպրոցները մի բարեկարգ վիճակի մեջ դնել, քանի որ նրանց նյութական վիճակը խիստ աննախանձելի է և օրինավոր կերպով վարձատրել չեն կարող վարժապետներին։

[Հ. Մելիք-Հակոբյան]

## 29. [ՍԱՐԳԻՍ ՊԱՐԶՅԱՆԻՆ]

15 ապրիլի, 1880 ամ., Թիֆլիս

*Սրբազան հայր,*

*Շնորհակալությամբ ստացա բժիշկ Հարությունյան Ա. Դավթյանցի ձեռքով Ձեր ուղարկած 39 ռուբլին «Կայծերի» բաժանորդագրության համար։ Ես ուրախ եմ, որ տակավին ստորագրությունը շարունակելու նպատակ ունիք։*

*Պարոն Դավթյանցը հաղորդեց ինձ նաև Ձեր բերանացի հանձնարարությունը, որով խորհուրդ եք տալիս «Կայծերի» առաջին հատորը տպագրել, որ հասարակությունը տեսնե, հետաքրքրվի, և այնպիսով բաժանորդների թիվը կավելանա։ Ձեր խորհուրդը ճիշտ է նոր և անհայտ հեղինակների վերաբերությամբ։ Բայց ես այսքան տարվա աշխատություններով, կարծեմ փոքրիշատե ցույց եմ տվել, թե մինչև ո՞ր աստիճան կարող եմ օգուտ բերել մեր հասարակությանը, իսկ եթե հասարակությունը դեռևս չէ ճանաչել իր աշխատավորին,— կնշանակե նա բոլորովին կույր է և մտավորապես մեռած։ Այդ դեպքում իզուր է մեր աշխատանքը։*

*Հասարակությունը կարդում է այժմ «Խենթը», կարդաց «Ջալալեդդինը», կարդաց «Փունջը» և կարդացել է «Մշակի» մեջ տպագրված իմ բազմաթիվ վեպիկները.— մի՞թե դրանք բավական չեն։*

*Ճշմարիտը կասեմ Ձեզ, սրբազան հայր, որ մեծ բարոյական տանջանք է պատճառում ինձ այս եղանակով գիրք տպագրելը։ Մինչ ուրիշ ազգերի մեջ մի հեղինակ մի գիրք գրելով, իր ամբողջ կյանքը ապահովացնում է, մենք ստիպված ենք մուրացկանություն անել, դրան և նրան ձանձրացնել, փող հավաքել, որ գոնե մեր աշխատությունը լույս տեսնե և ուրախ ենք լինում, որ նյութապես չենք վնասվում։*

*Ես «Փունջի» հրատարակության շարունակությունը թողեցի, որովհետև բավական վնասվեցա։ Իսկ եթե «Կայծերը» չշոշափեին մի քանի նշանավոր ժամանակակից խնդիրներ, ես երբեք չէի համձն առնի այժմ տպագրել։ Բայց մտածեցի, որ մի քանի տարուց հետո այդ աշխատությունը չի ունենա այն ազդեցությունը, որ այժմ կարող է ունենալ։*

*Ես ուրիշ մխիթարություն չունիմ, և չեմ էլ սպասում, այսքանը բավական է, որ բարեկամների մի փոքր թիվ համակրում է իմ գործունեությունը։ Գուցե ապագան այլ կերպ կվարվի, բայց այն ժամանակ ուշ կլինի...*

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝* Հ. Մելիք-Հակոբյան

# 30. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

18 ապր., 1880 ամ., Թիֆլիս

*Բարեկամ,*

*Ստացա Ձեր մարտ 30-ի նամակը։ Գանգատվում եք, թե Ձեր թղթակցությունները «Մշակի» մեջ չեն տպվել, և իբր ես եմ արգելք եղել, և այդ հայտնել են Ձեզ Թիֆլիսից անցնող պարսկաստանցիները, որոնց հետ ես տեսություն եմ ունեցել։— Մի այսպիսի կարծիք իմ վերաբերությամբ մինչև անգամ վիրավորական է։*

*Ես այստեղ պարսկաստանցիների հետ հարաբերություն չունեմ։ Այն օրից, որ տեղափոխվել եմ Թիֆլիս, ինձ հետ տեսնվել են երեք հոգի միայն՝ պ. Արիստակեսը, Թոմասը և Գորոյանցը։ Ես չեմ կարծում, որ նրանք այն աստիճան անազնիվ մարդիկ լինեին, որ իմ բերանից սուտ հնարեին և Ձեզ ասեին։*

*Ներկա տարվա փետրվար ամսից միայն ես կառավարում եմ «Մշակի»* ներքին տեսության *խմբագրի պաշտոնը, և* արտաքին տեսության *նամակներին եմ նայում։ Իմ ժամանակում Ձեզանից ստացվել է մեկ նամակ միայն, այն էլ տպվել է։ Ուրիշ նամակներ ես չեմ ստացել։ Բայց ինձանից առաջ այս պաշտոնը կատարում էր մի ուրիշ պարոն, գուցե նրա ժամանակներում Ձեր նամակները անտիպ են մնացել. որովհետև նա առհասարակ վատ էր վարվում թղթակիցների հետ, զեղծումներ էր գործում, և այս պատճառով հրաժարեցրին իր պաշտոնից։*

*«Մշակը» իրան նպատակ է դրել ընդհանուր ազգային օրգան լինել և պաշտպանել հայերի շահերը ինչ պետության մեջ և ապրեին նրանք։ Այդ դիտավորությամբ, նա զբաղված է ոչ այնքան Ռուսաստանի հայերով, որքան Տաճկաստանի, Պարսկաստանի, Հնդկաստանի և այլ երկրների հայերով։ Այդ, կարծեմ, Դուք ինքներդ նկատած կլինեք «Մշակի» այսքան տարվա գործունեության ընթացքում։ Պարսկաստանից մենք այժմ համարյա թղթակիցներ չունենք։ Դուք եք միայն երբեմն գիսավոր աստղի նման երևում և շուտով անհայտանում։ Այսուամենայնիվ, Ձեր նամակները միշտ համակրությամբ են ընդունվել խմբագրատան կողմից։ Շատ անգամ Թավրիզից կամ Սալմաստից ստացվում են այնպիսի հիմար նամակներ, որ իսկույն պետք է զամբյուղը գցել. բայց ես դարձյալ վեր եմ առել, ինձանից բաներ եմ ավելացրել, գեղեցկացրել եմ և տպել տվել, որպեսզի իմ հայրենիքի մասին ևս խոսք լինի լրագրության մեջ։*

*Դուք, բարեկամ, շարունակեցեք գրել և աշխատեցեք Ձեր նամակների բովանդակությունը միշտ բազմակողմանի լինի։ Ուշադրություն դարձրեք ամեն երևույթների վրա, մի բավականացեք միայն տեղային հարցերով։ Իհարկե, ես Ձեզանից չեմ պահանջում և մինչև անգամ խորհուրդ չեմ տա գրել այնպիսի բաների վրա, որ կարող էր վնասել Ձեր ասպարեզին։ Գրում եք «Խենթը» Թավրիզում հետաքրքրությամբ է կարդացվում։ Ամեն գավառներից ստանում եմ այս տեսակ տեղեկություն։ Երկու պարոններ ինձանից թույլտվություն ստացան այս վեպը թարգմանել ռուսաց լեզվով։ Տեսնենք, Կ. Պոլսի հոսոսները այդ բոլորը կարդալուց հետո խելքի կգան, թե ոչ։ Բայց ցավում եմ, որ շատ տեղեր ցենզուրայից չանցավ։*

*Ցանկանում եք գիտենալ մի քանի անձնավորությունների ով լինելը։* Ասիացին՝ *ինքը պ. Արծրունին է.* Գամառ–Քաթիբան՝ *որ երբեմն գրում է* Այուլուն *կեղծանունով՝ պ. Ռափայել Պատկանյանն է։ Գամառ-Քաթիբայի նշանակությունը ես էլ չգիտեմ, իրանից հարցրի, մի որոշ բան ասել չկարողացավ։ Պ.* Նիկողոսյանը *մի երիտասարդ օֆիցեր է՝ արտիլերիստ, որ վերջին պատերազմում մասնակցում էր հանգուցյալ գեն. Լազրովի ձեռքի տակ։ Պարոն Փ. Վարդանյանին թույլ չտվեցին «Լուման» հրատարակել, որովհետև նա համարվում է կասկածավոր մարդ. այժմ Նոր-Նախիջևանի ազգային դպրոցի տեսուչ է։*

*Տիգրանին դեռ չեմ տեսել, որ Թավրիզի մասին տեղեկություններ իմանամ, եղբայրը խոստացավ բերել ինձ մոտ։ Նա բավական խելացի տղա է, այստեղ մնալով, կարող է շատ զարգանալ։ Ես նրան կծանոթացնեմ պ. Արծրունու հետ։*

*Խիզանյանցը այստեղ թափառում է. ի՞նչ գործով է զբաղված, չգիտեմ, մի երկու անգամ միայն աչքիս երևացել է. ես նրա հետ չեմ խոսում։*

*Շուտով Ձեր քաղաքում կտեսնեք երևելի Համբարձում Առաքելյանին, որ պիտի գա յուր հոր փտած գործերը կարգի բերելու։ Առաքելյանցի մասին շատ բաներ ունիմ գրելու, բայց հետո...*

*Պարսկաստանի սովի մասին ցավալի տեղեկություններ ենք ստանում։ Այսօր պ. Ամիրխանյանցը ինձ մոտ էր, սարսափելի բաներ էր պատմում։ Թիֆլիսը այժմ կատարյալ Պարսկաստան է դարձել։ Փողոցները լցվել են թուրքերով, ասորիներով և պարսկահպատակ հայերով։ Ամեն րոպե տեսնում եմ խոսրովեցի, սալմաստեցի և ուրմեցի կնանիք, որ դռնից դուռն ընկած, կամ մու-*

բացկանություն են անում, կամ զանազան ծառայություններ են կատարում։

Հացը այժմ թե Թիֆլիսում և թե շրջակա գավառներում ավելի թանկ է, քան թե Պարսկաստանում կամ Տաճկաստանում. բայց սով չկա, որովհետև փող կա, ժողովուրդը աշխատում է և ապրում։ Բացի դրանից, կառավարությունը և հասարակությունը օգնում են աղքատներին։ Երևակայեցեք, այս զատկին ձվի 100 հատը ծախվեցավ 4 ռուբլով. յուղի ֆունտը 40 կոպ., տեղային պանիրը՝ հասարակը 30 կոպ., մի փոքր լավը՝ 40 կոպ., մյուս ուտեստները դրանց համեմատ է։

Ձեր հոդվածը կտպվի զատկից հետո։ Տոների պատճառով «Մշակը» մի շաբաթ չի տպվի։

Հ. Մելիք-Հակոբյան

## 31. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

[19—28 ապրիլի, 1880 թ., Թիֆլիս]

Հ. Գ. Թավրիզի դպրոցի մասին ոչինչ չեք գրում. իսկ ընթերցարանի մասին, Ձեր գրության համեմատ կաշխատեմ փոքրիշատե օժանդակություններ գտնել։ Նպատակ ունեմ դիմել այստեղի նոր կազմված Տպագրական ընկերությանը և խնդրել, որ նա իր հրատարակություններից մի-մի օրինակ ուղարկե Թավրիզի ընթերցարանին։ Բացի դրանից, միտք ունեմ, «Մշակի» մեջ մի փոքրիկ հոդվածով հայտնել Թավրիզի ընթերցարանի կարևորությունը, և խնդրել հեղինակներից կամ մասնավոր անձինքներից, որ գրքեր ուղարկեն ինձ և ես կհասցնեմ Թավրիզ։ Պետք է խոստովանած, որ այս տարի թանկությունը և Թուրքիայի սովատանջների վիճակը այն աստիճան զբաղեցրել են մեր հասարակությանը, որ այդ տեսակ բաների վրա մտածելը, գոնե առայժմ, փոքր-ինչ տարաժամ է համարվում։

«Մշակի» խմբագրատունը ուղարկեց Թուրքիայի սովատանջներին մինչև այժմ 24.000 ռուբլի. դեռ նվիրատվությունները շարունակվում են։

Ողջունեցեք իմ կողմից պ. Ա. Գորոյանցին, ես խնդրեցի նրան, որպես պարսից գրականության հետ ծանոթ մարդու, ուղարկել ինձ պարսկերեն փոքրիկ և հետաքրքիր վեպիկներ։ Նա խոս-

տացավ, բայց ոչինչ չուղարկեց։ Եթե ձանձրություն չէր լինի, ես կցանկանայի, որ նա կատարեր իր խոստումը, նախապես ուղարկելով ինձ գրքերի ցուցակը և արժեքը, իսկ փողը ես անմիջապես կհասցնեի նրան։

Պարսկերեն լեզվում, որքան ինձ հայտնի է, կան այնպիսի գրքեր, որ բովանդակում են իրենց մեջ փոքրիկ վեպիկների մի ամբողջ հավաքածու, կան և առանձին փոքրիկ գրքույկներ, պետք է ընտրել դրանցից, որոնք ավելի հետաքրքիր են ընթերցանության համար։ Ես այժմ պարապվում եմ պարսկերենով։

Ողջունեցեք մեր հին ծանոթներին. անունները գրելու հարկ չկա. Դուք գիտեք։

Հ. Մելիք-Հակոբյան

## 32. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

23 նոյեմբ., 1880 ամ., Թիֆլիս

Թանկագին բարեկամ

Մելքոն Կասպարիչ Փանյանց.

Ձեր նամակը ստացա. շնորհակալ եմ Ձեր բարեսրտության համար, որ արտահայտվում է Ձեր գրության յուրաքանչյուր տողից։ Ձեր համակրությունը դեպի իմ անմխիթար գործունեությունը չափազանց խրախուսում է ինձ, որպես բարեկամի և ազգասերի անկեղծ սրտից բխած քաջալերական խոսք։ «Կայծերի» տպագրությունը հակառակ իմ ցանկության, արդարև բավական ուշացավ։ Ես ամեն ջանքով աճապարում էի, որ այս աշխատությունը իբրև ժամանակակից վեպ, իբրև մեր մտքերը զբաղեցնող հարցերը շոշափող մի երկասիրություն, որքան կարելի էր շուտով լույս տեսներ։ Բայց հետաձգության պատճառը պետք է որոնել երկու գլխավոր պատճառների մեջ, նախ, որ ես մինչև այսօր իմ բաժանորդներից չկարողացա այնքան փող ստանալ, որ գոնե տպագրության ծախքը ծածկեր. երկրորդ, ես հույս չունեի, որ այս աշխատությունը անվնաս ցենզուրայից ամբողջապես անցներ։ Տաճկաստանի հայոց վերջին շարժումներից հետո այստեղի ցենզուրան սկսեց բավական խստությամբ վերաբերվել դեպի ամեն մի գրվածք, որ կարող էր նրանց մեջ ազգասիրական զգացմունք և ազգասիրական ոգի ներշնչել։ Այդ մի բախտ էր, որ «Խենթը» անցավ, թեև նրա

ամենագեղեցիկ տեղերը ջնջվեցան «Մշակի» մեջ տպվելու ժամանակ։ Բայց ես մեծ դժվարություն կրեցի, մինչև կարողացա կրկին հրաման ստանալ երկրորդ տպագրության համար։

Այս՛ հանգամանքը ի նկատի առնելով, ես գրեցի պ. Գաբրիել Միրզոյանցին, որը Մոսկվայի համալսարանի ուսանող է, որ հանձն առնե «Կայծերը» Մոսկվայում տպագրելու։ Այնտեղ ցենզուրան ավելի ազատ է, թուղթն ավելի էժան է և տպագրությունը ավելի մաքուր։ Տակավին պատասխան չեմ ստացել, բայց հույս ունեմ, որ կընդունե, որովհետև այդ պարոնը, որպես իմ լավ բարեկամ, նույնպես և իմ ամենաեռանդոտ և գործունյա երիտասարդներից մեկն է։

Պարոն Միրզոյանցը մի երկու ամիս առաջ դիմել էր ինձ, խնդրելով, որ ես իրավունք տամ «Խենթը» Մոսկվայում տպագրելու, բայց ես չկարողացա կատարել նրա գեղեցիկ ցանկությունը, որովհետև նրանից առաջ արդեն իրավունք էի տված Շուշիում տպագրելու։ Այս քաղաքից «Խենթի» առաջին թերթերը ուղարկել էին ինձ տեսնելու համար, թուղթը բավական լավն է և տպագրությունը մաքուր, երևում է այնտեղի տպարանը այժմ փոքրիշատե կանոնավորված է։

Հարցնում եք, թե ինչո՞ւ այստեղի Տպագրական ընկերությունը հանձն չի առնում իմ գրքերը ի լույս ընծայելու։ Բարեկամ, մի խաբվեցեք այս տեսակ խոշոր անուններից։ Մեզանում մասնավոր մարդիկ ավելի շատ գործ են կատարում, քան թե ամբողջ ընկերություններ։ Այդ ընկերությունը իր չնչին դրամագլխով իրան նպատակ է դրել հրապարակել մանր, ըստ մեծի մասին մանկավարժական գրքույկներ, և ոչ թե ընդարձակ նշանավոր աշխատություններ ժողովրդի մեջ միտք և ընթերցանություն տարածելու համար։ Բացի դրանից, ընկերության քննիչ հանձնաժողովն այնպիսի անձինքներից է բաղկացած, որ հազիվ թե փոքրիշատե իր հեղինակությունը հարգող մի գրող կցանկանար իր աշխատությունները նրանց քննությանը ենթարկել։

Գրում եք, թե ես մի մեծ հանցանք գործած կլինեմ, եթե զրկեմ հասարակությանը իմ գրավոր աշխատություններից։ Ընդունում եմ Ձեր անկեղծ բարեկամական հանդիմանությունը։ Բայց հարկավոր է, որ հասարակությունն էլ իր կողմից թե՛ բարոյապես և թե՛ նյութապես քաջալերե իր գրականության անբախտ մշակներին։ Եթե վենետիկցիք կարճ ժամանակում կարողացան այնքան ահագին քանակությամբ գրքեր տարածել հայոց ազգի մեջ, դրա

գլխավոր պատճառն այն էր, որ նրանք ունեին մեկենասներ, և նրանց գրքերի մեծ մասը զարդարած էին ղանազան Տյուզեան-ների և Տաույանների անունով։ Բայց ո՞ւր է մեր հարուստների կողմից այս տեսակ ազգասիրական բարեսրտություն։

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝*

Հ. Մ. Մելիք-Հակոբյան

Հ. Գ. «Կայծերը» թե վաղ, թե ուշ կտպվի, դրանում տարակույս մի ունեցեք, շարունակեցեք Ձեր բաժանորդագրությունը։ Ես սպասում եմ պ. Միրզոյանցի պատասխանին, եթե նա հանձն կառնե Մոսկվայում տպագրել տալ, Ձեզ մոտ գտնված փողերը կհանձնեք նրան, իսկ եթե ոչ, ես ստիպված կլինեմ այստեղ տպագրել տալ։

Ձեր պահանջած «Մշակի» համարները պատվիրեցի խմբագրատանը ուղարկել Ձեզ։

Ես պատրաստել եմ մի պատմական վեպ ևս «Դավիթ-Բեկ» անունով, որ շուտով կսկսվի տպվել «Մշակի» մեջ։ Վեպի բովանդակությունն առնված է Դավիթ-Բեկի՝ Սյունյաց իշխանի կյանքից։ Գործողությունների մի մասը կատարվում է Ձեր հայրենիքում։

Հ. Մ.

1 8 8 1

## 33. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

25 փետրվարի, 1881 թվ., Թիֆլիս

*Թանկագին բարեկամ*
*Մ. Կ. Փանյանց,*

Ձեր 24 դեկտեմբերի գրած նամակը վաղուց արդեն ստացած եմ. այսքան ժամանակ պատասխանի ուշացնելը պետք է վերաբերել իմ ծուլությանը և ավելի ոչինչ։ Այս նամակով կստանաք իմ լուսանկարը, իսկ պ. Արծրունին ինքը կուղարկե Ձեզ յուր պատկերը, որպես խնդրած էիք։

«Կայծերի» Մոսկվայում տպագրելու դիտավորությունս ես արդեն թողած եմ։ Ինձ ստիպեց այդ մտքին դիմելու անցյալ տարվա ցենզուրայի խստությունը, իսկ այժմ այստեղի ցենզուրան փոքր-

ինչ մեղմացել է, այլևս այնպիսի բռնությամբ չէ վարվում դեպի ամեն մի գրվածք, որ կարող էր տաճկահայերի մեջ ազգասիրության զգացմունք զարթեցնել։ Ես կտպագրեմ «Կայծերը» Թիֆլիսում, և գուցե շուտով կսկսեմ տպագրությունը, եթե ծախքը բոլորովին լրացրած կլինեմ։

Պ. Նիկողոսյանը, որպես Ձեզ հայտնի է, Կ. Պոլսումն է. նա աշխատակցում է ռուսաց «Порядок» լրագրին, և ինչպես յուր մասնավոր նամակներից երևում է, կարող է այնտեղ շատ օգտավետ լինել մեր բուն ազգային գործերում։ Ես բոլորովին համաձայն եմ Ձեզ հետ պ. Նիկողոսյանի բնավորության մասին, արդարև, նա փոքր-ինչ դյուրագրգիռ, շուտ հափշտակվող երիտասարդ է, բայց այնուամենայնիվ մեր անկեղծ, անձնվեր և եռանդով գործիչներից մեկը պետք է համարել նրան։ Բայց նա չափազանց անձնավստահ մարդ է,— այդ է նրա գլխավոր թերությունը։

«Խենթի» տպագրությունն այնքան վատ չի լինի, որքան Դուք կարծում եք. առաջին տպագրված թերթերի օրինակները ուղարկել էին ինձ, բավական մաքուր էին. միայն շատ ուշացրին, պետք էր մինչև այսօր լույս տեսած լիներ։

«Դավիթ-Բեկը» «Մշակի» մեջ հրապարակելով, միևնույն ժամանակ առանձին գրքով տպվում է ինձ համար. երբ կվերջանա, քանի օրինակ որ կցանկանաք, կուղարկեմ Ձեզ։

Դուք, իհարկե, կարդացած կլինեք «Մեղուի» առաջնորդող հոդվածը Մոսկվայի և Ս. Պետերբուրգի եկեղեցիների երեցփոխանության մասին. եթե Ձեր ժամանակը կներեր, ես շատ կցանկանայի, որ բուն խնդրի մանրամասնությունները գրեք ինձ, թե ինչո՞ւմ է կայանում բուն վիճաբանությունը, կամ ովքե՞ր են հակառակ կողմի պարագլուխները, ի՞նչ է նրանց նպատակը։

Քանի շաբաթ առաջ այստեղից անցավ մեր հայրենակից մահտեսի Սիմոն Թումանյանցը, նրանից Ձեր առողջության մասին տեղեկանալով շատ ուրախ եղա։

Այս տարի, եթե կհաջողվի, նպատակ ունեմ դեպի Կ. Պոլիս մի ճանապարհորդություն անել և Հայաստանով վերադառնալ Թիֆլիս. անցյալ տարի չհաջողվեցավ, գուցե այս տարի կհասնեմ ցանկալի նպատակիս։

Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝

Հ. Մելիք-Հակոբյան

## 34. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

26 մայիսի, 1881 ամ., Թիֆլիս

*Թանկագին բարեկամ*

*Մ. Կ. Փանեանց,*

*Ապրիլի 7-ից գրված Ձեր նամակը ստացա, խոստացել էիք Ձեր պատկերը ուղարկել, մինչև այժմ սպասել եք տալիս ինձ։ «Խենթի» մեկ օրինակը ուղարկեցի Ձեզ, չգիտեմ ինչպես կհավանեք տպագրությունը. Շուշի քաղաքից դրանից ավելի չէր կարելի սպասել։ «Դավիթ-Բեկի» առաջին և երկրորդ մասը արդեն առանձին գրքով տպված և վերջացված է, կազմարարի մոտ է գտնվում, շուտով մի օրինակ կուղարկեմ Ձեզ։ Իսկ երկրորդ մասը, որ ավելի ընդարձակ է, լույս կտեսնի «Մշակի» մեջ հրատարակությունը ավարտվելուց հետո, որովհետև առաջ նրա մեջ տպվում է, հետո բրոշյուր է կազմվում։*

*Մոսկվայի ուսանողներից մեկը նամակով դիմել էր իմ բարեկամ պ. Գաբրիել Միրզոյանցին, հայտնելով, թե տեղից անկելանոցի դրամարկղում կա մի գումար և հոգաբարձությունը ցանկություն ունի այդ գումարը մի որևիցե ազգային գործի համար ծախսել, և երբ թե հոգաբարձական ժողովում, հարց է ծագել, որ հիշյալ գումարը տան ինձ տաճկական Հայաստանում ճանապարհորդելու համար, և հարցը մնացել է դեռ անվճիռ, որովհետև չգիտեն ես հանձն կառնեմ գնալ Հայաստան, թե ոչ։ Իմ դիտավորությունը գիտենալու համար գրած էին պ. Միրզոյանցին, որ ինձանից հարցմունք անե։*

*Ես դեռ անցյալ տարի հունիս ամսի սկզբին պատրաստվեցա Կ. Պոլիս գնալու, որ այնտեղից անցնեմ Հայաստան, բայց մի քանի արգելքներ, որոնց մեջ գլխավոր տեղը բռնում էր նյութական միջոցների պակասությունը, թողեցի իմ ցանկությունն անկատար։ Այժմ, եթե իրավ կա մի գումար, որ կամենում են Հայաստանի ճանապարհորդության համար գործ դնել, ես մեծ ուրախությամբ հանձն կառնեմ այդ ճանապարհորդությունը, հետևյալ պայմաններով.— առաջին, իմ ճանապարհորդությունը կտևե հինգ ամիս. այդ հինգ ամսվա համար ծախք կպահանջեմ* հազար *ռուբլի, երկրորդ, որ ամենագլխավորն է, չի պիտի տարածվի, թե ես գնում եմ Հայաստան։ Ես պիտի աշխատեմ, որքան կարելի է իմ ճանապարհորդությունը գաղտնի պահել։ Պատճառները, առանց իմ ասելու, Դուք կհասկանաք։ Ձեզ հայտնի է, թե ինչ հալածանք կա*

*Տաճկաստանում այն անձանց դեմ, որոնք աշխատում են հայոց գործի համար։ Եթե իմ Հայաստան գնալը հենց սկզբից հուշակվի, անկարելի է, որ Թուրքաց կառավարությունն ուշադրություն չդարձնի։ Թիֆլիսի տաճկաց կոնսուլը ամենաչնչին երևույթներն անգամ հաղորդում է իր կառավարությանը, ուր մնաց մի փոքրիշատե հայտնի մարդու ճանապարհորդելու նպատակով Հայաստան գնալը։ Թեև իմ ճանապարհորդությունը ոչինչ քաղաքական նպատակ չունի և չպիտի ունենա, այսուամենայնիվ, Թուրքաց կառավարությունը շատ պատճառներ ունի կասկածանքով վերաբերվել դեպի մի ճանապարհորդ, որ Ռուսաստանից գնացել է Հայաստան։ Այդ կարող էր ոչ միայն իմ անձը վտանգի ենթարկել, այլ զրկել ինձ այն հետազոտություններից, որոնք միայն ուսումնական բնավորություն ունեն, և վերաբերվում են երկրի ու բնակիչների դրությանը, նրանց փոխադարձ հարաբերություններին և այլն։*

*Բայց, որպեսզի հնար լինի ավելի խոր թափանցել ժողովրդի մեջ, դրա համար հարկավոր են իմ վերև հիշված պայմանները, այսինքն՝ ճանապարհորդել ծպտյալ կարգով (*ИНКОГНИТО*)։*

*Իմ կարծիքս այս է, եթե տեղվույդ հոգաբարձությունը կընդունե իմ առաջարկած պայմանները, թող 1000 ռուբլի* բոլորովին ուրիշ անունով *ուղարկե «Մշակի» խմբագրատանը պ. Արծրունուն. պ. Արծրունին այդ գումարը կկարգադրե իմ ճանապարհորդության համար։ Այդ կարող են գիտենալ Մոսկվայում մի քանի խոհեմ անձինք միայն, իսկ մնացյալ հասարակությանը պետք է անհայտ մնա։*

*Հուսով եմ, որ այդ մասին անհապաղ կպատասխանեք ինձ, որ ես նրա համեմատ իմ գործերը կարգի դնեմ։*

Ձեր՝ Հ. Մելիք-Հակոբյան

## 35. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

[ 27 հունիսի, 1881 թ., Թիֆլիս

*Ազնիվ բարեկամ*

*Մ. Կ. Փանեանց,*

*Ձեր 17 և 18 հունիսի նամակները ստացել եմ. այլև ստացա Ձեր պատվական ընծան՝ «Հրապարակախոս ձայն» կոչված գիրքը. այդ մասին ընդունեցեք իմ խորին շնորհակալությունը։*

«Կասպարյան անկելանոցից» ես ոչինչ տեղեկություն չունեի։ Այդ մասին խոսել էին, կարգադրել էին ուրիշները, առանց նախապես իմ հաճությունը հարցնելու։ Թող անկելանոցի մարդիկը անկելանոցի վրա մտածեն... Մենք ավելի կենդանի հիմնարկություններից կսպասենք մեր նպատակների իրագործումը։

Ստացա Ձեզանից քսան և հինգ ռուբլի, որի փոխարեն պահանջում եք ուղարկել Ձեզ 10 օրինակ «Դավիթ-Բեկ» վեպից։ Դուք երևի հաշվի մեջ սխալվել եք, 10 օրինակ «Դավիթ-Բեկը» կարժե 15 ռուբլի և ոչ ավելի։ Ես փոստով ուղարկեցի 40 հատ «Դավիթ-Բեկ», որ նեղություն հանձն առնեք Մոսկվայում վաճառելու, և Ձեզանից ստացած քսան և հինգ ռուբլին գրեցի այդ գրքերի հաշվին։

«Խենթի» տպագրությանը և գրքի դիրքին ես էլ չեմ հավանում, գուցե շուտով երկրորդ տպագրությունը կլինի, որովհետև առաջինն արդեն սպառվել է։

Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝

Հ. Մելիք-Հակոբյանց

## 1882

## 36. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

2 հունվարի, 1882 ամ., Թիֆլիս

Մեծապատիվ պարոն

Մելքոն Կասպարիչ Փանեանց,

Բավական ժամանակ է, որ մեր միմյանց հետ ունեցած թղթակցությունն ընդհատված է. իմ կողմից մի այլ պատճառ չկա, բացի նրանից, որ ավելի քան երեք ամիս Թիֆլիսից բացակա էի գտնվում, գնացել էի ճանապարհորդություններ անելու։ Իսկ Դուք ի՞նչ պատճառով զրկում եք մեզ Ձեր նամակներից,— այդ պահանջը սաստիկ զրավում է ինձ։

«Դավիթ-Բեկը» դարձյալ սկսվեցավ տպվել և ներկա տարվա հունվար ամսվա վերջում կավարտվի երրորդ գրքի տպագրությունը, միևնույն դիրքով, որպես լույս տեսավ այդ վեպի առաջին և երկրորդ գիրքը միասին։ Կմնա մի հատոր ևս հրատարակելու և

*այդ վեպը բոլորովին կվերջանա, որովհետև ամբողջ վեպը չորս գրքերից է բաղկացած։*

*Զգիտեմ Ձեզ ուղարկված հատորները վաճառվեցա՞ն, թե ոչ։ Երևակայեցեք, ես այդ գրքից միայն 600 օրինակ եմ տպել տվել, և մեր բոլոր հայաբնակ քաղաքներում փոքրիշատե ուղարկել եմ, բայց դեռ ոչ մի տեղից փող չեմ ստացել։ Իսկ գովասանական դատարկ նամակներ շատ եմ ստանում, թե հետաքրքրությամբ կարդում են, անհամբերությամբ սպասում են մյուս հատորների լույս տեսնելուն և այլն... Բայց մյուս հատորները ի՞նչ միջոցներով պիտի լույս տեսնեն,— դրա վրա ոչ ոք չէ մտածում։*

*Մենք մեր հասարակությունից շատ բան չենք պահանջում միայն մեր աշխատության գինը մեզ տան, որ կարողանանք շարունակել մեր գործունեությունը. հակառակ դեպքում կմնա մեզ թողնել գրական ասպարեզը, գոնե հանգիստ խղճմտանքով կարող ենք ասել՝ մենք կատարեցինք, որքան մեզանից կախված էր, իսկ դուք մեզ գնահատել չկարողացաք։*

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյան

## 37. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

10 փետրվարի, 1882 ամ., Թիֆլիս

*Ազնիվ բարեկամ Մելքոն Կասպարիչ,*

*Ձեր վերջին նամակը ստացա. ցանկանում եք մի քանի տեղեկություններ հաղորդել Ձեզ պ. Նիկողոսյանի մասին. մեծ հոժարությամբ կկատարեմ Ձեր փափագը։*

*Պ. Նիկողոսյանը, ինչպես Դուք նկատած կլինեք, վերջին ամիսներում դադարեցրել է իր թղթակցությունները Կ. Պոլսից, թեև ինքը չէ հայտնել պատճառը, բայց նրա մի բարեկամի գրելով (որը նույնպես թղթակցում է «Մշակին»), իր հիվանդությունն է պատճառ, որ առժամանակ պիտի զրկե նրան աշխատելուց։ Բայց գլխավոր առիթը, որպես Դուք շատ ճիշտ գրած էիք,* նյութական ճաշիվներ *են, որոնք իմ կարծիքով պատճառ չի պիտի տային պ. Նիկողոսյանին սառչիլ «Մշակից»։*

*Բոլորովին զրպարտություն կլիներ ասել, թե «Մշակը» նրա նամակները չէր տպում կամ անխնա փոփոխություններ էր անում։ Այդ ամեն մի օրինավոր խմբագրություն իրավունք ունի*

մերժելու, ինչ որ անհարմար է, ինչ որ վնասակար է։ Եթե «Մշակի» խմբագրությունը նրա հոդվածներից ջնջել է, ջնջել է գլխավորապես ա՛յն տեղերը, որոնք բովանդակում էին իրենց մեջ բացարձակ ցինիկական հայհոյանքներ և ավելի ոչինչ։ Առանց դրան և նրա նամակները շատերի մեջ զզվանք և անհամակրություն հարուցին դեպի «Մշակը», իսկ եթե ամբողջապես տպվելու լինեին, այն ժամանակ «Մշակը» կդառնար բոլորովին հայհոյանքների օրգան։ Բայց մի լրագիր չէ կարող այս և այն թղթակցի անձնական կրքերին ծառայել։

Ինչ որ վերաբերվում է այն վարձատրությանը, որ պ. Նիկողոսյանը ստանում էր «Մշակի» խմբագրությունից, պետք է ի նկատի ունենալ, որ սկզբից պ. Արծրունին չէ ուղարկել նրան Կ. Պոլիս որպես թղթակից և ոչ որևէ խոստմունք արած ունի նրա վճարելու համար։ Պ. Նիկողոսյանը ինքնակամ գնաց Կ. Պոլիս և սկրսեց այնտեղից թղթակցել. հետո ժամանակ առ ժամանակ սկսեց փողեր պահանջել։ Պ. Արծրունին չէր մերժում և ուղարկում էր պահանջածը։ Եվ գուցե կշարունակեր, եթե չափավոր լիներ, բայց նա անդադար ձանձրացնում էր։ Հետո, պ. Արծրունին խիստ քաղաքավարի կերպով ակնարկեց նրան «Մշակի» խմբագրության չքավոր միջոցները, որպեսզի նա իր պահանջները փոքր-ինչ սահմանափակե։ Դրանից երևի վիրավորվել է նա։ Եթե գումարելու լինենք մինչև այժմ պ. Նիկողոսյանի ստացած փողերը, միջին թվով յուրաքանչյուր ամիս ստացած կլինի 60 կամ 70 ռուբ.։

Պ. Արծրունին բոլորովին զարմացավ, երբ տվեցի նրան կարդալ Ձեր նամակի այն մասը, որ վերաբերվում էր պ. Նիկողոսյանին։ Նա մինչև այսօր հայտնած չէ, թե ինքը Մոսկվայից նպաստներ է ընդունում, և միշտ կարծել է տվել, թե ապրում է միայն «Մշակի» խմբագրատնից ստացած միջոցներով։ Իհարկե, Ձեր գրածը կմնա, ինչպես իմ, այնպես էլ պ. Արծրունու մոտ, որպես գաղտնիք, բայց շնորհակալ ենք, որ Դուք բավական բացատրեցիք նրա վարմունքը։

Ես չեմ կարծում, որ նա բոլորովին դադարե «Մշակին» աշխատակցելուց. վերջ ի վերջո կսկսե գրել։ Պ. Արծրունին առիթ չէ տվել նրան վիրավորելու, միայն երբեմն բարեկամական խորհուրդներ է տվել, որ իր համար մի հաստատուն պարապմունք գտնե և իր ապագայի համար մտածե. գրական աշխատանքը չի կարող ապահովեցնել նրան.— այսքանը միայն։

Ձեր՝ Հ. Մելիք-Հակոբյան

## 38. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

20 մարտի, 1882 ամ., Թիֆլիս

*Հարգելի բարեկամ,*

*Ստացա Ձեր 3 մարտի նամակը. պ. Նիկողոսյանի մասին ինչ որ գրած եք, կաշխատեմ կատարումը տալ։*

*Բայց մի նոր տեղեկություն հարկավոր եմ համարում հաղորդել Ձեզ։ Ամեն անգամ, երբ պատահել է իմ Ձեզ գրած նամակներում խոսել պ. Նիկողոսյանի վրա, Դուք հիշում եք, որ ես միշտ գանգատվել եմ նրա անտակտության, նրա անխոհեմ վարմունքների մասին։ Այժմ պ. Նիկողոսյանը ապացուցեց, որ ես սխալված չեմ եղել իմ կարծիքների մեջ։ Ահա բանը ինչումն է։ Պ. Նիկողոսյանը հանկարծ դադարեց «Մշակին» թղթակցելուց, առանց նախապես բացատրելու պատճառները։ Նույն միջոցին նրա բարեկամ դոկտոր Փեշտմալչյանից նամակ ստացանք, որ հիվանդ է։ Այդ իմանալով պ. Արծրունին ուղարկեց 150 ռուբ.։ Հետո մի քանի ամիսներ տևեց նրա լռությունը, ամենևին տեղեկություն չունեինք, թե ինչ դրության մեջ է կամ ինչով է զբաղված։*

*Հանկարծ (մի շաբաթ առաջ) այստեղ զանազան պարոններ Բաքուից նամակներ են ստանում, որոնց բովանդակությունից երևում է, թե պ. Նիկողոսյանը դիմել է Բաքուի «Մարդասիրական ընկերությանը» նրանից օժանդակություն խնդրելու, և իր նամակի մեջ նկարագրել է ոչ միայն իր դժբախտությունները, այլ իր բոլոր դժգոհությունները պ. Արծրունու վերաբերությամբ, թե նա թողել է իրեն քաղցած, չի կատարում իր պայմանները և այլն։ Ասացեք խնդրեմ, դա ազնվությո՞ւն է, խայտառակել «Մշակի» խմբագրին, որից շատ բարիքներ է վայելած և կոտրել հայ հասարակության առջև «Մշակի» խմբագրական վարկը։ Ես բոլորովին հակառակ չեմ ու շատ բնական եմ գտնում, որ նյութական կարոտությունը ստիպել է նրան դիմել դրա և նրա օգնությանը։ Բայց ինչո՞ւ արատավորել ուրիշների պատիվը, ինչո՞ւ զրպարտություններ անել։ Իհարկե այդ բոլորը սաստիկ կվիրավորեին պ. Արծրունուն, մանավանդ Բաքուից նամակներ ստացողներից շատերը դիմեցին ինձ և պ. Արծրունուն, բացատրություն էին խնդրում պ. Նիկողոսյանի գրածները ստուգելու համար, որպեսզի մարդասիրական ընկերությանը տեղեկություն տան։*

*Թուցե Բաքուից ստացած լուրերի մեջ չափազանցություններ կան, այսուամենայնիվ պ. Նիկողոսյանն ավելի ազնիվ վարված*

կլիներ, եթե ճշմարիտը գրեր, թե «Մշակի» խմբագրությունից ստացած վարձատրությունն այնքան աննշան է, որ նրանով Կ. Պոլսում իր ապրուստը հոգալ չի կարողանում և այդ պատճառով խնդրում է, որ «Մարդասիրական ընկերությունն» էլ իրան օգնի։ Ես կարծում եմ, որ այդ ձևը ավելի համակրական կլիներ, քան թե ամեն ինչ ուրանալ և ստիպել ընկերությանը Թիֆլիս գրելու և «Մշակի» խմբագրից բացատրություններ պահանջելու։ Պ. Արծրունին իհարկե ոչինչ չպատասխանեց, դարձյալ պահպանելով պ. Նիկողոսյանի պատիվը։ Բայց ես որքան կարող էի աշխատեցի զանազան բարեկամներիս նամակներ գրել տալով, որ համոզեն «Մարդասիրական ընկերությանը» մի գումար ուղարկելու Կ. Պոլիս պ. Նիկողոսյանին, և հուսով եմ, որ կուղարկեն։

Այդ բոլոր անցքերից երկու օր չանցած ես ստանում եմ պ. Նիկողոսյանից մի նամակ գանգատներով լի պ. Արծրունու վրա և նամակի հետ մի հոդված, որի մասին խնդրում է կամ անփոփոխ կերպով «Մշակի» մեջ տպել տալ կամ հանձնել «Մեղուի» և կամ «Արձագանքի» խմբագրներին։ Ես չկամենալով, որ պ. Նիկողոսյանը բոլորովին ստորացնե իր պատիվը ուրիշ խմբագրությունների դիմելով (որոնց հետ ունեցած հարաբերությունները Ձեզ հայտնի է), դարձյալ խնդրեցի պ. Արծրունուց, որ նրա հոդվածը ընդունե և անփոփոխ տպագրե։ Կեսը տպվեցավ «Մշակի» 47 համարի մեջ, իսկ մնացած կեսը ցենզորը ամբողջապես կտրեց, այժմ ներկայացված է ցենզուրական կոմիտեին, չգիտեմ թույլ կտան տպելու, թե ոչ։ Դրանից պարոն Նիկողոսյանը կարող է հասկանալ, թե ինչու նրա հոդվածներից շատ բաներ ջնջվում էին։

Վերջապես պ. Նիկողոսյանի նամակը ստանալուց հետո ես նրան պատասխանեցի, և ինչ խրատներ, որ պետք էր տալ նրան, բոլորը գրեցի։ Հույս ունեմ, որ այսուհետև խելքը գլուխը կհավաքե և կրքերի անձնատուր չի լինի։

Ինչ որ վերաբերվում է Ձեր առաջարկությանը, թե լավ կլիներ, որ պ. Արծրունին մի երկու ամսվա համար 150 ռուբ. ուղարկեր նրան, այդ հեշտ է կատարել տալ, միայն հարկավոր է, որ վերոհիշյալ անախորժությունները փոքր-ինչ մոռացվեն, և նա շարունակե իր գործը, իհարկե պ. Արծրունին նրան կարոտության մեջ չի թողնի։

Մոսկվայում բնակվում է Սարգիս Հարությունյան Թումանյանցի ընտանիքը. նրա որդի Վարդանը, որ տեղային ռեալական

դպրոցի ուսանող է, մի ժամանակ Թավրիզում իմ աշակերտն է եղել։ Այդ ընտանիքի հետ ես լավ բարեկամ եմ. մանավանդ մահտեսի Սիմոնը, որ իր եղբայրների մեջ ամենազարգացածն է, իմ մտերիմներից մեկն է։ Քանի օր առաջ Վարդանից մի նամակ ստացա, որով հայտնում է, թե դիտավորություն ունի առանձին գրքերով տպագրել տալու իմ բոլոր այն աշխատությունները, որոնք զանազան ժամանակ «Մշակի» մեջ հրատարակված են, բայց տակավին լույս չեն տեսած առանձին գրքերով։ Սկզբից նա ընտրում է տպագրության համար իմ «Ջալալեդդին» անունով վեպիկը և իր նամակով թույլատվություն է խնդրում, որ ես տամ իմ համաձայնությունը։

Ինձ, իրավն ասեմ, շատ ուրախացրեց Վարդանի ցանկությունը, որ յուր պատանի հասակում ցույց է տալիս այդպիսի ազնիվ ձգտումներ։ Բայց որովհետև նա դեռ անփորձ է, և նրա հայրը այն տեսակ մարդերից չէ, որ հասկանա տպագրական պայմանները, այդ պատճառով ես հարմար համարեցի դիմել Ձեզ, որ Դուք նեղություն հանձն առնեք խոսելու նրանց հետ իմ կողմից ինչ որ հարկն է։ Հուսով եմ, որ չեք զլանա կատարելու իմ խնդիրքը։

Գուցե նրանց հայտնի չլինի, երբ առանձին մարդիկ հանձն են առնում տպագրելու մի որևիցե հեղինակի գրքերը, նախ վարձատրում են հեղինակին՝ տպագրելու իրավունք ստանալու համար։ Երբ «Խենթը» Շուշիում տպեցին, պ. Ապրեսյանցը ուղարկեց ինձ 300 օրինակ տպված գրքերից, որպես վարձատրություն ավելի տալ չէր կարող, որովհետև մի աղքատ տղա էր։

Ես Վարդանին պատասխանեցի, թե հոժար եմ, որ նա տպել տա «Ջալալեդդինը», բայց պայմանների մասին պետք է խոսել Ձեզ հետ։ Դրանք են իմ պայմանները.

1. Իրավունք եմ տալիս միայն առաջին տպագրության համար, և տպել ոչ ավելի քան 2400 օրինակ։ Երկրորդ կամ ապագա տպագրությունների իրավունքը ինձ վրա եմ պահում։

2. Որպես վարձատրություն պետք է ինձ կամ կանխիկ վճարեն 200 ռուբլի փող, կամ 500 օրինակ տպված գրքերից, այն պայմանով, որ իրանք Թիֆլիսում իրավունք չունենան վաճառելու, որպեսզի իմ ունեցածը այստեղ վաճառվի։

Ահա դրանք են իմ գլխավոր պայմանները, իսկ ինչ որ կվերաբերի տպագրության մաքրությանը, թղթի լավությանը, գրքի դիրքի գեղեցկությանը, այդ բաների մեջ ես կարծում եմ, որ դուք

այնքան կիրթ ճաշակ ունեք, որ բոլորը կարող եք ցույց տալ նրանց։

Եթե գիրքը կտպվի այնպիսի թղթի վրա, ինչպես էր Գամառ-Քաթիպայի երգարանի թուղթը, ամենայն վստահությամբ կարելի էր յուրաքանչյուր գրքույկին 50 կոպեկ գին նշանակել և մեծ դյուրությամբ կվաճառվի։ Պ. Պատկանյանը, կարծեմ, 300 ռուբլի ստացավ յուր երգարանի տպագրության իրավունք տալու համար, այն էլ իր պատկերով։

«Ջալալեդդինը» իմ աշխատություններից ամենագեղեցիկն է. մի ժամանակ մի քանի պարոններ դիտավորություն ունեին այդ վեպիկը մի քանի հազար օրինակներով տպել տալ և ձրի բաժանել մանավանդ Տաճկաստանի հայերի մեջ։ Բայց մեր մեջ ամեն օգտավետ դիտավորություն մնում է անկատար, այդ էլ այնպես մնաց։

Մի քանի շաբաթ առաջ պ. Նիկողոսյանի միջնորդությամբ Կ. Պոլսից դիմեց ինձ մի պարոն, որը տեղային լեզվագետ է և բարձր ուսում ստացած երիտասարդներից մեկն էր, Թերզյան ազգանունով, նա «Խենթը» և «Ջալալեդդինը» ֆրանսերեն լեզվով թարգմանելու թույլատվություն էր խնդրում, ես, իհարկե մեծ հոժարությամբ իմ համաձայնությունը հայտնեցի։ Պարոնի դիտավորությունն այն է, որ իր թարգմանություններով եվրոպական հասարակությանը ծանոթացնե մեր գրականության և մեր ներքին կյանքի հետ։

Դոքտոր Թամամշյանը, որ Կ. Պոլսի ռուսաց դեսպանատան բժիշկն է, գրած էր ինձ, որ իր առաջարկությամբ «Խենթից» դրամա էր կազմվել և դիտավորություն ունի ֆրանսերեն և անգլերեն լեզուներով թարգմանել տալու, որպեսզի Եվրոպայի մի քանի նշանավոր քաղաքներում ներկայացվի։ Թեև ոչ մի կողմից մխիթարություն չունենք, այսքանը գոնե բավական քաջալերում է մեզ, երբ տեսնում ենք, որ մեր աշխատությունները ապարդյուն չեն մնում։

Պ. Նիկողոսյանի մասին ապահով եղեք, ես չեմ խնայիլ ամեն կերպ օգնել նրան։ Ձեր նամակը պ. Արծրունուն ցույց չտվեցի, միայն բովանդակությունը պատմեցի։

Ձեր՝ Հ. Մելիք-Հակոբյան

## 39. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

9 մայիսի, 1882 ամ., Թիֆլիս

*Հարգելի բարեկամ*

*Մելքոն Կասպարիչ,*

*Ապրիլ 13-ից գրված Ձեր նամակը ստացած եմ. հաղորդում եք, թե երիտասարդ Թումանյանցը համաձայն է իմ պայմանների հետ «Ջալալեդդինի» տպագրության մասին. միայն «Մշակի» այն համարները չունի, որոնց մեջ տպված է եղել այդ վեպիկը։ Եթե արգելքը դրա վրա է, ես կուղարկեմ կամ Ձեզ, կամ նրան այդ համարները։*

*Դարձյալ հայտնում եք Ձեր նամակի մեջ, թե երիտասարդ Թումանյանցը ցանկություն ունի և «Կայծերը» տպագրելու։ «Մշակի» մեջ հրատարակված իմ նամակից Դուք արդեն տեղեկացած կլինեք, որ ես ինքս պատրաստվում եմ «Կայծերը» տպագրելու։ Ծախքի համար 500 ռուբլին արդեն ունեմ, մնացածը մի կերպ կտնօրինեմ։*

*Եթե պ. Թումանյանցի հայրը նրան այնքան միջոցներ կտա, որ նա կարող լինի «Կայծերի» նման մի գիրք տպագրել, որի համար ամենափոքր 1500 ռուբլի ծախք է հարկավոր,— այդ դեպքում ես նրան խորհուրդ կտամ մի բան անել, փոխանակ միայն «Ջալալեդդինը» մի գրքույկով հրատարակելու, նա ավելի լավ կաներ և ավելի նպատակահարմար կլիներ, եթե ի մի հավաքեր իմ մի քանի փոքրիկ վեպիկները և բոլորը միասին մի գրքով հրատարակեր։ Ձեզ հայտնի է, որ սկսյալ «Մշակի» առաջին տարիներից, այդ լրագրի մեջ տպվել են իմ զանազան վեպիկները կամ փոքրիկ պատկերները։ Այդ բոլորը այժմ մոռացված են, բայց ժողովրդի ընթերցանության համար մեծ նշանակություն ունեն։ Մի քանիսը այդ աշխատություններից թարգմանվեցան գերմաներեն և ռուսերեն լեզուներով և տպվեցան զանազան պարբերական հրատարակությունների մեջ, թե այստեղ և թե Բեռլինում։*

*Կարելի էր ընտրել այս վեպիկներից մի քանիսը և «Ջալալեդդինի» հետ միասին տպել. այն ժամանակ գիրքը մի խոշոր դիրք կստանար և կլիներ մի հավաքածու գոնե իմ աշխատությունների մի մասի։*

*Թումանյան եղբայրները հարուստ և բարի մարդիկ են, եթե կամենում են հայոց գրականությանը որևիցե նպատակով նպաս-*

*տել, պետք է այնպիսի գործ կատարեն, որ իրանց անվանը արժանի լինի և պատիվ բերե։*

*Ես կարծում եմ, որ Դուք ևս համաձայն կլինեք ինձ հետ, որ մի այսպիսի ձեռնարկություն ավելի նպատակահարմար կլիներ։ Թիֆլիսի Տպագրական ընկերությունը հրատարակեց պ. Պատկանյանի երգերի հավաքածուն. պ. Թումանյանները նույնպես կարող են հրատարակել իմ վեպիկների հավաքածուն, և այդ գործի մեջ նրանք բնավ կորուստ չեն ունենա, որովհետև ընթերցանության գրքերը այժմ, թեև դանդաղ կերպով, այնուամենայնիվ վաճառվում են։*

*Եթե կհամաձայնվեն, ես կուղարկեմ «Մշակի» բոլոր այն համարները, որոնց մեջ տպված են այդ վեպիկներից, իսկ եթե ոչ, թող միայն «Ջալալեդդինը» տպեն, որպես ցանկանում են։*

*«Արձագանքի» խմբագրատանը ոչինչ չեմ հայտնել, որովհետև մոռացել էի, այսօր կգնամ կխոսեմ։*

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյան

*Չգիտեմ ստացա՞ք մի օրինակ «Դավիթ-Բեկի» 3-րդ գրքից, թե ոչ։*

## 40. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

**4 օգոստոսի, 1882 թ., Թիֆլիս**

*Ազնիվ բարեկամ*

*Մելքոն Կասպարիչ,*

*Այսօր փոստով ուղարկեցի Ձեզ «Մշակի» 10 համարներ, որոնց մեջ կգտնեք այն վեպիկները, որ խոստացել էի Ձեզ ուղարկելու։ Այսքան ժամանակ ուշացնելու պատճառն այն է, որ ուղիղն ասած ինձ շատ հաճելի չէր մի տեսակ առևտրական հաշիվների մեջ մտնել պ. Թումանյանների հետ։ Երիտասարդ Թումանյանը գուցե ազնիվ ձգտումներ ունի, բայց նրա հա՞յրը... չգիտեմ ինչպես կվերաբերվեր դեպի որդու ձեռնարկությունը։ Այդ պատճառով Ձեզ չէի ցանկանում մի ձանձրալի գործի միջնորդ դարձնելու։*

*Վերջապես, եթե կցանկանաք, թող նրա ուղարկված վեպիկները «Ջալալեդդինի» հետ միասին առանձին գրքով տպել տան, եթե*

ո՛չ, թող մնա՛, Դուք առանձին ուշադրություն մի՛ դարձնեք։ Պայմանները կլինեն միևնույնը, որպես սկզբից գրած էի, թեև պպ. Թումանյանների հարստության մեջ շատ զգալի չէր լինի, եթե մի գիրք հեղինակի օգտին տպագրել տալու լինեին։ Բայց այդպիսի բարերարություն ես իմ հայրենակիցների կողմից չեմ սպասում...

«Մշակի» մեջ կարդացած կլինեք այն լուրը, որ պոլկովնիկ Մելիք Հայկազյանը հանձն է առել «Դավիթ-Բեկի» բոլոր հատորները իր ծախքով նորից տպագրել տալու։ Դա մի գովելի օրինակ է, մանավանդ զինվորականի կողմից։ Նա ցանկանում է, որ այդ նոր տպագրությունը պատկերազարդ լինի և խիստ շքեղ։ Պատկերները այստեղ կնկարվեն։ Իսկ փորագրության համար կուղարկվին կամ Մոսկվա, կամ Ս. Պետերբուրգ։ Ահագին ծախք կլինի, բայց նա բոլորը նվիրում է հօգուտ հեղինակի։

«Խամսայի մելիքությունների» պատմությունը վերջացավ․ 1200 օրինակ առանձին գրքով տպված է, բայց այժմ ցենզորի հետ մեծ վեճ ունենք, թույլ չէ տալիս, որ գրքերը դուրս գան, ասելով, թե նորից պետք է քննվեն, որովհետև գրքի մեջ շատ ազատ մտքեր անց են կացել։ Չնայելով, որ «Մշակի» մեջ տպվելու ժամանակ ինքը թույլ է տվել, այժմ կրկին վիճաբանություններ է հարուցանում։ Չգիտեմ ինչով կվերջանա, եթե նորից քննելու լինեն, գիրքը բոլորովին կկորցնի իր նշանակությունը. թեև սկզբից «Մշակի» մեջ տպվելու ժամանակ շատ կտորներ են հանել նրա միջից և երբեմն ամբողջ գլուխներ ջնջել են։

Ավելորդ չեմ համարում մի երկու խոսք գրել Ձեր և մեր բարեկամ պ. Նիկողոսյանի մասին։ Իմ բոլոր աշխատությունը ապարդյուն անցավ. ես թեև Ձեզ խոստացել էի, բայց չկարողացա նրան հաշտեցնել պ. Արծրունու հետ։ Մեղքը իրանն է և ոչ ոքի։ Սկսեց զանազան սպառնական և վիրավորական նամակներ գրել, իր հոդվածները ետ պահանջել, մինչև պ. Արծրունուն բոլորովին զզվեցրեց, նա էլ հոդվածները ետ ուղարկեց՝ իր հարաբերությունները կտրեց նրա հետ։ Այժմ ի՞նչ է շինում Կ. Պոլսում, ինչո՞վ է ապրում, ինձ հայտնի չէ։

Ծրարիս մեջ կգտնեք մի ցուցակ, որ գրված է նրա համար, որ պ. Թումանյանը գիտենա, թե ինչպես պետք է դասավորե նյութերը տպագրելու ժամանակ, բայց որովհետև ինձ դեռևս հայտնի չէ, թե գիրքը տպվելո՞ւ է, թե ոչ, այդ պատճառով չեմ ուղարկում

*իմ մյուս հրահանգները, արդյո՞ք գրքի առաջին երեսի վրա ինչ պետք է գրված լինի և այլն։ Իհարկե, Դուք ինձ շուտով իմացում կտաք։*

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝*

Հ. Մելիք Հակոբյան

## 41. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

7 նոյեմբերի, 1882 ամ., Թիֆլիս

*Հարգելի բարեկամ*
*Մելքոն Կասպարիչ,*

*Իմ վերջին նամակի պատասխանը դեռ չեմ ստացել Ձեզանից։ Պարոն Սմբատ Շահազիզյանից մի քանի տեղեկություններ էի պահանջած, եթե պատահելու լինեք, հիշեցրեք, որ շտապի պատասխանել։ Տեղեկությունները այժմ «Մշակի» մեջ տպվող «Ղարաբաղի Աստղագետը» վեպի հեղինակի մասին է, մինչև տպագրության վերջանալը հարկավոր էր պ. Շահազիզյանից պատասխան ստանալ։*

*«Կայծերը» տպվում է, հույս ունեմ, որ մինչև ներկա ամսի վերջը առաջին հատորի տպագրությունը վերջանա։ Ձեր ստորագրել տված բաժանորդների թվի համեմատ նույնքան օրինակներ կուղարկեմ Ձեզ։ «Կայծերը» տպվում է մի բարերարի հաշվով, որի անունը հետո կհայտնեմ։*

*Չգիտեմ, պ. Թումանյանները դեռևս ցանկանում են «Ջալալեդդինը» և մյուս վեպիկները տպագրել տալ, թե՞ ասեցին և այնպես էլ շուտ մոռացան։ Այդ հարցմունքը նրա համար է, որ մի քանի երիտասարդներ ցանկանում են «Ջալալեդդինը» այստեղ տպել տալ և մի քանի հազար օրինակներով ձրի տարածել, մանավանդ Տաճկաստանի հայերի մեջ նրանց թմրած զգացմունքները զարթնեցնելու համար։ Բայց ես այդ պարոններին դեռ խոսք չեմ տվել, որովհետև Մոսկվայից լուր չունեմ։*

*«Խամսայի մելիքությունները» կոչված պատմական աշխատությունն առանձին գրքով լույս տեսավ, մի օրինակ ուղարկել էի Ձեզ։ «Ղարաբաղի Աստղագետը» նույնպես առանձին գրքով լույս կտեսնի ներկա ամսում։ Այդ երկու գրքերը միմյանց հետ ներքին կապ ունեն, վերաբերվում են Ղարաբաղի հայկական իշխանություններին, մեկը որպես պատմություն, մյուսը որպես վեպ։*

Չեմ կարող առանց վրդովմունքի հիշել մեր անշնորհակալ հասարակության անտարբերությունը «Խամսայի մելիքությունները» գրքի վերաբերությամբ։ Այդ գիրքը իմ բոլոր աշխատությունների պսակը պիտի համարել. ես դրանով կենդանացրի մի վաղուց կորած և մոռացված պատմություն. ես դրանով ապացուցեցի, որ հայկական իշխանությունը շարունակվում էր մինչև ներկա դարը։ Դա մեծ բան է։ Բայց փոխանակ հասարակությունից խրախուսանք և քաջալերություն գտնելու, ամեն կողմից գանգատներ եմ լսում՝ «գինը թանկ եք նշանակել»։

Եվ այդ ասում են այն մարդիկ, որ իրանց քեֆերի համար հազարներ են վատնում։ Ոչ ոք չէ մտածում, որ հեղինակը ճանապարհորդել է, ծախքեր է արել, նյութեր է հավաքել, թե իր առողջությունը, թե իր կոպեկները վատնել է, մինչև կարողացել է մի այսպիսի պատմություն ի լույս ընծայել։

Ես մեր հասարակության սառնասրտության վրա ուշադրություն չեմ դարձնի, կշարունակեմ աշխատել, միայն ինձ շատ երջանիկ կհամարեի, եթե քանի կենդանի եմ, իմ բոլոր հեղինակությունները տպված տեսնեի։ Առողջությունս արդեն սկսել է քայքայվել, կուրծքիս հիվանդությունն այս աշուն ավելի սաստկացած է. կենսական ուժերս օրըստօրե սպառվում են... Ճանապարհորդությունը բավական կազդուրում է ինձ, բայց այս ամառ որքան ցանկացա դեպի Վանի կողմերը գնալ, չկարողացա, պատճառները կարող եք նախագուշակել...

Պ. Նիկողոսյանից ոչինչ տեղեկություն չունիմ, չգիտեմ ի՞նչ է շինում նա Կ. Պոլսում։ Այդ երիտասարդը ցավալի է, որ իր անխոհեմությամբ սաստիկ վայր ձգեց իրան։

Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝

Հ. Մելիք Հակոբյան

Հ. Գ. Ես մտածում եմ, Ռուսաստանի գոնե գլխավոր հայաբնակ քաղաքներում ունենալ մի-մի մարդ, որ հանձն առնեն իմ գրքերը վաճառելու, իհարկե, ստանալով միևնույն ժամանակ որոշյալ տոկոս իրանց աշխատության համար։ Այդ նրա համար է, որ ես ուղիղը խոստովանեմ Ձեզ, սաստիկ խղճահարվում եմ, երբ զանազան ծանոթներին և բարեկամներին ձանձրացնում եմ, հանձնելով նրանց իմ գրքերը վաճառել։ Ինձ լավ հայտնի է, թե որքան դժվար է հայերի մեջ գիրք տարածել։ Բայց առանձին մարդիկ իրանց օգտի համար կաշխատեն տարածել։ Ես արդեն մի քանի քաղաքներում ունեմ այսպիսի մարդիկ, ցանկանում եմ, որ մեկն

էլ Մոսկվայում լինի։ Դուք, հույս ունեմ, այնքան նեղություն հանձն կառնեք, որ գտնեք Մոսկվայում մի անձնավորություն, որին ես վստահանայի իմ գրքերը ուղարկելու։ Նա կախում կունենա Ձեզանից և Դուք գրքերը նրան հանձնելով, նրանից հաշիվ և փող կըստանայիք, հետո կուղարկեք ինձ։

Եթե ամեն տեղ կանոնավոր կերպով իմ հրատարակություն-ները վաճառվեն, ես միջոց կունենամ իմ մնացած հեղինակություն-ները հետզհետե տպագրելու։ Գրավաճառների վրա հույս դնել չի կարելի, պետք է ամեն տեղ սեփական մարդիկ ունենալ։ Ես «Դավիթ-Բեկի» երրորդ գրքի վաճառելու իրավունքը տվի տեղվույս կենտրոնական գրավաճառանոցին, բայց այն չկարողացավ անել, ինչ որ ես սպասում էի։ Իմ բարեկամներին կրկնում եմ, Ձեզ չեմ ուզում ձանձրացնել, ավելի լավ է, որ գրքերից գոյացած գումարից մի որոշ մասը վճարեմ ուրիշ մարդիկների, քան թե դրան և նրան նեղություն պատճառեմ։

Հուսով եմ այդ մասին Ձեր կարծիքը կհայտնեք ինձ։

Ձեր՝ Հ. Մելիք-Հակոբյան։

## 42. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

[1882 թ., նոյեմբեր, Թիֆլիս]

...Այդ բոլորը Ձեզ գրելու նպատակս այն է, որ կան շատ բաներ, որոնց վրա Դուք ուշադրություն չեք դարձնում։ Եվ շատ բնական է այդ. ես էլ Պարսկաստանում եղած ժամանակ ուշադրություն չէի դարձնում. բայց հիմա եմ զգում, թե որքան մեծ պաշար կարող էին դուրս բերել Պարսկաստանից, եթե ծուլություն չանեի և գործը այսօր էգուց չգցեի...

Դուք, կարծեմ, իմ միտքը հասկացաք։ Օրըստօրե մեզանում ևս գրական վաստակը վարձատրվում է։ Ձեր աշխատությունները անգնահատելի չեն մնա, եթե մի որևիցե լուրջ, կապիտալի գործ կարդյունաբերեք։ Ես Պարսկաստանում բացի Ձեզանից ուրիշ ոչ ոքի չեմ ճանաչում, որ ընդունակ լիներ այս տեսակ պարապմունքների։ Աշխատեցեք հանգամանքներից օգուտ քաղել։

Տեր-Աստվածատրյանցի մասին ոչինչ լուր չունեմ, արդյոք նա եկավ հասավ Թարվե՞զ, թե մնաց ճանապարհներում։ Գրեցեք, այդ մարդը խելքը գլխին հավաքե՞լ է, թե տակավին հին ցնորքների մեջն է գտնվում։

*Շնորհակալ եմ Ձեր նախազգուշության համար, որով հայտնել էիք ինձ մեր ընտանիքը տեղափոխել Սալմաստից։ Բայց զանազան հանգամանքներ առիթ են տալիս մտածելու, որ թե շեյխը և թե նրա խումբը այս տարի հազիվ թե շարժումներ կանեն դեպի Պարսկաստանի կողմերը։ Այս պատճառով ես բարվոք համարեցի, որ մեր ընտանիքը դեռևս մնա Սալմաստում։*

*Ողջունեցեք իմ կողմից Ձեր հարգելի տիկնոջը։*

*Ընդունեցեք իմ հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյան

*Հ. Գ. «Կայծերը» մամուլի տակ է, տպվում է. կուղարկեմ Ձեզ մի քանի օրինակ. ես այդ գրքի արտադրության համար մի բան Ձեզ պարտական եմ։*

## 43. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՑԱՆԻՆ]

Թիֆլիս, 1882 թվ., 6 նոյեմբ.

*Հարգելի բարեկամ Մելքոն Կասպարիչ,*

*Ձեր վերջին երկու նամակները ստացել եմ, շնորհակալ եմ Ձեր բարեսրտության համար, որ դարձյալ Ձեր վրա եք ընդունում իմ գրքերը տարածելու ծանրությունը, որ Ձեր բազմահոգ զբաղմունքների մեջ հարկավ շատ զգալի պետք է լինի։*

*«Դավիթ-Բեկի» առաջին հատորը Թիֆլիսում վաղուց սպառված է, ինձ մոտ նույնպես չի մնացել, ավելի լավ կանեք, որ մնացած օրինակները ետ ուղարկեք, որովհետև շատ պահանջողներ կան։*

*Մինչև Ձեր նամակի ստանալը արդեն փոստով ուղարկած էի Ձեր անունով 30 օրինակ «Դավիթ-Բեկի» երկրորդ հատորից, մտածելով, որ առաջին հատորը բոլորը վաճառված է և առաջինի գնողները հարկավ երկրորդն էլ կառնեն։*

*«Խամսայի մելիքությունները» գրքից ուղարկեցի 50 օրինակ, այսքանը թեև Մոսկվայի համար շատ է, բայց կպահեք Ձեզ մոտ, կամաց-կամաց կծախվի։ Իմ մյուս աշխատություններից «Խենթը» չէ մնացել, իսկ «Փունջի» հատորներից կուղարկեմ յուրաքանչյուրից 10 օրինակ։ Իսկ «Ղարաբաղի Աստղագետը» առանձին գրքով լույս կտեսնի մի շաբաթից հետո։ Չգիտեմ ի՞նչ տպավորություն գործեց Մոսկվայի ընթերցողների վրա այդ վեպը։ Դրանից առաջին անգամ կուղարկեմ Ձեզ 10 օրինակ և ոչ ավելի։*

*Ձեր գանգատը այստեղի հայոց տպագրական ընկերության անհոգության վերաբերությամբ բոլորովին իրավացի է։ Երեկ պ. Թավադյանցին տեսա, որը Ընկերության գանձապահն է, թե Ձեր նամակների պատասխանը ժամանակին գրել են, և զարմանում է, թե ինչպե՞ս է պատահել, որ չեք ստացել, և խոստացավ, որ նորից նամակ պիտի գրեն Ձեզ։*

*Տեր-Իսրայելյանցը «Կենտրոնական գրավաճառանոցի» գործակատարներից մեկն է, կարծեմ գրավաճառանոցի ընկերության մեջ մասն էլ ունի, նրա գրությունների վրա կարող եք վստահանալ։*

*Պարոն Արասխանյանցի հետ հաճախ տեսնվում եմ, երբեմն պ. Արծրունու մոտ ճաշի է գալիս, ես էլ այնտեղ եմ լինում։ Շատ պատվական երիտասարդ է. նա Թիֆլիսում հաջողություն կգտնե, խոստացել են այստեղի բանկերից մեկի մեջ պաշտոն տալ։ Բացի դրանից, դիտավորություն ունի մի շարք դասախոսություններ կարդալ իր մասնագիտությունից. այդ ավելի կնպաստե նրա առաջադիմությանը։*

*Պ. Նիկողոսյանի մասին բավական ժամանակ է ոչինչ տեղեկություն չունեմ։ Նա իր աշխատությունների մասին մի անգամ էլ ինձ գրած էր, բայց ես ի՞նչ կարող էի անել. հայկական առածը ասում է՝ «քաչալը դեղ գիտենա, առաջ իր գլխին կանե...»։*

*Պարոն Շահազիզյանցի նամակը ստացել եմ, շնորհակալ եմ նրա ուշադրության համար, շուտով պատասխանը կգրեմ։*

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝*

Հ. Մելիք Հակոբյան

## 1 8 8 3

## 44. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԱՌԱՔԵԼՅԱՆԻՆ]

24 հունվարի, 1883 ամ., Թիֆլիս

*Հարգելի բարեկամ*

*Հ. Առաքելյան,*

*Ներեցեք, որ մի գործի առիթով ստիպված եմ Ձեզ ձանձրույթ պատճառել։ Ես ուղարկել էի Կարապետ վարդապետ Այվազյանի վրա իմ գրքերից Ձեր կողմերում տարածելու համար։ Այս օրերում*

նամակ ստացա, որ Հարգելի Հայր սուրբը թողնում է իր վիճակը և պիտի տեղափոխվի մի այլ տեղ։ Թեև նա գրում է ինձ, որ գրքերի մասին պարտուպատշաճ տնօրինություն կանե, որ նրանք չկորչեն, և վաճառվեն, բայց ո՞վ է իմանում, նրա բացակայությունից հետո արդյոք կկատարվի՞ նրա կարգադրությունը, թե ոչ։

Այդ պատճառով խնդրում եմ Ձեզ, որ Դուք ևս վերահսկողություն գործեիք, քանի որ դեռ Հայր սուրբը Շուշուց չէ հեռացել, գրքերի վերաբերությամբ մի այնպիսի կարգադրություն անեիք, որ նրանք նպատակի հասնեին։ Ես կարծում եմ, եթե գրքերը Ձեր գիտությամբ հանձնվեին վաճառողներին, ավելի ապահով դրության մեջ կլինեին։ Խնդրեմ այդ մասին խոսեք Հայր սուրբի հետ։

Ձեզ մոտ «Փունջի» հատորներ կային, նրանց մասին ևս խնդրեմ մի կարգադրություն անել, որ չմնան, այլ վաճառվեն։ Հայր սուրբի վրա ուղարկած գրքերը՝ իմ «Ղարաբաղի Աստղագետը» և «Խամսայի մելիքությունները» կոչված աշխատություններից էին։ Հատկապես Ղարաբաղին վերաբերելով, իմ ցանկությունն էր, որ այդ գրքերը Ձեր կողմերում որքան կարելի է մեծ քանակությամբ տարածվեին, և Հայր սուրբի համար հնարավոր էր, իբրև վիճակի առաջնորդի գյուղերում ևս տարածել քահանաների միջնորդությամբ։ Յուրաքանչյուր գյուղում եթե 2—3 հատ գտնվեր, ամբողջ գյուղը կկարդար։

Ի՞նչ եք շինում այնտեղ, պ. Արծրունին ինձ ասաց, որ Դուք հիվանդ եք եղել, հիմա ինչպե՞ս է Ձեր առողջությունը։

Ձեր մի հոդվածը, որի մեջ պաշտպանություն կար Հայր սուրբի վերաբերությամբ, չտպվեցավ, պատճառը Դուք ինքներդ կիմանաք, երբ որ այստեղ կլինեք։ Հայր սուրբը ինձ գրած էր, որ աշխատեմ տպել տալու, բայց իմ ջանքը ապարդյուն եղավ, պ. Արծրունու մերժելու փաստերը բավական իրավացի էին։ Այդ մասին Հայր սուրբին ոչինչ չասեք։

Ընդունեցեք իմ հարգանքը՝

Հ. Մելիք-Հակոբյան

## 45. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 1883 թ., 1 փետրվարի

Հարգելի բարեկամ
Մելքոն Կասպարին,

Ձեր նամակը ստացա. «Ոսկի աքաղաղից», որպես պահանջել եք, մի քանի հատ դարձյալ կուղարկեմ Ձեզ։

«Կայծերի» վերջին թերթը այսօր կտպվի։ Ստացված ազատե այստեղի տպարաններից, բավական ժամանակ ուշացրին։ Մինչև ներկա ամսվա վերջը գիրքը պատրաստ կլինի։

«Խաչագողի հիշատակարանը» նույնպես առանձին գրքով տպագրվում է։ Ցանկալի է գիտենալ, թե Մոսկվայի ընթերցողների վրա ի՞նչ տպավորություն է գործում այս աշխատությունը։

Ներեցեք հարգելի բարեկամ, որ ես խիստ սակավ անգամ եմ նամակներ գրում Ձեզ։ Եթե Ձեզ հայտնի լինեին իմ ծանր և անընդհատ աշխատությունները, Դուք ավելի ներողամիտ կլինեք դեպի մի մարդ, որ ամենևին օգնական չունի և ստիպված է ամեն գործ իր ձեռքով կատարել։

Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝

Հ.Մելիք-Հակոբյան

Ողջունեցեք, խնդրեմ, պ. Շահազիզյանին, ես նրան էլ պարտական եմ. նրա վերջին նամակի պատասխանը դեռ չեմ գրել։

## 46. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 26 փետրվարի, 1883 ամ.

Հարգելի բարեկամ,

Փոստով ուղարկվեցավ Ձեր անվամբ գրքերի երկու կապոց. 70 օրինակ «Կայծերի» առաջին հատորից, 50 օրինակ «Ոսկի աքաղաղ»։

«Կայծերից» նվերներ են ուղարկված հետևյալ անձինքներին մի-մի հատ.

1. Ուսանողների գրադարանին,
2. Մկրտիչ Էմինին,
3. Ս. Շահազիզյանին,
4. Աբելյանցին,
5. Ձեզ։

(1–4: Գրքերի վրա իմ մակագրությունը կա)

Հուսով եմ, որ Դուք կհավանեք «Կայծերի» թե գիրքը և թե տպագրության մաքրությունը։ Այդ գիրքը այստեղ մեծ հետաքրքրությամբ կարդացվում է և բավական վաճառվում է։

Արդեն պատրաստ է «Խաչագողի հիշատակարանի» I և II մասները առանձին գրքով, իսկ այդ աշխատության III և IV մաս-

*ները նույնպես առանձին գրքով կարտատպվի «Մշակից»։ «Կայծերի» II հատորը կտպվի այս տարի նույնպես պ. Մելիք Հայկազյանի ծախքով։*

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյան

## 47. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 3 մայիսի, 1883 ամ.

*Հարգելի բարեկամ,*

*Ձեր ուղարկած փողերը թե վաճառված գրքերից և թե «Կայծերի» բաժանորդների մասին բոլորը ստացել եմ։ Պարոն Արծրունին նույնպես ստացել է «Մշակի» բաժանորդագինը։ Ներեցեք, որ այսքան ժամանակ չպատասխանեցինք։*

*Շտապում եմ հայտնել Ձեզ մի շատ տխուր լուր. ամսույս 1-ին պ. Արծրունու բնակարանը և «Մշակի» խմբագրատունը խուզարկության ենթարկվեցան, որը տևեց երեք օր։ Խուզարկողներն էին բացի ոստիկանությունից, նահանգական դատարանի պրոկուրորը և մի ժանդարմի գնդապետ։ Բոլոր թղթերը, ինչ որ կարողացան գտնել, թե պ. Արծրունու բնակարանի մեջ և թե խմբագրատան մեջ, գրավեցին։*

*Հայտնի չէ, թե ի՞նչ նպատակով կատարվեցավ այդ խուզարկությունը, անպատճառ մատնության գործ է, և գուցե մի որևիցե հայի մատը խառնված է այդ գործի մեջ։ Բայց ես վստահ եմ, որ տարած թղթերի մեջ չեն կարող գտնել այնպիսիները, որ պ. Արծրունու անձնավորությունը կասկածելի դարձնեին։ Ես իբրև նրա շատ մոտ բարեկամ, գիտեմ, որ նա երբեք կասկածավոր անձանց հետ հարաբերություններ չէ ունեցել, նրա գործունեությունը եղել է բուն ազգային, և դրա մեջ ևս կառավարության որոշած սահմաններից չէ անցել։ Այն բոլորը, ինչ որ կատարել է նա Տաճկաստանի հայերի վերաբերությամբ, կառավարությունից ծածուկ չէին։*

*Չգիտեմ ինչո՞վ կվերջանա այդ փորձանքը. չգիտեմ նաև, թե արդյոք «Մշակի» հրատարակությունը կխափանե՞ն, թե ոչ։ Բայց ինչ էլ որ լինի, «Մշակը» գուցե մի քանի շաբաթ հրատարակվել չէ կարող, որովհետև խմբագրատան բոլոր նյութերը տարել են, մի թղթի պատառ անգամ չեն թողել։*

Այժմ սկսել են սաստիկ ուշադրություն դարձնել հայերի վրա։ Երևանում 22 նշանավոր երիտասարդների տներում խուզարկություն է կատարվել. բոլորին էլ ոստիկանության հսկողության ներքո են դրել. մեկը բանտարկված է։ Շարժառիթները չնչին են, միայն լուրը ուղտ են շինում և չնչին գործերին քաղաքական կերպարանք տալիս։ «Պսակ» լրագիրը խափանված է։

Պարոն Արծրունին կալանավորված չէ։ Մեզանից ամեն մեկը ժամեժամ սպասում է, որ ժանդարմները կմտնեն իր բնակարանը։ Ասում են, մի քանի հայոց տներում ևս պետք է խուզարկություններ լինեն։ Ինչպե՞ս կվերջանա այդ բոլորը, դժվար է նախագուշակել։ Սաստիկ հուսահատության մեջ ենք։

Այստեղ մի խումբ, որի պարագլուխն է «Մեղուի» խմբագիրը, աշխատում են, որ Մակարի կաթողիկոս լինելը հաջողացնեն։ Մի քանի խմբեր ևս Ներսեսի համար են աշխատում։ Հայտնի չէ, թե կառավարությունը ո՛ր աստիճանի համարում ունի Մակարի վրա։ Բայց նրա կուսակիցները ամեն տեղ տարածում են, թե նա կառավարության կանդիդատն է։ Եթե Մակարի կաթողիկոս ընտրվելը հաջողեցնեն (որին ես չեմ հավատում), այն ժամանակ էջմիածինը կատարյալ ավազականոց կդառնա. Մանկունուց ավելի վատ մարդիկ կմտնեն այնտեղ։

Կաթողիկոսական աթոռին արժանի մենք միայն մեկ մարդ ունենք, և դա Ներսեսն է։ Ամեն մի ազնիվ հայի պարտքն է նրա համար աշխատել։

Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝

Հ. Մելիք-Հակոբյան

## 48. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 17 մայիսի, 1883 ամ.

Հարգելի բարեկամ,

Անցյալ նամակովս հայտնած էի Ձեզ, որ «Մշակի» խմբագրության մեջ խուզարկություն կատարվեցավ, այժմ շտապում եմ հաղորդել Ձեզ, որ ներկա ամսի 13-ին նույնպես խուզարկություն կատարվեցավ իմ բնակարանի մեջ։ Բոլոր թղթերս, մինչև անգամ դեռ չտպված գրավոր աշխատություններս,— բոլորը գրավեցին։ Եվ

այժմ գտնվում եմ ժանդարմների վարչության հսկողության ներքո, ինձ արգելված է Թիֆլիսից հեռանալ։

Դեռ հայտնի չէ, թե ինչով կվերջանան այդ խստությունները։ Միայն այսքանը հայտնի է, որ սաստիկ նշանակություն են տալիս գործին, որ ինքնըստինքյան շատ հասարակ բան է։

Թե ես, թե իմ համախոհները մինչև այսօր Ռուսաց կառավարության դեմ ոչինչ հանցավոր նպատակներ չենք ունեցել և երբեք ռուս նիգիլիստների հետ հարաբերություններ չենք ունեցել։ Մեր գործունեության նպատակը, մեր ցանկությունները խիստ համեստ են եղել, և մեր ազգային պետքերի սահմանից այն կողմը չեն անցել։ Հայկական հարցը ծագելուց հետո մենք, իրավ է, աշխատել ենք տաճկահայերի ցավալի դրության բարվոքման մասին, աշխատել ենք Բեռլինի 61-րդ հոդվածի իրագործման մասին,—բայց մեր աշխատությունները կատարվել են հրապարակաբար, մենք գաղտնի ոչինչ չենք ունեցել։

Իսկ այժմ երևի զանազան մատնիչներ այստեղի կառավարությանը մոլորության մեջ են ձգել, իբր թե գտնվում են զանազան գաղտնի ընկերություններ, թե այստեղ Անդրկովկասում և թե Տաճկաստանում, որոնք ծածուկ կապեր ունեն միմյանց հետ, և ամենայն ջանքերով աշխատում են վերականգնել հայոց հին թագավորությունը և այլն։ Տեսնո՞ւմ եք, որքան հրեշավոր կերպարանք են տվել գործին։ Այս տեսակ երևակայական ընկերություններ մենք երբեք չենք ունեցել և այժմ չունենք։ Եվ բոլոր Եվրոպայից ստորագրված 61-րդ հոդվածի իրագործումը պահանջելու համար հարկ չկար գաղտնի ընկերություններ ստեղծել։

Ես չեմ կարծում, որ իմ բնակարանից տարած թղթերի մեջ գտնվերին այնպիսիները, որոնք որևիցե հանցանք դնեն իմ վրա, իսկ իմ մինչև այսօր լույս ընծայած գրքերը բոլորը տպագրվել են ցենզուրայի թույլատվությամբ։ Ես ինչո՞վ եմ մեղավոր, որ կառավարության տրամադրությունը հայկական հարցի վերաբերությամբ այժմ, ինչպես երևում է, փոխվել է։ Թող հրամայեն, որ ես այսուհետև չգրեմ։ Ես ուրախ կլինեի, եթե այսքանով վերջանար գործը, բայց վախենում եմ, որ հեռացնեն Ռուսաստանից, որովհետև ես օտար պետության հպատակ լինելով, բանտարկել կամ աքսորել չեն կարող։

Ես նպատակ ունեի հունիսի 1-ին հեռանալ Թիֆլիսից և գնալ Տաճկաց Հայաստանում ճանապարհորդելու, բայց այդ անբախ-

տությունը կապեց ինձ Թիֆլիսի հետ, և ես ստիպված պիտի լինեմ մնալ այստեղ և սպասել մինչև քննությունների վերջանալը։

Վատ ժամանակների մեջ ենք ապրում. «լուից ուղտ են շինում» և մարդկանց չարչարում են։ Խնդրեմ Ձեր նամակներում զգույշ լինեք, շատ հավանական է, որ իմ անունով եկած նամակները կբաց անեն։ Ձեր առաջվա նամակները, թեև բոլորովին անմեղ էին, այսուամենայնիվ ես ոչնչացրի։

Ձեր՝ Հ. Մելիք Հակոբյան

# 49. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 2 նոյեմբերի, 1883 ամի

Հարգելի բարեկամ,

Վերջին նամակը ստացա, շնորհակալ եմ Ձեր ցավակցության համար։ «Մշակը» դեռ դադարեցված չէ, և հույս ունենք, որ չդադարեցնեն։ Միայն «Մշակի» վերաբերությամբ սաստիկ խստություններ են գործ դրվում։ Ցենզորը խմբագրին պարտավորեցրել է, որ յուրաքանչյուր համարի մեջ տպված, թե անստորագիր, և թե կեղծ անուններով ստորագրված բոլոր հոդվածների, թղթակցությունների և մինչև անգամ լուրերի հեղինակների անունները ամեն անգամ պետք է հայտնե ցենզորին։ Մինչև այսօր խմբագիրը միշտ գաղտնի էր պահում իր աշխատակիցների անունները և ամեն պատասխանատվություն իր վրա էր առնում, իսկ այժմ ստիպում են հայտնել բոլորի անունները։ Դրա հետևանքը այն կլինի, որ մեր աշխատակիցները այսուհետև երկյուղ կկրեն և կդադարեն թղթակցություններ ուղարկել կամ լուրեր հաղորդել։ Լրագիրը կվընասվի։

Թե պ. Արծրունու գործը և թե իմ գործը դեռևս քննվում է. ես չեմ կարծում, որ մեր մոտի տարած թղթերի միջից գտնեն այնպիսի բաներ, որոնք որևիցե հանցանք դնեին մեզ վրա։ Մենք կասկածավոր թղթեր երբեք չենք ունեցել և կասկածավոր հասարակությունների հետ հարաբերություն ունենալուց միշտ հեռու ենք պահել մեզ։ Իսկ որքան գործել ենք մեր բուն ազգային պետքերի մասին,— դա մեզ թույլ տված է եղել կառավարությունից։ Նրա հակառակ որևիցե գաղտնի նպատակ կամ հանցավոր ցանկություններ չենք ունեցել։ Ուրեմն այլևս ի՞նչ կարող էին գտնել,

որով դատապարտեին մեզ։ Արդարությունը վերջ ի վերջո հաղթող կհանդիսանա և մատնիչների երեսը կսևանա։

Դուք, իհարկե, լսած կլինեք, որ Երևանում ևս մի քանի նշանավոր երիտասարդների մոտ խուզարկություններ են արել. սկզբում մի քանի օրով կալանավորել են, հետո դրամական երաշխավորություն են առել ու բաց թողել։ Նրանց քննությունն էլ դեռևս վերջացած չէ. տեղային գուբերնատորը նրանց դեմ սաստիկ ինտրիգա է անում։ Վերջը ի՞նչ կլինի, հայտնի չէ։

Վատ ժամանակներում ենք ապրում, ամենաարդար մարդը կարող է կասկածանքի ենթարկվել և տարիներով տանջվել։ Չգիտենք, ինչո՞վ կվերջանա այդ բոլորը։ Դրությունները սաստիկ հուսահատական է։ Ժամեժամ սպասում ենք նորանոր անախորժությունների. աշխատելու և գործելու սիրտ չէ մնացել։ Անորոշ դրությունը սպանում է մեզ։ Ցավում եմ, որ մի այսպիսի ժամանակ, երբ երկու նշանավոր ազգային հարցեր ունենք վճռելու (կաթողիկոսական և հայկական հարցը), մենք ստիպված ենք առժամանակ լռել։ Մեր հակառակորդները խոսում են, գրում են, իսկ մենք պատասխանել չենք կարողանում։

Ես այժմ ժանդարմերիայի հսկողության ներքո եմ գտնվում։ Ինձ արգելված է Թիֆլիսից հեռանալ. երբ կազատեն ինձ, դիտավորություն ունեմ առժամանակ թողնել Թիֆլիսը։ Բայց ո՞ւր գնալիքս և ի՞նչով գնալիքս չգիտեմ։

Այժմյան հանգամանքներում «Կայծերի» երկրորդ հատորը հրատարակել չեմ կարող, պետք է սպասեմ հարմար ժամանակի։ Գործերը ինչ ընթացք որ ստանալու լինեն, կհաղորդեմ Ձեզ։

Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝

Հ. Մելիք-Հակոբյան

Մակարը բացի էջմիածնից ստացած փողերից 2000 ռուբլի Քիշինևի կոնսիստորիայից է ստացել։

## 50. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԱՌԱՔԵԼՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 20 հունիսի, 1883 ամի

Հարգելի բարեկամ,

Ձեր նամակը ստացա, շնորհակալ եմ Ձեր ցավակցության համար։ Դուք հետաքրքրվում եք այստեղ կատարված անախորժ անց-

քերով, կհաղորդեմ Ձեզ, որքան ներում է նամակիս անձկությունը։

Կ. Պոլսի լրագրները խիստ սխալ տեղեկություններ են տալիս, իբր թե ռուսաց կառավարությունը հայերի մեջ նիհիլիստների հետքեր է որոնում, այս տեսակ անձնավորություններ, Ձեզ պետք է բավական հայտնի լինի, որ հայերի մեջ չկան։ Միայն վերջին ժամանակներում կառավարությունը սկսեց կասկածանքով վերաբերվել դեպի հայ գործիչների ամենահամեստ ցանկությունները, որոնք բովանդակվում էին նրանում միայն, որ Բեռլինի դաշնագրի 61-րդ հոդվածը իրագործվի, և տաճկահայերի թշվառ դրությունը փոքրիշատե բարվոքվի։ Կառավարությունը մոլորության մեջ ձգողները եղել են մի քանի բախտախնդիր պաշտոնատարներ, որոնք իրանց իշխանությանը ծառայություն ցույց տալու համար, սկսել են երևակայական ցնորքներ ստեղծել, իբր թե Անդրկովկասում գոյություն ունի մի «Մանուկ Հայաստան», որը կապեր ունի Տաճկաստանի հայոց գաղտնի ընկերությունների հետ, որոնք բոլորը միասին ձգտում են ընդհանուր ապստամբություն հարուցանել Հայաստանում և այլն։ Այդ բոլորը ավելի քան ծիծաղելի է։

Այդ առիթով Երևանում զանազան անձանց մոտ կատարվեցան խուզարկություններ, և նույն առիթով խուզարկություններ եղան Թիֆլիսում, թե «Մշակի» խմբագրատան մեջ և թե իմ բնակարանում։ Բայց կարող եմ ապահովացնել Ձեզ, որ ոչ մի տեղում ոչինչ չէ գտնվել, որով արդարացնեին այն զրպարտությունները, որ ստեղծել էին հայ գործիչների վերաբերությամբ։ «Մշակի» խմբագրատանից տարած ահագին քանակությամբ թղթերը երեկ վերադարձրին, բայց իմ բնակարանից տարած թղթերը դեռ չեն վերադարձրել։ Հույս ունեմ շուտով ստանալ։ Թե ես և թե պ. Արծրունին տակավին գտնվում ենք ժանդարմայի վարչության հսկողության ներքո։ Շատ հավանական է, որ շուտով կազատեն։

Գործի մեջ մատնություններ երևում են, բայց ո՞ր կողմից,— դեռ հայտնի չէ։ Թեև ժողովրդի մեջ մեղվականների կամ Մակար եպիսկոպոսի մասին կարծիքներ են պտտվում, բայց ավելի հավանական է, որ հրամանը շատ վերևից է եղել. կառավարությունը ցանկացել է մի կողմից տեղեկանալ, թե մինչև ո՞ր սահմանն է հասնում հայ երիտասարդության «չափազանց» եռանդը, մյուս կողմից, կամեցել է փոքր-ինչ շողոքորթել Թուրքիային, իբր թե խեղդում է ամեն մի վնասակար ձգտում հայկական հարցի առիթով, այն հարցի, որ ինքն ստեղծեց Սան-Ստեֆանոյի դաշնագրի 16-րդ հոդվածով։

*«Մշակը» դադարեցրած չէ, և ամենևին առիթ չունեն, որ դադարեցնեն, միայն ցենզուրայի կողմից այժմ առհասարակ բոլոր պարբերական հրատարակությունների վրա խստություններ են գործ դնում. խմբագիրներին պարտավորացրել են, որ յուրաքանչյուր համարում տպված բոլոր հոդվածների, մինչև անգամ լուրերի հեղինակների անունները հայտնեն։*

*Երևում է, որ Հայկունու կրիտիկաները, ինչպես այստեղ, այնտեղ էլ զզվանք են պատճառել։ Բայց հանգամանքները ստիպում են նրա մատնություններին առժամանակ լռությամբ համբերել։ Ես Ձեզ հետ բաժանում եմ այն միտքը, որ գրական այսպիսի վիճաբանությունների ժամանակ բարձր ուսում ստացած երիտասարդությունը պետք է դատավոր հանդիսանա, բայց նրանք ևս լռում են ասպարեզը մնում է հայկունիներին։*

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյան

## 51. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 26 հունիսի, 1883 ամ.

*Հարգելի բարեկամ,*

*Իմ վիճակը ավելի ծանրացավ, քանի օր է, որ արդեն տնային բանտարկության եմ ենթարկված, բնակարանիցս դուրս գալու իրավունք չունեմ, տան դռանը պահապան են դրել։*

*Այս դրության մեջ պետք է մնամ մինչև քննությունների վերջանալը, բայց քննությունները կարող են տարիներ տևել։*

*Թեև մինչև այսօր ոչ մի մեղադրանք ապացուցված չէ իմ վերաբերությամբ, այսուամենայնիվ խստություններ են գործ դնում։ Իմ բնակարանից տարած թղթերի մեջ գտել են մի քանի բոլորովին աննշան և անմեղ բաներ, որոնց մեծ նշանակություն են տալիս։ Թեև վերջը, երբ գործը այստեղի պրոկուրորի ձեռքը կհասնի, այն ժամանակ կհայտնվի արդարությունը, բայց մինչև այն ժամանակը բավական տանջանքներ պետք է կրեմ։ Ի՞նչ պետք է արած, կհամբերենք։*

*Իմ թղթերը, որ տարել էին իմ բնակարանից, տակավին չեն վերադարձրել, բայց պ. Արծրունու բնակարանից տարած թղթերը վերադարձրին, պահել են երկու թուղթ միայն, բայց շատ անմեղ բաներ են։*

*Զանազան քաղաքներում հայ երիտասարդների տներում խուզարկություններ են կատարվում, բայց ամեն տեղ ոչինչ չեն գտնում։ Չգիտեմ ինչո՞վ կվերջանա այդ բոլորը։ Զարմանալին այն է, որ խուզարկությունները կատարվում են նրանց մոտ միայն, որոնք «Մշակի» թղթակից են եղել։*

*Այնքան վշտացած եմ, որ եթե ազատվելու լինեմ, վճռել եմ այլևս այստեղ չմնալ, բավական տանջվեցա։ Մեր հասարակության սառնասրտությունը ավելի սպանում է ինձ, ոչ մի կողմից ջարեկցություն չեմ գտնում։ Մեր ժողովրդի ապերախտությունը դեպի իր մշակները Ձեզ բավական հայտնի է։*

*Խնդրեմ եթե ինձ նամակ գրելու լինեք, ուղղակի իմ անունով չուղարկեք, դրեցեք մասնավոր անձանց ծրարների մեջ։*

*Ընդունեցեք իմ հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյան

*Տնային բանտարկությունը ոչ թե նրա համար է, որ ինձ վրա որևէ հանցանք է ապացուցված, այլ նախազգուշության համար է, որ քաղաքիցս չհեռանամ։*

## 52. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԱՌԱՔԵԼՅԱՆԻՆ]

**Թիֆլիս, 11 նոյիսի, 1883 ամի**

*Հարգելի բարեկամ,*

*Ստացա Ձեր հունիսի 30-ի գրած նամակը։ Թավրիզում տպարան հիմնելու և մի ամսագիր հրատարակելու Ձեր գեղեցիկ նպատակը շատ ուրախացնում է ինձ։ Հաջողություն եմ ցանկանում։ Բայց մի այսպիսի ձեռնարկություն պահանջում է, որ Դուք երկար ժամանակ կապված լինեք Թավրիզի հետ, որպեսզի գործը հաստատուն հիմք ստանա։ Իսկ պ. Միրզոյանցի նամակում գրած էիք, որ մի երկու տարի միայն ցանկություն ունիք Թավրիզում մնալու։ Ես կարծում եմ, որ դա շատ փոքր ժամանակ է, Ձեր բացակայությունից հետո, Դուք հազիվ թե Ձեր սկսած գործին շարունակող կունենաք։*

*Ես հավատացած եմ, եթե Դուք վճռեք Թավրիզում մնալ, այդտեղ առաջին ղեկավարող անձն կլինեք և գործելու ընդարձակ ասպարեզ կունենաք։ Այժմյան անախորժությունները կանցնեն.*

դրանք արդյունք են այն հին ինտրիգաների, որ մի քանի ողորմելի անձինք Բիշոբրատովին հաճոյանալու համար գործ դրեցին Ձեր հանգուցյալ հոր դեմ։

Առաջարկում եք աշխատակցել Ձեր ամսագրին, ցավում եմ, որ այժմ որոշակի ոչինչ պատասխանել Ձեզ չեմ կարող, որովհետև իմ դրությունը նույնպես անորոշ է, չգիտեմ ինչո՞վ կվերջանա իմ գործը։ Իմ վիճակը ավելի ծանրացավ, տնային բանտարկության ենթարկեցին ինձ, երկու ամբողջ շաբաթ իմ բնակարանի դռան մոտ երկու պահապան էր դրված։ Վերջը պարսից հյուպատոսը երաշխավոր եղավ 3000 ռուբլ. գրավականով, և ազատ թողուցին ինձ։ Բայց դրանով գործը չէ վերջանում, այդ միայն նախազգուշություն է, որ ես Թիֆլիսից չհեռանամ, մինչև քննությունները վերջանան։ Այժմ ուշադրություն են դարձնում իմ մինչև անգամ ցենզուրայի թույլտվությամբ ի լույս ընծայած գրքերի վրա։ Ասում են, թե Ս. Պետերբուրգից առանձին հանձնաժողով է ուղարկվում թե Երևանի և թե Թիֆլիսի գործերը քննելու համար։ Թեև ես հավատացած եմ, որ ոչինչ չի դուրս գա, այսուամենայնիվ, շատերը պետք է տանջվեն, մինչև արդարությունը հաղթող կհանդիսանա։

Գաբոն հոժարվում է Թավրիզ գալու, բայց պահանջում է, որ տեսչության պաշտոնն էլ իրան հանձնեն. այդ մասին գրել եմ պ. Ֆեներջյանին։ Ֆրանսերեն լեզվի դասատվության համար կուղարկենք պ. Նավասարդյանցին, այդ երիտասարդին, կարծեմ, Դուք չեք ճանաչում, Թիֆլիսեցի է, ուսել է Ֆրանսիայում և երեք տարի Զվիցերիայում է մնացել։ Բացի ֆրանսերենից գիտե գերմաներեն և մասնավորապես անգլիերեն։ Պարոն Սիմոն Հախումյանցը անհարմար է այդտեղի դպրոցի համար, իզուր եք առաջարկել. նա թե բարոյապես և թե մտավորապես հիվանդ մարդ է. զանազան հիմարություններ կանի և բոլորին կզզվեցնի։ Դուք գիտեք Շուշիի դպրոցի հետ կամ Կարսում ինչպե՞ս վարվեցավ։

Հոգաբարձությունը այստեղից երեք վարժապետներ հրավիրելու համար նշանակել է 2000 ռուբլ. շատ, շատ փոքր է, ես գրեցի, որ 3000 ռուբլ. հազիվ կբավականանա, մանավանդ, որ մեկը տեսչի պաշտոն պետք է կատարե։

Ընդունեցեք իմ հարգանքը՝

Հ. Մելիք-Հակոբյան

## 53. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 12 հուլիսի, 1883 ամ.

*Հարգելի բարեկամ,*

*Անցյալ նամակովս Ձեզ անախորժ տեղեկություններ էի հաղորդած, այժմ մասամբ կուրախացնեմ Ձեզ, տնային բանտարկության մեջ մնացի 10 օր միայն, հետո պարսից հյուպատոսը երաշխավոր եղավ 3000 ռուբլու պատասխանատվությամբ և ինձ ազատ թողեցին, բայց տակավին Թիֆլիսից հեռանալու իրավունք չունեմ, մինչև գործերի քննությունը վերջանա։*

*Պարոն Արծրունին սաստիկ հիվանդ էր, կուրծքից արյուն էր գնում, այժմ արյունը դադարել է և առողջանալու վրա է. վտանգը անցավ։ Վերջին ժամանակների անախորժ հանգամանքները նրա վրա սաստիկ ներգործություն արեցին, և նա դիմանալ չկարողացավ։*

*Պարոն Աբելյանը ինձ ասաց, որ Դուք մի բանի մասին անհանգիստ եք. միամիտ կացեք, ինձ մոտ Ձեր կողմերից եկած ոչինչ չեն գտել։*

*Խնդրում եմ, եթե գրքերի վաճառքից փոքրիշատե փող է գոյացել, ուղարկեք ինձ. ծախքերի կարոտություն ունեմ։ Գիտեմ, որ վաճառածները* նիսիայ *տված կլինեք, այն ևս հայտնի է, որ մեր հայերը որքան ծույլ են իրանց պարտքերը վճարելու, այսուամենայնիվ աշխատեցեք, որքան հնար է հավաքել ապառիկները։*

*«Մեղուի» մեջ մի շարք կեղտոտ կրիտիկաներ տպվեցան իմ աշխատությունների մասին, որոնց մեջ մինչև անգամ ուղղակի մատնություններ կային։ Շատ պատասխաններ են ստացվել «Մշակի» խմբագրատան մեջ հիշյալ կրիտիկաների մասին։ Ժամանակը վատ է, դեռևս լռում ենք։*

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյան

## 54. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 27 սեպտ., 1883 ամ

*Հարգելի բարեկամ,*

*Ձեր փոստով ուղարկած* ճիսուն *ռուբլին ստացած եմ ի հաշիվ վաճառված գրքերի։ Ընդունեցեք իմ շնորհակալությունը։*

Ձեզ հայտնի գործը լավ դրության մեջ է. թե ես և թե պ. Արծրունին արդարացված ենք։ Երևանի 32 հոգի մեղադրվածներից կպատժվեն երեք անձինք միայն, թեթև պատժով։ Բայց թե ես և թե պ. Արծրունին տակավին գտնվում ենք երաշխավորության և հսկողության ներքո, որովհետև գործը ուղարկված է Ս. Պետերբուրգ, այնտեղ պետք է տան վերջնական վճիռը։ Իմ թղթերը դեռ չեն վերադարձրել։

Այս տարի ես շատ վնասներ կրեցի։ Մշտապես կաշկանդված լինելով, ոչինչ գրել և ոչինչ հրատարակել չկարողացա։ Նույն դրությունը դեռևս շարունակվում է։ Երևակայեցեք մի գրողի վիճակը, որ պետք է ապրե գրական աշխատանքով։

Այս տեսակ դժվարություններ շատ ենք անց կացրել, կհամբերենք և կսպասենք մինչև վերջը։

Ընդունեցեք իմ հարգանքը՝

Հ. Մելիք-Հակոբյան

## 55. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԱՌԱՔԵԼՅԱՆԻՆ]

18 դեկտեմ., 1883 ամ., Թիֆլիս

Հարգելի բարեկամ

Հ. Առաքելյան,

Ձեր քույրը Ձեր նամակը բավական ուշ հասցրեց ինձ, ես էլ մի քանի օր հետաձգեցի պատասխանել, գուցե Ձեր խնդրածը կարողանայի գտնել, այդ պատճառով իմ պատասխանը ուշացավ, Ֆոնոգրաֆ չկա այստեղ, շատերից հարցրի, եթե թագաժառանգը փափագում է ունենալ այդ գործիքը, կարծեմ, ավելի հարմար է Թավրիզի միսիոներների միջնորդությամբ բերել տա Ամերիկայից։

Ձեր տեղեկությունները Թավրիզի ազգային դպրոցի մասին տխուր տպավորություններ գործեցին իմ վրա. այդ դպրոցի վրա կարծես թե մի անեծք կա, նա երբեք բարեկարգվել չի կարող։

Կաթողիկոսի ընտրության օրը մոտենում է, չգիտեմ թավրիզեցիք այս անգամ ո՞ւմն են մտադիր ուղարկել էջմիածին. գոնե մի հասկացող և անկաշառելի մարդ ուղարկեին։

«Աղբյուրի» բաժանորդագրությունը 84 թվականի համար հաջող է գնում, առաջիկա օրվանից այդ ամսագիրը ավելի նպաստահարմար պայմանների մեջ կդրվի. պ. Միրզոյանցը սաստիկ աշխատում է։

*Մեր գործը դեռ նույն դրության մեջ է. Ս. Պետերբուրգից տակավին պատասխան չէ ստացված, բայց մեծ հույս կա, որ կվերջանա առանց որևիցե վնասակար հետևանքի։*

*Ձեր քրոջը երբեմն հանդիպում եմ դպրոցից վերադառնալու ժամանակ, երբեմն տեսնում եմ օրիորդ Արղությինսկու հետ ման գալիս, շատ առողջ է և միշտ ուրախ։*

*Ընդունեցեք իմ հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյան

## 56. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 28 դեկտ., 1883 թվ.

*Հարգելի բարեկամ,*

*Կարդացեք պ. Թումանյանցի բաց նամակը և բովանդակությունից հայտնի կլինի Ձեզ, թե ինչու ես վճռեցի Ձեր միջնորդությամբ հասցնել նրա նամակը։ Ձեզ հայտնի է նրա անցյալ տարիների թղթակցությունների բովանդակությունը, երբ նա ցանկանում էր իմ աշխատություններից մի քանիսը իր ծախքով տպագրել։ Ձեզ հայտնի է և այն, որ երկար Ձեզ և ինձ ձանձրացնելուց հետո, վերջապես իր խոստումները թողեց անկատար։*

*Մի երկու ամիս առաջ իմ աշակերտներից մեկը, պ. Ապրեսյանցը, ցանկություն ուներ տպագրելու «Ջալալեդդինը» և նվիրել հօգուտ իմ հոբելյանի։ Այդ միջոցներում ստանում եմ պ. Թումանյանից երկու հեռագրեր, որով խնդրում էր, որ ես հայտնեմ պ. Ապրեսյանցին, որ նա դադարեցնե հիշյալ վեպի տպագրությունը, որովհետև ինքը, պ. Թումանյանցը արդեն սկսել է «Ջալալեդդինի» տպագրությունը, և վերջանալու վրա է։ Որովհետև այդ գործը ուղղակի ինձանից կախում չուներ. ես նրա հեռագրերը հանձնեցի հոբելյանը կատարող մասնաժողովին, և նրանք պատվիրեցին պ. Ապրեսյանցին, որ թողնե իր տպագրությունը։ Շատ հասկանալի է, որ մասնաժողովը համոզված էր, որ պ. Թումանյանցը նույն նպատակով է տպագրում, ինչ նպատակով որ պիտի տպագրել տար պ. Ապրեսյանցը, որովհետև պ. Թումանյանցին հայտնի էր պ. Ապրեսյանցի նամակի բովանդակությունը, որ տպված է «Մշակի» մեջ։*

*Հեռագրները ստանալուց հետո, անցնում է մի քանի շաբաթ, հանկարծ ստանում եմ պ. Թումանյանից նամակ, որով հիշեցնում է ինձ անցյալ տարիների մեր բանակցությունները «Ջալալեդդինի» տպագրության մասին, ներողություն է խնդրում, որ առանց կըր-կին ինձանից իրավունք ստանալու ձեռնարկեց տպագրելու, և վերջապես խոստանում է, որ մեր հին պայմանի համեմատ, որ ունեցել ենք անցյալ տարիներում, ինձ պատկանող օրինակները կուղարկե նըն։*

*Պարոնի նամակը ես ամոթ համարեցի ցույց տալ մասնաժողովին, առավելապես այն պատճառով, որ մի այնպիսի դեպքում, երբ օտարները աշխատում են թե բարոյական և թե նյութական համակրություն հայտնել ինձ,— այդ ժամանակ իմ հայրենակիցը և իմ աշակերտը վաճառականական սակարկության մեջ է մտնում ինձ հետ, այն ևս անկանոն կերպով։*

*Պարոնի նամակը կստանաք ծրարի մեջ և կկարդաք. խնդրեմ հոգ տանեք, գոնե պատկերը օրինավոր կերպով փորագրել տա։ Ես նրան ավելի ոչինչ չգրեցի, որովհետև չարժե այդ տեսակ երեխաներից ազնիվ զգացմունք սպասել։*

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյան

# 1 8 8 4

## 57. [ՆԵՐՍԵՍ ԱԲԵԼՅԱՆԻՆ]

**Թիֆլիս, 14 հունվարի, 1884 ամի**

*Հարգելի բարեկամ,*

*Շնորհակալությամբ ստացա Ձեր նամակը, որով խնդակցություն էիք հայտնել իմ կյանքին վտանգ սպառնացող արկածից ազատվելու համար։ Ես ամեն տեսակ անազնվություն սպասում էի իմ թշնամիներից, բայց այդ չէի սպասում։ Այսուհետև զգույշ կլինեմ։ Երեկոյան 7 ժամից հետո տանից դուրս չեմ գալիս. գիշերը մի քաջ* հասաս *է պառկած լինում իմ նախասենյակում։ Այժմ երկու ռևոլվեր ունիմ, երկրորդը ընծա ստացա մի պարոնից։*

*Հոբելյանի առիթով կատաղած են, ամեն կեղտոտություններ գործ են դնում արգելելու համար։ Բայց գավառներում սաստիկ*

արձագանք է գտել այդ միտքը և ամեն տեղ համակրությամբ են վերաբերվում։

Ուղիղն ասեմ, բարեկամ, ես ամենևին հոժարություն չունեի, որ այս տարի կատարվեր իմ հոբելյանը, դա Գաբոյի և մի քանի բարեկամներիս ցանկությունն էր։ Ես չէի ուզում գրգռել իմ թըշնամիներին, որովհետև ժամանակները վատ են, իսկ նրանք ամեն ցածության ընդունակ... Բայց հիմա որ գործը բավական առաջ է գնացել, այլևս կես ճանապարհից դառնալը ամոթ է...

Պ. Արծրունու հետ իմ հարաբերությունները այժմ բավական լարված են. ես դադարել եմ նրանց մոտ ճաշ ուտել. տիկնոջ ինտրիգները վերջապես զզվացրին ինձ։ Ես դիտավորություն ունեի այս տարվա սկզբում մի քանի փոփոխություններ անել խմբագրատան կազմակերպության մեջ. նոր մարդիկ հրավիրել և հներին հեռացնել, որպեսզի «Մշակը» փոքր-ինչ կենդանանա։ Բայց հնար չեղավ. տիկինը տարավ հաղթությունը, իսկ պ. Արծրունին նրա ձեռքում այժմ դարձել է մի շորի կտոր։

Շատ կարելի է, որ բոլորովին դադարեմ «Մշակի» մեջ աշխատակցելուց, և եթե կարողացա հաջողացնել, պիտի նախապատրաստվեմ առաջիկա տարվանից իմ խմբագրությամբ մի ամսագիր հրատարակել, որի մասին Ձեզ հետ շատ անգամ խոսացել եմ։

Այստեղ շատ վատ տպավորություն գործեց ճեմարանից այնքան աշակերտների հեռացնելը։ Մի՞թե չկարողացաք այդ խայտառակության առաջը առնել։ Վաղարշապատից շատ հեռագրներ և նամակներ ստացանք, բայց ոչ մեկը չտպեցինք, պահպանելով ճեմարանի վարկը։

Գաբոն ինձ ասաց, որ Դուք գրել եք, իբր թե Պոլսի ազգ. ժողովը Կարինի նախկին առաջնորդ Հարություն եպիսկոպոսին կաթողիկոս է ընտրել։ Եթե ճշմարիտ լինի, դա շատ անհաջող ընտրություն է։ Այդ անձը հայտնի է որպես չափազանց կաշառակեր և շահասեր մարդ, նրա բոլոր արժանավորությունը միայն նրանումն է, որ շատ հարուստ է։

Սեղմում եմ Ձեր ձեռքը՝

Րաֆֆի

# 58. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 18 փետրվարի, 1884 ամի.

*Հարգելի բարեկամ*
*Մելքոն Կասպարիչ,*

*Ստացա Ձեր նամակը իմ գրքերի հաշվի հետ. ստացա նաև 46 ռուբլ. պ. Արասխանյանից նույնպես գրքերի հաշվից։ Շնորհակալություն։*

*«Ջալալեդդինի» մի օրինակը տեսա, ուղարկված էր «Մշակի» խմբագրատանը. տպագրությունը և թուղթը գեղեցիկ է, բայց լիքն է տպագրական սխալներով, շատ տեղերում մի բառ ուրիշ բառի տեղ է դրված, շատ տեղերում բառերը պակասում են։ Չգիտեմ ո՞վ է արել դրա սրբագրությունը։ Պատկերը լավ չի դուրս եկել, խիստ սառն է, կյանքի արտահայտություն չունի։ Երևի խնայել են ծախքը և փորագրել չեն տվել։*

*Պ. Թումանյանից դեռ իմ նամակի պատասխանը չեմ ստացել. ինձ պատկանելիք գրքերը նույնպես դեռևս չէ ուղարկել, թեև հայտարարությունը ուղարկել էր և տպվեցավ «Մշակի» մեջ։ Պահանջողներ շատ կան, բայց գրքեր չկան։*

*Կաթողիկոսական հարցի առիթով Մակարի մասին սաստիկ պրոպագանդա է կատարվում Կ. Պոլսում, իհարկե, փողի ուժով. մեծ խայտառակություն կլիներ հայոց ազգի համար, եթե մեր գիտակցական դարում, երբ հայերիս պես նույնպես առողջ մտածությունը և հասարակաց կարծիքը բավական զարթուն է, մի այնպիսի անպիտանը իր կողոպտած փողերի շնորհիվ հայրապետական աթոռը կբարձրանար։ Էջմիածնում ցանկանում են, որ Մակարը կաթողիկոս լինի, ավելի այն պատճառով, որ տակը ծածկեր այն ավազակությունները, որ կատարվեցան Գևորգի մահվան ժամանակ, որից, ընդհակառակն, վախենում են, մի գուցե Ներսեսը կամ Խրիմյանը կաթողիկոս ընտրվելուց հետո սկսեն քննություն բաց անել կատարած չարագործությունների մասին։*

*Թեև պ. Արծրունու մեջ տեղի ունեցած մի փոքրիկ անհամաձայնության պատճառով ես դադարեցի գրել «Մշակի» մեջ, բայց շուտով կշարունակեմ աշխատակցել և նրան միայնակ չեմ թողնի։ Այդ մարդը, եթե իր լավ ձգտումների հետ անտանելի բնավորություն չունենար, մենք շատ գործեր կարող էինք հաջողացնել։*

*Ցավում եմ, որ Դուք Ձեր երկու ամենալավ բարեկամների կորստյան դժբախտությունն եք ունեցել։ Լավ բարեկամը ամենաբարձր մխիթարությունն է մարդու համար կյանքի մեջ։*

*Ընդունեցեք իմ խորին հարգանաց հավաստիքը՝*

Հ. Մելիք-Հակոբյանց

## 59. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 7 մարտի, 1884 ամի.

*Հարգելի բարեկամ*
*Մելքոն Կասպարիչ,*

*Ձեր 28 փետրվարի նամակը ստացա. պ. Թումանյանցի հիմար վարմունքը որքան Ձեզ, ավելի ես ինձ վրդովեցնում է. այդ թեթևամիտ համբակը ինձ կատարելապես խայտառակեց։ Երևակայել չեմ կարող մի այսպիսի հիմարություն, գիրքը լույս է տեսնում, մի-մի օրինակ ուղարկում է այստեղի բոլոր խմբագիրներին և նրանց հայտարարություն է ուղարկում, հայտարարությունները տպվում են, թե «Թիֆլիսում կարելի է ստանալ միայն հեղինակից»։ Ամեն օր տաս-քսան մարդիկ դիմում են ինձ, գիրք են խնդրում, բայց ինձ մոտ ոչ մի հատ գիրք չկա, բոլորին պատասխանում եմ, թե դեռ չեմ ստացել։ Այդ ի՞նչ հիմարություն է, և վերջապես նա ի՞նչ իրավունք ունի իմ մասին հայտարարություն տպել տալ, մի՞թե ես ինքս չէի կարող հայտարարել գրքերը ստանալուց հետո։ Նա այսքանը չէ մտածում, երբ հայտարարությունը տպվեցավ, պետք է գիրքը պատրաստ լինի գրավաճառների կամ հեղինակի մոտ։*

*Ես կներեի պ. Թումանյանցի հիմարությունը, եթե միայն հիմարություն լիներ, բայց ես նրա վարմունքի մեջ նկատում եմ և խայտառակություն։ Նա «Ջալալեդդինը» սկսեց տպագրել առանց ինձանից իրավունք խնդրելու։ Իմ մի քանի տարի առաջ տված իրավունքը կորցրել էր իր նշանակությունը, որովհետև նա ինքը չկատարեց մեր մեջ կայացած պայմանը։ Այդ պետք է Ձեզ լավ հայտնի լինի։ Ուրեմն, երբ նա դիտավորություն ուներ տպագրելու, պետք է նորից դիմեր ինձ և իրավունք խնդրեր, այդ մասին հայտնի օրենքներ կան։ Բայց նա այդ օրինական ձևերին չհետե-*

վեց։ Նա առանց իմ կամքը հարցնելու ինքնակամ սկսեց տպագրել գիրքը այն ժամանակ, որ «Մշակի» մեջ նրա ձեռնարկությունից շատ առաջ լույս էր տեսած պ. Ապրեսյանցի նամակը, որով նա առաջարկում էր «Ջալալեդդինի» տպագրության համար հանգանակություն սկսել և տպագրել հօգուտ հեղինակի հոբելյանի։ Եվ պ. Ապրեսյանը սկսել էր արդեն փող հավաքել։ Այդ միջոցներում հեռագիր եմ ստանում պ. Թումանյանցից, որով խնդրում է հայտնել պ. Ապրեսյանցին, որ դադարեցնե իր ձեռնարկությունը, որովհետև ինքը արդեն սկսել է տպագրել «Ջալալեդդինը», և նոր տարվա սկզբում (1884 թվի) գիրքը պատրաստ կլինի։ Ես խնդրեցի պ. Ապրեսյանցին, որ թողնե իր դիտավորությունը, հավատացած լինելով, որ պ. Թումանյանցը նույնպես ամբողջ տպագրությունը նվիրել է հօգուտ հոբելյանի, ինչպես նպատակ ուներ պ. Ապրեսյանցը։

Անցնում են շաբաթներ, անցնում է ամիս, գիրքը լույս է տեսնում մամուլի տակից,— այդ ժամանակ միայն նամակ եմ ստանում պ. Թումանյանցից, որի մեջ հիշեցնում է ինձ մեր մի քանի տարի առաջ ունեցած հին պայմանը... Ասացեք խնդրեմ, դա խաբեբայություն չէ՞։ Թե ինչ պատասխանեցի ես նրան, Ձեզ հայտնի է, ես նրա նամակի պատասխանը բաց ուղարկեցի Ձեզ ծրարով։ Ես կարծում էի, որ իմ պատասխանը ստանալուց հետո նա այնքան քաղաքավարի կլինի, որ կհասկանա իր պարտավորությունը, բայց երևակայեցեք, մինչև այսօր իմ նամակի պատասխանն էլ չեմ ստացել։ Հիմա ի՞նչ պետք է անել այդ տեսակ լակոտների հետ։ Ես նրա հոր մասին շատ անեկդոտներ էի լսել, բայց երևում է, որ որդին պիտի գերազանցե հորից։

Թե անցյալ տարիներում և թե վերջին անգամ ես նրան գրել էի, որ «Ջալալեդդինի» տպագրությունը Ձեր գիտությամբ և Ձեր խորհրդով կատարվի։ Այժմ Ձեր նամակից երևում է, որ նա Ձեզանից ոչինչ չի հարցրել և Ձեր կարգադրությանը չէ դիմել, այլ գործը հանձնել է մի ինչ-որ Բարխուդարյանցի, որ գիրքը լցրել է հարյուրավոր աններելի սխալներով։

Ես դեռ սպասում եմ նրանից իմ նամակի պատասխանը. ես թույլ չեմ տա, որ նա ինձ հետ այդ տեսակ խաղեր խաղա։ Նա գրականության գործերում նույնպիսի խարդախությամբ է վարվում, որպես իր հայրը վարվում է քիշմիշի և բադամի վաճառականության մեջ։

Ձեզանից հարցրել են մեր անցյալ տարիների պայմանը. այն պայմանը ոչինչ նշանակություն չունի։ Ես նրան մեծ զիջում արած կլինեմ, եթե համաձայնվեմ, որ իր դրած տպագրության ծախքի փոխարեն նշանակյալ գնով գրքեր վեր առնե, իսկ մնացյալ օրինակները ուղարկե ինձ։ Չգիտեմ, որքան օրինակ է տպել։

Պարոն Արծրունու մասին հետևյալ նամակով կգրեմ Ձեզ։

Ձեր՝ Հ. Մելիք Հակոբյան

## 60. [ՆԵՐՍԵՍ ԱԲԵԼՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 12 մարտի, 1884 ամի

Հարգելի բարեկամ,

Ձեր վերջին նամակը ստացա, հանգուցյալ Աբել եպիսկոպոսի ձեռագրի մասին ընդունեցեք իմ խորին շնորհակալությունը։ Այդ եպիսկոպոսը մի պատմություն ուներ գրած, որ բովանդակում էր իր մեջ էջմիածնի վերջին ժամանակների անցքերը, ու հասցրած էր մինչև Գևորգի օրերը։ Պարսկաստանում, մեր տանը եղած ժամանակ, նա շատ անգամ այդ աշխատությունը կարդում էր ինձ մոտ, խիստ հետաքրքիր տեղեկություններ կային։ Նա շարունակում էր այդ պատմությունը մինչև իր մահվան ժամանակը։ Հանգուցյալի մահից հետո, այդ թանկագին աշխատությունը անհետացավ նրա թղթերի միջից։ Ձեզ պետք է հայտնի լինի, որ նա իր ծառայի տանը մեռավ։ Ասում են, որ Մանկունին ծառային կաշառելով, նրանից առած և ոչնչացրած լինի հիշյալ ձեռագրերը, որովհետև Գևորգի մասին աննպաստ տեղեկություններ է բովանդակում իր մեջ։ Այն ևս ասում են, որ ծառայի ձեռքում մնացած է։ Հետաքրքրվեցեք, եթե գտնվի, ես պատրաստ եմ մի բան տալ և գնել։

Գրում եք, թե ոմանք դիտավորություն ունեն «Վարժարանը» ընդհանուր գրականական ամսագիր դարձնել։ Թե Դուք և թե մենք ճանաչում ենք այդ մարդիկներին, դրանք «քարվան կտրողներ» չեն։ «Փորձերը» ապացուցին, որ միայն կապիտալը չէ, որով կարելի է մի հաջողված ամսագիր կամ լրագիր հրատարակել, այլ հարկավոր են ուրիշ պայմաններ, որ պակասում են այդ պարոններին։

Այստեղ ևս, մեր ձեռնարկության ձայնը լսելով, խոսում են, թե առաջիկա տարվանից պետք է սկսվի «Փորձի» հրատարակությունը,— բայց դրանք խոսքեր են միայն մեզ վախեցնելու համար։

Ժամանակն է, վերջապես, որ ազատվենք բուրժուա խմբագիրներից, որ իրանց կապիտալով խեղդում են մեզ։ Նոր երիտասարդությունը պետք է խմբվի մի նոր գործի շուրջը։ Ինչո՞վ վարձատրեց պ. Արծրունին իմ 12 տարվա ծառայությունը։ Այն վատ ժլատների նման, ոչ ինքը օգուտ քաղեց «Մշակից» և ոչ թողեց, որ մենք օգուտ քաղենք։ Նա այժմ կրկնում է այդ խոսքերը. «Ես մեռնելու եմ, թող «Մշակն» էլ ինձ հետ մեռնե»... Եվ այդպես էլ կլինի, նա չի պիտի կարողանա շարունակել այդ թերթը, բայց ցավում եմ, որ «Մշակը» կմեռնի բամբասված, արատավորված...

Ես ուրախ եմ, որ ազատ եմ այդ մեղքից։ Ես անցյալ տարվա վերջին ամիսներում խորհուրդ տվի նրան, որ ներկա տարվա համար խմբագրատան կազմակերպությունը փոխվի։ Նա խոստացավ, բայց չկատարեց, և ինքը պատժվեցավ, որովհետև ստիպվեցավ շաբաթը երկու անգամ դարձնել, իսկ հետո կստիպվի բոլորովին դադարեցնել։ Եթե նա ինձ լսեր, դրանցից ոչ մեկը չէր պատահի։ Աշխատում ենք վերականգնել այդ լրագիրը, բայց այնքան հույս չունենք, որ այդ անտանելի մարդու հետ կարելի կլինի մի բան անել, մանավանդ, որ այժմ նա բոլորովին ապաստանած է մի կիսախելագար կնոջ յուպկայի ներքո և այնտեղից է ստանում բոլոր խորհուրդները։

Մի ամսագիր, մի շաբաթական թերթ հրատարակել և «Աղբյուրի» խմբագրատունը միացնել դրանց հետ,— այդ հարցերը արդեն վճռված են մեր մեջ։ Երբ որ այստեղ գալու լինեք, կխոսենք։ Գաբոն դիտավորություն ունի համալսարան մտնել և մի դիպլոմ ձեռք բերել։ Նրա բացակայությունը փոքր-ինչ կկաղացնե գործը։ Մեզ ուրիշ ոչինչ պետք չէ, բայց միայն մարդիկ,— թարմ, հաստատամիտ և տոկուն մարդիկ։ Պետք է ի մի խմբել այսպիսիներին, և այն ժամանակ գործը կարելի է հաջողված համարել։ Հեղինակություններից փախչում ենք մենք, այդ փտած հեղինակությունները սպանեցին մեզ։ Հարկավոր են նոր մարդիկ, չփչացած մարդիկ։

Ձեր՝ Րաֆֆի

# 61. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 13 մարտի, 1884 ամի

*Հարգելի բարեկամ*
*Մելքոն Կասպարիչ,*

*Նախորդ նամակում խոստացած էի գրել Ձեզ իմ և պ. Արծրունու մեջ տեղի ունեցած սառնության պատճառները, որոնք հետաքրքրում են Ձեզ, որպես իմ և նրա բարեկամի։*

*Անկարելի է, որ Դուք նկատած չլինեք, որ անցյալ տարի «Մշակը» թե իր ներքին բովանդակությամբ և թե իր կանոնավոր հրատարակությամբ խիստ թույլ կերպով գնաց և կատարելապես չգոհացրեց իրեն ընթերցողներին։ Այդ տարվա համար կարելի էր ներել, որովհետև «Մշակի» խմբագրատան հետ այնպիսի անսպասելի անցքեր պատահեցան, որ ավելին չէր կարելի պահանջել։*

*Եվ որպեսզի «Մշակը» կրկին իր առաջվա ուժը և կենդանությունը ստանա, ես անցյալ տարվա վերջին ամիսներում առաջարկեցի պ. Արծրունուն, որ խմբագրատան կազմակերպությունը փոխվի, և նոր տարվանից սկսյալ, նոր խմբագրություն կազմվի, բոլորովին ուրիշ հիմունքների վրա հաստատված։ Նա համաձայնեցավ ինձ հետ, բայց երբ նոր տարին հասավ, այլևս չկատարեց իր խոստմունքը։ Ի՞նչ եղավ հետևանքը.— այն, որ ես նախագուշակում էի, ինքը չկարողացավ շարունակել, և ստիպվեցավ շաբաթը երկու անգամ հրատարակել, և եթե այսպես տանե գործը, գուցե ստիպված կլինի բոլորովին դադարեցնել։*

*«Մշակի» կարևորությունը հայոց հասարակության համար Ձեզ բացատրելու հարկ չկա։ Դուք ինքներդ ավելի լավ գիտեք, բայց ի՞նչ արած, որ այդ անտանելի մարդը յուր անտակտությամբ ամեն բան փչացնում է։*

*Նրա մասնավոր գործերի դրությունը այնպես է, որ նա գոնե առժամանակ պետք է իրան հեռու պահեր խմբագրական հոգսերից, մինչև իր սեփական գործերը կարգի դնելը։ Եվ ես «Մշակի» բոլոր հոգսերը ինձ վրա էի առնում, բայց ինձ մի այնպիսի դրության մեջ դրեց, որ երկար համբերել չկարողացա։*

*Այժմ թեև չեմ գրում, բայց իմ հարաբերությունները «Մշակի» հետ բոլորովին կտրված չեն։ Աշխատում եմ և կշարունակեմ աշխատել, որ այդ լրագիրը կրկին վերականգնի, որովհետև ես իմ անունը կապված եմ համարում նրա հետ և եթե «Մշակի» վրա*

*բիծ դրվի, նրա մի մասն էլ իմ վրա կընկնի։ Տեսնենք ինչո՞վ կվերջանա։*

*Պարոն Թումանյանցի նամակը կկարդաք և իրան կհանձնեք։ Այդ հիմարը ինձ այն աստիճան զայրացրել է, որ ուրիշ կերպ չէի կարող գրել։ Այն անպիտան Բարխուդարյանցից իմ հեռագրի պատասխանը ստացա, թե գրքերը վաղուց ուղարկված են։ Բայց ի՞նչ ճանապարհով, ի՞նչ միջոցով,— այդ մասին ոչինչ չէ հայտնել։ Գիտեմ, որ սուտ է, եթե փոստայով ուղարկած լինեին, շուտուց ստացած կլինեի։ Հեռագիրը 10 օրից ավելի է, որ ստացել եմ։ Գոնե մի քանի հարյուր օրինակ փոստայով ուղարկեին, եթե ծախքերը խնայում էին, իսկ մնացածը ուրիշ ճանապարհով։*

*Բանը նրանումն է, որ եթե այսուհետև գրքերը այստեղ հասնելու լինեն, այլևս այնպես չեն վաճառվի, ինչպես առաջ կվաճառվեին։ Որովհետև երբ ուշանում է, հասարակությունը սառչում է, էլ ուշադրություն չէ դարձնում։ Սկզբից միայն հետաքրքրվում են, երբ առաջին անգամ հայտարարությունը կարդում են։*

*Ընդունեցեք իմ հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյանց

## 62. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 24 ապրիլի, 1884 ամ.

*Հարգելի բարեկամ,*

*Ձեր վերջին երկու նամակները ստացել եմ. առաջին նամակով բավական զգալի հանդիմանություն եք անում ինձ և իմ վարմունքը պ. Արծրունու վերաբերությամբ համեմատում եք պ. Նիկողոսյանցի վարմունքի հետ։ Մի այսպիսի հանդիմանություն կարող է անել կամ վատ թշնամին, կամ լավ բարեկամը։ Ես ընդունում եմ այդ վերջինը։ Իբրև հեռվից նայողի և գործերի մանրամասնություններին անտեղյակ մարդու, ես բոլորովին բնական եմ գտնում Ձեր արդար վրդովմունքը, երբ տեսնում եք, որ «Մշակը» այսօր անգթյալ դրության մեջ է և նրա խմբագիրը միայնակ և անօգնական մնացած։*

*Բայց ո՞վ է մեղավորը,— դրանումն է գլխավոր հարցը։ Ես, իհարկե, այժմ չեմ կարող այն բոլոր գաղտնիքները դուրս թա-*

փել, որոնք ավելի ընտանեկան բնավորություն ունեն և որոնք չարաչար կերպով ազդեցին թե պ. Արծրունու կործանման վրա և թե «Մշակի» անկման վրա։ Դա մի երկար պատմություն է, որը գուցե մի ժամանակ բավական առատ նյութ կտա պ. Արծրունու կենսագրությանը։ Ես այդ մարդուն հարգում եմ, նրա գործունեությունը միշտ ազնիվ և օգտավետ եմ համարել, բայց նա մի անբախտ զոհ է իր գործած մի մեծ սխալի, որը ոչ ոք ուղղել չէ կարող և որի պատճառով ինքը պատժվեցավ։

Ես բաժանում եմ Ձեր բարի խորհուրդը, թե պ. Արծրունու այժմյան դրության մեջ ես պետք է նրան միայնակ չթողնեի։ Ես այդ մասին արել եմ, ինչ որ կարող էի, և որքան ինձանից կախված էր։ Դեռ անցյալ տարվա վերջին ամիսներում ես առաջարկեցի պ. Արծրունուն խմբագրատան բոլոր հոգսերը ինձ վրա թողնել, որպեսզի ինքը ազատ ժամանակ ունենա իր տնտեսական գործերը կարգի դնելու։ Նյութական ոչինչ հաշիվներ չկային մեջտեղում. ես առաջարկեցի մինչև անգամ ներկա տարվա սկզբից ամեն ինչ ձրի կատարել և ոչինչ վարձատրություն չպահանջել նրանից, միայն թե «Մշակը» պահպանվի։ Բայց իմ բոլոր ջանքերը իզուր անցան, որովհետև մեջտեղում կար մի սատանա, որ ամեն ինչ խառնում էր,— ի՞նչ կարող էի ես անել կնոջ ինտրիգայի դեմ... Իմ և պ. Արծրունու մեջ ոչինչ անբավականություններ չեն տեղի ունեցել։ Ես վրդովված եմ եղել միայն այն կնոջ դեմ, որը համարյա թե կախարդել է խեղճ մարդուն, որը ստիպում է նրան ամեն ինչ ծախել, ամեն ինչ քարուքանդ անել և գնալ արտասահման, իրանց նշավակությունը մի անծանոթ երկրում ծածկելու համար... Այլևս ի՞նչ կարող էի անել ես, երբ գործի մեջ այդ տեսակ ընտանեկան գաղտնիքներ կային։

Ես առաջարկեցի պ. Արծրունուն (փառք աստծո, մեր մեջ վկաներ կան), եթե նա ցանկություն ունի արտասահման գնալու, թող «Մշակը» ինձ հանձնե և խոստացա յուրաքանչյուր ամիս 150 ռուբլի փող ուղարկել նրան։ Նա սկզբում համաձայնեցավ, բայց հետո իր խոստմունքը չկատարեց։ «Եթե ես մեռնելու եմ,— ասում է նա,— թող ամեն ինչ ինձ հետ մեռնի»... Ահա այս ծայրահեղության է հասել նա։ Ես դեռ սպասում եմ, որ գուցե հանգամանքները կփոխվեն, գուցե ես հնար կգտնեմ «Մշակը» վերականգնելու։ Այժմ խմբագրատան մեջ ոչ ոք չէ մնացել, բոլոր ծառայողները արձակված են։ Եթե գործը այսպես գնա, նա անկարող պիտի լինի շարունակել և մի երկու ամսից հետո ստիպված կլինի դադարեցնել։

*Եթե պ. Արծրունու հետ հաշտվել չկարողացանք, այդ դեպքում իմ բարեկամները խորհուրդ են տալիս ինձ մի ամսագիր հրատարակել «Փորձ»-ի դիրքով և մի թերթ, որ շաբաթը երկու անգամ հրատարակվեր։ Այդ մասին դեռ մտածում ենք, երբ ամեն պատրաստություններ կարգի կդրվեն, իսկույն խնդիր կներկայացնեմ հրաման ստանալու համար։ Ես այն աստիճան սովորած եմ հրապարակախոսության պարապմունքին, որ ինձ համար մի կենսական պահանջ է դարձել, այսուհետև չեմ կարող անգործ մնալ։ Իմ սրտից արյուն է գնում, երբ տեսնում եմ, որ մեր հրապարակախոսները ամեն կեղտոտություն դուրս են թափում, իսկ ես ստիպված եմ լուռ ականատես լինել։*

Ձեր՝ Հ. Մելիք-Հակոբյան

## 63. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

**Թիֆլիս, 21 հունիսի, 1884 ամ.**

*Հարգելի բարեկամ,*

*Ձեր վերջին նամակը ստացած եմ, ուրախ եմ, որ համաձայնվեցանք միմյանց հետ. պ. Արծրունու վիճակը էգուց կորոշվի։ Նրա կալքերի աճուրդի օրն է։ Շատերի կարծիքն այն է, որ գնողներ չեն գտնվի և կալքերը կմնան բանկի սեփականություն։ Այժմ Թիֆլիսը դրամական սաստիկ նեղ դրության մեջ է. կապիտալիստների մոտ փող չկա։*

*Ցավալի է, որ այսպիսի թանկագին կալքերը պետք է դառնան վրացիների սեփականություն։ Բանկը նրանցն է պատկանում։ Դիտավորություն կար ընդհանուր ազգային հանգանակությամբ գնել այդ կալքերը և նվիրել էջմիածնի ճեմարանին։ Բայց խոսեցին, խոսեցին և ոչինչ չշինեցին, մինչև աճուրդի օրը հասավ։*

*Աճուրդից հետո պ. Արծրունին ամենաթշվառ մարդը կդառնա. նա իր բոլոր կալվածները կկորցնե և, բացի դրանից, ավելի քան 100 հազար ռուբլ. մասնավոր պարտքերի տակ կմնա։ Ի՞նչ կլինի այսուհետև «Մշակի» դրությունը,— շատ հեշտ է նախագուշակել։*

*Ես մինչև այսօր ոչինչ չեմ խոսացել պ. Արծրունու հետ. նա մի այնպիսի տրամադրության մեջ էր գտնվում, որ նրա հետ խոսելն անգամ անկարելի էր։ Բայց երբ վիճակը բոլորովին կո-*

*րոշվի, ես կառաջարկեմ նրան իմ բարեկամական ծառայությունը։ Այդ մարդը իր դժբախտությունից հետո այստեղ մնալ չէ կարող. նա պետք է գնա արտասահման, բայց արտասահմանում ապրելու ոչինչ միջոց չի ունենա։*

*Ես արդեն կազմել եմ երիտասարդների մի խումբ, որ «Մշակը» վեր առնենք և շարունակենք հրատարակել, իսկ պ. Արծրունու համար տարեկան մի գումար կնշանակենք, որ արտասահմանում ապրե։ Եթե նա կընդունե մեր առաջարկությունը, իր համար էլ լավ կլինի և «Մշակն» էլ կպահպանվի, իսկ եթե կմերժե, այսուհետև ոչ ոք մեղավոր չի լինի, բացի ինքը։*

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը*

Հ. Մելիք-Հակոբյան

## 64. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 27 հուլիսի, 1884 ամի

*Հարգելի բարեկամ,*

*Ձեր վերջին նամակը ստացա, պ. Արծրունու գործերի ցավալի վախճանը արդեն լսած կլինեք. աճուրդի ժամանակ նրա կալվածքները ոչ ոք գնող չեղավ, այդ պատճառով մնաց վրացոց բանկի վրա։ Հայտնի բան է, բանկը նույնպես անկարող կլինի պահել, և ստիպված է վերջը վաճառել, գուցե շատ պակաս գնով։ Վերջը այդ կալվածները կդառնան դարձյալ հայերի սեփականություն։*

*Որպես խոստացել էի Ձեզ իմ նախորդ նամակում, ես կատարեցի իմ խոստմունքը. երբ պ. Արծրունին ամեն ինչ կորցրել էր և անմխիթար հուսահատության մեջ էր գտնվում, ես գնացի նրա մոտ և առաջարկեցի թե իմ բարեկամությունը և թե իմ ծառայությունը։ Ես այն աստիճան վիրավորված էի նրանից, որ իմ կողմից մի այսպիսի քայլ անելը պետք է չափազանց գիջողություն համարել։ Բայց ես իմ անձնասիրությունը ճնշեցի և կրկին ձեռք մեկնեցի նրանց. նրանց դժբախտությունը պահանջում էր ինձանից ներողամտություն և մոռացություն այն բոլոր անախորժ անցքերի, որ կատարվել էին մեր մեջ։*

*Վերջապես ես մեծ մասամբ հասա իմ նպատակին, այն է՝ մի կողմից միջոց տալ պ. Արծրունուն ապրելու, իսկ մյուս կողմից՝*

*պահպանել «Մշակի» գոյությունը։ Կազմվեցավ երիտասարդների մի խումբ, որ հանձն առներ «Մշակի» հրատարակությունը, խոստանալով առաջիկա 1885 թվականի սկզբից յուրաքանչյուր ամիս վճարել պ. Արծրունուն 100 ռուբլի մինչև 5 տարի։ Նոր խմբագրի պաշտոնը կընդունե մեզանից մեկը, պ. Միրզոյանցը, ես անկարող էի խմբագիր լինել, նախ այն պատճառով, որ ռուսաց հպատակ չէի, երկրորդ, անցյալ տարվա գործերի քննությունը տակավին վերջացած չէ։*

*Մենք հանձն ենք առել հրատարակել «Մշակը» եկող տարվա սկզբից, բայց այս տարվա սեպտեմբեր ամսվա սկզբից շաբաթական մի քանի համար կտանք, որպեսզի բաժանորդները պահպանենք։*

*Ցանկալի կլիներ, որ Ձեր և մեր բարեկամ պ. Արասխանյանցը նույնպես լիներ մեր խմբի մեջ, բայց այնպես վարվեցավ, որ համարյա կորցրեց մերայինների մոտ իր համակրությունը։ Փոխանակ միանալու մեզ հետ, նա մի քանի տարբեր անձինքներից (հակառակ կուսակցության) առանձին խումբ կազմեց և կամենում էր ինքը վեր առնել «Մշակը», որ, իհարկե, չհաջողվեցավ։ Այդ երիտասարդը ավելի հարգելի կլիներ այստեղ, եթե իրան փոքր-ինչ ծանր ու խոհեմ պահեր։ Նրա թեթևամտությունները ամենին զզվեցնում են։ Մեզ բավական վնասեց «Մշակի» գործի մեջ։*

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյան

*Հ. Գ. Կ. Պոլսից մասնավոր նամակներ ստացա, գրում են, որ Զեյթունի մեջ ապստամբություն կա, Պապիկ իշխանը դարձյալ գլուխը բարձրացրել է...*

## 65. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 3 նոյտ., 1884 ամի

*Հարգելի բարեկամ,*

*Ձեր վերջին նամակը սեպտեմբերի 5-ից գրված, ստացել եմ. պ. Արծրունին «Մշակի» խմբագրությունը մեզ հանձնելով, ուղևորվեցավ արտասահման. այժմ նա ապրում է Զվիցերիայի Ժնև քաղաքում։ Հայտնի չէ, նա կրկին անգամ կվերադառնա՞ իր հայրե-*

նիքը, թե ոչ։ Եթե արտասահմանում մի որևիցե պարապմունք գտավ, շատ հավանական է, որ կմնա այնտեղ։ Բայց ցավալին այն է, որ նա իր հետ տարել է նաև իր կնոջը, որը, որպես այստեղ նրան դժբախտացրեց, նույնպես և ամեն տեղ իր վատ ազդեցությամբ թույլ չի տա, որ նա իր դրությունը ուղղի և մի որևիցե գործով զբաղվի։ Այդ կինը մի հրեշ է, որի իսկական պատկերը Ձեզ ներկայացնելու համար երկար նկարագրություններ պետք են։

«Մշակի» համարները մինչև այսօր որքան ցանկալի էր, դարձյալ չկարողացանք տալ, որովհետև կառավարությունը դեռևս մեր անունով չէ հաստատել այդ լրագրի խմբագրությունը, թեև հարկավոր եղած բոլոր թղթերը ներկայացված են։

Հաստատությունը սպասում ենք Ս. Պետերբուրգից, այժմ այնտեղից կախում ունի ամեն մի լրագրի թույլատվության իրավունքը։ Հույս կա, որ մինչև նոյեմբեր և դեկտեմբեր ամիսները ստացվի իրավունք հրատարակելու, եթե մի որևիցե այլ արգելք առաջ չբերեն։ Այժմ լրագրության և առհասարակ մամուլի դրությունը խիստ դժվարին պայմանների մեջ է գտնվում...

Պ. Արասխանյանցը այստեղ է. նա իր նախկին պաշտոնի մեջ է գտնվում, այսինքն՝ Ներսիսյան և Գայանյան դպրոցներում դասեր է տալիս։ Որքան էլ նրա վարմունքը մեր վերաբերությամբ անվայել էր, բայց կարող եք հավատացած լինել, որ այն րոպեից, երբ «Մշակը» կսկսվի հրատարակվել, մենք կընդունենք նրան մեր ամենալավ աշխատակիցների թվում։ Այժմ կարծես նա իր սխալը հասկացել է և սկսել է մոտենալ մեզ։

Ձեզ կարող երևակայել իմ հոգեկան դրությունը, թե որքան տանջվում եմ ես, որ մնացել ենք առանց սեփական օրգանի, որ «Մշակի» հրատարակությունը այսպես հետաձգվում է։ Նորից պետք է կաթողիկոսական հարց ծագի. եթե գիտենայիք, թե որքա՜ն դարանակալություններ, որքա՜ն դավաճանություններ և որքա՜ն ազգավնաս նենգավորություններ պետք է կատարվեն, իսկ մենք ստիպված պետք է լինենք վատ գործերի լուռ հանդիսատես լինել...

Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝

Հ. Մելիք-Հակոբյան

## 66. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 9 նոյեմ., 1884 ամի

*Հարգելի բարեկամ,*

*Ձեր նամակը, 23 օգոստոսի գրված, ստացել եմ. մեծ ուրախությամբ կկատարեի Ձեր հանձնարարությունը պ. Մարտիրոս Մելիք-Թադևոսյանի մասին, եթե նա իր ժամանակին եկած լիներ։ Թիֆլիսի արհեստավորաց դպրոցում աշակերտներ ընդունվում են օգոստոսի 20-ից սկսած, մինչև այդ ամսի վերջը, բայց Մելիք-Թադևոսյանը շատ ուշացած էր, դասատուններում տեղ չկար, որովհետև ամեն տարի ընդունում են մի որոշ թիվ աշակերտների։ Այսուամենայնիվ, հիշյալ դպրոցի վարչության նախագահը ինձ խոստացած էր, թե աշակերտներից գուցե մի քանիսը կարտաքսեն դպրոցից, այն ժամանակ տեղ կբացվի։ Բայց պ. Մելիք-Թադևոսյանը չսպասեց, այժմ, որպես լսում եմ, իր եղբոր հետ մանրավաճառի փոքրիկ խանութ է բաց արել։*

*«Մշակ» լրագրի խմբագրությունը, իրավ է, անցել է իմ և իմ երկու ընկերների ձեռքը, բայց մինչև այսօր դեռ կառավարությունը չէ հաստատել, թեև թե մեր կողմից և թե պ. Արծրունու կողմից հարկավոր եղած խնդիրքները մատուցված են։ Թույլտվությունը սպասում ենք Ս. Պետերբուրգից, որովհետև այժմ այնտեղից կախում ունի լրագրի հրատարակվելու թույլտվության իրավունքը։ Այն օրից, որ հրաման ստացանք, կսկսենք հրապարակել։ Գ. Արծրունին գնացել է արտասահման, այժմ ապրում է Շվեյցարիայի Ժնև քաղաքում։*

*Ընդունեցեք իմ հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյան

# 1885

## 67. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 18 փետրվարի, 1885 ամի

*Հարգելի բարեկամ,*

*Այստեղ «Ջալալեդդինի» օրինակները բոլոր գրավաճառների մոտ սպառված լինելով, բավական պահանջ կա։ Եթե Ձեզ մոտ*

մնացել են, ուղարկեցեք, իսկ եթե ոչ, խնդրեմ հայտնեցեք տպագրիչին մի 30 օրինակ ուղարկե։ Իմ հասցեն նույնն է, որպես առաջ։

Կաթողիկոսական ընտրության վերաբերությամբ մեծամասնության աչքը Խրիմյանի վրա է, շատ կարելի է, որ նա ընտրվի։ Խրիմյանից հետո Մելիքսեդեկի վրա աչք ունեն։ Մակարի մասին ևս ծակուծուկերում աշխատողներ կան, բայց հազիվ թե կարող կլինեն մի բան հաջողեցնել։

Հայոց դպրոցների հարցի մասին Ձեզ պետք է հայտնի լինի, որ վերջին օրերումս բարձրագույն հրաման էր եղած, որ երկու շաբաթվա ընթացքում դպրոցների մեջ մտցնեն նոր կարգադրություններ, եթե ոչ, կառավարությունը ստիպված կլինի փակել դպրոցները։ Էջմիածնի սինոդը հրավիրել է բոլոր թեմական առաջնորդներին, որ ժողով կազմեն և միախորհուրդ մտածությամբ պատասխան պատրաստեն։ Այդ հարցը այն աստիճան դժվարին և միևնույն ժամանակ վտանգավոր կողմեր ունի, որ հազիվ թե սինոդը կարողանա մի որևիցե նպատակահարմար ելք գտնել առանց կաթողիկոսի, բայց ժամանակ ևս չեն տալիս մինչև կաթողիկոս ընտրվի։

Պ. Արծրունուց նոր նամակ ստացած չենք։ Ապրիլ և մայիս ամիսներում սպասում ենք նրա վերադարձին այստեղ։

Ես այժմ զբաղված եմ մասնավոր աշխատություններով, տպագրության համար շատ բաներ եմ պատրաստել, առանց հույս ունենալու, որ կտպագրվեն. ցենզուրայի խստությունը չափ չունի...

Ընդունեցեք իմ խորին հարգանքս՝

Հ. Մելիք-Հակոբյան

## 68. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 30 հունիսի, 1885 ամի

Հարգելի բարեկամ,

Ես շատ մեղավոր եմ Ձեր առջև, որ Ձեր նամակը թողել եմ առանց պատասխանի, կարող եք հավատացած լինել, որ այդ առաջ է եկել ոչ թե անուշադրությունից, այլ մոռացկոտությունից։ Այսպես շատ է պատահել ինձ հետ, նամակներ եմ ստանում, երբ մի փոքր ուշանում է, կարծում եմ, թե պատասխանը գրել եմ. և

այսպիսով շատերին վիրավորել եմ ես։ Բայց Ձեր իրավացի հանդիմանությունը ինձ համար մի լավ խրատ եղավ, երբ ստացա Ձեր վերջին նամակը, հենց նույն օրը գնեցի մի փոքրիկ գրքույկ, որ նրա մեջ նշանակեմ ստացված նամակները, թե որի՞ն եմ պատասխանել կամ ո՞րն է մնում առանց պատասխանի։ Հուսով եմ, որ այս տեսակ անքաղաքավարություններ այսուհետև իմ կողմից այլևս չեն պատահիլ։

Պ. Արծրունին այստեղ է, մի քանի շաբաթ է, որ վերադարձել է արտասահմանից. դիտավորություն ունի «Մշակի» հրատարակությունը շարունակել և հենց այդ նպատակով էլ եկած է։ Բայց ցենզուրայի կողմից արգելք են դնում, ասելով, որ իբր թե ժամանակը կորցրել է։ Մամուլի օրենքով մի լրագրի դադարման օրից մինչև մեկ տարի խմբագիրը իր իրավունքը պահպանում է, որ կրկին սկսե հրատարակել։ Եվ «Մշակի» վերջին համարը անցյալ տարի դուրս եկավ հուլիսի 11-ին, ուրեմն ժամանակը չէ կորել, որովհետև մինչև այս տարվա հուլիսի 11-ը մի տարի կլրանա։ Վերջապես անտեղի արգելքներ են դնում, երևում է, որ խափանելու դիտավորություն ունեն։ Պ. Արծրունին գանգատվել է, գրել են Ս. Պետերբուրգ, այնտեղից պատասխան ենք սպասում։ Ինչպե՞ս կվճռեն,— դեռ հայտնի չէ։ Պ. Արծրունու արտասահման գնալու ժամանակ մեզ մերժեցին, թույլ չտվին հրատարակել։ Հիմա ինքը խմբագիրն է եկել, նրան էլ թույլ չեն տալիս։

Կաթողիկոսի մասին դեռ լուր չկա, թե կայսրը որի՞ն է հաստատել։ Այստեղ խոսվում է, թե Մելիքսեդեկը առաջարկել է կառավարության՝ իբր թե ինքը չպիտի ընդունե կաթողիկոսությունը, եթե հայոց դպրոցները իրանց նախկին դրությանը չվերածվեն և այդ ուշացնում է հաստատությունը։ Մյուս կողմից՝ մակարականները մեծ աշխատության մեջ են. ասում են, թե վեց եպիսկոպոսներ, որոնց պարագլուխն է Պարղեանց արքեպիսկոպոսը, խնդիր են ներկայացրել, թե կցանկանային Մակարին կաթողիկոս տեսնել, նկարագրելով Մակարի առավելությունները և Մելիքսեդեկի վնասակարությունը, իհարկե, կառավարության տեսակետից։ Եթե այդ մատնությունը ճիշտ լինի, մեծ արատ է դնում հոգևորականության վրա։ Բայց շատերը խոսում են իբրև կատարված իրողություն։ Թե այսպես, թե այնպես այսքանը միայն ճիշտ է, որ կողմնակի և ուղղակի աշխատություններ շատ կան հօգուտ Մակարի և ի վնաս Մելիքսեդեկի։ Իսկ խեղճ Հայրիկը այս անգամ ևս զրկվեցավ այն աթոռից, որին նա և միայն նա էր արժանի։

*Այս տարի դիտավորություն ունեմ հրատարակելու «Կայծերի» երկրորդ հատորը և «Դավիթ-Բեկի» առաջին հատորը։ Վերջինը պետք է պատկերազարդ լինի։ Ձեզ կխնդրեի, որ ինձ տեղեկություն տայիք, արդյո՞ք հնարավոր կլինի, որ պատկերները Մոսկվայում նկարել և փորագրել տայիք։ Այդ մասին, եթե հարմար կգտնեք, խորհրդակցեցեք պ. Ջ. Մսերյանցի հետ. նա «Փարոսի» հրատարակությամբ ցույց տվեց, որ պատկերներ պատրաստել տալու մեջ բավական ճաշակ ունի։ Այստեղ ոչ լավ նկարիչ կա և ոչ էլ լավ փորագրող։ Մենք կարող ենք ուղարկել Մոսկվա միայն պատկերների ստվերագիծը (էսքիզները), իսկ այնտեղ նրանց համեմատ պետք է նկարել և փորագրել։ Պատկերները կլինեն «Կայծերի» առաջին հատորի դիրքին համեմատ։ Գրեցեք, խնդրեմ, մոտավորապես որքան կարժենա յուրաքանչյուր պատկերը, որ նրա համեմատ ծախքերի մասին հոգանք։ Մեկ հատորի համար հարկավոր կլինի ոչ ավելի քան 10 պատկեր։*

*Սպասելով Ձեր պատասխանին, կմնամ Ձեր ամենաջերմ հարգող՝*

Հ. Մելիք-Հակոբյան

# 69. [ԼԵՈՅԻՆ]

[1885 թիվ, 11-ը հուլիսի]

*Պարոն Արծրունին վերադարձավ արտասահմանից, գլխավորապես այն նպատակով, որ «Մշակը» կրկին հրատարակե։ Բայց ցենզուրական կոմիտետը թույլ չտվեց, հայտնելով, թե իրավունքը կորցրել է, թեև իսկապես կորցրել չէր։ Յուրաքանչյուր խմբագիր, երբ իր լրագիրը դադարեցնում է, մինչև մեկ տարի իր իրավունքը պահպանում է կրկին հրատարակվելու։ Բայց «Մշակի» տարին լրացած չէր, երբ պ. Արծրունին կամեցավ նորից սկսել հրատարակությունը, այնուամենայնիվ, նրան մերժեցին, ասելով, թե նոր կարգադրություն է դուրս եկել և այլն։*

Րաֆֆի

# 70. [ԳՐԻԳՈՐ ԱՐԾՐՈՒՆՈՒՆ]

Թիֆլիս, 18 նոյեմբեր, 1885 ամ.

Հարգելի Գրիգոր!

Ստացա Ձեր նամակը։ Ուրախ եմ, որ «Մշակը» իրավունք ստացավ կրկին հրատարակվելու. կատարյալ հաջողություն եմ ցանկանում։

Ես սպասում էի, որ Դուք կհրավիրեք ինձ և ինձ հետ «Մշակի» մի քանի բարեկամներին՝ միասին խորհելու, թե ինչպե՞ս և ի՞նչ կարգադրությամբ պետք է սկսել նրա վերստին հրատարակությունը, բայց Դուք հրավիրում եք ինձ, որպես «Մշակի» հին աշխատակցին, միայն աշխատակցելու։ Շնորհակալ եմ Ձեր բարի ուշադրության համար, բայց շատ ցավում եմ, որ ինձ անհնար կլինի ընդունել Ձեր առաջարկությունը։

«Մշակի» դրությունը անորոշ տեսնելով, Դուք, որպես հայտնում եք Ձեր նամակի մեջ, դժվարանում եք վճռել, թե ե՛րբ և ո՛րքանով կարող կլինեք վարձատրել իմ աշխատությունները։ Ես ամենայն սիրով կհարմարվեի «Մշակի» դրության հետ, եթե գիտենայի, որ «Մշակի» փողերը միմիայն «Մշակի» վրա գործ կդրվեին և ավել փող չէր մնա ինձ վարձատրելու համար, իհարկե, Ձեզ մի չափավոր ապրուստ դուրս գալուց հետո։ Այո՛, ես կհարմարվեի և կսպասեի իմ վարձատրությունը «Մշակի» հաջողությունից, նրա բաժանորդների բազմությունից։ Բայց, որպեսզի այդ հաջողությունը հուսալի լինի, հարկավոր է, նախ, որ նրա խմբագրությունը օրինավոր պայմանների մեջ դրվի, երկրորդ, որ մեր հարաբերությունները կատարելապես որոշված լինեն՝ թե՛ դեպի Ձեզ, և թե՛ դեպի «Մշակը»։

Ես երբեք այսպես խստապահանջ չէի լինի, եթե մեր մեջ մնացած լիներ առաջվա մտերմությունը և փոխադարձ հավատը։ Բայց անցյալ փորձերը, այն դա՛ռն, տխո՛ւր փորձերը ինձ սովորեցրին, որ ավելի լավ է գործի սկզբից ամեն պայման որոշել, քան թե ապագայի համար անբավականությունների պատճառներ թողնել։

Խնդիրը բոլորովին այլ կլիներ, եթե իմ դրությունը փոքրիշատե ապահովված լիներ, և ես գրեի միմիայն իմ անձնական բավականության համար։ Բայց ես ապրում եմ իմ գրական աշխատանքով և, բացի ինձանից, մի ամբողջ ընտանիքի ապրուստը պետք է այդ աշխատանքից հայթայթվի։ Ուրեմն ես չեմ կարող չգնահատել իմ աշխատանքը, թեև ոմանք, մինչև անգամ քաղա-

քատնտեսներ, սովորել են աշխատանքի վարձատրությունը ստացողի կողմից շահասիրություն կոչել...

«Մշակի» հրատարակությունը այժմ ավելի դժվար է և ավելի աշխատանք է պահանջում, քան որևէ ժամանակ։ Նրա խմբագրատան մեջ ծառայողը ոչ միայն պետք է գրե, այլ ուրիշ շատ կողմնակի աշխատանքներ պետք է կատարե, որ թերթը տարածվի, որ բաժանորդների թիվը ավելանա։ Նա միևնույն ժամանակ պետք է մղե ամենասաստիկ պատերազմ հակառակ կուսակցությունների հետ, որոնք իրանց ուժերով անհամեմատ զորավոր են և կզորանան։ «Մեղուն» այժմյան կաթողիկոսի օրով կղերի կիսապաշտոնական օրգան կդառնա։ Թեմակալ առաջնորդները, վիճակների հաջորդները, քահանաները, նրա գործակալները կլինեն, ամեն տեղ կտարածեն, գուցե «Արարատի» նման պարտադիր կանեն շատերին ստանալ։ «Նոր-դարը» պատրաստություններ է տեսնում առաջիկա տարվանից նոր ուժերով հանդես գալու,— «Արձագանքը» նույնպես։ Ինչո՞վ պետք է «Մշակը» մրցե դրանց հետ։ Իր անցյալո՞վ։— Այդ բավական չէ։

Ես ավելի ազնիվ եմ համարում անախորժ ճշմարտություններ ասել Ձեզ, քան թե շատերի նման շողոքորթել։ Դուք թե «Մշակի» անունը և թե Ձեր անցյալը վտանգի տակ դրած կլինեք, եթե Ձեր այժմյան ուժերով կսկսեք «Մշակի» հրատարակությունը։ Այժմ հասարակությունը ավելի պահանջող է դարձել, ավելի մեծ ակնկալություններ ունի «Մշակից»։ Զզված լինելով մյուս պարբերական հրատարակություններից, նա ամեն ինչ «Մշակից» է սպասում։ Եթե Դուք չկարողացաք նրա պահանջներին բավականություն տալ,— ամեն հույս հաջողության համար պետք է կորած համարել։ «Մշակի» գոյությունը և նրա հաջողակ հարատևությունը նույնքան մոտ լինելով իմ սրտին, որքան Ձերին, ես թույլ եմ տալիս ինձ պարզապես ասել Ձեզ, որ Դուք, մանավանդ Ձեր այժմյան վիճակում, անկարող կլինեք գործի ծանրությունը միայնակ տանել,— Դուք ավելի խոհեմ վարված կլինեք, եթե կհավաքեք Ձեր շուրջը մի խումբ համերաշխ անձինք, որոնք թե՛ բարոյապես, և թե՛ նյութապես կապված լինեն լրագրի խմբագրատան հետ, որոնք իրանց մեջ բաժանեն բոլոր աշխատանքը։ Փույթ չէ, եթե այդ խումբը փոքր լինի թվով, և ավելի լավ է, որ փոքր լինի, բայց անհրաժեշտ է, որ լինի նա։ Թե ի՞նչ անձինքներից և ինչպե՞ս կկազմակերպեք այդ խումբը,— դա Ձեր գործն է, միայն առանց

խմբի որևէ հաջողություն սպասելը՝ պետք է կատարյալ ինքնախաբեություն համարել։

Դուք բոլորովին կղզիացած եք, պ. Արծրունի և այդ դրությունը ոչ սակավ թուլացրեց Ձեր եռանդը, խլեց Ձեր հավատը թե՛ դեպի աշխարհը, և թե՛ դեպի գործը և դրեց Ձեզ անխուսափելի վհատության մեջ։ Դա սարսափելի դրություն է, երբ մարդ կորցնում է հավատը։ Նա սկսում է այնուհետև իր հետ պատահած ամեն չարիքների, ամեն դժբախտությունների արմատները ուրիշների մեջ որոնել, առանց ինքն իրան քննելու։ Նրա հավասարակշռությունը՝ իր ներքին աշխարհի և արտաքին աշխարհի հետ՝ խախտվում է...

Դուք ապրում եք անապատի մեջ, պ. Արծրունի։ Ձեր մթնոլորտի օդը սաստիկ ծանրացած է, սաստիկ սպանիչ է. պետք է մի նոր հոսանք բաց թողնել այնտեղ, որ կենդանություն ստանա, եթե ոչ, Դուք կորած եք։

Դուք սիրում եք ճշմարտությունը այն ժամանակ միայն լսել, երբ չարիքը արդեն կատարված է, բայց սկզբում նա վրդովեցնում է Ձեզ։ Ես համոզված եմ, որ այդ նամակը նույնպես կվրդովեցնե Ձեզ, փույթ չէ, բարկացե՛ք, բայց ասածս ճշմարտություն է, թեև կծու է։

Դուք առանց ընկերների, և լավ ընկերների, չեք կարող ապրել։ Ձեր ամենալավ աշխատությունները միշտ եղել են արդյունք տաք վիճաբանությունների և կենդանի խոսակցությունների բարեկամների շրջանում։ Պետք է կրկին կենդանացնել այդ շրջանը, որպեսզի փարատվի Ձեր մթնոլորտի մռայլն ու վհատությունը, և կրկին վերադառնա Ձեր վաղեմի եռանդն ու զորությունը։

Դուք պետք է ցած դնեք Ձեր դիկտատորի գավազանը և ընկերների հետ ընկերաբար վարվեք։ Դուք պետք է հավասար բաժանեք թե՝ աշխատանքը, թե՛ արդյունքը, թե՛ իրավունքները, և թե՛ պարտականությունները։ Այլ կերպով «Մշակը» Ձե՛զ, միայն Ձեզ չի հաջողվի հրատարակել։

Եթե Դուք լինեիք Ձեր առաջվա դրության մեջ, ես այդ խորհուրդները չէի տալ Ձեզ։ Ես միշտ այն կարծիքի էի, որ մեր մեջ գործերը դեռ ընկերաբար վարելը շատ դժվարություններ է հարուցանում, հարկավոր է, որ մեկը դիկտատոր լինի։ Բայց լրագրական գործում այդ կարող է հաջողվել այն ժամանակ միայն, երբ դիկտատորը հարուստ մեկը կլինի, փողը կտա ու կասե՝ դու լեզուդ լռու պահի՛ր և միայն քո գործը կատարի՛ր։

Այժմ Դուք ինքներդ Ձեր ապրուստի միջոցները սպասում եք

«Մշակից» և այդ ավելի պատճառ պետք է տա Ձեզ՝ հաստատ հիմունքների վրա դնե նրա գոյությունը, որպեսզի Ձեր ապրուստն ևս փոքրիշատե ապահովված լինի։

Բարոյական կապ, գաղափարներ, իդեալներ, զոհաբերություն,— այդ բոլորը շատ գեղեցիկ խոսքեր են, բայց դրանք լինում են գործի սկզբում միայն, և իր ժամանակին չխնայվեցան «Մշակի» հաջողության համար։ Իսկ երբ գործը մի որոշ ձև է ստանում, այն ժամանակ նյութական հարցը ինքնըստինքյան ներս է սողում, Միթե կարելի՞ է փոխել կյանքի անհրաժեշտությունները։ Ի՞նչ պետք է արած, որ մարդիկ այլապես չեն ստեղծված, որ առանց ուտելու, առանց խմելու գործեին։

Ես կատարելապես հաստատում եմ Ձեր կարծիքը իմ մասին (որպես շատերի մոտ բամբասել եք), որ ես այժմ մատերիալիստ եմ դարձել։ Աղքատությունը սովորեցրեց ինձ այդ։ Իմ կյանքում կրած ամենադառն փորձերից ես համոզվեցա, որ քաղցած փորով ոչինչ չէ կարելի շինել, իսկ այն օրը, եթե գրպանումս մի ռուբլի ունեմ ճաշելու համար, իմ գրավոր աշխատանքը ավելի գեղեցիկ է դուրս գալիս։ Մի՞թե այդքան ծանր հարվածներ կրելուց հետո, Դուք ևս չհամոզվեցաք, որ փողը լավ բան է։

Թե ի՞նչ տնօրինություններ եք արել «Մշակի» առաջիկա տարվա հրատարակության համար,— ինձ հայտնի չէ։ Բայց այդքանը պետք է ի նկատի ունենալ, որ «Մշակի» գալոց տարվա հաջողությունը կախված է ներկա տարվա վերջին ամիսների գործողություններից։ Դուք բավական ժամանակ կորցրիք, իսկ եթե այդ մնացած ամիսներն ևս ապարդյուն անցկացնեք, ապագա հաջողությունը շատ երկբայական պետք է համարել։

Վերջացնում եմ նամակս, հայտնելով Ձեզ, եթե այդ մոտ ժամանակներում մենք որևէ համաձայնության չհասանք, ես ստիպված կլինեմ հայտարարել, որ «Մշակի» հետ իմ գործակցությունը վերջացած է։ Այդ ես պետք է անեմ, ահա ինչ պատճառով. դեռևս թե՛ այստեղ, և թե՛ գավառներում ինձ չեն բաժանում «Մշակից» և ամեն կողմից զանազան հարցերով ձանձրացնում են ինձ. դեռևս իմ նամակները և փողի ծրարները «Մշակի» խմբագրատան անունով են ուղարկվում, և բացի դրանցից, որ ամենակարևորն է, չեմ ծածկում Ձեզանից, եթե ես «Մշակից» բաժանվելու լինեմ, ինձ կհարկավորվի մի այլ խմբագրատան մեջ պարապմունք գտնել (իհարկե, բացի «Մեղուի» և «Նոր դարի»), կամ մտածել մի սեփական պարբերական հրատարակություն սկսելու մասին։

*Ցանկանում եմ Ձեզ կատարյալ հաջողություն, տացե աստված, որ իմ հայտնած կարծիքները «Մշակի» ապագայի մասին բոլորովին սխալ հայտնվեին։*

Րաֆֆի

## 71. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 24 նոյեմբ., 1885 ամի

*Հարգելի բարեկամ*
*Մելքոն Կասպարիչ,*

*Ձեր վերջին նամակը օգոստոսի 4-ից գրած ստացել եմ. շնորհակալ եմ Ձեր հոգածության համար պատկերների մասին, բայց դեռ չեմ վճռել, թե որքան հարմար է Մոսկվայում պատրաստել տալը, որովհետև նույն նպատակով ես բանակցությունների մեջ եմ գտնվում և Գերմանիայում պ. Անդրեաս Արծրունու հետ, և Վենետիկում հայր Ալիշանի հետ։*

*Պ. Արծրունին կրկին իրավունք ստացավ «Մշակը» հրատարակելու. այս տարի մի քանի համարներ միայն կտա, իսկ եկող տարվանից կսկսվի կանոնավոր հրատարակությունը։ Դեռևս հայտնի չէ՝ արդյո՞ք պիտի աշխատակցեմ, թե ոչ, որովհետև ես և մի քանի երիտասարդներ առաջարկում ենք պ. Արծրունուն, որ նա մի խումբ կազմե մշտական աշխատակիցներից և ընդհանուր ուժերով սկսե հրատարակությունը և ոչ թե միայնակ։ Ընթերցող հասարակության պահանջներին բավականություն տալու համար հարկավոր է, որ լրագրի խմբագրությունը լավ կազմված լինի, նրա յուրաքանչյուր բաժինը իր առանձին գրողն ունենա, որ համարները անբովանդակ և դատարկ դուրս չգան։*

*Պ. Արծրունին միշտ պատճառ է բերում, թե փող չունի և չի կարող վճարել և այլն։ Բայց այդ խումբը պատրաստ կլինի և ձրի աշխատել, միայն թե իր կատարած պարտականությունների հետ և որոշ իրավունքներ ունենա խմբագրատան մեջ։ Իսկ այդ իրավունքներն էլ չի կամենում տալ նրանց պ. Արծրունին, ցանկանում է առաջվա նման միապետ լինել իր խմբագրատան մեջ։ Լրագրի շահերը պահանջում են, որ նա փոքրիշատե զիջողություններ անե, որովհետև նրա դրությունը փոխվել է և պետք է բոլորովին նոր պայմանների մեջ դնե գործի սկզբնավորությունը։ Ձեր բարեկամ*

պ. Արասխանյանը նույն խմբի մեջ կլինի, եթե հիշյալ առաջարկությունը չընդունվեցավ, ես կհրաժարվեմ աշխատակցելուց, որովհետև «Մշակի» համար ոչինչ հաջողություն չեմ սպասում ես, եթե անկարգ դրության մեջ կսկսվի նրա հրատարակությունը։ Ամեն ոք ցանկանում է օգնել պ. Արծրունուն, բայց նա էլ պետք է մտածե, եթե իր աշխատակիցներին փողով վարձատրել չէ կարող, գոնե պետք է բարոյապես վարձատրե։

*Մակարի ընդունելությունը այստեղ խիստ փառավոր կերպով կատարվեցավ, բայց այդ ավելի պոլիցիական ընդունելություն էր, քան թե ժողովրդական։ Ժողովուրդը սառնասիրտ մնաց, համակրության ոչ մի ցույց չարտահայտեց, ընդհակառակն, բոլորի դեմքերի վրա նկատվում էր խորին դժգոհություն։*

*Նա դեռ այստեղ է, դպրոցների բացման մասին իշխան Դոնդուկովի հետ բանակցություններ է անում։ Ասում են, որ իշխանը խոստացել է այդ, մոտ օրերում գնալու է Պետերբուրգ, որտեղ կաշխատե բարեփոխել տալ մեր դպրոցների մասին կազմած ծրագիրը և բացման իրավունք կստանա։ Ես հավատում եմ այդ խոստմանը, միայն իմ կարծիքով ծրագրի բարեփոխությունը շատ աննշան կլինի, որովհետև որպես լավում է, Մակարը՝ արդեն մի քանի կարևոր կետերում համաձայնություն է հայտնել։*

Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝

Հ. Մելիք-Հակոբյան

## 72. [ԼԵՌՅԻՆ]

[1885 թիվ, 15-ը դեկտեմբերի]

«Մշակը» առաջիկա հունվարից կսկսվի հրատարակվել, բայց դեռ հայտնի չէ՝ արդյոք ես պիտի աշխատակցե՞մ, թե ոչ, որովհետև դեռ իմ և պ. Արծրունու մեջ համաձայնություն չէ կայացել մեր պայմանների մասին։ Նրա այժմյան վիճակը ի նկատի առնելով, ես առաջարկեցի, որ մի խումբ կազմվի, և ամենքը ընկերաբար կատարեն լրագրի հրատարակության գործը, այնպես որ, խմբագրատան անդամների իրավունքները և պարտավորությունները որոշված լինեն, և խմբագրատունը իր մեջ ուժ ու համերաշխություն ունենա։ Բայց նա, որպես երևում է, դժվարանում է ընդունել այդ առաջարկությունը, ցանկանում է առաջվա նման ինքը

*միայնակ լրագրի թե՛ տերը, և թե՛ կառավարիչը լինել։ Այսպես, իմ կարծիքով, հազիվ թե նա կարող կլինի հասարակության գոհացնել, որովհետև նյութերի մեծ կարոտություն կունենա և ստիպված կլինի դատարկ, անբովանդակ համարներ դուրս տալ և մյուս լրագրերի պես հասարակությանը զզվացնել։ Մի մարդ, առանց հիմնավոր և ուժեղ խմբագրատան, չէ կարող մի օրինավոր լրագիր հրատարակել, որքան էլ ինքը տաղանդավոր լինի։ Շատ ցավում եմ, որ ես պետք է թողնեմ իմ սիրած լրագիրը, և ցավում եմ ավելի այն պատճառով, որ նրա համար մի լավ ապագա չեմ տեսնում...*

Րաֆֆի

## 1 8 8 6

## 73. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 8 նոյիսի, 1886 ամի

*Հարգելի բարեկամ*
*պարոն Մ. Փանյանց,*

*Շնորհակալությամբ ստացա իմ գրքերի մնացած հաշվից գոյացած 15 ռուբլ. 30 կոպ., ստացել եմ նաև Ձեր վերջին երկու նամակները։ Չեմ կարող խոսքերով բացատրել այն մեծ գոհունակությունը, որ Դուք Ձեր առաքինական բարեսրտությամբ պատճառեցիք ինձ այսքան տարվա ընթացքում։ Շնորհակալ եմ, ազնիվ պարոն, թող իմ սրտագին երախտագիտությունը վարձատրություն լինի Ձեր աշխատության։ Դուք միշտ բարի եք եղել դեպի հանգուցյալ Նազարյանցը և նույն բարությունը ցույց տվեցիք ինձ։ Եթե հայերը Ձեր հոգին ունենային, նրա գործիչները շատ դժբախտ չէին լինի։*

*Լավ եք մտածել, որ հեռանում եք մայրաքաղաքի աղմուկից և Ձեր կյանքի վերջին օրերը ցանկանում եք հայրենյաց գրկում անցկացնել։ Թեև Ձեր բացակայությունից հետո Մոսկվայի եկեղեցիները շատ պիտի կորցնեն իրանց բարեզարդությունից, այնուամենայնիվ Ձեզ պետք է հանգստանալ, և հանգստանալ հայրենյաց լռության մեջ, հին բարեկամների և ազգականների շրջանում։ Դուք*

*Ձեր կյանքում շատ եք գործել, և Ձեր պարտքը պետք է վճարած համարեք։*

*Կցանկանայի այստեղ տեսնել Ձեզ և մոտից սեղմել Ձեր բարեկամական ձեռքը։ Ձեզ, իհարկե, դժվար կլինի գտնել իմ բնակարանը, բավական է, եթե հայտնեք «Կենտրոնական գրավաճառանոցում», որ Դուք եկել եք, և ես ավելի շուտով կգտնեմ Ձեզ։*

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյան

## 74. [ԱՌԱՔԵԼ ԾԱՏՈՒՐՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 25 օգոստ., 1886 ամ.

*Մեծապատիվ պարոն*
*Ա. Ծատուրյան.*

*Խորին շնորհակալությամբ ստացա Ձեր ծախքով տպագրված «Գաղտնիք Ղարաբաղի» կոչված գիրքը։ Բայց ցավելով պետք է հայտնեմ Ձեզ, որ զանազան խաբեբաներ, օգուտ քաղելով Ձեր բարեսրտությունից, Ձեզ տպագրել են տվել մի գիրք, որ հավիտյան պետք է* գայթակղության քար *դառնա հայոց պատմական գրականության մեջ և պետք է շատերին մոլորեցնե։*

*Եթե այդ գիրքը լիներ իսկապես մի* հին գրվածք, *ինչպես ներկայացրել է Ձեզ Մակար վարդապետը, շատ հասկանալի է, որ Դուք մեծ ծառայություն արած կլինեիք հայոց գրականությանը, տպագրելով նրան։ Բայց այդ գիրքը նույն իսկ Մակար վարդապետի աշխատությունն է, միայն հին անվան տակ ծածկված, որպեսզի հետաքրքրություն շարժե ու գնողներ հրապուրե։*

*Պատմական գրականության մեջ այդպիսի խարդախ գրքերի հեղինակը նույն նշանակությունն ունի, ինչպես մի մարդ կեղծ վկայականներ կամ կեղծ թղթադրամներ է շինում։ Եվ Մակար վարդապետը արել է այդ աններելի խարդախությունը։*

*Այդ խոսքերով ես նպատակ չունիմ վշտացնել Ձեր սիրտը, որովհետև Ձեր ցանկությունը բարի է եղել, բայց Ձեզ խաբել են։*

*Դուք կարդացել եք և կկարդաք այդ գրքի մասին մինչև անգամ գովասանական հոդվածներ լրագրների մեջ։ Բայց դրանց գրողները կամ տգետներ են և պատմությունից ոչինչ տեղեկություն չունին, կամ ամենաստոր շողոքորթներ են։ Ես սպասում եմ,*

*մինչև ամենքը իրանց ասելիքը ասեն, հետո փաստերով կապացուցանեմ, որ այդ գիրքը Աբրահամ կամ Ապրես Բեկնազարյանների գործը չէ, այլ Մակար վարդապետի կեղծ աշխատությունն է։*

*Վերջացնելով նամակս, բարեկամական խորհուրդ կտայի Ձեզ, որ Դուք այդ մեղքը Ձեզանից հեռացնելու համար, քանի որ գիրքը բոլորովին տարածված չէ, մի օրինակ ուղարկեցեք Թիֆլիսի «Տպագրական ընկերությանը» և խնդրեիք, որ քններին և իրանց կարծիքը հրապարակավ հայտնեին, որպեսզի ապագայում այդ գիրքը պատմության մեջ մոլորության պատճառ չդառնար։*

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյան (Րաֆֆի)

## 1 8 8 7

## 75. [ԱԼԵՔՍԱՆԴՐ ԱԲԵԼՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 28 հուլիսի, 1887 ամի

*Մեծապատիվ պարոն Աղեքսանդր Հ. Աբելյանց,*

*Պարոն Շիրվանզադեն հաղորդեց ինձ Ձեր բարի ցանկությունը, որով կամեցել էիք նպաստել «Կայծերի» 2-րդ հատորի տարածմանը Բաքվի մեջ։ Շնորհակալ եմ Ձեր անկեղծ համակրության համար։ Ամսույս 25-ին փոստով ուղարկվեցավ Ձեզ 22 օրինակ, որից մեկը կընդունեք իմ կողմից Ձեզ նվեր, մեկը կընծայեք Ձեր գործավորների ընթերցարանին, իսկ մնացյալ 20-ը կվաճառեք։*

*Նույն կապոցի մեջ կգտնեք 20 անդորրագիր «Սամվելի» բաժանորդագրության։ Խնդրեմ տարածեք Ձեր ծանոթների մեջ։*

*Դեռ «Սամվելի» առաջին գլուխները նոր էին լույս տեսել «Արձագանքի» մեջ, ես շատ տեղերից նամակներ ստացա, ցանկություն էին հայտնում այդ վեպը առանձին գրքով տպագրված տեսնել։ Իմ ընթերցողների բաղձանքներին բավականություն տալու համար ես սկսեցի առանձին գրքով արտատպել «Արձագանքից»։ Մինչև այժմ տպված է 34 թերթ, այսինքն՝ 534 երես։ Հույս ունեմ, մինչև նոյեմբեր ամիսը տպագրությունը վերջանա։ «Սամվելի» առաջին հատորը բաղկացած կլինի երեք գրքերից, թե՛ դիրքը, և թե՛ ծավալը ավելի մեծ կլինի, քան թե «Կայծերի» 2-րդ հատորը։*

Ներկայումս գիրքը և ժողովրդի մեջ ընթերցանություն տարածելը այն փրկարար միջոցներից մեկն է, որ կազատեն նրան շատ մոլորություններից։ Նոր ժամանակակից և թարմ մտքերի հետ ծանոթանալով նա կուղղե յուր ճանապարհը, յուր ընթացքը։ Եվ «Սամվելը» այդ իսկ նպատակով գրված է, թեև նա պատմական վեպ է։ Մեր այժմյան դրությունը նույն դրությունն է, ինչ որ էր չորրորդ և հինգերորդ դարերում։ Բայց ցավալին այն է, որ ընթերցանություն տարածելու գործը մեզանում խիստ դանդաղ և խիստ թույլ կերպով է առաջ գնում։ Պատճառը, իմ կարծիքով, այն է, որ մեզանում կրթության գործը միակողմանի է և սահմանափակ։ Վերջին ժամանակներում ամենքն իրանց խելքն ու միտքը տվեցին դպրոցներին և ամեն լույս նրանից էին սպասում, առանց մտածելու, որ դպրոցը չէ կարող այն տալ, ինչ որ կարող է տալ մի լավ և նպատակահարմար կերպով մշակված ընթերցանության գիրք։ Իմ աշխատությունների նպատակը մինչև այսօր եղել է և պիտի լինի՝ մեր ժողովրդին նոր մտքեր տալ և նոր գաղափարների հետ ծանոթացնել։ Բայց մեր հասարակության մտածող մասը, որ փոքրիշատե հասկանում է այդ, պետք է նպաստի հեղինակին, որ նա կարողանա հառաջ տանել յուր սկսած գործը։ Ես ոչ ոքից ողորմություն չեմ պահանջում։ Ես պահանջում եմ այսքանը միայն, որ հայ հասարակությունը, վերջապես, հասկանա, որ գիրքը նույնպիսի մի կենսական պահանջ է, որպես հացը և ջուրը, առանց որոց ապրել չի կարող նա։ Իսկ առանց գրքի նա կմեռնի թե՛ բարոյապես, և թե՛ մտավորապես...

Բաքուն, որ շատ հիմար բարեգործությունների մեջ ցույց է տվել յուր եռանդը և առատաձեռնությունը, բայց իմ վերաբերությամբ մինչև այսօր անտարբեր է գտնվել։ Իմ գրքերը այստեղ համեմատաբար ավելի սակավ են տարածվում, քան մի որևէ աննշան քաղաքում։

Ձեր եղբորը հայտնի է իմ այժմյան դրությունը, եթե երկար շարունակվեց, ես ցավելով պետք է թողնեմ այն ասպարեզը, որ սուրբ էր, որ նվիրական էր ինձ համար։ Այսքան տարիների աշխատություններից հետո, չքավորության մեջ մեռնելը շատ ախորժելի բան չէ... մանավանդ, որ առողջությունս բոլորովին քայքայված է...

Թողնենք այդ տխուր իրողությունները։ Եթե Անդրկասպյան երկրների, նոր հայ գաղթականների մեջ ծանոթներ կամ բարեկամներ ունեք, մատնացույց արեք ինձ, ես կուղարկեմ նրանց

«Սամվելի» բաժանորդագրության մի քանի անդորրագրեր։ Այդ հիմարները, որպես լսեցի, մի գրքի տպագրության համար 2000 ռուբլի փող են հավաքել, որը երկրորդ «Գաղտնիք Ղարաբաղի» պետք է դառնա մեր գրականության մեջ...

Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝

Րաֆֆի

Թե՛ գրքերի, և թե՛ բաժանորդների արժաքը խնդրեմ շտապեք շուտով հասցնել ինձ, որովհետև նրանք այժմ պետք են «Սամվելի» տպագրության ծախքերը հոգալու։

## 76. [ԽԱՉԱՏՈՒՐ ՏԵՐ-ԶԱՔԱՐՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 18 օգոստոսի, 1887 ամի

Մեծապատիվ պարոն
Խ. Տեր-Զաքարյանց,

Ստացա Ձեր և մահտեսի Սիմոնի ստորագրությամբ նամակը, որով մի վարժուհի և մի վարժապետ եք պահանջում տեղվույդ դպրոցների համար։ Վարժուհի՝ պարոն Սաrիկը այստեղ եղած ժամանակ՝ վարձեց. այդ Ձեզ պետք է հայտնի լինի։ Իսկ ինչ որ վերաբերում է վարժապետին, կա մի վարժապետ, որ Ձեր հայտնած տարրկաների համար շատ հարմար է։ Դա միևնույն անձնավորությունն է, որի մասին թե՛ ես, և թե՛ «Մշակի» խմբագրությունը հեռագրել է Ձեզ, բայց տակավին պատասխան չէ ստացվել։ Ազգանունը Գյուլմարյանց է, ավարտել է Ներսիսյան դպրոցում և մի քանի տարի վարժապետություն է արել։ Բնիկ ագուլիսեցի է։

Ես խոստացել էի նրա համար տարեկան 500 ռուբլի ռոճիկ և 30 ռուբլի ճանապարհի ծախք։ Բայց «Մշակի» խմբագրատունը, որպես լսում եմ, խոստացել է 600 ռուբլի։ Հայտնի բան է, որ նա այդ վերջին գումարով կհոժարվի գալ։

Չգիտեմ ի՞նչ եք մտածել, որ երեք, միմյանց բոլորովին հակառակ խմբագրատների՝ հանձնարարություն եք արել վարժապետ վարձելու, առանց ի նկատի առնելու, որ յուրաքանչյուրը յուր կուսակիցները և յուր մարդիկն ունի, իհարկե, նրան կառաջարկե, և այսպիսով կծագեն տարաձայնություններ։ Եթե այդ երեք խմբագրատներն վարձեին երեք վարժապետներ և ուղարկեին, նրանք ամենայն իրավունքով յուրյանց ռոճիկները կստանային Ձեզանից։ Եվ Սպանդարյանը կամենում էր մի այդպիսի բան անել։

*Վերջապես, բարեբախտաբար «Մշակի» խմբագրատունը, առանց ինձ հետ խորհրդակցելու, նույն անձին է առաջարկել, որին ես եմ առաջարկել։ Եթե կամենում եք, կարգադրեցեք, որ ճանապարհ դնենք։ Միայն մի ուշացրեք, որովհետև նրան ուրիշ տեղերից ևս հրավիրում են, և Թավրիզի հուսով մնալով, կզրկվի յուր պաշտոնից։*

*Դարձյալ պարոն Խաչատուր, հանգուցյալ աղա Աբրահամը իմ «Կայծեր» կոչված վիպասանության համար բաժանորդագրություն էր արել Թավրիզում, և այդ վեպի երկրորդ հատորն ևս լույս տեսնելով, ես պետք է ուղարկեմ բաժանորդներին։ Ծրարիս մեջ կգտնեք բաժանորդների անվանական ցուցակը, խնդրեմ, հայտնեք ինձ, թե որո՞նք գտնվում են այնտեղ, և որո՞նք բացակա են, որպեսզի նրանց թվի համեմատ գրքեր ուղարկեմ։ Դուք, հույս ունիմ, որ կընդունեք այդ ծանրությունը՝ հանձնելու ըստ պատկանելույն։ Այս շաբաթ փոստով ուղարկեցի միայն 10 հատ, բայց ոչ պասիլ*կայի ձևով, այլ բանտրոլով *(խաչակապով), երկու գիրք միասին կապած։*

*«Կայծերի» բոլոր բաժանորդները վճարել են ճանապարհի ծախք առաջին և երկրորդ հատորների համար 50 կոպեկ։ Դուք ևս ստացեք Թավրիզի բաժանորդներից, բայց եթե դժգոհություն հասնելու լինեն, հարկավոր չէ։*

*Ընդունեցեք իմ հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյան

*Հ. Գ. Նամակս գրել, վերջացրել էի, հետո նկատեցի, որ Թավրիզի բաժանորդների ցուցակը թղթերիս մեջ չէ երևում։ Եթե մինչև գալոց փոշտի օրը չգտա և չուղարկեցի, կնշանակե, որ իմ մոտ խուզարկություն եղած ժամանակ մյուս թղթերիս հետ տարած են։ Այդ դեպքում շատ դժվար պետք է լինի իմանալ, թե ովքե՞ր էին այնտեղի բաժանորդները։ Առաջին հատորը հանձնըվել է, որքան հիշում եմ, Ֆեներջյանի ձեռքով. կարելի՞ է արդյոք իմանալ, թե ովքե՞ր են ստացել առաջին հատորը։ Ինձ այսքանը միայն հայտնի է, որ Թավրիզի բաժանորդները 16 հոգի են եղել և ոչ ավելի, և 16 գիրք պետք է բաժանվի։ Բայց գուցե, միևնույն անձը մի քանի օրինակի գրված լինի։ Այդ դեպքում, բաժանորդների թիվը 16-ից կպակսի, բայց գրքերի քանակությունը նույնը կմնա, այսինքն 16 հատ։*

Հ. Մ.

## 77. [ԽԱՉԱՏՈՒՐ ՏԵՐ-ԶԱՔԱՐՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 12 նոյեմ., 1887 ամի

*Մեծապատիվ պարոն*
*Խ. Տեր-Զաքարյանց,*

*Ստացա Ձեր 19 սեպտեմբերից գրված նամակը, շնորհակալ եմ Ձեր ուշադրության համար, որ ուղարկել եք Թավրիզի և Արդաբիլի բաժանորդների ցուցակը։ Թավրիզի բաժանորդների թիվն է 16, իսկ Արդաբիլինը՝ 19. երկուսը միասին՝ 35 օրինակ։*

*Ես ուղարկել եմ Ձեզ մի անգամ 10 օրինակ, իսկ այս փոստայով դարձյալ ուղարկեցի 30 օրինակ, ընդամենը՝ 40 օրինակ։ Եթե բաժանորդներին հանձնելիք օրինակները դուրս գանք, կմնա 5 օրինակ ավել։ Այդ 5 օրինակից մեկը իմ կողմից կընծայեք տեղվույդ Հայոց ընթերցարանին, իսկ մնացած չորսը կտաք պ. Ավագ Ավթանդիլյանին։ Նա «Կայծերի» առաջին հատորի մի մասը արտագրել էր ինձ համար, և իբրև վարձատրություն, չեմ հիշում առաջին հատորից քանի օրինակ էի ուղարկել, այժմ կըրկին ուղարկում եմ 4 օրինակ երկրորդ հատորից, թեև նրա աշխատությունը այդքան վարձատրության չէր արժի։*

*Բաժանորդներից որոնք մեռած են, պետք է հասանելի գըրքերը հանձնել նրանց ժառանգներին, իսկ որոնք բացակա են, պետք է սպասել՝ մինչև հայտնվեն։ Եթե ես գիտենայի որտեղ են, այստեղից կուղարկեի։*

*Եթե գրքերի խաչակապների վրա կպցրած մարկաներին նայելու լինեք, կտեսնեք, թե որքան փոստայի ծախք ունին։ Ռուսաստանի բաժանորդները վճարել են հիսունական կոպեկ ճանապարհի ծախք, բայց Դուք Պարսկաստանի բաժանորդներից ստացեք յուրաքանչյուր գրքի համար գոնե մեկ կռան, որպեսզի ճանապարհի ծախքը մեզ վրա չծանրանա։ Իսկ եթե դժգոհություն հայտնելու լինեն, հարկավոր չէ։*

*Դարձյալ, հարգելի բարեկամ, ես դիտավորություն ունեմ ընտանիքս այս աշուն բերել տալու Թիֆլիս, որովհետև որդիներիս ուսում առնելու ժամանակն է։ Արդեն գրած եմ նրանց, և պետք է այժմ ճանապարհ ընկած լինին։ Նրանք գալու են Թավրիզ, խընդրեմ հոգ տանեք՝ մուժումբարցի չարվադարներով ճանապարհ դնեք մինչև Ջուլֆա, կամ, եթե կարելի լինի, մինչև Նախիջևան, որ ավելի հարմար կլինի, այնտեղից ֆորգոն կվարձեն, կգան մինչև Թիֆլիս։ Եթե Թավրիզից այս կողմերը ընտանիքներ գալու լինին,*

*լավ կլինի, որ նրանց հետ գան։ Երբեմն պատահում է, որ Թավրիզից ևս ուղղակի ֆուրգոններ են գալիս մինչև Թիֆլիս կամ Երեվան։ Դրանց հետ ևս կարելի է ճանապարհ գնել։*

*Վերջապես այնտեղի հանգամանքները Ձեզ ավելի լավ պետք է հայտնի լինին, որպես հարմար կգտնեք, այնպես ճանապարհ դրեք։ Եթե ճանապարհի ծախքի կարոտ կլինեին, խնդրեմ տաք, ինձ գրեցեք, ես փոխարենը այստեղ կվճարեմ պարոն Մելիք-Ազարյանցին։ Թավրիզում պետք է օրինավոր պասպորտ առնեք նրանց համար, որպեսզի սահմանի վրա նեղություն չտան։*

*Հուսով եմ, որպես միշտ ցույց եք տվել մեզ Ձեր բարեկամական բարեսրտությունը, այդ մասին ևս չեք խնայի Ձեր ջանքերը, որով շատ և շատ պարտավորած կլինեք մեզ։ Ես արդեն վճռել եմ վերջնական կերպով մնալ Թիֆլիսում, և պետք է իմ ընտանիքը այսուհետև ինձ մոտ լինի։*

*Ռուշտից մի քանի անգամ դիմել են ինձ, խնդրելով, որ մի-մի օրինակ իմ հեղինակություններից ընծայեմ տեղային Հայոց ընթերցարանին։ Այդ մարդիկը հանգստություն չեն տալիս և միշտ կրկնում են իրանց խնդիրքը։ Ես կհայտնեմ նրանց, որ մի որևէ մարդու հանձնեն Թավրիզում ստանալ Ձեզանից մի-մի օրինակ Ձեզ մոտ գտնված գրքերից, որպեսզի ճանապարհի հոգսն էլ Ձեզ վրա չմնա։ Տվեցեք նրանց մի-մի օրինակ, միայն անկազմ կամ հասարակ թղթով։*

*Պարոն Ցէներջյանի ինձ ուղարկած հաշիվից երևում է, որ Ձեզ մոտ բավական գրքեր է թողել, ես շատ սխալվեցա, որ այդքան ուղարկեցի, կարծելով, որ Թավրիզում կծախվի։ Այժմ ետ բերելը մեծ դժվարություններ ունի, թող առ ժամանակ ևս մնա Ձեզ մոտ, մինչև կկարգադրեմ, թե ի՛նչ պետք է անել։ Միայն «Ջալալեդդինից» որքան մնացել է, մեր տանեցոց հետ ուղարկեցեք, որովհետև այստեղ ոչ մի հատ չունեմ։*

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյան

## 78. [ՎԱՍԻԼ ԵՂԻԱԶԱՐՅԱՆՑԻՆ]

Թիֆլիս, 26 դեկտեմ., 1887 ամի

*Հարգելի բարեկամ*
*Վ. Եղիազարյանց,*

*Շնորհակալությամբ ստացա «Սամվելի» բաժանորդագրու-*

*թյունից գոյացած 63 ռուբլին, կաշխատեմ գրքերը անհապաղ հասցնել պպ. բաժանորդներին։ Տպագրությունը արդեն վերջացած է, գիրքը լույս կտեսնի տոներից հետո։*

*Սուքիաս սրբազանին հանձնած տետրակի բաժանորդագրության փողը նույնպես ստացած եմ նրա ազգական Մակար Տեր-Սարգսյանի միջոցով 63 ռուբլի։*

*Բաժանորդների ցանկությունը՝ գրքերը յուրաքանչյուրի հասցեով ուղարկել՝ փոքր-ինչ դժվար կլինի կատարել, որովհետև շատ անգամ պատահել է, որ հայ ծառայողները գրքերը փոստատնից գողանում են և իրանց հասցեին չեն հասնում։ Որպեսզի այս տեսակ անկարգություններ չպատահին, հարկավոր կլինի ապահովացնել։ Այն ժամանակ ամեն մի գիրքը 50 կոպեկ ավել ծախք կվերառնի, որովհետև «Սամվելը» ավելի մեծ կդուրս գա, քան թե «Կայծերի» 2-րդ հատորը։*

*Դուք այնքան զբաղմունքներ ունեք, որ, իհարկե, Ձեզ նեղություն չեմ տա, այլ գրքերը միանգամից կուղարկեմ պ. Կարապետ Դադամյանցին, նա բավական ճիշտ մարդ է, կհասցնե ըստ պատկանելվույն։*

*Ձեր պահանջած գրքերի ցուցակը հանձնեցի «Կենտրոնական գրավաճառանոցը». Ձեր հանձնարարությունը կկատարեն։*

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝*

Րաֆֆի

*Զավակներս առողջ են, ընտանիքս բավական ուրախ է Թիֆլիս տեղափոխվելու համար։ Ես նույնպես հանգիստ եմ, թեև սկզբում փոքր-ինչ նեղություններ պետք է կրեմ մեր աղքատ տընտեսությունը կարգի դնելու պատճառով։ Շնորհակալ եմ Ձեր բարեկամական կարեկցության համար։*

# 1888

## 79. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 19 մարտի, 1888 ամի

*Մեծապատիվ պարոն Մ. Փանյանց,*

*Երկար ժամանակ Ձեզանից նամակ չստանալուց հետո, վերջապես ստացա 25 փետրվարի գրած նամակը, որով հայտնում*

*եք, թե «Կայծերի» երկրորդ հատորը իր ժամանակին ստանալով հանձնել եք բաժանորդներին, բացի երեք անձինքներից, որոնց անուններր նշանակել եք Ձեր նամակում։ Նրանց պատկանելի օրինակները կաշխատեմ շուտով հասցնել իրանց, ստուգելուց հետո, թե որտե՞ղ են գտնվում։*

*Լույս տեսավ իմ մի նոր աշխատությունը՝ «Սամվել» պատմական վեպը։ Թե ոչպիսի ընդունելություն կգտնե ընթերցող հասարակությունից,— դեռ չգիտեմ, միայն այսքանը կասեմ, որ հայերը տակավին պատրաստված չեն մի լուրջ և ծանր բան կարդալու համար։*

*Հիշյալ վեպից 5 օրինակ ուղարկեցի Ձեզ, որից մեկը կբարեհաճեք ընդունել մեր կողմից նվեր, իսկ մնացյալ չորսը կբաժանեք հետևյալ պարոններին.*

*1 օրինակ Սմբատ Շահազիզին,*

*1 օրինակ Մկրտիչ Էմինին,*

*1 օրինակ Գ. Ենգիբարյանցին (ուսանող),*

*1 օրինակ Հովհ. Հովհաննիսյանցին (նոր բանաստեղծ)։*

*Ընդունեցեք իմ խորին հարգանքը՝*

Հ. Մելիք-Հակոբյան

*Գրքերի յուրաքանչյուրի վրա մակագրված է անունները։*

# 80. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Թիֆլիս, 29 մարտի, 1888 ամի

*Մեծապատիվ պարոն*

*Խ. Տեր-Զաքարյան,*

*Ստացա Ձեր նամակը։ Տեղվույդ օրիորդական դպրոցի վարժուհու վարմունքը ինձ շատ չէ զարմացնում, նա այստեղ ևս հայտնի էր որպես թեթևամիտ աղջիկ։ Բայց նրա վարձելումը պ. Սաոիկը մեղավոր չէ, մեղավորը մի այլ անձն է, որը գուցե Ձեզ հայտնի լինի։*

*Նոր վարժուհի վարձելու համար ես հոգ կտանեմ, թեև բավական դժվարություններ կան այնպիսին գտնելու, որը թե՛ Ձեր դպրոցին հարմար լիներ, և թե՛ Ձեր երկրին։ Այն վարժուհին, որի*

մասին Ձեր նամակում հիշած էիք, այժմ գտնվում է Ղզլարում, յուր ամուսնի հետ։ Նրա ամուսնի հասցեն այսպես է.— В Кизляр. Никите Горисовичу Онанянцу.

Ամուսինը ղզլարեցի է, իսկ կինը՝ Թիֆլիսեցի։ Փորձեցեք նամակ գրել, ես նույնպես կգրեմ, ամուսինը ինձ հետ ծանոթ է։ Ռուսերեն նա լավ գիտե, բայց հայերեն ոչ այնքան։ Ինքը հիվանդոտ տղա է, շատ կարելի է, որ խոսք տա Թավրիզ գալու, բայց այն ևս պետք է ի նկատի ունենալ, որ վարժապետները առհասարակ ուրախ են լինում, երբ զանազան տեղերից հրավեր են ստանում և ամենին խոսք են տալիս, հուսադրում են այնքան ժամանակ, մինչև իրանց գտնված դպրոցի վարչության հետ նոր պայմաններ են կապում։

Ես իմ հավատը հայ հասարակության երկու դասակարգի վերաբերությամբ բոլորովին կորցրել եմ — քահանաների և վարժապետների, ոչ մեկին չէ կարելի հավատալ։

Ֆրանսերեն լեզվի դասատու այստեղ դժվար է գտնել։ Մի պոլսեցի երիտասարդ կա, որ նոր է եկած Թիֆլիս, մասնավոր դասեր է տալիս, նա շատ լավ կլիներ Ձեր դպրոցի համար, եթե համաձայնվեր գալու։ Յուր հետ դեռ չեմ խոսացել։ Ուսում է առել Փարիզում և հաստատ վկայականներ ունի։

Չգիտեմ ինչո՞ւ չեք կամենում օգուտ քաղել Առաքելյանի քրոջից, նա Ձեր դպրոցի համար կարող էր վարժուհի լինել, և նրանց դրությունը այժմ այնպես է, որ մասնավոր ռոճիկով կբավականանար։ Եղբայրը տուն թողնելու պտուղ չէ, բայց քույրը լավ աղջիկ է։

Մինչև օգոստոս դեռ բավական ժամանակ կա, կարելի է վարժապետների մասին մտածել և նպատակահարմար ընտրություն անել։ Դժվարությունը նրանումն է, որ Ձեր դպրոցի միջոցները խիստ սուղ են, չեք կարող այնքան վճարել, որ գոնե փողի հրապուրանքով կարելի լիներ օրինավոր մարդիկ տանել։ Մնում են շաղպատանները և անգործ մարդիկ, որոնք չնչին ռոճիկով պատրաստ են ամեն տեղ գնալ։

Մի հանգամանք կա, որ կարող է Ձեր գործը փոքրիշատե դյուրացնել. խոսվում է և կարծեմ ուղիղ պետք է լինի, որ առաջիկա ուսումնական տարվա սկզբից՝ ռուսաց վկայական չունեցող վարժապետները չի պիտի ընդունվին հայոց դպրոցներում, և այդ խստիվ պահանջում է կառավարությունը։ Այդ դեպքում, հայոց վարժապետների մեծ մասը պետք է անգործ մնա, որովհետև վկայականներ չունեն և ստիպված կլինին օտար երկրներում հաց

*որոնելու։ Մինչև անգամ ռուսաց համալսարանի դիպլոմը իրավունք չէ տալիս վարժապետություն անելու, դրա համար պետք է առանձին քննություն տալ և վկայական ստանալ, որը շատ դըժվար է։*

*Փոստից կստանաք 4 օրինակ «Սամվել» կոչված վեպից և կբաժանեք հետևյալ անձինքներին.—*

*1 օրինակ Ձեզ (ընծա),*

*1 օրինակ առաջնորդին (ընծա),*

*1 օրինակ Ակիմանդրիտովին (ընծա),*

*1 օրինակ Սեդրակ Հարությունյանին (բաժանորդ է)։*

*Եթե պահանջողներ լինին, մի քանի օրինակ կուղարկեմ այնտեղ վաճառելու։*

*Շնորհակալ եմ Ձեր կարեկցության համար, որով մի քանի անգամ հարցրել եք մեր ընտանիքի դրությունը։ Նրանք հասան Թիֆլիս խիստ հանգիստ կերպով և լավ ընկերներով, իսկ այժմ առողջ են։*

Հ. Մելիք-Հակոբյան

## ՀՈԴՎԱԾՆԵՐ (էջ 5—159)

*Այս վերնագրի տակ հավաքված են Րաֆֆու այն հոդվածները, որոնք նա գրել է 1880—1888 թթ. միջև ընկած ժամանակաշրջանում։ Դրանց մի զգալի մասը նվիրված են ռուս-թուրքական պատերազմից հետո արևմտահայության համար ստեղծված դաժան կացության մեկնաբանմանը, որտեղ Րաֆֆին մերկացնում է Թուրքիայի ու արևմտյան տերությունների դիվանագիտական խաղերը։ Մյուս մասը վերաբերում է իր ստեղծագործությունների ու թարգմանությունների հրատարակման հետ կապված հարցերին։ Կենտրոնում գտնվում է Հայկունու և մյուս պահպանողականների դեմ Րաֆֆու մղած բանավեճը։ Մի շարք հոդվածներում արտահայտված են հասարակական տարբեր խնդիրների վերաբերյալ Րաֆֆու ունեցած մոտեցումը։ Վերջին շրջանի հոդվածները վերաբերում են «Խամսայի մելիքություններին» և Աղայանի դեմ վարած բանավեճին։*

*Այս գրքում զետեղված հոդվածները ժամանակագրական իմաստով կազմում են 9-րդ հատորում տպագրվածների շարունակությունը։ Ինչպես 9-րդ, այնպես էլ 10-րդ հատորների մեջ ամփոփված հոդվածները, թեև կարող էին դասավորվել ըստ իրենց բնույթի, բայց քանի որ դրանց հաջորդականության մեջ ընդգծվում է հեղինակի աշխարհայացքի աստիճանական զարգացումը, ուստի նպատակահարմար գտավեց հոդվածները տեղադրել ըստ ժամանակագրության։*

*Դժվար է ասել, թե 9 և 10-րդ հատորներում զետեղված հոդվածներով սպառվում են Րաֆֆու այս բնույթի ստեղծագործությունները։ Հեղինակի վիեննական հրատարակությունների վերջում Աննա Րաֆֆու կցած ցանկից հայտնի է դառնում, որ Րաֆֆին ունի նաև մոտ մեկ հատոր կազմող, անտիպ հրապարակախոսական ու քննադատական հոդվածներ։ Ինչպիսի՞ն են և կամ ի՞նչ թեմայի են վերաբերում դրանք, ձեռագրերի բացակայության պատճառով դժվարանում ենք ասել։ Բացի դրանից, Աննա Րաֆֆու վկայությամբ Րաֆֆին գրել է նաև «Հայաստանը երկու կրակի մեջ» վերնագրով հոդվածը, որը մի ընդարձակ տեսություն է Հայաստանի վերաբերյալ։ Այս հոդվածի հետագա վիճակի մասին, նույնպես ոչինչ ասել չենք կարող։*

*Ձեռքի տակ չունենալով հոդվածների հեղինակային ինքնագրերը, տեքստը տպագրության նախապատրաստելիս կազմողները հիմք են ընդունել պարբերական մամուլում հրապարակված տարբերակները, որոնց մեծագույն մասի տպագրությունը տեղի է ունեցել հեղինակի անմիջական հսկողության պայմաններում։*

*Հոդվածների գրության պատմության, շարժառիթների ու հրատարակության մասին եղած տեղեկությունները կտրվեն յուրաքանչյուր տեքստի ծանոթագրությունում։*

## ԹԱՐԳՄԱՆՉԻՑ (էջ 7)

*Րաֆֆին ծանոթանալով Պլատոն Զուբովի «Ղարաբաղի աստղագետը» վեպին, տեսնում է, որ այն կարող է հետաքրքրել հայ ընթերցողին, մյուս կողմից, նա նկատում է, որ իր «Խամսայի մելիքությունները» աշխատությունը և այս վեպը «անմիջական կապ ունեն միմյանց հետ, և լրացնում են մինը մյուսի թերությունները»։*

*1882 թվականի սեպտեմբերին «Խամսայի մելիքությունները» աշխատության տպագրությունից չանցած մեկ ամիս, Րաֆֆին ձեռնարկում և կարճ ժամանակամիջոցում թարգմանում է այս վեպը, համարելով այն «մի օժանդակ կամ լրացուցիչ աղբյուր «Խամսայի մելիքություններ» կոչված պատմության համար»։*

*Ցանկանալով իր ընթերցողներին ներկայացնել հեղինակի անձնավորությունը, Րաֆֆին նամակ է գրում Սմբատ Շահազիզին և խնդրում է նրան մի քանի տեղեկություններ հաղորդել գրքի հեղինակ Պլատոն Զուբովի մասին։ Ստանալով Շահազիզի ուղարկած տեղեկությունները, նա գրում է «Թարգմանչից» վերնագրով առաջաբանը, որը գրքի առանձին հրատարակությանն առընթեր տպագրվում է 1882 թվականին։*

*Այստեղ Րաֆֆին հեղինակին վերաբերող տեղեկություններ հաղորդելուց բացի, պարզաբանում է թարգմանության շարժառիթներն ու Ղարաբաղի մելիքների պատմության հետ կապված այլ կարգի մանրամասնություններ։*

*«Թարգմանչից» հոդվածը երկրորդ անգամ հրապարակվել է 1906 թվականին, վեպի երկրորդ՝ վիեննական հրատարակության հետ մեկտեղ, ինչպես նաև տեղ է գտել ԳԱ գրականության ինստիտուտի հրատարակած Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում, Երևան, 1958 թ. (տեքստը և ծանոթագրությունները՝ Մ. Աբեղյանի անվան գրակ. ինստիտուտի գիտ. աշխատակցուհի Լ. Կարապետյանի)։*

*Հրապարակված է Րաֆֆի ստորագրությամբ։*

*Արտատպված է «Ղարաբաղի աստղագետը» գրքից, Թիֆլիս, 1882 թ.։*

## ԶԱԽԵՐ-ՄԱԶՈԽԻ ԳՐԱԿԱՆԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ (էջ 14)

*Հայտնի է, որ Րաֆֆին տնային բանտարկության ենթարկվելու ընթացքում (1883 թ. մայիս) ժամանակավորապես դադարում է աշխատակցել «Մշակին»։ Այս շրջանում նա ռուսերենից թարգմանում և «Մշակում» հրապարակում է Զախեր-Մազոխի «Կայենի կտակը» ժողովածվից «Կալոմեայի Դոն-Ժուանը», «Ֆրանկը բալաբան» և «Լուսնկա գիշեր» վեպիկները։ Այնուհետև միևնույն շարվածքից Րաֆֆին այդ վեպիկները հրապարակում է նաև առանձին գրքով, կցելով «Զախեր-Մազոխի գրականական գործունեությունը» խորագրով առաջաբանը։*

Այս հոդվածը առաջին անգամ լույս է տեսել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (Երևան, 1958 թ., էջ 288)։

Հրապարակված է Րաֆֆի ստորագրությամբ։

Արտատպված է «Կայենի կտակը» գրքից։ Թիֆլիս, 1884 թ.։

## ՀԱՅԵՐԸ ՔԱԲՈՒԼԻ ՄԵՋ (էջ 18)

«Հայերը Քաբուլի մեջ» հոդվածը Րաֆֆին գրել է Կ. Պոլսի «Մանզումեի էֆքիար» վերնագրով (հայատառ թուրքերեն) լրագրում, անգլիական մի օրագրից արտատպված մստեր Հյուզի համանուն վերնագրով հոդվածի առիթով։

Հոդվածի սկզբում Րաֆֆին թարգմանում և քաղվածաբար մեջ է բերում մի քանի հատվածներ Հյուզի հաղորդած տեղեկություններից (վերոհիշյալ հանգամանքը առիթ է տվել Րաֆֆու կենսագիրներից ոմանց այս հոդվածը համարելու թարգմանություն), դրանց հիման վրա ցույց տալով էջմիածնի ունեցած անտարբեր ու անհոգ վերաբերմունքը հեռավոր գաղթավայրերում ապրող հայերի վերաբերյալ։

Հոդվածի երկրորդ մասում էջմիածնի անհոգությունը քննադատելուց բացի, Րաֆֆին դնում է տարբեր դավանանքի պատկանող հայերի ազգային միավորման խնդիրը և պահանջում է, որ «կրոնական համոզմունքները խոնարհվեն այդ գաղափարի առջև...»։

«Հայերը Քաբուլի մեջ» հոդվածը լույս է տեսել «Մշակում», 1880 թվականի հունիսի 17-ին։

Հրապարակված է Մելիքզադե ստորագրությամբ։

Արտատպված է «Մշակից», 1880 թ., № 101, էջ 1։

## ՄԻ ԱՌԱՋԱՐԿՈՒԹՅՈՒՆ (էջ 27)

«Խենթը» «Մշակում» լույս տեսնելուց հետո Րաֆֆին բազմաթիվ նամակներ է ստանում այդ վեպը առանձին գրքով հրատարակելու մասին։ Ընդառաջելով իր ընթերցողների «հարգելի բաղձանքին», Րաֆֆին կուզենար առանձին գրքով հրատարակել «Խենթը», բայց որովհետև ժամանակ և նյութական հնարավորություններ չուներ, նա խոստանում է այդ իրավունքը ամենանպաստավոր պայմաններով տալ առաջին ցանկացողին։

Ահա այս առիթով էլ նա գրում է «Մի առաջարկություն» խորագրով հոդվածը։

«Մի առաջարկությունը» լույս է տեսել «Մշակում», 1880 թվականի հուլիսի 2-ին։

Այս հոդվածը տպագրվել է նաև Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում, Երևան, 1958 թ. (էջ 137)։

Հրապարակված է Րաֆֆի ստորագրությամբ։

Արտատպված է «Մշակից», 1880 թ., № 112, էջ 1։

## ՄԻՆՉԵՎ Ե՞ՐԲ (էջ 28)

*Այս հոդվածը գրված է մի բանավեճի առիթով և ուղղված է «Մեղու Հայաստանի» լրագրի ու մեղվականների դեմ։ Վերջիններս ազգայնության գաղափարը կապելով լուսավորչական եկեղեցու հետ, այլազգիներ էին համարում բոլոր այլադավան հայերին, դրանով իսկ սեպ խրելով ժողովրդի միավորման գործի հաջողության մեջ։ Քննադատելով ու հակադրվելով մեղվականներին, Րաֆֆին զայրալից հարցնում է, թե «Մինչև ե՞րբ» են շարունակելու նրանք իրենց այդ կարգի ցնդաբանությունները։ Դառնալով «Մշակի» դիրքին, Րաֆֆին պարզաբանում է, որ «Մշակը» միշտ էլ ազգային կետից է նայել կրոնական հարցերին և դավանանքի տարբերության համար երբեք չի վիրավորել որևէ մեկի ինքնասիրությունը։*

*Րաֆֆուն ավելի քան ցավ է պատճառում, որ Թուրքիայի կառավարող շրջանները հենվելով այս փաստերի վրա, արհեստականորեն նվազեցնում են իրենց իշխանության տակ ապրող հայերի քանակությունը, փակուղի ստեղծելով Բեռլինի դաշնագրով նախատեսված վերանորոգումների առջև։*

*Հոդվածը լույս է տեսել «Մշակում», 1880 թվականի հուլիսի 15-ին։*

*Հրապարակված է* Մելիքզադե *ստորագրությամբ։*

*Արտատպված է «Մշակից», 1880 թ., № 121, էջ 1։*

## ՆՊԱՍՏԵՆՔ (էջ 35)

*«Նպաստենք» հոդվածի գրության հարցում շարժառիթ է հանդիսացել Կ. Պոլսում գործող զանազան ընկերությունների միավորումը մի ընդհանուր հիմնարկության մեջ։ Րաֆֆին արևմտահայերին կոչ է անում հետևել հնդկահայերի օրինակին և* նպաստել «Միացյալ ընկերության» *գործունեությանը։*

*Հոդվածը լույս է տեսել «Մշակում», 1880 թվականի օգոստոսի 26-ին։*

*Այս հոդվածը տպագրվել է նաև 1895 թվականին Աննա Րաֆֆու հրատարակած «Տաճկահայք» ժողովածուում, ինչպես նաև տեղ է գտել նույն ժողովածուի 1913 թվականի վերահրատարակության մեջ։*

*Հոդվածը «Մշակում» հրապարակված է* Յ.[Հակոբ] Մ.[իրզայան] *ստորագրությամբ։*

*Արտատպված է «Մշակից» 1880 թ., № 148, էջ 1։*

## ՓԱԽՈՒՍՏԻ ՃԱՆԱՊԱՐՀԸ (էջ 36)

*Ինչպես հայտնի է, Բեռլինի դաշնագրով նախատեսված էր, որ Թուրքիան որոշ արտոնություններ պետք է տար հայերին և կատարեր վերանորոգումներ, ըստ տեղական պահանջների։ Սակայն եվրոպական պետությունների թույլտվությամբ Բ. Դուռը աշխատում է խույս տալ պարտավորությունների կատարումից և խորամանկ քաղաքականությամբ որոնում էր փախուստի ճանապարհը։ Դրա արտահայտություններից մեկն էլ այն է, որ Թուրքիան խոստանում է չորս ամսվա ընթացքում վճռել հայկական հարցը։ Րաֆֆին լավ հասկանալով Թուրքիայի սար-*

*քած դիվանագիտական խաղերի ներքին իմաստը, գրում է. «Խոստանալ և չկատարել — այդ Թուրքիայի վաղեմի սովորությունն է, իսկ բարիք խոստանալ և չարիք գործել այդ պահանջում է այժմյան նրա ամենախարդախ քաղաքականությունը»։ Բացատրելով այս քաղաքականության կորստաբեր հետևանքները հայ ժողովրդի համար, Րաֆֆին կոչ է անում չհավատալ ո՛չ Թուրքիային, և ո՛չ էլ եվրոպական պետությունների շռայլած սին խոստումներին և հենվել առավելապես սեփական միջոցներով ստեղծած հնարավորությունների վրա։*

*Հոդվածը լույս է տեսել «Մշակում» 1880 թվականի հոկտեմբերի 2-ին։*

*«Փախուստի ճանապարհը» տպագրվել է նաև 1895 թվականին, Աննա Րաֆֆու կազմած «Տաճկահայք» ժողովածվում, ինչպես նաև տեղ է գտել նույն ժողովածվի 1913 թվականի վիեննական հրատարակության մեջ։*

*Հոդվածը «Մշակում» հրապարակված է* Յ.[Հակոբ] Մ.[իրզայան] *ստորագրությամբ։*

*Արտատպված է «Մշակից» 1880 թ., № 174, էջ 1։*

## ՊԱՏԱՍԽԱՆ (էՋ 49)

*Այս հոդվածը Րաֆֆին գրել է «Կայծերի» բաժանորդների հարցումներին գոհացում (պատասխան) տալու նպատակով։ Հայտնի է, որ 1879 թվականին Րաֆֆին մտադրվում է «Կայծերը» հրատարակել առանձին գրքով և նույն թվականի դեկտեմբերի 10-ին մի շրջաբերականով դիմում է «Ընթերցող հասարակությանը» ու խնդրում, որ օգնեն իրեն։ (Տե՛ս Րաֆֆի, «Երկերի ժողովածու», 9-րդ հատոր, էջ 503)։ Անցնում է բավական ժամանակ, սակայն նյութական միջոցների սղության և Թիֆլիսի գրաքննչական կոմիտեի հարուցած խստությունների և արգելքների պատճառով Րաֆֆին չի կարողանում գիրքը ժամանակին տպագրել։ Այդ իսկ պատճառով, նա մի քանի անգամ դիմում է իր բարեկամներին, որպեսզի վերջիններս արագացնեն բաժնեգրությունից հավաքված գումարների առաքումը։ Մյուս կողմից՝ նկատի ունենալով Մոսկվայի գրաքննչի համեմատական մեղմությունը, նա բանակցում է Մոսկվայի համալսարանի ուսանող Գաբրիել Միրզոյանի հետ «Կայծերի» տպագրությունը այնտեղ կատարելու համար։*

*«Պատասխանում» Րաֆֆին իր ընթերցողներին հայտնում է, որ առաջիկա տարվա (1881 թ.) սկզբի ամիսներում գիրքը պատրաստ կլինի, չմոռանալով հոդվածի վերջում խնդրել, որ բաժնեգրողները արագացնեն հավաքված գումարի առաքումը։*

*Հոդվածը լույս է տեսել «Մշակում», 1880 թվականի դեկտեմբերի 16-ին։*

*Հրապարակված է* Րաֆֆի *ստորագրությամբ։*

*Արտատպված է «Մշակից», 1880 թ., № 224, էջ 2։*

## ԻՄ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ (էՋ 40)

*Հայտնի է, որ 1881 թվականի հունիսի 25-ին Րաֆֆին կիսատ է թողնում «Դավիթ Բեկի» տպագրությունը և գլխավոր հերոսի հետքերով ուղևորվում է Ղարաբաղի և Սյունյաց աշխարհի կողմերը «Դավիթ Բեկի» պատմության մի շարք մութ կետերը լրացնելու և պատմական ու տեղագրական ուսումնասիրություններ կատարելու համար։ Վեպի տպագրությունը ընդհատելը և իր ճանապարհորդության նպատակը ընթերցողների համար պարզելու առիթով, Րաֆֆին գրում է այս հոդվածը։*

*«Իմ ընթերցողներին» հոդվածում նա մանրամասն կերպով բացատրում է վեպի գրության հետ կապված այն բարդությունները, որոնք նրան դրել են պատմաբանի դերի մեջ։ «Դեռևս ոչինչ ուսումնասիրված չէ,— ասում է Րաֆֆին,— մենք չգիտենք հայոց հին ժողովրդի ընկերական, հասարակական, ընտանեկան, քաղաքական կյանքի առանձնահատկությունները»։*

*Խոսելով «Դավիթ-Բեկի» սկզբնաղբյուրների մասին, նա ընթերցողների համար պարզում է, թե ինչպես իր մեջ ուժեղանում և խորանում է Խամսայի մելիքությունների պատմությանն անդրադառնալու ցանկությունը։*

*Այնուհետև Րաֆֆին իր ընթերցողներին խոստանում է «նշանավոր տեղերում» իր ճանապարհորդությունները վերջացնելուց հետո առանձնանալ Տաթևի վանքում, և այնտեղից «Մշակին» ուղարկել «Դավիթ Բեկի» շարունակությունը։ Սա նրա լավագույն ցանկություններից մեկն էր, որը դեպքերի բերումով նրան չհաջողվեց իրականացնել։*

*Հոդվածը տպագրվել է «Մշակում», 1881 թվականի հուլիսի 15-ին։ Այնուհետև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (Երևան, 1958 թ., էջ 149)։*

*Հրապարակված է Րաֆֆի ստորագրությամբ։*

*Արտատպված է «Մշակից», 1881 թ., № 131, էջ 1։*

## ՆԱՄԱԿ ՎԵՐԻՆ ԱԳՈՒԼԻՍԻՑ (ԷՋ 45)

*Ինչպես տեսանք նախորդ հոդվածի ծանոթագրությունից, «Դավիթ Բեկ» և «Խամսայի մելիքությունները» աշխատությունների գրության համար նյութեր հավաքելու նպատակով Րաֆֆին ուղևորվում է Ղարաբաղի և Սյունիքի կողմերը։*

*Երկու ամսվա ընթացքում շրջագայելով Գանձակի, Ղարաբաղի, Զանգեզուրի, Սիսիանի, Բարգյուշատի, Ջավնդուրի, Ղափանի, Մեղրիի և Օրդուբադի գավառներում, Րաֆֆին կարողանում է ժողովրդի բերանից, արձանագրություններից, զանազան հրովարտակներից ու գրչագիր ավետարանների հիշատակարաններից մեծ քանակությամբ արժեքավոր նյութեր հավաքել իրեն հետաքրքրող թեմայի վերաբերյալ, որոնց հիման վրա նա լրացնում է «Դավիթ Բեկի» անավարտ մնացած մասը և գրում է «Խամսայի մելիքությունները» աշխատությունը։ Այստեղից Րաֆֆին ուղևորվում է Ագուլիս և նոր ուսումնասիրություններ կատարում Թոմա Առաքելոց վանքում։ Իր շրջագայությունների ընթացքում նա հայտնաբերում է նաև մի հին գրչագիր թերթիկ, որի երկրորդ երեսի վրա լինում է երկու տող հայոց նշանագիր բևեռագրեր։ Ահա այս հետաքրքիր պատառիկը մեզ գրաղեցնող նամակի հետ մեկտեղ Րաֆֆին Վերին-Ագուլիսից ուղարկում է «Մշակի» խմբագրությանը։ Վերջիններս նշանագրերի ինչ լինելը ստուգելու համար այն ցույց են տալիս Ա. Երիցյանին և պարզում, որ դրանք ոչ թե բևեռագրեր են, այլ բառերի ծածկագրեր (տե՛ս «Մշակ», 1881 թ., № 192, էջ 2)։*

*Այս նամակ-հոդվածը գրված է 1881 թվականի սեպտեմբերի 28-ին, Ագուլիսից, տպագրվել է «Մշակում» նույն թվականի հոկտեմբերի 15-ին։*

*Հրապարակված է Րաֆֆի ստորագրությամբ։*

*Արտատպված է «Մշակից», 1881 թ., № 191, էջ 1։*

## ՀԱՅՈՑ ՄԱՆԿԱՆ ՊԱՐՏԵԶԸ ԹԻՖԼԻՍՈՒՄ (էջ 46)

Տիկին Բաբայանի անձնական ջանքերով Թիֆլիսում բացված մանկապարտեզի և նրա կարդացած ճառի առիթով գրված այս հոդվածը Րաֆֆին ստորագրել է Մ. ստորագրությամբ։ Հայտնի է, որ Րաֆֆու իսկական անունը եղել է Յակոբ, ազգանունը՝ Միրզայան Մելիք-Յակոբյան տարբեր առիթով Րաֆֆին այս անուն ազգանունը օգտագործել է տարբեր ձևով։ Այսպես. Յակոբ Միրզայան Մելիք-Յակոբյանի փոխարեն նա գործածել է Յ. Մ. Մելիք-Հակոբյան, այնուհետև՝ Յակոբ Միրզայան, ինչպես նաև պարզապես՝ Յ. Մ.։ Ավելի հաճախ օգտագործել է Մելիքզադե ստորագրությունը, որը կրճատելով դարձրել է Մել և ապա Մ: Րաֆֆին հոդված է հրապարակել նաև Ր ստորագրությամբ և այլն։

Րաֆֆու Մ ստորագրությամբ հրապարակած հոդվածներից երկերի ներկա ստահատորյակում տեղադրվել է միայն հինգը։ Դրանք են՝ երեք հոդված «Նամակ Կ. Պոլսից» խորագրով (Հտ. 9, էջ 43, 45, 49)։ «Հայ վանառականները Կովկասի մեջ» (Հտ. 9, էջ 216) և «Հայոց մանկան պարտեզը Թիֆլիսում»: Խորագրին ընթերցողը կնկատի, որ այս հոդվածներում բարձրացված մի շարք նարցեր, բազմաթիվ մտքեր, ինչպես նաև առանձին դարձվածքներ ու ոճեր համարյա նույնությամբ տեղ են գտել նաև նրա հետագա շրջանի գործերում։ Նա, ով փոքր ի շատե ծանոթ է Րաֆֆու հոդվածներին, նրա գրելաձևին, լեզվաոճական առանձնահատկություններին, նրա համար աներկբայելի են այս հոդվածները Րաֆֆու գրչին պատկանելու հանգամանքը և առիթ չի ունենա դրանք որևէ մեկ ուրիշին վերագրելու, եթե աղքատիմացության հանդամանքը դեր չխաղա նրա մտածելակերպում։

Այս առիթով անհրաժեշտ ենք համարում մեջ բերել նաև «Մշակի» քարտուղար Հ. Տեր-Գրիգորյանի հավաստիացումը. «Քո հոդվածները,— գրում է նա,— շատ են կարդացվում, մանավանդ Մ» ստորագրությամբ։ (Տե՛ս «Տաճկահայք» ժողովածու, Վիեննա, 1913 թ., էջ VII)։ Այս հավաստիացումը մի կողմից, գրելաձևն ու լեզվաոճական առանձնահատկությունները մյուս կողմից, անժխտելի են դարձնում այն փաստը, որ ինչպես այս, այնպես էլ մյուս հոդվածների հեղինակը Րաֆֆին է։

Արտատպված է «Մշակից», 1882 թ., № 46, էջ 1։

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐԻՆ (էջ 53)

Հայտնի է, որ «Կայծերի» տպագրությունը ուշանալու առիթով Րաֆֆին 1880 թվականի դեկտեմբերին մի հոդվածով (տե՛ս այս հատորում, էջ 40) դիմում է իր ընթերցողներին և պարզաբանում ձգձգման հանգամանքները, խոստանալով առաջիկայում գոհացում տալ նրանց ցանկություններին։ Սակայն իրենից անկախ պատճառներով, նա չի կարողանում կատարել իր տված խոստումը և «Կայծերի» տպագրման գործը հետաձգվում է։

1882 թվականին Րաֆֆին ստիպված է լինում կրկին անգամ հանդես գալ «Մշակում» և հաշիվ տալ «Կայծերի» բաժանորդներին։ Ահա այս առիթով էլ նույն թվականի ապրիլի 27-ին նա գրում է «Նամակ խմբագրին» հոդվածը։

Խմբագրին ուղղված այս նամակի միջոցով Րաֆֆին աշխատում է ցույց տալ, որ «Կայծերի» տպագրության ուշացումը կապված է եղել արտաքին հանգամանքների հետ և ակնարկում է գրաքննիչի հարուցած խստությունները։ Թեև գրաքննչական խստություններից բացի, Րաֆֆին նեղվում էր նաև նյութական միջոցների բացակայությունից, բայց իր «բաժանորդներին երկար սպասել չտալու

համար» նա որոշում է շուտով տպագրել «Կայծերը», իսկ ծախքերի պակասը լրացնել պարտքով։

Հոդվածը հրապարակված է Րաֆֆի ստորագրությամբ։

Արտատպված է «Մշակից», 1882 թ., № 73, էջ 2։

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐԻՆ (էՋ 54)

Նամակը գրված է «Մեղու Հայաստանի» լրագրի 1883 թվականի 7-րդ համարում տպագրված Սպանդար Սպանդարյանի «Մի փոքրիկ խորհրդածություն» վերնագրով հոդվածի առիթով։

1882 թվականի վերջին մեղվականները բարձրացնում են իրենց լրագրի 25-ամյա հոբելյանը տոնելու հարցը։

«Մշակի» շուրջը համախմբված մտավորականությունը գտնում էր, որ «Մեղու Հայաստանին» հայ իրականության մեջ դեռևս չի կատարել մի այնպիսի դեր, որով կարողանար արժանի դառնալ այդ կոչման բարձրությանը։

«Մեղվի» դիրքերի պաշտպանության շարժառիթով հանդես է գալիս Սպանդար Սպանդարյանը և ի թիվս մի քանի փաստարկների, նա Պռոշյանին, Աղայանին և Րաֆֆուն համարում է «Մեղվի» համախոհները։ ««Մեղուն» սլաքն ու ժամացույցն է,— պատկերավոր ձևով ասում է Ս. Սպանդարյանը,— իսկ Պռոշյանը, Աղայանը և Րաֆֆին նրա ժամանակը որոշող նշաններն են»։

Ահա այս բնորոշման ու մերձեցման դեմ է, որ հանդես է գալիս Րաֆֆին, ամենախիստ կերպով սահմանազատելով իրեն մեղվականներից։ «Ես երբեք համերաշխ, համամիտ, համակամ չեմ եղել «Մեղվի» հետ,—գրում է Րաֆֆին,—և բնավ լինելու չեմ, քանի որ նա իր ուղղությունը չի փոխի»։

Այնուհետև Րաֆֆին մեկ առ մեկ նշում է, թե «Մեղուն» ինչպիսի անբարյացակամ դիրք է բռնել իր տպագրված աշխատությունների հանդեպ։ Նա դատապարտում է մեղվականներին, որ իրենց երկդիմի կոմպլիմենտներով ցանկանում են երկպառակության խնձոր նետել իր և «Մշակի» խմբագրի միջև։

Նամակը գրված է 1883 թվականի հունվարի 30-ին Թիֆլիսում, տպագրվել է նույն թվականի փետրվարի 2-ին։

Հրապարակված է Րաֆֆի ստորագրությամբ։

Արտատպված է «Մշակից», 1883 թ., № 17, էջ 1։

## ՄԱՄՈՒԼԻ ԱՆԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ (էՋ 57)

Րաֆֆու «Նամակ խմբագրին» հոդվածի հրապարակումից հետո (տե՛ս այս հատորում, էջ 54) «Մեղվի» խմբագիր Պետրոս Սիմոնյանը իր լրագրի 11-րդ համարում հանդես է գալիս մի ֆելիետոնով և անվանարկելով Գ. Արծրունուն ու Րաֆֆուն, ծաղրում է նրանց գրական ու հասարակական վաստակը, հեքիաթագիր անվանելով վերջիններիս։

Այս ամենը առիթ է դառնում, որ Րաֆֆին «Մշակում» հանդես գա «Մամուլի անբարոյականությունը» հոդվածով։ Մերկացնելով «Մեղվի» ուղղությունը և նշելով այդ լրագրի 25-ամյա ոչնչությունը, Րաֆֆին միաժամանակ բացահայտում է նրա խմբագրի անազնվությունն ու հասարակական անմաքուր գործունեությունը։ Պատասխանելով ֆելիետոնիստ Քաղքցու (Սիմոնյանի) կողմից իր հասցեին արված ակնարկներին, Րաֆֆին չի վարանում ասելու, որ Սիմոնյանը մի խղկակղն խաչագող է, որ հասարակական ու կրոնական հարցերի առիթով նրա բարձրացրած վայնասունը հանդիսանում է միամիտ ժողովրդի կրոնական զգացումները հարստահարելու միջոց։

*Պարզ է ու հասկանալի, որ այս ամենը Սիմոնյանը չէր կարող լռությամբ տանել։ Եվ ահա Քաղքցին «Մեղվում» հրապարակ է հանում իր մի նոր ֆելիետոնը, որը ամբողջովին ուղղված է Րաֆֆու դեմ (տե՛ս «Մեղու Հայաստանի», 1883 թ., № 17, էջ 1)։*

*Րաֆֆու այս հոդվածը լույս է տեսել նաև ԳԱ գրականության ինստիտուտի հրատարակած Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 183)։*

*«Մամուլի անբարոյականություն» հոդվածը հրապարակված է Րաֆֆի ստորագրությամբ։*

*Արտատպված է «Մշակից», 1883 թ., № 25, էջ 1։*

## Գ. ՀԱՅԿՈՒՆՈՒ ԿՐԻՏԻԿԱՆ ԵՎ «ԿԱՅԾԵՐԸ» (ԷՋ 66)

*«Գ. Հայկունու կրիտիկան և «Կայծերը»» Րաֆֆու ծավալուն հոդվածներից մեկն է, որտեղ նա բանավիճելով Հայկունու դեմ, դրսևորում է իր վերաբերմունքը պահպանողականության նկատմամբ, միաժամանակ պայքարելով գրականության գաղափարայնության համար, Րաֆֆին ի հայտ է բերում նաև իր առաջավոր էսթետիկական ըմբռնումները։*

*Մեծ վիպասանի «Կայծերի» հրապարակ գալն ու լայն ժողովրդականություն ստանալը ավելի է սրում «Մշակ» և «Մեղու Հայաստանի» լրագրերի միջև գոյություն ունեցող հակամարտությունը։*

*Վեպի հրապարակումից չանցած մեկ ամիս, «Մեղու Հայաստանի» լրագիրն իր էջերը լցնում է Հայկունու վայրախոսություններով (տե՛ս «Մեղու Հայաստանի», 1883 թ., № 31—37, 39, 57)։*

*Հայկունու թշնամական հարձակումների ամենալուրջ պատճառներից մեկը այն քննադատական ու բացասական վերաբերմունքն էր, որ Րաֆֆին ցուցաբերում էր հոգևորականության հանդեպ։ Հոդվածագիրը վայնասուն է բարձրացնում, որ իբր Րաֆֆին «ամբողջ ազգի դարավոր սրբությունները» խեղկատակության է վերածում։ Մյուս կողմից, նա Րաֆֆուն համարում է ամբոխի ջատագով՝ հայ դեմոկրատիայի գաղափարախոսը, դրա մեջ տեսնելով վիպասանի ամենամեծ մեղքերից մեկը։*

*Հայկունին, որպեսզի կարողանա ցրել «Կայծերի» թողած հսկայական տպավորությունը, այս վեպը համարում է հեքիաթ, իսկ հեղինակին՝ հեքիաթագիր։ Զբավարարվելով դրանով, նա «Կայծերի» հերոսներին համեմատում է Ալեքսանդր II սպանող ռուս անարխիստներ Ժելյաբովի, Կիբալչիչի և այլոց հետ։ Հայկունին Րաֆֆուն համարելով Չերնիշևսկու և Նալբանդյանի հետևորդը, ցանկանում էր ցարական ժանդարմերիային վարչության ուշադրությունը բևեռել Րաֆֆու վրա։*

*Հայտնի է, որ Հայկունու ակնարկով արված մատնությունից անմիջապես հետո, ոստիկանությունը խուզարկում է «Մշակի» խմբագրությունը և Րաֆֆու բնակարանը, տնային կալանքի ենթարկելով վերջինիս։ Պարզ է, որ նման պարագայում Րաֆֆին չէր կարող պատասխանել իր հակառակորդին։ Այդ բանը իր վրա է վերցնում երիտասարդ Լեոն և «Մշակի» 118 և 119-րդ համարում հրապարակում է «Կրիտիկան մեր մամուլի մեջ» հոդվածը։*

*Ավելի ուշ, 1883 թվականի սեպտեմբերի 30-ին «Մշակում»* Փավստոս *ստորագրությամբ, հանդես է գալիս նաև Րաֆֆին, հրապարակելով «Գ. Հայկունու կրիտիկան և «Կայծերը»» խորագրով մեծածավալ հոդվածը։ Այստեղ Րաֆֆին անխնա մերկացնում ու դատափետում է Հայկունուն, որպես ծախու գրչակի, որը միտումնավոր կերպով աղավաղում է «Կայծերում» արտահայտված*

գաղափարները։ Պաշտպանելով իր դավանած սկզբունքները, Րաֆֆին ավելի է խորացնում պայքարը հոգևորականության դեմ։

Քննադատելով իր անարժան հակառակորդին, Րաֆֆին ապացուցում է, որ «Կայծերը» ո՛չ հեքիաթ է, և ո՛չ էլ ծրագիր, ինչպես ջանում է ցույց տալ Հայկունին։ Րաֆֆին իր հոդվածում «Կայծերը» համարում է «ժամանակակից վեպ՝ այդ բառի կատարյալ իմաստով...», որ խոր կապ ունի տաճկահայերի ներկա դրության հետ։ Հիմնական ուշադրություն դարձնելով այս խնդրի վրա, Փավստոսը գրում է. «Րաֆֆին մի կողմից պատկերացնում է Տաճկաստանի հայերի հասարակական հիվանդությունը, իսկ մյուս կողմից՝ ցույց է տալիս այն դարմանները, որոնցով պետք է բժշկել հիվանդին»։ Փավստոսը «Կայծերի» բոլո՛ր քննադատներից պահանջում է չսխալվելու համար խստությամբ հաշվի առնել «ժամանակակից պատմությունը և այն բոլոր հանգամանքներն ու շարժառիթները, որ պատճառ եղան այդ վեպի ստեղծվելուն»։ Չնայած ոստիկանության հետապնդմանը, Րաֆֆին խիզախություն է ունենում ասելու, որ ինքը մի սովորական վիպասան չէ, ինքնանպատակ ըմբռնումներով, այլ քաղաքական գործիչ է, առաջնորդող ժամանակի ձգտումների ու գաղափարների։

Դառնալով «Վերքի» ու «Կայծերի» հերոսների նմանությանը, Րաֆֆին մերժում է Հայկունու անհիմն մեղադրանքները. «Նրանք («Վերքի» հերոսները — Խ. Ս.) ապրել և գործել են մեզանից շատ տարիներ առաջ,— գրում է Փավստոսը,— նրանք գործել են կյանքի բոլորովին ուրիշ պայմաններում»։ Րաֆֆին հենց այստեղ էլ վերապահում է անում և ցույց է տալիս իր հերոսների ու Աղասու բնավորության ու գործելակերպի ընդհանրությունը, բացատրում է, որ Ավոն, Կարոն, Ասլանը Աղասու հետևորդներն են, նրա գործի շարունակողները՝ հասարակական-քաղաքական նոր պայմաններում։ «Աբովյանի և Րաֆֆու վեպերը,— գրում է Փավստոսը,— նման են միմյանց իրենց ոգու ընդհանուր ներշնչմամբ»։ Նա Աբովյանի և Րաֆֆու հանդես գալը կապում է պատմական կոնկրետ իրադարձությունների՝ ժողովրդի ազատագրական ձգտումների պոռթկման հետ։ Հայկունու վրայից պոկելով նրան քողարկող փետուրները, Րաֆֆին առանց վարանելու բացահայտում է վերջինիս «Կրիտիկայի» հիմքում ընկած ստոր նպատակները։ «Մի բոլորովին աններելի համեմատություն էլ է անում,— ասում է Փավստոսը,— որ եթե մատնություն չհամարենք, կատարյալ զրպարտություն է, չարամիտ բամբասանք»։ Հայկունու բուն դիտավորությունը, նրա էությունը բոլորին պարզ դարձնելու համար Փավստոսը գրում է. «Հայկունին Հուդայի համբույրով է մերձանում Րաֆֆուն։ Նրան պետք է հայտնի լինի, որ Չերնիշևսկու հիշյալ գիրքը (նկատի ունի «Ի՞նչ անել» վեպը — Խ. Ս.) Ռուսաստանում արգելված է և նրա հեղինակը անհայտության մեջ է ապրում, ինչ նպատակ ունի մեր անմեղ գրականության վրա տարածել այս տեսակ կասկածներ»։ Գրողին հատուկ մեծահոգությամբ Րաֆֆին կարող էր ներել իր հակառակորդին, եթե նրա մատնությունը տգիտության արդյունք լիներ, բայց որովհետև Րաֆֆու համար գաղտնիք չէր Հայկունու չար դիտավորությունը, ուստի և նա առանց խնայելու մերկացնում է վերջինիս ու նրա գաղափարական հենարան հանդիսացող «Մեղու Հայաստանի» լրագիրը։

Փավստոսի այս քննադատությունից երկու շաբաթ անց «Երկրորդ պատասխանս» հոդվածով կրկին անգամ հանդես է գալիս Հայկունին և ի պատիվ Րաֆֆու նրան համարում է «Ամբոխի երկրպագու». նշավակում է մի մարդու, որը «բացի ամբոխից ոչ մի օգտակար դասակարգ չի տեսնում» (տե՛ս «Մեղու Հայաստանի», 1883 թ., № 104—109, 112, 113, 115, և 117)։ Զբավարարվելով

*սրանով, Բաքվի մեղվականները Հայկունու հոդվածները հրապարակում են առանձին գրքով՝ կցելով նաև բժիշկ Արամյանի նամակը, որը նույնպես մի սուր հարձակում է Րաֆֆու գաղափարների դեմ։ Այս նամակում «Կայծերը» դիտվում է իբրև հեղափոխական գործ, իսկ հեղինակը մեղադրվում է «ամկամիտ ամբոխի խոստացած բռնակալության» ծափահարելու համար (տե՛ս Հայկունի, «Րաֆֆիի «Կայծերը»», Բաքու, 1884 թ., էջ VIII)։*

*«Պ. Հայկունու կրիտիկան և «Կայծերը»» հոդվածը հրապարակվել է նաև Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում, Երևան, 1958 թ., էջ 203։*

*Հոդվածը հրապարակված է* Փավստոս *ստորագրությամբ։*

*Արտատպված է «Մշակից», 1883 թ., №№ 141, 142, 144, 145, 148, 149, 150։*

## ՄԵՐ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ՄԵՐ ԲԱՐԵԳՈՐԾՆԵՐԸ (ԷՋ 138)

*«Մեր բարեգործական հիմնարկները և մեր բարեգործները» հոդվածով Րաֆֆին ցանկանում էր ավելի արդյունավետ ուղու վրա դնել այդ նպատակով կուտակված գումարների բաշխումը։ Մատնացույց անելով նկարիչ Բաշինջաղյանին, Րաֆֆին կոչ է անում, բարեգործական հիմնարկների և մասնավոր անձանց կողմից հավաքված գումարներից տրամադրել առանձին անհատների, որպեսզի վերջիններս կարողանան արտասահմանում ստացած կրթության միջոցով զարգացնել իրենց գիտելիքներն ու տաղանդը։*

*Հոդվածը հրապարակված է* Մելիքզադե *ստորագրությամբ։*

*Արտատպված է «Մշակից», 1883 թ., № 206, էջ 1։*

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐԻՆ (ԷՋ 142)

*Այս նամակը գրված է «Մեղու Հայաստանի» լրագրում Հայկունու կատարած մի անտեղի միջամտության առիթով (տե՛ս «Մեղու Հայաստանի», 1885 թ., № 90, էջ 1)։ Հայկունին գտնվելով Ղարաբաղում, Առաքել վարդապետ Կոստանյանցից վերցնում է Րաֆֆու թողած ստացականը և ուղարկելով «Մեղվի» խմբագրին, պահանջում է, որ Րաֆֆին վերցնի իր գրությունը և ետ վերադարձնի Առաքել Կոստանյանցի երկու տետրակից բաղկացած հավաքածուն։ Հիշյալ հավաքածուն, Րաֆֆին վերցրել էր «Խամսայի մելիքությունները» աշխատության համար իբրև հավելված տպվելիք հատորի մեջ զետեղելու նպատակով։ Ինչպես նկատելի է Րաֆֆու նամակից, վերջինիս և Ա. Կոստանյանցի միջև եղել է ներքին համաձայնություն այդ տետրակները իր մոտ պահելու համար։ Սակայն Հայկունին չբավարարվելով Րաֆֆու տված պատասխանից, կրկին անգամ անդրադառնում է այս խնդրին, տպագրելով «Բաց նամակ պ. Րաֆֆուն» վերնագրով հոդվածը (տե՛ս «Մեղու Հայաստանի», 1885 թ., № 93, էջ 3)։ Րաֆֆին սրան ևս անպատասխան չի թողնում, «Արձագանքի» 23-րդ համարում (1885 թ.) տպագրելով «Նամակ խմբագրին» հոդվածը (տե՛ս այս հատորում, էջ 143)։*

*Հրապարակված է* Րաֆֆի *ստորագրությամբ։*

*Արտատպված է «Արձագանք» շաբաթաթերթից, 1885 թ., № 21, էջ 302։*

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐԻՆ (ԷՋ 143)

*Նախորդ նամակի ծանոթագրությունից արդեն հայտնի է, որ Րաֆֆին Առաքել Կոստանյանցի «Հավաքածուն» իր մոտ պահելու առիթով ստիպված էր բա-*

ցատրություն տալ «Մեղվի» հոդվածագրին։ Հայտնի է նաև այն, որ հոդվածագիր Հայկունին անտեղի միջամտությամբ նպատակ ուներ անվանարկել Րաֆֆուն։ Ահա հենց այս շարժառիթով էլ Րաֆֆին «Արձագանքում» հրապարակում է «Նամակ խմբագրին» հոդվածը։ Առանց անունի, հիշեցման Րաֆֆին պատասխանում է Հայկունու «Բաց նամակի» (տե՛ս «Մեղու Հայաստանի», 1885 թ., № 93, էջ 3) հարցադրմանը, միաժամանակ ավելի մանրամասն կերպով պարզաբանելով Առաքել Կոստանդյանցի «Հավաքածուն» իր մոտ պահելու նպատակի մասին։ Հայկունին, որ անզուսպ ատելություն էր տածում դեպի Րաֆֆին, չի կարողանում անպատասխան թողնել նրան և նույն թվականի դեկտեմբերի 12-ին «Մեղվում» հրապարակում է իր «Նամակ խմբագրին» հոդվածը, չմոռանալով անվանարկել Րաֆֆուն։

Հրապարակված է Րաֆֆի ստորագրությամբ։

Արտատպված է «Արձագանք» շաբաթաթերթից, 1885 թ., №23, էջ 326։

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ (էՋ 146)

«Նամակ խմբագրության» հոդվածը մի պատասխան է ուղղված Հարությունբեկ Սարգիս-Բեկյան Հասան-Ջալալյանի նամակի դեմ (տպագրված «Արձագանքում», 1887 թ., № 29, էջ 477)։ Հայտնի է, որ Ապրես Բեկնազարյանի (Մակար Բարխուդարյանի) «Գաղտնիք Ղարաբաղի» գրքի քննության առիթով Րաֆֆին անդրադառնում է նաև Հասան-Ջալալյանների տոհմագրությանը և օգտագործելով Բաղդասար միտրոպոլիտի աշխատությունը, մեջ է բերում այդ տոհմի ճյուղագրությունը (տե՛ս «Արձագանք», 1886 թ., № 45, էջ 588 և №46, էջ 605)։ Ահա Հարություն-Բեկ Սարգիս-Բեկյան Հասան-Ջալալյան (հավանաբար նույն այդ տոհմի վերջին շառավիղներից մեկը) «Արձագանքի» խմբագրին ուղղած իր նամակում մեղադրում է Րաֆֆուն, իրենց տոհմագրության մեջ բաց թողած սխալների համար, առանց հաշվի առնելու, որ վերջինս իր բերած տեղեկությունները քաղել է վերոհիշյալ աշխատությունից։ Իր նամակում Րաֆֆին ցույց է տալիս, թե որտեղից է օգտվել ինքը, ըստ պատշաճին պատասխանելով նաև Հասան-Ջալալյանին։

Հոդվածը հրապարակված է Րաֆֆի ստորագրությամբ։

Արտատպված է «Արձագանք» շաբաթաթերթից, 1887 թ., № 34, էջ 536։

## ՊԱՐՈՆ Գ. ԱՂԱՅԱՆԻ ՀԱՍՑԵԻՆ (էՋ 147)

1887 թվականին, երբ լույս է տեսնում «Կայծերի» երկրորդ հատորը, Գ. Աղայանը առաջիններից մեկն էր, որ իր վերաբերմունքը արտահայտեց դեպի այդ վեպը, «Աղբյուրի» 8—9 համարներում հրապարակելով «Իմ ստացած տպավորությունը պ. Րաֆֆու «Կայծերի» երկրորդ հատորից» վերնագիրը կրող հոդվածը։ Աղայանը ոչ միայն քննադատում է վեպը, այլև անվանարկում է հեղինակին, շառլատան և խաչագող համարելով «Կայծերի» հերոսներին։ Այս հանգամանքը առիթ է դառնում, որ Րաֆֆին հանդես գա «Պարոն Գ. Աղայանի հասցեին» վերտառությամբ հոդվածով և «Բրուտի շունը» ստանավորով (տե՛ս Րաֆֆի, «Երկերի ժողովածու», Երևան, 1957 թ., 8-րդ հատոր, էջ 104)։

Կարդալով Րաֆֆու հոդվածը և «Բրուտի շունը» ոտանավորը, Աղայանը գրում է պատասխան հոդված և ցանկանում է այն հրապարակել «Արձագան-

քում»։ Շիրվանզադեի հուշերից հայտնի է, որ անվանարկումների պատճառով խմբագրությունը մերժում է տպագրել Աղայանի հոդվածը։ Մերժումից հետո Աղայանը «Աղբյուր» ամսագրի նույն թվականի 11-րդ համարում (էջ 107) տպագրում է «Առ պ. Րաֆֆի» վերնագրով ծանուցումը և պահանջում, որ վերջինս երկու տողով շտկի իր սխալը։ Այնուհետև ի պատասխան «Բրուտի շանը» ստանավորի նա մի առակով նորից անվանարկում է Րաֆֆուն (տե՛ս «Աղբյուր», 1887 թ., № 11, էջ 109)։ «Արձագանքի» 47—48-րդ համարում կրկին անգամ հանդես է գալիս Րաֆֆին, հրապարակելով «Պարոն Ղ. Աղայանի հասցեին» հոդվածը (տե՛ս այս հատորում, էջ 148)։

Հոդվածը հրապարակված է Րաֆֆի ստորագրությամբ։

Արտատպված է «Արձագանք» շաբաթաթերթից, 1887 թ., № 39, էջ 615։

## ՊԱՐՈՆ Ղ. ԱՂԱՅԱՆԻ ՀԱՍՑԵԻՆ (ԷՋ 148)

Այս հոդվածը շարունակություն է այն բանավեճի, որ «Կայծերի» առիթով ծայր էր առել Աղայանի և Րաֆֆու միջև։ Նախորդ նամակի ծանոթագրությունից հայտնի է, որ Րաֆֆու այս հոդվածը ուղղված էր Աղայանի դեմ։ Րաֆֆին հետապնդում է մեկ նպատակ՝ ցույց տալ, որ Աղայանը սկզբում «Կայծերի» նկատմամբ ունեցել է դրական կարծիք և նույնիսկ իր «Սառնամանիք» վերնագրով ստանավորը նվիրել է այդ գրքին, իսկ հետո փոխել է իր վերաբերմունքը «Կայծերի» հանդեպ։

Աղայանի և Րաֆֆու միջև ծագած այս բանավեճը երկուսի կողմից էլ վերջում վեր է ածվում անձնականի։ Այս դեպքերի անմիջական ազդեցության տակ է, որ Րաֆֆին գրում է «Վիպագրությունը ռուսահայերի մեջ» հոդվածը, որը այնքան մեծ աղմուկ է հանում մամուլում։

Հոդվածը հրապարակված է Րաֆֆի ստորագրությամբ։

Արտատպված է «Արձագանք» շաբաթաթերթից, 1887 թ., № 47—58, էջ 741։

## ՊԱՐԿԱՊԶՈՒԿ ԱԾՈՂՆԵՐԸ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ (ԷՋ 150)

«Պարկապզուկ ածողները գրականության մեջ» հոդվածը Րաֆֆու անտիպ գործերից է։ Գրության ստույգ թվականը հայտնի չէ։ Պետք է ենթադրել, որ այն գրված է 1887 թվականի վերջում կամ 1888 թվականի սկզբում։ Առաջին անգամ տպագրվել է հեղինակի մահվանից մոտ 5 տարի հետո, 1892 թվականին «Արձագանքում»։

Այս հոդվածը գրված է պոլեմիկ նպատակով և ուղղված է այն «վարձկան գրիչների» դեմ, որոնք գրականության մեջ պարկապզուկ նվագողի դեր են կատարում, որոնց համար արդարություն և ճշմարտություն գոյություն չունի, որոնք իրենց համոզմունքները փոխում են պայմանների ու հանգամանքների համեմատ։

Հոդվածը «Արձագանքում» ընդհատվում է հենց այն մասում, որտեղ հեղինակը ընդհանուրը վերջացնելով ցանկանում է խոսել կոնկրետ անձնավորությունների մասին։ Ինչպես հայտնի է դառնում «Արձագանքի» խմբագրության տողատակին տված ծանոթագրությունից, հեղինակի այրին՝ Աննա Րաֆֆին, խմբագրությանը ուղարկել է հոդվածի միայն առաջին կեսը, իրեն վերապահելով շարունակությունը ուղարկելու ժամանակի որոշումը։ Շատ հավանական է, որ ինչ-որ մեկի ինքնասիրությունը չվիրավորելու պատճառով Աննա Րաֆֆին նպա-

տակահարմար է գտնում չտպագրել հոդվածի երկրորդ կեսը, որի հետևանքով էլ այն մնացել է անտիպ։

Հրապարակված է Րաֆֆի ստորագրությամբ։

Արտատպված է «Արձագանք» լրագրից, 1892 թ., № 150, էջ 1։

## ՎԻՊԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ ՌՈՒՍԱՀԱՅԵՐԻ ՄԵՋ (էՋ 151)

«Վիպագրությունը ռուսահայերի մեջ» հոդվածը Րաֆֆու անտիպ գործերից է, որը առաջին անգամ հրապարակվել է հեղինակի մահվանից հետո, 1889 թվականին։ Աննա Րաֆֆին հեղինակի ձեռագրերի միջից հայտնաբերելով այս հոդվածի ինքնագիրը, տպագրության համար հանձնում է «Մշակի» խմբագրությանը։ «Վիպագրությունը» «Մշակում» լույս տեսնելուց հետո առիթ է դառնում մի ընդարձակ բանավեճի, որ ծավալվում է մի կողմից Գրիգոր Արծրունու և մյուս կողմից՝ «Արձագանքի» խմբագիր՝ Աբգար Հովհաննիսյանի միջև, որին մասնակցում են նաև «Նոր դարի» խմբագիր Սպանդար Սպանդարյանը, Աննա Րաֆֆին, Սիմոն Հախումյանն ու Շիրվանզադեն։ (Տե՛ս «Մշակ», 1889, № 12, 15, 19, Արձագանք», 1889 թ., № 3, էջ 41, № 4, էջ 59, № 5, էջ 69—75։ «Նոր դար», 1889 թ., № 13, 16, 18)։

«Արձագանքը» և «Նոր դարը» Արծրունուն մեղադրում են Րաֆֆու հոդվածի աղավաղման համար։ Աբգար Հովհաննիսյանն ու Շիրվանզադեն պնդում են, որ «Մշակի» խմբագիրը իրավունք չունի հոդվածից հանելու Ղ. Աղայանին ու Պ. Սիմոնյանցին վերաբերող տողերը։ Այս առիթով «Մշակում» հանդես է գալիս նաև Աննա Րաֆֆին և պարզաբանում, որ ինքն է հանել ինչպես Աղայանին ու Սիմոնյանին վերաբերվող տողերը, այնպես էլ այն հատվածը, ուր Րաֆֆին խոստանում է առանձին հոդվածով անդրադառնալ «Փորձի» և «Արձագանքի» կատարած դերին։

«Վիպագրությունը ռուսահայերի մեջ» հոդվածի գրության թվականը հեղինակի, ինչպես նաև հրատարակիչ Աննա Րաֆֆու կողմից չի մատնանշված։ Գ. Արծրունին գրության մոտավոր թվականը համարում է 1886—87-ը, իսկ «Արձագանքի» խմբագիր Աբգար Հովհաննիսյանը գրությունը վերագրում է 1888 թվականի հունվարին։ Վերջին վկայությունը ավելի քան հավանական է, որովհետև Աղայանի և Րաֆֆու միջև տեղի ունեցած բանավեճը, որի անմիջական ազդեցության ծնունդն է նաև այս հոդվածը, տեղի է ունեցել 1887 թվականի վերջում, ուստի և հոդվածը չէր կարող ավելի վաղ գրված լինել։

«Մշակից» բացի, «Վիպագրությունը» տպագրվել է նաև 1891 թվականին հեղինակի «Վեպիկներ և պատկերներ» ժողովածվի առաջին հատորում՝ իբրև առաջաբան։ Այս հոդվածը տպագրվել է նաև ԳԱ գրականության ինստիտուտի հրատարակած Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում, Երևան, 1958 թ., էջ 325։

Հոդվածը հրապարակվել է Րաֆֆի ստորագրությամբ։

Արտատպված է «Մշակից», 1889 թ., № 9, էջ 1։

## ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ (էՋ 159—494)

Մինչև 1882 թվականը Րաֆֆին ընթերցող ամենալայն շրջաններին հայտնի էր իբրև վիպասան, հրապարակախոս, քննադատ, մանկավարժ, հասարակական ու քաղաքական գործիչ, իսկ երբ 1882 թվականին «Մշակում» հրապարակվում է

*«Խամսայի մելիքությունները», ընթերցողները ի դեմս նշանավոր վիպասանի տեսնում են նաև անցյալի հարցերին քաջատեղյակ մի պատմաբանի։ Այս տպավորությունը կրկնապատկվում է, երբ «Արձագանքում» տպագրվում է Ապրես Բեկնազարյանցի «Գաղտնիք Ղարաբաղի» գրքին նվիրված Րաֆֆու հոդվածը, հագեցված հետազոտող պատմաբանի սուր և հմուտ դիտողություններով։ Այս տեսակետից էլ պատահական չէ, որ Ղ. Ալիշանը Վենետիկից Րաֆֆուն ուղարկած նամակում ասել է, որ աշխարհաբար լեզվով հայոց պատմություն գրելը նրանից է սպասում (տե՛ս «Մշակ», 1913 թ., № 91, էջ 2)։ Ալիշանի այս միտքը Րաֆֆու փայփայած երազներից մեկն էր։ Դեռևս Թավրիզում և Ագուլիսում (70-ական թվականին) իբրև մանկավարժ աշխատելիս Րաֆֆին համակվում է այս ցանկությամբ, և նա դասավանդման առիթով բավականին գրառումներ է կատարում։ Փ. Վարդանյանին գրած նամակից (էջ 531) հայտնի է դառնում, որ Րաֆֆին աշակերտների համար հայոց պատմությունից դասեր է գրում, «որովհետև,— ավելացնում է նա,— դասագրքեր չունեն»։ 80-ական թվականին նա կրկին փորձում է դառնալ հայոց պատմություն գրելու մտքին, սակայն ժամանակը նրան չէր բավականացնում։ «Շատ հաճախորդների պատճառով,— մի առիթով ասել է Րաֆֆին,— դժվար թե Թիֆլիսում կարողանամ գրել»։*

*«Կայծերի» երկրորդ հատորի տպագրությունը ավարտելուց հետո Րաֆֆին մտադիր էր ժամանակավորապես թողնել Թիֆլիսն ու մեկնել Վիեննա։ Այստեղ նա պետք է զբաղվեր վերջին դարերի հայոց պատմության ուսումնասիրությամբ, սակայն նրա այս մտադրությունը ժամանակի ու միջոցների սղության պատճառով մնում է անիրագործելի։*

*Աննա Րաֆֆու վկայություններից հայտնի է, որ վիպասանի արխիվում պահպանվել է «Ազգային համառոտ պատմություն» (Հայկից մինչև Լևոն Զ) վերնագրով ուսումնասիրության ձեռագիրը։ Բացի դրանից, Րաֆֆու ստեղծագործությունների վիեննական հրատարակության վերջում կցված ցանկից հայտնի է, որ Րաֆֆին ունի նաև մի այլ թարգմանական աշխատություն՝* «Ընդհանուր պատմություն» *վերնագրով։*

*Չնայած վերոհիշյալ փաստերի առկայությանը, այնուամենայնիվ Րաֆֆին հնարավորություն չունեցավ այդ բնագավառում ավելին անել, քան «Խամսայի մելիքությունները» և «Գաղտնիք Ղարաբաղի» գրքի վերլուծությունը։ Թեև արվածն էլ բավական է, նրան իբրև պատմաբան բարձր գնահատելու համար։*

*Այսպիսով, Րաֆֆու պատմական ուսումնասիրություններից առայժմ մեզ հայտնի են միայն «Խամսայի մելիքությունները» և «Գաղտնիք Ղարաբաղի» գրքի մենախոսությունը, որ հրամցնում ենք մեր ընթերցողներին։*

## ԽԱՄՍԱՅԻ ՄԵԼԻՔՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ (ԷՋ 161)

*«Դավիթ Բեկի» գրության նախորդող ուսումնասիրությունների ընթացքում Րաֆֆին նկատում է, որ մեր պատմության մեջ «այդ ժամանակվա անցքերի ամենամեծ մասը մնացել է բաց»։ Նպատակ ունենալով բացը լրացնել լավատեղյակ մարդկանց միջոցով, Րաֆֆին «Մշակում» հրապարակում է «Իմ ընթերցողներին» վերնագրով հոդվածը, խնդրելով ձեռնահաս մարդկանց օգնել իրեն այդ գործում։ Եվ որովհետև այս կոչին արձագանքողներ չեն լինում, ուստի Րաֆֆին որոշում է գնալ Ղարաբաղ և տեղում ուսումնասիրել իրեն անհրաժեշտ պատմական աղբյուրները։ Այս պատճառով էլ նա ընդհատում է «Դավիթ Բեկի» տպագրությունը*

«Մշակում» և ուղևորվում է Ղարաբաղ։ Ըստ նախնական ծրագրի նա պետք է առանձնանար Տաթևի վանքում և այնտեղից սկսեր աշխատակցել «Մշակին»։ Րաֆֆին նպատակ ուներ ոչ միայն կատարելագործել ու լրացնել «Դավիթ Բեկը», այլև «նյութեր հավաքել Դավիթ Բեկից հետո հայտնված մելիքների կյանքից և գործունեությունից», որոնք կարող էին ծառայել նրան «առանձին վեպեր կամ պատկերներ ստեղծելու» համար։ «Եթե կհաջողվի ինձ,— գրում է Րաֆֆին,— հավաքել իմ ցանկացած բոլոր տեղեկությունները, ես կկազմեմ **Ղարաբաղի մելիքների** (ընդգծումը մերն է — Խ. Ս.) ամբողջ պատմությունը, սկսյալ Դավիթ Բեկից մինչև վերջին ժամանակները»։ Ինչպես նկատելի է, այստեղից էլ իրականում սկիզբ է առնում «Խամսայի մելիքությունները» աշխատության հղացման պատմությունը, թեև մի այլ առիթով Րաֆֆին այն միտքն է հայտնում, որ ինքը «տարիներով միշտ հետամուտ է եղած» այս մտքին։

Ձեռնամուխ լինելով Դավիթ Բեկի և Խամսայի մելիքությունների մասին փաստական տեղեկություններ հավաքելու աշխատանքին, Րաֆֆին 1881 թվականի հուլիսի 23-ին դուրս գալով Թիֆլիսից, Գանձակ տանող ճանապարհով ուղևորվում է Ղարաբաղ։ Մտնելով Գյուլիստան գավառը, նա իջևանում է Մելիք-Բեգլարյանների տանը և հավաքելով գյուղի ծերունիներին, կարողանում է արժեքավոր տեղեկություններ քաղել այդ գավառի մելիքների մասին։ Տեղում Րաֆֆին հայտնաբերում է այդ տոհմի ժառանգների շիրիմները, և տապանաքարերի վրայից հմտությամբ վերծանում նրանց տոհմագրությունը։ Եկեղեցիներում և առանձին անձանց մոտ վիպասանը հանդիպում է մի շարք գրչագիր ավետարանների և օգտվում դրանց հիշատակարաններից, ինչպես նաև կարդում ու վերծանում է բազմաթիվ արձանագրություններ։

Գյուլիստանից Րաֆֆին անցնում է Ջրաբերդ, ուր և գրի է առնում Մելիք-Իսրայելյանների մասին պահպանված ավանդությունները։ Գետաշեն գյուղի եկեղեցում նա գտնում է մի ավետարան, որի հիշատակարանում արձանագրված է Ջրաբերդի մելիքների տոհմագրությունը։ Մարդակերտ գյուղում Րաֆֆին այցելում է պատմական վերջին դեպքերին ականատես հարյուրամյա մի ծերունու և երկու օր շարունակ գրի է առնում Ղարաբաղի մելիքների և Շուշվա բերդի մասին ծերունու արած պատմությունը։

Ջրաբերդից Րաֆֆին մտնում է Խաչեն գավառը՝ Հասան-Ջալալյանների դաստակերտը։ Տոհմային գերեզմանատներում նրան հաջողվում է գտնել և ուսումնասիրել մելիքների ու կաթողիկոսների տապանաքարերը։ Գանձասարի Վանք գյուղի տներից մեկում նա հայտնաբերում է մի հնամաշ տետրակ, որտեղ պահպանված է լինում հետաքրքիր տեղեկություններ Ղարաբաղի մելիքների ու Պետրոս Մեծի միջև եղած հարաբերությունների մասին։ Մտնելով Վարանդայի գավառը, Րաֆֆին ուսումնասիրում է երկրի տերերի՝ Մելիք-Շահնազարյանների պատմությունը։ Նրան հաջողվում է զանազան հրովարտակներից, պաշտոնական թղթերից ու վավերագրերից մեծ քանակությամբ տեղեկություններ հավաքել իրեն հետաքրքրող դեպքերի մասին։ Շուշիում Հասան-Ջալալյան ժառանգներից մեկը նրան է հանձնում մի հարուստ հավաքածու՝ կազմված ֆիրմաններից, հրովարտակներից ու պաշտոնական թղթերից, որոնք պարսից շահերից ու օսմանյան տիրապետողներից շնորհված են եղել Ղարաբաղի կաթողիկոսներին ու մելիքներին։

Անցնելով Տիզակ գավառը, Րաֆֆին ձեռք է բերում Առաքել վարդապետի գրած երկու հատորանոց պատմությունը, որը արժեքավոր տեղեկություններ էր

պարունակում Տիգրանի մելիքների պատմության վերաբերյալ և այդ կողմերում Ցիցիանովի արշավանքի մասին։

Երկու ամիս շրջագայելով Ղարաբաղի հինգ գավառներում, Րաֆֆին կարողանում է հրովարտակներից, պաշտոնական թղթերից, արձանագրություններից ու գրչագիր մատյաններից մեծ քանակությամբ արժեքավոր տեղեկություններ քաղել Ղարաբաղի մելիքների պատմության վերաբերյալ։

Չբավարարվելով դրանով, նա որոնումներ է կատարում նաև Ագուլիսի Թոմա Առաքելոց վանքի ձեռագրատանն ու Էջմիածնի մատենադարանում։ Կուտակելով մեծ քանակությամբ պատմական փաստեր, Րաֆֆին իր որոնումները դեռևս ավարտված չէր համարում։ Այդ իսկ պատճառով նա օգտվում է նաև հետևյալ ձեռագիր աշխատություններից.

ա) Բաղդասար միտրոպոլիտի ժամանակագրությունը։

բ) Բաղդասար միտրոպոլիտի հրովարտակների, ֆիրմանների, կալվածագրերի, արձանագրությունների և զանազան պաշտոնական թղթերի հավաքածուն։

գ) Առաքել Կոստանյանցի երկու հատորանոց հավաքածուն։

դ) Երկու տետրակներ՝ քաղված Միրզա-Ադիգյոզալի պարսկերեն պատմությունից։

ե) Սարգիս-Ջալալյանցի «Պատմություն աշխարհին Աղվանից»։

զ) Սարգիս-Ջալալյանցի «Ծագումն Ղարաբաղա մելիքների»։

Մանրազնին կերպով ուսումնասիրելով այս աշխատությունները, Րաֆֆին նկատում է, որ սրանք ևս չեն բավարարում իրեն։ «Անցքերը, գործողություններն ու գործողները պատմական ճիշտ ձևի մեջ դասավորելու համար» նա ջանասիրությամբ սկսում է ուսումնասիրել նաև տպագիր աշխատությունները և օգտվում է հետևյալ աղբյուրներից.

1) Չամչեան Հ. Միքայէլ վարդապետ։ Պատմութիւն հայոց ի սկզբանն աշխարհի մինչև ցամ Տեառն 1784, հատոր 3։ Վենետիկ, 178 էջ։

2) Առաքել Դաւրիժեցի։ Պատմութիւն սակս դիպուածոց Հայաստանեայց և ևս գաւառին Արարատոյ և մասին Գողթան գաւառի, ըսկսեալ ի թուոյն հայոց 1054 մինչև յաւարտ պատմագրութեանս (1601—1666) այլ և ի յիշումն ածեալ մասնաւորաբար աստ և անտի։ Ամստելոդամ (Ամստերդամ), 1669։

3) Հասան-Ջալալեանց Եսայի կաթողիկոս Աղուանից։ Պատմութիւն կամ հիշատակ ինչ ինչ անցից՝ դիպելոց յաշխարհին Աղուանից ի թուականին հայոց 1160, իսկ ի թուականին Տեառն մերոյ Փրկչին Յիսուսի 1711։ Շուշի, 1839։

4) Դաւիթ Բեկ. Պատմութիւն Դավիթ-բեգին և պատերազմաց հայոց խափանու որք եղեն ընդդեմ թուրքաց ի մերում ժամանակի, այն է յամի Տեառն 1722 և հայոց 1171։ Վաղարշապատ, 1871։

5) Աբրահամ Կաթողիկոս Կրետացի։ Պատմութիւն անցիցն իւրոց և Նադիր շահին Պարսից։ Վաղարշապատ, 1870։

6) Գիլանենց Պետրոս Դի-Սարգիս։ Ժամանակագրութիւն 1722—1723 (ռուսերենը՝ Ք. Պատկանյանի թարգմանությամբ։ Պետերբուրգ, 1870 թ.)։

7) Արղութեանց-Երկայնաբազուկ Յովսեփ արքեպիսկոպոս։ «Ղարաբաղի ժառանգական տիրապետող, որ կոչվում են մելիքներ, Ռուսաստան դեսպաններ ուղարկելու սահիպողական պատճառները և նրանց խնդիրքը Նորին կայսերական Մեծության Պետրոս Մեծից» (տե՛ս «Մեղու Հայաստանի», 1858 թ., № 4, 5), ռուսերեն բնագիրը՝ «Собрание актов, относящихся к обозрению истории

армянского народа» ч. I, 165—201 и ч. II, стр. 52—62. *Այլև* Сев. Архив, 1823, т. 6, № 10, стр. 233.

*8)* **Արղությանց-Երկայնաբազուկ** *Յովսեփ։ «Հայոց տիրապետող իշխանների կամ Ղարաբաղի մելիքների մասին։ Նրանց անունները և տիրած երկրները, Շուշվայ Իբրահիմ-խանի Շուշին գրաւելու պատճառները։* «Собрание актов относящихся к обозрению истории армянского народа», ч. 2, стр. 52—62.

9) **Երիցյան Ա. Դ.** Карабагские мелики в Грузии с 1800 по 1808 годы. Кав. стар. 1872, № 2.

10) **Н. Дубровин.** Закавказье от 1803—1806 года. С. Петербург, 1866.

11) Жизнь генерал-лейтенанта князя Мадатова. Изд. второе, С. Петербург, 1863 г.

12) **П. Г. Бутков.** Материалы для историй Кавказа. Ч. 3, С.-Петербург, 1869.

*Այսպիսով, վերոհիշյալ ձեռագիր ու տպագիր ուսումնասիրությունների, ինչպես նաև Ղարաբաղի հինգ գավառներում կատարած հետազոտական աշխատանքների հիման վրա Րաֆֆին 1882 թվականի մայիսից սկսում է գրել «Խամսայի մելիքությունները» վերնագրով ուսումնասիրությունը, դրանով կենդանացնելով մի «Վաղուց կորած և մոռացված պատմություն»։*

*1882 թվականի մայիսի 14-ին «Մշակի» 83-րդ համարում տպագրվում է մի այսպիսի հայտարարություն. ««Մշակի» այս համարից սկսում ենք տպագրել Րաֆֆիի նոր աշխատությունը՝ «Խամսայի մելիքությունները» վերնագրով, որը մի պատմական նկարագիր է Ղարաբաղի մելիքների գործունեությունից»։ Այդ օրվանից սկսած «Խամսայի մելիքությունները» պարբերաբար տպագրվում են «Մշակի» մայիս—հունիս թվահամարներում, մեծ հետաքրքրություն առաջացնելով ընթերցողների շրջապատում։*

*Բարեկամներն ու ծանոթները հանդիպելով Րաֆֆուն, շնորհավորում են նրան և զանազան հարցեր ուղղում Ղարաբաղի մելիքությունների վերաբերյալ։ Իր ընթերցողների հարցասիրությանը ընդառաջելով, Րաֆֆին գրքի «Վերջաբանում» խորացնում է իր գրածը Ղարաբաղի մելիքությունների մասին և ցույց է տալիս ցանկը այն աղբյուրների, որոնցից օգտվել է ինքը. միաժամանակ նա խոստանում է հրատարակել մի երկրորդ հատոր ևս, ուր պետք է զետեղված լինեին՝ ա) Ղարաբաղի մելիքների և կաթողիկոսների մասին պարբերական մամուլում ու գրքերում ցրված հոդվածները։ բ) Ռուսաց ակտերի մեջ եղած տեղեկությունները (*Актов Кав. Археогр. Ком.*)։ գ) Ռուս պատմաբաններ՝ Սոլովևի, Բուտկովի, Դուբրովինի և այլոց գրքերի մեջ եղած հոդվածները։ դ) Պարսից պատմագրության մեջ Ղարաբաղի հայ մելիքների մասին եղած տեղեկությունները, այլև Ղարաբաղի կաթողիկոսներին ու մելիքներին շնորհած անվանական հրովարտակների, ֆիրմանների օրինակները, մելիքների տոհմագրությանը վերաբերող արձանագրությունները, ճյուղագրությունների աղյուսակներ և այլն։ Հավաքված նյութերը պետք է տպագրվեին Րաֆֆու կազմած ընդարձակ ծանոթագրություններով ու բացատրություններով։ Այս նպատակով էլ Րաֆֆին կրկին անգամ դիմում է ընթերցողներին և խնդրում, որ իրեն տրամադրեն Ղարաբաղի հայ մելիքների պատմության վերաբերյալ եղած գրավոր փաստաթղթերի պատճենները։*

*1882 թվականի օգոստոսի 6-ին «Մշակում» ավարտվում է «Խամսայի մելիքությունները» աշխատության տպագրությունը։ Միևնույն շարվածքից «Խամսան» տպագրվում է նաև առանձին գրքով։ Գիրքը արդեն պատրաստ էր վաճառքի և*

հեղինակը նախապատրաստվում էր այն հանձնել դրավաճառներին, երբ «Մի շարք ազատ մտքերի» պատճառով գրաքննիչը արգելում է լույս ընծայումը։ Թեև «Մշակի» մեջ տպագրվելու ընթացքում աշխատությունը արդեն անցել էր նրա ձեռքով և շատ հատվածներ հանվել էին նրա կողմից ու մի քանի գլուխներ ամբողջովին ջնջվել, բայց և այնպես նա պնդում էր, որ գիրքը նորից ենթարկվի քննության ու կրճատումների։ Րաֆֆին մի քանի անգամ գնում է գրաքննիչի մոտ, նա չէր ցանկանում, որ «Խամսայի մելիքությունները» վերստին քննեն. «Եթե նորից քննելու լինեն,— գրում է Րաֆֆին,— գիրքը բոլորովին կկորցնի իր նշանակությունը»։ Մեկ և կես ամիս ձգձգելուց հետո, վերջապես սեպտեմբերի 14-ին գիրքը հանվում է վաճառքի։ Հեղինակային ձեռագրերի բացակայության պատճառով դժվարանում ենք ասել, թե ինչպիսի փորձությունների է ենթարկվել «Խամսայի մելիքությունները» «Մշակում» տպագրվելու ժամանակ, սակայն մեզ հայտնի է արևմտահայ հասարակական գործիչ՝ Արփիար Արփիարյանի հիշողությունները, որից կարելի է ենթադրել, թե ինչպիսի դաժան կրճատումների է ենթարկվել «Խամսան» գրաքննիչի կողմից։ ««Մշակ» օրագրի մեջ հրատարակյալ վիպասանության, կամ պատմական դրվածոց ձեռագիրը տեսա,— գրում է Արփիարյանը,— արյունաներկ թանաքը շատ սքանչելի տողեր կիսամեռ անդ ձգած է» (տե՛ս «Մասիս», 1884 թ., № 3736, էջ 194)։

«Խամսայի մելիքությունների» տպագրումից չանցած մեկ ամիս, Րաֆֆին ձեռնարկում և կարճ ժամանակամիջոցում ավարտում է Պլատոն Զուբովի «Ղարաբաղի աստղագետը» վեպի թարգմանությունը։ «Այդ երկու աշխատությունները (նկատի ունի «Խամսայի մելիքությունները» և «Ղարաբաղի աստղագետը»— Խ. Ս.) կապ ունեն միմյանց հետ,— գրում է նա գրքի առանձին հրատարակության առաջաբանում,— և լրացնում են մինը մյուսի թերությունները, մեկը որպես վեպ, մյուսը որպես պատմություն։ Եվ այդ մտքով էլ մենք թարգմանեցինք «Ղարաբաղի աստղագետը», համարելով նրան իբրև մի օժանդակ կամ լրացուցիչ աղբյուր «Խամսայի մելիքությունները» կոչված պատմության համար» (տե՛ս այս հատորում, էջ 7)։

Պլատոն Զուբովի վեպը թեմայի ընդհանրությունից բացի, մի ավելորդ անգամ հաստատում էր Ղարաբաղի հայ մելիքների անկախ պետականության գոյությունը, որի գրեթե կորած պատմությունը հայտնաբերել էր Րաֆֆին։ Վերջին հանգամանքին մեծ նշանակություն էր տալիս պատմաբան Րաֆֆին. ավելին, նա «Խամսայի մելիքությունները» աշխատությունը համարում էր իր բոլոր ստեղծագործությունների պսակը. «Ես դրանով կենդանացրի մի վաղուց կորած և մոռացված պատմություն,—գրում է նա,—ես դրանով ապացուցեցի, որ հայկական իշխանությունը շարունակում է մինչև ներկա դարը» (տե՛ս այս հատորում, № 41 նամակը)։

Եթե արևելահայ թերթերը տարբեր պատճառներով բարվոք համարեցին խորհրդավոր լռություն պահպանել «Խամսայի մելիքությունների» վերաբերյալ, ապա արևմտահայ առաջավոր գործիչները շատ բարձր գնահատեցին այս աշխատությունը։

1884 թվականին Արփիար Արփիարյանը «Մասիս» շաբաթաթերթում հրապարակում է մի ընդարձակ հոդված «Րաֆֆին և հայ վիպասանությունը» վերնագրով (տե՛ս «Մասիս», Պոլիս, 1884 թ., №№ 3734, 3736, 3739)։ Թեև Արփիարյանը գանգատվում է, որ «Իր կամքեն անկախ պատճառներով» չի կարող «Րաֆֆիի գործոց վրա այն եղանակով» գրել, որ համապատասխանում է իր ցանկությանը, բայց և այնպես, այն, ինչ որ ասված է, այդ էլ բավական է դա-

տելու համար, թե որքան բարձր է գնահատում նա Րաֆֆուն թե՛ իբրև վիպասան, և թե՛ իբրև քաղաքական-հասարակական գործիչ։ Այս հոդվածում մի շարք հարցերի հետ մեկտեղ Արփիարյանը անդրադառնում է նաև Րաֆֆու վեպերի նշանակությանը։ Դառնալով «Խամսայի մելիքություններին», նա գրում է. «Կովկասյան պատմության վերջին ժամանակներու փառահեղ և տխրագույն դրվագը կկազմե մելիքներու պատմությունը։ Կարդա «Խամսայի մելիքություններն» և կարծես թե բոլորովին մի նոր աշխարհ կտեղափոխվիս»։ «Ազգային առաքինություններն տարօրինակ գույներով կպատկերանան աչացդ առաջ, ի լուր նոր տիտաններու դյուցազներգության։ Ժամանակը կրնա մեր մտքեն ջնջել մեր կարդացած գրքերու շատ էջերն, սակայն ով որ կկարդա մի անգամ «Խամսայի մելիքությունները» ալ այնուհետև ոչ մինն այդ տեսարաններեն անհետ կլինի յուր աչքեն, ոչ մինն այդ դյուցազնանց անուններեն կջնջվի յուր սրտեն։ Մեն մի անուն կմխի սրտին խորը» (տե՛ս «Մասիս», 1884 թ., № 3736, էջ 192)։

Արփիարյանի այս հոդվածը թեև հրահրում է «Մեղու Հայաստանի» լրագրի շուրջը համախմբված պահպանողականների չար կրքերը և նրանք հարձակվում են Արփիարյանի վրա (տե՛ս «Մեղու Հայաստանի», 1884 թ., № 78, էջ 1—4), բայց այն ունենում է նաև իր դրական նշանակությունը։ Րաֆֆու ստեղծագործություններին, և հատկապես «Խամսայի մելիքություններին» տված նրա գնահատականը արմատներ է ձգում արևմտահայ հասարակական ամենալայն խավերի մեջ։ «Երբ «Մասիս» շաբաթաթերթի մեջ հրատարակեցի «Րաֆֆին և հայ վիպասանությունը» վերնագրով մի քանի հատվածներ, մեր բարեկամներեն շատեր տեղեկություններ ուզեցին «Խամսայի մելիքությունները» գրքին վրա, փափագելով որ իրենց միջոց հայթայթեմ այդ գիրքն ստանալու համար»։ «Շատ դժվար է գոհացում տալ այդ փափագանցը,— շարունակության մեջ ասում է Արփիարյանը,— վասն զի Րաֆֆիի գործերը Պոլսո մեջ վաճառելու համար կհանդիպին զանազան կարգի դժվարության» (տե՛ս «Արևելք», Պոլիս, 1884 թ., № 289)։

Թեև Արփիարյանի համար շատ ցանկալի էր «Խամսայի մելիքությունները» ամբողջովին հրատարակել «Արևելքում», բայց, գրաքննչական խստությունների պատճառով, նա ստիպված էր ապագրել աշխատության ամփոփ շարադրանքը միայն։ «Կովկասու գրաքննչությունը արդեն հաշմած է այդ շատ պատվական երկը, մենք ալ մեր կարգին կհանդիպանանք ավելի խիստ գրաքննիչ մը. իրավ է ձեռքներնիս առաջ չերթար,— գրում է նա,— բայց զայս կպահանջե անհրաժեշտ հարկը»։ Այսպես ուրեմն, հարկադրված դիմելով զարտուղի միջոցների և «Հանդիպանալով ավելի խիստ գրաքննիչ մը», Արփիարյանը կարողանում է «Արևելքի» 1884 թվականի 289, 291, 295 և 1885 թվականի 305, 312, 313 համարներում հրապարակել այս աշխատության սեղմ շարադրանքը։

Մի քանի նախադասության մեջ խտացնելով Րաֆֆու հիմնական տենդենցը, Արփիարյանը կատարում է մեծահատված մեջբերումներ և ապա ամփոփում դրանք, ավելի համարձակ կերպով պարզաբանելով հեղինակի կիսատ թողած մտքերը։ «Խամսայի մելիքությունների» արժեքը այնքան մեծ էր ու թողած տպավորությունը այնքան ուժեղ, որ Հայկունին ևս ստիպված էր այդ գործը համարել «Գովելի աշխատություն» (տե՛ս «Մեղու Հայաստանի», 1885 թ., № 51, էջ 3), թեև այդ չէր խանգարում, որ նա «Խամսայի մելիքությունների» հետ կապված այլ առիթով խառնվի Րաֆֆու ներքին գործերին ու վրդովի վիպասանի անդորրը։ Դեպի Ղարաբաղ կատարած իր շրջագայությունների ընթացքում Հայկունին ձեռք բերելով Առաքել Կոստանյանցին Րաֆֆու տված ստացականը, հրապարակում է

այն «Մեղվում» և պահանջում, որ Րաֆֆին վերադարձնի Ա. Կոստանյանցի «Ձեռագիր հավաքածուն» և ապա ստանա իր գրությունը։ Այս առիթով է, որ Րաֆֆին «Արձագանքում» հրապարակում է երկու հոդված «Նամակ խմբագրին» վերնագրով (տե՛ս այս հատորում, էջ 146)։

Ժամանակին «Խամսայի մելիքությունները» աշխատությունը բարձր է գնահատում նաև Լեոն (Առաքել Բաբախանյանը)։ Վերջինս ոչ միայն իր «Ուսուցչի հիշատակարանը» վերնագրով գրքույկը (Շուշի, 1885 թ.) մի ընծայականով նվիրում է Րաֆֆուն, այլև իր «Վե՞պ, թե՞ պատմություն» գրքում (Շուշի, 1887 թ.), բազմիցս անդրադառնալով «Խամսայի մելիքությունները» և «Գաղտնիք Ղարաբաղի» աշխատությունների համեմատության, առավելությունը տալիս է Րաֆֆու գրքին, համակրանքով խոսելով հեղինակի մատուցած ծառայության մասին։ 1886 թվականի սկիզբն «Խամսայի մելիքությունները» աշխատության գնահատմանը անդրադառնում է նաև Գալուստ Շերմազանյանը, «Նոր դարում» տպագրելով մի ընդարձակ հոդված։ Շերմազանյանը ոչ առանց տենդենցի քննարկում է «Խամսան» և կատարում դիտողություններ, որոնց մեջ անխառն չէր նրա ցարական պաշտոնյա լինելու (Շերմազանյանը եղել է Թիֆլիսի քաղաքագլուխը) հանգամանքը (տե՛ս «Նոր դար», 1886 թ., №№ 50—53, 56, 58, 62, 63, 65, 67—69, 71, 74, 76, 78, 82, 83)։

«Խամսայի մելիքությունները» Րաֆֆու համեմատաբար քիչ տպագրված ստեղծագործություններից է. մինչև այժմ ունեցել է ընդամենը երեք հրատարակություն։ Առաջին անգամ, ինչպես տեսանք, լույս է տեսել 1882 թվականին Թիֆլիսում, երկրորդ անգամ՝ 1894 թվականին, դարձյալ Թիֆլիսում։ Երրորդ տպագրությունը տեղի է ունեցել Վիեննայում 1906 թվականին։

Որքան մեզ հայտնի է, «Խամսայի մելիքությունները» մինչև այժմ չի թարգմանվել որևէ լեզվով։

Րաֆֆու նամակներից հայտնի է, որ «Խամսայի մելիքությունները» առանձին գրքով հրապարակվելուց հետո հետապնդվել է գրաքննիչի կողմից, այդ իսկ պատճառով կազմողները նպատակահարմար գտան տեքստը տպագրության նախապատրաստելիս հիմք ընդունել «Մշակում» հրապարակված տարբերակը։ Սակայն համեմատության ընթացքում պարզվեց, որ «Մշակի» և առանձին գրքով հրատարակված տեքստերի միջև ոչ մի տարբերություն գոյություն չունի։

«Խամսայի մելիքությունները» հրապարակված է Րաֆֆի ստորագրությամբ։

Արտատպված է «Մշակից», 1882 թ., №№ 83, 84, 86—89, 91—99, 101, 102, 109—113, 115—117, 119, 121, 122, 124—127, 132, 133, 139—142։

## ԳԱՂՏՆԻՔ ՂԱՐԱԲԱՂԻ (ԷՋ 383)

Ապրես Բեկնազարյանի «Գաղտնիք Ղարաբաղի», գիրքը, որի քննությանն է նվիրված Րաֆֆու այս հոդվածը, այն գործերից է, որոնք հրապարակ են գալիս հարայ-հրոցով և մոռացվում են առանց աղմուկի։

Դեռևս հրապարակված չէր «Գաղտնիք Ղարաբաղին», երբ Հայկունին սկսում է գովաբանել այն։ Զբաղվարարվելով դրանով, նա «Ուղեղնացական ակնարկներ» վերնագրի տակ «Մեղվում» քաղվածաբար տպագրում է գրքի համառոտ շարադրանքը (տե՛ս «Մեղու Հայաստանի», 1885 թ., № 62—68)։

Լեոն կարդալով այս շարադրանքը, կասկածանք է հայտնում գրքի պատմագիտական արժեքի մասին և գտնում է, որ այն գրված է Րաֆֆու «Խամսայի

*մելիքությունները» աշխատության հիման վրա (տե՛ս «Արձագանք», 1885 թ., № 14, էջ 204)։ Հայկունին կարդալով Լեոյի հոդվածը, «Մեղվի» 79-րդ համարում պատասխանում է նրան։ «Արձագանքի» 19-րդ համարում (1885 թ.) կրկին անգամ հանդես է գալիս Լեոն և պաշտպանում իր տեսակետները, չմոռանալով հարվածել Հայկունուն և գրքի հեղինակ Մ. Բարխուդարյանին։ Իր «Ուղեգնացական ակնարկների» ծանոթագրությունում Հայկունին կրկին անգամ անդրադառնում է Լեոյի հոդվածին, անվանարկելով նրան (տե՛ս «Մեղու Հայաստանի», 1885 թ., № 93, էջ 3)։*

*«Արձագանքի» և «Մեղվի» բանավեճին շուտով մասնակցում է նաև «Նոր դարը», հրապարակելով բժիշկ Արամյանի հոդվածը։ «Նոր դարում» հոդված է հրապարակում նաև Գալուստ Շերմազանյանը (տե՛ս «Նոր դար», 1886 թ., №№ 50—53, 56, 58, 62, 65, 67, 69, 71, 74, 76. 78, 82, 89)։*

*Այն ժամանակ, երբ Թիֆլիսում վեճի առարկա էր դարձել, թե ո՞վ է գրքի հեղինակը, Պետերբուրգում տպագրվում է կռվախնձոր համարվող գիրքը՝ «Գաղտնիք Ղարաբաղին»։*

*1886 թվականի օգոստոսին «Գաղտնիքը» անցնում է Րաֆֆու ձեռքը։ Նույն թվականի օգոստոսի 25-ին «Գաղտնիք Ղարաբաղի» գրքի մեկենաս Առաքել Ծատուրյանին Րաֆֆու գրած նամակից իմանում ենք, որ վերջինս նպատակ ունի գրախոսական գրել այդ գրքի վերաբերյալ, բայց սպասում է, որ «... ամենքն իրենց առելիքը ասեն հետո,— գրում է Րաֆֆին,— փաստերով կապացուցանեմ, որ այդ գիրքը Աբրահամ կամ Ապրես Բեկնազարյանների գրածը չէ, այլ Մակար վարդապետի կեղծ աշխատությունն է» (տե՛ս այս հատորում, № 74 նամակը)։*

*Այս հավաստիացումից չանցած մեկ ամիս, Րաֆֆին «Արձագանքում» սկսում է հրապարակել «Գաղտնիք Ղարաբաղի» գրքին նվիրված մատենախոսությունը։ Եթե «Գաղտնիքը» լիներ գեղարվեստական ստեղծագործություն, Րաֆֆին, իհարկե, չէր զբաղվի դրանով, բայց որովհետև հեղինակը գիրքը ներկայացնում է իբրև մի պատմական հիշատակարան, որի փաստերը կարող են մոլորության մեջ գցել հետագա ուսումնասիրողներին, ուստի Րաֆֆին իր սրբազան պարտականությունն է համարում, ցույց տալ այդ գրքի ինչ լինելը։ Հանգամանալից ու մանրազնին հետազոտությունների միջոցով և հավաստի աղբյուրների օժանդակությամբ Րաֆֆին պարզում է, որ այս գրքում եղած փաստերի մեծագույն մասը կեղծ են և մտացածին։*

*Որպեսզի «Գաղտնիքը» վաճառվի և ունենա պատմական վավերականի արժեք, հեղինակ Մ. Բարխուդարյանը հնարել է մի կեղծ պատմություն։ Նա գրքի առաջաբանում իր ընթերցողներին հավաստիացնում է, որ իրեն «Գաղտնիքի» ձեռագիրը հանձնել է մի զառամյալ ծերունի Ապրես Բեկնազարյան անունով, որը իբրև թե ականատես է եղել իր նկարագրած դեպքերին։ Նա այնուհետև պատմում է, թե ինչպես ձեռագիրը իրեն հանձնելուց հետո ծերունի Բեկնազարյանը անհետանում է, խնդրելով նրան աշխարհաբարի թարգմանել ու հրատարակել «Գաղտնիքի» ձեռագիրը։ Առաջաբանից նաև իմանում ենք, որ թարգմանելուց հետո Մ. Բարխուդարյանը կորցնում է գրքի բնագիրը։*

*Կուռ տրամաբանությամբ և հմուտ պատմաբանի վարպետությամբ Րաֆֆին բացահայտում է Մակար Բարխուդարյանի կատարած կեղծիքը։ Րաֆֆին փաստերով ցույց է տալիս, որ Ապրես Բեկնազարյանը մտացածին անձնավորություն է, որի շուրջը եղած պատմությունը ճարպիկ ձևով հյուսել է Մ. Բարխուդարյանը։ Այնուհետև Րաֆֆին մտնում է պատմության խորքը, դուրս է բերում վկայու-*

*թյուններ, համեմատում է դրանք «Գաղտնիքում» բերված փաստերի հետ, կատարում է տարեթվերի համեմատություններ և հանգում է այն եզրակացության, որ «Գաղտնիքի» մեջ նշանակված թվականների մեծ մասը ցույց են տալիս խիստ խոշոր հակասություններ, որոնք պարզ կերպով երևան են հանում այն անհերքելի ճշմարտությունը, որ եթե հեղինակը գոյություն ունենար և ժամանակակից անձ լիներ, այդ տեսակ սխալներ չէր անի։*

*Րաֆֆին նշում է անհատնում սխալների մի շարք, որոնք տեղ են գտել «Գաղտնիքում», միաժամանակ նա ցույց է տալիս, թե ինչ եղանակով են գոյացել այդ սխալները։ Քաղվածաբար մեջբերելով մեծածավալ հատվածներ, Րաֆֆին ընթերցողի համար պարզում է, որ Մ. Բարխուդարյանը շատ տեղերում արտագրել է «Խամսայի մելիքություններից»։ Ավելի քան զավեշտականն այն է, որ Մ. Բարխուդարյանը արտագրելու ժամանակ ընդօրինակել է նաև Րաֆֆու կողմից թույլ տված սխալները։*

*«Արձագանքի» իրար հաջորդող տասը համարներում Րաֆֆին ցույց է տալիս անհամար սխալներ, կեղծ վավերագրեր, եղծված փաստեր, որոնց միջոցով Մ. Բարխուդարյանը ցանկացել է կապել ընթերցողի աչքերը։*

*Քննարկման ենթարկելով բոլոր փաստերը, Րաֆֆին հանգում է այն եզրակացության, որ այդ գիրքը ոչ մի նոր աղբյուր չունի, «նա չէ բովանդակում յուր մեջ որևէ պատմական փաստ, որը մեր գրականության մեջ նոր լիներ։ Իսկ ինչ որ նոր է,—ասում է Րաֆֆին,—այդ Մակար վարդապետի առակախոսությունների են միայն»։ Բացի դրանից, Րաֆֆին հաստատում է, որ «Գաղտնիքի» «գաղափարները, նկրտումները և պատմական երևույթների բացատրությունները ամբողջապես առնված են «Խամսայի մելիքություններից»»։*

*Ի վերջո Րաֆֆին «Գաղտնիքը» համարում է մի վնասակար աշխատություն, որը կարող է «անհմուտ ընթերցողներին մոլորեցնել և սուտը, կեղծիքը, անհավատալին ճշմարտի տեղ մատակարարել»։*

*Վերջացնելով իր ուսումնասիրությունը, Րաֆֆին մի քանի խոսք ուղղում է նաև նրանց հասցեին, որոնք լրջախոհ վերաբերմունքի փոխարեն պաշտպանում են «Գաղտնիքում» տեղ գտած կեղծիքները։*

*Րաֆֆու մատենախոսությունը նշանակալից դեր կատարեց գրքի ինչ լինելը պարզելու հարցում։ Եթե մինչ այդ «Գաղտնիքը» ուներ պաշտպանողների մի ամբողջ բանակ, ապա Րաֆֆու մատենախոսությունից հետո փոխվում է իրերի դրությունը։ Մեկ և կես ամյա աղմկալից կյանքով ապրելուց հետո «Գաղտնիքը» մոռացվում է բոլորի կողմից։ Այնուհետև մարդիկ այս գրքի հիշատակմանը անդրադառնում են Րաֆֆու հոդվածի առիթով։*

*Րաֆֆու «Գաղտնիք Ղարաբաղի» մատենախոսությունը «Արձագանքից» բացի, հեղինակի երկու այլ աշխատության հետ հրապարակվել է նաև առանձին գրքով, 1906 թվականին Վիեննայում։*

*Մատենախոսությունը հրապարակված է* **Րաֆֆի** *ստորագրությամբ։*

***Արտատպված է «Արձագանք» շաբաթաթերթից, Թիֆլիս, 1886 թ., № 35, էջ 433—436, № 36, էջ 445—448, № 37, էջ 462—467, № 38, էջ 481—484, № 39, էջ 496—503, № 40, 510—513, № 41, էջ 523—530, № 42, էջ 542—547, № 44, էջ 570—576, № 45, էջ 588—592, № 46, էջ 605—607։***

## ՆԱՄԱԿՆԵՐ (էՋ 496)

Րաֆֆու գրական հարուստ ժառանգության մեջ ամենից քիչ ուսումնասիրված բնագավառը նամակների բաժինն է։ Րաֆֆին նամակներ շատ է գրել, նա ընդարձակ նամակագրական կապեր է պահպանել ժամանակի գրական, քաղաքական ու հասարակական գործիչների՝ Ստ. Նազարյանի, Սմբատ Շահազիզի, Մկրտիչ Խրիմյանի, Պատկանյանի, Արծրունու, Աբգար Հովհաննիսյանի, Համբարձում Առաքելյանի, Շիրվանզադեի, Արփիար Արփիարյանի, Ալիշանի, Բագրատ Նավասարդյանի և այլոց հետ։

Մոտավոր տվյալներով Րաֆֆու նամակների ընդհանուր քանակությունը հասնում է մոտ երկու հազարի։ Վիպասանի մահվանից հետո Աննա Րաֆֆին իր մոտ է հավաքում Րաֆֆու համարյա բոլոր նամակները առանձին գրքով հրապարակելու համար։ Սակայն նյութական միջոցների սղության պատճառով նրա այդ ցանկությունը մնում է անկատար, իսկ նրա ժողոված նամակները՝ անտիպ։

Ինչ վերաբերում է այս հատորում տեղադրվածներին, ապա դրանք հանդիսանում են Րաֆֆու նամակների փշրանքները միայն, որոնք մեզ են հասել առանձին անհատների հոգացողության շնորհիվ։ Այս հատորում զետեղված շուրջ ութ տասնյակի հասնող նամակները, որոնք ուղղված են Մելքոն Փանյանին, Ավագ Ավթանդիլյանին ու այլոց, շատ հեռավոր պատկերացում են տալիս այն հարուստ ու բազմակողմանի նամակագրության մասին, որ ունեցել է Րաֆֆին իր ժամանակակիցների հետ։

Նամակների մի զգալի մասը քաղված են պարբերական հրատարակություններից, իսկ մյուսները վերցված են Րաֆֆու արխիվից և տպագրվում են առաջին անգամ։

«Նամակներ» բաժնից օգտվելը դյուրացնելու նպատակով մեր կողմից նամակի սկզբում գրել ենք հերթական համարակալում և ավելացրել հասցեատիրոջ անուն ազգանունը, առնելով դրանք քառակուսի [ ] փակագծերի մեջ։

Ձեռքի տակ ունենալով նամակների մի մասի ինքնագրերը, խստությամբ պահպանել ենք հեղինակի լեզվաոճական առանձնահատկությունները, իսկ այն դեպքում, երբ օգտվել ենք տպագիր տեքստից, աշխատել ենք հարազատ մնալ այդ բնագրին։

Նամակները հատորում դասավորված են ժամանակագրական կարգով։

### 1 8 5 7

### 1. [ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՎԵՏԻՍՅԱՆԻՆ]

Հովհաննես Ավետիսյանը Րաֆֆու երիտասարդական շրջանի ընկերներից է, որի հետ նա ծանոթացել է Ուրմիայում։ Հովհաննեսը ավարտելով Ուրմիայի միսիոներների ուսումնարանը, տեղափոխվում է Պոլիս և սովորում Բեբեքի ամերիկյան դպրոցում, Րաֆֆին նպատակ ուներ ուղևորվել Պոլիս, և ցանկանում էր Կարապետ եղբորը իր հետ տանել որևէ դպրոցում տեղավորելու համար, այդ նպատակով էլ նա Հովհաննեսից տեղեկություններ է ուզում տեղի դպրոցների մասին։

Այս նամակի գրության թվականն ու ժամանակը տեքստում չի մատնանշված, սակայն դրան անմիջապես հաջորդող նամակը գրված է 1858 թվականի

*ապրիլին, մյուս կողմից՝ նամակում հիշատակում կա հոկտեմբերի 19-ի մասին։ Այս և այլ փաստերի հիման վրա պետք է ենթադրել, որ նամակը գրված է 1857 թվականի հոկտեմբեր—դեկտեմբեր ամիսներում։*

*Արտատպված է Րաֆֆու ծննդյան 100-ամյակին նվիրված ժողովածուից, Փարիզ, 1937 թ., էջ 27։*

## 1858

### 2. [ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՎԵՏԻՍՅԱՆԻՆ]

*Հովհաննես Ավետիսյանին ուղղված ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ նամակը նշանակալից փաստաթղթեր են երիտասարդ Րաֆֆուն ճանաչելու տեսակետից։ Այստեղ Րաֆֆին խոսելով Հովհաննեսի կրթության հետ կապված հարցերի մասին, քննադատում ու մերկացնում է ամերիկյան դպրոցների ստանձնած դերն ու ձեռնարկած միջոցները։ Քսանհինգամյա Րաֆֆին զայրույթով է նկատում, որ այդ դպրոցները դառնալով մի տեսակ «Գաղտնի մեքենա մոլորության», հետապնդում են, որպեսզի դավանափոխ անեն իրենց գիրկը ընկած անմեղ պատանիներին։*

*Րաֆֆին չի խնայում և մերկացնում է նաև էջմիածնի կրոնավորներին, որոնք, խմբվելով տաճարներում, կողոպտում են ժողովրդին։*

*Նամակը արտատպված է Րաֆֆու ծննդյան 100-ամյակին նվիրված ժողովածուից, Փարիզ, 1937 թ., էջ 29։*

### 3. [ՄԿՐՏԻՉ ԽՐԻՄՅԱՆԻՆ]

*Խրիմյանին ուղղված այս նամակը Րաֆֆու երկրորդ տպագիր գործն է։ Եթե Րաֆֆու «Արծվի Վասպուրական» ամսագրին ուղարկված նամակներից առաջինը գովասանքի ու քաջալերանքի խոսք էր Խրիմյանի հասցեին, ապա այս երկրորդ նամակը կրքոտ ու սուր մի քննադատություն է ուղղված հայ հոգևորականության դեմ։ «Եվրոպացիք,— ասում է Րաֆֆին,— որչափ ավելի ջանք են տանում ուսումնարաններն բազմացնելու և տպագրությունն առաջ տանելու՝ Հայաստանի վարդապետները այնչափ հերքում են»։*

*Այս նամակից կարելի է դատել, թե երիտասարդ Րաֆֆին որպիսի կրքոտ վերաբերմունք ուներ հասարակական կյանքի հանդեպ և որքան համարձակ էր իր դատողությունների մեջ։ Ժամանակի իմաստով Րաֆֆու կշտամբանքները այնքան սուր և համարձակ էին հնչում, որ Խրիմյանը Րաֆֆու հայացքների թողած տպավորությունը մեղմելու նպատակով ստիպված է լինում նամակի թե՛ սկզբում և թե՛ վերջում բացատրություն տալ իր ընթերցողներին։*

*Այս նամակը առաջին անգամ տպագրվել է 1858 թվականին «Արծվի Վասպուրականի» ամսագրում. Հակոբ Միրզայան Մելիք-Հակոբյանց ստորագրությամբ, այնուհետև մեծ կրճատումներով տպագրվում է նաև 1893 թվականին, Աննա Րաֆֆու հրատարակած «Արծվի Վասպուրականի» ժողովածուում։*

*Արտատպված է «Արծվի Վասպուրականի» ամսագրից, Վանտոսպ, 1858 թ., № 7, էջ 188։*

## 1860

### 4. [ՀՈՎՀԱՆՆԵՍ ՔԱԹԱՆՅԱՆԻՆ]

*Ստավրոպոլի արքունի գիմնազիայի նկարչության դասատու Հովհաննես Քաթանյանին ուղղված այս նամակը Րաֆֆին գրել է 1860 թվականի հունվարի 15-ին Փայաջուկից։*

*Նամակը գրված է «Ախթամարա վանքը» աշխատությունը Քաթանյանի միջոցով Ստեփանոս Նազարյանին ուղարկելու առիթով։ Քաթանյանը հավանելով «Ախթամարա վանքը» աշխատությունը, իրեն հասցեագրված նամակի հետ մեկտեղ ուղարկում է «Հյուսիսափայլի» հրատարակողին, որը և լույս է ընծայում ամսագրի նոյեմբերի ամսատետրակում։ Այս կարճ հանձնարարականում Րաֆֆին առիթը բաց չի թողնում իր ամենաջերմ վերաբերմունքը արտահայտելու դեպի «Հյուսիսափայլը»։ Մի ամսագիր, որի երևան գալը «երկար ժամանակ փափագում էր տեսնել» նա։*

*Արտատպված է «Հյուսիսափայլ» ամսագրից, 1860 թ., № 11, էջ 397։*

## 1868

### 5. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

*Պատանեկության ընկեր Ավագ Ավթանդիլյանին ուղղված այս նամակը Րաֆֆին գրել է նոր տարվա 1868 թվականի հունվարի մեկի առթիվ։*

*Նամակը հետաքրքիր տեղեկություններ է պարունակում երիտասարդ հայրենասերի «խորասույզ» ու «խառն մտածմունքների», ինչպես նաև դեպի «Քանքարավոր» Նալբանդյանն ունեցած վերաբերմունքի մասին։*

*Այս նամակը ժամանակին որոշ կրճատումներով տպագրվել է Ա. Ավթանդիլյանի «Պատկերներ Րաֆֆու կյանքից» գրքում։ (Ալեքսանդրապոլ, 1904 թ., էջ 84)։*

*Ամբողջությամբ հրատարակվում է առաջին անգամ։*

*Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 15)։*

### 6. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

*Ավագ Ավթանդիլյանին ուղղված այս նամակը առաջին անգամ, որոշ աղավաղումներով, տպագրվել է Ավթանդիլյանի «Պատկերներ Րաֆֆու կյանքից» գրքում (էջ 85). այնուհետև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (Երևան, 1958 թ., էջ 25)։*

*Նամակում Նալբանդյանի մահվան նկարագրման առթիվ եղած դժգոհությունը վերաբերում է Մաթևոս Մամուրյանի հոդվածին (տպագրված «Մեղվի» կիսամսյա հանդեսի 1866 թվականի № 124-ում)։ Անբավարար համարելով Մամուրյանի հոդվածը, և բարձր գնահատելով Նալբանդյանի դերն ու նշանակությունը, Րաֆֆին գտնում է, որ «... ազգային այդ թանկագին ձոհի ցավալի մահը նկարագրելու համար հաշակավոր Հյուգոյի գրիչը պետք է, և Աբովյանի վառված, կրակված սիրտը»։*

*Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 4)։*

### 7. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

*Հայտնի է, որ 1868 թվականի օգոստոսին Րաֆֆին իրենց առևտրական տան գործերով մեկնում է Թիֆլիս։ Այստեղ ընկնելով, ինչպես ինքն է ասում, մի նախանձելի շրջապատի մեջ, առանձին ժողովներում կարդում է իր անդրանիկ վեպը՝ «Խլվլիկը», որը զարմանալի ընդունելություն է գտնում տեղի ընթերցող հասարակությունից։ Այս հաջողության լուրը հասնում է Մոսկվա Ստ. Նազարյանին, և նա նամակով Րաֆֆուց խնդրում է «Խլվլիկի» ձեռագիրը «Հյուսիսափայլ» ... «Լապտեր Հայաստանի» անունով ամսագրում տպագրելու համար։*

*Այս նամակը առաջին անգամ որոշ կրճատումներով տպագրվել է Ա. Ավթանդիլյանի «Պատկերներ Րաֆֆու կյանքից» գրքում (էջ 86), այնուհետև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 27)։*

*Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 5)։*

## 1869

### 8. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

*1868 թվականի վերջում խարխլվում է Րաֆֆու հոր հարստության հիմքերը, «դժբախտության մրրիկը փոթորկում է» Մելիք Միրզայի առևտրական գործերը, և նրանք սնանկ են հայտարարվում։ Րաֆֆին մեծ ջանքեր է գործադրում կորուստը վերականգնելու համար, բայց իզուր. «կամք նախախնամության օրհնյալ եղիցի»,— ասում է Րաֆֆին և ենթարկվում կարիքին։*

*Ինչպես նկատելի է նամակից, Րաֆֆին ընկնում է ծայրահեղ կարիքի մեջ և ստիպված է լինում, իր կամքին հակառակ, Ավթանդիլյանից ետ խնդրել մի քանի տարի առաջ նրան տված քսան թուման փողը։*

*Այս նամակի սկզբի հատվածը ժամանակին հրապարակվել է Ավթանդիլյանի «Պատկերներ Րաֆֆու կյանքից» գրքում (էջ 88)։ Ամբողջությամբ տպագրվում է առաջին անգամ։*

*Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 6)։*

## 1872

### 9. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

*Րաֆֆին այս նամակը Ավթանդիլյանին գրել է այն ժամանակ, երբ ինքը աշխատում էր «Մշակի» խմբագրատանը և նրա վրա էր դրված արտաքին լուրերի կազմակերպման խնդիրը։ Այս առիթով էլ նա դիմում է Ավթանդիլյանին և խնդրում նրան պարբերաբար տեղեկություններ հաղորդել պարսկահայոց կյանքից. «Ինչե՞ր չեն լինում դիվանխանաներում, ինչե՞ր չեն լինում շարիաթխանաներում, ինչե՞ր չեն գործում նահանգների* հաքիմները, մօլլաները *և ինչե՞ր*

*չէ անում վերջապես մեր Ատրպատականի հոգևոր կառավարությունը։ Այն բոլոր անկարգությունները, որ պատահում են այս տեղերում, միշտ առատ նյութեր կարող են լինել լրագրության համար»։*

*Րաֆֆին ցանկանում էր իր բարեկամին ներգրավել «Մշակի» թղթակիցների շարքում, այդ իսկ պատճառով էլ հորդորում ու խրախուսում է նրան։ Բացի դրանից, նա նպատակ ուներ մի նոր և ավելի ընդարձակ ուսումնասիրություն գրել վրաց իշխան Ալեքսանդրի մասին։ Այդ պատճառով էլ Րաֆֆին Ավթանդիլյանից տեղեկություններ է խնդրում նրա վերաբերյալ։*

*Հրապարակվում է առաջին անգամ։*

*Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 7)։*

## 1873

### 10. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

*Ապրելով Թիֆլիսում և աշխատելով «Մշակի» խմբագրատանը, Րաֆֆին չէր մոռացել իր հայրենակիցներին, նա շահագրգռված էր, որ պարսկահայերն էլ ստանան ու կարդան «Մշակի» համարները, որ նրանց կյանքն էլ արտացոլվի լրագրության մեջ։ Նամակում Րաֆֆին իր ցավն է հայտնում, որ փոստային բարձր ծախքերը «արգելք կարող են լինել «Մշակի» Պարսկաստանում տարածվելուն»։*

*Նամակից պարզվում է նաև, որ Ավթանդիլյանը պարբերաբար թղթակցում է «Մշակին»։*

*Հրապարակվում է առաջին անգամ։*

*Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 8)։*

## 1874

### 11. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

*Այս փոքրիկ նամակը մի պատասխան է Ավթանդիլյանի հարցումներին։*

Աստվածատուր Ղարաբեկով, Հօպիօնը և Թավրիզեցին *«Մշակի» պարսկահայ թղթակիցներն են։*

*Նամակը գրված է «Մշակի» բլանկի վրա։*

*Հրապարակվում է առաջին անգամ։*

*Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 9)։*

### 12. [ՌԱՖԱՅԵԼ ՊԱՏԿԱՆՅԱՆԻՆ]

*Րաֆֆին «Փունջի» առաջին և երկրորդ հատորներից քսան օրինակ այս նամակի հետ միասին ուղարկելով Ռաֆայել Պատկանյանին, ցանկանում է իմանալ նրա կարծիքը իր ստեղծագործությունների մասին։*

*Կարդալով «Փունջի» հատորները, 1874 թվականի սեպտեմբերի 5-ին Պատ-*

կանյանը Րաֆֆուն գրում է. «...Ձեր արձակը յուր սեռումը՝ թե արտաքին, և թե ներքին հույսովն, թե ասացվածքի կերպով, և թե առարկայի ժամանակցությամբ միով բանիվ ամեն կողմանե նոր երևույթ է մեր նորածին դրականության մեջ»։

«...Դուք,— գրում է Պատկանյանը,— տիրապետեցիք բոլոր էությունս, որ կողմ կամեցաք այն կողմ տարեցիք հոգիս... Ինչո՞ւ, նրա համար, որ դուք բանաստեղծ եք բառիս ծայրահեղ իմաստով...»։ (Տե՛ս Րաֆֆի, «Սալբի», 1911 թ., Վիեննա, Աննա Րաֆֆու առաջաբանը, էջ 16)։

Րաֆֆու այս նամակից իմանում ենք նաև, որ Պատկանյանը հորդորել է նրան Գերմանիա գնալ (հավանաբար սովորելու համար) և այդ հորդորը թեև «բաղձանք է թողել» Րաֆֆու սրտի մեջ, բայց միջոցների բացակայության պատճառով նրա այդ ցանկությունը այդպես էլ մնացել է անկատար։

Այս և հատորում զետեղված №№ 12, 57, 60, 70 և 75 նամակները առաջին անգամ տպագրվել է ԳԱ «Տեղեկագրում»։ (Տե՛ս, 1956 թ., № 4, էջ 114—119)։ Տեքստը տպագրության է պատրաստել ԳԱ գրականության և արվեստի թանգարանի գիտ. աշխատակից Գոհար Աղնավուրյանը։ Այնուհետև այս նամակը տեղ է գտել նաև Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 49)։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Ռ. Պատկանյանի ֆոնդ, № 1159)։

## 13. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻՆ]

Համբարձում Կարապետյանը Թավրիզի Արամյան դպրոցի դասատուներից էր, Րաֆֆու բարեկամներից մեկը, որին նա ցանկանում էր ներգրավել «Մշակի» թավրիզյան թղթակիցների շարքում։ Իր հայրենակիցների նկատմամբ Րաֆֆու ունեցած վերաբերմունքը սրտացավ էր ու կարեկցական. նրանց կյանքի անմխիթար վիճակը հանգիստ չէր տալիս երիտասարդ հայրենասերին։ Այդ պատճառով էլ նա իր բարեկամներին խնդրում էր գրել ժողովրդի կյանքի և հասարակական ու կուլտուրական անցուդարձերի մասին։ «Գրեցեք, խնդրեմ,— ասում է Րաֆֆին Հ. Կարապետյանին,— թե ինչպե՞ս եք տեսնում տեղային առաջնորդին, կամ ձեր տեսչին. գրեցեք ո՞վ է այժմ գլխավոր դերը խաղում այնտեղի հասարական գործերում»։

Հրապարակվում է առաջին անգամ։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 24)։

## 1 8 7 5

## 14. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻՆ]

Համբարձում Կարապետյանին հասցեագրված այս նամակի մի զգալի մասը վերաբերում է վերջինիս և Թավրիզի Արամյան դպրոցի հոգաբարձության միջև գոյություն ունեցող հարաբերություններին։ Րաֆֆին տեղյակ լինելով միջադեպերին, հորդորում է իր բարեկամին չհուսահատվել անհաջողություններից և չնախանձել Մուշեղյանցների (հավանաբար հակադրվող կողմի ներկայացուցիչներից մեկն է) հաջողությունների համար։ «Ամեն ինչ ոսկի չէ, ինչ որ փայլում է»— ասում է Րաֆֆին։ «Խաբեբայությունը վաղ թե ուշ, վերջապես մի օր կմերկա-

նա»։ Այս նամակից պարզվում է նաև, որ Րաֆֆին անտարբեր չէր պարսկահայոց կյանքում պատահած անցուդարձերի հանդեպ, հետաքրքրվում էր ու ապրում իր հայրենակիցների կյանքով։ «Կարդացի ձեր ուսումնարանի պրագրամը,— գրում է Րաֆֆին Հ. Կարապետյանին,— չափից դուրս անկարգ է»։

Նամակում հիշատակված Արզումանն ու մահտեսի Սիմոնը Թավրիզի հարուստներից են և Րաֆֆու մտերիմ բարեկամ Մելիք Ազարյանի ընկերները, իսկ Աարին ու Սարգիսը հավանաբար Արամյան դպրոցի հոգաբարձուներից են։

Հրապարակվում է առաջին անգամ։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան. Րաֆֆու ֆոնդ, № 19)։

## 15. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻՆ]

Նամակը գրված է Հ. Կարապետյանի կողմից հաղորդած տեղեկությունների անմիջական ազդեցության տակ։ Գրության ոճի, կրքոտության հարցում չարժաւիթ է հանդիսացել Ատրապատականի հոգևոր առաջնորդի կողմից Րաֆֆու վրա բարդած անտեղի մեղադրանքները։

Հոգևոր առաջնորդ Անդրեաս եպիսկոպոսը իր մասին «Մշակում» հրապարակված բացասական հոդվածի (տե՛ս «Մշակ», 1875 թ., № 1) տպագրության թույլտվությունն ու հեղինակությունը վերագրելով Րաֆֆուն, աշխատում է այդ փաստի մեջ տեսնել Րաֆֆու ոխակալությունն իր հանդեպ։ Րաֆֆին իր նամակում բացատրում է, որ «Մշակում» լույս տեսնող հոդվածները տպագրվում են խմբագրական ժողովներում քննարկվելուց հետո, որ հոդվածի տպագրվելը կամ չտպագրվելը կախված չէ որևէ մեկի կամքից։ Հիշեցնելով, որ վերոհիշյալ հոդվածի հերքումը նույնպես տպագրված է «Մշակում» (տե՛ս «Մշակ», 1875 թ., № 11), Րաֆֆին պարզում է, որ խմբագրությունը անաչառ է և անձնական կիրք կամ թշնամություն չունի դեպի այս կամ այն անձը։ Այնուհետև անդրադառնալով նրա մյուս մեղադրանքին, Րաֆֆին բացատրում է, որ ինքը եթե որևէ ասելիք ունենա չի թաքնվի ուրիշի անվան տակ։ «Իմ դրոշակը հայտնի է և բացարձակ»,— ասում է նա։ Րաֆֆին անմտություն է համարում նաև ոխակալության մասին խոսելը, որովհետև ինքը զոհաբերության գնով և հայրենիքին ծառայելու նպատակով է հանձն առել այդ «աղոտ պաշտոնը» և մերժվելու դեպքում չի կարող վշտանալ ու առավելապես ոխ պահել։ Նա միայն դատապարտում է հասարակությանը, որը չի կարողանում «լավը վատից ջոկել»։

Վերջում Րաֆֆին Հ. Կարապետյանին պատվիրում է առաջնորդին ասել, որ «հասարակական գործիչները այդպիսի չնչին բաներից չեն խրտնում, չեն հուսահատվում. պետք է ունենալ կամք և համոզմունքի հաստատություն ու ազգային գործերը առաջ տանել»։

Նամակը հրապարակվում է առաջին անգամ։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 20)։

## 16. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻՆ]

Րաֆֆու այս նամակը ցույց է տալիս, որ նա հետևողականորեն զբաղվում էր պարսկահայոց կյանքով և աշխատում էր թե՛ լրագրության միջոցով, և թե՛ մասնավոր նամակներով օգտավետ լինել նրանց մտավոր զարգացմանը։

*Թավրիզի Արամյան դպրոցում ստեղծված դրությունը (որի մասին նա լրիվ տեղեկություններ ուներ Հ. Կարապետյանի և այլոց միջոցով) շատ տխուր տպավորություն է գործում նրա վրա։ Րաֆֆին այդ բոլորի պատճառը տեսնում էր ուսուցչական ժողովների բացակայության մեջ։ Րաֆֆին մեղադրում է նաև իր բարեկամին՝ Հ. Կարապետյանին, որը ցանկացել է «Մեծի զորությամբ ստիպել աշակերտներին սովորելու յուր դասերը։ Դա,— ասում է Րաֆֆին,— վարժապետի անհմտության գլխավոր նշաններից մեկն է»։ Քաջատեղյակ լինելով Արամյան դպրոցի իրադարձություններին՝ Րաֆֆին որոշում է գնալ Թավրիզ, աշխատել այնտեղ և ուրիշ կերպարանք տալ դպրոցի բարեկարգությանը։*

*Նամակը հրապարակվում է առաջին անգամ։*

*Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 21)։*

## 17. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻՆ]

*Ինչպես տեսանք նախորդ նամակի ծանոթագրության մեջ, Րաֆֆին ցանկանում էր գնալ Թավրիզ և աշխատել Արամյան դպրոցում։ 1875 թվականի հունիսի սկզբին դուրս գալով Թիֆլիսից, նա ուղևորվում է Թավրիզ։ Տեղում գործերը ավարտելուց հետո Րաֆֆին գնում է հայրենի գյուղը, հարազատների մոտ հանգստանալու։*

*Այս նամակը գրված է Սալմաստից։ Ինչպես նկատելի է նամակի բովանդակությունից, Րաֆֆին ճանապարհին հիվանդանում է և գեղորայք է խնդրում իր բարեկամից։*

*Նամակը հրապարակվում է առաջին անգամ։*

*Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 22)։*

## 18. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻՆ]

*Այս նամակը ևս նախորդի նման գրված է Սալմաստից։ Րաֆֆին արդեն առողջացել էր և շտապում էր օր առաջ հասնել Թավրիզ, որովհետև ցանկանում էր «դպրոցի համար նոր* programma *կազմել»։ Ըստ Րաֆֆու կազմած նախնական ծրագրի դպրոցում պետք է ավանդվեր նաև Իրանի աշխարհագրությունը։ Այդ նպատակով էլ նա իրազեկ է պահում Հ. Կարապետյանին, թե ինչ ճանապարհով պետք է ձեռք բերել անհրաժեշտ տեղեկություններ այդ առարկայի վերաբերյալ։*

*Նամակը հրապարակվում է առաջին անգամ։*

*Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 23)։*

## 1876

## 19. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԱՌԱՔԵԼՅԱՆԻՆ]

*Համբարձում Առաքելյանը Րաֆֆու հայրենակիցներից էր։ Կյանքի վաղ շրջանում ապրելով Պարսկահայաստանում, նա ակտիվորեն մասնակցում էր տեղի հասարակական ու կուլտուրական կյանքի զարգացմանը։*

Լինելով Խորեն Ստեփանեի «Հայկական աշխարհի» բաժանորդը և աշխատակցելով այդ հանդեսին, Առաքելյանը մի նամակով դիմում է Րաֆֆուն՝ խնդրելով վերջինիս թղթակցել «Հայկական աշխարհին»։ Րաֆֆին, ինչպես նկատելի է նամակից, մերժում է Առաքելյանի առաջարկը, ասելով, որ ինքը խոստացել է «Արծրունուն՝ քանի ապրում է «Մշակը» աշխատակից լինել նորա հրատարակության»։

«Մշակի» 38-րդ համարի հետ կապված հարցը, որի մասին ակնարկ կա նամակում, վերաբերում է Րաֆֆու «Պարսկաստանի հայոց վիճակագրական դրությունը» հոդվածին (տե՛ս «Մշակ», 1875 թ., № 38)։ Այստեղ Րաֆֆին մանրամասն տեղեկություններ է հաղորդում Պարսկաստանի Ատրպատական նահանգում ապրող հայերի քանակության մասին, հոդվածի տողատակում նշելով, որ այդ տեղեկությունները ինքը քաղել է Թադեոս եպիսկոպոսի վիճակագրությունից։

Առաջին անգամ հրապարակվել է Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 90)։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Հ. Առաքելյանի ֆոնդ, № 1528)։

## 20. [ԱՐԱՄՅԱՆ ԴՊՐՈՑԻ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹՅԱՆԸ]

Րաֆֆու այս նամակը հանդիսանում է Թավրիզի ազգային դպրոցի հոգաբարձության մարտի 8-ի գրության պատասխանը։

Դպրոցի հոգաբարձությունը հաջորդ ուսումնական տարում Րաֆֆու աշխատակցությունը ամրացնելու նպատակով դիմում է նրան և խնդրում, որ 1877 թվականին իրենց մոտ աշխատելու համար տա իր համաձայնությունը։

Րաֆֆին նամակի միջոցով հայտնում է, որ իր պատասխանը կարող է տալ զատկի տոներից հետո։

Հրապարակվում է առաջին անգամ։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 44)։

## 21. [ՓԻԼԻՊՈՍ ՎԱՐԴԱՆՅԱՆԻՆ]

Հայտնի մանկավարժ, թարգմանիչ ու հրատարակիչ Փիլիպոս Վարդանյանը 1876 թվականի սկզբին մտադրվելով Պետերբուրգում հրատարակել «Լումա» անունով ամսագիրը, մի նամակով դիմում է Րաֆֆուն և խնդրում նրան աշխատակցել իր հանդեսին։ Այս առաջարկությունը Րաֆֆին ընդունում է «ամենայն սիրով, որովհետև,— ասում է նա,— Ռուսաստանում մի օրինավոր ամսագրի հրատարակությունը խիստ վաղուց իմ բաղձանքների առարկան է եղել»։

Րաֆֆին խոստանում է կանոնավոր ու հարատև աշխատակցել «Լումային», յուրաքանչյուր ամիս ուղարկելով 30—90 երես նյութ։

«Ես արդեն տվել եմ արտագրելու մի ամբողջ վիպասանական աշխատություն» ասելով Րաֆֆին նկատի ուներ «Խաչագողի հիշատակարանը» վեպը, որ արտագրել տալուց հետո նպատակ ուներ մաս առ մաս տպագրել «Լումայում»։

Այս նամակը առաջին անգամ հրապարակվել է «Արձագանք» լրագրում, ինչպես նաև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 95)։

Արտատպված է «Արձագանքից», Թիֆլիս, 1892 թ., № 34, էջ 2։

## 22. [ՓԻԼԻՊՈՍ ՎԱՐԴԱՆՅԱՆԻՆ]

*Փիլիպոս Վարդանյանին ուղղված երկրորդ նամակում Րաֆֆին բացատրում է, որ «Լումային» որևէ բան ուղարկելը ուշացրել է, որովհետև չի ցանկացել բավականանալ փոքրիկ հոդվածներով։ Նա Փ. Վարդանյանին տեղեկացնում է, որ գրագրին արտագրել է տվել և շուտով նրան կուղարկի «Խաչագողի հիշատակարան» վերնագրով վեպը, բաղկացած երկու հատորից։*

*Փ. Վարդանյանին դժգոհություն պատճառած հոդվածը տպագրված է «Մշակի» 1876 թվականի 6-րդ համարում։ Հոդվածագիրը ոչ միայն կասկածանքով է խոսում դեռևս լույս չտեսած «Լումայի» ուղղության մասին, համարելով այն կղերական, այլև ամսագրի հրատարակումը համարում է ավելորդ։*

*Րաֆֆին նրան խորհուրդ է տալիս չվհատվել «Մշակի» բացասական դիրքից, «որովհետև,— ասում է նա,— ազնիվ նպատակը և տոկուն աշխատությունը, թեև ուշ, վերջապես կպսակվեն արդյունավոր արգասիքով»։*

*Նամակը առաջին անգամ հրապարակվել է «Արձագանք» լրագրում, այնուհետև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 99)։*

*Արտատպված է «Արձագանքից», Թիֆլիս, 1892 թ., № 34, էջ 2։*

## 23. [ՓԻԼԻՊՈՍ ՎԱՐԴԱՆՅԱՆԻՆ]

*Այս նամակը իր մի շարք կողմերից բացի, հետաքրքրական է նաև նրանով, որ որոշակի տեղեկություն է պարունակում «Խաչագողի հիշատակարանը» վեպի նախնական տարբերակի մասին։*

*Ըստ Փ. Վարդանյանին հաղորդած տեղեկությունների, այս վեպի առաջին մասի դեպքերը կատարվում են Վասպուրականի, Տարոնի ու Ատրպատականի մեջ և կենտրոնը՝ Վան քաղաքն է, իսկ երկրորդ մասի դեպքերը տեղի են ունենում Փոքր Ասիայում, Ռուսաստանում ու Հնդկաստանում, և կենտրոնն է Կ. Պոլիսը։ Հայտնի է, որ «Խաչագողի հիշատակարանում» գործողությունների զարգացումը ո՛չ Վանի, և ո՛չ էլ Պոլսի հետ ոչ մի առնչություն չունի։ Պետք է ենթադրել, որ Րաֆֆին հրատարակման ընթացքում փոխել է գործողությունների վայրը։*

*«Խաչագողի հիշատակարանի» առաջին հատորի ձեռագիրը ուղարկելով Փ. Վարդանյանին, Րաֆֆին նպատակ ուներ նրան ուղարկել նաև երկրորդ հատորը։ Բայց ավաղ։ Ինչպես պարզվում է Ավթանդիլյանին գրած 1880 թվականի 18-ը ապրիլի թվակիր նամակից, կառավարությունը Փ. Վարդանյանին, իբրև կասկածավոր մարդու, մերժում է ամսագիր հրատարակելու խնդիրքը։*

*Նամակի հետգրության մեջ Րաֆֆին իր համակրանքն է հայտնում, որ մեծահարուստ բարեգործ Սանասարյանը ցանկացել է որոշ պիտույքներ ուղարկել Դավրիժի դպրոցին։ Րաֆֆին ցուցումներ է տալիս, թե ինչ է անհրաժեշտ իրենց։*

*Փ. Վարդանյանը այս նամակներին նախորդող իր առաջաբանում հայտնում է, որ ինքը «Արձագանքի» խմբագրությանն է տրամադրել չորս նամակ, սակայն մեզ համար անհայտ պատճառով նամակներից տպագրվել են միայն երեքը։*

*Նամակը առաջին անգամ հրապարակվել է «Արձագանք» լրագրում, այնուհետև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 101)։*

*Արտատպված է «Արձագանքից», Թիֆլիս, 1892 թ., № 35, էջ 1։*

## 1877

### 24. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

*Ինչպես հայտնի է, Րաֆֆին օրիորդաց դպրոց հիմնելու և ուսումնական գործի ընդհանուր դրվածքը բարելավելու առիթով ընդհարվում է տեղի պահպանողականների հետ ու հեռանում Թավրիզից։*

*Թիֆլիսում, ինչպես հայտնի է դառնում նամակից, նրան թե՛ «Փորձի» խմբագրությունից, և թե՛ Ներսիսյան դպրոցից առաջարկում են աշխատել իրենց մոտ, սակայն Րաֆֆին գերադասելով գյուղական պարզ ու խաղաղ կյանքը, տեղափոխվում է Ագուլիս։ Ագուլիսի դպրոցից նրան հրավիրել էին վարելու բարձր դասարանների հայոց լեզվի և պատմության ուսուցչի պաշտոնը։*

*1877 թվականի երկրորդ կեսից Րաֆֆին արդեն բնակվում էր Ագուլիսում։ Նա թեև Թավրիզից հեռացել էր վիրավորված ինքնասիրությամբ, բայց և այնպես չէր դադարել զբաղվել իր հայրենակիցների կյանքով։ «Աշխատեցեք, եղբայր, խնամք տանել դպրոցի բարեկարգմանը,— գրում է նա Ավթանդիլյանին,— ոչ միայն իբրև վարժապետ, այլև որպես ազնիվ հայ, որը ճանաչում է, թե ինչ կարևորություն ունի ազգային դաստիարակությունը»։*

*Նամակի վերջում մեծ հոգու տեր գրողը հայտնում է, որ ինքը ներում է իր հակառակորդների բոլոր անիրավությունները։*

*Նամակում հիշատակված* Բարդուղիմեոս ճայր սուրբը և տեր Մեսրոպը, *ինչպես նաև* Երեմիան, Ներսես ու Սոլոմոն խանը *Րաֆֆու թավրիզյան բարեկամներն են, նրա համախոհները։*

*Այս նամակը առաջին անգամ որոշ կրճատումներով տպագրվել է Ա. Ավթանդիլյանի «Պատկերներ Րաֆֆու կյանքից» գրքում (էջ 125)։*

*Ամբողջովին հրատարակվում է առաջին անգամ։*

*Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 10)։*

### 25. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

*Մելքոն Փանյանը, որի հետ Րաֆֆին ծանոթանում է նամակագրության միջոցով, Վերին Ագուլիսցի է։*

*Գնալով Մոսկվա, նա շուտով աչքի ընկնող դիրք է գրավում, ծանոթանում է ժամանակի հայ մտավորականության հետ, դառնում է նրանց սիրելին և իր ունեցած հնարավորության սահմաններում օգնում է նրանց։ Փանյանը սերտ կապի մեջ է եղել Նազարյանի, Նալբանդյանի, Շահազիզի, Պատկանյանի, Րաֆֆու և մյուսների հետ։ Հայ գրողներին մի դեպքում նա օգնում էր նյութապես, մի այլ դեպքում կազմակերպում էր նրանց գրքերի բաժնեգրությունն ու վաճառքը և այլն։*

*Ինչպես հայտնի է, 1879 թվականին Րաֆֆին որոշում է բաժնեգրության միջոցով հրատարակել իր «Կայծեր» անունով վեպը և օգնության համար նա մի տպագիր շրջաբերականով (տե՛ս Րաֆֆի, Երկերի ժողովածու, հատ. 9, էջ 503), ինչպես նաև մասնավոր նամակներով, դիմում է իր բոլոր բարեկամներին։ Դեկտեմբերի 10-ին տպագիր շրջաբերականը, բաժնեգրվողների ստորագրության թերթիկը, այս նամակի հետ մեկտեղ Րաֆֆին ուղարկում է Մ. Փանյանին՝ խնդրելով վերջինիս օգնել իրեն «Կայծերի» տարածման գործում։*

1879 թվականին ծանոթություն հաստատելով Փանյանի հետ, Րաֆֆին մինչև իր կյանքի վերջը գտնվում էր նամակագրական սերտ կապի մեջ։

Րաֆֆու Փանյանին ուղղված նամակներից մեզ հասել է ընդամենը 34 հատ, որոնցից 33-ը որոշ կրճատումներով 1913 թվականին Հ. Տեր-Հակոբյանը (Իրադեկը) հրապարակում է «Արարատ» ամսագրի 2—3, 4, 6—7 համարներում։

Ավելի ուշ՝ 1920 թվականին, Հ. Տեր-Հակոբյանը «Հայաստանի կոոպերացիա» երկշաբաթաթերթում նորից է հրապարակում Փանյանցին ուղղված նամակներից 11-ը։ Վերահրատարակվում են հատկապես նրանք, որոնք 1913 թվականին «Արարատում» հրատարակվելու ընթացքում կրճատվել ու հանվել էին։

Արտատպված է «Արարատ» ամսագրից, 1913, № 2—3, էջ 201։

## 26. [ԳԵՎՈՐԳ ՎԵՀԱՊԵՏՅԱՆԻՆ]

Աստրախանի հայկական թեմի առաջնորդ Գևորգ արքեպիսկոպոս Վեհապետյանին հասցեագրված այս նամակը Րաֆֆին գրել է «Կայծերի» բաժնեգրությունը կազմելու առիթով։

Նախորդ նամակի ծանոթագրության մեջ արդեն ասված է, որ Րաֆֆին դիմում է Մ. Փանյանին ու իր մյուս բարեկամներին և խնդրում նրանց, որ օգնեն իրեն «Կայծերի» տարածման գործում։ Հարանման նամակներ, առորագրության թերթիկի ու տպագիր շրջաբերականի հետ միասին, նա ուղարկում է նաև Հովսեփ Կոստանյանին, Սուքիաս Պարզյանին, ինչպես նաև Գևորգ Վեհապետյանին։

Նամակում գրության ամսաթիվը չի մատնանշված, սակայն հայտնի է, որ Վեհապետյանն այն ստացել է 1879 թվականի դեկտեմբերի 24-ին։ Քանի որ շրջաբերականի հետ, մյուս բարեկամներին ուղղված նամակները գրված են դեկտեմբերի 10-ին, ապա հիմքեր կան ասելու, որ այս նամակը ևս գրված է դեկտեմբերի 10-ին։

Նամակը առաջին անգամ հրապարակվել է Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածուում (էջ 128)։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ՀՍՍՌ պետական կենտրոնական պատմական արխիվ, ֆոնդ № 52, ցուցակ № 5, գործ № 7, թերթ 56)։

## 27. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

Վերսկսելով Ավթանդիլյանի հետ ընդհատված նամակագրությունը, Րաֆֆին պատմում է իր գլխով անցած դեպքերը։ «Կյանքի ալիքների մեջ տատանվող իմ նավը,— գրում է նա,— այժմ կարծես թե հասել է իր նավահանգստին։ Երկար ճափառելեն հետո, երկար անախորժություններ կրելեն հետո, վերջապես Թիֆլիսում դադար գտա»։ Ծանուցման կարգով պետք է ասել, որ Րաֆֆին Ագուլիսի դպրոցում ընդհարվելով տեղի պահպանողական, աղայական տարրերի հետ, թողնում է դպրոցն ու տեղափոխվում Թիֆլիս։ «Այժմ ես իմ աշխարհի մեջն եմ գտնվում,— գրում է նա,— որ վաղուց փափագելի էր. գրավոր աշխատանքը միշտ եղել է իմ կյանքի նպատակը...»։

Աշխատելով խմբագրատանը, Րաֆֆին նորից սկսում է հորդորել իր բարեկամին. «Շարունակեցեք Ձեր թղթակցությունները «Մշակին»,— ասում է նա Ավթանդիլյանին,— Ձեր նամակները հետաքրքիր են»։

Խիզանյանը, որի մասին խոսում է Րաֆֆին, Թավրիզի Արամյան դպրոցի

*դասատուներից է, որ իրեն է վերագրում «Մշակում» տպագրված Րաֆֆու անստորագիր հոդվածները։*

*Նամակը առաջին անգամ որոշ կրճատումներով տպագրվել է Ա. Ավթանդիլյանի «Պատկերներ Րաֆֆու կյանքից» գրքում (էջ 129)։ Այնուհետև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 128)։*

*Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 11)։*

## 1880

### 28. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

*Րաֆֆին Թավրիզից հեռանալուց հետո, որոշ ժամանակ անց, Արամյան դըպրոցում սկսում է պաշտոնավարել նրա ընկեր Ավագ Ավթանդիլյանը։ Դասատու լինելուց բացի, նա զբաղվում էր նաև վարչական գործերով։ Այս խնդրում իբրև փորձված ընկերոջ նա երբեմն դիմում է Րաֆֆու օգնությանը։ Դրա լավագույն վկայությունը հանդիսանում է Րաֆֆու տված խորհուրդները, դպրոցի համար տեսուչ հրավիրելու հարցում։*

*Այս նամակում ևս աչքի է ընկնում Րաֆֆու վերաբերմունքը իր հայրենակիցների հանդեպ և նկատվում է նրանց մի որևէ բանով օգտակար լինելու ձգտումը։*

*Մեզ չհաջողվեց պարզել, թե ո՞վ է նամակում հիշատակված* Ավետիս Տեր-Օհանյանը:

*Նամակը կիսատ է, վերջին մասը, որը գրված է եղել մի այլ էջի վրա, չի պահպանվել։*

*Առաջին անգամ լույս է տեսել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 128)։*

*Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 12)։*

### 29. [ՍՈՒՔԻԱՍ ՊԱՐԶՅԱՆԻՆ]

*Էջմիածնի սինոդի անդամ Սուքիաս եպիսկոպոս Պարզյանը այն մարդկանցից մեկն է, որոնց Րաֆֆին դիմել էր «Կայծերի» բաժնեգրության գործում իրեն օգնելու համար (տե՛ս № 26 ծանոթագրությունը)։*

*Նամակը պարզ ու որոշակի տեղեկություններ է պարունակում այն դժվարությունների մասին, որոնց հանդիպել է Րաֆֆին իր գրքերի հրատարակման գործում։ «Ճշմարիտ կասեմ Ձեզ, սրբազան հայր,— գրում է Րաֆֆին,— որ մեծ բարոյական տանջանք է պատճառում ինձ այս եղանակով գիրք տպագրելը»։*

*Դժգոհ լինելով իրականությունից և չունենալով այլ մխիթարություն, Րաֆֆին բավարարվում էր նրանով, որ բարեկամները համակրում են նրա գործունեությունը։*

*Նամակը առաջին անգամ հրապարակվել է «Սովետական գրականություն» ամսագրում, 1955 թ., № 11, էջ 36։ Տպագրության է պատրաստել գիտ. աշխատող Ա. Ադամյանը։ Այնուհետև այն տեղ է գտել նաև Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 132)։*

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ՀՍՍՌ Մինիստրների սովետին կից պետական մատենադարան, անհատական արխիվների ֆոնդ, թղթապանակ № 185, վավերագիր № 4)։

## 30. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

Ա. Ավթանդիլյանին հասցեագրված այս նամյակը Րաֆֆին գրել է նրա մարտի 30-ը թվակիր նամակի առիթով։ Րաֆֆին մեկ առ մեկ պատասխանում է Ավթանդիլյանի նամակի բոլոր կետերին, բացատրում նրան «Մշակի» նպատակն ու բռնած դիրքը Արևմտահայաստանում, Պարսկահայաստանում և Հնդկաստանում ապրող հայերի հանդեպ։ Այստեղ Րաֆֆին կրկին անգամ ցույց է տալիս իր նվիրվածությունը Պարսկահայաստանում ապրող հայրենակիցներին։

Նամակում հիշատակված Արիստակեսը, Թոմասը և Գորոյանը Րաֆֆու թավրիզաբնակ բարեկամներից են։

Գ. Նիկողոսյանը «Մշակի» Պոլսի թղթակիցն էր, որը 1882 թվականին գժտվելով Արծրունու հետ, դադարում է աշխատակցել «Մշակին» ու թղթակցում է «Порядок» և «Մեղու Հայաստանի» լրագրերին։

Փ. Վարդանյանը Րաֆֆու մտերիմներից էր, որը ցանկանում էր «Լումա» անունով ամսագիր հրատարակել (տե՛ս № 21—23 նամակները և ծանոթագրությունները)։

Ամիրխանյանցը «Մշակի» գործարար թղթակիցներից էր՝ դավանանքով բողոքական։ Նրա պաշտպանած տեսակետների առիթով «Մշակի» ու «Մեղու Հայաստանի» լրագիրների միջև սկիզբ է առնում ծավալուն բանավեճ։

Նամակը առաջին անգամ հրապարակվել է Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 134)։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 13)։

## 31. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

Ավթանդիլյանին հասցեագրված այս նամակից մեր ձեռքն է անցել միայն վերջին մասի պատառիկը՝ (ՀԳ) հետգրությունը։ Նամակի սկիզբը չլինելու պատճառով ո՛չ գրության թվականն է հայտնի և ո՛չ էլ ամիս-ամսաթիվը։ Սակայն նամակում հիշատակված երկու փաստերից հնարավոր է դառնում որոշել թե՛ մեկը, և թե՛ մյուսը։ Նամակում խոսվում է «...Նոր կազմված տպագրական ընկերության» մասին։ Հայտնի է, որ այդ ընկերությունը հիմնվել է 1880 թվականի մարտի սկզբին, ուրեմն գրության տարեթիվը պարզ է։

Ինչ վերաբերում է ամիս-ամսաթվին, ապա այս հարցում մեզ օգնում է նամակում հիշատակված արևմտահայ սովատանջներին ուղարկված գումարի քանակությունը։ «Մշակում» տպագրված լուրերից հայտնի է, որ մինչև ապրիլի 10-ը խմբագրությունը հանգանակել և Արևմտահայաստան է ուղարկել 22 հազար ռուբլի, իսկ ապրիլի 28-ին այդ գումարը հասնում է 26 հազար ռուբլու։ Րաֆֆին նամակում Ավթանդիլյանին գրում է. ««Մշակի» խմբագրությունը ուղարկեց Թուրքիայի սովատանջներին 24 հազար ռուբլի. դեռ նվիրատվությունները շարունակվում են»։ Բացի դրանից, զգացվում է նաև, որ այս նամակը հաջորդել է նրա

*19-ը ապրիլի նամակին։ Այստեղից էլ հիմքեր կան ասելու, որ սույն նամակը գրված է 1880 թվականի ապրիլի 19-ից ոչ շուտ և 28-ից ոչ ուշ։*

*Գորոյանցը Րաֆֆու Թավրիզաբնակ բարեկամներից է, որը օգնում էր նրան պարսկերենի ուսումնասիրման գործում։*

*Նամակը առաջին անգամ հրապարակվել է Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 136)։*

*Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 17)։*

## 32. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

*Այս նամակում աչքի է ընկնում Րաֆֆու դժգոհությունը գրաքննչական խստությունից։ Ռուս-թուրքական պատերազմից հետո ցարական կառավարությունը իրոք որ սկսում է ավելի խստությամբ վերաբերվել «Դեպի ամեն մի գրվածք, որը կարող էր նրանց մեջ ազատագրական ոգի ներշնչել»։ Ելնելով դրանից, Րաֆֆին բանակցությունների մեջ է մտնում իր բարեկամ Գաբրիել Միրզոյանի հետ «Կայծերի» տպագրությունը Մոսկվա տեղափոխելու համար։*

*Պատասխանելով Մ. Փանյանցի հարցերին, Րաֆֆին իր դժգոհությունն է հայտնում նաև Տպագրական ընկերությունից։ «Ընկերության քննիչ մասնաժողովը,— ասում է նա,— այնպիսի անձինքներից է բաղկացած, որ հազիվ թե փոքրիշատե իր հեղինակությունը հարգող մի գրող կցանկանար իր աշխատությունները նրանց քննությանը ենթարկել»։ Այս ասելով Րաֆֆին նկատի ուներ հատկապես Պ. Սիմոնյանին, Սեդրակ Մանդինյանին, Ա. Նահապետյանին, Մ. Պալասանյանին և այլոց։*

*Նամակում հիշատակված Դյուզաճճերը և Տատյաճճերը պոլսահայ հայտնի հարուստներ են, որոնց ծախքով տպագրվել են մեծ քանակությամբ գրքեր։*

*Նամակը առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում, այնուհետև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 139)։*

*Արտատպված է «Արարատ» ամսագրից, 1913 թ., № 2—3, էջ 202։*

## 1 8 8 1

## 33. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

*Մ. Փանյանին ուղղված այս նամակը մի պատասխան է նրա 24-ը դեկտեմբերի (1880) թվակիր նամակին։ Րաֆֆին հայտնում է իր բարեկամին, որ «Կայծերը» Մոսկվայում տպագրել տալու գիտավորությունը թողել է և եթե ծախքերի գումարը լրացնի, ապա առաջիկայում Թիֆլիսում կսկսվի վեպի տպագրությունը։*

*«Խենթի» տպագրության որակի մասին եղած ակնարկը վերաբերում է վեպի Շուշվա հրատարակությանը, որը ձեռնարկել էր Թավրիզում Րաֆֆու աշակերտ Աբել Ապրեսյանը։*

*Նամակից հայտնի է, որ Րաֆֆին ցանկանում էր մի ճամփորդություն կատարել Պոլիս և Հայաստանի վրայով վերադառնալ Թիֆլիս։ Վիպասանի այս ցանկությունը միջոցների սղության պատճառով մինչև վերջն էլ մնաց իբրև ցանկալի երազ։*

Գրիգոր Նիկողոսյանը «Մշակի» թղթակիցներից էր (տե՛ս № 30 ծանոթագրությունը)։

Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում, այնուհետև այն տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 145)։

Արտատպված է «Արարատ» ամսագրից, 1913 թ., № 4, էջ 337։

## 34. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Պատասխանելով Մ. Փանյանի ապրիլի 7-ի նամակին, Րաֆֆին խոսում է նաև Մոսկվայի անկելանոցի հիմնարկության կողմից ճանապարհորդության համար իրեն փող տրամադրելու մասին։

Տալով իր համաձայնությունը, Րաֆֆին Փանյանին խնդրում է գաղտնի պահել դեպի Արևմտյան Հայաստան իր կատարելիք շրջագայությունը, որովհետև, ասում է նա, «Թիֆլիսի սաճկաց կոնսուլը ամենաչնչին երևույթներն անգամ հաղորդում է իր կառավարությանը», մի հանգամանք, որը կարող էր խանգարել նրան։

Գասպարյան ապաստարանի հոգաբարձությունը (որի խորհրդի անդամներից մեկն էլ Մ. Փանյանն էր), ինչպես կտեսնենք հաջորդ նամակներում, անուշադրության է մատնում այս գործը և Րաֆֆու երազած ճամփորդությունը մնում է անիրագործելի։

Նամակն առաջին անգամ հրատարակվել է «Արարատ» ամսագրում, այնուհետև այն տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 147)։

Արտատպված է «Արարատ» ամսագրից, 1913 թ., № 4, էջ 338։

## 35. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Հավաստելով Մ. Փանյանից 17-ը և 18-ը հունիսի թվակիր նամակների ստացումը, Րաֆֆին շնորհակալություն է հայտնում Սմբատ Շահազիզի «Հրապարակախոսի ձայն» վերնագրով գիրքը իրեն նվեր ուղարկելու համար։

««Կասպարեան անկելանոցից» ես ոչինչ ակնկալութիւն չունեի» դարձվածքը վերաբերում է վերոհիշյալ հիմնարկի կողմից ճանապարհորդության համար Րաֆֆուն փող տրամադրելու խնդրին (տե՛ս նախորդ ծանոթագրությունը)։

Ինչ վերաբերում է դրամական հաշվին, որի մասին խոսում է Րաֆֆին, ապա դա վերաբերում է Փանյանի ձեռքով Մոսկվայում տարածած «Դավիթ Բեկի» առաջին գրքի վաճառքից գոյացած գումարին։

Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում։

Արտատպված է նույն ամսագրից, 1913 թ., № 4, էջ 340։

## 1 8 8 2

## 36. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Րաֆֆին խոսելով Թիֆլիսից բացակա լինելու մասին, պարզաբանում է իր կողմից երկար ժամանակ նամակ չգրելու պատճառը։ Րաֆֆու ասածը վերաբերում է 1881 թվականին ձեռնարկած ճամփորդությանը։ Հայտնի է, որ 1881 թվականի հունիսի 25-ին Րաֆֆին մեկնում է Ղարաբաղի և Սյունյաց աշխարհի կող-

մերը «Դավիթ Բեկի» և «Խամսայի մելիքությունները» աշխատության գրության համար փաստական տեղեկություններ հավաքելու (տե՛ս «Խամսայի մելիքություններ» աշխատության ծանոթագրությունը, էջ 635)։

Այս նամակը նշանակալից է նրանով, որ ընթերցողին որոշակի պատկերացում է տալիս գրողի նյութական դրության մասին։

Նամակը առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում, այնուհետև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 155)։

Արտատպված է «Արարատ» ամսագրից, 1913 թ., № 4, էջ 340։

## 37. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Այս նամակը ամբողջովին նվիրված լինելով «Մշակի» Պոլսից թղթակցող Գրիգոր Նիկողոսյանին, ժամանակին «Արարատ» ամսագրում գրաքննչական նկատառումներով չի տպագրվել (Գ. Նիկողոսյանի մասին տե՛ս № 30 ծանոթագրությունը)։

Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Հայաստանի կոոպերացիա» երկշաբաթաթերթում։

Արտատպված է «Հայաստանի կոոպերացիայից», Երևան, 1920 թ., № 14, էջ 376։

## 38. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Պատասխանելով Մ. Փանյանցի 13-ը մարտի նամակին, Րաֆֆին խոստանում է կատարել Գ. Նիկողոսյանին վերաբերող նրա խնդիրքը, որը ամենայն հավանականությամբ վերաբերում է վերջինիս 150 ռուբլի փող ուղարկելուն։

Գ. Նիկողոսյանի հոդվածը, որի մասին խոսում է Րաֆֆին, տպագրվել է «Մշակի» մարտի 18-ի (1882 թ.) համարում «Նամակ Թուրքիայից» վերնագրով։

**Սիմոն և Սարգիս Թումանյանները** Թավրիզի մեծահարուստներից են, Սարգսի որդի Վարդանը Թավրիզում եղել է Րաֆֆու աշակերտը։ Սա էր, որ 1884 թվականին Մոսկվայում հրատարակվեց «Ջալալեդդին» վեպիկը։ Երիտասարդը, որ Գ. Նիկողոսյանի միջնորդությամբ Պոլսից դիմել էր Րաֆֆուն «Խենթի» և «Ջալալեդդինի» ֆրանսերեն թարգմանության թույլտվությունը ստանալու համար արևմտահայ բանաստեղծ Թոմաս Թերզյանն է։ Վերոհիշյալ ստեղծագործությունները թարգմանվել են, թե ոչ, դժվարանում ենք ասել։

Նամակն առաջին անգամ որոշ կրճատումներով հրապարակվել է «Արարատ» ամսագրում (տե՛ս 1913 թ., № 4, էջ 341)։ Ամբողջական տեքստը տպագրվել է «Հայաստանի կոոպերացիայում», այնուհետև այն տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 156)։

Արտատպված է «Հայաստանի կոոպերացիա» երկշաբաթաթերթից, 1920 թ. № 15, էջ 627։

## 39. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Ինչպես հայտնի է նախորդ նամակից, Րաֆֆին Փանյանին խնդրել էր Վարդան Թումանյանին ծանոթացնել «Ջալալեդդինի» տպագրության համար հեղինակի առաջադրած պայմանների հետ։ Փանյանը 13-ը ապրիլի թվակիր նամակով

հաղորդում է նրա համաձայնության մասին, ավելացնելով, որ Վարդանը ցանկանում է հրատարակել նաև «Կայծերը»։

Հայտնի պատճառով մերժելով «Կայծերի» տպագրության իրավունքը, Րաֆֆին առաջարկում է նրան «Ջալալեդդինի» հետ մեկտեղ տպագրել «Մշակում» հրապարակված իր վեպիկներն ու պատկերները (նկատի ունի «Գեղեցիկ Վարթիկը», «Կուսագրությունը», «Սովը», «Անբախտ Հռիփսիմեն», «Մի օրավար հողը», «Բիբի Շարաբոնին» և այլն)։ Այդ բոլորն, ասում է Րաֆֆին, այժմ մոռացված են, «բայց ժողովրդի ընթերցանության համար մեծ նշանակություն ունեն»։

«Մի քանիսը այդ աշխատություններից թարգմանվեցան գերմաներեն ու ռուսերեն լեզուներով», ասելով Րաֆֆին նկատի ունի «Բիբի Շարաբոնին» պատմվածքի գերմաներեն թարգմանությունը, տպագրված 1881 թվականին Բեռլինի «Vossiche Zeitvmung» լրագրում։ Ինչ վերաբերում է ռուսերենին, ապա մինչև 1882 թվականը նրա ստեղծագործություններից թարգմանվել ու հրատարակվել էր «Հարեմը» (տե՛ս «Русские ведомости», 1879 թ., № 151), «Ջալալեդդինը» տե՛ս «Тифлисские ведомости», 1879 թ.) և «Դավիթ Բեկը» (տե՛ս «Кавказский курьер», 1881 թ., № 60)։

Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում, այնուհետև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 161)։

Արտատպված է «Արարատ» ամսագրից, 1913 թ., № 4, էջ 343։

## 40. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Նամակի մեծագույն մասը նվիրված է Րաֆֆու նախկին աշակերտ Վարդան Թումանյանի կողմից «Ջալալեդդին» և «Մշակում» հրապարակված վեպիկները Մոսկվայում տպագրելու հետ կապված հարցերին։

Ալեքսանդր-բեկ Մելիք-Հայկազյանի կողմից «Դավիթ Բեկի» երկրորդ հրատարակությունը իր ծախքով կատարելու մասին լուրը տպագրված է «Մշակի» 1882 թվականի 102-րդ համարում (էջ 2)։ «Դավիթ Բեկի» այս հրատարակությունը չիրականացավ, որովհետև Մելիք-Հայկազյանի տրամադրած գումարը Րաֆֆին գործադրեց «Կայծերի» տպագրության վրա։

«Խամսայի մելիքությունները» աշխատությունը առանձին գրքով հրատարակման առիթով գրաքննիչի հարուցած խոչընդոտների մասին տե՛ս ծանոթագրություններ բաժնում՝ էջ 639։

Նամակում Գ. Նիկողոսյանի մասին եղած ամբողջ հատվածը «Արարատ» ամսագրում տպագրվելու ժամանակ հանվել է գրաքննիչի կողմից։

Այս նամակն ամբողջովին առաջին անգամ հրապարակվել է «Հայաստանի կոոպերացիա» երկշաբաթաթերթում, ինչպես նաև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 162)։

Արտատպված է «Հայաստանի կոոպերացիա» երկշաբաթաթերթից, 1920 թ., № 15, էջ 630։

## 41. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Մելքոն Փանյանին հասցեագրած այս (7-ը հոկտեմբերի) նամակին նախորդել է նաև մի այլ նամակ, որը դժբախտաբար մեզ չի հասել։ Այս նամակից պարզվում է, որ Րաֆֆին սերտ հարաբերությունների մեջ է եղել Սմբատ Շա-

Հաջիզի հետ և նրանից տեղեկություններ է խնդրել «Ղարաբաղի աստղագետը» վեպի հեղինակ Պլատոն Զուբովի մասին (տե՛ս «Թարգմանչից» հոդվածի ծանոթագրությունը, էջ 641)։

«Կայծերի» տպագրությունը իր ծախքով կատարող բարերարը, որի մասին ակնածանքով խոսում է Րաֆֆին, հրետանային գնդապետ Մելիք-Հայկազյանն է՝ «Կայծերի» մեկենասը։ Ինչ վերաբերում է «Ջալալեդդինը» Թիֆլիսում տպագրող երիտասարդին, ապա, ամենայն հավանականությամբ, խոսքը վերաբերում էր Աբել Ապրեսյանին, որը նպատակ ուներ վերոհիշյալ գիրքը մի քանի հազար օրինակով ձրի տարածել արևմտահայության մեջ՝ «Նրանց թմրած զգացմունքները զարթեցնելու համար»։

Րաֆֆու արած մեղմ ու զուսպ ակնարկներից ընթերցողը գլխի է ընկնում, թե նյութական ինչպիսի դժվարին կացության մեջ էր գտնվում նա։ Վիպասանը ուրիշ երջանկություն չուներ, քան կենդանության օրոք իր «բոլոր հեղինակությունները տպագրված տեսնել» և այդ էլ նրան չի հաջողվում։

Նամակն աննշան կրճատումով առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում։ Ամբողջական տեքստը տպագրվել է «Հայաստանի կոոպերացիա» երկշաբաթաթերթում, այն տեղ է գտել նաև Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 164)։

Արտատպված է «Հայաստանի կոոպերացիա» երկշաբաթաթերթից, Երևան, 1920 թ., № 16, էջ 676։

## 42. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

Ա. Ավթանդիլյանին ուղղված այս նամակը բաղկացած է եղել երկու էջից (a և b), որից մեզ է հասել միայն երկրորդ (b) էջը։ Սկիզբը չլինելու պատճառով նամակի գրության թվականն ու ժամանակը հայտնի չէ։ Սակայն նամակի պարունակությունից հնարավոր է դառնում պարզել թե՛ մեկը, և թե՛ մյուսը։ Նախորդ նամակում Րաֆֆին Փանյանին հայտնում է հետևյալը ««Կայծերը» տպագրվում է,— ասում է նա,— հույս ունեմ, որ մինչև ներկա ամսի (հոկտեմբերի— Խ. Ս.) վերջը առաջին հատորի տպագրությունը վերջանա», եթե հոկտեմբերի վերջում ավարտվելու էր վեպի տպագրությունը, ապա կարելի է պնդել, որ «Կայծերը» արդեն մամուլի տակ էր։

Այստեղից էլ պետք է ենթադրել, որ նամակը գրված է 1882 թվականին, հոկտեմբեր ամսում։

Նամակում հիշատակված Տեր Աստվածատրյանի ով լինելը մեզ չհաջողվեց պարզել։

Վտանգը, որի պատճառով Ավթանդիլյանը խորհուրդ է տվել Րաֆֆուն ընտանիքը տեղափոխել Սալմաստից, վերաբերում է Շեյխ Իբադուլլահի 1882 թվականին նախատեսած արշավանքին, որը ըստ տվյալների տեղի չի ունեցել։

«Կայծերի» տպագրության համար «Մի բան ձեզ պարտական եմ» ասելով, Րաֆֆին նկատի ուներ Ավթանդիլյանի մատուցած ծառայությունը վեպի արտագրման գործում (տե՛ս այս հատորում, № 27 նամակը)։

Նամակն առաջին անգամ հրապարակվել է Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 169)։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 16)։

## 43. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

*Այս նամակում գրքերի վաճառքի վերաբերյալ հարցերից բացի, Րաֆֆին խոսում է նաև «Հայոց տպագրական ընկերության» անհոգության և «կենտրոնական գրավաճառանոցի» գործակատար Տեր-Իսրայելյանի վստահելի լինելու մասին։ Մեզ չհաջողվեց պարզել ո՛չ մեկի, ո՛չ էլ մյուսի մասին խոսելու դրդապատճառը։*

*Երիտասարդը, որի մասին հիացմունքով է խոսում Րաֆֆին,* Ավետիք Արասխանյանն *է, հետագայում (1889 թ.) «Մուրճ» ամսագրի հիմնադիրն ու խմբագիրը։*

*Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում, այնուհետև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 167)։*

*Արտատպված է «Արարատ» ամսագրից, 1913 թ., № 4, էջ 348։*

## 1 8 8 3

## 44. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԱՌԱՔԵԼՅԱՆԻՆ]

Կարապետ վարդապետ Այվազյանը *այն մարդկանցից մեկն է, որ օգնում է Րաֆֆուն գրքերի վաճառքի գործում, և որովհետև վերջինս Շուշիից մեկնում էր, ուստի Րաֆֆին խնդրում է իր վաղեմի բարեկամ Համբարձում Առաքելյանին հանձն առնել իր գրքերը վաճառողներին բաժանելու գործը։*

*Համբարձում Առաքելյանի «Մշակին» ուղարկած հոդվածը, որի մասին ակնարկում է Րաֆֆին, նվիրված է եղել Կարապետ վարդապետ Այվազյանին։ Թե ինչու է Արծրունին մերժել հոդվածի տպագրումը, մեզ չհաջողվեց պարզել։*

*Նամակն առաջին անգամ տպագրվել է Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում։*

*Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Հ. Առաքելյանի ֆոնդ, № 1529)։*

## 45. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

*Այս փոքրիկ երկտողը Րաֆֆին գրել է Փանյանի նամակի ստացման առթիվ։*

*Րաֆֆին ինչպես գանգատվում է Փանյանին, իրոք որ ժամանակ չուներ նամակ գրելու, դեռևս չէր ավարտված «Կայծերի» տպագրությունը, իսկ մի կողմից «Մշակում» հրապարակվում էր «Խաչագողի հիշատակարանը», եթե այս բոլորի վրա ավելացնենք խմբագրատան առօրյա աշխատանքները, պա պարզ կդառնա, թե ինչու Րաֆֆին Շահազիզին գրելիք պատասխանն իսկ ուշացնում էր։*

*Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում։*

*Արտատպված է «Արարատից», 1913 թ., № 4, էջ 349։*

## 46. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

*«Կայծերի» տպագրությունը ավարտվելուց հետո Րաֆֆին գրքից 70 օրինակ ուղարկում է Մոսկվա Փանյանին, որպեսզի վերջինս տարածի։ Րաֆֆին հույս ուներ 1883 թվականի ընթացքում ավարտել նաև վեպի երկրորդ հատորի տպա-*

*գրությունը, սակայն, ինչպես հայտնի է, նրա ցանկությունը չի իրականանում։ Երկրորդ հատորը լույս տեսավ 1887 թվականին։*

Մկրտիչ Էմինը, *որին նվեր է ուղարկում Րաֆֆին, Լազարյան ճեմարանի պրոֆեսորներից է, ականավոր հայագետ, հայտնի է հայ պատմիչների ռուսերեն թարգմանությամբ։*

Աբելյանը *«Մշակի» թղթակիցներից էր, Րաֆֆու լավ բարեկամներից մեկը։*

*Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում։*

*Արտատպված է նույն ամսագրից, 1913 թ., № 4, էջ 349։*

## 47. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

*Մ. Փանյանին ուղղված այս նամակը Րաֆֆին գրել է 1883 թվականի մայիսի 3-ին։ Այսինքն՝ այն ժամանակ, երբ ոստիկանության ու նահանգական դատարանի դատախազի կողմից արդեն խուզարկված էր «Մշակի» խմբագրությունն ու Արծրունու բնակարանը և Րաֆֆին ժամ առ ժամ սպասում էր, թե ի՞նչ է կատարվելու իր հետ։ Նրա անհանգստությունը առանց պատճառի չէր։ Ինչպես նկատվում է հաջորդ նամակից, մայիսի 13-ին խուզարկում են նաև Րաֆֆու բնակարանը, հսկողության տակ առնելով նրան։ Րաֆֆու կասկածանքները, թե այս գործի մեջ խառն է հակառակորդների (մեղվականների— Խ. Ս.) մատը, դեռևս մնում է չհիմնավորված։ Այս գործը, ինչպես պարզվում է մի շարք փաստերից, ներքին թելերով կապված էր «Արարատյան ընկերության» և Էրզրումի «Պաշտպան հայրենյաց» գաղտնի կազմակերպության գործունեությունների հետ։*

*Էրզրումի ռուսական հյուպատոս Դենտիի տված զեկուցագրից և այլ պաշտոնական աղբյուրներից հայտնի է, որ «Պաշտպան հայրենյաց» խմբի կազմակերպիչները կապեր են ունեցել գավառների, Կոստանդնուպոլսի, Թիֆլիսի ու Երևանի, ինչպես նաև «ռուսական նիհիլիստների հետ»։*

*Բոլոր հիմքերը կա պնդելու, որ ինչպես Րաֆֆու, այնպես էլ Երևանի 22 երիտասարդների գործը կապված էր Էրզրումի «Պաշտպան հայրենյաց» գաղտնի կազմակերպության գործունեության հետ, մանավանդ, որ Թիֆլիսում և Երևանում կատարված խուզարկությունների ժամանակաշրջանը համընկնում է Էրզրումի գործի հայտնաբերվելու հետ։*

*Էրզրումի դեպքերից անմիջապես հետո հետաքննություն է սկսվում նաև Երևանում։ «Երևանում 22 նշանավոր երիտասարդների տներում խուզարկություններ է կատարվել,— գրում է Րաֆֆին,— բոլորն էլ ոստիկանության հսկողության ներքո են դրել։ Մեկը բանտարկված է»։ Երևանում «նշանավոր երիտասարդների» խուզարկության ընթացքում ի հայտ է գալիս, որ Երևանի «Հայասեր ազգասեր» գաղտնի կազմակերպության գործունեության մեջ Րաֆֆին ունեցել է ոչ պասիվ մասնակցություն։ Այս փաստը դարձնելով կռվան, ժանդարմերիային վարչությունը Արծրունուն և Րաֆֆուն կապում է երևանյան, ուստի նաև էրզրումյան գործի հետ և սկսում է հետաքննությունը շարունակել Թիֆլիսում։*

««Պսակ» լրագիրը խափանված է» *ասելով, Րաֆֆին նկատի ուներ Երևանում տպագրվող Վասակ Պապաջանյանի թերթը, որը 1883 թվականի ապրիլի 21-ին նույն դեպքերի պատճառով որոշ ժամանակով դադարեցվում է կառավարության կողմից։*

*Նամակի վերջին մասը վերաբերում է կաթողիկոսական թեկնածուի հարցին։ «Մեղու Հայաստանի» լրագրի շուրջը համախմբված տարրերը (մեղվականները)*

խմբագիր՝ Գ. Սիմոնյանի գլխավորությամբ ձգտում էին կաթողիկոսական աթոռին նստեցնել Մակարին, իսկ Րաֆֆին և «Մշակը» պաշտպանում էին Պոլսի պատրիարք Ներսես Վարժապետյանի թեկնածությունը։ Կաթողիկոսական հարցի առթիվ ուժեղ հակամարտություն էր սկսվել այս երկու խմբավորումների միջև։ «Եթե Մակարի կաթողիկոս ընտրվելը հաջողեցնեն,— ասում է Րաֆֆին,— այն ժամանակ էջմիածինը կատարյալ ավազականոց կդառնա»։

Հաջորդ նամակներում և հատկապես կաթողիկոսական հարցի առիթով գրած հոդվածաշարում (տե՛ս «Մշակ», 1883 թ., №№ 194—196, 198, 201, 204) Րաֆֆին ավելի է խորացնում ու պարզաբանում իր միտքը։

Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում, այնուհետև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 194)։

Արտատպված է «Արարատ» ամսագրից, 1913 թ., № 4, էջ 350։

## 48. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Այս նամակը Րաֆֆին գրել է այն ժամանակ, երբ գտնվում էր հսկողության տակ և իրավունք չուներ բացակայելու Թիֆլիսից։ «Մշակի» խմբագրատունը խուզարկելուց հետո ժանդարմերիային վարչությունը մայիսի 13-ին խուզարկում է նաև Րաֆֆու բնակարանը, բռնագրավում է վերջինիս դեռևս չտպագրված բոլոր գրավոր աշխատությունները։

Կառավարությունը Րաֆֆուն մեղադրում էր ռուսական հեղափոխականներին (նիհիլիստներին) հետևելու և գաղտնի ընկերությունների գործունեությանը մասնակցելու մեջ։ Ցարական կառավարությունը Թիֆլիսում ու Երևանում որոնում էր գաղտնի ընկերություններ, «որոնք ծածուկ կապեր ունեն» Արևմտյան Հայաստանի հետ, «և ամենայն ջանքերով աշխատում են վերականգնել հայոց հին թագավորությունը»։ Իր բարեկամին գրած նամակում Րաֆֆին այս բոլորը համարում է զրպարտություն և խոստանում է, որ «այս տեսակ երևակայական ընկերություններ» նրանք երբեք չեն ունեցել։ Րաֆֆին պարզաբանում է, որ իրենց «ցանկությունները» «ազգային պետքերի սահմաններից այն կողմ չեն անցել», որ «61-րդ հոդվածի իրագործման համար պետք չկար գաղտնի ընկերություններ ստեղծել» (Բեռլինի կոնգրեսի 61-րդ հոդվածը վերաբերում էր Թուրքիայի կողմից Արևմտյան Հայաստանում կատարվելիք բարենորոգումներին)։

Միանգամայն տեղին է նաև Րաֆֆու գանգատները կիրառվող խստության վերաբերյալ։ Ռուս-թուրքական պատերազմին հաջորդած ռեակցիան կոշմարային դրություն է ստեղծում հայկական հարցով զբաղվող մտավորականության համար։ «Լվից ուղտ են շինում»,— ասում է Րաֆֆին՝ նկատի ունենալով անտեղի մեղադրանքները։

Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում, այնուհետև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 196)։

Արտատպված է «Արարատ» ամսագրից, 1913 թ., № 6—7, էջ 565։

## 49. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Մելքոն Փանյանին հասցեագրած այս նամակից հայտնի է դառնում, որ Արծրունու, Րաֆֆու և հատկապես «Մշակի» նկատմամբ կիրառվող կամայականությունները դեռևս շարունակվում են։ Րաֆֆին իր բարեկամին մի կողմից գան-

*գատվում է գրաքննչական խստությունների դեմ, մյուս կողմից՝ նրան ծանոթացնում է երևանյան գործի ընթացքին (տե՛ս № 47 ծանոթագրությունը)։*

*Նշանավոր* ազգային հարցերը, *որոնց առիթով ունեցած մտահոգությունը Րաֆֆին կիսում է Փանյանի հետ, վերաբերում է կաթողիկոսական թեկնածու առաջադրելուն և արևմտահայությանը։*

«Մեր հակառակորդները խոսում են, գրում են, իսկ մենք պատասխանել չենք կարողանում» *ասելով Րաֆֆին նկատի ուներ Հայկունուն, որը հենց այդ օրերին «Մեղու Հայաստանի» լրագրում սկսում է հրապարակել «Խաչագողի հիշատակարան» և «Կայծեր» վեպերի մասին իր «Գրախոսականը», որը ամենայն իրավամբ կարող էր մի չարախոսություն համարվել (տե՛ս «Մեղու Հայաստանի», 1883 թ., №№ 31—37, 39 և ապա №№ 55, 57, 59, 60, 62, 64, 66, 68, 70)։*

*Նամակը առաջին անգամ որոշ կրճատումներով (հանված է Երևանի նահանգապետին և Մակար կաթողիկոսին վերաբերող տողերը) հրապարակվում է «Արարատ» ամսագրում (տե՛ս 1913 թ., № 6—7, էջ 566)։ Ամբողջական տեքստը լույս է տեսել «Հայաստանի կոոպերացիայում», ինչպես նաև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 197)։*

*Արտատպված է «Հայաստանի կոոպերացիա» երկշաբաթաթերթից, 1920 թ., № 16, էջ 678։*

## 50. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԱՌԱՔԵԼՅԱՆԻՆ]

*Ինչպես նկատելի է Հ. Առաքելյանին գրած նամակից, պոլսահայ թերթերը արձագանքելով կատարված անցուդարձերին, սխալ տեղեկություններ են հաղորդել Արծրունու և Րաֆֆու գործի կապակցությամբ։ Րաֆֆին շտապում է իր բարեկամին հավաստիացնել, որ իրենց գործը կապված չէ ռուսական նիհիլիստների (հեղափոխականների) հետ։*

*Եթե Փանյանին գրած (3-ը և 17-ը մայիսի) նամակներում Րաֆֆին խուզարկությունը համարում էր հակառակորդների (մեղվականների) մատնության գործը, ապա այս նամակում հիմնական շարժառիթը Րաֆֆին համակցում է Երևանում կատարված խուզարկությունների հետ։ Նա նույնիսկ փորձում է հերքել ժողովրդի կարծիքը այն մասին, որ մատնությունը Մակար արքեպիսկոպոսի (հետո կաթողիկոս) և մեղվականների գործն է։*

*Րաֆֆին այս բոլորի բուն պատճառը տեսնում է ցարական կառավարության ռեակցիոն քաղաքականության մեջ, որը ցանկանում էր «մի կողմից տեղեկանալ», թե մինչև ո՞ր սահմանն է հասնում հայ երիտասարդության «չափազանց եռանդը», մյուս կողմից, ասում է Րաֆֆին, կամենում էր «փոքր-ինչ շողոքորթել Թուրքիային, իբրև թե խեղդում է ամեն մի վնասակար ձգտում հայկական հարցի առիթով»։*

*Փանյանին ու Առաքելյանին գրած նամակներում կրկնվող* ««Մշակը» դադարեցված չէ» *դարձվածքը վերաբերում է թերթի հրատարակությունը կառավարության կողմից արգելելուն։*

Հայկունու կրիտիկաները զզվանք են պատճառել, *ասելով Րաֆֆին նկատի ունի «Խաչագողի հիշատակարանի» և «Կայծերի» մասին վերջինիս գրած հոդվածները (տե՛ս «Մեղու Հայաստանի», 1883 թ., №№ 31—37, 39 և ապա №№ 55, 57, 59, 60, 62, 64, 66, 68, 70), որոնք թե՛ արևելահայ, և թե՛ արևմտահայ հատվածներում ընթերցողներին զզվանք էին պատճառում։*

Նամակն առաջին անգամ հրապարակվել է Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 199)։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Հ. Առաքելյանի ֆոնդ, № 1530)։

## 51. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Այս 26-ը հունիսի նամակով Րաֆֆին Փանյանին հաղորդում է իր վիճակի ծանրության մասին։ «...Քանի օր է,— գրում է նա,— որ արդեն տնային բանտարկության եմ ենթարկված, բնակարանիցս դուրս գալու իրավունք չունեմ, տան դռանը պահապաններ են դրել»։

Նամակից պարզվում է նաև, որ մի շարք քաղաքներում խուզարկություններ են կատարել հայ երիտասարդների տներում, ավելի զբաղեցնողը այն է, որ հետապնդում են հատկապես նրանց, ովքեր թղթակցել են «Մշակին»։

Զգուշավորության համար Րաֆֆին Փանյանին խորհուրդ է տալիս իրեն գրած նամակները ուղարկել ուրիշի միջոցով։

Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում։

Արտատպված է նույն ամսագրից, 1913 թ., № 6—7, էջ 568։

## 52. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԱՌԱՔԵԼՅԱՆԻՆ]

Պատասխանելով Առաքելյանի 30-ը հունիսի թվակիր նամակին, Րաֆֆին գովում է Թավրիզում ամսագիր հրատարակելու նրա մտադրությունը։ Ելնելով իրերի դրությունից և իր վիճակի անորոշությունից, նա չի կարողանում Առաքելյանին որոշակի պատասխան տալ իր կողմից ամսագրին աշխատակցելու վերաբերյալ։

Նամակից հայտնի է դառնում, որ Րաֆֆին երկու շաբաթ ենթարկվել է տնային բանտարկության և ազատվել է կալանքից Պարսից հյուպատոսի երաշխավորությամբ։

Գաբոն (Գաբրիել Միրզոյանը) և Նավասարդյանը Րաֆֆու մերձավոր բարեկամներն են, որոնք Թավրիզի դպրոցի հոգաբարձության հրավերով աշխատելու էին տեղի Արամյան դպրոցում։

Ֆենեռչյանը Րաֆֆու թավրիզյան բարեկամներից էր, որը ղեկավար դեր ուներ Թավրիզի Արամյան դպրոցում։

Սիմոն Հախումյանը, որի մասին բացասական կարծիք ուներ Րաֆֆին, Թիֆլիսի գրական ու հասարակական գործիչներից էր, զբաղվում էր նաև մանկավարժությամբ։

Նամակն առաջին անգամ հրապարակվել է Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 201)։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Հ. Առաքելյանի ֆոնդ, № 1531)։

## 53. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Համբարձում Առաքելյանին գրած 21 հուլիսի նամակից արդեն հայտնի է, որ Պարսից հյուպատոսի երաշխավորությամբ Րաֆֆին ազատվում է տնային բան-

տարկությունից։ Այժմ Փանյանին գրած այս նամակով Րաֆֆին աշխատում է նույն ուրախալի լուրը հաղորդել նաև վերջինիս։

Այս նամակը ավելի քան հետաքրքիր է դառնում Րաֆֆու արած մի խորհրդավոր հայտարարության շնորհիվ։ «Պարոն Աբելյանը ինձ ասաց,— գրում է Րաֆֆին,— որ դուք մի բանի մասին անհանգիստ եք. միամիտ կացեք, ինձ մոտ Ձեր կողմից եկած ոչինչ չեն գտել»։ Այն հանգամանքը, որ Փանյանը «Մի բանի համար անճանգիստ էր», ցույց է տալիս, որ հետաքննվող գործին ինչ-որ չափով առնչվել է նաև նա։ Իսկ այն փաստը, որ նրա կողմից Րաֆֆու մոտ եղած բաներից «ոչինչ չեն գտել», պերճախոս կերպով վկայում է, որ Րաֆֆին նախապես զգացել է սպառնացող վտանգը և ոչնչացրել ու թաքցրել է Փանյանին անհանգստացնող «բաները»։ Թե դրանք ինչ փաստեր են, և կամ Րաֆֆին ու Փանյանը հայտնի կապերից բացի, ուրիշ ինչպիսի հարաբերությունների մեջ են եղել, առայժմ ոչինչ ասել չենք կարող։

««Մեղվի» մեջ մի շարք կեղտոտ կրիտիկներ տպվեցան իմ աշխատությունների մասին, որոնց մեջ մինչև անգամ ուղղակի մատնություններ կային» ասելով, Րաֆֆին ակնարկում է Հայկունու հոդվածները (տե՛ս «Մեղու Հայաստանի», 1883 թ., №№ 31—37, 39 և ապա 55, 57, 59, 60, 62, 64, 66, 68, 70)։ Ինչ վերաբերում է մատնությանը, ապա Րաֆֆին նկատի ունի այն փաստը, որ Հայկունին իր հոդվածում «Կայծերի» հերոսներին համեմատում է Ալեքսանդր 2-րդի սպանության գործի ղեկավարներ՝ Ն. Ի. Կիբալչիչի, Ա. Ի. Ժելյաբովի և մյուսների հետ։

Աբելյան Ներսեսը, որի մասին խոսվում է նամակում, Րաֆֆու մերձավոր բարեկամներից էր։

Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում։

Արտատպված է նույն ամսագրից, 1913 թ., № 6—7, էջ 569։

## 54. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Այս նամակով Րաֆֆին շտապում է Մ. Փանյանին հաղորդել, որ թե ինքը, և թե Արծրունին արդարացված են և սպասում են Պետերբուրգից ստացվող վերջնական վճռին։ (Տե՛ս, այս հատորում № 52 և 53-րդ նամակները)։

«Իմ թղթերս տակավին չեն վերադարձել» ասելով, Րաֆֆին նկատի ուներ իր ձեռագիր աշխատությունները, որոնք խուզարկությունից հետո գտնվում էին ժանդարմերիային վարչության ձեռքում։

Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում։

Արտատպված է նույն ամսագրից, 1913 թ., № 6—7, էջ 569։

## 55. [ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԱՌԱՔԵԼՅԱՆԻՆ]

Նամակի առաջին մասը վերաբերում է Պարսից թագաժառանգի համար ֆոնոգրաֆ ձեռք բերելու հարցին։ Այնուհետև Րաֆֆին իր ցավն է հայտնում Արամյան դպրոցի անմխիթար վիճակի առիթով և ակնարկում է դպրոցում տիրող ներքին գժտությունները, որը գոյություն ուներ դեռևս իր պաշտոնավարության շրջանից։

Կաթողիկոսական ընտրության հետ կապված հարցը վերաբերում է Ատրպատականի թեմի պատգամավորին, որը էջմիածնում մասնակցելու էր կաթողիկոսական ընտրության քվեարկությանը։

Նամակը հրապարակվում է առաջին անգամ։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Հ. Առաքելյանի ֆոնդ, № 1532)։

## 56. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

*Փանյանին ուղղված այս նամակը վերաբերում է Րաֆֆու աշակերտ Վարդան Թումանյանի կողմից «Ջալալեդդին» վեպիկը Մոսկվայում տպագրելու մանրամասնություններին։*

*1883 թվականի նոյեմբերի 17-ին «Մշակում» տպագրված մի հայտարարությունից հայտնի է նաև, որ Րաֆֆու մյուս աշակերտ Աբել Ապրեսյանը ցանկանում է «Ջալալեդդին» վեպիկը տպագրել և Րաֆֆու գրական գործունեության 25-ամյակի օրը նվիրել հեղինակին։ Վ. Թումանյանը «Մշակում» կարդալով այս լուրը շտապում է Րաֆֆուն հիշեցնել իրենց պայմանավորվածությունը (տե՛ս № 38-րդ նամակը) և սկսում է «Ջալալեդդին» վեպիկի տպագրությունը, դրանով կանխելով Աբել Ապրեսյանի նախաձեռնությունը։*

*Րաֆֆին դժգոհ լինելով Վ. Թումանյանի վարքագծից իր անբավականությունն է հայտնում Մ. Փանյանին։*

*Նամակը առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում, այնուհետև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 287)։*

*Արտատպված է «Արարատ» ամսագրից, 1913 թ., № 6—7, էջ 570։*

## 1884

## 57. [ՆԵՐՍԵՍ ԱԲԵԼՅԱՆԻՆ]

*1883 թվականին, երբ ամբողջ հասարակությունը պատրաստվում էր տոնելու Րաֆֆու 25-ամյա գրական գործունեության հոբելյանը, դեկտեմբերի 11-ի գիշերը երկու անհայտ չարագործներ կոտրելով պարտեզի կողմի լուսամուտը խուժում են Րաֆֆու բնակարանը։ Րաֆֆին իրեն պաշտպանելու նպատակով կրակում է նրանց վրա, չարագործները հեռանում են։ Այս դեպքը մեծ աղմուկ է հանում։ Րաֆֆու բարեկամները բազմաթիվ նամակներով իրենց ուրախությունն են հայտնում նրան, արկածից ազատվելու առիթով։*

*Այդ բարեկամների թվում էր նաև Ներսես Աբելյանը։*

*Նամակի երկրորդ մասը վերաբերում է Արծրունու հետ ունեցած հարաբերությունների հարցին։ «Մշակի» խմբագության մեջ նոր մարդիկ ավելացնելու և թերթը «կենդանացնելու» առիթով Րաֆֆին ընդհարվում է Արծրունու կնոջ՝ Մարիամ Աղամալյանի հետ և դադարում է այցելել նրանց։ Այս ընդհարումը ավելի է բորբոքում Րաֆֆու, սեփական ամսագիր ունենալու ցանկությունը, որի մասին նամակում ակնարկում է նա։*

«Այստեղ շատ վատ տպավորություն գործեց ճեմարանից այնքան աշակերտների հեռացնելը» *ասելով, Րաֆֆին ակնարկում է 1883 թվականի նոյեմբերի 12-ի խռովության առիթով ճեմարանից 13 աշակերտներին հեռացնելու միջադեպը։*

*Նամակից մի հատված առաջին անգամ հրապարակել է Շիրվանզադեն իր «Կյանքի բովից» աշխատության մեջ տե՛ս, «Երկերի ժողովածու», 8-րդ հատոր,*

էջ 130)։ Ամբողջական տեքստը տպագրվել է «Տեղեկագրում» (տե՛ս, 1956 թ., № 4, էջ 116) ինչպես նաև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 294)։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 2)։

## 58. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Ինչպես հայտնի է նախորդ նամակից, Վարդան Թումանյանը Մոսկվայում ձեռնարկել էր Րաֆֆու «Ջալալեդդին» վեպիկի տպագրությունը, որը լույս տեսավ 1884 թվականի սկզբին։ Ահա այս հրատարակության մեջ տեղ գտած սխալների մասին է, որ խոսում է Րաֆֆին։ Գրքում զետեղված պատկերը, որի «սաղնության մասին» ակնարկում է Րաֆֆին, վերատպված է Երկերի ներկա 10-ը հատորային 6-րդ հատորում։

Նամակն առաջին անգամ որոշ կրճատումներով հրապարակվել է «Արարատ» ամսագրում (Մակար կաթողիկոսի մասին եղած բացասական կարծիքի պատճառով, կաթողիկոսական հարցի վերաբերյալ ամբողջ հատվածը հանված է նամակից)։ Ամբողջական տեքստն առաջին անգամ հրապարակվել է «Հայաստանի կոոպերացիա» երկշաբաթաթերթում։

Արտատպված է նույն երկշաբաթաթերթից, 1920 թ., № 16, էջ 679։

## 59. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Մ. Փանյանին ուղղված այս նամակը ամբողջովին նվիրված է «Ջալալեդդին» վեպիկի հրատարակիչ Վարդան Թումանյանի՝ տղայական վարքագծին։ Րաֆֆուն զայրացնում է վերջինիս վերաբերմունքը, որ առանց գիրքը հեղինակին ուղարկելու սկսել է այլևայլ հայտարարություններ տպագրել պարբերականներում, անհարմար կացության մեջ դնելով Րաֆֆուն։ Րաֆֆին դժգոհում ու զայրանում է իր հեղինակային իրավունքները ոտնահարելու համար և այլն։

Վարդան Թումանյանի գրական խարդախությունը համեմատելով նրա հոր քիշմիշ և բադամ վաճառելու հետ, Րաֆֆին ակնարկում է Սարգիս Թումանյանին, որը Թավրիզում զբաղվում էր չոր մրգի վաճառքով։

Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում։

Արտատպված է նույն ամսագրից, 1913 թ., № 6—7, էջ 572։

## 60. [ՆԵՐՍԵՍ ԱԲԵԼՅԱՆԻՆ]

Նամակում հիշատակված ձեռագիր աշխատությունը, որը բովանդակում է իր մեջ «էջմիածնի վերջին ժամանակների անցքերը», պատկանում է Աբել եպիսկոպոս Մխիթարյանի գրչին։ Վերջինս 60-ական թվականներին լինելով Ատրպատականի թեմի առաջնորդը և բնակվելով Րաֆֆիենց տանը, բարեկամական հարաբերությունների մեջ էր գտնվում նրա հետ։

Դիմելով էջմիածնում գտնվող իր բարեկամ Ներսես Աբելյանին, Րաֆֆին նրան խնդրում է հետաքրքրվել այդ շատ արժեքավոր ձեռագրի բախտով։

«Վարժարանը», որի մասին խոսում է Րաֆֆին, Թիֆլիսում (1882—1884 թթ.) լույս տեսնող մանկավարժական ամսագիր էր։

«... Մեր ձեռնարկության ձայնը լսելով» ակնարկը վերաբերում է Րաֆֆու խմբագրությամբ ամսագիր հրատարակելուն։

Այս նամակում Րաֆֆին Ն. Աբելյանին բացատրում է իր և Արծրունու միջև ծագած տարաձայնության պատճառը։ «Նս,— ասում է Րաֆֆին,— անցյալ տարվա վերջին ամիսներում խորհուրդ տվի նրան, որ ներկա տարվա համար խմբագրատան կազմակերպությունը փոխվի։ Նա խոստացավ, բայց չկատարեց»։

Կինը, որին ակնարկում է Րաֆֆին, որից իբրև թե Արծրունին ստանում էր բոլոր խորհուրդները՝ Մարիամ Աղամալյանն էր։

Վերջում Րաֆֆին Ն. Աբելյանին հաղորդակից է դարձնում իր և Գաբրիել Միրզոյանի (Գաբոյի) ծրագրերին։ Րաֆֆին նպատակ ուներ «... մի շաբաթական թերթ հրատարակել և «Աղբյուրի» խմբագրությունը միացնել դրանց հետ»։

Նամակն առաջին անգամ հրատարակվել է ԳԱ «Տեղեկագրում» (տե՛ս 1956 թ., № 4, էջ 117), այնուհետև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 295)։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 3)։

## 61. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Փանյանին ուղղված այս նամակում Րաֆֆին աշխատում է լուսաբանել իր և Արծրունու միջև տիրող սառնության պատճառը։ Րաֆֆին նպատակ ուներ փոփոխություններ մտցնել «Մշակի» խմբագրության կազմում։ Արծրունին սկզբում համաձայնում է, իսկ «երբ նոր տարին հասավ,— ասում է Րաֆֆին,— այլևս չկատարեց իր խոստումը»։ Րաֆֆին դժգոհում է Արծրունու բնավորության գծերից, որը, ըստ նրա, իր անտակտությամբ ամեն ինչ փչացնում է։

Րաֆֆին թեև դադարել էր աշխատակցել «Մշակին», բայց և այնպես իր հարաբերությունները չէր խզել. նա աշխատում էր, որ այդ լրագիրը կրկին վերականգնի, «որովհետև,— ասում է նա,— ես իմ անունը կապված եմ համարում նրա հետ և եթե «Մշակի» վրա բիծ դրվի, նրա մի մասն էլ իմ վրա կընկնի»։

««Մշակի» խմբագրատան նետ պատահած անսպասելի անցքը», որի մասին ակնարկում է Րաֆֆին, վերաբերում է 1883 թվականի մայիսի 1-ին «Մշակի» խմբագրատանը կատարված խուզարկության ու նյութերի բռնագրավմանը։

Բարխուդարյանը (Մկրտիչ) Մոսկվայում հայ տպարանատեր էր, անհավանական չէ, որ «Ջալալեդդինը» լույս տեսած լինի վերջինիս տպարանում։

Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում, այնուհետև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 297)։

Արտատպված է «Արարատ» ամսագրից, 1913 թ., № 6—7, էջ 574։

## 62. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Այս նամակում Րաֆֆին պատասխանելով Մ. Փանյանի կշտամբանքներին, աշխատում է ցույց տալ իր և Արծրունու միջև ծագած անհամաձայնության իսկական մեղավորին։

Անախորժության մի մասը կապելով Արծրունու ընտանեկան կենցաղավարության հետ, Րաֆֆին հրաժարվում է խորանալ այդ հարցում։ Ցույց տալով Արծ-

րունու բնավորության թերությունները, Րաֆֆին տեղն ու տեղը ավելացնում է, որ ինքը «նրա գործունեությունը միշտ ազնիվ և օգտավետ է համարել», հարգում է նրան և այլն։

Րաֆֆին մեկ առ մեկ թվում է իր ձեռնարկած բոլոր միջոցառումները, որոնց նպատակն է եղել դուրս հանել «Մշակը» «անկյալ դրությունից», բայց նրա բոլոր ջանքերը ապարդյուն են անցել, որովհետև գործին միջամտել է Արծրունու կինը՝ Մարիամ Աղամալյանը։

Արծրունու և Րաֆֆու միջև ծագած անախորժությունները վերջինիս հանգեցնում է սեփական ամսագիր ունենալու անհրաժեշտությանը։ «Հրապարակախոսությունը,— գրում է Րաֆֆին իր բարեկամին— ... ինձ համար մի կենսական պահանջ է դարձել»։ Նրան ցավ էր պատճառում, որ ուրիշներն ամեն կեղտոտություններ դուրս են թափում, իսկ ինքը ստիպված է լուռ ականատես լինել։

Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում։ Երկրորդ անգամ լույս է տեսել «Հայաստանի կոոպերացիա» երկշաբաթաթերթում, ինչպես նաև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 301)։

Արտատպված է «Հայաստանի կոոպերացիայից», 1920 թ., № 17, էջ 711։

## 63. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Հունիսի 21-ին գրած այս նամակից երևում է, որ Րաֆֆու և Արծրունու հարաբերությունների մեջ էական փոփոխություն տեղի չէր ունեցել (Րաֆֆու և Արծրունու հարաբերությունների մասին տե՛ս № 60—62-րդ նամակները)։ Արծրունին զբաղված էր իր ժառանգական կալվածքի հարցով, որը վրաց բանակի կողմից 400 հազար ռուբլի պարտքի դիմաց դրված էր աճուրդի։ Րաֆֆին սպասում էր, որ Արծրունուն պատկանող տնտեսության վիճակը պարզվի, որից հետո նա, ինչպես հաղորդում է Փանյանին գրած նամակում, պետք է առաջարկեր իր բարեկամական ծառայությունը։

«Ես արդէն կազմել եմ երիտասարդների մի խումբ, որ «Մշակը» վեր առնենք և շարունակենք հրատարակել» ասելով Րաֆֆին նկատի ուներ Գաբրիել Միրզոյանին, Ներսես Աբելյանին և իրեն։ Այս երեքով Արծրունու արտասահման գնալուց հետո պետք է շարունակեին «Մշակի» հրատարակությունը, տարեկան մի որոշակի գումար ուղարկելով նրան։

Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում։

Արտատպված է նույն ամսագրից, 1913 թ., № 6—7, էջ 577։

## 64. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Այս և Փանյանին գրած նախորդ նամակի միջև ընկած ժամանակամիջոցում Արծրունին կորցնում է իր ժառանգական կալվածքը, որի պատճառով էլ հուլիսի 11-ից դադարում է «Մշակի» հրատարակությունը։

Նախորդ նամակում մենք տեսանք, որ Րաֆֆին իր պատրաստակամությունն էր հայտնում գնալ իր բարեկամական ձեռքը մեկնել Արծրունուն։ Րաֆֆին այդպես էլ անում է, ինքը՝ Ներսես Աբելյանը և Գաբրիել Միրզոյանը, որոշում են 1885 թվականի սկզբից շարունակել «Մշակի» հրատարակությունը և յուրաքանչյուր ամիս Արծրունուն ուղարկել 100 ռուբլի փող։

Նամակի հետգրությունում Րաֆֆին Փանյանին հաղորդում է 1884 թվականի Զեյթունում բռնկած ապստամբության մասին, որը գլխավորում էր Պապիկ իշխանը։

Նամակը առաջին անգամ որոշ կրճատումով (հանված է Ջեյթունի ապստամբության և Պապիկ իշխանի մասին եղած հատվածը) հրապարակվել է «Արարատ» ամսագրում։ Ամբողջական տեքստը տպագրվել է «Հայաստանի կոոպերացիա» երկշաբաթաթերթում, ինչպես նաև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 301)։

Արտատպված է «Հայաստանի կոոպերացիայից», 1920 թ., № 7, էջ 712։

## 65. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Նամակը գրված է այն ժամանակ, երբ Արծրունին «Մշակի» հրատարակման գործը հանձնելով Րաֆֆուն ուղևորվել էր արտասահման։

Րաֆֆին և իր ընկերները թեև անհրաժեշտ համարվող բոլոր փաստաթղթերը ներկայացրել էին, բայց և այնպես կառավարությունը զանազան պատրվակներ բերելով, արգելակում էր «Մշակի» հրատարակումը։

«Ավետիք Արասխանյանցի անվայել վարմունքը», որի մասին նամակում ակնարկում է Րաֆֆին, վերաբերում է այն իրողությանը, որ Արծրունու սնանկանալուց հետո նա հակադրվելով Րաֆֆուն, Ն. Աբելյանին և Գ. Միրզոյանին, ապարդյուն ջանքեր էր գործադրում «Մշակի» հրատարակման իրավունքն իր ձեռքը գցելու համար։

Նամակը առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում», ինչպես նաև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 303)։

Արտատպված է «Արարատ» ամսագրից, 1913 թ., № 6—7, էջ 579։

## 66. [ԱՎԱԳ ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆԻՆ]

Պատասխանելով Ավթանդիլյանի 23-ը օգոստոսի նամակին, Րաֆֆին նրան բացատրում է, որ Մարտիրոս Մելիք-Թադևոսյանի ուշացման պատճառով ինքը չկարողացավ վերջինիս Թիֆլիսի «Արհեստավորաց ուսումնարանում» տեղավորել։ Այնուհետև Րաֆֆին իր բարեկամին ծանոթացնում է «Մշակի» հրատարակման հետ կապված դժվարություններին։

Նամակը հրապարակվում է առաջին անգամ։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 14)։

## 1 8 8 5

## 67. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Այս նամակով Րաֆֆին իր բարեկամին հաղորդակից է դարձնում կաթողիկական թեկնածուի մասին իր ունեցած մտորումների հետ։ Հարկ է նշել, որ այս հարցի վերաբերյալ Րաֆֆու ունեցած ցանկությունները ու կանխատեսումները չեն արդարանում, որովհետև Խրիմյանի փոխարեն Ամենայն հայոց կաթողիկոս է ընտրվում Մակարը։

Հայոց դպրոցների մասին եղած խոսակցությունը վերաբերում է 1884 թվականի փետրվարի 16-ի Բարձրագույն հրամանին, որի մեջ պահանջվում էր երկու

շաբաթվա ընթացքում ընդունել հայոց ծխական դպրոցների համար կառավարության նոր կանոնադրությունը և կամ փակել բոլոր ոչ հոգևոր դպրոցները։

Ցարիզմի այդ ապազգայնացնող քաղաքականության հետևանքով Հայաստանում փակվում են շուրջ 600 մեծ ու փոքր դպրոցներ։ (Տե՛ս «Արարատ», 1885 թ., № 3, էջ 122 և № 6, էջ 270)։

«Ես այժմ զբաղված եմ իմ մասնավոր աշխատություններով» ակնարկը վերաբերում է «Կայծերի» երկրորդ հատորի գրությանը և «Սամվելի» նախապատրաստական աշխատանքներին։

Նամակն առաջին անգամ փոքր կրճատումով (հանված է «Բայց ժամանակ ես չեն տալիս մինչև կաթողիկոս ընտրվի» նախադասությունը) հրապարակվել է «Արարատ» ամսագրում։ Ամբողջական տեքստը տպագրվել է «Հայաստանի կոոպերացիայում», ինչպես նաև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 305)։

Արտատպված է «Հայաստանի կոոպերացիա» երկշաբաթաթերթից, 1920 թ., № 17, էջ 713։

## 68. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Նախորդ նամակներից հայտնի է, որ կառավարությունը մերժում է Րաֆֆու, Ն. Աբելյանի և Գ. Միրզոյանի առաջարկը «Մշակի» հրատարակությունը շարունակելու մասին։ 1885 թվականի հունիսին արտասահմանից Թիֆլիս է գալիս Արծրունին և ցանկանում է վերսկսել «Մշակի» հրատարակությունը։ Թիֆլիսի գրաքննչական կոմիտեն Արծրունուն ևս մերժում է, հարուցելով մի շարք դժվարություններ։

«Կաթողիկոսի մասին դեռ լուր չկար, թե կայսրը ո՞րին է հաստատել» Րաֆֆու ակնարկը վերաբերում է ցարի կողմից կաթողիկոսական թեկնածուի հաստատմանը։ Թեև կաթողիկոսական ընտրությունները տեղի էին ունեցել 1885 թվականի ապրիլի 21-ին, բայց և այնպես հունիսի 30-ին դեռևս հայտնի չէր, թե ո՞վ է լինելու կաթողիկոսը։ 1885 թվականի հուլիսի 18-ին հրապարակվում է Ալեքսանդր կայսրի բարձրագույն հրովարտակը, որով Մակարը ճանաչվում է իբրև Ամենայն հայոց կաթողիկոս։ (Տե՛ս «Արարատ», 1885 թ., № 9, էջ 417)։

Պատկերները, որի համար Փանյանը պետք է խորհրդակցեր «Փարոս Հայաստանի» (1879—1881) հանդեսի խմբագիր Ջարմայր Մսերյանի հետ, վերաբերում են «Դավիթ Բեկի» երկրորդ հրատարակությանը։ Րաֆֆին ցանկանում էր կրկին անգամ հրատարակել «Դավիթ Բեկը» յուրաքանչյուր հատորում տեղադրելով 10-ական նկար։

Նամակն առաջին անգամ որոշ կրճատումներով հրապարակվել է «Արարատ» ամսագրում (1913 թ., № 6—7)։ Ամբողջական տեքստը տպագրվել է «Հայաստանի կոոպերացիայում»։

Արտատպված է «Հայաստանի կոոպերացիա» երկշաբաթաթերթից, 1920 թ., № 17, էջ 714։

## 69. [ԼԵՈՅԻՆ]

Լեոյին ուղղված այս նամակը Րաֆֆին գրել է 1885 թվականի հուլիսի 11-ին, այն օրը, երբ լրանում էր «Մշակի» ընդհատման մեկ տարին։ Արծրունին թեև

վերադարձել էր արտասահմանից, բայց և այնպես դեռևս ձեռք չէր բերել «Մշակի» վերահրատարակման արտոնությունը։

Նամակի այս պատառիկը առաջին անգամ հրապարակել է Լեոն։

Արտատպված է Լեոյի «Գրիգոր Արծրունի» աշխատությունից, երրորդ հատոր, էջ 324 (Թիֆլիս, 1905 թ.)։

## 70. [ԳՐԻԳՈՐ ԱՐԾՐՈՒՆՈՒՆ]

Արծրունուն ուղղված այս նամակը գրված է այն դեպքերից հետո, երբ վերջինս դիմում է Րաֆֆուն և խնդրում է նրան առաջվա նման թղթակցել «Մշակին»։

Մերժելով նախկին ձևի թղթակցությունը, Րաֆֆին առաջարկում է հիմնել նոր խմբագրական մարմին կազմված «Մի խումբ համերաշխ անձինքներից, որոնք թե՛ բարոյապես, և թե՛ նյութապես կապված լինեն լրագրի խմբագրության հետ»։

Այս նամակից պարզ է դառնում, որ Րաֆֆին ցանկանում էր «Մշակի» խմբագրության մեջ ունենալ նույնքան իրավունք, որքան ուներ Արծրունին։ Նա այլևս չէր կարողանում հանդուրժել Արծրունու վարվելաձևը և պահանջում էր, որ վերջինս ցած դնի իր «դիկտատորի գավազանը» և ընկերների հետ ընկերաբար վարվի։ «Դուք,— գրում է Րաֆֆին,— պետք է հավասար բաժանեք թե՛ աշխատանքը, թե՛ արդյունքը, թե՛ իրավունքը և թե՛ պարտականությունները»։

««Մեղուն» այժմյան կաթողիկոսի օրով կլերի կիսապաշտոնական օրգանը կդառնա» ասելով Րաֆֆին նկատի ուներ այն հանգամանքը, որ տարիներ շարունակ Մակարը հանդիսացել էր մեղվականների կաթողիկոսության թեկնածուն, այժմ վերջինս պետք է, որ հովանավորեր նրանց։

Նամակն առաջին անգամ հրատարակվել է ԳԱ «Տեղեկագրում» (1956 թ., № 4), այնուհետև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 308)։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, «Մշակի» ֆոնդ, № 1129)։

## 71. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Պատասխանելով Փանյանի օգոստոսի 4-ը թվակիր նամակին, Րաֆֆին միաժամանակ նրան տեղեկություններ է տալիս Թիֆլիսի անցուդարձերի մասին։ Փանյանին գրած նամակից հայտնի է դառնում, որ Րաֆֆու համար, հոկտեմբերի 24-ին, դեռևս պարզված չէր, նա աշխատակցելո՞ւ էր «Մշակին», թե ոչ, որովհետև Արծրունին փող չունենալու պատճառով հրաժարվում էր կազմել խմբագրական մարմին։ Րաֆֆին նամակում պատրաստակամություն է հայտնում ծրի ծառայել «միայն թե,— գրում է նա,— իր կատարած պարտականությունների հետ և որոշ իրավունքներ ունենա խմբագրության մեջ»։ Րաֆֆու տեսակետը այն էր, որ եթե Արծրունին «իր աշխատակիցներին փողով վարձատրել չի կարող, ապա թող վարձատրի բարոյապես»։

Պատկերները, որոնց պատրաստել տալու համար Րաֆֆին բանակցության մեջ էր Գերմանիայում՝ Անդրեաս Արծրունու և Վենետիկում՝ Հայր Ալիշանի հետ, վերաբերում էր «Դավիթ Բեկի» առաջին հատորի երկրորդ պատկերազարդ վերահրատարակությանը։

*Մակար կաթողիկոսի նկատմամբ ժողովրդի ունեցած սառը վերաբերմունքը Րաֆֆին բացատրում է նրանով, որ վերջինս հանդիսանում էր կառավարության և ոչ թե ժողովրդի ընտրելին, այդ իսկ պատճառով նա Մակարի ընդունելությունը համարում է «պոլիցիական»։*

*Բանակցությունները, որը վարում էր Մակար կաթողիկոսը իշխան Դոնդուկովի հետ վերաբերում էր հայկական ծխական դպրոցները վերստին բացելու խնդրին (տե՛ս այս հատորում, № 67 ծանոթագրությունը)։*

*Նամակն առաջին անգամ որոշ կրճատումներով (հանված է Մակար կաթողիկոսի վերաբերյալ ամբողջ հատվածը) հրապարակվել է «Արարատ» ամսագրում։ Ամբողջական տեքստը տպագրվել է «Հայաստանի կոոպերացիա» երկշաբաթաթերթում, ինչպես նաև (կրճատ ձևով) տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 313)։*

*Արտատպված է «Հայաստանի կոոպերացիա», երկշաբաթաթերթից, 1920 թ., № 17, էջ 715։*

## 72. [ԼԵՈՅԻՆ]

*Լեոյի և Րաֆֆու նամակագրությունից մեզ է հասել երկու պատառիկ միայն։ Այն հանգամանքը, որ Լեոյին հայտնի էր որոշ մանրամասնություններ և Րաֆֆին նոր լրացուցիչ տեղեկություններ էր հաղորդում իր բարեկամին, հիմք է տալիս ասելու, որ նրանց միջև եղել է պարբերական նամակագրություն։*

*Րաֆֆին Լեոյին տեղեկացնում է, որ Արծրունին տակավին չի համաձայնել, որ «...մենք ընկերաբար կատարենք լրագրի («Մշակի») հրատարակման գործը» և ցանկանում է «... առաջվա նման տեր և կառավարիչ լինել»։ Րաֆֆին ցավ է հայտնում, որ իր և Արծրունու միջև համաձայնություն չկայանալու պատճառով ստիպված է թողնել «սիրած լրագիրը»։*

*Նամակը որոշ կրճատումներով (*) առաջին անգամ հրապարակել է Լեոն։*

*Արտատպված է Լեոյի «Գրիգոր Արծրունի» աշխատությունից, տե՛ս երրորդ հատոր, էջ 328 (Թիֆլիս, 1905 թ.)։*

## 1886

## 73. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

*Բարեկամական ջերմություն ունեցող այս նամակը Րաֆֆին գրել է Մելքոն Փանյանի Մոսկվայից տեղափոխվելու առիթով։*

*Մ. Փանյանը ագուլեցի էր, պետք է ենթադրել, որ նա Րաֆֆուն գրած իր նամակում ակնարկել է, որ ցանկանում է հեռանալ մայրաքաղաքի աղմուկից և կյանքի վերջին օրերը անցկացնել «հայրենյաց գրկում»։*

*Րաֆֆին ցանկություն է հայտնում Թիֆլիսում տեսնել նրան և սեղմել բարեկամական ձեռքը։*

*Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում։*

*Արտատպված է նույն ամսագրից, 1913 թ., № 6—7, էջ 584։*

## 74. [ԱՌԱՔԵԼ ԾԱՏՈՒՐՅԱՆԻՆ]

*Առաքել Ծատուրյանը, որին ուղղված է այս նամակը, Բաքվի մեծահարուստներից էր։ 1886 թվականին նրա ծախքով Պետերբուրգում տպագրվում է Ապրես Բեկնազարյանի «Գաղտնիք Ղարաբաղի» վերնագրով գիրքը, որը ինչպես կասեր Րաֆֆին, «Գայթակղության քար» դարձավ հայոց պատմական գրականության մեջ։*

«Դուք կարդացել եք և կկարդաք այդ գրքի մասին մինչև անգամ գովասանական հոդվածներ» *ակնարկը վերաբերում է Հայկունու հոդվածներին, որոնք տպագրվեցին «Մեղու Հայաստանի» լրագրի մեջ (տե՛ս 1885 թ., № 62—68, 79, 93 և այլն)։*

*Րաֆֆին Ա. Ծատուրյանին խոստանում է սպասել մինչև ամենքը իրենց ասելիքը ասեն «Հետո,— գրում է նա,— փաստերով կապացուցանեմ, որ այդ գիրքը Աբրահամ կամ Ապրես Բեկնազարյանների գրածը չէ, այլ Մակար վարդապետի կեղծ աշխատությունն է»։ Րաֆֆին կատարում է իր խոստումը, 1886 թվականի սեպտեմբերին «Արձագանքում» հրապարակելով Մակար Բարխուդարյանի կեղծիքը բացող «Գաղտնիք Ղարաբաղի» վերնագրով մատենախոսությունը (տե՛ս այս հատորում, էջ 383)։*

*Նամակն առաջին անգամ հրապարակվել է Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 320)։*

*Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Մակար Բարխուդարյանի ֆոնդ, № 4)։*

1 8 8 7

## 75. [ԱԼԵՔՍԱՆԴՐ ԱԲԵԼՅԱՆԻՆ]

*Դրամատուրգ Ալեքսանդր Աբելյանը Րաֆֆու բարեկամներից էր, և Շիրվանզադեի միջոցով իր պատրաստակամությունն էր հայտնել օգնել Րաֆֆուն «Կայծերի» երկրորդ հատորը Բաքվում տարածելու գործում։ Ուղարկելով «Կայծերից» 22 օրինակ, Րաֆֆին միաժամանակ խնդրում է նրան իր ծանոթներին բաժնեգրել նաև «Սամվելի» համար։*

*Այս նամակը նշանակալից է նաև նրանով, որ Րաֆֆին պարզաբանում է, իր կողմից «Սամվելով» տարվելու հիմնական շարժառիթը։ Նա ցանկանում էր «Ժողովրդին նոր մտքեր տալ և նոր գաղափարների հետ ծանոթացնել»։ «Սամվելը» այդ իսկ նպատակով գրված է,— ասում է Րաֆֆին Ա. Աբելյանին,— թեև նա պատմական վեպ է։ Մեր այժմյան դրությունը,— շարունակության մեջ ասում է Րաֆֆին,— նույն դրությունն է ի՞նչ որ էր չորրորդ և հինգերորդ դարերում»։ Պատմությունից վերցրած օրինակով Րաֆֆին աշխատում էր կրթել իր օրերի մարդկանց և այս նրա նպատակներից մեկն էր։*

«Ձեր եղբոր հայտնի է իմ այժմյան դրությունը» *ակնարկը վերաբերում է Ներսես Աբելյանին։*

*Նամակն առաջին անգամ հրատարակվել է ԳԱ «Տեղեկագրում» (1956 թ., № 4, էջ 118), ինչպես նաև տեղ է գտել Րաֆֆի «Գրականության մասին» ժողովածվում (էջ 322)։*

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Ալեքսանդր Աբելյանի ֆոնդ, № 31ա)։

## 76. [ԽԱՉԱՏՈՒՐ ՏԵՐ-ԶԱՔԱՐՅԱՆԻՆ]

Խաչատուր Տեր-Զաքարյանը, որին ուղղված է այս նամակը, Թավրիզի Արամյան դպրոցի դասատուներից է, որը նամակագրական կապեր ուներ Րաֆֆու հետ և օգնում էր նրան գրքերի տարածման գործում։

Մաճտեսի Սիմոնը Րաֆֆու աշակերտ և «Ջալալեդդին» վեպի հրատարակիչ Վարդան Թումանյանի հորեղբայրն էր՝ Րաֆֆու համակրած մարդկանցից մեկը։

«Երեք միմյանց բոլորովին հակառակ խմբագրություններ» ասելով Րաֆֆին նկատի ուներ «Մշակին», «Արձագանքին» և «Նոր դարին», որոնց դիմել էին Թավրիզեցիները դասատու վարձելու համար։

«Կայծերի» բաժանորդների ցուցակը, որը Րաֆֆին կարծում էր, թե «խուզարկություն եղած ժամանակ մյուս թղթերի հետ տարել են» այժմ գտնվում է ԳԱ գրականության և արվեստի թանգարանում (տե՛ս Րաֆֆու ֆոնդ, № 33ա)։ Խաչատուր Տեր-Զաքարյանի Րաֆֆուն գրած 19-ը սեպտեմբերի պատասխան նամակից (տե՛ս նույն տեղում, № 36) իմանում ենք, որ հիշյալ ցուցակը գտնվել է Խաչատուր Տեր-Զաքարյանի թղթերի մեջ, որը «Կայծերի» առաջին հատորի հետ նրան էր ուղարկել Րաֆֆին։

Նամակն հրապարակվում է առաջին անգամ։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 29)։

## 77. [ԽԱՉԱՏՈՒՐ ՏԵՐ-ԶԱՔԱՐՅԱՆԻՆ]

Թավրիզյան բարեկամ Խաչատուր Տեր-Զաքարյանին ուղարկելով 30 օրինակ «Կայծերի» երկրորդ հատորից, Րաֆֆին խնդրում է նրան հանձնել բաժանորդներին։ Միևնույն ժամանակ Րաֆֆին նրան հանձնարարում է նույն գրքից 4 օրինակ տալ Ավթանդիլյանին, իբրև վարձատրություն այն բանի համար, որ նա ժամանակին արտագրել էր «Կայծերի» առաջին հատորի մի մասը։ (Տե՛ս այս հատորում № 26 նամակը)։

Ընտանիքը Թիֆլիս տեղափոխելու մասին արած հանձնարարությունը վերաբերում է կնոջը՝ Աննա Րաֆֆուն և Արամ ու Արշակ որդիներին, որոնցից առաջինը՝ Արամը, 11 տարեկան էր։

Ցեներչյանը Թավրիզի դպրոցի դասատուներից էր, որը օգնում էր Րաֆֆուն գրքերի վաճառքի գործում։

Նամակն հրապարակվում է առաջին անգամ։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 30)։

## 78. [ՎԱՍԻԼ ԵՂԻԱԶԱՐՅԱՆԻՆ]

Վասիլ Եղիազարյանը, որին հասցեագրված է այս նամակը, Երևանի մտավորականության աչքի ընկնող ներկայացուցիչներից մեկն էր։ Թե նա երբ է ծանոթացել Րաֆֆու հետ և ինչ հանգամանքներում, մեզ չհաջողվեց պարզել, բայց

որ նրանք շուրջ տասներկու տարի եղել են ծանոթներ, գտնվել են սերտ հարաբերության մեջ և ունեցել են տևական նամակագրություն, դա փաստ է։

Վասիլ Եղիազարյանը եղել է Երևանում Վասակ Պապաջանյանի և Իսահակ Տեր-Զաքարյանի գլխավորած «Հայասեր ազգասեր» գաղտնի կազմակերպության ամենաակտիվ անդամներից մեկը։ Նա պատկանում էր Երևանում մեղադրված 22 երիտասարդներից այն 3-ի թվին, որոնց կառավարությունը ձերբակալում է։ (Տե՛ս այս հատորում № 54 նամակը)։

Վ. Եղիազարյանի գործակից և նույն գործով մեղադրված իրավաբան Ռուբեն Հասան-Ջալալյանի մոտ կատարված խուզարկության ընթացքում հայտնաբերում են Րաֆֆու նամակներից մի քանիսը, որոնք քննվող գործի տեսակետից լուրջ կասկածներ են հարուցում։ Ահա այս պատճառով էլ ժանդարմերիային վարչությունը հետաքննություն է սկսում նաև Թիֆլիսում, խուզարկում են «Մշակի» խմբագրատունը և Արծրունու ու Րաֆֆու բնակարանները։

Երևանում կատարված խուզարկության ընթացքում պարզվում է, որ «Հայասեր ազգասեր» կազմակերպության անդամները «հրատարակչական ընկերության» անվան տակ փող են հանգանակում և զենք են առաքում Արևմտյան Հայաստան։ Այս տեսակետից կասկած հարուցող փաստեր են թաքնված նաև Րաֆֆու «Ձեր պահանջած գրքերի ցուցակը հանձնեցի «Կենտրոնական գրավաճառանոցը», «Ձեր հանձնարարությունը կկատարեն» նախադասության մեջ»։

«Ընտանիքս բավական ուրախ է Թիֆլիս տեղափոխվելու համար» ակնարկը վերաբերում է Րաֆֆու կնոջը և երկու զավակներին, որոնք մինչև 1887 թվականի դեկտեմբերը բնակվում էին Սալմաստ գավառի Փայաջուկ գյուղում։

Նամակն հրապարակվում է առաջին անգամ։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 18)։

1 8 8 8

## 79. [ՄԵԼՔՈՆ ՓԱՆՅԱՆԻՆ]

Պատասխանելով Փանյանի 25-ը փետրվարի նամակին և խոստանալով ուղարկել «Կայծերի» երկրորդ հատորից երեք օրինակ, Րաֆֆին իր բարեկամին տեղեկացնում է «Սամվելը» լույս տեսնելու մասին։

Փանյանին գրած այս վերջին նամակում Րաֆֆին թեև իր մտավախությունն է հայտնում, որ «հայերը տակավին պատրաստված չեն մի լուրջ և ծանր բան կարդալու համար» բայց և այնպես «Սամվելը» արժանանում է արտակարգ ընդունելության։

Ուշագրավ է այն հանգամանքը, որ Րաֆֆուց նվեր ստացող մարդկանց ցուցակում տեղ է գտել նաև երիտասարդ բանաստեղծ Հովհաննես Հովհաննիսյանի անունը։

Նամակն առաջին անգամ հրապարակվել է «Արարատ» ամսագրում։

Արտատպված է նույն ամսագրից, 1913 թ., № 6—7, էջ 385։

## 80. [ԽԱՉԱՏՈՒՐ ՏԵՐ-ԶԱՔԱՐՅԱՆԻՆ]

Խաչատուր Տեր-Զաքարյանին գրած այս նամակի մեծագույն մասը վերաբերում է Թավրիզի Արամյան դպրոցը նոր սկսվող տարում ուսուցչական որակյալ կադրերով ապահովելու խնդրին։

Թե ի՞նչ վարմունք է թույլ տվել «Օրիորդաց դպրոցի վարժուհին», մեզ չհաջողվեց պարզել, թեև այդ մասին հոդված կա հրապարակված նաև «Արձագանք» շաբաթաթերթում (տե՛ս 1888 թ., № 12, էջ 153)։

Ղզլարցի դասատուն, որի մասին խոսում է Րաֆֆին, Նիկիտա Հունանյանցն է։

«Եղբայրը տուն թողնելու պտուղ չէ» դարձվածքը վերաբերում է Համբարձում Առաքելյանին, որը 80-ական թվականներին բնակվում էր Թավրիզում։

Նամակն հրապարակվում է առաջին անգամ։

Արտատպված է ինքնագրից (տե՛ս ԳԱ գրականության և արվեստի թանգարան, Րաֆֆու ֆոնդ, № 31)։

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## Հոդվածներ



## Պատմական ուսումնասիրություններ



## Նամակներ

### 1857



### 1858



### 1860

## 1868



## 1869



## 1872



## 1873



## 1874



## 1875



## 1876



## 1877



## 1879

## 1880



## 1881



## 1882



## 1883



## 1884

*Ծանոթագրությունները՝ Խ. ՍԱՄՎԵԼՅԱՆԻ*

*Գեղ. խմբագիր՝* Ա.Ն. Դասպարյան *Տեխ. խմբագիր՝* Է. Ճանճապանյան

*Վերստուգող սրբագրիչներ՝* Զ. Գրիգորյան, Վ. Վարոսյան

*Պատվեր 2001։ Տիրաժ 45000։ Հանձնված է արտադրության 17/IX 1963 թ.։ Ստորագրված է տպագրության 7/V 1964 թ.։ Թուղթ՝ 60×92 $^{1}/_{16}$։ Տպագր. 42,75 մամ., հրատ. 37,4 մամ.+1 ներդիր։ Գինը՝ 1 ռ. 82 կոպ.։*

*Հայկ. ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։*